# ՈՒՍՈՒՄՆ

# ՀԱՄԱԲԱՐԲԱՌ ԱՒԵՏԱՐԱՆԻ

# ՈՒՍՈՒՄՆ ՀԱՄԱԲԱՐԲԱՌ ԱՒԵՏԱՐԱՆԻ

## ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ



Ի Տ. ՆԵՐՍԷՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԷ

ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ

ՊԱՏՐԻԱՐՔԷ ՀԱՅՈՑ Կ. ՊՈԼՍՈՅ





ՅԱՐՄԱՇ

Ի ՏՊԱՐԱՆԻ Զ. Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆԱՑ

1875—ՌՅԻԴ

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ

# Տ. Տ. ԳԷՈՐԳԱՅ Դ.

ՍՐԲԱԶԱՆ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ

ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ԵՒ

Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Ս. ԵՐՈՒՍԱՂԻՄԱՅ

Տ. ԵՍԱՅԵԱՅ

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԱՌ ՅԻՇԱՏԱԿ

ՆՆՋԵՑԵԼՈՑ ԻՒՐՈՑ

# ՅԱԿՈԲ ԷՖԷՆՏԻ

## ՆՈՐԱՏՈՒՆԿԵԱՆ

ԱՌ ՈՐԴԻՍ

ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ

# ԿԱՆԽԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Մեր սիրելի ժողովրդեան կենաց մէջ՝ Յիսուսի Քրիստոսի Ս. Աւետարանն և Նորա փրկաւէտ վարդապետութիւններն առաւել ծաւալելու բաղձանօք՝ ընդհանուր եկեղեցւոյ և մանաւորապէս Հայաստանեայց եկեղեցւոյ Ս. Հարց դրուածներն աչաց առջև ունենալով՝ այն համառօտ ՈՒՍՈՒՄԸՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ գրել ձեռնարկեցի աշխարհիկ ոճով ոչ 'ի մարդկանէ գովութիւն ստանալու, այլ մի միայն Հայ ազգիս բարոյական կենաց ծառայելու դիտմամբ. զի մարդիկ իրեց թէ՛ երկնաւոր և թէ՛ երկրաւոր ճշմարիտ երջանկութիւնը՝ Քրիստոսի Աւետարանաւ միայն կարող են ստանալ: Ուր համար մեր երանաշնորհ 'Նախնիք Ս. Աւետարանը ոսկեայ քարոզել աւանդեցին մեզ:

Ես այս գործիս մէջ իմ կողմանէ նոր խօսք աւելցնելու մասին շատ զգուշացայ, բաւական համարելով հնոց և նորոց կարեւորագոյն բացատրութիւններն ընտրանաւ համառօտել և չորից սրբոց Աւետարանչաց 'ի վաղուց անտի ընկալեալ համաձայնութեամբ 'ի լոյս ընծայել:

Աստուծոյ բանին անհուն եւ մարդասէր միտքը խիստ հաւնաւոր լինելով՝ չեմ ուզեր, որ այս

գործքը թերութիւններէ ազատ եղած լինի, մանաւանդ որ իմ՝ զանազան ծանր զբաղմանցս միջոցին գրուած է։ Միայն թէ կը յուսամ որ այս ձեռնարկս խայծ մը կամ՝ քաջալերութիւն մը պիտի ըլլայ իմաստնախոհ և կարողագոյն անձանց՝ աւելի աղէկը գրելու։ Եւ ահա մէկ կողմանէ այս աշխատութեանս՝ ժողովրդեան պատճառել յուսացուած քիչ շատ հոգևոր օգուտն, և միւս կողմանէ աւելի ընտիր թարգմանութեանց երևան ելլելու յոյսը՝ զիս կը մխիթարէ, և կը խրախուսէ դիմել միշտ առ Հոգւոյն սուրբ, որ միայն գիտէ զարմանալիս հրաշագործել և պարգևել մեզ ամենեցուն՝ հոգի-բարեպաշտութեան, որով իւր վսեմ պատուէրներուն վրայ միշտ խորհելու՝ և մեր թէ՛ ազգային և թէ՛ անհատական կեանքն անոնցմով կանոնաւորելու սէր և փափաք ունենալ կարողանամք։

ԱՒԵՏԱՐԱՆԻ ՈՒՍՄԱՆ համար կարևոր դիտելիքներ կան, որ համառօտիւ կը տեսնուին այս կանխաբանութեան մէջ։

## Ա.

### ՍՈՒՐԲ ԳԻՐՔ.

Գրուած Աստուծոյ խօսքին՝ Աստուածաշունչ, Աստուածեղէն Պատգամք, կամ Կտակարանք կ'ըսուի, որ Հոգւոյն սրբոյ ազդեցութեամբ Սրբազան գրիչներէ գրուած, և իբր այնպիսի՝ եկեղեցիէն ընդունուած է. Պետր. Ա. 21. “Ո՛չ երբէք ըստ մարդ-

չեն կամաց բերուած մարգարէութիւն երբեք, այլ՝ Հոգւոյն սրբոյ ներշնչմամբ խօսեցան մարդիկ»։

Ա. Աստուածաշունչ գիրք յերկուս կը բաժնուին Հին Կտակարան և Նոր Կտակարան։

Բ. Ս. Գիրք՝ Եկեղեցւոյն ընդունուածներն են. վասն զի կան այնպիսի գիրքեր ալ՝ որոց Անյայտք (Աբոգրիֆի) կըսուի, և որք թէպէտ սուրբ մարդիկներէ ալ գրուած ըլլան, բայց Եկեղեցին Ս. Գրոց կարգը չընդունիր զանոնք։

Գ. Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ ընդունած Ս. Գիրքերն ասոնք են։

## ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆ

Ծնունդք

Ելք

Ղևտական

Թիւք

Երկրորդ Օրէնք

Յեսու

Դատաւորք և Հռութ

Երկու գիրք Եզրի կամ Եզր և Նեեմի

Ա. և Բ. Թագաւորք

Գ. և Դ. Թագաւորք

Ա. և Բ. Մնացորդք

Եսթեր, Տովբիթ, Յուդիթ

Յոբ

Սաղմոսք

Առակք

Դ.

Ժողովողք

Երգերգոց

Իմաստութիւն

Մարգարէութիւն Եսայեայ

Մարգարէութիւն Երեմեայ և Ողբք և Բարուք

Մարգարէութիւն Եզեկիէլի

Մարգարէութիւն Դանիէլի

Երկոտասան Մարգարէք

Մակաբայեցիք

Իմաստութիւն Սիրաքայ

## ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

Աւետարան. Մատթէոսի

" Մարկոսի

" Ղուկասու

" Յովհաննու

Գործք առաքելոց

Թուղթ Պօղոսի առ Հռովմայեցիս

" " " Կորնթացիս Ա.

" " " Կորնթացիս Բ.

" " " Եբրայեցիս

" " " Գաղատացիս

" " " Եփեսացիս

" " " Փիլիպպեցիս

" " " Կողոսացիս

" " " Թեսաղոնիկեցիս Ա.

" " " Թեսաղոնիկեցիս Բ.

Թուղթ Պօղոսի առ Տիմոթէոս Ա.
" " " Տիմոթէոս Բ.
" " " Տիտոս
" " " Փիլիմոն
Թուղթ Պետրոսի կաթուղիկեայց Ա.
" " " կաթուղիկեայց Բ.
" Յովհաննու կաթուղիկեայց Ա.
" " " կաթուղիկեայց Բ.
" " " կաթուղիկեայց Գ.
" Յակոբայ կաթուղիկեայց
" Յուդայի կաթուղիկեայց
Յայտնութիւն Յովհաննու ։
Աւանդեմ զսա նաեւ՝
Թուղթ Պօղոսի առ Կորնթացիս Գ.
" Կորնթացւոց առ Պօղոս
Ննջումն Յովհաննու. (որոյ թէպէտ յունական բնագիրը չկայ այսօր, բայց մեր եկեղեցիէն միշտ յարգուած եւ Ս. Գրոց կարգը դասուած է)*

Դ. Ս. Գրոց ամբողջութիւնը՝ եկեղեցւոյ նախնի հայրերուն գրուածոց մէջ յիշատակուած է.

* Վերոյիշեալ գրուածքն թող չառնուր եկեղեցիէն իբրեւ առաջին կանոնական ընդունուած են։ Եկեղեցւոյ Ս. Հայրերէն ոմանք այս երկու գիրքը նախականոն, ոմանք ալ երկրորդական եւ երրորդական կամ ոչ կանոնական կ'ընդունին։ Բայց ի սկզբանէ եւ այսօր այս գրոց նախականոնն կարգին վրայ ընդհանրութիւն չէ եղած, երկրորդական կարգին մէջ եղածներուն վրայ երբեմն վէճեր եղած են. սակայն Հայոց եկեղեցին թէ՛ այս երկրորդականոններն եւ թէ՛ երրորդականոններն յարգած է միշտ, վասն զի ոչ կանոնական համարուածներն խել ... մեր եկեղեցւոյ մէջ կը կարդացուին եւ բարոյական խրատներ եւ աստուածային ճշմարտութեանց վրայ կարեւորագոյն գիտելիքներ կը պարունակեն ։

Հերոնիմոս, Եպիփան, Կիւրեղ Երուսաղեմացի, Գրիգոր Աստուածաբան, նաեւ Հրեայ Յովսեպոս պատմագիրը կը յիշատակեն Հին կտակարանի նը-
կատմամբ ։

Ե. Բոլոր Հին-կտակարանի գրքերն՝ երեք ա-
նուամբք կը համառօտուին ։

Ա. Մովսիսի գրքերը կըսուին՝ ՕՐԷՆՔ ։

Բ. Մարգարէութեանց եւ պատմութեանց կը-
սուին՝ ՄԱՐԳԱՐԷՔ ։

Գ. Սաղմոսաց, Օրհնութեանց, Առակաց, Յոբ-
բայ կամ ոտանաւոր գրուածներուն կըսուին՝ ԸՍ-
ՏԻՒՔԵՐՈՒՆ ԿԱՄ ՍԱՂՄՈՍՔ. Ինչպէս Քրիստո-
սի խօսքերէն ալ կը հասկցուի, "Պարտ է լնուլ
ամենայն գրելոց յՕրէնսն Մովսիսի եւ 'ի Մարգարէս
եւ 'ի Սաղմոսսն վասն իմ" Ղուկ. ԻԴ. 44 ։

Զ. Պէտք չէ տարակուսիլ այս գրոց ճշմար-
տութեան վրայ, որոց ճշմարիտ ըլլալուն վկայնե-
րըն են՝ նախ՝ նոյն գրոց ոճին ղանաղան դարերու
լեզուաց փոփոխութեան կնիք կրելն ։

Երկրորդ՝ զայնս պահպանող Հրէից ազգը ։

Երրորդ՝ Քրիստոնէութեան դէմ ելնող անթիւ հերետիկոսներն՝ որ չկրցան Ս. Գրոց վաւերա-
կանութիւնն ուրանալ ։

Է. Ս. Գրոց վաւերականութեան մէկ ապա-
ցոյցն ալ հին ձեռագիրներն են, որ ցարդ մնասամբ
կը կենան. Թէպէտ Քրիստոսէ վերջ հարիւր տա-
րի յետոյ եղած եւ տարածուած աղանդի մը հի-
մնադիրը կըսէ թէ Քրիստոնեայներն աւետա-
րանին մէջ ետքէն բան աւելցուցին կամ իրենց

մարգարէին վերաբերեալ խօսքերը ջնջեցին ․ սա-
կայն անորմէն 'շատ տարի յառաջ գրուած ձեռա-
գիրներն այս զրպարտութիւնը կը նշանակեն ։ 1300
հատ եբրայեցերէն և 600ի չափ յունարէն ձե-
ռագիրներ կան այժմ՝ հին դարերու գործ , ո-
րոց մէկ քանին շատ հին են ․ ինչպէս ․ — Վատի-
կանու ձեռագիրը Հին և Նոր կտակարան՝ յու-
նարէն լեզուով , Դ․ դարու մէջ գրուած ։ — Աղեք-
սանդրեան ձեռագիրը , որ Կ․ Պօլսոյ յունաց Պա-
տրիարքը Կիւրեղ Ղուկաս՝ Անգղիոյ Կարոլոս Ա․
թագաւորին ղրկած է և այժմ Լոնտրիայի Թա-
գաւորական Թանգարանին մէջ է , Ե․ դարուն
գրուած ։ — Ուրիշ ձեռագիր մ'ալ կայ Փարի-
զու Թագաւորական գրքատան մէջ Զ․ դարուն
գրուած ։ — Ուրիշ ձեռագիր մ'ալ կայ Նոր Կը-
տակարան յունարէն և լատիներէն , Ե․ դարուն
մէջ գրուած , և կըսուի Պեզայի ձեռագիր եւ
այժմ Անգղիոյ Քէմպրճի համալսարանին մէջն է ։

Ը․ Ս․ Գրոց մէջ մութ տեղեր կան , ո՛չ միայն
բարձր խորհրդոց և գերբնական ճշմարտութեանց
նկատմամբ , այլ զանազան դարերու մէջ գործա-
ծուած խօսքերու , եղանակներու , սովորութեանց
արարողութեանց և այլն նկատմամբ , որ մինչև
ցայսօր դժուարահասկանալի եղած են ։ Ս․ Գիրքը՝
Յիսուս ինքն ալ կը մեկնէր , Ղուկ․ ԻԴ․ 27 ։ սկ-
սեալ ՚ի Մովսիսէ և յամենայն մարգարէից մեկնէր նոցա ։

Օգոստինոս ալ կըսէ , «Բաղդատեա յայտ ջան զմութ
գիրսն , անգիտանաս ՚ի մութն գիրսն ։

Ղուկաս Աւետարանիչն ալ այսպէս կըսէ ․ «Ե-

Բաց զմիտս աշակերտացն՝ իմանալ զԳիրս. Ղուկ. ԻԴ. 45 ։ Ուստի և հետեւաբար բացատրութեան կա-րօտ է ։ Նոյն իսկ Պետրոս առաքեալը, Պօղոսի թղթոց համար կըսէ, «Յորս գտանին ինչ ինչ դժուա-րիմաց, զոր անուսումնքն և յողդողդքն խոտորեն, որ-պէս և զայլ եւս Գիրս առ իւրեանց անձանց կորուստ»։ Պետր. Բ. կաթ. Գ. 16 ։

Թ. Ս. Գիրք եկեղեցին կըմեկնէ և աղօթիւք և Աստուծոյ տուած շնորհօքն իմաստուն կրնայ մար-դըս Ս. Գրոց ճշմարիտ իմաստը հասկնալ. ըստ Դաւ-թայ թէ «իմաստուն արա զիս, և քննեցից զօրէնս քո». Սաղ. ՃԺԸ. 34 ։ իմաստուն արա զիս և ծանեայց զվ-կայութիւնս քո. Սաղ. ՃԺԸ. 125 ։ Եկեղեցին ալ Ս. Հոգւով կը մեկնէ Ս. Գիրքն ։ և եթէ այսպէս չըլ-լար՝ ամեն մարդ իւր խելքին չափովը պիտի հաս-կընար Ս. Գիրքն. ասոր համար է որ անհամար ա-ղանդներ ելած են այսօր ։ Անհատական մարդը կը սխալի, իսկ ընդհանուր Եկեղեցին իբրև ան-դամ և մարմին Քրիստոսի՝ անսխալ է՝ ներշըն-չեալ և առաջնորդեալ 'ի Ս. Հոգւոյն ։

Ժ. Ս. Գրոց խօսքերը՝ ըստ իւրաքանչիւր ու-րուք մտաց հասկնալու չէ՛. ինչպէս կըհասկնան Սո-կինեան և Բանական աղանդաւորք ։ Ս. Գիրքն՝ ըստ առժամեայն աստուածային յայտնութեան հասկնալ կարելի է կարծելն անտեղի է, ինչպէս կարծեն հաս-կընալ Ռացիոնալիստեան ըսուած աղանդաւորներն. ո՛չ ալ այնպէս ընդունելու է թէ Ս. Հոգին՝ Ս. Գիրք կարդացող իւրաքանչիւր մարդու առ հասարակ առանձնական շնորհք կուտայ, ինչպէս կըսեն

Լուտերականք և Կալուինականք՝ զայնս հասկնալու համար ։ Եթէ այս շնորհքը տրուած ըլլար ամենուն՝ ամենքն ալ մի և նոյն կերպով հասկնալու էին Ս. Գիրքը. վասն զի ճշմարտութիւնը մի եւ անփոփոխ է ։ Հապա այնպէս հասկնալու է՝ ինչ կերպով որ եկեղեցին կը հասկնայ և կը վարդապետէ 'ի սկզբանէ անտի, և աչքի առջև ունենալու է եկեղեցւոյ Ս. Հարց մեկնութիւններն և միշտ եկեղեցւոյ դատաստանին դիմելու է, և գիտնալու է որ Ս Գրոց մէջ զանազան իմաստներ կան, զոր օրինակ, երբեմն աստուածայինքը մարդկայինքով կը բացատրէ՝ Աստուծոյ աչք և ականջք ընծայելով ։

Երբեմն ալ նկարագրական, փոխաբերական, խորհրդական իմաստներով՝ Ս. Գրոց խօսքերը կը զանազանին. զոր օրինակ, « Մկրտեցաւ Յիսուս 'ի Յորդանան » խօսքը՝ ըստ նկարագրին է. վասն զի Քրիստոսի ջրով Յորդանանի մէջ Յովհաննէսէն մկրտուիլը կը նշանակէ ։ Բայց երբ որ կըսէ, « Մկրտութիւն մի ունիմ մկրտել զիա՞րդ հարկանիմ, մինչև կատարեսցի », այս խօսքը փոխաբերական իմաստ կուտայ. վասն զի, մկրտութիւնը՝ արեան թաթաւիլը կը նշանակէ ։ Դարձեալ Քրիստոս փոխաբերաբար Գառն կը կոչուի՝ հեզութեանը համար, ինչպէս նաև Ճանապարհ, Դուռն, Հովիւ, Որթ. և Եկեղեցին՝ Դրախտ, փարախ ևլն ։ Խորհրդական է՝ երբ խօսքերու կամ նկարագրի տակ խորհուրդ մը պարունակի. ինչպէս, Աբրահամի երկու որդիքը Հին և Նոր կտակարանը կը նշանակեն. ինչպէս նաև Իսահակի զենումն ալ Քրիստոսի խաչելու-

թիւնը։ Այս խորհրդականն ալ երեք կերպ կը զանազանուի. Առաջին՝ այլաբանական. ինչպէս հին օրինաց ամեն արարողութեանց խորհուրդները. «Զի ստուեր հանդերձելոց բարեացըն ունէին օրէնք, և ոչ զնոյն կերպարանս իրացն»։ Պօղ. Եբր. Ժ. 1։ Երկրորդ՝ բարոյական. երբ Ս. Գրոց խօսքերը նկարագրական իմաստէն զատ, վարուց համար խրատ ալ կուտան. զոր օրինակ. «Մի՛ կապեսցես զբերան եզին կալսոյ»։ Բ. Օրէնք ԻԲ. 4. որուն բարոյական իմաստն առաքեալը կուտայ «Զի արժանի է մշակն վարձու իւրոյ»։ Ա. Տիմ. Ե. 18։ Երրորդ՝ վերածական. երբ Ս. Գրոց խօսքերը՝ նկարագրական իմաստէն զատ՝ երկնային իրաց և յաղթական եկեղեցւոյ կ՚ակնարկեն, զոր օրինակ, Պօղոս՝ Սաղմոսին «Երդուայ ՚ի բարկութեան իմում, Թէ մտցեն ՚ի հանգիստ իմ» խօսքին հանգիստ բառը՝ որ ըստ ճառին Աւետեաց երկիրը կը նշանակէ՝ երկնից համար կ՚իմանար։ Ահաւասիկ այս խօսքն, ըստ գրոյն՝ Աւետեաց երկիր. այլաբանօրէն՝ Քրիստոսի եկեղեցին, բարոյապէս՝ Հաւատացեալ հոգին, և վերածապէս՝ Երկնքի արքայութիւնը կը նշանակէ։

Ուրիշ մէկ իմաստ ալ կայ Ս. Գրոց մէջ որ յարմարական կ՚ըսուի, այսինքն, Ս. Գրոց այս ինչ բանի համար ըրած խօսքը՝ նոյն ինչ բանին կըհարմարեն վարդապետօրէն։ Եւ թէպէտ Ս. Հարք և Հայրապետք եկեղեցւոյ շատ գեղեցիկ յարմարական իմաստներ գործածեր են, բայց մեզ յարմարականներ յարմարցընելէ զգուշանալու

է՝ որ հաւատոյ ճշմարտութեան այնչափ չեն նը-
պաստեր ։

Ս. Գրոց լեզուն դժուարահասկանալի ընող մէկ մեծ-
պատճառն ալ՝ ամեն լեզուի մէջ հասարակաբար
մուտ գտած ամեն ժամանակներու ժողովրդոց այ-
լաբանական ոճերուն, խօսքերուն և բացատրու-
թիւններուն յաճախութիւնն է. ինչպէս մեր աշ-
խարհաբառ լեզուին մէջ տաճկերէն և ուրիշ լե-
զուներէ ոճեր մտած են հայանալով, զոր օրինակ,
տաճկերէն Էլ վէրիր՝ հայերէն Ձեռք կուտայ
թարգմանուելով՝ նոյն մտօք գործածել սովորու-
թիւն եղած է այժմ. սակայն ինչպէս որ այս ոճն
անհասկանալի էր 'ի նախնեաց՝ որք Ձեռն տալ ըսե-
լով՝ Օգնել կը հասկնային, այնպէս անհասկանալի
պիտի մնար յետնոց՝ եթէ չի գիտնային տաճկե-
րէն լեզուն կենդանի տեսնելով՝ որ այս ոճը տաճ-
կերէնէն առնուած է ։

Եւրոպայեցւոց լեզուին մէջ՝ իրենց բնակակից
և մերձաւոր ազգերուն լեզուներէն շատ ոճեր
խառնուած են՝ որք անհասկանալի են այսօր. զի
այն ոճերն փոխ առնող լեզուներէն շատը կամ վեր-
ջացած կամ փոխուած և կամ գիրքեր չունենալ-
նուն համար՝ մեզի անծանօթ մնացած են ։ Եթէ
մենք գիր չունենայինք և մեր ժողովուրդը իւր
լեզուն հետզհետէ կանոնաւորէր՝ ալ չըպիտի հաս-
կնայինք՝ թէ ինչ ըսել կուզէին մեր հայրերը Կու-
լայ, Ճերմակ ըրի, Ջուր առաւ խօսքերով. ինչպէս
Աստուածաշունչի ժամանակներու մէջ՝ այնպէս և
Ղեւոնդէութեան Ա. դարերու մէջ ալ շատ տեսակ

պղպաքանական ձևեր, խօսքեր և նշաններ կային՝ որոց շատն անծանօթ են մեզ. օրինակի համար, քրիստոնեայք շատ կը յարգէին հալածանաց ժամանակներու ատեն վրայնին ձկան քանդակ ունեցող տապաններըն. թէ ինչո՞ւ համար ձկան պատկեր կը քանդակուէր չիրիմներու վրայ՝ պատմութիւնը կըսէ թէ՝ հեթանոսք քրիստոնէից գերեզմանաքարերը ջարդուբուրդ կընէին. քրիստոնէից չիրմաց նշանը խաչի նշանն էր, հաւատացեալք տեսնելով որ իրենց մեռեալներն ալ հանգիստ չեն 'ի տապանի և ուր թաղուելնին անյայտ ըլլալու համար, ալ սկսան խաչին տեղ՝ ձուկն քանդակել գերեզմանաքարերու վրայ՝ քրիստոնէից գերեզմանները ճանչնալու համար. Ձուկն՝ (իխթիւս), Յունաց՝ Յ. Ք. Ա. Փ. գրերու սկզբնատառերն են, այսինքն Ի. Խ. Թ. Ի. Ս. Իսուս, Խրիստօս. Թէօս. Իմօն. Սօթիրօն որ կը թարգմանի Յիսուս. Քրիստոս. Աստուած իմ. փրկիչ։

ԺԱ. Եբրայեցիք հին տառեր ունէին, այս տառերով գրուեցան մեծ մասամբ Ս. Գիրք. իսկ ետքէն Եզրաս՝ Քաղդէացւոցմէ նոր տառեր առաւ անոնցմով օրինակեց հին տառով գրուածները. Դանիէլի, Տոբիթայ և Յուդթայ գրքերը՝ Քաղդէարէն գրուած են, և Բ. Մակաբայեցւոց գիրքն յունարէն։ Հին տառերով գրուած բնագիրը Ամարացւոց ձեռքը մնաց՝ որք անով կը վարուէին։

Նոր կտակարանաց բնագիրը՝ յունարէն է ընդհանրապէս։ Մատթէոս իր Աւետարանն եբրայեցերէն գրեց՝ որ իր ժամանակին՝ քաղդէացի, եբրայեցի և յունական լեզուաց խառնուրդ մ'էր, և

հրէից ալ աշխարհաբառը կը խօսուէր։ Մարկոս եգիպտացւոց, իսկ Ղուկաս ասորւոց լեզուաւ գրեցին իրենց աւետարանները։ Պօղոսի Եբրայեցւոց Թղթին համար ալ կը կարծուի՝ որ եբրայեցերէն գրուած ըլլայ։

Սամարացւոց օրինակը թէպէտ նոյն է մովսիսականին հետ, բայց ընթերցուածները՝ անդ անդ եզրասի ձեռքով գրուածներէն կը տարբերին։ Սամարացւոց օրինակը՝ տեղ տեղ ալ եօթանասունից թարգմանութեանը կը համաձայնի։

Կայ նաև քաղդէական թարգմանութիւն, Հրէայ րաբունեաց մեկնութեամբք։

Ասորւոց թարգմանութիւն՝ որ պղ·ու չաւորութեանը, հնութեանն ու եբրայական լեզուին մերձաւորութեանը համար խիստ յարգի է և կարծի թէ Քրիստոսէ առաջ թարգմանուած ըլլայ։

Բայց ամենէն հնագոյնն՝ եօթանասնից թարգմանութիւնն է, զոր Պտղոմէոս եղբայրասէր Եգիպտոսի թագաւորը՝ Քրիստոսէ 273 տարի յառաջ հրէից Եղիազար քահանայապետէն ղրկած 72 (12 ցեղերէն 6ական անձինք) եբրայական և հելլէնական լեզուաց խիստ ներհուն րաբունիներու ձեռօք թարգմանել տուաւ։

Ուրիշ թարգմանութիւններն են,

— Թարգմանութիւն Ակիւղասայ Պոնտացւոյ։ նախ քրիստոնեայ՝ յետոյ 'ի հրէութիւն դարձած, թարգմանեաց 'ի յոյն, և վասն ատելութեան որ ունէր ընդդէմ Յիսուսի Քրիստոսի, նորա նկատմամբ եղած վկայութիւնները կ'աղօտացնէ։

— Թարգմանութիւն Թէոդոտիոնի 'ի յոյն, որ Իբէոնեան ու Հրէական աղանդի մէջ ինկաւ յամի փրկչին 183:

— Թարգմանութիւն Սիմաքոսի 'ի յոյն, որն որ այս ալ Իբէոնեան հրէամիտ աղանդին մէջն լի-նալով՝ Քրիստոսի համար եղած վկայութիւնները նսեմացոյց: Ասոնց մէջ Թէոդոտիոնի թարգմանութիւնը միայն ընդունելի էր Հայոց եկեղեցւոյ:

— Թարգմանութիւն մը յերիքով՝ յունարէնի, հեղինակն անծանօթ:

— Թարգմանութիւն մը եւս 'ի Նիկոպոլիս՝ յունարէնի:

Այս թարգմանութիւններն ամենն ալ իրենց բնագիր եբրայականին հետ՝ Որոգինէս Աղէքսանդրացին երրորդ դարուն՝ մէկ մատեանի մէջ խմբագրեց եւ ըսուեցան քառիջեան, վեցիջեան, ութիջեան: Չորս տարբեր թարգմանութիւն քովէ քով դաս դաս էջերու մէջ խմբագրած մատենին՝ ըսուեցաւ քառէջեան: Վեց տարբեր թարգմանութիւն քովէ քով դաս դաս էջերու մէջ խմբագրուած մատենին՝ ըսուեցաւ վեցէջեան: Ութ տարբեր թարգմանութիւն քովէ քով դաս դաս էջից մէջ խմբագրուած մատենին՝ ըսուեցաւ Ութէջեան: Որոգինէսի այս աշխատութիւնը մեկնչաց եւ թարգմանչաց շատ օգտակար եղաւ:

Հայերէն հին Կտակարանը Ե. դարուն Մեծին Սահակայ եւ Մեծին Մեսրոպայ ջանիւք եւ իրենց ձեռնասուն աշակերտաց գործակցութեամբն եօթանասնից թարգմանութեան ընտրելագոյն օ-

ընձայէ մը թարգմանուեցաւ, Արաբացի եւ Ասորի թարգմանութեանց եւ Եբրայական բնագրին հետ բաղդատելով։ Նաեւ Նոր Կտակարանի ըսքանչելի թարգմանութիւնն ալ պարգեւեցին մեզ նոյն երանաշնորհ վարդապետք մեր ։

Այս թարգմանութեան յարգն իմանալու համար բաւական է Լըպրէօն եւ Լաքրոզ երկու քաջահմուտ Գաղղիացւոց գովեստը լսել այս կերպով՝ թէ արդիւնական օրինակը՝ ՀԱՅԵՐԷՆՈՎ կարելի է ստրագրել. եւ թէ — Հայերէն թարգմանութիւնը՝ գլխոյ է ամենայն թարգմանութեանց — ։

— Նշանաւոր թարգմանութիւն մ'ալ կայ լատիներէն լեզուաւ՝ Հերոնիմոսի ձեռքով եղած, որ մեր թարգմանչաց ժամանակակից է։ Հերոնիմոսի այս թարգմանութեան վրայ այլք Սիրաքայ, Մակաբայեցւոց Բարուքայ թարգմանութիւններն ալ աւելցուցին և ըսուեցաւ վուլկաթայ՝ որ հրատարակեալ կը նշանակէ, եւ որ այժմ Լատին եկեղեցիին մէջ կը գործածուի ։

Առանցմէ զատ հարիւրաւոր լեզուներու ալ թարգմանուեցան Ս. գիրք, զանազան ազգաց եւ անձանց ձեռօք, բայց շատերուն հարազատութիւնը խնդրոյ տակ՝ վասն որոյ և զգուշանալի է ։

ԺԶ. Ինչպէս ամեն լեզու, նոյնպէս եբրայական լեզուն ալ յատկութիւններ ունի՝ որոց շատը թարգմանիչք եբրայական ոճով աւանդեցին մեզ։ Ս. գիրքը լաւ հասկնալու համար՝ ասոնց վրայ քիչ շատ տեղեկութիւն ունենալու է. զորօրինակ. Մատթէոսայ Ա. 2. “ զՅակոբ [illegible]

սինքն, մի՛ տացի. Մարկ. Ը. 12.

“ Երդուայ՝ 'ի բարկութեան իմում՝ թէ մտցեն 'ի հանգիստ իմ. այսինքն մի՛ մտցեն. Սաղմ. ՂԴ. 11 ։

Բ.

ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆ

Եկեղեցին Աւանդութիւններ ալ ունի՝ զորս կը յարգէ 'ի սկզբանէ անտի ։

Աւանդութիւնն երեքի կը բաժնուի. Ա. Նախնական, Բ. Մովսիսական, Գ. Քրիստոնէական ։

Ա. Նախնական Աւանդութիւն — Մինչև Մովսէս քանի մը հազար տարի Աստուծոյ յայտնութիւնը գրով չէր աւանդուած. հապա բերանացի հայրը որդւոյն պատմելով կը բռնէին ։ Եւ պահէին այնպէս՝ ինչպէս որ Նախահարքն մեր ընդունեցին աստուածային յայտնութենէն. զոր օրինակ, աշխարհիս արարչագործութիւնը, մարդկութեան անկումը, հանդերձեալ կեանքը, հոգւոյ անմահութիւնն եւ Աստուծոյ փրկչին ձեռօք փրկութեան եւ հաշտութեան աւետիսը ։

Բ. Մովսէս՝ Քրիստոսէ 1500 տարի յառաջ Իսրայէլացւոց այս աւանդութիւններէն ամենէն յայտնի եղածները զորօրինակ, հոգւոյ անմահութիւնը, հանդերձեալ կեանքն ընդ աղօտ գրեց, վասն զի յայտնի եւ ամենուն գիտցած բաներն էին. հապա այն բաները գրեց, որոնք նոր էին իրենց. այսինքն՝ Օրէնքը ։ Մովսիսի՝ ամեն բան ժողովուրդին

գրով չըսուելուն ապացոյց նոյն իսկ իւր խօսքերն են, որ իւր վախճանելուն մօտ ըսաւ։ «Յիշեցէք զաւուրսն յաւիտենից, իմացարուք զամս ազգաց յազգս, հարց զհայր քո և պատմեսցէ քեզ. զծերս քո և ասասցեն քեզ» Բ. Օրէ. ԼԲ. 7։

Ինչպէս կերեւնայ՝ այս խօսքերն իր ըրուած գրքերը չեն ակնարկեր. վասն զի անոնցմէ շատակութիւնն ընելէն յետոյ ըսաւ այս խօսքերը։ Մովսէս՝ օրէնքը կը յեղյեղէր ժողովուրդին ականջին եւ անոնց միտքը տպաւորելու եւ չըմոռնալու համար տարեկան տօներ եւ արարողութիւններ հաստատեց։

Գ. Քրիստոսական Աւանդութիւնք, որ 'ի Քրիստոսէ եւ յառաքելոց կըսկսին։ Քրիստոսի խօսքերուն վրայ հիմնուածներուն՝ Քրիստոսական. իսկ բարեկարգութեան, բարի վարուց եւլն վերաբերեալ աւանդութիւններն որ Առաքեալներէն կըսկսին եւ կըշարունակեն՝ Եկեղեցական Աւանդութիւնք կըսուին։

Աւանդութիւններն այն ատեն ճշմարիտ են՝ երբ եկեղեցին երկար ատեն մեծ մասամբ կամ ամբողջ զանոնք միօրինակ ընդունած է։ Սուտ աւանդութիւնները ճշմարիտներէն որոշողը՝ Քրիստոսի սուրբ եկեղեցին է։ Ինչպէս ճշմարիտ աւանդութիւններ կան՝ այնպէս եւ սուտ աւանդութիւններ ալ կան։

Աւանդութիւնը Ս. Գրոց միթին տեղերուն բացատրութեանը մեծապէս կ'օգնէ։ Աւետարանը չ'գրուած. քրիստոնեայք առաքելոց բերանացի ա-

[redacted]



ւանդութեամբը պաշտեցին զՔրիստոս, եւ եթէ այս մեր Աւետարան Ս. Գիրքը գրուած ալ չըլլար՝ առաքելին միլիոնաւոր քրիստոնեայներ պիտի ըլլային հիմակուան մէջ՝ որոնք աւանդութեամբ պիտի հաւատային Քրիստոսի մարմնանալուն, յարութիւն առնելուն եւայլն ։

Առաքեալք՝ աւանդութեամբ ալ պատուէրներ տուին. ինչպէս, Պօղոս Ա. Կորն. ԺԱ. 2. «Գովեմ զձեզ. զի զամենայն ինչ զիմ յիշէք, և որպէս աւանդեցի ձեզ՝ զաւանդութիւնսն ունիցիք» ։ Նմանապէս Ա. Կորն. ԺԱ. 34. կը գրէ, «Բայց զայլ ինչ յորժամ եկից՝ յայնժամ պատուիրեցից». ըսել է որ՝ իր գրածներէն զատ՝ բերնով ալ աւանդելիքներ ունի ։

Ոսկեբերան ալ կըսէ որ առաքեալք ամէն բան գրով չաւանդեցին, շատ բաներ ալ բերնով, խօսքով եկեղեցւոյ աւանդեցին ։

Առաքեալն Յովհաննէս կը գրէ, «Բազում ինչ ունէի գրել առ ձեզ, այլ ոչ կամեցայ թղթով և դեղով գրել, զի ակն ունիմ ինքն իսկ գալ և բերան ի բերան խօսել» Բ. կաթու. 12 ։

Յուդայ առաքեալն ալ կըսէ, «Բայց դուք, սիրելի՛ք, յիշեցէ՛ք զկանխասացս բանս առաքելոցն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի». Յուդ. կաթու. 17 ։

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ Ի ՎԵՐԱՅ ԱՒԵՏԱՐԱՆՉԱՑ

## ԸՍՏ ԱՒԱՆԴՈՒԹԵԱՆ ՆԱԽՆԵԱՑ ՄԵՐՈՑ

Ա. — ՄԱՏԹԷՈՍ որ կը թարգմանուի Եբր. Նենայ կամ պարգեւ, Վարձատրութիւն. Քրիստոսի համբառնալէն ութը տարի ետքը գրեց Աւետարանը Եբրայեցերէն կամ Ասորի—Քաղդէարէն, Երուսաղէմի եկեղեցւոյն խնդրանօքը։ Ունի ԻԸ. գլուխ։

Բ. — ՄԱՐԿՈՍ աշակերտ Պետրոսի և ընթացակից Պօղոսի. Պետրոսի հրամանաւ գրեց իւր Աւետարանն Եգիպտացւոց լեզուաւ Քրիստոսի համբառնալէն տասնեւհինգ տարի ետքը։ Մարկոս՝ կը նշանակէ Բարձր պատուար կամ 'ի վերայ պանծալ կամ փայլուն, լուսաւոր։ Ունի ԺԶ. գլուխ։

Գ. — ՂՈՒԿԱՍ աշակերտ և ընթացակից Պօղոսի. Նորա հրամանաւ և Թէոփիլոս անուն մէկուն խնդրանօքը գրեց իւր Աւետարանն և Գործք Առաքելոցն՝ Անտիոք քաղաքին մէջ Ասորի լեզուաւ, Քրիստոսի համբառնալէն տասնեւօթը տարի յետոյ. բժիշկ էր արուեստիւ և Քրիստոսի եօթանասուն և երկու աշակերտաց կարգէն։

Ղուկաս՝ կը նշանակէ Յարութիւն կամ լուսաւոր։ Ունի ԻԴ. գլուխ։

Դ. — ՅՈՎՀԱՆՆԷՍ՝ Յակոբ Զեբեդեայ եղբայր. Քրիստոսի համբառնալէն յիսուն և երեք տարի ետքը գրեց իւր Աւետարանն Եփեսոս քաղաքին մէջ, Ասիոյ եկեղեցւոյն խնդրանօքը Յունարէն լեզուաւ։

Յովհաննէս՝ կը նշանակէ Շնորհաւորութիւն կամ

ղորգեանեալ՝ ի շնորհացն Աստուծոյ։ Ունի ԻԱ. գըլուխ։

Զորս Աւետարանիչներն ալ Աստուծոյ մարդանալուն աւետիսը տալով կըսկսին։

Ա. — Մատթէոս մարմնաւոր ազգաբանութիւնն այսպէս կըսկսի. «Գիրք ծննդեան Յիսուսի Քրիստոսի, որդւոյ Դաւթի որդւոյ Աբրահամու». և Աբրահամու և Դաւթի սերունդէն 'ի կուսէ ծընող Մանկան Աստուածութիւնը կիմացնէ, Եսայեայ կանխաձայնութիւնը մէջ բերելով, կը հաստատէ թէ նա է 'ի կուսէն ծնեալ Էմմանուէլն. որ ըսել է Բան Աստուծոյ մարդացեալ։

Բ. — Մարկոս կարճ խօսքով Քրիստոսի ազգաբանութիւնը՝ «Սկիզբն Աւետարանի Յիսուսի Քրիստոսի Որդւոյ Աստուծոյ» ըսելով կըսկսի և կ'անցնի Քրիստոսի կարապետին պատմութեանը։

Գ. — Ղուկաս՝ նոյն իսկ Յովհաննու կարապետին ծննդեան պատմութենէն կըսկսի և հետևաբար ճոխագոյն և երկար բանիւք Քրիստոսի ծընունդը կը պատմէ և յայտնապէս կը գրուցէ թէ նա է անժամանակ բարձրեալն Հօր Աստուածորդին՝ մարդ լինելու եկած։

Դ. — Իսկ որդին որոտման աստուածաբանն Յովհաննէս, չէ՛ թէ ըստ մարմնոյ 'ի կուսէ անհայր կուսական ծնունդէն կըսկսի, հապա անոր ըստ Աստուածութեան առ 'ի Հօրէ Աստուծոյ 'ի յանժամանակ յաւիտենից անսկզբնական և անեղական ծնունդէն կըսկսի վսեմագոյն աւետարանութեամբ։

# ՈՒՍՈՒՄՆ

# ԱՒԵՏԱՐԱՆԻ

# ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ

# ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Մովսէսի հին օրինաց նպատակը՝ Քրիստոսի Նոր օրէնքն է։*

*Հին կտակարանը՝ միջոց, Նորը՝ վախճանն է։*

*Հինն՝ օրինակ ստուերական, Նորն՝ իրական ճշմարտութիւնն է։*

*Հինը՝ նմանութիւն, Նորն՝ էակութիւն։*

*Առաջինը՝ Մեսիային գալստեանը համար խոստման ընդունարան. Երկրորդը՝ յաշխարհ գալստեան աստուածային խոստման կատարումին աւետիսը պարունակողն է, ուստի և ըսուեցաւ*

## ԱՒԵՏԱՐԱՆ

### ՔԱՐՈԶ ՇՆՈՐՀԱՑ ԵՒ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆ

*«Զի Օրէնքն ՚ի ձեռն Մովսիսի տուան, Շնորհք և ճշմարտութիւն ՚ի ձեռն Յիսուսի Քրիս-*

տոսի եղեն․ զի 'ի լրութենէ Նորա մեք ամենեքին առաք շնորհս փոխանակ շնորհաց» ․ որ ըսել է թէ Շնորհք ամբողջապէս Քրիստոսի վերայ էին և անոր լրութենէն շնորհք առինք փոխանակ հին կտակարանի շնորհացն, այսինքն շնորհք շնորհքի վրայ ընդունեցինք։

Թէ ի՞նչ է Նոր կտակարանը Հինին նկատմամբ՝ Օգոստինոս լաւ կը բացատրէ, «Նորը՝ Հինին մէջ ամփոփուած է կըսէ, Հինն ալ Նորին մէջ պարզուած»։ Եւ մերս Շնորհալի Հայրապետը կըսէ,

«Զհինն 'ի Նորս փոխելով
«Զստուերն 'ի լոյս ճշմարտելով։

Հին կտակարանի պատմութիւնն այսպէս կըսկըսի Մովսիսի գրչաւ, «Ի սկզբանէ արար Աստուած զերկին և զերկիր ․ ․ ․ և ասէ Աստուած եղիցի՛ լոյս, ևլն.» Ծննդ. Ա. 1.

Նոր կտակարանն ալ՝ Յովհաննու գրչով կըսկըսի այսպէս, «Ի սկզբանէ էր Բանն, և Բանն էր առ Աստուած, և Աստուած էր Բանն։ Նա էր 'ի սկզբանէ առ Աստուած» ․ Յով. Ա. 1.

Հինն՝ աշխարհի արարչագործութենէն, իսկ Նորն՝ աշխարհի արարչէն․ Հինն Աստուծոյ Բանովըն աշխարհի ստեղծումէն, Նորը՝ բարոյական աշխարհի և մարդկային սեռին նոյն Բանիւն Աստուծոյ նորոգ ստեղծումէն կըսկսի։

"Ի սկզբանն էր Բանն"։

Յովհաննու Ա. գլուխ 1 համար

Այս խօսքով իմացունել կուզէ Որդւոյն Աստուծոյ՝ Հօր Աստուծոյ հետ անսկիզբն և յաւիտենական լինելն։

"Եւ Բանն էր առ Աստուած".

Այսինքն թէ Բանն Յիսուս Քրիստոս, 'ի Հօրէ՝ Որդւոյ անձնաւորութեամբ կը զանազանի, ուրիշ անձն է՝ առ Աստուած և Աստուած է և Որդի Աստուծոյ, ըստ այնմ թէ՝

"Եւ Աստուած էր Բանն".

Հաւասար Հօր Աստուծոյ և անբաժանելի, ինչպէս նաև ընդ Հոգւոյն Աստուծոյ, որուն պատմութիւնն Աւետարանիչն այս տեղ չըներ. ըստ որում Բանին Աստուծոյ վրայ է խօսքը։

"Նա էր 'ի սկզբանն առ Աստուած"։

Հոս Բանին Աստուծոյ՝ ընդ Հօր և ընդ Հոգւոյն յաւիտենականութիւնն և անբաժանելի միասնականութիւնն և համագոյակից լինելը կը կրկնէ Աւետարանիչը։

"Ամենայն ինչ նովաւ եղեւ, և առանց նորա եղեւ և ոչ ինչ որ ինչ եղեւն". Գլ. Ա. 2։

Յաւիտենականն իւր Բանովը ստեղծ զաշխարհ և ամենայն ինչ որ զմեզ կը պահէ, կը սնուցանէ, և կը զուարճացնէ. մեր մարմինը, մեր հոգին, կեանքը, ամեն բան Անով եղաւ, երկինք, երկիր, երևելիք և աներևոյթք. ուստի և ամեն բան՝ բաց 'ի Բանէն Աստուծոյ՝ արարած է Աստուծոյ Բանին. իսկ Բանն՝ յաւիտենական է իբ-

րև զԱստուած — Հայր և զՀոգին . առանց Բանին Աստուծոյ՝ եղած բան մը չիկայ ։

«Նովաւ կեանք էր» Յվ. Ա. 3 ։

Ինչպէս շինուածք մը՝ ճարտարապետին մտաց մէջ, անանկ ալ, ինչ որ կեանք կենդանութիւն կըսուի՝ Աստուծոյ Բանին մէջ կենդանի էր, կեանք բնական, կեանք հոգեւորական, կեանք շնորհաց և փառաց, ուսկ՚ց հրեշտակք և մարդիկ կեանք առին, յորմէ անկան կէսք ՚ի հրեշտակաց, և մարդիկ անձնազանդութեամբ, և որ կրկին առ ամենայն հաւատացելոց տրուեցաւ Շնորհօք և Արդեամբք չարչարանաց մարմնացեալ Բանին . Աղբիւր կենաց է նա, և ամեն մարդ անով կ՚ապրի ։

«Եւ կեանք էր լոյս մարդկան» .

Այսինքն թէ կեանքը՝ որ է Բանն Աստուած՝ գերագոյն իմաստութիւն է, որով ամեն մարդ կը լուսաւորուի, և աշխարհի մեղաց խաւարին մէջ ալ այս Աստուածային իմաստութեան լոյսը կը ճառագայթէ ։ Աստուածային լոյս է նա ո՛չ միայն իր աստուածային էութեան մէջ, այլ և ներգործական շնորհաց միջոցաւ իր մարդեղութեան մէջ ալ լոյս է մեր կեանքը ու ընթացքը լուսաւորելով . Նորա վարդապետութիւնները լոյս են, որ կենաց համնելու համար՝ մեզի մութ ճամբաները կը լուսաւորեն . ըստ այնմ թէ «Էիք երբեմն խաւար և այժմ լոյս էք» . Եփես. Ե. 8 .

Չարերը այս լոյսէն կը փախչին ու խաւարը լոյսէն աւելի կը սիրեն . բայց որչափ որ խաւարէ

մէջ մտնելն, Քրիստոս անոնց ետեւէն կուգայ, երենց խղճմտանքն ալ կը վկայէ որ լուսէն չեն կըրնար բոլորովին փախչիլ, միայն թէ աչքերնին կը գոցեն՝ որ լոյսը չը տեսնեն. ի՞նչ է խիղճը. — այս լուսոյն կարապետն է. և

“Լոյսն ի խաւարի անդ՝ լուսաւորէր” Գլ. Ա. 5 բառերն ալ՝ զայս հասկցնել կուգէ.

« Եւ խաւար նմա ո՛չ եղեւ հասու ».

Այսինքն թէ՝ խաւարը չը կրնար մթնցնել զանի. խաւարը՝ նորա դէմ բաւական զօրութիւն չունի և չը կրնար յաղթել անոր.

“Եղեւ այր մի առաքեալ յԱստուծոյ, անուն նմա Յովհաննէս. սա եկն ի վկայութիւն, զի վկայեսցէ վասըն լուսոյն, զի ամենեքին հաւատասցեն նովաւ”. Գլ. Ա. 6.

Յովհաննէս կարապետ՝ առաքէն այր մեծ և սքանչելի, խստակրօն, արդար, յարգանդէ սըրբեալ. անմեղ ապաշխարող. սա եկաւ վկայելու համար ու անոր վկայութիւնը ճշմարիտ է.

“Ո՛չ էր նա լոյսն, այլ զի վկայեսցէ վասն լուսոյն”.

Լոյսն ինք չէր, իրաւ ինք լուսաւորուած էր՝ բայց արեգակն ինք չէր. ինչպէս աշխարհիս վրայ ամենէն բարձր լեռն, առաւօտ կանուխ ամեն տեղէ յառաջ կը լուսաւորուի՝ բայց արև չէ և չը կրնար ըլլալ. այսպէս Յովհաննէս ամենէն յառաջ լուսաւորուած էր՝ բայց «Ո՛չ էր նա լոյսն». ո՞վ էր հապա լոյսն. —

«Էր լոյսն ճշմարիտ, որ լուսաւոր առնէ զամենայն մարդ, որ գալոց է յաշխարհ». Գլ. Ա. 9. Յաշխարհի

էր, և աշխարհ նովաւ եղև, և աշխարհ զնա ոչ ծանեաւ„ Գլ. Ա. 10։

Անիկայ պատմութիւնմ'է առաւել՝ քան յայտնութիւն. վասն զի, աշխարհս ինքն իրեն կարողութիւն չունէր զԲանն Աստուած ճանչնալու երբև Միածին Ծնունդ Հօր 'ի յաւիտենից։ Միայն մարդկային բանականութեան կատարելութեան խիստ կարօտ լինելը կզգային իմաստունք, բայց չէին կրնար գիտնալ՝ թէ Բանն Աստուծոյ է միմիայն գաղափար և նպատակ կատարելութեան բանին մարդկութեան։ Բնական տրամաբանութեան անծանօթ իրերը ճանչնալու երեք ճամբով իսկ Ս. Երրորդութեան խորհուրդը չէին կըրնար ճանչնալ. ո՛չ պատճառէն՝ վասն զի Ս. Երրորդութիւնը պատճառ չունի. ո՛չ գործքէն՝ վասն զի արդարև արարածներէն մէկ արարիչ մը կը գտնուի, բայց ո՛չ երեք անձինք. ո՛չ ալ բաղդատութեան ճամբով կը մակաբերուի՝ վասն զի բաց 'ի յայտնութենէ և հաւատքէ բնաւ նմանութեան բաղդատութեամբ՝ բաղդատելի տեսակ չունի։

Աստուած Հին կտակարանի մէջ միայն շատ լոյս սփռած է երից անձանց մասին. "Արասցուք մարդ ըստ պատկերի մերում և նմանութեան„ Ծննդ. Ա. "Ասաց Տէր ցՏէր իմ. "Ողորմութեամբ Տեառն լի եղեւ երկիր, և Բանիւ Տեառն երկինք հաստատեցան և Հոգւով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա„ Սաղմ. ԺԹ. 1։ ԼԲ. 6.

Սակայն և 'ի վերայ այսր ամենայնի, առանց

յայտնութեան քրիստոնական հաւատոյ անհնար էր երից անձանց վրայ յատուկ գաղափար ունենալ «Զաստուած ոչ ոք ետես երբէք, բայց Միածինն Որդի որ է ի ծոց Հօր, նա պատմեաց». Յով. Ա. 18։ «Ո՛չ ոք ճանաչէ զՈրդի, եթէ ոչ Հայր, և ոչ զՀայր ոք ճանաչէ, եթէ ոչ Որդի, և ում Որդին կամիցի յայտնել». Մատթ. ԺԱ. 27։ Բայց և այնպէս՝ այս խօսքը յանդիմանութիւն է միանգամայն անոնց՝ որ զԱստուած չեն ճանչնար, մինչդեռ բնութիւնն իսկ կ'ուսուցանէ թէ այս արարածներուն ստեղծող էակ մը կայ. ինչպէս շատերը ճանչցան՝ առանց Աստուծոյ ընտրեալ ժողովուրդին մէջն ըլլալու, որք կը տեսնային թէ Աստուած իւր զօրութեամբըն յաշխարհի էր, և ամէն բան անով կըլլար։

«Յիւրսն եկն և իւրքն զնա ոչ ընկալան». Յով. Ա. 11։

Թէպէտ ամէն ազգ և աշխարհի ամէն կողմ իւրն է. բայց մասնաւորապէս իւր ընտրած ժողովուրդին մէջն եկաւ, որուն մէջ «Բազում մասամբք և բազում օրինակօք կանխաւ խօսեցաւ». Եբր. Ա. 1. Աբրահամէն սկսելով յայտնեց ինքզինքը, «Աբրահամ հայր ձեր ցանկացաւ տեսանել զօրն իմ, ետես և ուրախ եղեւ». Յով. Ը. 56. «Ի զաւակի քում օրհնեսցին ամենայն ազգք երկրի». Ծննդ. ԻԲ. 18։

Յովսէփ՝ եղբայրներէն վաճառուելով. Մովսէս՝ ժողովուրդը գերութենէ ազատելով. Յեսու՝ աւետեաց երկիրը մուծանելով. Դաւիթ՝ բազմայաղթութեամբ. Սողոմոն՝ իմաստութեամբ և փառօք. Սամուէլ՝ հեզութեամբ. ասոնք ամէնքը օրինակ էին Քրիստոսի։ Պղնձեայ օձն յանապա-

տին՝ օրինակ խաչին Քրիստոսի․ Մանանայն՝ Հաղորդութեան։ Մարգարէից խօսքերն և Դանիէլ՝ որ օրօքն ու տարիովը Քրիստոսի գալուստը գուշակեց․ այսպէս՝ "Ցէարան ենի եա իարքն ջնա ո՛ւ ընկաըւն„․ մինչև անգամ գիտէին թէ 'ի Բէթլէհէմ հրէաստանի պիտի ծնանէր, և Դաւիթ յայտնապէս ըսած էր թէ Մեսիային թագաւորութիւնը հոգևոր և Աստուածային պիտի ըլլայ։ "Համբարձէ՛ք իշխանք զդրունս ձեր 'ի վեր, համբարձցին դրունք յաւիտենից եւ մտցէ թագաւոր փառաց․— Ո՞վ է սա թագաւոր փառաց․— Տէր Սաբաւովթ, այինքն Տէր զօրութեանց․ սա ինքն է թագաւոր փառաց„․ Սաղմ․ ԻԳ։ Ասկէց կարող էին մակաբերել հրեայք թէ ո՞ր պատերազմէն կուգար Տէր Սաբաւօթ, և ի՞նչ յաւիտենական և հոգևոր թագաւորութիւն կը հաստատէր։ Բայց 'ի վերայ այսըր ամենայնի չ՚ըմբռնեցին զանի։ "Ցէարան ենի„․ Քրիստոս Որդին Աստուծոյ Հօր իմաստութիւնն, ճառագայթն, լոյսն, մարդոց մէջ իբրև օտար մէկը չեկաւ, թէ՛ Իսրայէլ իւր մարգարէութեամբքըն և ստուերական օրինօք՝ և թէ՛ հեթանոսք իրենց իմաստնոց հետազօտութեամբքն Աստուծոյ լուսովն իրենց բանականութեանց լուսաւորուելու կարօտ լինելնին հասկցած էին․ ուստի Քրիստոսի լոյսը՝ իմացականութեան բանականութեան տկար լոյսը զօրացնող վսեմ և վեհ ճառագայթն է Աստուածութեան, և հետևաբար Քրիստոս օտար չէ մարդկային բանականութեան, ինչպէս նաև մարդկային բանականութիւնը օտար

Չէ անընդունակ կամ ժխտող չէ Աստուածային լու-սոյն՝ որ է Բանն Աստուծոյ ։

«Իսկ որք ընկալան զնա, ետ նոցա իշխանութիւն՝ որդիս Աստուծոյ լինել՝ որոց հաւատացեն յա-նուն նորա» Գլ. Ա. 12 ։

Հրեայ և հեթանոս, որոնք որ զանի ընդու-նեցին և իրեն հաւատացին, իւր որդեգիր ըրաւ և զանոնք որդի անուանելով, հաճեցաւ որ նո-ցա հայր ալ ըսուի իւր երկնաւոր Հայրը ։

«Որք ո՛չ յարենէ եւ ո՛չ ՚ի կամաց մարմնոյ եւ ո՛չ ՚ի կամաց առն, այլ յԱստուծոյ ծնան» . Գլ. Ա. 13 ։

Այս որդեգրութեան իրաւունքը՝ բնական ծննդեան իրաւամբք չստացուիր . զաւակ մը հօր-մէն մարմնաւորապէս ծնելուն համար, նորա որ-դի ըլլալու իրաւունքը կըստանայ . բայց այս գերբնական և աստուածային ծնունդ է, ինչպէս առաքեալը կըսէ, «Նորոգիլ հոգւովք մտաց, եւ զ-գենուլ զնոր մարդն, որ ըստ Աստուծոյ հաստատեալ է արդարութեամբ եւ սրբութեամբ ճշմարտութեանն» Եփե. Դ. 24 ։

«Եւ Բանն մարմին եղեւ եւ բնակեաց ՚ի մեզ, եւ տեսաք զփառս նորա, զփառս՝ իբրեւ զմիածնի, ա-ռ՚ի Հօրէ, լի շնորհօք եւ ճշմարտութեամբ» . Գլ. Ա. 14 ։

Ըսաւ թէ Բանն իրեններուն եկաւ, զինքը չընդունեցին . հիմայ կը պատմէ թէ ինչպէս ե-կաւ . որ է մարմին առնելով, որուն փառաց ա-կանատես էր Յովհաննէս ինքն, աչքով տեսաւ նորա փառքն իբրև Հօր Աստուծմէն մէկ հատիկ զաւկի փառք, շնորհօք և ճշմարտութեամբ առ

լցեալ, և ոչ թէ Մովսէսի կամ ուրիշ մարգարէից փառացը պէս, որք Բանին սպասաւորներ էին՝ լոկ մարդ լինելով։

"Զի 'ի լրումնէ անտի նորա մեք ամենեքին առաք շնորհս փոխանակ շնորհաց„. Գւ Ա. 16։

Մարմնացեալ Բանին Աստուծոյ Աւետարանի շնորհքն տրուեցաւ մեզ հաւատացելոցս՝ Օրինաց դարու շնորհացը տեղ. մանաւանդ թէ այն օրինաց շնորհքին վրայ նոր և սքանչելի շնորհք մը աւելցուեցաւ մեր վրայ.

"Զի օրէնքն 'ի ձեռն Մովսէսի տուան, շնորհք և ճշմարտութիւն 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի եղեն„ Գւ Ա. 17.

Մովսէս մի միայն օրէնքներ հաստատեց, բայց ժողովրդեան արդարար շնորհք չէր կրնար տալ. Բանն Աստուած Յիսուս Քրիստոս մարմնացաւ՝ յաւիտենական Աստուծոյն շնորհքն և ճշմարիտ հաւատքը բաշխեց ամենուն և ամենքը անով փրկութեան որդի կըլլան։

"ԶԱստուած ո՛չ ոք ետես երբէ՛ք, բայց Միածինն Որդի, որ է 'ի ծոց Հօր, նա պատմեաց„. Գւ Ա. 18։

Մարդ չէր կրնար Աստուծոյ գոյութեան վըրայ նորա էութեան վրայ յստակ գաղափարներ տալ, վասն զի զանի տեսած չէ. և թէպէտ Ադամ, Աբրահամ, Մովսէս, Եղիա և Եսայի տեսան, բայց միայն զգալի կերպարանքի մը տակ տեսնելնուն, անոնք ալ չէին կրնար կատարեալ գաղափար տալ Աստուծոյ վրայ. ուստի Աստուած ուզելով որ կատարեալ Աստուածածանօթութիւն

ունենայ մարդ, Միածինն՝ որ 'ի ծոց Հօր, ըղըրկեց յաշխարհ, և նոյն ինքն՝ Հօր Աստուծոյ և սուրբ Հոգւոյն ճշմարտապէս հաւասար ըլլնելուն, ըստ տանելոյ մարդկային իմացականութեան, յայտնեց թէ ո՛վ և ինչ է Աստուած։

«Եւ եղև յաւուրս Հերովդէի արքային Հրէաստանի, քահանայ ոմն անուն Զաքարիա, 'ի դասուն Աբիայ և կին նորա 'ի դստերաց Ահարոնի. և անուն նորա Եղիսաբեթ»։ Ղուկ. Ա. 5։

Յակոբ Նախահայրերին Յուդայի համար ըրած մարգարէութեան համեմատ թէ "Մի՛ պակասեսցէ պետ յերանաց քոց, մինչև եկեսցէ նա՝ որոյ իւրն են հանդերձեալքն և նա է ակնկալութիւն հեթանոսաց»։ Ծննդ. խթ. 10. Ատենն եկաւ և Յուդայի ցեղէն թագաւ իշխան վերցաւ, վասն զի Հերովդէս ալ որ նոյն ժամանակը կ'իշխէր, Եդովմայեցի էր, (Երուսաղեմէն հինգ հարիւր քսան ասպարէզ հեռու այլազգեաց Ասկաղոն քաղքին մէջ ծնած) և Հռովմայեցւոց իշխանութեան ներքև իշխան կարգուած էր Հրէաստանի։

Դաւիթ շաբաթէ շաբաթ՝ վկայութեան խորանին սպասաւորութեանը համար, Ահարոնի որդիքն՝ քահանայներու քսան և չորս դասակարգութեանց կամ խումբերու բաժնած էր. ամեն դաս կամ խումբ՝ մէկ մէկ գլուխ կամ իշխան ունէր՝ որուն անունովը կը կոչուէր նոյն խումբը մինչև վերջը։

Զաքարիա քահանայն ալ՝ Դաւթի ատեն կարգուած Աբիա դասագլուխին կարգէն էր, (և այս

դասագլուխները քահանայապետ ալ կըսուէին բաց 'ի գլխաւոր քահանայապետէն) . Իւր կինն ալ Ահարոնի աղջիկներէն էր , Եղիսաբէթ անունով :

«Եւ էին արդարք երկոքին առաջի Աստուծոյ , գնային յամենայն պատուիրանս և յիրաւունս Տեառն՝ անարատք» . Ղուկ. Գլ. Ա. 6 :

Երկուքն ալ Զաքարիա և Եղիսաբէթ , Աստուծոյ մանաւոր խնամոյն արժանաւոր ըլլալու առաքինութեամբ կապրէին , ընտիր , երկիւղած ու աստուածավախ էին և շատ ալ բարեպաշտ . սակայն ,

«Եւ ոչ գոյր նոցա որդեակ , զի էր Եղիսաբէթ ամուլ , և երկոքեան անցեալ էին զաւուրբք իւրեանց» :

«Եւ եղեւ 'ի քահանայանալն նորա ըստ կարգի աւուրցն հասանելոյ առաջի Աստուծոյ . ըստ օրինի քահանայութեանն՝ ելանել նմա խունկ արկանել՝ մտեալ 'ի Տաճարն Տեառն» . Ղուկ. Ա. 8—9 :

Եւ որովհետև ամեն դասի կամ խումբի մէջ քահանայներ կային , ուստի շփոթութիւն չ'ձգելու համար վիճակաւ կ'ընտրուէին նոյն խումբին մէջէն մէկ մէկ անձն , խնկարկութիւն և աղօթք ընելու համար՝ Տաճարին այն մասին մէջ որ Սրբութիւն կըսուէր . Զաքարիա ալ վիճակաւ նոյն օրն քահանայութեամբ սկսաւ Տիրոջ Տաճարին մէջ խնկարկել .

«Եւ ամենայն բազմութիւն ժողովրդեանն կային յաղօթս արտաքոյ 'ի ժամ խնկոցն» . Գլ. Ա. 10 :

*Սովորութիւն էր որ երբ քահանայն խնկարկութեան և աղօթից պաշտօն կատարէր, ժողովուրդն ալ, տաճարին չուրջ գտնուած գաւիթներուն մէջ աղօթքի կ՚կենային. այս սովորութեամբ Զաքարիայ խնկարկութեան միջոցին, ժողովուրդն դուրսը գաւիթներու մէջ կեցած աղօթք կ՚ընէին։*

«Եւ երեւեցաւ նմա հրեշտակ Տեառն, զի կայր ընդ աջմէ սեղանոյ խնկոցն. և խռովեցաւ Զաքարիա իբրեւ ետես, և անկաւ ահ 'ի վերայ նորա»։ Գլ. Ա. 10—12։

*Սեղան խնկոցը՝ որ ողջակիզաց սեղանէն և առաջաւորութեան հացին սեղանէն զատ սեղան մ՚էր, վարագուրին առջևն կըլլար, որով Սրբութիւն Սրբութեանցը՝ տաճարէն կ՚բաժնուէր։ Հոն քահանայն, օրն երկու անգամ կ՚մտնէր և խունկ ծխելէն վերջ, տաճարին դուռը կ՚ելնէր և հոն գաւիթներու մէջ աղօթքի կեցող ժողովրդեան օրհնութիւն կուտար. Երբ Զաքարիա ալ այսպէս նոյն խնկոց Սեղանոյն առջև կ՚խնկարկէր, մէյ մ՚ալ հրեշտակ Տեառն եկաւ Սեղանին աջ կողմը կեցաւ. Զաքարիա այս տեսածին պէս սարսափեցաւ այնպէս որ հրեշտակն զինքն անմիջապէս քաջալերեց։*

«Ասէ ցնա հրեշտակն Տեառն. Մի՛ երկնչիր, Զաքարիա, զի լուեալ եղեն աղօթք քո, և կին քո Եղիսաբեթ ծնցի քեզ որդի, և կոչեսցես զանուն նորա Յովհաննէս։ Եւ եղիցի քեզ ուրախութիւն և ցնծութիւն, և բազումք 'ի ծննդեան նորա խնդասցեն։ Զի եղիցի

եծ առաջի Տեառն, և գինի և օղի մ' արբցէ, և Հոգւով Սրբով լցցի անդստին յորովայնէ մօր իւրոյ։ Եւ զբազումս յորդւոցն Իսրայէլի դարձուսցէ ՚ի Տէր Աստուած իւրեանց։ Եւ ինքն երթիցէ առաջի նորա հոգւով զօրութեամբ Եղիայի. դարձուցանել զսիրտս հարց յորդիս և զանհաւանս յիմաստութիւն արդարոց. պատրաստել Տեառն ժողովուրդ կազմեալ ։ Ա. 13–17.

*Մի՛ վախնար կըսէ հրեշտակը քու աղօթքդ լսեց և ահա ՚ի նշան Աստուծոյ կողմանէ կաւետեմ քեզ որ քու կինդ Եղիսաբեթ տղայ մը պիտի ունենայ, նորա անունը Յովհաննէս պիտի դընես, և քեզ մեծ խնդութիւն պիտի պատճառէ. շատերն ալ նորա ծննդեան առթիւ պիտի ուրախանան ։*

*Եւ ըստ որում Զաքարիայ աղօթքը միանգամայն և ժողովուրդին մեղաց թողութեան համար էր, ահա Աստուած ալ նորա քաւութիւնը և փըրկիչը կարապետողին ծնանիլը կիմացունէ, որ Աբրահամու, Յակոբայ և Աստուածապաշտ նախահարց սիրտերը՝ իրենց աստուածպաշտութենէ հեռացող զաւակացն դարձունելու պիտի գայ և անհաւատներն ալ արդարոց հաւատքին պիտի մօտեցնէ. և այսպէս՝ Տիրոջ ժողովուրդ պիտի պատրաստէ. վասն զի մօրը արգանդէն սկսելով Ս. Հոգիով պիտի լեցուի, և Եղիայի հոգիովն ու անոր զօրութեամբն պիտի գայ որ Տիրոջը առջևէն երթայ, և ասոր համար է՝ որ կարապետ ալ ըսուեցաւ Մկրտիչն Յովհաննէս ։ Այս ալ ըսաւ հրեշտակը որ ուխտաւորներու սովորութեան*

*համեմատ օղի և գինի չ'ըմպելի խմէ, ուխտաւոր Աստուծոյ ըլլալով։*

«Եւ ասէ Զաքարիա ց'հրեշտակն, և ի՞ւ գիտացից զայդ, զի ես ծեր եմ և կին իմ անցեալ զաւուրբք»։ Ղւ. Ա. 18։

*Զաքարիա ծեր ըլլալով չ'կրցաւ մէկէն 'ի մէկ հաւատալ, և Աբրահամու և Գեդէոնի պէս նշան մը կուզէր, որ գիտնայ թէ պատգամն Աստուծմէ է.*

«Պատասխանի ետ հրեշտակն և ասէ ցնա. ես եմ Գաբրիէլ որ կամ առաջի Աստուծոյ, եւ առաքեցայ խօսել ընդ քեզ, աւետարանել քեզ զայդ։ Եւ ահա եղիցիս համր և մի կարասցես խօսել մինչև ցօրն՝ յորում այդ լինիցի, փոխանակ զի ոչ հաւատացեր բանից իմոց՝ որք լցցին 'ի ժամանակի իւրեանց»։ Ղւ. Ա. 19—20։

*Հրեշտակը Աստուծմէ ղրկուած ու նորա Գաբրիէլ ծառան սպասաւորն ըլլալը յայտնելէն վերջը՝ նշան մը տուաւ անոր որ 'ի պատիժ իւր անհաւատութեանց՝ մինչև տղայքն ծնանելը ոչ ևս կարենայ խօսիլ։*

«Եւ ժողովուրդն ակն ունէր Զաքարիայ, և զարմանային ընդ յամելն նորա 'ի տաճարին։ Եւ իբրև ել ոչ կարէր խօսել ընդ նոսա. եւ իմացան թէ տեսիլ ետես 'ի տաճարին, եւ նա նշանացի խօսէր ընդ նոսա, եւ կայր պապանձեալ»։ Ղւ. Ա. 21—23։

*Զաքարիայի այսպէս հրեշտակէն հետ խօսքի բռնուած ատեն՝ ժամանակն երկնցաւ, այնպէս որ դուրսը դաւթին մէջ աղօթող ժողովուրդը*

տաճարին մէջ նորա ուշանալուն վրայ կը զարմանար ։ Եւ անա ելաւ դուրս , բայց նշանացի խօսելէն հասկցան որ տեսիլ մը տեսած պիտի ըլլար ։ Զաքարիայի նշանացի խօսելուն վրայ , ոմանք կըսեն թէ , թէ՛ համր էր և թէ խուլ , ինչպէս որ յունարէն (κωφος) բառն ալ այս կրկին նշանակութիւնը կու տայ ։

Եւ եղեւ իբրեւ լցան աւուրք պաշտաման նորա , գնաց 'ի տուն իւր ։ Գլ. Ա. 23 ։

Եւ երբոր Զաքարիա իւր շաբաթական սպասաւորութիւնն լմնցուց , տուն դարձաւ ։

" Եւ յետ աւուրցն այնոցիկ , յղացաւ Եղիսաբեթ կին նորա , և թագուցանէր զանձն ամիսս հինգ , եւ ասէր ։ Զի՛նչ գործ գործեաց ընդ իս Տէր , յաւուրս յորս հաճեցաւ յիս՝ բառնալ զնախատինս իմ 'ի մարդկանէ " Գլ. Ա. 24—25 ։

Ժամանակին՝ հրեշտակին ըսածին պէս Եղիսաբէթ յղացաւ , բայց ծերութեան մէջ այսպիսի յղութիւն մը նշանաւոր եւ անսովոր ըլլալուն , ինքզինքը հինգ ամիս պահեց , թէպէտ և ուրախ էր ըստ որում ամլութեան նախատինքէն կազատուէր , վասնզի հրեայք մարդկային նկատմունքներով ամլութիւնը նախատինք կը համարէին ։ Այս անպատում խնդութեան մէջ ինքիրեն կըզարմանայր թէ ինչպէս Աստուած յանկարծ զինքը այսպէս մեծ նախատինքէ մը կազատէր ։

" Եւ յամսեանն վեցերորդի , առաքեցաւ Գաբրիէլ հրեշտակ՝ յԱստուծոյ 'ի քաղաք մի Գալիլեացւոց , որում անուն էր Նազարէթ ։

"Առ կոյս խօսեցեալ առն՝ որում անուն էր Յով- սէփ՝ ՚ի տանէ Դաւթի, և անուն կուսին Մարիամ. "Եւ եկեալ առ նա, ասէ. ուրախ լեր բերկրեալդ, Տէր ընդ քեզ" Ղկ. Ա. 26—28։

Եւ ահա, Եղիսաբէթի յղութենէն վեց ամիս և աշխարհիս արարչագործութենէն 4099 տարի չափ ետքը հրեշտակաց Գաբրիէլեան ըսուած ու- թերրորդ կարգէն՝ (վասնզի, իններրորդ բարձրա- գոյն կարգը Միքայէլի հրեշտակապետին անու- նով Միքայէլեան կըսուի. իսկ ութերորդ կար- գը՝ Գաբրիէլ հրեշտակապետին անունով Գաբ- րիէլեան կըսուի, որուն մէջէն իւրաքանչիւր հը- րեշտակի ալ Գաբրիէլ անունը կը տրուի, նոյն կարգին պետին անունովը.) Գաբրիէլ Հը- րեշտակապետն՝ (թերևս այն՝ որ սոյն թուա- կանէն 450 տարի յառաջ Դանիէլի երևնալով՝ «եօթանասուն եօթներորդքը» (Դանի. Թ. 24.) այսինքն Մեսիային գալուն ժամանակը գուշա- կեց.) եկաւ Գալիլեացւոց Նազարէթ քաղաքը Դաւթի ցեղէն՝ Յովսէփ անունով պարկեշտ և արդար մարդու մը խնամոցն յանձն եղեալ Մա- րիամ անունով կուսին՝ որոյ և նշանուած ալ էր, ըսաւ անոր, "Ուրախ լեր բերկրեալդ կամ ըստ յունական բնագրին "Քէխարիթօմէնի" այսինքն շնորհաւորեալ կամ շնորհազարդեալ. կամ ըստ լատինականին լի շնորհօք, Տէր ընդ քեզ" (որ բարեւելու ձև մ'է.).

"Եւ նա ընդ բանն խռովեցաւ, և խորհէր ընդ միտս՝ թէ որպիսի՛ ինչ իցէ ողջոյնս այս. Ղկ. Ա. 29.

Մարիամ որ արդէն իր սրբութեանը համար ընտելացած էր հրեշտակին, նորա ներկայութենէն չխռովիր, հապա կ'խռովի և ինքնիրեն կըմտածէ՝ թէ այս ինչ կերպ ողջոյն, բարև է: վասն զի, խոնարհ էր եւ Շնորհազարդեալ բառը՝ իրեն համար հրեշտակին բերնէն լսել՝ շատ բարձր կը համարէր:

"Եւ ասէ ցնա՛ հրեշտակն. մի՛ երկնչիր, Մարիամ, զի գտեր շնորհս յԱստուծոյ":

"Եւ ահա յղասջիր և ծնցես որդի, և կոչեսցես զանուն նորա ՅԻՍՈՒՍ":

"Նա եղիցի մեծ, և Որդի Բարձրելոյ կոչեսցի, և տացէ նմա Տէր Աստուած զաթոռն Դաւթի հօր նորա, և թագաւորեսցէ 'ի վերայ տանն Յակոբայ 'ի յաւիտեանս: Եւ թագաւորութեան նորա վախճան մի՛ լիցի". Ղկ. Ա. 31—32—33.

Հրեշտակը՝ կուսին տագնապը փարատելէն վերջը կ'սկսի մի ըստ միոջէ հասկցնել թէ 'ի յաւիտենից Բանն Աստուած՝ մարմնաւորութեամբ իրմէ պիտի ծնանի ՅԻՍՈՒՍ անուանակոչութեամբ որ Փրկիչ կը նշանակէ. Նա՝ Բարձրեալ Աստուծոյ Որդի է և Մեծ. որուն պիտի տայ Աստուած Հայր՝ Նորա Դաւիթ Հօր Աթոռն (հոգևորապէս եկեղեցին) և Յակոբայ տան (եկեղեցւոյ) վրայ յաւիտեանս պիտի թագաւորէ, անվախճան թագաւորութեամբ:

"Եւ ասէ Մարիամ ցհրեշտակն. զիա՞րդ լինիցի ինձ այդ, քանզի զայր ոչ գիտեմ". Ղկ. Ա. 34:

Ըստ որում Մարիամ սրբասուն էր և տակա-

ւթին կին եղած չէր Յովսէփայ , ինչպէս « զայր ոչ գիտեմ », խօսքէն յայտնի կ՚հասկցուի , ուստի չ՚կրնար ըմբռնել թէ՝ ինչպէս կուսական վիճակին մէջ՝ այդպիսի գերագոյն էակ մը , յաւիտենականն Աստուած, Միածինը, Բանը, յարգանդի պիտի յղանայ . և ծնանի մարմնով՝ զանմարմինն :

« Պատասխանի ետ հրեշտակն , և ասէ ցնա. Հոգին Սուրբ եկեսցէ ՚ի քեզ , և զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի ՚ի վերայ քո. քանզի և որ ծնանելոցն է ՚ի քէն Սուրբ է , և Որդի Աստուծոյ կոչեսցի » :

« Եւ ահա Եղիսաբեթ ազգական քո , և նա յղի է ՚ի ծերութեան իւրում , և այս վեցերորդ ամիս է նորա՝ որ ամուլն կոչեցեալ էր » :

« Զի ոչ տկարասցի առ յԱստուծոյ ամենայն բան ». Ղւ . Ա . 35 . 36 . 37 .

Մարիամու այս խռովացի մտածմունքն եւ զարմանքը՝ հրեշտակը փարատեց վերցուց . ըստ Եսայեայ մարգարէութեան , Աստուած նախասահմանած է՝ որ Բանն Աստուած ՚ի կուսէ ծնանի . Աստուծոյ համար՝ ծննդեան այդ պայմանը միայն վայելուչ էր. Աստուածային է ծնունդ , եւ մարդու գործակցութեան պէտք չկայ , ուստի քաջալերուէ՛, ո՛վ դու , Հոգին սուրբ պիտի գայ հանգչի վրադ , եւ Բարձրեալ Աստուծոյն զօրութիւնը՝ քու վրայ հովանի լինելով , այնպէս պիտի ծնանիս զայն՝ որ սուրբ է և ՚ի յաւիտենից ԱՍՏՈՒԾՈՅ ՈՐԴԻ է : Այսու յայտնի կ՚ըլլայ որ սոյն ամենամեծ խորհրդոյն նկատմամբ որով

Մարիամ որ արդէն իր սրբութեանը համար ընտելացած էր հրեշտակին, նորա ներկայութենէն չխռովիր, հապա կ'խռովի և ինքնիրեն կըմտածէ՝ թէ այս ինչ կերպ ողջոյն, բարև է: վասն զի, խոնարհ էր եւ Շնորհաղորդեալ բառը՝ իրեն համար հրեշտակին բերնէն լսել՝ շատ բարձր կը համարէր:

"Եւ ասէ ցնա՛ հրեշտակն. Մի՛ երկնչիր, Մարիամ, զի գտեր շնորհս յԱստուծոյ:

"Եւ ահա յղասջիր և ծնցիս որդի, և կոչեսցես զանուն նորա ՅԻՍՈՒՍ":

"Նա եղիցի մեծ, և Որդի Բարձրելոյ կոչեսցի, և տացէ նմա Տէր Աստուած զաթոռ Դաւթի հօր նորա, և թագաւորեսցէ 'ի վերայ տանն Յակոբայ 'ի յաւիտեանս: Եւ թագաւորութեան նորա վախճան մի՛ լիցի". Ղւ Ա. 31—32—33.

Հրեշտակը՝ կուսին տագնապը փարատելէն վերջը կ'սկսի մի ըստ միոջէ հասկցնել թէ 'ի յաւիտենից բանն Աստուած՝ մարմնաւորութեամբ իրմէ պիտի ծնանի ՅԻՍՈՒՍ անուանակոչութեամբ որ Փրկիչ կը նշանակէ. Նա՝ Բարձրեալ Աստուծոյ Որդի է և Մեծ. որուն պիտի տայ Աստուած Հայր՝ Նորա Դաւիթ Հօր Աթոռն (հոգևորապէս եկեղեցին) և Յակոբայ տան (եկեղեցւոյ) վրայ յաւիտեանս պիտի թագաւորէ, անվախճան թագաւորութեամբ:

"Եւ ասէ Մարիամ ցհրեշտակն. զիա՞րդ լինիցի ինձ այդ, քանզի, զայր ոչ գիտեմ". Ղւ Ա. 34:

Ըստ որում Մարիամ սրբասուն էր և տակա-

ւին կին եղած չէր Յովսէփայ , ինչպէս « զայր ոչ գիտեմ » խօսքէն յայտնի կ'հասկցուի , ուստի չ'կրնար ըմբռնել թէ՝ ինչպէս կուսական վիճակին մէջ՝ այդպիսի գերագոյն էակ մը , յաւիտենականն Աստուած, Միածին, Բանը, յարգանդի պիտի յղանայ . և ծնանի մարմնով՝ զանմարմինն :

« Պատասխանի ետ հրեշտակն , և ասէ ցնա . Հոգին սուրբ եկեսցէ ի քեզ , և զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի ի վերայ քո . քանզի և որ ծնանելոցն է ի քէն Սուրբ է , և Որդի Աստուծոյ կոչեսցի » :

« Եւ ահա Եղիսաբեթ ազգական քո, և նա յղի է ի ծերութեան իւրում , և այս վեցերորդ ամիս է նորա՝ որ ամուլն կոչեցեալ էր » :

« Զի ոչ տկարասցի առ յԱստուծոյ ամենայն բան » Ղւ. Ա. 35 - 36 - 37 .

Մարիամու այս իրաւացի մտածմունքն եւ զարմանքը՝ հրեշտակը փարատեց վերցուց . ըստ Եսայեայ մարգարէութեան , Աստուած Նախասահմանած է՝ որ Բանն Աստուած 'ի կուսէ ծնանի . Աստուծոյ համար՝ ծննդեան այդ պայմանը միայն վայելուչ էր . Աստուածային է ծնունդ , եւ մարդու գործակցութեան պէտք չկայ . ուստի քաջալերուէ՛, սի՛րտ առ, Հոգին սուրբ պիտի գայ հանգչի վրադ , եւ Բարձրեալ Աստուծոյն զօրութիւնը՝ քու վրայ հովանի լինելով , այնպէս պիտի ծնանիս զայն՝ որ սուրբ է և 'ի յաւիտենից ԱՍՏՈՒԾՈՅ ՈՐԴԻ է . Այսու յայտնի կ'ըլլայ որ սոյն ամենամեծ խորհրդոյն նկատմամբ որով

մարդկային փրկութիւնը պիտի կատարուէր, Ամենասուրբ Երրորդութեան կամքը կ'գործէ ․ եւ թէ աշխարհի փրկութիւնն ոչ Որդւով միայն , այլ եւ Հօրը եւ Հոգւով սրբով կըգլխաւորի ։

Եւ մինչ Աստուծոյ համար անկարելի բան մը կա՞յ , դու կուսութեամբ զԱստուած պիտի ծնանիս , ինչպէս որ Եղիսաբէթ ամուլ և անցեալ պառաւուրբք ազգականդ ալ՝ ’ի քէն ծնանելիք Միածին Որդւոյն ճամբայները յարդարողն (կարապետը ) պիտի ծնանի և վեց ամիս կընէ որ յղի ալ է ։

Ալ այսուհետև մի տարակուսիր, վասն զի տեսար որ ’ի մարդկանէ անհնարին կարծուածներն՝ Աստուծոյ համար խիստ հնարաւոր են։ (Ոմանք Եղիսաբէթի համար կըսեն թէ Ս. Աստուածածնի Աննա մօրը քրոջ դուստրն էր , ոմանք ալ ուրիշ ազգականութիւն կըսեն ) ։

« Եւ ասէ Մարիամ ․ Ահաւասիկ կամ աղախին Տեառն , եղիցի ինձ ըստ բանի քում , և գնաց ’ի նըմանէ հրեշտակն ․ Ա ․ 29 ։

Ալ չըստարակուսեցաւ Մարիամ եւ խոնարհութեամբ ինքզինքն աղախին Տեառն անուանելով, կսպասէր որ Տիրոջը կամքը կատարուի , որուն վրայ հրեշտակն ալ մեկնեցաւ գնաց , իբր թէ կուսին վերջնական որոշումն ու հաստատութիւնը՝ զինքը առաքող Ամենամեծ Աստուծոյն հաղորդելու ։

— —

# ԳԼՈՒԽ Ա.

ԱԶԳԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՓՐԿՉԻՆ. — ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ ՏԻՐԱՄՕՐՆ ԱՌ ԵՂԻՍԱԲԷԹ. — ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ԱՌ ՅՈՎՍԷՓ. — ԾՆՈՒՆԴ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԿԱՐԱՊԵՏԻ.



## Ա. Ազգաբանութիւն փրկչին

«Գիրք ծննդեան Յիսուսի Քրիստոսի որդւոյ Դաւթի, որդւոյ Աբրահամու». Մատթէոսի Գլուխ Ա. համար 1:

*Մատթէոս Աւետարանիչ այս գլխոյն մէջ Քրիստոսի ըստ մարմնոյ ծննդաբանութիւնը, կամ որ նոյն է, ազգաբանութիւնն՝ Աբրահամէն կըսկսի և մինչև Յուդայէն և Դաւթէ ցեղէն կոյս Մարիամին ազգականն ու խօսեցեալն՝ Յովսէփ կը լրացունէ. իսկ Ղուկաս Աւետարանիչ.*

«Եւ ինքն Յիսուս՝ էր ամաց իբրև երեսնից, որպէս՝ կարծէր որդի Յովսեփայ». Ղուկ. Գ. 23. *ըսելով՝ Մարիամի ծնողէն կըսկսի և կ՚ելնէ մինչև ՚ի Դաւիթ, յԱբրահամ, յԱդամ, մինչ իսկ և յԱստուած. ըստ այնմ «Որ յԱդամայ, որ յԱստուծոյ».* Ղուկ. Գ. 38.

«Աբրահամ ծնաւ զԻսահակ: Իսահակ ծնաւ զՅակոբ. Յակոբ ծնաւ զՅուդա և զեղբարս նորա.

Յուդա ծնաւ զՓարէս և զԶարա ի Թամարայ։ Փարէս ծնաւ զԵզրոմ։ Եզրոմ ծնաւ զԱրամ։ Արամ ծնաւ զԱմինադաբ։ Ամինադաբ ծնաւ զՆաասոն։ Նաասոն ծնաւ զՍաղմոն։ Սաղմոն ծնաւ զԲոոս ի Ռախաբայ։ Բոոս ծնաւ զՈվբէդ ի Հռութայ։ Ովբէդ ծնաւ զՅեսսէ։ Յեսսէ ծնաւ զԴաւիթ արքայ։ Դաւիթ ծնաւ զՍողոմոն ի կնոջէն Ուրիայ։ Սողոմոն ծնաւ զՌոբովամ։ Ռոբովամ ծնաւ զԱբիա։ Աբիա ծնաւ զԱսափ։ Ասափ ծնաւ զՅովսափատ։ Յովսափատ ծնաւ զՅովրամ։ Յովրամ ծնաւ զՈզիա։ Ոզիա ծնաւ զՅովաթամ։ Յովաթամ ծնաւ զԱքազ։ Աքազ ծնաւ զԵզեկիա։ Եզեկիա ծնաւ զՄանասէ։ Մանասէ ծնաւ զԱմոն։ Ամոն ծնաւ զՅովսիա։ Յովսիա ծնաւ զՅեքոնիա և զեղբարս նորա առ գերութեամբն Բաբելացւոց։

«Յետ գերութեանն Բաբելացւոց ծնաւ Յեքոնիա զՍաղաթիէլ։ Սաղաթիէլ ծնաւ զԶօրաբաբէլ։ Զօրաբաբէլ ծնաւ զԱբիուդ։ Աբիուդ ծնաւ զԵղիակիմ։ Եղիակիմ ծնաւ զԱզովր։ Ազովր ծնաւ զՍադովկ։ Սադովկ ծնաւ զԱքիմ։ Աքիմ ծնաւ զԵղիուդ։ Եղիուդ ծնաւ զԵղիազար։ Եղիազար ծնաւ զՄատթան։ Մատթան ծնաւ զՅակոբ։ Յակոբ ծնաւ զՅովսէփ այրն Մարիամայ՝ որում խօսեցեալ էր Մարիամ կոյս, յորմէ ծնաւ Յիսուս՝ որ անուանեցաւ Քրիստոս։

«Արդ. ամենայն ազգք յԱբրահամէ մինչև ի Դաւիթ, ազգք չորեքտասանք։ Եւ ի Դաւթէ մինչև ի գերութեանն Բաբելացւոց, ազգք չորեքտասանք։ Եւ ի գերութենէն Բաբելացւոց մինչև ի Քրիստոս, ազգք չորեքտասանք։» Մատթ. Ա. 2—17.

Այս ազգաբանութեան նկատմամբ, Մատթէոսի եւ Ղուկասու մէջ աներեւոյթ հակառակութիւն մը կ՚երեւի. բայց շատով կը համոզուինք՝ եթէ նկատենք

Նախ՝ որ միջանկեալ ծնունդները չեն յիշատակուած. վասն զի Ադամէն մինչեւ Ս. կոյս Մարիամ, քառասունէն աւելի դարերու կամ չորս հազար տարիներէ աւելի ժամանակի մէջ՝ եօթանասուն եւ չորս ազգ կամ ծնունդ կը յիշատակէ Ղուկաս, ինչպէս պիտի տեսնենք Յիսուսի մկրտութենէն վերջն եղած երկրորդ ազգաբանութեան մէջ։

Երկրորդ՝ Մատթէոսի յիշատակած Սաղաթիէլը՝ Յեքոնիայի որդին է, եւ Զորաբաբէլ՝ Յեքոնիայի թոռն։ Իսկ Ղուկասու յիշած Սաղաթիէլն՝ որդի է Ներեայ եւ Զորաբաբէլ թոռն Ներեայ։

Երրորդ՝ Մատթէոս երեք ամբարիշտ թագաւորայ, այսինքն, Ոքոզեայ, Յովասու, եւ Ամասիայ անուններն՝ իբրեւ անարժան՝ Քրիստոսի ազգաբանութեան ցանկին մէջ չը յիշեր։

Չորրորդ՝ Ս. կուսին հայրը Յովակիմ եւ Հեղիակիմ կամ Հեղի ալ կը կոչուէր. Յովսէփ Յակոբայ որդին էր եւ ո՛չ Հեղիին։ Ղուկաս՝ Հեղին ալ Յովսէփի իբր հայրը կը յիշէ, զոր պէտք չէ շփոթել. վասն զի, ինչպէս Օգոստինոս կըսէ, „Երեք կերպով մէկը միւսին որդի կանուանուի. առաջին որդի Արեան. երկրորդ որդի Օրինական. երրորդ՝ որդի Որդեգրական։ Այսք ուրիշ կե

որդիութիւն մ՚ ալ կ՚աւելցունեն՝ որ է որդի խնամութեան։ Աւստի Յովսէփ որդի Հեղեայ ըսելը՝ Յովսէփ որդեգրեալ փեսայութեամբ՝ Հեղեայ. կամ պարզապէս, Յովսէփ՝ Հեղեայ փեսայանալով՝ նորա, որդի համարուած ըսել է։ Իսկ Ցակոբին Հեղի ալ կոչուիլը Աւանդութենէ գիտեմք, ինչպէս նաև սուրբ գիրքէն գիտեմք՝ որ Գեդէոն՝ Յերոբաաղ ալ կոչուեցաւ, և Յուդայի Ազարիա թագաւորն՝ Ոզիա. ուստի երկու տարբեր անուն ունենալն անսովոր չէր Իսրայէլի մէջ։

Ադամէն մինչև Աբրահամ՝ Ղուկաս միայն ազգաբանած է. Աբրահամէն մինչև 'ի Դաւիթ, թէ՛ Մատթէի, թէ՛ Ղուկասու ազգաբանութիւններն իրարու յար և նման են։

Դաւիթէն մինչև 'ի Քրիստոս երկու Աւետարանչաց տուած անուններն իրարմէ կտարբերին, և Ղուկասու մէջ Մատթէոսէն աւելի տասն և հինգ անուններ կըգտնեմք։

Մատթէոս 'ի հրէից դարձող Քրիստոնէից կըգրէ իւր Աւետարանն, և այսու ազգաբանութեամբ՝ միևնոյն Դաւթի ցեղէն՝ բայց տարբեր ճիւղերէ իջած Մարիամ Ս. կուսին խօսեցեալն Յովսեփայ՝ Դաւթի որդի ըլլալն կըհաստատէ։

Իսկ Ղուկաս 'ի հեթանոսութենէ դարձող Քրիստոնէից համար գրած իւր Աւետարանին մէջ յԱռաջին Ադամն և յԱստուած կը տանի՝ երկրորդ Ադամի ցեղի պատմութիւնը, Մարիամ Ս. կուսին հօրմէն և Յովսեփայ հայրացէր Հեղէն սկսելով։

Յիսուս՝ հրէից մէջ որդի Յովսեփայ կը կար-ծուէր և այնպէս կ՚անուանուէր . ուստի, անշուշտ մինչև այն ժամանակ անվթար պահպանուած պաշտօնական Ազգային արձանագրութեանց մէջ որդի Յովսեփայ յիշուած էր . թերևս Մատթէոս ալ այդ արձանագրութենէն առած, Յիսուսի իբրև որդի Յովսեփայ՝ Դաւթի ցեղէն լինելը կը հաստատէր ըստ արձանագրութեանց . վասն զի, Յովսէփ Դաւթի՝ Սողոմոն որդւոյն ցեղէն մնացած միակ արու զաւակն և ժառանգն էր ։

Իսկ Ղուկաս՝ խմացունելով միանգամայն թէ Յիսուս ո՛չ Յովսեփայ՝ այլ Մարիամայ հրաշալի զա-ւակն էր՝ Մարիամին ցեղահամարը կը նէ . որով կ՚հասկցուի թէ Դաւթի Նաթան որդիէն կ՚իջնէ, եւ է իսկապէս որդի Դաւթի ։ Դաւիթ՝ կը նշա-նակէ "սիրալի" ։

Ոմանք կ՚կարծեն թէ Մատթէոսի՝ Քրիստոսի ցեղահամարը տասն և չորսական ազգերու խում-բերու բաժնելուն պատճառը Դաւթի անուանին եբրայեցւոց հին գրերով տասն և չորս նշանա-կելն է . ըստ ոմանց ալ Աստուծոյ արարչագոր-ծութիւնն եօթն աւուր մէջ կատարուած ըլլալով՝ եօթն և հետևաբար տասն եւ չորս թիւերն՝ եբ-րայեցւոց մէջ սրբազան կը համարուէր, եւ թերևս այս կերպին եօթն թիւերու մէջ բովանդակելու համար, Տեառն մերոյ ըստ 'ի մարմնոյ նախնեաց մէկ քանիները՝ յիշուած չըլլան, կըսեն .

Ահա՛, այս ժամանակէն 'ի վեր իսրայելացւոց ցեղահամարն ոչ ևս կարելի է ընել, զի այն ար-

ձանագրութիւնները կորսուած են. և Հրէից մէջ ցեղերն անյայտ են. ուստի, պարապ տեղը կըսպասեն Հրեայք Մեսիային, զի Մեսիային՝ Դաւթի ցեղէն լինելով՝ Դաւթի ցեղն անկարելի է գտնել այսօր: Հրէից քահանայապետք և դպիրք որ այնչափ հակառակեցան Քրիստոսի, չկրցին նորա Դաւթի ցեղէն լինելուն դէմ խօսիլ, ուստի, աւելորդ է այժմու անհաւատից խնդրմանքը. վասն զի, ժամանակին խիստ մօտ եղածներն իսկ չըհամարձակեցան յայամ մասին, որոնք կարող էին իրենց ցեղերու ազգաբանութեան արձանագրութեամբ հակառակիլ՝ եթէ Քրիստոս Դաւթի ցեղէն չըլլար. մանաւանդ թէ ամեն ցեղերու ներունդք յայտնի էին յայնժամ, ինչպէս որ Յովսեպոս ժամանակակիցն իւր ցեղին համար կըսէ: Այս պէս ահա՛ Աբրահամու օրհնեալ զաւակովն կ՚օրհնուին ամենայն ազգք երկրի. ըստ այնմ թէ «՚ի զաւակի քում օրհնեսցին ամենայն ազգք երկրի» Ծննդ. ԺԲ. 3:

«Եւ Յիսուսի Քրիստոսի ծնունդն՝ էր այսպէս. խօսեցեալ զ՚մայր նորա Մարիամ Յովսեփու, մինչչև եկեալ առ միմեանս՝ գտաւ յղացեալ ՚ի Հոգւոյն սրբոյ» Մտթ. Ա. 18:

Գաբրիէլի աւետօքն ըստ վերոյիշատակեալ ազգաբանութեան՝ Հոգւով սրբով յղացաւ Մարիամ՝ առանց գործակցութեան Յովսեփու, որուն նշանուած էր.

—

## Բ. Այցելութիւն Տիրամօրն առ Եղիսաբէթ

Յարուցեալ Մարիամ յաւուրսն յայնոսիկ, գնաց ՚ի լեռնակողմն փութապէս ՚ի քաղաքն Յուդայ։ Եմուտ ՚ի տուն Զաքարիայ, և ետ ողջոյն Եղիսաբեթի. Եւ եղև, իբրև լուաւ զողջոյնն Մարիամու Եղիսաբեթ, խաղաց մանուկն յորովայնի նորա։ Եւ լցաւ Եղիսաբեթ Հոգւովն Սրբով. Եւ ՚ի ձայն բարձր աղաղակեաց եւ ասէ. Օրհնեալ ես դու ՚ի կանայս, և օրհնեալ է պտուղ որովայնի քո։ Եւ ուստի՞ է ինձ այս, զի եկեսցէ մայր Տեառն իմոյ առ իս։ Ղուկ. 39 – 43.

*Մարիամ հրեշտակէն լսածին պէս՝ որ իւր Եղիսաբէթ ազգականը՝ ծեր և ամուլ վիճակին մէջ յղացած է, կ'աճապարէ եւ շուտ Յուդայի (ըստ ոմանց) Քեբրոն քաղաքը կըհասնի։*

*Կըմտնէ Զաքարիայի տունը, կ'ողջունէ զԵղիսաբէթ. ուն որ ողջոյնն ընդունածին պէս՝ զաւակն իւր արգանդին մէջ կ'երկրպագէ՝ յարգանդի կուսին յղացեալ Յիսուս Փրկչին, որուն կարապետելու համար նախ քան զայն պիտի ծնանէր։*

*Եղիսաբէթ զգաց զայս եւ Հոգւով սրբով լցուած աղաղակեց առ Մարիամ՝ թէ ինքը քան զամենայն կանայս օրհնեալ է. (այս պատճառաւ է որ եկեղեցին ալ "Ամենօրհնեալ կոյս" կանուանէ զՄարիամ), եւ այս ինչ բան է որ Տիրոջս մայրն ինձի կուգայ։ Ուսկից առնելով եկե-*

զեցին այլ՝ Աստուածամայր, Տիրամայր, Աստուածածին կ'անուանէ զինքն զՄարիամ կոյսն ։ Բայց Նեստոր՝ 'ի կուսէ ծնեալ Քրիստոսն՝ լոկ մարդ կը հաւատար, և Ս. կուսին՝ Քրիստոսածին կըսէր և ոչ Աստուածածին. ուստի Եփեսոսի ժողովին մէջ 'ի հնուց ընդունուած Աստուածածին բառը սահմանեցին Ս. կուսին, հասկցնելու համար՝ թէ ծնեալն 'ի կուսէն՝ չէր լոկ մարդ, այլ միացեալ ընդ Աստուածութեանն, այսինքն, Աստուած և մարդ կատարեալ. ասով Քրիստոսի Աստուածութիւնն 'ի կուսէն սկզբնաւորեալ պէտք չէ՛ հասկնանք, զի Աստուած 'ի յաւիտենից է. բայց Նեստորականութեան մէջ չիյնալու համար՝ անպատճառ Աստուածածին պէտք է ըսել ։

Զի ահաւասիկ իբրեւ եղեւ ձայն ողջունի քո յականջս իմ, խաղաց ցնծալով մանուկս յորովայնի իմում ։ Եւ երանի՛ որ հաւատայցէ, եթէ եղիցի կատարումն ասացելոց նմա 'ի Տեառնէ. Ղուկ. Ա. 44-45 ։

Վասն զի, դու Աստուծոյ մայր ես, 'ի քեզ Բանն Աստուած յղացեալ է այժմ, ուստի երբ քու ողջոյնդ առի, զաւակս արգանդիս մէջ ըսկսաւ խնդութեամբ շարժիլ՝ կարծես երկրպագելու ամենակալ Փրկչին՝ որ 'ի քեն յղացեալ պիտի ծնանի ։

Երանի՜ ուրեմն քեզ՝ որ հաւատացիր Գաբրիէլի սքանչելի հրաշալի աւետեաց, որով Զաքարիայի պատուհասէն զերծ մնացիր ։

Եւ ասէ Մարիամ. Մեծացուսցէ անձն իմ զՏէր, եւ ցնծասցէ հոգի իմ յԱստուած փրկիչ իմ։ Զի հայեցաւ ի խոնարհութիւն աղախնոյ իւրոյ։ Զի ահա յայսմ հետէ երանեսցեն ինձ ամենայն ազգք։ Ղուկ. Ա. 46–47։

Եղիսաբեթին տուած երանութեանը վրայ, ինք ալ Մարիամ տեսնելով՝ որ իւր ազգականը Եղիսաբէթ հրեշտակին բանին մէջ անհաւատութեան նախատինքէն ազատուած յղացեր է, փառք կու-տայ Աստուծոյ, և հոգիս զուարթ է կըսէ, որ իմ Փրկիչ Աստուածս զիս շնորհքով լեցուց։ Անոր համար կը մարգարէանայ ալ՝ որ ա՛լ այսուհետև (այսինքն Աստուծոյ մայր ըլլալէն վերջ) բոլոր ազգերը ինծի համար երանելի՝ պիտի կարդան։

Զի արար ինձ մեծամեծս Հզօրն, եւ սուրբ է անուն նորա. Եւ ողորմութիւն նորա ազգաց յազգս երկիւղածաց իւրոց։ Ղուկ. Ա. 49–50։

Մարիամ՝ անձին խոնարհութիւնը (այսինքն նուաստութիւնը) յառաջ բերելով Աստուծոյ Հզօրին իրեն ըրած բարեաց մեծութիւնը կը հռչակէ և կը խոստովանի թէ սուրբ է իր անունը, և որուն ողորմութիւնը՝ իրեն հաւատացող երկիւղած ժողովուրդներու, ազգերու վրայ պիտի տարածուի։

Արար զօրութիւն բազկաւ իւրով, ցրուեաց զամբարտաւանս մտօք սրտից իւրեանց։ Քակեաց զհզօրս յաթոռոց, եւ բարձրացոյց զխոնարհս։ Զքաղցեալս լը-

ցոյց բարութեամբ և զմեծատունս արձակեաց ունայնս ։ Պաշտպանեաց Իսրայէլի ծառայի իւրոյ, յիշել զողորմութիւնն ։ Որպէս խօսեցաւ առ հարս մեր Աբրահամու և զաւակի նորա յաւիտեան ։ Ղուկ. Ա. 51–55 ։

*Կարգաւ կըթուէ Մարիամ Քրիստոսի միջոցաւ ըլլալիք բարիքներն . նա, կըսէ, Աստուած զօրութեան՝ ամբարտաւանութիւնն և մեծութեան փառքը կ'արհամարհէ և խոնարհութիւնն ու խոնարհները պիտի բարձրացունէ ։ Արդարութեան քաղց ու ծարաւ ունեցողները պիտի յագեցնէ, իսկ անողորմ մեծատանց առջև գըթութեան դռներն պիտի գոցէ ։ Եւ Իսրայէլի և աշխարհի խոստացեալ փրկիչն թող կուգայ որ ստորին խոնարհ կուսէ մը ծնանելով աշխարհի փրկութիւնը գործէ . ինչպէս Աբրահամու և նորա զաւակաց խոստացուած էր ։*

Եկաց Մարիամ առ նմա իբրև ամիսս երիս և դարձաւ 'ի տուն իւր ։ Ղուկ. Ա. 56 ։

*Մարիամ այս խօսքերէն վերջը՝ երեք ամիս մնալով Եղիսաբեթի մօտ, երեքամսեայ յղութեամբ դարձաւ Նազարէթ եկաւ՝ 'ի տուն Յովսեփայ որուն խօսեցեալն էր ։*

Գ. Յայտնութիւն առ Յովսէփ

Եւ Յովսէփ այր նորա, քանզի արդար էր, և ո՛չ կամէր առակել զնա, խորհեցաւ լռելեայն արձա-

կեւ զնա. Մատթ. Ա. 19։

Յովսէփ՝ իւր նշանածն յղացեալ տեսնելուն պէս կը զարմանայ. բայց նորա արդարութեանն ու անմեղութեանը վրայ վստահ, կը մտածէ որ եթէ 'ի մարդկանէ է յղութիւնը՝ չկրնար հետը կենակցիլ, մանաւանդ թէ օրէնքը կը հրամայէր որ շնացեալ կինն քարկոծել տրուի. իսկ եթէ Աստուծմէ պատճառեալ յղութիւն է, չհամարձակիր այնպիսի մեծ թագուհւոյ մը ծառայել. ուստի կ'առաջադրէ լռելեայն արձակման թղթով, (որ բաց 'ի շնութենէ. ո՛ և իցէ վնասու համար ալ տալ օրէնք էր յայնժամ) ճամբել քովէն. միանգամայն կը վախնար ալ որ կուսին անպատուութիւն մը կըլլայ. վասն զի Յովսէփ ինքն ալ ամենայն առաքինութեամբ զարդարեալ արդար անձ մ'էր, տարապարտ կասկածանքով չէր ուզեր կուսին կեանքը վտանգել ըստ օրինաց կամ վատահամբաւել զայն։

Կոյսն ալ, մէկ մը՝ պարծենկոտ ունայնամտութենէ վախնալով, մէկ մ'ալ մտածելով որ ինքնին այս գերբնական յղութեան վրայ զՅովսէփ չը կրնար դիւրաւ համոզել, Գաբրիէլի աւետիքը բնաւ չըյիշեր, թող տալով որ Աստուած ինքնին նորա ցաւը, կասկածանքն ու տագնապակից երկիւղը փարատէ։

Եւ մինչդեռ նա զայս ածէր զմտաւ. ահա՛ հրեշտակ Տեառն 'ի տեսլեան երեւեցաւ նմա և ասէ. Յովսէփ, որդի Դաւթի, մի՛ երկնչիր առնուլ առ քեզ

զՄարիամ կին քո. քանզի որ ՚ի նմայն ծնեալ է, ՚ի Հոգւոյն սրբոյ է. Ծնցի որդի և կոչեսցես զանուն նորա Յիսուս. զի նա փրկեսցէ զժողովուրդ իւր ՚ի մեղաց իւրեանց. Մատթ. Ա. 20-21.

Յովսէփ՝ կուսին այս յանկարծուստ յղութեան վրայ, զանիկայ լռելեայն արձակելու խորհրդեան մէջ տարուբերուած միջոցին, մէկ մ'ալ Տէրոջը հրեշտակը՝ նորա քուն եղած միջոցին երեւնալով (և ոչ թէ յայտ յանդիմանն, ինչպէս կուսին՝ Զաքարիայի և Հովուաց, բաց որում խիստ հաւատացեալ և արդար լինելուն՝ առանց տեսլեան երեւալոյ ալ սիրտը հաստատ) և Դաւթի որդի ձայնելով. խրախոյս կըկարդայ որ չըվախնայ Մարիամ իբրև իւր պսակեալ կինը քովը առնելու. վասն զի, կըսէ, անոր ծնանելիքը մարդկային գործակցութեան արդիւնք չէ. Քանզի Աստուած, ըստ կանխաւ խոստմանն նորա արգանդին մէջ նորա արիւնէն մարմին պիտի զգենու ներգործութեամբ Հոգւոյն սրբոյ, և ծնանելոցն ՚ի կուսէ՝ Յիսուս պիտի կոչուի, որ բառ եբրայեցւոց փըրկիչ կընշանակէ, և որ Աստուած և Մարդ կատարեալ լինելով՝ ժողովուրդը, բոլոր ազգերը, մեղաց ծառայութենէն պիտի ազատէ.

զՅովսէփ՝ Դաւթի որդի անուանելուն պատճառն ալ այս է՝ որ Դաւթի անունով Մեսիային նորա ցեղէն գալու համար եղած խոստումը յիշեցնէ. միանգամայն և նոյն խոստման կատարումը. իսկ զՄարիամ՝ կին անուանելով կը հասկըցնէ հրեշտակն թէ կոյսն՝ իւր պսակեալ կինն

է ըստ օրինի, բայց որդւոյն ծնունդն իր կամ ո՛ եւ է մարդու գործակցութեամբ չէ, այլ Հոգւոյն սրբոյ ներգործութեամբ է։

Այս ամենայն եղեւ, զի լցցի՝ որ ասացաւն ի Տեառնէ Եսայեայ մարգարէէ. Ահա կոյս յղասցի եւ ծնցի որդի, եւ կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ, որ թարգմանի, ընդ մեզ Աստուած. Մատթ. Ա. 22-23.

Աստուծոյ բանին 'ի կուսէ յղութիւնն եւ ծըննունդը թող աստօրինակ չըլլայ քեզ. Աստուած կանխաւ Եսայի մարգարէին ձեռքովը խօսած է որ 'ի կուսէ Աստուած պիտի ծնանի եւ ընդ մարդկան լինելուն եւ ամենեցունց վրայ Հոգեւոր խընամքը տարածելուն համար՝ «ընդ մեզ Աստուած» պիտի կոչուի, այսինքն ըստ եբրայեցւոց (Էմմանուէլ), եւ ահա՛ այդ կանխաձայնութիւնը կուսին զԱստուած յղանալովը ու ծնանելովը պիտի կատարուի.

Եւ զարթուցեալ Յովսէփ ի քնոյ անտի, արար որպէս հրամայեաց նմա հրեշտակն. եւ առ յինքն ըզկին իւր. եւ ոչ գիտէր զնա մինչեւ ծնաւ զորդին իւր զանդրանիկ, եւ կոչեաց զանուն նորա Յիսուս. Մատթ. Ա. 24-25.

Հրեշտակին խօսքին երկնային վրայ, արթըննալ Յովսէփ եւ ըստ պատուիրելոյն նորա, զկոյսն իւր պաշտպանութեան ներքեւ առաւ եւ իբր ամուսին փեսայ՝ կըպահպանէր կենակցութենէ զա-

նի։ Եւ երբ տղայն ծնաւ Մարիամ՝ անուն դը-
րաւ անոր՝ Յիսուս։ «Եւ ոչ գիտէր զնա, մինչև
ծնաւ զորդին իւր զանդրանիկ» խօսքէն՝ ան-
շուշտ հետևցունելու է որ Յովսէփ՝ ոչ միայն
մանկիկը ծնանելէն առաջ, այլ նաև վերջն ալ
ողջախոհ՝ անարատութեամբ խնամակալ և պաշտ-
պան և հայր եղած էր կուսին և կուսածին Աս-
տուածորդւոյն, որ Անդրանիկ էր, այսինքն ոչ
կրտսեր եղբայր ունէր և ո՛չ երէց, հապա լոկ
միայն էր, որ և Միածին Հօր՝ ըստ Աստուա-
ծութեան. և Միածին որդի Մօրն կուսի՝ ըստ
մարդկութեան։

## Դ. Ծնունդ Յովհաննու Կարապետի

Եւ Եղիսաբեթի լցաւ ժամանակ ծնանելոյ, և
ծնաւ որդի. և լուան որ շուրջ զնովաւ էին, և ազ-
գականք նորա, զի մեծ արար Տէր զողորմութիւն իւր
ընդ նմա և խնդային ընդ նմա ։ Ղուկ. Ա. 57-58.

Ըստ աւետեաց հրեշտակին առ Զաքարիայ,
ահա ժամանակը կուգայ և ամուլ և պառաւա-
ցեալ Եղիսաբէթ՝ մանկիկը կը ծնանի, 'ի կարապե-
տել Բանին Աստուծոյ. դրացիք և ազգատոհմն
ալ, ժողովելով կ'օրհնեն զԱստուած և կ'ուրա-
խանան որ Աստուծոյ ողորմութիւնը Եղիսաբեթի
ամլութեան նախատինքն (ըստ եբրայեցւոց) բո-
լորովին ջնջեց.

Եւ եղև յաւուրն ութերորդի եկին թլփատել զմա-

մանուկն, եւ կոչէին զնա յանուն Հօր իւրոյ Զաքարիա։ Պատասխանի ետ մայր նորա եւ ասէ. ո՛չ. այլ կոչեսցի Յովհաննէս։ Եւ ասեն ցնա. քանզի ոչ ոք է յազգի քում՝ որոյ կոչի անուան Յովհաննէս»․ Ղուկ. Ա. 59-61.

Աստուած ՚ի նշան այն ուխտին՝ որով զԱբրահամ ազգաց Հայր պիտի ընէր, Աբրամին՝ Աբրահամի փոխելով (որ Հայր ազգաց բազմաց ըսել է) Նորա զաւկները պիտի աճեցունէր, Թագաւորներն իրմէ պիտի հանէր, և քանանացւոց երկիրներն իրեն և իր զաւակաց ՚ի ժառանգութիւն պիտի տար, Թլփատութիւն հաստատեց և հրամայեց որ ինք և իր զաւկներն թլփատուին և անկէց վերջը ծնածներն՝ ութօրեայ թլփատեն, և անթլփատներն սպաննուին. (Ծննդոց ԺԷ) Աբրահամ այս ուխտին նշանի պատուէրն առածին պէս, իննսուն և ինը տարուան հասակի մէջ թլփատեցաւ, ինչպէս նաև իր իսմայէլ որդին երեքտասանամեայ, և բոլոր տան մէջ գտնուածներն, և ընդոծինք և արծաթագինք առ հասարակ։ Այս օրինօք զՅովհաննէս թլփատելու եկան, և հոն ներկայ եղողներն իրենք իրենց Զաքարիայ կը կանչէին նորա հօրն անունով. բայց մայրն Եղիսաբէթ՝ թերևս ՚ի Հոգւոյն սրբոյ ազդեցութենէ՝ ո՛չ, կըսէ, նորա անունը Յովհաննէս պիտի դրուի. հոն եղողները կերպով մը իրաւունք տուին ըսելով որ այդ անունով իր ազգատոհմին մէջ մարդ չունէր։

Ակնարկէին հօրն նորա՝ թէ զի՞նչ կամիցի կոչել զնա։ Եւ-

խնդրեաց տախտակ . գրեաց եւ ասէ . Յովհաննէս է անուն դորա ։ Եւ զարմացան ամենեքին ։ Ղուկ . Ա. 62-63 ։

Հօրը կամքըն ալ հարցուցին ակնարկելով նը-շանացի, վասնզի խուլ և միանգամայն համր էր, որն որ տախտակ մը ուզեց եւ վրան մօրն ըսած անունը գրեց, որուն վրայ ամենքը զարմացան, թէ ի՛նչպէս հայր և մայր առանց խորհրդոյ մի և նոյն անուան վրայ միաբանեցան և թէ ի՛նչպէս հայրն՝ մօրն ըսած անունը գիտցաւ և այնպէս անուանեց ։

Եւ բացաւ բերան նորա վաղվաղակի եւ լեզու նորա, եւ խօսէր եւ օրհնէր զԱստուած ։ Եւ եղեւ ահ ՚ի վերայ ամենեցուն որ լսէին զայս, եւ որ շուրջ բնակեալ էին զնոքօք, եւ ընդ ամենայն լեռնակողմն Հրէաստանի պատմէին ամենայն բանքս այսոքիկ ։ Եւ եդին ամենեքեան՝ որ լսէին ՚ի սիրտս իւրեանց, եւ ասէին . զինչ լինիցի մանուկս այս . եւ ձեռն Տեառն էր ընդ նմա ։ Ղուկ . Ա. 64 – 66 ։

Տախտակին վրայ Յովհաննու անունը գրեց և լեզուն բացուեցաւ և սկսաւ ըստ առաջնոյն ուղիղ խօսել եւ զԱստուած օրհնել . նորա պապանձեալ լինելը գիտցողներն ամենքն ալ այս՝ երբոր լսեցին սոսկացին, եւ բոլոր Հրէաստան, լեռան մօտ քա-ղաքներն այս սքանչելիքը հռչակեցաւ և զարմա-ցած չէին կրնար ըմբռնել թէ ինչպիսի տղայ է, եւ ի՛նչ բանի կոչուած է . « եւ ձեռն Տեա-ռըն՝ էր ընդ նմա » . վասզի նորա շնորհաց մէջ կապրէր եւ առաքինութիւն կը փայլէր վրան ։

Եւ Զաքարիա հայր նորա լցաւ Հոգւովն սրբով, մարգարէացաւ եւ ասէ։ Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի, զի յայց ել մեզ, եւ արար փրկութիւն ժողովրդեան իւրում։ Եւ յարոյց եղջիւր փրկութեան մեզ 'ի տանէ Դաւթի ծառայի իւրոյ. Որպէս խօսեցաւ բերանով սրբոց՝ որ յաւիտենից մարգարէքն նորա էին։ Փրկութիւն 'ի թշնամեաց մերոց, եւ 'ի ձեռաց ամենայն ատելեաց մերոց։ Առնել ողորմութիւն ընդ հարս մեր, եւ յիշել զուխտն իւր սուրբ։ Զերդումն զոր երդուաւ Աբրահամու հօր մերում տալ մեզ, առանց երկիւղի, 'ի ձեռաց թշնամեաց մերոց փրկեալս։ Պաշտել զնա սրբութեամբ եւ արդարութեամբ առաջի նորա զամենայն աւուրս կենաց մերոց։ Եւ դու մանուկ՝ մարգարէ Բարձրելոյ կոչեսցիս. զի երթիցես առաջի երեսաց Տեառն պատրաստել զճանապարհս նորա։ Տալ գիտութիւն փրկութեան ժողովրդեան նորա, 'ի թողութիւն մեղաց նոցա։ Վասն գթութեանց ողորմութեան Աստուծոյ մերոյ, որովք այց արասցէ մեզ արեւելք 'ի բարձանց։ Երեւել՝ որոց 'ի խաւարի եւ 'ի ստուերս մահու նստէին. ուղղել զոտս մեր 'ի ճանապարհս խաղաղութեան։ Ղուկ. Ա. 67–79։

*Զաքարիա՝ լեզուն բացուելէն եւ զԱստուած օրհնելէն վերջը Ս. Հոգւով լեցուած սա խորհրդաւոր մարգարէութիւնն ըրաւ, հին մարգարէութեան յար եւ նման, եւ պահ մը՝ իւր զաւակը մոռնալով՝ Հոգւոյ աչօք Փրկիչը կը տեսնէ եւ Աստուած, կ'ըսէ, իւր երդումը եւ ուխտը յիշեց. օրհնեալ ըլլայ Իսրայելի Աստուածը, նոյն Աստուածը մեզի այցելութեան եկաւ. Դաւթի տունէն փրկութեան եղջիւրն՝ Աստուած մարդացաւ զմեզ մեր հոգւոյ թշնամիներէն եւ յաւե-*

լեաց փրկելու կուգայ, և ոչ միայն մեր և ապա-գայ սերունդին, այլ « ընդ հարս մեր » մեր նախ-նեաց իսկ կ'ողորմի՝ անոնց հոգիներն ազատելով մեղքի ճշմարիտ կրօնք կըպարգևէ, որ առանց երկիւղի՝ արդարութեամբ սրբութեամբ կարող ըլլանք պաշտել զԱստուած կենդանի, ինչպէս որ 'ի յաւիտենից ընտրեալ մարգարէից բերնով խօ-սած էր. ապա իւր մանուկը տեսնելով՝ ըսաւ։ Եւ դու ո՛վ մանկիկ, Աստուծոյ բարձրելոյ մար-գարէ պիտի կոչուիս, դուն՝ տիրոջը առջևէն երթալով՝ անոր ճամբան պիտի պատրաստես և ժողովուրդին պիտի գիտցնես թէ փրկիչը կամ փըր-կութիւնը կուգայ՝ որ իրենց մեղաց թողութիւն պիտի շնորհէ, մահու ստուերներուն, գերեզ-մանաց եւ Դժոխոց խաւարի մէջ նստողներուն 'ի բարձանց Արևգակն Քրիստոս լուսարձակ պի-տի ճառագայթէ՝ իւր և Հօրն անհուն գթու-թեամբ եւ ողորմութեամբ. եւ մեր խաւարի մէջ այլթափառող եւ գեղևող ոտքերն՝ ուղիղ ճամբան եւ մեր մտաւախապատ հոգիները խաղաղու-թեան (Սէրամբրն) մէջ պիտի հանէ կամ դնէ։

Եւ մանուկն աճէր եւ զօրանայր հոգւով, եւ էր յանա-պատս մինչև յօրն երևելոյ նորա Իսրայէլի » Ղուկ. Ա. 80։

Մանուկն Յովհաննէս Աստուծոյ շնորհաց մէջ իմաստութեամբ կը զարգանայր հետզհետէ. եւ անապատն առանձնանալով խստակրօն վարք մը և աղօթքով ինքզինք կը պատրաստէ որ ժամանա-կին կարապետելու պաշտօնին արժանանայ [illegible]

դարերէն մին կը համարուէր և ուր՝ աշխարհ չէր տեսնուած խաղաղութեան մէջ կը բնէր՝ և Մեսիային գալստեանը կ'ըսպասէր , և ահա այն ատեն ինքն Օգոստոս հրամայեց որ բոլոր իւր տէրութեան երկիրներին ինչպէս նաև Հրէաստանի աշխարհագիր ըլլայ · Հրէաստանի մէջ եղած աշխարհագիրը կըկարծուի թէ գլուխ եկած չըլլայ · բայց այս չէ այն աշխարհագիրը՝ զոր Կիւրենոս հռովմայեցի դատաւորն՝ իբրև փոխարքայ արևելից կողմանց , հրամանաւ Օգոստեայ կատարեց ։ Առաջին աշխարհագիրը՝ Կիւրենոսի ձեռօք եղածէն տասը տարւոյ չափ յառաջ է · ըսել է որ

Այս առաջին աշխարհագիր եղև 'ի դատաւորութեան Ասորւոց Կիւրենայ Ղուկ · Բ. 2 ։

Խօսքը այսպէս հասկնալու է՝ թէ Կիւրենոս Ասորւոց դատաւորին դատաւորութեան ժամանակէն յառաջ՝ առաջին աշխարհագիրն էր որ կըլլար ·

Եւ երթային ամենեքեան՝ մտանել յաշխարհագիր յիւրաքանչիւր քաղաքի ։ Ղուկ · Բ. 3 ։

Այս աշխարհագրութեան ատեն ամեն մարդ պարտաւոր էր՝ որ ո՛չ թէ իր բնակած քաղաքին՝ այլ իւր ծնած երկրին կամ իւր ազգատոհմին ծագում առած քաղաքին մէջ անունը արձանագրել տայ · ուստի ամեն մարդ բազմութեամբ կերթար՝ իւր անունը գրել տալու ։

Ել եւ Յովսէփ ՚ի Գալիլեէ ՚ի քաղաքէ Նազարեթէ ՚ի Հրէաստան, ՚ի քաղաքն Դաւթի, որ կոչի Բեթղեհեմ, վասն լինելոյ նորա ՚ի տանէ եւ յազգէ Դաւթի· մտանել յաշխարհագիր Մարեմաւ հանդերձ զոր խօսեցեալն էր նմա, եւ էր յղի։ Ղուկ. Բ. 4-5։

*Ուստի եւ Յովսէփ ալ Մարիամու հետ՝ որ Դաւ-թի տունէն էին եւ միանգամայն Բեթղեհեմացի, հոն գնացին անուննին գրել տալու, եւ այսպէս երկրաւոր թագաւորն Օգոստոս՝ Մարգարէու-թիւնները բառ առ բառ կատարուելուն գործիք եղաւ. վասն զի երկնաւոր թագաւորը պիտի ծնանէր հոն ՚ի Բեթղեհէմ, որուն համար գը-րուած էր. «Եւ դու Բեթղեհէմ երկիր Յուդա. . . . . ՚ի քէն ելցէ ինձ լինել իշխան»։ Եւ այդ իշխանին Մայրն ալ ատոր աշխարհագրութեան համար Բեթղեհէմ կուգայ յղի։*

Եւ եղեւ ՚ի հասանելն նոցա անդր, լցան աւուրք ծնա-նելոյ նորա, եւ ծնաւ զորդին իւր զանդրանիկ, եւ պա-տեաց ՚ի խանձարուրս, եւ եդ զնա ՚ի մսուր, զի ո՛չ գոյր նոցա տեղի՝ յիջավանին։ Ղուկ. Բ. 7։

*Բեթղեհէմ եկածուն պէս՝ Մարիամ կը ծնանի զերկնաւոր թագաւորն Յիսուս Քրիստոս՝ սուրբն խորանէլի, խեղճ խրճիթի մը մէջ՝ ուր հովիւներ իրենց խաշինք կը պատսպարէին. թերեւս անոր համար՝ որ աշխարհագրի վազող բազմութեան պատճառաւ ազատ տեղ չգտան, կամ անոր համար՝ որ իր ծննդենէն սկսէր Մարդացեալն Աս-տուած, ճշմարիտ եւ պարզ խոնարհութիւն աշ-*

դարերէն մին կը համարուէր և ուր · աշխարհ չէր ատենուած խաղաղութեան մէջ կը լուէր՝ և Մեսիային գալստեանը կ'սպասէր , և ահա այն ատեն ինքն Օգոստոս հրամայեց որ բոլոր իր տէրութեան երկիրներն ինչպէս նաև Հրէաստան աշխարհագիր ըլլայ · Հրէաստանի մէջ եղած աշխարհագիրը կըկարծուի թէ գլուխ ելած չըլլայ · բայց այս չէ այն աշխարհագիրը՝ զոր Կիւրենոս հռովմայեցի դատաւորն՝ իբրև փոխարքայ արեւելից կողմանց , հրամանաւ Օգոստեայ կատարեց ։ Առաջին աշխարհագիրը՝ Կիւրենոսի ձեռօք եղածէն տասը տարուոյ չափ յառաջ է · ըսել է որ-

Այս առաջին աշխարհագիր եղև ՚ի դատաւորութեան Ասորւոց Կիւրենեայ Ղուկ . Բ. 2 ։

Խօսքը այսպէս հասկնալու է՝ թէ Կիւրենոս Ասորւոց դատաւորին դատաւորութեան ժամանակէն յառաջ՝ առաջին աշխարհագիրն էր որ կըլլար ։

Եւ երթային ամենեքեան՝ մտանել յաշխարհագիր յիւրաքանչիւր քաղաքի ։ Ղուկ . Բ. 3 ։

Այս աշխարհագրութեան ատեն՝ ամեն մարդ պարտաւոր էր՝ որ ո՛չ թէ իր բնակած քաղաքին՝ այլ իր ծնած երկրին կամ իր ազգատոհմին ծագումն առած քաղաքին մէջ անունը արձանագրել տար · ուստի ամեն մարդ բազմութեամբ կերթար իր անունը գրել տալու ։

Ել եւ Յովսէփ ՚ի Գալիլեէ ՚ի քաղաքէ Նազարեթէ ՚ի Հրէաստան, ՚ի քաղաքն Դաւթի, որ կոչի Բեթղեհեմ, վասն լինելոյ նորա ՚ի տանէ եւ յազգէ Դաւթի. մտանել յաշխարհա-գիր Մարեմաւ հանդերձ զոր խօսեցեալ էր նմա, եւ էր յղի։ Ղուկ. Բ. 4-5։

*Ուստի եւ Յովսէփ ալ Մարիամու հետ՝ որ Դաւ-թի տունէն էին եւ միանգամայն Բեթղեհեմացի, հոն գնացին անուննին գրել տալու, եւ այսպէս երկրաւոր թագաւորն Օգոստոս՝ Մարգարէու-թիւններուն բառ առ բառ կատարուելուն գործիք կըլլար. վասն զի երկնաւոր թագաւորը պիտի ծնանէր հոն ՚ի Բեթղեհէմ, որուն համար գր-րուած էր. « Եւ դու Բեթղեհէմ երկիր Յուդա. . . . . ՚ի քէն ելցէ ինձ լինել իշխան ». եւ այդ իշխանին Մայրն ալ աշխարհագրութեան համար Բեթղեհէմ կուգայ յղի։*

Եւ եղեւ ՚ի հասանելն նոցա անդր, լցան աւուրք ծնա-նելոյ նորա, եւ ծնաւ զորդին իւր զանդրանիկ, եւ պա-տեաց ՚ի խանձարուրս, եւ եդ զնա ՚ի մսուր, զի ո՛չ գոյր նոցա տեղի՝ յիջեւանին։ Ղուկ. Բ. 7։

*Բեթղեհէմ եկածուն պէս՝ Մարիամ կը ծնանի զերկնաւոր թագաւորն Յիսուս Քրիստոս՝ ամուրբն խորշելի, խեղճ խրճիթի մը մէջ՝ ուր հովիւներ իրենց խաշինք կը պատսպարէին. Թերեւս անոր համար՝ որ աշխարհագրի վազող բազմութեան պանդոկներու ագանելու տեղ չըգտան, կամ անոր համար՝ որ իր ծննդենէն սկսէր Մարդացեալն Աս-տուած, նշմարելի եւ պարզ խոնարհութիւն աշ-*

խարհի սովրեցնել . հոն խեղճ այրին մէջ , կէս գիշերին խաւարի կռապաշտութեան եւ աւելորդապաշտութեան թանձր մշուշին երկրի վրայ պատած ատեն՝ կը ծնանի Հոգեւոր դիտութիւնն Լոյս եւ Ճառագայթ Հօր եւ Պատկեր և իմաստութիւնն յաւիտենից և Բանն Մարդացեալ Յիսուս Քրիստոս ։ Հոն խանձարրոց մէջ կը պատի եւ մսուրի մէջ կը դրուի , որ սովրինք աշխարհի մեծութիւնն արհամարհել , եւ աղքատութեան եւ վշտաց հանդուրժել և աղքատներն ալ իւր այսօրինակ ծնունդը յիշելով՝ մխիթարուին ։

Բ. Գալուստ Հովուացն յերկրպագութիւն :

Եւ հովիւքն էին ՚ի տեղւոջն յայնմիկ բացօթեայք, որ պահէին պահպանութեանս գիշերոյ հօտից իւրեանց։ Եւ հրեշտակ Տեառն երեւեցաւ նոցա եւ փառք Տեառն ծագեցին առ նոքօք եւ երկեան երկիւղ մեծ։ Եւ ասէ ցնոսա հրեշտակն. Մի՛ երկնչիք, զի ահաւասիկ աւետարանեմ ձեզ ուրախութիւն մեծ, որ եղիցի ամենայն ժողովրդեանն ։ Զի ծնաւ ձեզ այսօր Փրկիչ, որ է Օծեալ Տէր, ՚ի քաղաքի Դաւթի ։ Եւ այս նշանակ ձեզ. գտանիցէք մանուկ պատեալ ՚ի խանձարուրս, և եդեալ ՚ի մսուր։ Ղուկ. Բ. 8–12։

Յիսուս ծնած գիշերը Բեթղեհեմի դաշտին մէջ իրենց ոչխարաց հօտերուն պահպանութեան համար բացը պառկած հովիւներ կային , եւ ահա՛ անոնց վրայ յանկարծակի մեծ լոյս ծագեց եւ հրեշտակը լուսապայծառ տեսնուելով՝ երբոր խիստ վախցան, ըսաւ անոնց, որ չըվախնան, վասն զի տիեզերաց Փրկիչը մարդանալով յաշխարհ

դալը կ'աւետարանէ իրենց՝ որուն համար մեծապէս ուրախանալու են ։ Մարգարէութիւնը կըկատարուի եւ Օծեալ փրկիչ Աստուածը Դաւթի քաղաքին մէջ կըծնանի , եւ եթէ նշան կուզէք ըսածիս . գացէ՛ք ուր որ ձեր Տէր Աստուածը ձեզ առաջնորդէ , եւ հոն պիտի գտնէք զայն՝ որ 'ի յաւիտենից Աստուած է եւ 'ի ժամանակին 'ի կուսէ ծնեալ խանձարրով պատի եւ անասնոց մսուրին մէջ կըհանգչի՝ Աստուած եւ մարդ կատարեալ ։

Այս ծննդեան սուրբ գոմէն ի՛նչ խրատներ եւ ի՜նչ բարոյական դասեր կառնումք . Աստուած եւ Մարդ . անհուն մեծութիւն եւ յետին խոնարհութիւն . հրեշտակաց ուրախութիւն եւ Մարիամ կուսին արտասուք . հրեշտակք եւ մսուր եւ պատառատուն խանձարուրք իրար խառնուած . այս է մարդկութեան , այս է քրիստոնէին կենաց նկարագիրը . պէտք է որ մենք այս կեանքին ամեն դառնութեանց եւ խոնարհութեանց տանինք . ամեն արտասուք պէտք է սուրբ համարինք , միշտ երկնաւոր եւ հոգեւոր մեծութեան վրայ խոկալով մխիթարուինք . կամ այդ աղքատութիւնը Քրիստոսի պէս ՝ մեր անձին վրայ , մեր սրտին մէջ երկնաւոր փառաց հետ այնպէս միացունենք՝ որ աշխարհն ու իր տառապանքը չզօրեն մեր հոգւոյն սասանել ։

Եւ յանկարծակի եղեւ ընդ հրեշտակին ընդ այնմիկ բազմութիւն զօրաց երկնաւորաց , որ օրհնէին զԱստուած եւ աս-

ասէին ։ Փառք ՚ի բարձունս Աստուծոյ եւ յերկիր խաղաղութիւն ՚ի մարդիկ հաճութեան ։ Ղուկ. Բ. 13–14 ։

*Երբ հրեշտակը Քրիստոսի ծննդեան աւետիսը կուտար հովուաց՝ յանկարծ երկնաւոր զօրաց բազմութիւն մ՚ ալ երեւցաւ՝ որ զԱստուած կ՚օրհնէին եւ բանին Աստուծոյ մարմնաւորութեամբ ծնանելուն՝ կըսէին՝ Թէ Աստուած ՚ի բարձանց իւր ամենէն մեծ փառքը յայտնեց. Քրիստոս աշխարհի մշտնջենաւոր խաղաղութիւն կուգար եւ կը բերէր. եւ Թէ մեղաւոր մարդն՝ նորէն Աստուծոյ հետ հաշտուելով՝ պէտք է որ մարդկութիւնն ամբողջ եւ տիեզերք ուրախանան ։*

Եւ եղեւ իբրեւ վերացան ՚ի նոցանէ հրեշտակքն յերկինս, ասէին ցմիմեանս հովիւքն. Եկայք երթիցուք մինչեւ ցԲեթղեհեմ, եւ տեսցուք զի՞նչ է բանս այս զոր Տէր եցոյց մեզ. Ղուկ. Բ. 15.

*Հրեշտակները վերանալէն յետոյ, հովիւները ըսին, եկէք երթանք մինչեւ Բեթղեհէմ եւ տեսնենք Թէ ինչ է այս եղածը զոր Տէրը ցցուց մեզ։*

Եւ եկին փութանակի, եւ գտին զՄարիամ եւ զՅովսէփ եւ զմանուկն եդեալ ՚ի մսուր ։ Եւ ծանեան վասն բանին՝ որ ասացաւ նոցա զմանկանէն ։ Եւ ամենեքեան որ լսէին զարմանային վասն բանիցն զոր խօսեցան ընդ նոսա հովիւքն . Ղուկ. 16–18։

*Հովիւները շուտ եկան, Մարիամ, Յովսէփ եւ մանուկը խանձարրով ՚ի մսուրին տեսածնուն պէս՝ հրեշտակին ըսածը միտք առին, եւ որոնց որ կըպատմէին՝ անոնք ալ կըզարմանային ։*

Եւ Մարիամ զամենայն զբանս զայսոսիկ պահէր եւ խելամուտ լինէր 'ի սիրտ իւրում : Ղուկ. Բ. 19:

*Մարիամ՝ երբ այս ամեն խօսքերն ու անցքերը կըլլային, միտքը կըպահէր եւ ինքնիրեն կըմտածէր անոնց վրայ .*

Եւ դարձան հովիւքն, փառաւոր առնէին եւ օրհնէին զԱստուած վասն ամենայնի զոր լուան եւ տեսին ; որպէս պատմեցաւ նոցա : Ղուկ. Բ. 20:

*Հովիւները տեղերնին դարձան փառաւորելով եւ օրհնելով զԱստուած՝ որ այսպիսի աշխարհի եւ տիեզերաց աւետիք մը իրենց միայն կըտրուի 'ի ձեռն հրեշտակի եւ իրենք առաջին անգամ արժանի կըլլան խոստացեալ եւ մարգարէացեալ Փրկիչը տեսնելու, մինչդեռ աշխարհ գիշերոյ խոր մթութեան մէջ կըխորթար .*

## Գ. Թլփատութիւն Փրկչին

Եւ յորժամ լցան աւուրք ութ թլփատելոյ զնա, եւ կոչեցաւ անուն նորա Յիսուս, որ կոչեցեալն էր 'ի հրեշտակէն՝ մինչչեւ յղացեալ էր զնա յորովայնի : Ղուկ. Բ. 21:

*Ութ օրէն յետոյ ըստ Մովսիսական օրինաց (ինչպէս տեսանք Յովհաննու Թլփատութեան վրայ գրուածին մէջ) թլփատեցին եւ մանկան անունը դրին Յիսուս, ինչպէս որ հրեշտակը ըսած էր. Նախ քան զյղութիւն Մարիամու .*

## Դ. Գալուստ Մոգուցն

Եւ 'ի ծնանել Յիսուսի 'ի Բեթղեհէմ Հրէաստանի յաւուրս Հերովդէի արքայի, ահա՛ մոգք յարեւելից եկին յԵրուսաղէմ. Եւ ասեն, ո՞ւր է, որ ծնաւ արքայն Հրէից, զի տեսաք զաստղն նորա յարեւելս. եւ եկաք երկիրպագանել նմա։ Մատթ. Բ. 1–2։

Ըստ որում (Տե՛ս Ծննդ. ԽԹ. 10) մինչեւ 'ի գալուստ Մեսիային, Յուդայի վրայ թագաւոր պիտի չը պակսէր, ահա ըստ այս մարգարէութեան՝ Հռովմայեցւոց կողմանէ Հրէից վրայ թագաւորող մեծին Հերովդեսի ատեն, Մեսիայն կըծնանի, և իմաստուն մարդիկներ ըստ վաղեմի աւանդութեան, կամ 'ի Միջագետաց Հայոց կամ Ասորւոց կամ Արաբիայէն թագաւոր կամ իշխաններ, թերևս Բաղաամու Մադիամու մէջ ըրած մարգարէութեան աւանդութենէն՝ թէ "Ծագեսցէ աստղն Յակոբայ" (Թւոց ԻԴ. 17.) շարժեալ՝ Երուսաղէմ եկան, որ կ'աւանդեն թէ երեք մոգեր (աւանդաբար) եղած ըլլան, Մելքոն, Գասպար և Պաղտասար անունով. և կարծես թէ Քրիստոսի ծնունդն հռչակելու համար Աստուած այնպէս կարգաւորած էր, որ երկինքէն հրեշտակներ, աստղ, տաճարէն մարգարէներ, հեռաւոր երկիրներէ ալ՝ իմաստուն թագաւորներ և մարդոց ամենէն ստորին վիճակէն հովիւներ՝ միջոց և քարոզ լինէին.

Աւետարանիչը Բեթղեհէմ Հրէաստանի ըսած

է , որպէսզի Գալիլեայի Բեթղեհեմէն զատէ , և Բեթղեհէմ կըթարգմանուի տան հացի և Երուսաղեմի հարաւային կողմէն վեց մղոնի չափ հեռու է ։ Ի՞նչ խորհրդաւոր բան , երկնաւոր Հացը Յիսուս երկինքէն կիջնէ ( 'ի Բեթղեհեմ ) Հացի տունը եւ անոր աշխարհի կեանք կը բաշխէ ։

Մոգերն երբ քաղաք մտան , կը հարցունէին ո՞ւր է Հրէից նոր ծնած Թագաւորը վասն զի նորա աստղը տեսնելով՝ եկած ենք՝ որ երկրպագութիւն ընենք իրեն ։ Երեւցած տարօրինակ և կարգէ դուրս աստղը կամ ըստ ոմանց աստղի նման լուսաւոր մարմին մը որ Բաղաամի մարգարէութիւնը կըյիշեցնէր , ( Տես Թւոց , ԻԴ. 17 . ) համոզած էր զիրենք թէ Աստուծոյ որդին է , ուստի անոր երկրպագելու կուգան , և այսպէս՝ այն աստղերն՝ որ 'ի հնումն զմարդիկ կըռապաշտութեան առաջնորդեցին, այժմ ճշմարիտ Աստուծոյ երկրպագութիւն ընելու կը բերեն ։ Այդ երեւցած աստղը կամ աստղանման երեւոյթը արտաքոյ կարգի ընթացք մը ունենալուն՝ այդ աստեղաբաշխ մոգերուն զարմանք և երկիւղ պատճառած էր ։

Եւ լուեալ թագաւորն Հերովդէս խռովեցաւ և ամենայն Երուսաղէմ ընդ նմա ։ Եւ ժողովեալ զամենայն զքահանայապետս և զդպիրս ժողովրդեան հարցանէր 'ի նոցանէ թէ ո՞ւր ծնանիցի Քրիստոս ։ Մատթ . Բ. 3-4 .

Հերովդէս որովհետև Հրէից վրայ բոլորովին տիրելու ջանք ունէր , Հրէից Թագաւորի անուն լսածին պէս տակնուվրայ կըլլայ , ինչպէս նաև

բոլոր երուսաղեմացիներն, կը վախնայ Հերովդէս որ այս Նոր Թագաւորն Յիսուս իւր թագաւորութիւնը կը յափշտակէ, ուստի շուտ քահանայապետներն ու դպիրները 'ի ժողով կը կանչէ, որ անոնցմէ ստոյգ տեղեկութիւն առնու՝ թէ իրաւամբ իրենց կրօնքին համեմատ Մեսիայի մը գալուստը խոստացուա՞ծ է, եւ թէ ու՞ր պիտի ծնանէր. որպէս զի իմանալով նենգութեամբ դաւաճանէ զայն։

Եւ նոքա՝ ասեն ցնա. 'Ի Բեթղեհեմ Հրէաստանի. զի այսպէս գրեալ է 'ի ձեռն մարգարէին. Եւ դու՛ Բեթղեհեմ երկիր Յուդայ՝ ոչ ինչ կրտսեր ես յիշխանս Յուդայ. 'ի քէն ելցէ ինձ իշխան, որ հովուեսցէ զժողովուրդ իմ զԻսրայէլ։ Մատթ. Բ. 5-6։

Քահանայապետք եւ դպիրք կը պատասխանեն Հերովդեսի, թէ մարգարէական գրուածոց համեմատ Հրէաստանի Բեթղեհէմ քաղաքին մէջ պիտի ծնանի, անկէց պիտի ելլէ Յուդայի իշխանն որ հովիւ ըլլայ Իսրայելի ժողովրդեան։

Յայնժամ Հերովդէս ծածուկ կոչեաց զմոգսն, եւ ստուգեաց 'ի նոցանէ զժամանակ աստեղն երեւելոյ։ Եւ արձակեաց զնոսա 'ի Բեթղեհեմ. ասէ. Գնացէ՛ք ստուգեցէ՛ք վասն մանկանն, եւ յորժամ գտանիցէք՝ ազդ արասջիք ինձ, զի եւ ես եկեալ երկիրպագից նմա։ Մատթ. Բ. 7-8։

Երբոր Հերովդէս իմացաւ որ Իսրայելի ժողովրդեան Մեսիայ մը խոստացուած է եւ ան ալ Բեթղեհէմի մէջ պիտի ծնանէր, Մոգերն գաղ-

տուկ իրեն կանչեց եւ ՝ անոնցմէ ալ իմանալով աստղին երեւցած ժամանակը. ( միտքը դնելով որ աստղին երեւցած ժամէն Քրիստոսի տարիքը իմանայ եւ այն տարիքէն եղող բոլոր տղաքը ջարդէ ) գացէ՛ք, ըսաւ, դո՛ւք ալ աղէկ մը տեղեկութիւն առէք անձամբ, եւ ստոյգ եղած ատեն ինծի ալ իմացուցէք, որ ես ալ երկրպագութեան գամ այդ նորածին Թագաւորին։ Մոռնալու չէ որ Հերովդէս այս խօսքերը մեծաւ տագնապանօք կ՚ընէր, եւ անկեղծութեամբ չէր մոգերուն ուղղած խօսքը. վասն զի ինչպէս որ յիշեցի, զՅիսուս մեռցնելու միտք ունէր։

Եւ նոքա իբրեւ լուան 'ի Թագաւորէն՝ գնացին. եւ ահա աստղն զոր տեսին յարեւելս՝ առաջնորդէր նոցա, մինչեւ եկեալ 'ի վերայ՝ ուր էր մանուկն։ Իբրեւ տեսին զաստղն, խնդացին յոյժ ուրախութիւն մեծ։ Եւ իբրեւ մտին 'ի տուն, տեսին զմանուկն հանդերձ Մարեմաւ մարբն իւրով, եւ անկեալ երկիրպագանէին նմա. եւ բացեալ զգանձս իւրեանց՝ մատուցին նմա պատարագս՝ ոսկի եւ կնդրուկ եւ զմուռս։ Մատթ. Բ. 9-11

Մոգերն Հերովդեսէն պէտք եղած տեղեկութիւններն առնելով ճամբայ ելան. մէկ մ՚ ալ արեւելքի կողմերը տեսած աստղերնին երեւնալով, իրենց առաջնորդեց եւ մինչեւ Յիսուս մանկան եղած տեղին վրայ կանգնեցաւ. աստղը տեսնելնին զիրենք շատ ուրախացուց. վասն զի թէպէտ Հերովդեսէն կանուխ մարգարէութիւններն իմացան, այսու ամենայնիւ իրենց առաջնորդող աստղը կոր-

ընծայուած ըլլալնուն՝ սկսած էին երկրպագել, թէ թերևս տեսնուած աստղն աներևոյթ բան մ՚ էր. բայց երբոր կրկին տեսան զայն աստղն՝ հաւատքնին հաստատուեցաւ եւ շատ ուրախացան։

Եւ երբոր աստղին առաջնորդելով տունը այսինքն մանկան եղած այրէն ներս մտան, եւ մանուկը տեսան՝ որ մօրը հետ կեցած էր, իբրեւ Աստուծոյ՝ երկրպագութիւն ըրին եւ Աստուծոյ եւ թագաւորի վայելուչ նուէրներ տուին, ոսկի՝ իբրև երկրաւոր թագաւորի, եւ որպէս թէ ՚ի հեթանոսաց յերկրպագութիւն առնուած ոսկին՝ հեթանոսաց կողմանէ առ արարիչը դարձունելով՝ որով նիւթապաշտութիւնը կը ջնջուէր։ կնդրուկ՝ որոյ անուշահոտութեամբ յօժէն աւթեալ մահուան հոտը պիտի փարատէր։ Զմուռս՝ որ եւ մի բժշկական նիւթ է, տալով ալ կարծես հաւատքնին կըցցնեն՝ թէ Յիսուս Քրիստոս մանկացեալն Աստուած Ադամայ անկման վէրքը պիտի բուժէ։ Եւ այս նուէրներու փոխարէն՝ առին կենդանի հաւատք, եռանդագին սէր, եւ հաստատութիւն բարի եւ սուրբ ըլլալու համար։

Եւ հրաման առեալ ՚ի տեսլեան՝ չդառնալ անդրէն առ Հերովդէս, ընդ այլ ճանապարհ գնացին յաշխարհն իւրեանց։ Մատթ. Բ. 12։

Պարապ տեղը կըսպասէր Հերովդէս մոգերուն վերադարձին, վասնզի անոնք տեսիլքի մէջ՝ նորէն Հերովդեսի քով չդառնալու հրաման առած ըլլալով՝ ուրիշ ճամբով իրենց երկիրը գնացին։

## Զ. Քառասնօրեայ գալուստ Փրկչին 'ի տաճարն

« Ամենայն արու որ բանայ զարգանդ՝ ինձ լիցի » : Ել. ԼԴ. 19: Օրէնսդէտ եւ օրինադիրն Աստուած Յիսուս Քրիստոս՝ ըսած էր որ օրէնքները լուծելու չէր եկած, այլ մանաւանդ թէ զայնս ամբողջացունելու եւ կատարելագործելու, ուստի ինք ալ մովսիսական օրինաց ներքեւ՝ յանձն կառնու որ երկրածին մանկանցուաց պէս Տիրոջը տաճարն երթայ, հոն Աստուծոյ ընծայուի նուիրուի, եւ մէկ զոյգ տատրակներով փրկանաւորուի, որպէսզի այս ընծայմամբ մարդկային ազգը, բոլոր մարդկութիւնը Աստուծոյ նուիրած ըլլայ : Ըստ այնմ,

Եւ իբրեւ լցան աւուրք սրբութեան նոցա ըստ օրինացն Մովսիսի, ածին զնա յԵրուսաղէմ յանդիման առնել Տեառն : Որպէս եւ գրեալ է յօրէնս Տեառն, թէ ամենայն արու որ բանայ զարգանդ սուրբ Տեառն կոչեսցի : Եւ տալ պատարագ՝ ըստ ասացելոյն յօրէնս Տեառն, զոյգս տատրակաց, կամ երկուս ձագս աղաւնեաց : Ղուկ. Բ. 22 – 24:

Մարիամ եւ Յովսէփ Մովսիսի օրինաց համեմատ առին Մանուկն եւ Երուսաղէմ տաճարը բերին ընծայեցին . բայց որովհետեւ աղքատ էին՝ զայն փրկանաւորելու համար զոյգ մը տատրակ միայն բերին՝ որ մէկը ողջակէզ լինի և միւսը վասըն մեղաց մաքրութեան, որով քահանայն կըքաւէր և մայրը ծննդեան օրերէն բոլորովին սրբուած

կըլլար. վասն զի ըստ օրինաց արու զաւակ ծնանողն երեսուն երեք օր կը սպասէր յետ ութօրեայ թլփատութեան, եւ այնուհետեւ տաճարը Տիրոջն առջեւն ելնելով ըստ կարողութեան, կամ գառն մատաղ նուիրելով կամ մէկ զոյգ տատրակով՝ իւր արու զաւակը կըփրկանաւորէր, եւ ինք ալ կը սրբուէր։ Ղեւտ. Գլ. ԺԲ։

Եւ ահա այր մի էր յԵրուսաղէմ, որոյ անուն էր Սիմէոն. եւ էր այրն այն արդար եւ երկիւղած, եւ ակն ունէր մխիթարութեան Իսրայէլի, եւ Հոգի սուրբ էր 'ի նմա։ Եւ էր նորա հրաման առեալ 'ի Հոգւոյն սրբոյ՝ մի՛ տեսանել զմահ, մինչեւ տեսցէ զօծեալն Տեառն։ Եւ եկն հոգւովն 'ի տաճարն. Եւ իբրեւ ածին ծնողքն զմանուկն Յիսուս առնել նոցա ըստ սովորութեան օրինացն 'ի վերայ նորա. եւ նա առ ընկալաւ զնա 'ի գիրկս իւր, եւ օրհնեաց զԱստուած, եւ ասէ. Արդ՝ արձակես զծառայս քո Տէր ըստ բանի քում 'ի խաղաղութիւն. զի տեսին աչք իմ զփրկութիւն քո. զոր պատրաստեցեր առաջի ամենայն ժողովրդոց. Լոյս 'ի յայտնութիւն հեթանոսաց եւ փառս ժողովրդեան քում Իսրայէլի։ Ղուկ. Բ. 25–32։

Քրիստոսի 'ի տաճար բերուած ժամանակին, հոն Սիմէոն անունով ծեր մը կար արդար. եւ երկիւղած եւ Իսրայէլի մխիթարութեան այսինքն Մեսիայի գալստեանը կսպասէր, եւ Հոգւով սրբով լեցուած էր, եւ հրաման առած էր Ս. Հոգիէն՝ որ մինչեւ Դանիէլի գուշակած Օծեալը չ'տեսնէ՝ չ'մեռնի. այս մարդը Հոգիէն առաջնորդուելով եկած էր 'ի տաճարն եւ տեսնելով խանդացեալ Մեսիայն այսինքն Աստուածային փրկութիւնը.

Իսրայելի և հեթանոս ժողովրդեան լուսաւորող լոյսը, Իսրայելի փառքը եւ հեթանոսներէն ընտրեալներ յայտնող ջահը, իր դողդոջուն բազկաց մէջ առաւ զայն, և հրաման ուզեց մեռնելու, « այժմ արձակեա՛ զիս, ըսաւ, 'ի խաղաղութիւն, » ( կըտեսնես որ բոլոր մարգարէք և անոնց նմանողներն Հրէից սխալ կարծածին պէս, ոչ պատերազմ այլ խաղաղութիւն կը բաղձային Մեսիային գալստեամբն ,) «արձակեա՛ զիս 'ի խաղաղութիւն» ինչպէս որ խոստացար Աստուած իմ. վասն զի տեսայ՝ տիեզերաց Փրկիչն, Իսրայելի փառքն և հեթանոսաց լոյսը ։

Եւ էին հայրն և մայր նորա զարմացեալ 'ի վերայ բանիցն, որ խօսէին զնմանէ ։ Ղուկ. Բ. 33 ։

Այս և այս տեսակ խօսքերու և գոյութեանց վրայ կըզարմանային ։

Եւ օրհնեաց զնոսա Սիմէովն, և ասէ ցՄարիամ մայրն նորա, Ահա՛ սա՛ կայ՝ 'ի գլորումն և 'ի կանգնումն բազմաց 'ի մէջ Իսրայէլի, և 'ի նշան հակառակութեան ։ Եւ ընդ քո իսկ անձն՝ անցցէ սուր. զի յայտնեսցին 'ի բազմաց սրտից խորհուրդք ։ Ղուկ. Բ. 34—35 ։

Ծերունին օրհնեց զանոնք և դառնալով Մարիամ Յիսուսի մօր, ըսաւ մարգարէութեամբ. Թէ զաւակդ շատերուն իրենց հաւատոցն համար՝ կեանք պիտի տայ, և բազմաց՝ իրենց անհաւատութեանն համար կորստեան առիթ պիտի ըլլայ, և շատերն ալ (Քրիստոնէից մէջ

ընելիք հերձուածողներն, հերետիկոսներն և աղանդաւորներն) իրենց խռովարարութեան, հակառակասիրութեան նպատակ պիտի ընեն և ատանկով սիրտդ ալ սուր մտածի պէս պիտի ըլլայ, մանաւանդ երբոր աչքիդ դէմը քու այդ Յիսուս մանկիկը՝ տեսնես որ երեսնամեայ և աւելի տարիներէ վերջը բոլոր մարդկութեան մեղքերը քաւելու համար անհաւան Հրէից ձեռքով խաչը կ'ելնէ։ Տաճարուն ալ սրտի գաղտնիքները պիտի երևան ելնէ, որով զաւակիդ թշնամիներն ու բարեկամները պիտի ճանչցուին։ Բոլոր այս խօսքերուն վրայ էր, որ Նորա ծնողքը կը զարմանային։

Եւ անդ էր Աննա մարգարէ՝ դուստր Փանուէլի յազգէ Ասերայ. սա յոյժ անցեալ էր զաւուրբք իւրովք՝ կեցեալ ընդ առն ամս եւթն 'ի կուսութենէ իւրմէ։ Եւ էր այրի ամաց ութսուն և չորից. որ ո՛չ մեկնէր 'ի տաճարէն, այլ պահօք և աղօթիւք պաշտէր զցայգ և զցերեկ։ Եւ սա 'ի նմին ժամու յարուցեալ գոհանայր զՏեառնէ, և խօսէր զնմանէ ընդ ամենեսին՝ որ ակն ունէին փրկութեան Երուսաղեմի։ Ղուկ. Բ. 36—38։

Նոյն ժամուն Ասերի ցեղէն Փանուէլի աղջիկն Աննա մարգարէուհին, որ էրկանը հետ եօթնուկէս տարի ապրելէն ու էրկանը մեռնելէն յետոյ Տաճարին ծառայութեանը նուիրուած էր, և պահքով և աղօթքով գիշեր ցերեկ հոն կը կենար և ութսուն և չորս տարեկան այրի մ'էր. սա ալ գոհանալով Մեսիային գալստեանը, Երուսաղէմի

փրկութեանը առաջնորդներուն հետ, Յիսուսի վրայ կը խօսակցէր ։

Եւ իբրեւ կատարեցին զամենայն ըստ օրինացն Տեառն, դարձան անդրէն 'ի Գալիլեա 'ի քաղաքն իւրեանց Նազարէթ ։ Ղուկ. Բ. 39 ։

Ծնողքն Յիսուսի, ըստ օրինաց Տէրոջն ընծայելու գործը լմնցունելով, Նազարէթ դարձան իրենց երկիրն ։

## Զ. Փախուստ Տեառն յԵգիպտոս

. . . Ահա հրեշտակ Տեառն երեւի 'ի տեսլեան Յովսեփու. եւ ասէ. արի՛ ա՛ռ զմանուկդ եւ զմայր նորա՝ եւ փախիր յԵգիպտոս, եւ անդ լինիջիր՝ ցորժամ ասացից քեզ. քանզի 'ի խնդիր է Հերովդէս կորուսանել զմանուկդ ։ Մատթ. Բ. 13

Հերովդէս որովհետև «Հրէից Թագաւոր» անունը մոգերէն լսածին պէս խռովեցաւ, մանաւանդ երբ մոգերն՝ ուզածին պէս իրեն չը դարձան պատմելու, ուստի եռանդ էր գտնելու և կորսնցնելու զՅիսուս, որուն համար հրեշտակը գիշեր մը անուրջի մէջ Յովսեփայ պատուիրեց որ Եգիպտոս փախցնէ Յիսուս Մանկիկն ու մայրն և հոն սպասէ, մինչև որ իրեն իմաց տրուի ։

Եւ նա յարուցեալ առ զմանուկն եւ զմայր նորա գիշերի՝ եւ գնաց յԵգիպտոս, եւ անդ էր մինչեւ ցվախճան Հերովդի ։ Զի լցցի ասացեալն 'ի Տեառնէ 'ի ձեռն մարգարէին որ ասէ ։ յԵգիպտոսէ կոչեցի զորդի իմ ։ Մատթ. Բ. 14—15 ։

Յովսէփ արթնցաւ, առաւ մանուկն ու մայրը և գիշերանց Եգիպտոս գնաց և մինչև Հերովդէսի մահն հոն մնաց։ Որպէս զի դարձեալ հըրեշտակին ձեռքովն յետս կանչուելով յերուսաղէմ, Ովսէէ մարգարէին ձեռքովն ըսուած "յԵգիպտոսէ կոչեցի զորդի իմ" (Ով. ԺԱ. 1) խօսքը կատարուի. որ թէպէտ ըստ նկարագրին իսրայելի ժողովուրդը կը ներկայացունէ՝ զոր Աստուած Եգիպտոսէն Աւետեաց երկիրը կանչեց, բայց մարգարէութիւն մ՚էր և կը նշանակէր Յիսուս մանկան յԵգիպտոս փախչիլը և անտի դարձեալ հրեշտակի ձեռքով Իսրայէլի երկիրը դառնալը, ուր ճշմարտութիւն, սէր վարդապետելով զնոյնս ընդունողներուն սրտին վրայ թագաւորեց։

Յայնժամ իբրև ետես Հերովդէս թէ խաբեցաւ ՚ի մոգուց անտի, բարկացաւ յոյժ. և առաքեաց կոտորեաց զամենայն մանկտին որ էին ՚ի Բեթղեհէմ և յամենայն սահմանս նորա ՚ի յերկեմենից և ՚ի խոնարհ, ըստ ժամանակին զոր ստուգեաց ՚ի մոգուց։ Մատթ. Բ. 16

Երբոր Հերովդէս իմացաւ որ մոգերէն խաբուած է. բարկացաւ, մարդ ղրկեց, զինուորներ հանեց՝ որ Բեթղեհէմի և անոր սահմաններուն գըտնուած երկու տարուընէ վար եղող մանչ զաւակներուն ջարդեն։

Եւ մոգերէն ստուգելով որ աստղը տարիէն աւելի ժամանակ առաջ տեսնուած է իրենց, հըրաման հանեց որ մինչև երկու տարեկան եղող տղաքը թրէ անցունեն, միտքը դնելով որ Յի-

սուտ մանուկն 'ի միասին կը ջարդուի ։

Յայնժամ կատարեցաւ ասացեալն 'ի ձեռն Երեմիայ մարգարէի՝ որ ասէ ։ Ձայն բարձեալ 'ի Հռամայ, ողբումն և լալումն և ողբոց հառաչանաց · Հռաքէլ լայր զորդիս իւր, և ո՛չ կամէր մխիթարել՝ զի ո՛չ էին ։ Մատթ. Բ. 17—18 ։

Հերովդէսի կոտորածի հրամանն 'ի գլուխ տարուած միջոցին մարգարէութիւն մը կը կատարուէր ։

Հռամա Բեթղեհեմէն ոչ շատ հեռու քաղաք մ'է և Հռաքէլ վշտակիր մօրը նշանակն է իր Բենիամին և Յովսէփ որդւոց համար կրած ցաւերուն նկատմամբ, Հռաքէլ հոն թաղուած էր, Բեթղեհեմէն մինչև Հռամա այս որդեկորոյս մօրը ողբը, կոծը և ցաւագին հառաչանքը պիտի լսուէր, և այդ մայրերը նշանակող Հռաքէլ՝ այդ կորուստներուն վրայ չը պիտի մխիթարուէր ։

Եւ 'ի վախճանել Հերովդի, ահա հրեշտակ Տեառն 'ի տեսլեան երևի Յովսէփայ յԵգիպտոս, և ասէ · արի՛ ա՛ռ զմանուկդ և զմայր իւր ․ և երթ յերկիրն Իսրայելի · զի մեռան որ խնդրէին զանձն մանկանդ ։ Մատթ. Բ. 19 ։

Հերովդէս Ասկաղոնացի՝ որ Օգոստոսէն թագաւոր գրուած էր Հրէաստանի, Բեթղեհեմի զաւակներուն և իր զաւակներէն իր իշխանութեան մէջ ունեցող Աղէքսանդրոսն, Արիստոբուլոսն և Անթիպատրեան և իր Մարիամնէ կինը, նորա եղբայրը, իր ութսուն տարեկան Հիրկանոս անուն աները և ուրիշ շատ ազնուականներ մեռցունե-

լէ վերջ, ինք ալ որդնալից մեռաւ. ուստի Տէ-
րոջը հրեշտակը տեսիլքին մէջ Յովսեփայ երե-
ւցաւ ու պատուիրեց որ Իսրայէլի երկիրը դառ-
նայ, յայտնելով որ ո՛չ Հերովդէս և ո՛չ անոր
համախոհներն ողջ մնացած են, որք Յիսուս մա-
նուկը կորսնցնելու միտք ունէին ։

Մակրոբիոս կըսէ թէ՝ երբ Օգոստոս կայսրը
լսեց որ Հերովդէս, Բեթղեհէմի տղայքներէն զատ
իւր տղան ալ մեռուցած է, լաւ էր, ըսաւ, որ
Հերովդէս խոզ ծնանէր քան որդի, վասն զի
որդին կ'սպաննէ, իսկ խոզը ո՛չ ։

Անհաւատներէն ոմանք ալ բոլորովին սուտ
կը հանեն Հերովդէսի՝ մանկանց տուած ջարդը,
առարկելով որ Յովսեպոս և Հերովդէսի ջատա-
գով և կողմնակից Դամասկացի Նիկողայոսէն յի-
շուած չէ. սակայն դիտնալու է որ Յովսեպոս շատ
փոքր լինելու էր այս կոտորածին ատեն, որն որ
նոյն ինքն Յովսեպոսի պատմած անհամար և ա-
հագին անգթութեանց քով թերևս աննշան բան
մը սեպուէր, Բեթղեհէմի պէս փոքրիկ աւանի
մը մէջ պատահած այս դէպքն. և կամ թերևս
Յովսեպոս՝ Հերովդէսի կողմը բռնող Նիկողայոսի
պատմութեան մէջ այս դէպքը չը պատմուելուն
և հուշակ չըգտնելուն, ինք ալ չըպատմեր ։

Ինչ որ ալ ըլլայ՝ ըստ պատմութեան Աւետա-
րանչին Բեթղեհէմի մանկանց կոտորածն եղած և
Հերովդէս ալ իւր պատիժը գտնելով չարաչար
մեռած է՝ որուն համար Յովսեփ ալ հրաման կըն-
դունի Եգիպտոսէն դառնալու ։

Եւ նա յարուցեալ առ զմանուկն եւ զմայր նորա, եւ եկն յերկիրն Իսրայելի ։ Եւ իբրեւ լուաւ եթէ Արքեղայոս թագաւորեաց Հրէաստանի փոխանակ Հերովդէի հօրն իւրոյ, երկեաւ երթալ անդր . եւ հրաման առեալ ՚ի տեսլեան, գնաց ՚ի կողմանս Գալիլեացւոց ։ Եւ եկեալ բնակեցաւ ՚ի քաղաքին՝ որ կոչէր Նազարեթ · զի լցցի բան մարգարէին, թէ Նազովրեցի կոչեսցի ։ Մատթ. Բ. 21 23 ։

*Յովսեփ մանուկն ու նորա մայրն առաւ Իսրայելի երկիրն եկաւ և լսելով որ Արքեղայոս թագաւորեր է իւր Հերովդէս հօրը տեղ, Յուդայի կամ Հրէաստանի վրայ, և գիտնալով որ երեք հազարի չափ հրէայ մէկանց տաճարին մէջ ըսպաննած էր, վախցաւ Յուդայաստան երթալ. գիտնալ պէտք է որ Հերովդէսի մեռնելէն վերջ իրեն զաւկըներուն մէջ իշխանութեան կռիւ բացուելով, Օգոստոս կայսրն ամբողջ իրենց հօրը իշխանութեան տակ գրուած Իսրայելի երկիրը չորս մասի բաժնեց, եւ ամեն մասի վրայ մէկ մէկ չորրորդապետ կարգեց. մէկ մասին վրայ (այսինքն Գալիլեայի) Հերովդէսի տղայն Անթիպաս — Հերովդէս ։*

*Երկրորդ մասին վրայ (այսինքն Տրաքոնացւոց աշխարհին վրայ) Հերովդէսի տղայն Փիլիպպոս ։*

*Երրորդ մասին վրայ (այսինքն Աբիլենացւոց վրայ) Լիւսանիա անունով մարդ մը, ինչպէս կը գրէ Ղուկ. Գ. 1 ։*

*Իսկ չորրորդ մասին վրայ (այսինքն Յուդայի երկրին վրայ) Արքեղայոսը դրաւ ։*

*Ասոնք ամենքն ալ չորրորդապետ ըսուեցան. վասն զի իւրաքանչիւրն ամբողջ երկրին մէկ չորրորդին վրայ կ'իշխէին ։ Ահա այս Արքեղայոսին Յուդայի վրայ իշխանութիւն առնելը լսելով Յով-*

մէփ, կը վախնայ երթալ հոն և տեսլեան մէջ հը-րաման առնելով Գալիլիացւոց Նազարէթ քաղաքըն եկաւ բնակեցաւ, որպէս զի ասով մարգարէութիւնն ալ կատարուի. այդ մարգարէութիւնը Ս. Գրոց մէջ չ՚յիշուիր, շատ հաւանական է որ սրբոյն Ոսկեբերանի յիշատակած հրէից կորսուսեալ գրոց մէջ գտնուի. ասոր համար է որ անհաւան հրէայք, "Միթէ 'ի Գալիլէէ՞ գալոց իցէ Քրիստոսն. 'ի Նազարեթէ մարթ ի՞նչ իցէ բարւոյ իմիք լինել. Միթէ եւ դու Գալիլիացի՞ իցես, քննեա՛ և տես, զի մարգարէ 'ի Գալիլէէ ոչ յառնէ" ըսելով, կը գայթակղէին։

Յակոբ Նահապետ 'ի վախճանի՝ տղոց տուած օրհնութեան ատեն Յովսեփայ դառնալով այսպէս ըսաւ.

«Եւ օրհնեաց զքեզ օրհնութիւն երկնից 'ի վերուստ, և զօրհնութիւն երկրի՝ լի ամենայնիւ. վասն օրհնութեանց ստեանց և արգանդի օրհնութեանց հօր քոյ եւ մօր քոյ, որ զօրացան քան զօրհնութիւնս լերանց մշտնջենաւորաց և քան զօրհնութիւնս բլրոց յաւիտենականաց, եղիցին 'ի վերայ գլխոյ Յովսեփայ, և 'ի վերայ գլխոյ եղբարցն որոց Առաջնորդեաց (այսինքն 'ի գագաթն Նազարի եղբարց նորա.) Ծնն. խթ. 25—26։

Յակոբ Նահապետի այս օրհնութեանց մէջ Նազար, Նեզիր (Եբր, Նիզեր. Եսայի. ԺԱ. 1. «Ելցէ ծաղիկ յարմատոյ անտի» ծաղիկ կամ շառաւիղ կը թարգմանուի,) կը նշանակէ ծաղիկ, բողբոջ, ուխտաւոր, պսակ, ևլն. զոր եօթանասնից թարգմանութիւնը «Տեսուչ» և «Առաջնորդ» կը թարգմանէ, թերևս Նազր բառին նշանակութեամբ, ուստի Յիսուսի Նազովրեցի կոչուելովն՝

գոգջիր սոյն օրհնութեան մարգարէութիւնը կը կատարուի։

Եւ մանուկն աճէր եւ զօրանայր լի իմաստութեամբ. եւ շնորհք Աստուծոյ էին 'ի վերայ նորա։ Ղուկ. Բ. 40։

Զարմանք չէր որ շնորհաց և իմաստութեան Աստուածածին Յիսուս Քրիստոս շնորհօք և իմաստութեամբ կ'աճէր, կըզարգանայր, վասն զի 'ի յաւիտենից Հօր Աստուծոյ Բանն ու իմաստութիւնն էր։

## Է. Մնալն Յիսուսի 'ի Տաճարն

Եւ երթային ծնօղք նորա ամի ամի յԵրուսաղէմ 'ի տօն զատկին։ Եւ իբրեւ եղեն նորա ամք երկոտասան, ելանել նոցա յԵրուսաղէմ ըստ սովորութեան տօնին, եւ կատարել զաւուրսն՝ եւ դառնալ անդրէն, մնաց Յիսուս մանուկն յԵրուսաղէմ եւ ո՛չ գիտացին ծնօղքն նորա։ Կարծէին զնմանէ՝ թէ ընդ ուղեկիցսն իցէ. եկին երթեալ աւուր միոյ ճանապարհ՝ խնդրէին զնա ընդ դրացիսն եւ ընդ ծանօթսն։ Եւ իբրեւ ո՛չ գտին, դարձան անդրէն յԵրուսաղէմ խնդրել զնա։ Եւ եղեւ յետ երից աւուրց՝ գտին զնա 'ի տաճարին, զի նստէր ընդ վարդապետսն. լսէր 'ի նոցանէ. եւ հարցանէր զնոսա։ Զարմանային ամենեքեան՝ որ լսէին 'ի նմանէ՝ ընդ իմաստութիւն եւ ընդ պատասխանիս նորա։ Եւ իբրեւ տեսին զնա՝ ապշեցան. եւ ասէ ցնա մայրն իւր. որդեակ՝ զի՞նչ գործ գործեցեր դու ընդ մեզ. ահաւասիկ հայր քո եւ ես տառապեալք՝ խնդրեաք զքեզ։ Եւ ասէ ցնոսա. զի՞ խնդրէիք զիս, ո՞չ գիտէիք եթէ 'ի տան Հօր իմոյ պարտ է ինձ լինել։ Եւ նոքա ո՛չ իմացան զբանն՝ զոր խօսեցաւ ընդ նոսա։ Եւ էջ ընդ նոսա, եւ եկաց 'ի Նազարեթ. եւ էր նոցա հնազանդ. եւ մայր նորա պահէր զամենայն զբանսն 'ի սրտի իւրում։ Եւ Յիսուս զար-

գանայր իմաստութեամբ և հասակաւ, և շնորհօք յԱստուծոյ և ՚ի մարդկանէ։ Ղուկ. Բ. 41-51 ։

Յիսուսի գերահանճար և գերմարդկային անբաւելի իմաստութիւնը տասներկու տարեկան հասակէն տեսնուեցաւ ։

Երբ ըստ սովորութեան տարուէ տարի Յովսէփ և Մարիամ Յիսուսի հետ Երուսաղէմ Տաճարը կերթային Զատկի տօնին, անգամ մը Յիսուս վարդապետաց քով մնացեր էր, ու անոնց բան կը հարցնէր, Յովսէփ և Մարիամ ալ ճամբէն ետ դառնալով փնտռեցին և գտան զինքը. մայրն այս ի՞նչ է, ըսաւ, որդեա՛կ. ես և հայրդ զքեզ փնտռելէն յոգնեցանք. Յիսուս ալ պատասխանեց թէ ինք իր հօրը տունը կը վայելէ, որ է Տաճարն՝ Տուն Աստուծոյ, և չէ թէ Յովսէփի տունը՝ ուր միայն մայր ունի և ոչ հայր. իսկ իրենք հայր և մայր չը գիտէին թէ 12 տարեկան տղուն միտքը ինչպէս կը հանէր անհայր՝ կուսական արգանդէ ծնանելուն վրայ ։ Իջաւ անոնց հետ և Նազարէթ գնաց՝ և ծնողասիրութիւնը իր անձին օրինակաւ սովրեցուց՝ հնազանդ մնալով Մարիամու իր ծնողին, և Յովսեփայ իր առաքինի և վեհանձն և բարի խնամակալին ։ Եւ քանի հասակը կը մեծնար, իմաստութիւնն ալ այնչափ աւելի կը ցցնէր զանազան գործերու մէջ, ըստ որում իր մանկութենէն ունէր ամենայն իմաստութիւն և շնորհք ։



# Գ Լ Ո Ւ Խ Գ.

ՔԱՐՈԶՈՒԹԻՒՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԵՒ ՄԿՐՏԵԼ ԶԺՈՂՈՎՈՒՐԴՍ.— ՄԿՐՏԻ ԵՒ ՔՐԻՍՏՈՍ.— ԵՐԿՐՈՐԴ ԱԶԴԱՐԱՆՈՒԹԻՒՆ ՓՐԿՉԻՆ.



## Ա. Քարոզութիւն Յովհաննու եւ մկրտել զժողովուրդն

Ի հնգետասաներորդի ամի տէրութեան Տիբերեայ կայսեր, 'ի դատաւորութեան Հրէաստանի Պիղատոսի Պոնտացւոյ, և 'ի չորրորդապետութեան Գալիլեացւոց Հերովդի, և 'ի Փիլիպպոսի եղբօր նորա չորրորդապետութեան Իտուրեացւոց և Տրաքոնացւոց աշխարհին, եւ 'ի չորրորդապետութեան Լիւսանեայ Աբիլենացւոց, եւ 'ի քահանայապետութեան Աննայի եւ Կայիափայ. եղեւ բան Աստուծոյ 'ի վերայ Յովհաննու որդւոյ Զաքարիայ՝ յանապատի անդ ։ Ղուկ Գ. 1-2 ։

Հռովմայեցւոց Օգոստոս կայսեր մահուընէ վերջն իրեն յաջորդ Տիբերիոսի ժամանակը, յորում՝ Պիղատոս Պոնտացի իբրև փոխարքայ դատաւորութեան պաշտօն կը վարէր Հրէաստանի. և Հերովդէս Գալիլիայի չորրորդապետ կարգուած էր, և նորա եղբայր Փիլիպպոսն՝ չորրորդապետութեամբ Իտուրիա կամ Իտուրացւոց աշխարհին (որն որ Յորդանանու ադրիի կողմը Լիբանանու ստորոտէն մինչև Սիդոնի լեռները կը տարածի) և Տրաքոնացւոց աշխարհին (որն որ

Յորդանանու միւս կողմը Լիբանանու և Լիբանա-
ներն ըռուած լեռներու ստորոտը կ՚իյնայ) վրայ
կ՚իշխէր ։ Լիւսանոս ալ Աբիլենացւոց երկրին չոր-
րորդապետութիւն կ՚ընէր , (որն որ Լիբանանու
և Լիբանաներն ըռուած լեռներուն մէջ տեղն
կ՚իյնար) ։ Եւ յորում Աննա միմիայն անուամբ քա-
հանայապետ մնացած՝ իսկ Կայիափայ քահանայա-
պետութիւն կ՚ընէր , յորում և Հրէից քահանայա-
պետութեան վիճակը բոլորովին գէշցած , քահա-
նայապետութիւնը յիրերաց կը յափշտակէին ։
Ահա այս ժամանակները Յովհաննու՝ Զաքարիայի
որդւոյ՝ որ անապատի անբեր դաշտերու մէջ՝
ինքզինք կարապետութեան կը պատրաստէր կը
յայտնուի և հրաման առնելով Աստուծոյ կողմա-
նէ կելնէ դուրս և Յորդանանու բոլոր կողմերը
կը պտըտի , որ ապաշխարութիւն քարոզէ և մը-
կըրտէ 'ի թողութիւն մեղաց . ըստ այնմ ,

Եւ էին յամենայն կողմն Յորդանանու քարոզել մկրտու-
թիւն ապաշխարութեան 'ի թողութիւն մեղաց ։ Ղուկ. Գ. 3 ։

Մկրտութիւնը Հրէից անծանօթ չէր , 'ի հե-
թանոսութենէ դարձողները Հրէայք կը մկրտէին ,
և կը թլփատէին միանգամայն (Թալմուտ Երուսաղեմ)։
Յովհաննէսի մկրտութիւնը պատրաստութիւն
մ՚էր Քրիստոսի մկրտութեանը . մէկը ապաշ-
խարութեան մկրտութիւն էր , իսկ Քրիստոսինը
սրբարար Մկրտութիւն . և ինչպէս Ոսկեբերան
կըսէ , Յովհաննու մկրտութիւնը՝ որ Հրէից մը-
կըրտութենէն գերազանց , բայց Քրիստոսի մկըր-
տութենէն ստորին էր , դէպ 'ի Քրիստոսի Մկըր-
տութիւնը տանող կամուրջ մ՚էր ։

Եւ ասէր . ապաշխարեցէ՛ք , զի մերձեալ է արքայութիւն երկնից : Մատթ. Գ. 2 :

*Կ'ըսէ Յովհաննէս և կը քարոզէ որ Յիսուս Քրիստոս, երկնից Արքայութիւնն եկած է, անոր մէ քաւութիւն, թողութիւն գտնելու համար ամէն մարդ պէտք է որ իւր մեղաց վրայ զղջայ :*

Որպէս եւ գրեալ է 'ի մարգարէս : Ահաւասիկ ես առաքեմ զհրեշտակ իմ առաջի քո , որ հանդերձեսցէ զճանապարհ քո առաջի քո : Մարկ. Ա. 2 : Զի սա է , վասն որոյ ասացաւ 'ի ձեռն Եսայեայ մարգարէի . Ձայն բարբառոյ յանապատի . պատրաստ արարէք զճանապարհ Տեառն , և ուղիղ արարէք զշաւիղս նորա: Մատթ. Գ. 3: Ձայն բարբառոյ յանապատի , պատրա՛ստ արարէք զճանապարհ Տեառն , եւ ուղի՛ղ արարէք զշաւիղս նորա : Մարկ. Ա. 3 : Որպէս եւ գրեալ է 'ի գիրս պատգամաց Եսայեայ մարգարէի . Ձայն բարբառոյ յանապատի . պատրա՛ստ արարէք զճանապարհ Տեառն , ուղի՛ղ արարէք զշաւիղս նորա : Ղուկ. Գ. 4 :

*Այս այն է՝ որուն համար Եսային (Գլ. Խ. 3) Հոգւով յանապատի տեսնելով (զՅովհաննէս) կը մարգարէանար թէ Նա յանապատի, Ձայն բարբառոյ է, այսինքն, բարձրագոչ աղաղակաւ Մեսիային առջևէն պիտի երթայ և պիտի քարոզէ ժողովուրդն՝ զՄեսիայն արժանապէս տեսնելու և անորմէ մեղաց թողութիւն իրապէս առնելու համար՝ 'ի սրտէ ապաշխարէ, և իրմէն 'ի ջուր մկրտուելով՝ Մեսիային հոգևոր Մկրտութիւնն ընդունի : Եսային՝ Ձայն բարբառոյ, կըսէ, Յովհաննէսի համար, վասն զի խորայեղի լսլացեալ և ըմբռնելեօք ծանրացեալ ժողովուրդին բարձրագոչ պիտի աղաղակէր՝ որ իրենց սրտերը մաքրեն, ապաքինութեան և բարեգործութեան կենօք ապ-*

րին, որպէս զի Մեսիայն, Յիսուս Քրիստոս, յարդարեալ ճանապարհ գտնէ իրենց սրտին մէջ գալու բնակելու։

Ամենայն ձորք լցցին, եւ ամենայն լերինք եւ բլուրք խոնարհեսցին. եւ եղիցին դժուարինքն 'ի դիւրինս, եւ առապարքն 'ի հարթ ճանապարհս։ Եւ տեսցէ ամենայն մարմին զփրկութիւն Աստուծոյ։ (Եսայ. Խ. 4–5) Ղուկ. Գ. 5–6։

Եսային կանուխ կ'աղաղակէ թէ Մեսիայ փրկչին եկած ժամանակը, Նորա կարապետը՝ Ձայն բարբառոյ՝ բարձրագոչ աղաղակաւ պիտի ձայնէ որ ամեն մարդ աշխատէ, ձորերը, ցած ու ընդերկրաքարշ կիրքերը, խոկմունքները, բարձրացընելու և առաքինութենէ թափուր եղողներն արդարութեամբ լեցնելու կուգար Քրիստոս՝ որու մունետիկն ու Նախաքարոզ ձայնն էր Յովհաննէս։ Նորա գալստեամբը լերինք և բլուրք այսինքն լեռնացեալ խորհուրդներն, ամբարտաւանութիւնը, և գործերն պիտի խոնարհին։

Այն օրէն պիտի սկսի, կըսէր Մարգարէն՝ մարմնասիրաց յառաջագոյն դժուարին կարծըւած առաքինութիւններն հանդերձելոյն յուսով դիւրին և քաղցր լինել։

Օրէնքի դժուարութիւններն՝ հաւատով պիտի դիւրանան, և խորտուբորտ տեղերը պիտի չքտկուին, այսինքն. ծուռումուռ և մանուածոյ չարախորհուրդ խոհերք պիտի վերնան Նորա ճամբուն մէջ մտնել ցանկացողներուն սրտերէն։

Քրիստոսով պիտի կարող լինիմք առաքինանալ, Նորա ցուցած ճամբաներէն գնալ և բնաւ չը սայթաքիլ, զի առապարքն՝ 'ի հարթ ճանապարհս եղիցին, և ահա այն ժամանակն է որ ոչ

միայն Հրէայք, այլ և ամբողջ մարդկային բնութիւնը՝ Աստուծոյ շնորհած փրկութիւնը պիտի վայելէ, տեսնէ ։

Եւ ինքն Յովհաննէս ունէր հանդերձ 'ի ստեւոյ ուղտու․ եւ գօտի մաշկեղէն ընդ մէջ իւր ; եւ կերակուր նորա էր մարախ եւ մեղր վայրենի ։ Մատթ․ Գ․ 4 ։

Այս զարմանալի և խստակրօն մարդն ուղտի մորթի կը հագնէր, մէջքը մաշկեղէն գօտի կը կապէր, ու իր կերակուրն՝ Ասիոյ և Լիբիոյ բընակչաց կերակուրն եղող տեսակ մը մարախ էր՝ որ օրէնքէն ալ արգիլուած չէր, ու ծառերու խառոչներու և քարերու ծերպերու մէջ ազատ մեղուներու շինած ու վայրենի կոչուած մեղրը կ'ուտէր ։

Յայնժամ ելանէին առ նա ամենայն Երուսաղէմացիք՝ եւ ամենայն Հրէաստան՝ եւ ամենայն կողմն Յորդանանու, եւ մկրտէին 'ի նմանէ 'ի Յորդանան, եւ խոստովան լինէին զմեղս իւրեանց ։ Մատթ․ Գ․ 5 ։

Երբոր Յովհաննու սքանչելի վարուց և մարգարէութեան համբաւը տարածուեցաւ, Երուսաղեմէն, բոլոր Հրէաստանէն և Յորդանանու մօտ գտնուած քաղաքներէն բազմութեամբ իրեն դիմեցին ։ Քարոզութիւնները պատերազմաց յաղթութեան վրայ չէին, աշխարհի նկատմամբ սիրոյ վրայ չէին․ զամենքն երկինք կը հրաւիրէր․ առաքինութիւն դաս տալով, գեհեննին տանջանքները կը պատմէր՝ մոլութիւններն ատելի ցըցընելով․

Ըրած մկրտութիւններն և յետ մկրտելոյ ժողովրդեան խոստովանութիւնն առնուլն, անմշան

երբ չէին. կը մկրտէր 'ի ջուր, վասն զի Քրիստոսի ձեռքով հաստատուած հոգևոր Մկրտութիւնը պիտի նշանակէր։

Ցետ մկրտութեան, մկրտեալներուն խոստովանութիւնը կ'ընդունէր, վասն զի Քրիստոսի եկեղեցին՝ նոյն օրինակ պիտի խոստովանեցնէր հաւատացեալները։

Եւ տեսեալ զբազումս 'ի Սադուկեցւոցն եւ 'ի Փարիսեցւոց եկեալս 'ի մկրտութիւն նորա, ասէ ցնոսա. ծնունդք իժից՝ ո՞ ետոյց ձեզ փախչել 'ի բարկութենէն որ գալոցն է։ Մատթ. Գ. 7։

Հրէից մէջ քանի մը աղանդներ կային. փարիսեցի, Սադուկեցի, Եսեանք ևլն։

Փարիսեցւոց աղանդը Քրիստոսէ 260 տարւոյ չափ յառաջ ծագած է. փարիսեցւոց այս աղանդն, 'ի ժամանակին՝ իմաստնոց և առաքինեաց աղանդ մը կը համարուէր. փարիսեցի՝ ուրիշներէ զատուած, որոշուած կը նշանակէ եբրայեցերէն, և կը կարծուի որ փարէս անուամբ անձ մը սկզբնաւորեալ լինի։ Ասոնք աւանդութեան սիրահար էին, արտաքին արարողութեանց ջերմեռանդն։ Կը կարծէին և կը հաւատային՝ որ Աստուած Մովսիսի՝ Միթքաթօն անուամբ հրեշտակին ձեռամբ անգիր պատուէրներ տուած լինի, Ս. Գրքէն որոշ. որոց՝ պատուիրանաց օրէնք կըսէին. բայց դէշն այն էր որ օրէնքէն աւելի նախամեծար կը համարէին պատուիրանքներն, ու օրէնքը չը բանելով այն ծերերու աւանդութեանց կամ հարց յորդոր բերնէ բերան իջած՝ մկրտութեանց կամ լուացմանց և ուրիշ արտաքնայարդար բարեպաշտութեանց հա-

մար, ամենայն նկատմամբ հաւատաքննիչներ էին, և ըստ Թալմուտի՝ սուտ բարեպաշտներ, մինչև անգամ Թալմուտը խծբծողներ, խիստ ամբարտաւան, բարձրամիտ, բարձր պատիւներու թեկն ածող և խորամանկ, ուստի և իրաւամբ Յիսուս զանոնք կեղծաւոր անունը կ'ուտար:

Սադուկեցիք՝ Քրիստոսէ 260 տարի յառաջ Սադովկ անունով անձի մը հետևողներ են. Սադովկ՝ Հրէից Սանհետրիմ ժողովին նախագահ Անտիգոնոս անուն անձին աշակերտն էր: Անտիգոնոս կը վարդապետէր՝ թէ մարդս Աստուծոյ յարաժամ աղօթելու է առանց երկիւղի պատժոյ և առանց ակնկալութեան վարձուց: Սոյն վարդապետութենէն՝ Սադովկ սա սխալ հետևութիւնը հանեց թէ ուրեմն վարձք և պատիժ հատուցանելիք հանդերձեալ աշխարհ չկայ, և թէ մարդ անմահ հոգի չունի, թէ հոգւոյ և մարմնոյ յարութիւն չկայ, ինչպէս նաև դատաստան. Ասոնք կը պնդէին թէ Մովսէսի հնգամատեանէն զատ ուրիշ գիրք չեն ճանչնար. սակայն խօսք էր այս. վասն զի, ըստ քմաց՝ գրքերը կը մեկնաբանէին, և հոգւոյ անմահութեան վերաբերեալ վկայութիւններն ուրիշ մտքերով կը բացատրէին: Այժմու անհաւատներուն պէս ամեն բան կը ծաղրէին և փարիսեցւոց հետ երկու ծայրայեղութիւն կը ներկայացնէին, մինչև անգամ Աստուծոյ ամենակարողութիւնը, և զտիեզերս՝ անքուն աչօք կառավարելն ու խնամելը կ'ուրանային: Սադուկեցիք սակաւաթիւ էին. բայց և այնպէս մէջերնին մինչև անգամ քահանայապետներ տեսնուած են. Յովհաննէս-Հիւրկանոս Քրիստոսէ 120 տարի յառաջ քահանայա-

պետ էր ։ զՔրիստոս մահուան դատապարտող Կայիափայ ալ այս աղանդէն էր ․ և ըստ Յովսեպոսի՝ Տեառն եղբայր Յակոբոսը սպաննող Անանիաս քահանայապետը Սադուկեցի էր ․

Եսեանք՝ ըստ Յովսեպոսի, Հրէից անապատականներն էին, որք աշխարհ թողած՝ չէին ամուսնանար, և տեսակ մը ընչից և ստացուածոց հաւասարութիւն կայր մէջերնին ։ Ասոնց յիշատակութիւնը չ'կայ Նոր Կտակարանի մէջ ։ Այս աղանդի հետեւողները չատւոր չէին ըստ Յովսեպոսի, հազիւ չորս հազար հոգւոյ կը հասնէր անոնց թիւը ։

Յովհաննէս, երբոր տեսաւ որ այս Սադուկեցի և Փարիսեցի աղանդաւորներն 'ի մկրտութիւն կ'ուգան, անոնց սիրտը կարդաց, և իմանալով որ Սադուկեցիք բնաւ Աստուածային իրաց հաւատք չեն ընծայեր և հետաքրքրութեան համար միայն կուգան ․ և Փարիսեցիք մարմնասէր մարդիկ՝ միայն փառք վաստըկելու և ըրած մկրտութիւնը ապօրինաւոր ցուցնելու կուգան, նախանձու և ոխակնութեամբ վառուած օձեր էք դուք, ըսաւ, ու օձերու ձագեր ․ այս բառերը իրենց չարութեան և խորամանկութե նկարագիրն են ։ Եւ ո՞վ զրուցեց ձեզ որ գալիք բարկութենէն փախչիք ․ մարդոց դատաստանէն և ձեր գործոց վրայ արդարապէս զգալու բարկութենէն կարող էք փախչիլ ձեր սովորական կեղծաւորութեամբ, բայց Աստուծոյ արդար բարկութենէն չէք կարող փախչիլ, Աստուած ձեր երիկամունքը կը տեսնայ ․ դուք չէք կրնար կրօք Աստուծոյ բարկութենէ խալսիլ, մինչև որ Ձեր սիրտերը չուղղէք, մինչև որ արտաքին օրբու-

թեանց և մաքրութեանց տեղ՝ ներքինը չը յարդարէք։

Արարէ՛ք այսուհետեւ պտուղ արժանի ապաշխարութեան։ Եւ մի՛ համարիջիք ասել յանձինս՝ թէ ունիմք մեք հայր զԱբրահամ. ասեմ ձեզ, զի կարօղ է Աստուած ՚ի քարանցս յայսցանէ յարուցանել որդիս Աբրահամու։ Մատթ. Գ. 8։

Ապա ուրեմն ՚ի բարկութենէ ազատ մնալու համար, ձեր մեղաց վրայ զղջալու և զղջի և ապաշխարութեան պտուղ, այսինքն, բարեգործութիւն և առաքինութիւն ցոյց տալու էք։

Աբրահամի վրայ պարծենալնիդ ձեզ օգուտ չը բերեր, եթէ դուք նորա գործն չունենալով մի միայն մարմնոյ ազնուականութեան վրայ սոնքալու ըլլաք։

Այսու փարիսեցւոց՝ Աբրահամու զաւակ ըլլալնուն համար ունեցած պարծանքնին կը չըրէ Յովհաննէս. և որովհետև Աբրահամու գործ չունէին՝ անոր հաւատքը չ՚ունէին, կը հասկցնէ թէ Աստուծոյ առջև բնաւ արժէք չունին։ Եւ այնչափ յոյս չէին տար փոխուելու և զղջալու, որ Աստուծոյ աւելի դիւրին գործ կը համարի այդ Յորդանանու քարերէն Աբրահամու զաւակներ յարուցանել, որք եթէ Աբրահամու գործ ցուցընեն՝ կը փրկուին, եթէ նորա սերունդէն ալ եղած չ՚ըլլան։

Այս քարերն հոգևորապէս կիմացուին նաև հեթանոսք, որոց թէպէտ իբրև զաւակաց Աբրահամու խոստումն եղած չէր, բայց հաւատալով Քրիստոսի վարդապետութեանցն, Աբրահամու ճշմարիտ զաւկներն ըսուեցան։

Յովհաննէս Թերևս Եսայեայ Գլ. ԾԱ. 1. հա-

մարը կ՚ակնարկէ, ուր Աբրահամու ծերութիւնն ու Սառայի ամլութիւնը ապառաժ քարի նմանցուցած է. "Նայեցարուք ՚ի վէմն հաստատուն յորմէ կոփեցարուք, (հատարուք, կտրեցաք) և ՚ի գուբ հորոյն յորմէ փորեցարուք. Նայեցարուք յԱբրահամ հայրն ձեր և ՚ի Սառա, որ երկնեաց զձեզ. զի մի էր, (միայն մինչդեռ էր) և կոչեցի զնա և օրհնեցի զնա և սիրեցի զնա և բազմացուցի զնա": Ուստի ինչպէս երբեմն ՚ի հողոյ և երբեմն ապառաժացեալ ամլութենէ և գրեթէ անհաւանելի խորութենէ և գուբէ հանելու պէս Աբրահամէն Աստուած որդիս յարոյց՝ իւր ժողովուրդն այսպէս դարձեալ ընել կարող է: Ապաշխարութեան և զղջման նշանը բաւական չէ, ով որ կը շարունակէ մեղանչել, ապաշխարած չը համարուիր. Ճշմարիտ ապաշխարութեան ապացոյցը՝ մաքուր կեանք, և բարի գործեր են. այսինքն, հեզութիւն, ողորմութիւն, ճշմարտասիրութիւն. ասոնք են ապաշխարութեան պտուղները զոր չունէին փարիսեցիք և Սադուկեցիք:

Հրէից այսպէս անզիջ մնալնին պատճառած է այն աւանդութենէն՝ թէ "Աբրահամ դժոխոց դռներուն քով նստած՝ Իսրայելի անարժան որդւոց դժոխք իջնելը կարգիլէ" (Թալմուտ). Յովհաննէս իւր սպառնալեօքն այս սխալը կը ջնջէ:

Զի ահաւասիկ տապար առ արմին ծառոց դնի, ամենայն ծառ որ ոչ առնէ պտուղ բարի՝ հատանի եւ ՚ի հուր արկանի. Մատթ. Գ. 10.

Աստուծոյ դատաստանը մօտ է, կ՚ըսէ Յովհաննէս. և զիրենք իրենց անհաւատութեան և անարդարութեանն համար, ծառերու նմանցունելով կ՚ըսէ, թէ անպտուղ ծառոց արմատնե-

րուն մօտ տապարը պատրաստ դրուած է որ անմիջապէս կտրուին և կրակը ձգուին ։ Հրէից ազգը անպտուղ ծառի կը նմանէին , իրենց նախնեաց առաքինութեանց պտուղներն այն ժամանակի սերունդին վրայ չէր տեսնուեր . ուստի տապարն, այսինքն, Հռովմայեցիք՝ անպտուղ ծառին, այսինքն, անհաւատ և անբարի Հրէից քով պատրաստ կեցած , Աստուծոյ հրամանին կըսպասէին ծառն արմատէն կտրելու ։

Հարցանէին զնա ժողովուրդքն եւ ասէին . Իսկ արդ , զի՞նչ գործեսցուք ։ Ղուկ. Գ. 10։

Եւ երբոր ժողովուրդը կը հարցունէր թէ , ուրեմն ինչ գործ, ինչ պտուղ գործենք որ այդ սպառնալիքէն ազատուինք ։

Պատասխանի ետ եւ ասէ ցնոսա . որ ունիցի երկուս հանդերձս , տացէ զմին այնմ՝ որ ոչ ունիցի . եւ որ ունիցի կերակուր՝ նոյնպէս արասցէ . Ղուկ. Գ. 11։

Անոնց պատասխան տուաւ և ըսաւ , թէ Աստուծոյ սպառնալիքէն ազատ մնալու համար բարեգործութիւն ընելու էք , հանդերձ չունեցողին՝ հանդերձ , կերակուր չունեցողին՝ կերակուր տալով ։

Եկին եւ մաքսաւորք մկրտել , եւ ասեն ցնա . Վարդապետ՝ զի՞նչ գործեսցուք ։ Եւ նա ասէ ցնոսա . Մի՛ ինչ աւելի քան զհրամայեալն ձեզ առնիցէք ։ Ղուկ. Գ. 12 ։

Մաքսաւորներն այս անունով կը ճանչցուէին Հրէայներէն , և Հռովմայեցւոց կողմանէ կարգուած հարկապահանջներ էին՝ որ շատ ատելի էին Հրէից և արհամարհելի , և անհաւատներէն

ալ գէշ կը համարուէին ։ Ասոնք եկան որ մկըրտուին և ըսին թէ փրկուելու համար ի՞նչ գործեն. ըսաւ անոնց Յովհաննէս. գացէք և ձեզի ինչ որ պատուիրուած է՝ զայն միայն կատարեցէք և ոչ աւելի.

Հարցանէին զնա և զինուորքն և ասէին. և մեք զի՞նչ գործեսցուք. ասէ ցնոսա. մի՛ զոք խռովեցէք՝ և մի՛ զոք զրպարտիցէք, շատ լիցին ձեզ թոշակքն ձեր ։ Ղուկ Գ. 14 ։

Զինուորներն ալ եկան հարցուցին թէ հապա մենք ի՞նչ պիտի գործենք. անոնց ալ ըսաւ. մէկը չը պիտի նեղէք, մէկուն վրայ զրպարտութիւն չը պիտի ընէք, որպէս զի ստակ վաստըկիք, ձեզի կապուած թոշակով գոհ եղիք ։

Մինչ ակն ունէր ժողովուրդն՝ և խորհէին ամենեքեան 'ի սիրտս իւրեանց վասն Յովհաննու՝ մի՛թէ նա իցէ Քրիստոսն ։ Պատասխանի ետ ամենեցուն և ասէ. ես մկրտեմ զձեզ ջրով. բայց գայ զօրաւորն քան զիս, որոյ չեմ բաւական բառնալ զկօշիկսն. նա մկրտեսցէ զձեզ հոգւովն սրբով և հրով ։ Որոյ հեծանոցն 'ի ձեռին իւրում սրբել զկալ իւր և ժողովել զցորեանն 'ի շտեմարանս իւր, և զյարդն այրեսցէ անշէջ հրով ։ Ղուկ. 15-17 ։

Երբ այսպէս՝ այս ընտիր վարդապետն ապաշխարութեան կը յորդորէր զժողովուրդն ո՛չ 'ի զէն և յապստամբութիւն, և ոչ անոնց սիրտերը երկրաւոր փառաց յոյսերով լեցնելով, այլ կըպատրաստէր Թագաւորաց Թագաւորն ընդունելու, և անապատը կը շէնցնէր. անապատացեալ հոգիներն յուղղութիւն կըբերէր, ժողովուրդը կըկարծէր թէ աս է Քրիստոսն ։

Բայց ինքն Յովհաննէս, հեզութեամբ կը պա-

տասխանէ, թէ Քրիստոսն ինք չէ, այլ միայն նա-
խապետ մ'է որ Տիրոջը գալն իմացնէ և փրկու-
թիւն ընդունելու պատրաստէ ժողովուրդն, և
թէ ինք ջրով մկրտութիւն կ'ընէ, իսկ իրմէն ետ-
քը եկողն՝ իրմէ զօրաւոր է, (Յիսուսի հասակն
փոքր էր Յովհաննէսէն, անշուշտ Յիսուսի Աս-
տուածութիւնը կ'ակնարկէ՝ ահզօրագոյն է քան
զիս խօսքը), որուն մինչև անգամ կօշիկները
վերցնելու կարող չեմ։ Նորա մկրտութիւնը հրով
ալ է, ինչպէս Պէնտէկոստէի օրը՝ Առաքեալք հր-
եղէն լեզուներով զօրացան. այն հրովը հոգիներ-
րը իբրև զոսկի կը փորձէ, կը մաքրէ իրենց
ժանգէն, և կը փայլեցնէ արդարութեամբ, սի-
րով, արիութեամբ և ժրաջանութեամբ. իսկ այս
փորձին չը դիմացողները՝ նոյն հրով կ'այրէ
յաւիտեան։ Հեծանոցն ալ ձեռքն առած պիտի
գայ որ կալը որբէ; այսինքն, Քրիստոս իբրև ա-
գարակին կամ աշխարհքին տէր, իւր հեծանոցն
իւր ձեռքն բռնած է, աշխարհիս վրայ (հեծա-
նոց, եափայ, կալին մէջ ցորենը յարդէն զատող
մասնաւոր գործին) և նա միայն կարող է իբրև
դատաւոր գերագոյն իւր կալը որբել, զոր պիտի
ընէ օր մը անշուշտ չարերը բարիներէն որոշելով
ինչպէս ցորենը յարդէն կը զատեն։

Բազում և այլ ինչ մխիթարութեամբ աւետարանէր ժողո-
վրդեան ։ Ղուկ. Գ. 18 ։

Յովհաննէս իւր այս անաչառ խօսքերուն վը-
րայ շատ մը մխիթարական և յուսադրական խօս-
քեր ալ յաւելցուց, որով ժողովուրդը կը յորդորէր
յուղղութիւն գալու և գալիք Փրկչին արժանա-
նալու համար անապատացեալ և ամայի սրտերն

տաւաքինութեամբ կը չէնցնէր։

Եւ եղեւ յաւուրսն յայնոսիկ, եկն Յիսուս ՚ի Նազարեթէ Գալիլեացւոց. Մարկ. Ա. 9. ՚ի Յորդանան առ Յովհաննէս մկրտել ՚ի նմանէ։ Եւ Յովհաննէս արգելոյր զնա եւ ասէր. Ինձ պիտոյ է ՚ի քէն մկրտել՝ եւ դու առ իս գաս։ Պատասխանի ետ Յիսուս՝ եւ ասէ ցնա. Թո՛յլ տուր այժմ, զի այսպէս վայել է մեզ լնուլ զամենայն արդարութիւն. եւ ապա թոյլ ետ նմա։ Մատթ. Գ. 13–15։

Պակեաւ Յովհաննէս՝ Արարիչը այնքան խոնարհաբար իրեն դէմը կեցած տեսնելուն, նա մանաւանդ երբ մկրտուել կուզէ. Այն՝ որ Սրբութիւնն է Սրբոց և անկարօտ մաքրութեան. կը սոսկայ Յովհաննէս և կ՚արգիլէ զինքը. ես, կ՚ըսէ, մեղանչական մարդ, կը վայելէ՝ որ սրբուելու համար ՚ի քէն մկրտուիմ որ գլխովին մաքրութիւն ես, ինձմէ մկրտուիլ կուգաս. ինձ պէտք է քեզմով Սրբուիլ, քու Հոգւովդ մկրտուիլ, ո՛վ գառն Աստուծոյ, որ աշխարհիս մեղքերը կը քաւես. դու Տէր, ես ծառայ. տէրը միթէ իւր գլուխը ծառային կը խոնարհեցնէ։ Պատասխան տուաւ Յիսուս. հիմակ ձգէ, ես ուրիշ բանի համար եկեր եմ. Աստուծոյ արդարութիւնը ապականեալ մարդուն պատիժ յաւիտենական սահմանած էր, այս արդարութիւնը լեցունելու համար, բոլոր մարդկային ազգին տեղ՝ որ մեղաց ծառայ եղաւ՝ ահա՛ մարդ մը գլուխը կը խոնարհեցնէ քու առջեւդ. այո՛, այս մարդը մեղք չունի, սրբուելու կարօտութիւն չունի. բայց այս մարդը, ամբողջ. ոչ միայն քու առջեւդ, այլ եւ անիրաւ դատաւորներու առջեւ ալ գլխակոր պիտի կայնի եւ բնաւ իրեն չըգործած յանցանքներուն համար։

արիւն պիտի թափէ օր մը, եւ այն օրը մօտ է, թափէ՛ ջուրը գլխուս վրայ, մի՛ վախնար, այս գլուխը օր մը դարձեալ չըվախնալով՝ արիւն պի-տի թափէ. Յովհաննէս, արդարութիւնը անա-չառ է, կըպատժէ, գթութիւնը պատժապարտը կըփոխանակէ, բայց պատիժը չիկրնար վերցնել. կամ մարդիկ ամենը մէկանց կորսուելու են, կամ ես միայնակ մեռնելու եմ մահուամբ. այս ջրոյ մկրտութիւն է, ես արեամբ ալ պիտի մկրտուիմ, ժամանակն եկաւ որ հրով ալ պիտի մկրտեմ ու սրբեմ տիեզերքը։

Յովհաննէ՛ս, դու մի՛ կարծեր թէ ազատ պի-տի մնաս այդ արեան մկրտութենէն, դու ալ քիչ օրէն արդարութեան նահատակ պիտի ըլլաս։

Այս խօսքերուն վրայ Յովհաննէս գիջաւ, և Յիսուս ջուրը մտնելով Յովհաննէսէն մկրտուեցաւ։

Եւ մկրտեալ Յիսուս. ել վաղվաղակի ՚ի ջրոյ ան-տի. և ահա բացան նմա երկինք. և ետես զՀոգին Աստուծոյ՝ զի իջանէր իբրև աղաւնի, և գայր ՚ի վերայ նորա։ Եւ ա-հա ձայն յերկնից՝ որ ասէր. Դա՛ է Որդի իմ սիրելի, ընդ որ հաճեցայ։ Մատթ. Գ. 16-17։

Եւ երբոր խոնարհութեամբ մկրտուեցաւ, Յի-սուս շուտ մը ջուրէն ելաւ. եւ երբ շատ ժողո-վուրդ Յիսուսի հետ Յորդանանու մէջ մկրտուել-նէն վերջ, Յիսուս աղօթքի կեցած էր,

Եւ եղև ՚ի մկրտել ամենայն ժողովրդեանն, և ընդ Յի-սուսի մկրտելն՝ և կալ յաղօթս։ Ղուկ. Գ. 21։

Ապա փառաւորուեցաւ. զի երկինք բացուե-ցան եւ տեսաւ Աստուծոյ Հոգին՝ որ աղաւնիի պէս Յիսուսի վրայ կիջնէր. ու երկինքէն ձայն

ձ՚այն եկաւ որ կըկրկնէր․ Դու իմ սիրելի Որդիս ես․ եւ Ժողովուրդին ալ թէ՝ Դա իմ սիրելի Որդիս է յաւիտենական։ Եւ այսպէս Յիսուս Ջրով Յովհաննէսէն մկրտուեցաւ եւ Ս․ Հոգիէն ալ օծուեցաւ, որ կընշանակէր հին քահանայապետաց եւ թագաւորաց նախապէս Ջրով լուացուիլն եւ ապա իւղով օծուիլն․ եւ Հոգին Սուրբ ո՛չ արծուի կամ ուրիշ յափշտակիչ եւ գիշատիչ թռչունի, այլ հաշտութեան, խաղաղութեան և հեզութեան օրինակն եղող աղաւնւոյ կերպարանքով կիջնէր, թէ՛ Քրիստոսի հեզութիւնն ու անմեղութիւնը եւ սրտին գութը նշանակելու, եւ թէ՛ ցցնելու համար թէ Հոգին Սուրբ առանց չափի տրուեցաւ Անոր՝ որ օծուեցաւ Հոգւով Սըրբով եւ գլուխ եղաւ եկեղեցւոյ եւ յաւիտենից քահանայապետ։ «Ընդ որ հաճեցայ»․ Անոր պաշտօնին հաւանութիւն տուի, անոր փրկագործութիւնը իմ կամօք եւ հաճութեամբն է։ Ահա՛, այս մկրտութեան խորհրդոյս կատարուած ատեն, Ամենասուրբ Երրորդութեան երեք անձանց խորհուրդը կը յայտնուի․ Հայր՝ իւր ձայնով եւ վկայութեամբն՝ թէ՛ ինքզինք եւ թէ՛ իր սիրելի Որդին, իսկ Հոգին Սուրբ աղաւնակերպ ինքզինքը կը յայտնէ․ եւ ինչպէս երբեմն Հայրն, Որդին եւ Հոգին՝ անդնդոց վրայ գործակցութեամբ զտիեզերս կ՚արարչագործէին, այսպէս և այժմ երեք անձինք բարոյական աշխարհը նորէն կ՚ստեղծեն եւ կամ մարդկային փրկութիւնը Յորդանանու ալեաց վրայ կռանօրինեն․

Եւ ինքն Յիսուս էր իբրեւ ամաց երեսնից՝ սկսեալ, որպէս կարծէր որդի Յովսեփու ․ Ղուկ․ Գ․ 23․

Յիսուս երեսուն տարուան հասակին սկսած էր և ատենուան կըկարծուէր թէ Յովսեփայ որդին է. և «որպէս» յունարէն կը գրեն ώς եւ եթէ ώς ըլլայ, այն ատեն կը նշանակէ թուել:

Որ Յովսեփայ, որ Հեղեայ, որ Մատաթեայ: Ղուկ. Գ. 23:

Յովսեփ Յակոբայ որդին էր, Յակոբ ալ Հեղիին, (որ կըսուի նաև Եղիակիմ եւ Յովակիմ Ս. Աստուածածնին հայրն, աներ, դուցէ եւ հայրագիր ալ սեպուած ըլլայ Յովսեփայ), Հեղին ալ Մատաթիային որդին:

Որ Ղեւեայ, որ Մելքեայ, որ Յաննեայ, որ Յովսեփայ: Որ Մատաթեայ, որ Ամովսայ, որ Նաւումայ, որ Եսղեայ, որ Նանգեայ: Որ Մաաթայ, որ Մատաթեայ, որ Սեմեայ, որ Յովսեփեայ, որ Յովդայ: Որ Յովհանանայ, որ Ռեսայ, որ Զորաբաբելին, որ Սաղաթիելին, որ Ներեայ: Որ Մելքեայ, որ Ադդեայ, որ Կովսամայ, որ Եղմովդադայ, որ Էրայ: Որ Յեսուայ, որ Եղիազարայ, որ Յովրամայ, որ Մատթայ, որ Ղեւեայ: Որ Շմաւոնին, որ Յուդային, որ Յովսեփայ, որ Յովնամայ, որ Եղիակիմայ: Որ Մելեայ, որ Մեննայ, որ Մատաթայ, որ Նաթանայ, որ Դաւթին: Որ Յեսսեայ, որ Ովբեդայ, որ Բոոսայ, որ Սաղմոնայ, որ Նաասոնին: Որ Ամինադաբայ, որ Արամայ, որ Ադմեայ, որ Առնեայ, որ Եսրովմայ, որ Փարեսին, որ Յուդային: Որ Յակովբայ, որ Իսահակայ, որ Աբրահամու, որ Թարային, որ Նաքովրայ: Որ Սերուքայ, որ Ռագաւայ, որ Փաղեկայ, որ Եբերայ, որ Սաղային: Որ Կայնանայ, որ Արփաքսադայ, որ Սեմայ, որ Նոյին, որ Ղամեքայ: Որ Մաթուսաղային, որ Ենովքայ, որ Յարեդին, որ Մաղաղիէլին, որ Կայնանայ: Որ Ենովսայ,

որ Սեթայ . որ Ադամայ . որ Աստուծոյ . Ղուկ. Գ. 24–38

*Այսպէս Ղուկաս Յիսուսի ազգաբանութիւնը ինչպէս որ տեսար Մատթէի ազգաբանութեան ծանօթութեան մէջ, Յիսուսի հայր կարծուած Յովսեփէն կ'սկսի եւ կ'ելնէ մինչ յԱստուած.*

# ԳԼՈՒԽ Դ.

ՓՈՐՁՈՒԹԻՒՆ ՏԵԱՌՆ ՅԱՆԱՊԱՏԻՆ. — ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ՅՈՎՀԱՆՈՒ. — ԱՌԱՋԻՆ ԿՈՉՈՒՄՆ ԱՆԴՐԻԱՅ, ՊԵՏՐՈՍԻ, ԵՒ ՓԻԼԻՊՊՈՍԻ. — ՎԱՍՆ ՀԱՐՑՄԱՆՆ ՆԱԹԱՆԱՅԷԼԻ :



## Ա. Փորձութիւն Տեառն յանապատին .

Յայնժամ վարեցաւ Յիսուս յանապատ 'ի Հոգւոյն փորձել 'ի սատանայէ : Մատթ. Դ. 1 : Եւ էր ընդ գազանս . Մարկ. Ա. 13 : Եւ պահեալ քառասուն տիւ եւ քառասուն գիշեր ապա քաղցեաւ : Մատթ . Դ. 2 :

*Քրիստոս երեսուն տարի իր մօրը հպատակ և հնազանդ ըլլալէն յետոյ՝ Հօր և Ս. Հոգւոյն և իւր կամացն համեմատ անապատը առանձնացաւ իւր մեծ գործին պատրաստուելու աղօթիւք եւ պահօք, եւ մարդկային կենաց ասպարիզին մէջ փորձութեանց եւ սատանայի մենամարտիկ յաղթանակելու կերպը անձին օրինակաւ մեզի սորվեցունելու համար. վասն զի փորձութեանց յաղթելու համար՝ մարդս աղէկ կ'ընէ որ աղօթիւք*

և պահօք և սուրբ խոկումներու տալով ինքզինք արժանի ընել զանձն Աստուծմէ օգնութիւն ընդունելու ։ Եւ մարդկային կեանքը այսպիսի փորձութեանց յաճախ ենթակայ ըլլալով՝ պէտք է որ Քրիստոս ալ երևնար ասոնց՝ մէջ նմանելով իր եղբարցն, այսինքն մարդոց, ուստի պարտ իսկ էր նմա ամենայնիւ եղբարցն նմանել ։ Եբր. Բ. 17 ։

Դիտելու արժանի բան մ'է որ երեք Աւետարանիչները Քրիստոսի այս անապատը երթալուն համար Հոգւոյն սրբոյ թելադրութեամբն եղաւ կըսեն ։ Ասոր յայտնի և առաջին պատճառն այս է՝ որ նոր ու անսովոր ճգնութեան ու փորձութեանց յաղթելու համար, մարդ ինք իրեն պէտք չէ որ անապատ կամ ճգնարան երթալու յանդգնի, առանց Ս. Հոգիին յայտնութեանը. վասըն զի, քաղաքներու մէջ արդէն շատ պատերազմներ ալ կան ընելու փորձութեանց դէմ ։ Բազմաթիւ զինուոր ունեցող բանակին մէջ ամենէն մեծ պսակը առնել ուզող զինուորը միայնակ առանց ընկերի կը յարձակի թշնամիին վրայ ամենէն յառաջ. այսպէս և անապատի փորձանքներու միայնակ յաղթանակողը. սակայն ո՞րքան վտանգալից փորձերու դիմագրաւ կը լինի ։ Գիտնալու է որ մարդս ուր որ ալ ըլլայ, տան, քաղաքի, ընտանիքի, և կամ անապատի մէջ, ամէն տեղ փորձութիւնը ետևէն կը հասնի, թէև օրերով ծոմ և պահք պահելու ալ ըլլայ. այս փորձութեանց յաղթելուն կերպը միմիայն Յիսուս Քրիստոսէ կրնանք սովրիլ ։

Եւ մատուցեալ փորձիչն՝ ասէ ցնա. Եթէ որդի ես Աստուծոյ՝ ասա՛ զի քարինքս այսոքիկ հաց լինիցին. Մատթ. Դ. 3 ։

Սատանան տարակուսութեան մէջ էր, վասն զի, Աստուած այսպէս անօրինակ էր, թէ արդեօք ո՞վ էր մի Քրիստոս՝ Որդի Աստուծոյ. թէպէտև մարգարէութիւններ շատ կային, բայց անոնք սատանային հպարտութեան համար անհասկնալի էին. Մեսիային թագաւորութեանը հետ չէր կրնար համաձայնեցնել անոր չարչարանքի ենթարկուելու գուշակութիւնը. Իրաւ Քրիստոսի գերահրաշ ծնունդը գիտէր, մոգուց երկրպագութիւնը տեսեր էր, աստղը դիտեր էր, բայց Բեթղեհէմի խեղճ և աղքատիկ խրճիթը և Հերովդէսի մանկանց կոտորածի ատենը՝ Եգիպտոս փախչիլը տեսնելով իւր ամբարտաւանութեամբն չէր կրնար հասկնալ և ըմբռնել թէ այդ խեղճ տղան եղած ըլլայ Քրիստոս. տեսաւ սատանան երկինքին բացուիլը, Հոգւոյն սրբոյ աղաւնակերպ իջնալը և Հօր Աստուծոյ վկայելը՝ թէ Դա է Որդի իմ Սիրելի. բայց կը տարակուսէր, չ'ըլլայ թէ որդեգրական անունով որդի կոչուած ըլլար, ինչպէս հաւատացեալք՝ որդիք Աստուծոյ կը կոչուէին: Ուստի նորա փառաւորութիւնը, ունեցած խոնարհութեամբը կը նըսեմանար իւր մտաց մէջ. ասով կը կասկածէր և կը տարակուսէր՝ թէ ո՞ն է մի Քրիստոսն. անոր համար զՔրիստոս փորձելու ատեն գլխաւոր նպատակն էր խօսքով նորը խօթել՝ որպէս զի ըսէ իրեն թէ Աստուծոյ Որդին է. Միւս կողմանէ Քրիստոսի քառասուն օր քառասուն գիշեր շարունակ ծոմ պահելն ալ սքանչելիք մ'էր. բայց կը յիշէր սատանան որ Մովսէս ալ Եղիա ալ քառասուն օր քառասուն գիշեր ծոմ պահեցին հըրաշիւք. մանաւանդ երբոր քառասուն օրէն ետ-

քը անօթեցաւ։ Ուստի կասկածն աւելցաւ թէ անոնց պէս մարդ մը եղած չըլլայ. վասն զի՝ ամբարտաւանութիւնը և հպարտութիւնը չեն կրնար Քրիստոնէութեան ոգին հասկնալ. ուստի ձեռնարկեց փորձելու, մանաւանդ անոր անօթի ըլլալը բարեպատեհ առիթ համարելով, երեւանց թեթեւ մեղք մը առաջարկեց. որպէս զի հոն ձգէ՝ անօթութենէ չը դիմանալուն։

Եւ մատուցեալ փորձիչն՝ ասէ ցնա. Եթէ որդի ես Աստուծոյ՝ ասա՛ զի քարինքս այսոքիկ հաց լինիցին։ Մատթ. Դ. 3։

Քրիստոսի անպարտութիւնը կուզէր փորձել միանգամայն, և թէ այս ճարտար հարցումովը ստախօսութեան մէջ պիտի ձգէր զՔրիստոս։ Այսպէս սատանան սովորած ըլլալով ուտելի պտղով զառաջին մարդը զԱդամ խաբել, կը յուսար թէ կը յաջողէր զՅիսուս ալ խաբել. բայց երկրորդ Ադամ՝ առաջնոյն սխալը պիտի չընէր, հետեւաբար չը պիտի խաբուէր. վասն զի, եթէ Քրիստոս սատանային ըսեր թէ Որդի Աստուծոյ չեմ, սուտ պիտի խօսէր. իսկ եթէ Որդի Աստուծոյ եմ ըսեր, սատանան պիտի հասկնար, ու փորձութեան դէմ յաղթելու այս գեղեցիկ ճակատամարտի պատմութիւնը չը պիտի ունենայինք։

Սատանային մէկ ամենամեծ չարութիւնն ալ՝ առանց Աստուծոյ օգնութեան հաց ունենալու քաղձանք ներշնչելն է։

Նա պատասխանի ետ և ասէ. գրեալ է՝ թէ ո՛չ հացիւ միայն կեցցէ մարդ, այլ ամենայն բանիւ որ ելանէ ՚ի բերանոյ Աստուծոյ։ Մատթ. Դ. 4

Խայտառակեցաւ սատանան. վասն զի Քրիստոս ոչ իր կամեցն և ոչ չը կամեցն յայտնեց։ Մարդ, ըսաւ, հացով միայն չապրիր, հապա նաև Աստուծոյ բերնէն ելած խօսքովն ալ, (Բ. Օրինաց. Ը. 3)։ Ամեն տեսակ կերակուր առանց Աստուծոյ զմարդ չեն կրնար ապրեցնել, իսկ Աստուած առանց կերակրոյ զմարդ կարող է կեցուցանել. ուստի և չքաւորութեան մէջ ալ Տէր Աստուած կը մխիթարէ այն մարդը՝ որ հին Իսրայելի պէս Աստուծոյ դէմ չը տրտնջեր։

Յայնժամ առեալ տանի զնա սատանայ ՚ի քաղաքն սուրբ, և կացուցանէ զնա ՚ի վերայ աշտարակի տաճարին, Եւ ասէ ցնա. Եթէ որդի ես Աստուծոյ՝ արկ զքեզ աստի ՚ի վայր. զի գրեալ է թէ Հրեշտակաց իւրոց պատուիրեսցէ վասն քո, և ՚ի վերայ ձեռաց բարձցեն զքեզ՝ զի մի՛ երբէք հարցես զքարի զոտն քո. Մատթ. Դ. 5–6։

Երկրորդ փորձիւ զՔրիստոս հրաւիրեց իր հետը երթալ և մինչև Երուսաղէմի տաճարին աշտարակին վրայ ելլել որ երեք հարիւրէն աւելի ոտնաչափ բարձր ըլլալով վերէն նայող մարդուն աչքը կը դառնար և կը սոսկար։ Դարձեալ կ՚առաջարկէ, որ եթէ Աստուծոյ Որդի ես, ինքզինքը այս բարձր տեղէն վար նետէ, վասն զի, կ՚ըսէ, նորա համար գրուած է որ իւր հրեշտակներն պատուէր առած են ամեն տեղ զինքը պահպանել և իրենց բազկաց մէջ պահել, որ երբէք ոտքը քարի չը զարնուի։

Սատանան Սաղմոսի ՂԱ. 11. 12 համարները ծուռ կը մեկնէ։ Աստուած իւր հրեշտակներն օգնութեան կը ղրկէ միայն խոհեմութեամբ վարւողներուն։ Աստուած անխոհեմութեամբ ինք–

զինք բարձր տեղերէ ծովին մէջ ևայլն ձգելով զԱստուած փորձել ուզողներու օգնութիւն չըներ։

Աստուած արդար գործ տեսնողին կ'օգնէ՝ երբ պէտք է։ Սատանան այս խօսքով աս կը մըտածէր, եթէ իրաւցնէ Աստուծոյ Որդի ըլլար՝ անշուշտ պիտի ըսէր, թէ հրեշտակները ինծի ի՞նչ օգնութիւն կրնան ընել. հրեշտակները մարդուն կ'օգնեն և ոչ Աստուծոյ. ահա՛ ես իբրև Աստուած քու առաջարկութիւնդ կընդունիմ. և կամ Մաղաքիայի մարգարէութիւնը կատարուած տեսնելու համար պիտի բաղձար այդ փորձը ընելու. "Ահաւասիկ, առաքեմ զհրեշտակն ուտի . . ., և յանկարծակի եկեսցէ 'ի Տաճար իւր Տէրն. աշտարակէն ցատկելով յանկարծ տաճարին հրապարակը երևնալու փափաքին չ'պիտի դիմանար։

Բայց Յիսուս պատասխանեցուց չարը՝ Աստուածային գրոյն այս անակնկալ յիշատակութեամբն թէ,

Ասէ ցնա դարձեալ Յիսուս . գրեալ է՝ թէ ոչ փորձեսցես զՏէր Աստուած քո ։ Մատթ. Դ. 7 ։

Այս երկու հարցումներով չը կրնալով սատանան բան մը հասկնալ և ընդհակառակն խայտառակուելով հրաւիրեց զանի և բարձր լերան մը վրայ տարաւ. Քրիստոս զինքը խայտառակելու համար մտադիւր զիջաւ հետը երթալու, թերևս Մովսիսի ելած լեռը, ուսկից Աւետեաց երկիրը կերևէր, իբրև մէկ հայեացքով իբրև թէ մատով ցցնելով բոլոր աշխարհի, այսինքն, հոս Ասորւոց, հոն Քաղդէացւոց, անդին Արաբացւոց, անդին Եգիպտացւոց, անդին Հռովմայեցւոց թա-

գաւորութիւններն. ասոնք քեզի կուտամ, ըսաւ, թէ որ իյնաս երկրպագութիւն ընես ինձ. ըստ այնմ թէ,

Դարձեալ առնու զնա սատանայ 'ի լեառն մի բարձր յոյժ, և ցուցանէ նմա զամենայն թագաւորութիւնս աշխարհի և զփառս նոցա. և ասէ ցնա. զայս ամենայն քեզ տաց՝ եթէ անկեալ երկիր պագանիցես ինձ։ Մատթ. Դ. 8։

Սատանային այս վերջին առաջարկութիւնը ամենէն չարագոյնն էր. Քրիստոս կը սորվեցնէ մեզի՝ թէ սատանան մեզի պէտք եղած բաներով զմեզ խաբել սկսելէն յետոյ, մեր փառասիրութիւնը կը գգուէ, և ապա՝ ինքզինք Աստուծոյ տեղ մեր սրտին և հոգւոյն երկրպագութեան առարկայ կընէ. ալ զանի վռնտելու և անոր դէմ յայտնապէս մաքառելու ատենն եկաւ. սատանան որ ինքզինք ծածկեր էր՝ իւր բնաւորութեան չարութեամբը կը մատնուի, և Քրիստոսի իւր Որդի Աստուծոյ լինելն ըսել տալու համար զՔրիստոս բարկացնել կուզէր, իբր թէ Յիսուս ըսեր 'ի պատասխան, թէ ես Աստուծոյ Որդին՝ քեզի՛ սատանայ՛, իյնամ երկրպագութի՞ւն ընեմ. վասն զի, սատանային միտքը իրեն երկրպագութիւն ընել տալ չէր, հապա բերնէն առնել՝ իրեն Աստուծոյ Որդի ըլլալն։ Յիսուս՝ որ մինչև այն ատեն իբրև թէ զայն չը ճանչնալ կը ձևացունէր, առանց դարձեալ իրեն Որդի Աստուծոյ ըլլալը խոստովանելու, գիմացինին ո՛վ ըլլալն յայտնեց, ըսելով

Յայնժամ ասէ ցնա Յիսուս. Ե՛րթ յետս իմ սա՛տանայ. զի գրեալ է Տէառն Աստուծոյ քում երկիր պագցես, և զնա

միայն պաշտեսցես ։ Մատթ. Դ. 10 ։

Այս տեղ Ղուկաս կըսէ թէ «Սատանայն առ ժա-մանակ մի 'ի բաց եկաց 'ի նմանէ»․ որով ըսել կուզէ թէ՝ սատանան վէրջերը դարձեալ՝ Պետրոսի, Յու-դայի, և խաչահանուաց ձեռօքը փորձեց զՔրի-ստոս․ «Եթէ Որդի ես Աստուծոյ, էջ 'ի խաչէդ» ևլն․ խօսքերը թելադրելով․ Սատանային փորձութենէն ետքը յորում յաղթուեցաւ,

Յայնժամ եթող զնա սատանայ․ և ահա Հրեշտակք մատուցեալ պաշտէին զնա ։ Մատթ. Դ. 11 ։

Հրեշտակներն եկան և պէտք եղածներն բե-րին իրեն ։ Ահա՛ Քրիստոս այս մարմնոյ աչքէ ցանկութեանց և աշխարհային ամբարտաւանու-թեան փորձութեանց մէջ՝ իր անձին փորձով ա-ռանց մեղանչելու յաղթական մնալը գեղեցիկ կերպով կը սորվեցնէ մեզ․ ուրեմն պէտք է որ Աստուծոյ բանը ուսանիմք և մեք, և փորձու-թեան մէջ չիյնալու համար՝ Քրիստոսի Տեառն մերոյ սորվեցուցած աղօթքը միշտ կրկնենք « Եւ մի՛ տանիր զմեզ 'ի փորձութիւն․ այլ փրկեա՛ 'ի չարէն» ։

## Բ. Վկայութիւն Յովհաննու

Յովհաննէս վկայէ վասն նորա, աղաղակէր և ասէր․ սա՛ է զորմէ ասէի, որ զկնի իմ գալոցն էր՝ առաջի իմ եղև․ զի նախ քան զիս էր ։ Յովհ. Ա. 15 ։

Յովհաննէս անձամբ չէր ճանչնար զանի, և դեռ իրմէ բաւական բացակայ էր Յիսուս, երբ նորա Աստուածային աչքերէն գոգցես ճշմարտու-թեան բոցը Յովհաննու սիրտը թափանցեց և

անոր՝ որուն յարգանքն երկրպագութիւն քրած էր, այո՛, անոր ուղղելով աչքը, սիրտն ու ձեռքըն, ըսաւ, «Ահաւասի՛կ Գառն Աստուծոյ որ բառնայ զմեղս աշխարհի»։ Աս ան է, որուն համար կ'ըսէի թէ՝ ինձմէ վերջն պիտի գայ, բայց ոչ ինէ, այլ 'ի յաւիտենից յառաջ է ժամանակաւ. ուստի և բնականաբար ինձմէ յանհունս նախապատիւ է։

Եւ այս է վկայութիւն Յովհաննու, յորժամ առաքեցին առ նա Հրէայքն յԵրուսաղեմէ քահանայս և Ղեւտացիս, զի հարցցեն ցնա՝ թէ դու ո՞ ես։ Եւ խոստովան եղև, և ո՛չ ուրացաւ. խոստովան եղև, եթէ ես ո՛չ եմ Քրիստոսն։ Եւ հարցին ցնա. Իսկ ո՞վ ես դու, Եղիա՞ ես. և ասէ. ո՛չ եմ։ Իսկ մարգարէ՞ն ես դու. պատասխանի ետ՝ թէ ո՛չ։ Իսկ ասեն ցնա՝ դու ո՞վ ես, զի պատասխանի տարցուք՝ որոց առաքեցինն զմեզ. զի՞նչ ասես վասն քո։ Յովհ. Ա. 19-22։

Երբոր Հրէայք Երուսաղեմէն քահանաներ ու Ղեւտացիներ ղրկեցին հարցունելու թէ ո՞վ է. վկայեց ըսելով որ ինք սպասեալ Մեսիայն, այսինքն, Քրիստոսն չէ, ղայս այսպէս խոստովանեցաւ առանց երկբայութեան,

Իսկ եթէ դու Քրիստոսն չե՛ս, ապա ուրեմն ո՞վ ես, Եղիա մարգարէ՞ն ես. դարձեալ խոստովանեցաւ ու ըսաւ՝ որ Եղիան ալ չէ։ Այս հարցումը պարապ տեղը չըրին, վասն զի իրենք կարդացած էին և գիտէին Մաղաքիայ մարգարէութենէն յորում կը գուշակէ որ Եղիա Թեզբացի մեծ ու երևելի տիրոջ օրէն յառաջ պիտի գայ. ըսա այնմ թէ. «Ահա՛ ես առաքեմ առ ձեզ զԵղիա Թեզբացի, մինչչև եկեալ է օր տեառն մեծ և երևելի։ Որ դարձուսցէ զսիրտ հօր առ որդի, և զսիրտ առն՝ առ

ընկեր իւր, քանզի եկեալ հարկանիցեմ զերկիր բնաջնջապէս ։ Մղաք. Դ. 6։ Այստի այս մարգարէութեան համաձայն կըհարցունէին թէ ինք Եղիա՞ն է, որ նախքան զՄեսիայն պիտի գար. Ո՛չ, ըսաւ Յովհաննէս, Եղիան ալ չեմ։ Մովսէսի գուշակած մարգարէ՞ն ես կ՚ըսէին, որ թէպէտ Քրիստոս կիմացուէր Մովսիսի մարգարէութեամբ, ինչպէս սուրբ Ստեփաննոս եւ ուրիշ շատեր այնպէս հասկցած էին. բայց շատերն ալ Մեսիայէն զատ մարգարէ մը կըհասկընային. ուստի այս միոք կըհարցունեն թէ դուն այն Մովսէսէն մարգարէացուած, գուշակուած մարգարէ՞ն ես. Երբոր Յովհաննէս այս հարցման դէմ ալ բացասութեամբ «ո՛չ» պատասխանեց. ճարերնին հատնելով, ապա ուրեմն շիտակը զրուցէ, ըսին. ո՞վ ես, որպէսզի մենք ալ ըստ այնմ՝ զմեզ ղրկողներուն պատասխան տանինք. ի՞նչ ըսենք քեզ համար, կամ դու քեզ համար ի՞նչ կըսես։

Առ. Ես՝ ձայն բարբառոյ յանապատի. ուղղեցէք զճանապարհս Տեառն, որպէս ասաց Եսայի մարգարէ (Եսայի. Խ. 3). Յովհ. Ա. 23։

Ես Եսայիի ըսած «բարբառոյ՝ ձայնն» եմ, որ յանապատի եւ ոչ ՚ի քաղաքի բնակելով պիտի աղաղակեմ՝ որ ամեն մարդ մեծ թագաւորին, Մեսիային գալստեանը ինքզինք պատրաստէ, յամենայն անօրէնութեանց հրաժարելով, որպէսզի երկնաւոր մեծ թագաւորը՝ մարդոց սրտի յարդարեալ ճամբայներէն անցնի եւ հոն դադար առնու։

Եւ որք առաքեցանն՝ ՚ի Փարիսեցւոց անտի էին։ Հար-

ցին զնա՛ եւ ասեն . ընդէ՞ր մկրտես՛ եթէ դու չե՛ս Քրիս-տոսն , եւ ո՛չ Եղիա , եւ ո՛չ մարգարէն ։ Յովհ Ա.24–25 ։

Երբոր Յովհաննէսէն իմացան թէ ինք Եսայեայ գուշակած բարբառոյ ձայնն է , եւ ոչ թէ Քրիս-տոս , կամ Եղիան կամ մարգարէն , զոզցես ա-ւելի համարձակութիւն առին հարցունելու , թէ՝ ապա ուրեմն ինչո՞ւ կը մկրտէ(1)։ Գիտնալու է որ մկրտութեան գործը Հրէից անծանօթ բան մ՚ ալ չէր . վասնզի , 'ի հեթանոսութենէ դարձողներն Հրէայք կը մկրտէին եւ միանգամայն կը թլփատէ-ին ։ ( Թալմուտ Երուսաղեմի ) ։

Պատասխանի ետ նոցա Յովհաննէս եւ ասէ . ես մկրտեմ զձեզ ջրով . 'ի միջի ձերում կայ , զոր դուք ոչ գիտէք . որ զկնի իմ գալոցն է . որում չեմ արժանի եթէ լուծից զխը-րացս կօշկաց նորա ։ Յովհ. Ա. 26 ։

Իրաւ՝ ես մարգարէն կամ Քրիստոսը չեմ , բայց Նորա սպասաւորն եմ որ միայն ջրով կը մկր-տեմ , 'ի մաքրութիւն մարմնոյ եւ 'ի նշանակ թէ իւրաքանչիւր մկրտեալ եթէ ապաշխարէ հոգւով պիտի սրբուի 'ի ձեռն Քրիստոսի մկրտութեան , որուն կօշկաց կապերն անգամ քակելու բաւա-կան չեմ . վասնզի Նա Աստուած է , իսկ ես մարդ-մահկանացու . Նա ինձմէ վերջը պիտի գայ , բայց ինձմէ 'ի յաւիտենից առաջ է , ձեր մէջն է Նա կամ պիտի գայ եւ դուք զԱնի չէք ճանչնար կամ պիտի չըճանչնաք ։ Այս խօսակցութիւնը Յոր-

1 Աւանդութիւն մը կար փարիսեցւոց մէջ՝ թէ Մարգարէն կամ Քրիստոս պէտք է որ մկրտէ . այս աւանդութիւնը առաջացած շատ մը լուացումներ ունէին հին օրինաց մէջ , զորոնք գիտէին թէ սու-րբ մկրտութեան մը օրինակ են ։

դանանու անդին կողմը Բեթաբրայի մէջ եղաւ, ուր տեղ որ Յովհաննէս կըմկրտէր, ըստ այնմ թէ

Այս 'ի Բեթաբրայ եղեւ յայնկոյս Յորդանանու, ուր էր Յովհաննէս և մկրտէր։ Ի վաղիւն անդր, տեսանէ զՅէսուս զի գայր առ նա, և ասէ. Ահաւասիկ Գառն Աստուծոյ որ բառնայ զմեղս աշխարհի։ Սա է վասն որոյ ես ասէի, զկնի իմ գայ այր, որ առաջի իմ եղեւ, զի յառաջ քան զիս էր։ Եւ ես ոչ գիտէի զնա, այլ զի յայտնեսցի Իսրայէլի, վասն այնորիկ եկի ես ջրով մկրտել։ Յովհ. Ա. 28—29։

Կը կարծուի թէ փորձութեան հետեւեալ օրն էր, երբ Յիսուս Յովհաննէսին քով գնաց․ Յովհաննէս դարձեալ վկայեց. և այս անգամ անոր ընելիք մեծ գործը յիշեցուց. "Ահաւասիկ Գառն Աստուծոյ, որ բառնայ զմեղս աշխարհի," որով հասկցնել ուզեց գլխաւորապէս չորս ճշմարտութիւն։

Ա. Թէ Քրիստոս իբր Գառն պիտի զենուէր 'ի Պատարագ.

Բ. Թէ Աստուծոյ կողմանէ պիտի ըլլար.

Գ. Թէ մեղքերը պիտի քաւէր.

Դ. Թէ ոչ միայն Աբրահամու զաւակաց, այլ բոլոր մարդկութեան մեղքերը պիտի սրբէ։

Ահա՛ այս այն է, որուն համար ըսած էի որ ետեւէս պիտի գար. բայց ահա եկած է և քան զիս նախապատիւ է, և 'ի յաւիտենից Աստուած է. ու ես զայն չէի ճանչնար (1). մինչև որ

1 Ի հարկէ կերպարանօք զինքն չէր ճանչէր, 'բայց հոգւով զանի տեսած եւ յարգանօք երկրպագած էր։

Յիսուս . հայեցեալ ընդ նա Յիսուսի՝ ասէ, դու ես Սիմոն որդի Յովնանու . դու կոչեսցիս Կեփաս, որ թարգմանի Պետրոս ։ Յովհ. Ա. 35—42 ։

Հետևեալ օրն Յովհաննէս իւր երկու աշակերտաց դարձեալ կը ցցնէ զՅիսուս և այն խորհրդաւոր և Քրիստոսի պաշտօնին համառօտութիւնն եղած խօսքը՝ իւր պաշտօնին, իւր հեզութեան, բարութեան ու մեր հոգւոյն սիրելի փրկիչն լինելուն համար սահաւասիկ Գառն Աստուծոյ կը կրկնէ ։ Այն երկու աշակերտներն անոր ետևէն գնացին . Յիսուս տեսնելով որ իրեն կը հետևին՝ ի՞նչ կը խնդրէք, հարցուց . Նոքա իւր օթևանը, բնակած կամ իջնելիք տեղն ուզեցին իմանալ, և գնացին տեսան և նոյն օրն անոր քով մնացին . վասն զի, ժամը տասն անցեր էր . այս աշակերտներէն մին էր Անդրէաս նախակոչ Առաքեալն, որն որ իւր Պետրոս եղբայրն ալ համոզեց՝ գտայք զՄեսիայն ըսելով և Քրիստոսի քով բերաւ . Քրիստոս ծանոյց իրեն ջերմեռանդութեանն համար որ օր մը Կեփաս (1) կոչ, ըստ, պիտի անուանի ։

Ի վաղիւ անդր կամեցաւ ելանել ՚ի Գալիլեա . գտանէ զՓիլիպպոս, և ասէ ցնա Յիսուս, եկ զկնի իմ ։ Եւ էր Փիլիպպոս ՚ի Բեթսայիդայ, ՚ի քաղաքէ Անդրէայ և Պետրոսի ։ Յովհ. Ա. 43—44 ։

Հետևեալ օրն Յիսուս Գալիլիա ելաւ, այսինքն ստորին Գալիլիա . վասն զի, Գալիլիա եր-

1 Կեփաս՝ Քաղդէարէն, Պետրոս ալ՝ Յունարէն, Վէմ կը- թարգմանուի Հայերէն ։

կուք էր. վերին Գալիլիա, որուն դիրքը՞ բարձր էր, ու հրէայներէ աւելի հեթանոս բնակիչ ունենալուն համար՝ Գալիլիա հեթանոսաց ալ կըսուէր, որ այն ատեն Հերովդէս չորրորդապետին իշխանութեան տակ չէր. իսկ միւսը՝ ստորին Գալիլիա կըսուէր. վասն զի դիրքը խոնարհագոյն էր, ու մինչև Գալիլիայի ծովակը կը հասնէր։ Այս տեղ կը բնակէին Իսաքարայ և Զաբուղոնի ցեղերը. Յիսուս այս ստորին Գալիլեան գնաց և Փիլիպպոսը գտնելով ըսաւ անոր եկ զկնի իմ։ Այս Փիլիպպոսն ու Անդրէաս ու Սիմոն (Պետրոս) երկու եղբայրներ, երեքը մէկանց Բեթսայիդա քաղաքէն էին։

## Դ. Վասն հարցման Նաթանայիլի

Գտանէ Փիլիպպոս զՆաթանայէլ(1), և ասէ ցնա. զորմէ գրեաց Մովսէս յօրէնսն՝ և մարգարէքն. գտաք զՅիսուս զորդի Յովսեփայ ՚ի Նազարեթէ։ Ասէ ցնա Նաթանայէլ, եթէ ՚ի Նազարեթէ մարթ ինչ իցէ բարւոյ ինչ լինել։ Ասէ ցնա Փիլիպպոս. եկ և տես։ Իբրև ետես Յիսուս զՆաթանայէլ զի գայր առ նա, ասէ վասն նորա. ահա արդարև Իսրայելացի՝ յորում նենգութիւն ոչ գոյ։ Ասէ ցնա Նաթանայէլ. ուստի՞ ճանաչես զիս։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. մինչչև եր Փիլիպպոսի կոչեալ զքեզ՝ զի էիր ՚ի ներքոյ թզենւոյ, տեսի զքեզ։ Պատասխանի ետ նմա Նաթանայէլ և ասէ. Ռաբբի՝ դու ես որդի Աստուծոյ, դու ես թագաւորն Իսրայելի։ Պատասխանի ետ նմա Յիսուս և

1 Ոմանք այնպէս կըկարծեն թէ Նաթանայելը՝ Բարթուղիմէոս առաքեալն ըլլայ։

ասէ · փոխանակ զի ասացի քեզ՝ թէ տեսի ՚ի ներքոյ թզե-նւոյն, հաւատաս, մեծամեծս քան զայս տեսցես ։ Եւ-ասէ ցնա · ամէն ամէն ասեմ ձեզ · յայսմհետէ տեսանիցէք զերկինս բա-ցեալ՝ և զհրեշտակս Աստուծոյ՝ զի ելանէին և իջանէին ՚ի վերայ որդւոյ մարդոյ (1) ։ Յովհ․ Ա․ 45—51 ։

Փիլիպպոս այնքան սերտ սիրտով կապուեցաւ Մեսիային՝ որ իր Նաթանայէլ բարեկամը գտաւ ու աւետիս տալով ըսաւ որ մարգարէից և Մով-սէսի գրած Մեսիան գտած է, որ է Յիսուս Յովսեփայ որդին ։ Նաթանայէլ չէր կրնար հաւա-տալ թէ Գալիլեայի Նազարեթէն (ըստ որում այն-չափ նշանաւոր տեղ մը չէր) ատանկ մէկ մեծ բարիք մը կարելի ըլլայ ծագել, մանաւանդ որ գիտէր թէ «Բեթղեհէմի մէջ պիտի ծնանէր Քը-րիստոսը ։ Եկաւ Նաթանայէլ որ նոյն ինքն, ըստ ո-մանց, Բարթողիմէոս, և դեռ Քրիստոսի քով չ՚հասած անոր ուռկանին մէջ բռնուեցաւ ։ Յի-սուս սքանչելի մարդասիրութեամբ ընդունեց զինքը · չթողուց որ Նաթանայէլ խօսի · նախ Քը-րիստոս փութաց ու ըսաւ որ այս մարդը (Նաթա-նայէլ) առանց նենգութեան Իսրայելացի մ՚է · զարմացաւ Նաթանայէլ, վասն զի կը կարծէր որ Քրիստոս բնաւ զինքը չէր ճանչնար, վասն զի չէր տեսած զայն, ուստի հարցուց թէ ուսկի՞ց կը ճանչնայ զինքը ։ Յիսուս պատասխան տուաւ ու ըսաւ որ թզենւոյն ներքևը նստած տեսնելէն առաջ կը ճանչնար զինքը · Աստուածութեամբն

1 Կերեւի թէ դատաստանի օրը կակնարկէ, բայց ոմանք ալ կը կարծեն թէ Քրիստոսի ըսած եւ աւետարանի մէջ չըգրուած հը-րաշքներէն մին ըլլայ ։

ամեն բան յայանի է անոր, բայց բարի մարդը բնաւ աչքէն չվրիպիր, արդարն ալ որ ալ ըլլայ, հայեցուածքը անոր վրայ կ'ուղղէ Աստուած։ Նաթանայէլ հաւատաց ու Ռաբբի, ըսաւ, Դու Աստուծոյ Որդին ես, կը հաւատամ և հաւատացի որ Իսրայէլի Թագաւորը դու ես։ Յիսուս ալ ըսաւ, որովհետև այս Թզենիի ծառին տակ ըզքեզ տեսայ ըսելով, ըրած գուշակութեանս համար հաւատացիր ինձ, ասոր համար աւելի մեծ բաներ պիտի տեսնես և այս «Մեծամեծս ես քան զայս տեսցես» խօսքին բացատրութիւնը կընէ Յիսուս, իւր ընելիք մեծ բաներէն մէկը-պատմելով. «Ամէն ամէն ասեմ ձեզ, տեսանիցէք զերկինս բացեալ և զհրեշտակս Աստուծոյ, զի ելանիցեն և իջանիցեն 'ի վերայ որդւոյ մարդոյ», դատաստանին օրուան համար կըսէ. իսկ որդի մարդոյ անուանելուն պատճառը, Աբրահամին, Դաւթին ցեղէն՝ կուսին մարմինէն կատարեալ մարդ ըլլալն յայտնելու համար է. վասն զի, եբրայական ոճով, որդի մարդոյ և մարդ, իրարու տեղ կը գործածուի, միևնոյն բանը նշանակելով։



յին՝ վերին Գալիլեայի կանան Ասերայ ցեղինն էր, ստորին կանան ալ Զաբուղոնի ցեղինն էր։ Յիսուս Բեթաբրայէն մեկնած երրորդ օրն այս ստորին Գալիլեայի Կանա քաղաքը եկաւ՝ իւր մինչև այն ատեն ունեցած աշակերտներովն՝ որ են Պետրոս, Անդրէաս, Փիլիպպոս, Նաթանայէլ, Թերևս Զեբեթիայ որդիքն ալ եւ իւր ամենասուրբ մօրը և Յակոբոսին և միւսներուն հետ, որք եղբարք Տեառն կը կոչուին։ Քրիստոս որ ամուսնութիւնը եկեղեցւոյ խորհրդոց կարգը կը բարձրացնէր, պատուեց այս հարսանիքը։ Այս հարսանիքին փեսին ով ըլլալը մեծ խնդիր մ'է. ոմանք կըսեն թէ և հաւանական ալ կերևայ Սիմոն կանանացին էր փեսան, (Սիմոն կանանացին Շմաւոն Նախանձայոյզ ալ կըսուի. որովհետև կանա եբրայեցերէն քէն կամ նախանձ ալ կը թարգմանուի). ոմանք ալ կըսեն թէ Բարթուղիմէոս կամ Նաթանայէլն էր փեսան։

Բայց ով որ ալ ըլլար փեսան կամ հարսն, այս յայտնի է որ ասոնք ազգական կամ խիստ մօտիկ ծանօթն էին Ս. Աստուածածնի և Քրիստոսի, և աղէկ է որ Յիսուս այս հարսնիքը գնաց՝ ապա թէ ո՛չ խաղքութիւն պիտի ելնէր. վասնզի, գինին հատեր էր. կոյս Մարիամ իմացաւ այս կարօտութիւնը և իւր որդւոյն առաջարկեց թէ «գինի ոչ ունին». ասոր պատասխանեց, ազի՛ կայ իմ և քո, կին դու. չև է հասեալ ժամանակ իմ.» այսինքն զի՞նչ փոյթ է ինձ և քեզ. եթէ գինի չունին. մեզի գինի պէտք չէ. բայց եթէ կուզես որ հրաշք գործեմ, դեռ հրաշք գործելու ատենն չէ եկած. (որովհետև Յիսուս դեռ հըրաշք չէր գործած. իսկ Գալիլեայի մէջ ըրած-

ներն անկէց վերջին են)։ «կին դուն», ըսելուն պատ-
ճառը կայ. ինչպէս որ ինքզինք «մարդ» կամ
«որդի մարդոյ» համարականութեամբ կը կոչէր, այս-
պէս հրապարակաւ իր մայրը կին կը կոչէր, որ-
պէս զի իրեն ճշմարիտ ծնողն ըլլալն իմացուէր.
անկէց զատ Հրէայք սովորութիւն ունէին նաև
իրենց մայրը կին կոչել. բայց ամենօրհնեալ Ա-
կոյսը վստահ ըլլալով որ խնդիրքը պիտի կա-
տարուի, ըսաւ սպասաւորներուն թէ Տէրը ինչ
որ հրամայէ՝ կատարեն. անով իր բարեխօսու-
թեան անդառնալի ըլլալն իմացուց. բայց միան-
գամայն հրամայեց որ Քրիստոսի հրաշքը տեսնե-
լու կամ անոր ողորմութեանը արժանի ըլլալու
համար, պէտք է որ Քրիստոսի հրամանները կա-
տարենք. «որ զինչ ասիցէ ձեզ, արասջիք»։

Հոն մարմարէ վեց թանկոյկներ կային, որոց
պզտիկներն երկերկու, իսկ մեծերն երեք երեք-
մար կամ մետրէ ջուր կ'առնէին, ըստ սրբու-
թեան հրէից, այսինքն հրէից ձեռք ևն, լուա-
նալու օրէնքին համեմատ. վասն զի կոչնական-
ներն ալ, ըստ որում Հրէայք, պարտական էին
կերակուրէն առաջ ու ետքը մաքրուիլ, ձեռօք
յանդէտս կամ դիտմամբ պիղծ բանի մը մերձե-
ցած ըլլալու երկիւղով։ Հրամայեց Յիսուս որ
թակոյկներն ջրով լեցունեն, անոնք ալ մինչև բե-
րանը լեցուցին, և ապա Յիսուսի հրամանին հա-
մեմատ ջուրէն դարձած գինին հարսանիքի վե-
րակացուին բերին, որ համը առնելուն պէս, ո-
րովհետև չէր գիտեր եղած հրաշքը, բայց ջուրը լե-
ցնող սպասաւորները գիտէին, զարմացաւ թէ
այդ անուշ գինին ուստի՞ է. ուստի փեսային ը-
սաւ թէ ամեն մարդ անոյշ գինին յառաջ կը դը-

ծածէ, և գլուխները տաքնալէն վերջն անշահ գինին կը քշուի, դուն մինչև հիմայ այդ անոյշ գինին պահեցիր. վասն զի այս ամենապատուական գինիին հետ բաղդատելով առաջին գինին անհամ երևցաւ։ Այս առաջին հրաշքին վրայ աշակերտաց հաւատքը աւելցաւ. «Զայս արար սկիզբն նշանաց Յիսուս 'ի Կանա Գալիլեացւոց, եւ յայտնեաց զփառս իւր, եւ հաւատացին 'ի նա աշակերտքն նորա»։ (Յովհ. Բ. 11.)

Բ. Երթ փրկչին 'ի Կափառնաում եւ անտի յԵրուսաղէմ, եւ արտաքսել 'ի Տաճարէն զվաճառականսն

Յետ այսորիկ էջ Յիսուս 'ի Կափառնաում, ինքն և մայր իւր և եղբարք իւր. և անդ լինէր ոչ բազում ինչ աւուրս։ Յովհ. Բ. 12.

Անկէց վերջն Յիսուս իւր եղբայրներն ու մայրը հետն առած Կափառնաում եկաւ քանի մը օր կեցաւ.

Բայց գիտնալու է որ Յիսուս իրեն ըստ մարմնոյ 'ի մօրէ եղբայրներ չունէր և չէր կրնար ունենալ. հոս եղբայրներ ըսածն՝ Յիսուսի Յովսէփ հօր՝ Կղէովպաս եղբօրը զաւկներն հասկնալու է. որ էին Յովսէփ, Յակոբ կրտսերն, Յուդա (Թադէոս) և Սիմոն։

Եւ էր մերձ զատիկն հրէից, և ել Յիսուս յԵրուսաղէմ։ Եւ եգիտ 'ի տաճարին, զի վաճառէին զարջառս և զոչխարս և զաղաւնիս և զլումայափոխսն որ նստէին, և արար խարազան չուանեայ, և հանէ զամենեսին 'ի տաճարէն, զոչխարսն և զարջառս և զպղինձս հատավաճառացն ցրուեաց;

եւ զսեղանսն կործանեաց ։ Յովհ. Բ. 13—15 ։

Յիսուս զատկի մօտ տաճարը մտաւ և մեծ անկարգութիւններ տեսաւ, որոց պատճառն՝ քահանայից ագահութիւնը կամ՝ անհոգութիւնն էր։ Սրբութեան գաւիթին չորս կողմը եղած ներքին սրահներն վաճառատան հրապարակ դարձեր էր. զոհի պատրուակաւ շատ մարդիկ ոչ միայն աղաւնի այլ և ոչխար և արջառ կը ծախէին, տաճարը անպատուեր էին, ախոռի դարձուցեր էին, ախոռին մէջ ծնող Քրիստոսը կուզէր որ եկեղեցին սուրբ և մաքուր ըլլայ և վայելուչ, անոնցմէ զատ լումայափոխներ իրենց զօշաքաղութիւնն, ընչաքաղցութիւնը յագեցնելու համար՝ իրենց սեղաններն հոն դրեր էին. Յիսուս չուաններ առաւ ոլորեց և խարազան շինեց և անով ոչխարները, կովերը, գնողներն ու ծախողները դուրս հանեց, հատավաճառաց սեղանները կործանեց և անոնց պղինձէ ստակները ցրուեց. և աղաւնի ծախողներուն ալ ըսաւ իշխաբեր՝ որ անմիջապէս գործերնին վերցնեն. վասն զի, ըսաւ, հօրս տունը վաճառանոց դարձուցեր էք; ըստ այնմ թէ,

Եւ որ զաղաւնիսն վաճառէին, ասէ ցնոսա, բարձէ՛ք զայդ աստի եւ մի՛ առնէք զտուն Հօր իմոյ տուն վաճառի ։ Յովհ. Բ. 16 ։

Այս գործը Առաքելոց հաւատքը հաստատեց։

Ապա յիշեցին աշակերտքն նորա, թէ գրեալ է, Նախանձ տան քո կերիցէ զիս ։ Յովհ. Բ. 17 ։

Վասն զի տեսան որ այդ գործով Դաւիթ մարգարէին "Նախանձ տան քո եկեր զիս" մար-

գարէութիւնը կը կատարուի , (Սաղմ. կԸ. 10 :)

Պատասխանի ետուն Հրէայքն և ասեն ցնա . զի՞նչ նշան ցուցանես մեզ , զի զայդ առնես : Յովհ. Բ. 18 :

Իսկ Հրէայք ամբարտաւանութեամբ հարցուցին անոր թէ ինչ նշան , ինչ սքանչելիք պիտի ցոյց տայ իրենց այդ ընելուն համար :

Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա . քակեցէ՛ք զտաճարդ զայդ , և յերիս աւուրս կանգնեցից զդա : Յովհ. Բ. 19 :

Յիսուս ուրիշ նշան չը տուաւ անոնց , բայց երեք տարիէն յետոյ իւր անձին վրայով կատարուելիքը մարգարէացաւ . այդ տաճարը քակեցէք ըսաւ , ես զանի երեք օրէն կը կանգնեցնեմ , զոր այն ատեն աշակերտներն ալ չըհասկցան . բայց երբոր յարեաւ 'ի մեռելոց , այն ատեն հասկցան թէ այլաբանութեամբ տաճարին քակել ու շինել ուզելը իւր մահն ու յարութիւնը կընշանակէին :

Ասեն ցնա Հրէայքն . քառասուն և վեց ամ շինեցաւ տաճարս այս , և դու յերիս աւուրս կանգնեցե՞ս զդա : Յովհ. Բ. 20 :

Բայց Հրէայք որ կը կարծէին թէ նիւթական տաճարին համար ըսաւ Քրիստոս , սնապարծութեան տեղ դրին ըսածը , և Եզրի պատմած՝ Երուսաղէմի և տաճարի վերստին շինութեանը տարիներն ամենը մէկանց հաշուելով ըսին որ այս տաճարը քառասուն և վեց տարուան մէջ շինուած է , դու երեք օրուա՞ն մէջ պիտի լմնցընես :

Բայց նա ասէր վասն տաճարի մարմնոյ իւրոյ : Իսկ յոր-

յորժամ յարեաւն 'ի մեռելոց, յիշեցին աշակերտքն նորա, թէ զայս է զոր ասացն. և հաւատացին գրոյն՝ և բանին զոր ասաց Յիսուս։ Յովհ. Բ. 21—22։

Բայց ինքը իւր մարմնոյ տաճարին համար ըսած ըլլալով իրենց չըբացատրեց, որովհետեւ նոցա հարցումը սովրելու համար չէր, այլ անզգամութեամբ հակառակելու համար։

Սակայն և այնպէս մեռելներէն յարութիւն առած ատեն աշակերտներն ալ յիշեցին թէ ինչ կը նշանակէր ահագին տաճարը երեք օրէն նորէն շինել կարենալու խնդիրն և ալ աւելի հաստատուեցան իրենց հաւատքին մէջ. և շատերը Քրիստոսի քարոզութեամբն ու հրաշքներովը այն զատկի տօնին հաւատացին իրեն. ըստ այնմ թէ՝

Եւ իբրեւ էր յԵրուսաղէմ 'ի զատկին 'ի տօնի. բազումք հաւատացին յանուն նորա. զի տեսանէին զնշանսն զոր առնէր։ Բայց ինքն Յիսուս ո՛չ հաւատայր զանձն նոցա. վասն զի ինքն գիտէր զամենայն։ Եւ զի ոչ էր պէտս, եթէ ոք վկայեսցէ վասն մարդոյ զի ինքն իսկ գիտէր զինչ կայր 'ի մարդն։ Յովհ. Բ. 23—25։

Թէպէտեւ շատերն հաւատացին, բայց չի յարեցան Յիսուսի, և չըսխրեցին զանի, առժամանակեայ հաւատք մ՚էր, որ սրտերնուն վրայէն կը քերէր կանցնէր, անոր համար Յիսուս ինքզինքը չհաւատաց անոնց. վասն զի գիտէր թէ մարդ ինչ կընէր ինչ կըզգար ներսիդին. մարդուն ներսը կամ ներքին մարդը լաւ կը ճանչնար, և այս մասին ուրիշի վկայութեան կարօտ չէր. այսպէս կեղծաւոր կամ թեթև ու հարեւանցի հաւատացողներուն հետ չը միանար Քրիստոս և անոնց ինքզինքը չը հաւատար։

### Գ. Որ ընդ Նիկոդեմոսի բանքն զվերստին ծննդենէ։

Եւ էր այր մի ՚ի փարիսեցւոց անտի՝ Նիկոդեմոս անուն նորա, իշխան Հրէից։ Սա եկն առ նա գիշերի, և ասէ ցնա, Ռաբբի, գիտեմք եթէ յԱստուծոյ եկեալ ես վարդապետ, զի ոչ ոք կարէ զայդ նշանս առնել, զոր դուդ առնես, եթէ ոչ Աստուած իցէ ընդ նմա։ Յովհ. Գ. 1—2։

*Նիկոդեմոս զատկի տօնին Յիսուսի գործերը տեսնող բազմութեան մէջէն, և ՚ի փարիսեցիս՝ օրինաց վարդապետ և իշխան Հրէից էր. Քրիստոսի վրայ գերմարդկային բան մը տեսաւ, կուզէր տեսնուիլ անոր հետ, բայց մեծ մարդ ըլլալուն յայտնի չէր համարձակեր, ուստի գիշերախառն գնաց անոր, մանաւանդ որ իբրև մեծ վարդապետ համբաւեալ լինելով եթէ ուրիշները տեսնէին՝ Քրիստոսի աշակերտ եղած կը համարէին. զՔրիստոս իւր տունն ալ կանչելը մեծամտութիւն կը համարուէր աչքին. և որովհետև փարիսեցիք սկսեր էին նախանձիլ Քրիստոսի վրայ, կը վախնար յայտնի ընտանութիւն ընելու անոր հետ. բայց սիրտը կեռայր և կուզէր առանձինն տեսնել, վասն զի, քիչ շատ գիտէր թէ Աստուածային մէկն է Քրիստոսն, տեսաւ զինքը և հաւատաց թէ Աստուծմէ ղրկուած վարդապետ մ՚է, յայտնելով որ ըրած հրաշքները մարդու կարողութեան գործ չէ։*

Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. ամէն ամէն ասեմ քեզ. եթէ ոք ոչ ծնցի վերստին, ոչ կարէ տեսանել զԱրքայութիւնն Աստուծոյ։ Յովհ. Գ. 3։

*Յիսուս այս փարիսեցի մեծ վարդապետին*

գիտութեան անբաւական ըլլալը ցցնելու համար, մթին այլաբանութեամբ մ՚ըսաւ. ով որ նորէն չը ծնանի՝ Աստուծոյ արքայութիւնը չը կրնար մտնել:

Ասէ ցնա Նիկոդեմոս, զիա՞րդ կարէ մարդ ծնանել որ ծեր իցէ. միթէ մա՞րթ իցէ անդրէն յորովայն մօր իւրոյ կրկին մտանել եւ ծնանել: Յովհ. Գ. 4:

Ապշեցաւ Նիկոդեմոս, ինչպէս կարելի է որ, ըսաւ, ծնեալ (կամ ծեր) մարդ մը (ըստ յոյն բնագրի) նորէն ծնանի, կամ կարելի՞ է որ նորէն իւր մօրն որովայնին մէջ մտնէ և նորէն ծնանի:

Պատասխանի ետ Յիսուս եւ ասէ, ամէն ամէն ասեմ քեզ, եթէ ոչ ոք ծնցի ՚ի Ջրոյ եւ ՚ի Հոգւոյ, ոչ կարէ մտանել յԱրքայութիւն Աստուծոյ: Զի ծնեալն ՚ի մարմնոյ մարմին է, եւ ծնեալն ՚ի Հոգւոյ՝ հոգի է: Դու մի զարմանար թէ ասացի քեզ՝ պարտ է ձեզ ծնանել վերստին: Զի հողմ ուր կամի շնչէ, եւ զձայն նորա լսես, այլ ոչ գիտես ուստի գայ կամ յո՛ երթայ. այնպէս եւ ամենայն ծնեալն ՚ի Հոգւոյն: Յովհ. Գ. 5—8:

Յիսուս՝ Ջրոյ և Հոգւոյ մկրտութեան հարկաւորութիւնը կուզէր սորվեցնել, և չէ թէ Յովհաննու, այլ իւր սահմանած մկրտութեան հարկաւորութիւնը. Յիսուսի մկրտութիւնը՝ Ջրոյ և Հոգւոյ այսինքն վերստին ծնունդ է.

Աստուծոյ արքայութիւնը հոգևոր է. ուստի մաքուր հոգիով կրնանք մտնել հոն, սրբուելով ՚ի սկզբնական մեղաց որ Ադամէն մինչև մեզ կ՚անցնի և մկրտութեամբ կը սրբուինք անկէց. Մարմինէն մարմին կը ծնանի, բայց Քրիստոնեայն՝ Ս. Հոգիով Աւազանէն կըսկսի հոգի ծնա-

նիլ. Ջուրը նիւթն է մկրտութեան։ Եկեղեցւոյ խորհուրդներն երկու մասն ունին, նիւթական և հոգևոր մասն. հացը և գինին նիւթն է հաղորդութեան. իսկ հոգևորը՝ Քրիստոսի մարմինն ու արիւնն է, իսկապէս ՚ի հացն և ՚ի բաժակն. Ջուրը՝ նիւթականն է մկրտութեան. իսկ հոգևորականը՝ Հոգւոյն սուրբ է. ՚ի մկրտութեան անդ աւազանի ջրոյն, որուն հետ միատեղ կը ներգործէ. երբ ջուրը կը մաքրէ, Հոգւոյն սուրբ ալ սկզբնական մեղքէն կը սրբէ և այս սրբութիւնը վերըստին ծնունդ է, զոր մաքուր և պտղաբեր վիճակի մէջ պահել պարտինք։ Վերստին ծննդեամբ կը նմանինք հունտի մը՝ որ կենդանի է ու ծնած է պտուղ բերելու. երբ հունտը հողին և մկրտեալը Քրիստոսի խօսքերուն մէջ չը թաղուի, ինչպէս որ հունտը կը չորնայ, հոգին ալ այնպէս վերըստին ծննդենէն կամ վերակենդանութենէն կը զրկուի կը մեռնի։

Բայց երբոր Նիկոդեմոս չէր հասկնար, վասն զի նիւթապէս խորհող մարդը հոգևոր վարդապետութիւնը դժուար կը հասկնայ, Յիսուս օրինակ մը տուաւ անոր, ինչպէս որ, ըսաւ, կ'ըզգաս որ հովը ուր ուզէ կը փչէ ու ձայնը կը լըսես, բայց չես գիտեր թէ ուստի կուգայ կամ ո՞ւր կերթայ. այսպէս ալ հոգիէն ծնածը. այսինքն հովը կը փչէ, ուր որ կուզէ կամ օդին բռնութիւնը ուր որ փչէ նէ՝ հովը հոն կերթայ. և թէպէտ հովին բաղխիւնէն՝ հովին ձայնը ու շչիւնը կը լսես, բայց մարդ չը տեսնար ճշդիւ որոշակի թէ ուսկի՞ց, ո՞ր տեղէն կ'սկսի, և ո՞ւր կը դադրի. ասանկ ալ վերստին ծննդեան մէջ՝ մարդս կըզգայ ներքին մղումը ու Ս. Հոգւոյ իմա-

նալի ձայնը՝ որ կը շնչէ ուր կամի, բայց բաւական ծանօթութեամբ չես կրնար իմանալ թէ ուստի՛ց կուգայ, և այն գերբնական մղումն ու ազդումը մինչև ո՞ւր կը տանի։

Պատասխանի ետ Նիկոդեմոս և ասէ ցնա. զիա՞րդ մարթի այդ լինել։ Յովհ. Գ. 9։

*Նիկոդեմոս հիանալով այս իրեն համար խորթանոր և հրաշալի վարդապետութեանը վրայ, ու չը կրնալով ալ հանդարտիլ, ըսաւ. ինչպէ՞ս կարելի է որ մարդ մը ջուրէն և հոգիէն վերստին ծնանի։*

Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. դու ես վարդապետ Իսրայէլի և զայդ ո՞չ գիտես։ Յովհ. Գ. 10։

*Յիսուս մեղմով կը յանդիմանէ և կը խոնարհեցնէ զանի՝ ըսելով թէ, Իսրայելի օրէնսդէտ վարդապետը սիրտ ըլլաս և չես գիտեր որ հաւատոյ վարդապետութիւններուն ամենքը մարդկային խօսքերով ու օրինակներով չեն բացատրուիր. վասն զի 'ի վեր են քան զխորհուրդս և զմիտս և բարձր յոյժ։*

Ամէն ամէն ասեմ քեզ, զի զոր ինչ գիտեմք խօսիմք, և զոր տեսաք՝ վկայեմք, և զվկայութիւնն մեր ոչ ընդունիք։ Իսկ արդ, եթէ զերկրաւորս ասացի ձեզ և ոչ հաւատայք, զիա՞րդ, եթէ զերկնաւորսն ասացից, հաւատայցէք։ Յովհ. Գ. 11—12։

*Ինչ որ հաւաստեաւ գիտէի, և ինչ որ ես ինքնին տեսած էի, զանոնք խօսեցայ եւ վկայեցի, բայց դուք չ'ընդունեցիք։ Կարելի եղածուն չափ ծնունդի, հոգւի, այս մարմնաւոր օ-*

րինակներով խօսեցայ եւ տակաւին չէք ընդունիր, որոնք երկրաւոր, մարմնաւոր բաներ էին, խօսեցայ ու չըհասկըցաք եւ չըհաւատացիք. ի՞նչպէս, եթէ երկնաւոր բարձր բաներ ըսելու ըլլամ, պիտի հաւատայք ։

Ու ո՛վ ել յերկինս, եթէ ոչ որ էջն յերկնից՝ որդին մարդոյ, որ էն յերկինս ։ Յովհ. Գ. 13 ։

Դուք չէք կրնար մարդիկներէն և ոչ մէկուն հաւատալ. վասն զի մարդիկներէն ոչ մէկը երկինքը չելաւ և չը տեսաւ այն բաներն՝ զոր ես տեսած եմ. ես՝ որ որդի մարդոյ և Որդի Աստուծոյ եմ. ես երկինքէն իջայ որ այն տեսածներս պատմեմ ձեզ. ուրեմն ինծի հաւատալ պէտք է, որ ամեն երկնային խորհրդոյ խորերն յայտնի են ինձ՝ որ թէ երկինքի մէջ և թէ հոս երկրի վրայ եմ.

Եւ որպէս Մովսէս բարձրացոյց զօձն յանապատի, նոյնպէս բարձրանալ պարտ է որդւոյ մարդոյ ։ Զի ամենայն որ հաւատայ 'ի նա՝ մի՛ կորիցէ, այլ ընկալցի զկեանսն յաւիտենականս ։ Զի այնպէս սիրեաց Աստուած զաշխարհ՝ մինչեւ զորդին իւր միածին ետ. զի ամենայն որ հաւատայ 'ի նա՝ մի՛ կորիցէ, այլ ընկալցի զկեանսն յաւիտենականս ։ Զի ոչ առաքեաց Աստուած զորդի իւր յաշխարհ՝ թէ դատեսցէ զաշխարհ, այլ զի կեցցէ աշխարհ նովաւ ։ Որ հաւատայ 'ի նա, ո՛չ դատապարտեսցի. և որ ո՛չ հաւատայ 'ի նա՝ արդէն իսկ դատապարտեալ է. զի ո՛չ հաւատաց յանուն միածնի որդւոյն Աստուծոյ ։ Եւ այս իսկ է դատաստան. զի լոյս եկն յաշխարհ՝ և սիրեցին մարդիկ զխաւար առաւել քան զլոյս. զի էին գործք նոցա չարութեան ։ Զի ամենայն որ զչար գործէ՝ ատեայ զլոյս. և ոչ գայ առ լոյսն, զի մի՛

յանդիմանիցին գործք նորա : Իսկ որ առնէ զճշմարտութիւն՝ գայ առ լոյսն, զի յայտնի լիցին գործք նորա, թէ Աստուծով գործեցան : Յովհ. Գ. 14–21 :

Սովրեցուց Նիկոդեմոսին նաև իւր հանդերձեալ չարչարանքն և մարդոց փրկութեանն համար իւր յանձն առնելիք խաչի մահը, Մովսէսի պղնձեայ օձը մէջ բերելով. ինչպէս որ չարաթոյն օձերէ հարուածեալներն անով կը բժշկուէին, այսպէս երբոր ես ալ բարձրանամ խաչին վրայ, կենդանի հաւատքով ինծի հաւատացողները չը պիտի կորսուին. հապա յաւիտենական կեանք պիտի ընդունին. վասն զի, Աստուած այնչափ սիրեց զմարդ, որ մինչև անգամ իւր միածին որդին մարդոց փրկութեանն համար ղրկեց : Հայրս զիս այս անգամ իրենց մեղքովը Աստուծոյ արդարութիւնը իրենց վրայ շարժող մարդկային ազգը դատապարտելու համար չը ղրկեց, թէպէտ արժանի էին. հապա ղրկեց զիս որ իմ ձեռքովս փրկուին. ինծի իբրև Որդի Աստուծոյ կենդանւոյ հաւատացողը՝ բնաւ չը պիտի դատապարտուի. իսկ չը հաւատացողը՝ պիտի դատապարտուի, վասն զի ինքնին մերժեց չը հաւատալով իւր փրկութեան սկիզբը, միջոցն ու ճամբան, այնպիսիին ալ դատապարտութիւնն այս է. ես լոյս եկայ յաշխարհ և այդ տեսակ մարդիկ խաւարը լուսէն աւելի սիրեցին և կուրութեան մէջ մնալ ուզեցին. վասն զի իրենց գործերը չար էին : Ով որ չար կը գործէ, լոյսը կատէ, և լուսոյն քով գալ չուզեր. վասն զի լոյսն անոր չարութիւնն երևան կը հանէ. իսկ ճշմարտութիւնն, այսինքն, ըստ պատուիրանին Քրիստոսի առաքինական գործ գործողները լուսոյն կըհետևուին, որով անոնց գոր-

ծերուն՝ Աստուծմով, այսինքն, ըստ օրինացն եւ ըստ կամացն Աստուծոյ գործուած ըլլալն յայտնի կ'ըլլայ. չարը մութ կը սիրէ՝ որ չը ճանչցուի, իսկ բարին ծածուկ գործ չունի, մութ չը սիրեր, խայնելու և ամչնալու գործ չը գործեր։ Այսպէս քիչ ժամերու մէջ Նիկոդեմոս Աստուածաբանութեան գլխաւոր սկզբունքները սորվեցաւ։



# ԳԼՈՒԽ Զ.

ՄԿՐՏԵԼ ՅԻՍՈՒՍԻ ԵՒ ԱՇԱԿԵՐՏԱՑՆ Ի ՀՐԷԱՍՏԱՆԻ.—ՆՈՐ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌ ԱՇԱԿԵՐՏՍՆ ԻՒՐ ԶՅԻՍՈՒՍԷ.—ՀԵՐՈՎԴԻ ՈՒՆԵԼ ԶՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՒ ԱՐԿԱՆԵԼ Ի ԲԱՆՏ.—ԻՐՔ ԿՆՈՋՆ ՍԱՄԱՐԱՑՒՈՅ



## Ա. Մկրտել Յիսուսի եւ Աշակերտացն ի Հրէաստանի

Յետ այսորիկ եկն Յիսուս եւ աշակերտք նորա յերկիրն Հրէաստանի. եւ անդ շրջէր նոքօք հանդերձ եւ մկրտէր։ Մկրտէր եւ Յովհաննէս յԵնովն մերձ առ Սաղիմ, զի ջուրք բազում էին անդ. եւ գային եւ մկրտէին։ Զի չեւ եւս էր արկեալ Յովհաննէս ի բանտ։ Յովհ. Գ. 22-24։

Յիսուս իր աշակերտաց հետ Յուդայի գաւառին մէջ կը պտըտէր, չէ թէ քաղաքներու, այլ դաշտերու մէջ. շատերը կուգային թէ Նորա վարդապետութիւնը լսելու և թէ անկէ մկրտուե-

յոր ։ Նոյն ատենները Մանասէին ցեղին բնակած տեղերը Բեթանայէն կամ Սկիւթապոլիսէն ութ մղոն հեռու Երուսաղեմէ մօտ Յայենոնին ըստուած տեղն Յովհաննէս ալ ջուրց շատութեանն համար կը մկրտէր ․ Թէպէտ գիտէր Յովհաննէս թէ Յիսուս իւր աշակերտաց ձեռօք կը մկրտէր , բայց ինքն ալ կը մկրտէր , մինչև որ բանտը դըրուեցաւ , վասն զի , ինք Մեսիային առջևէն ապաշխարութիւն կը քարոզէր ․ և կը պատրաստէր հոգիներն զՔրիստոս ընդունելու համար․ և թէպէտ Յովհաննու մկրտութիւնը լոկ լուացումն էր, բայց պատրաստութիւն մ՚էր նաև Քրիստոսի սըրբարար մկրտութեանը և այս մկրտութիւնը իբրև շահելու միջոց կամ լոկ արարողութիւն կը գործածուէր ։

Բ․ Նոր վկայութիւն Յովհաննու առ աշակերտսն իւր զՅիսուսէ

Եւ եղև խնդիր աշակերտացն Յովհաննու ընդ Հրէից վասն սրբութեան ։ Յովհ․ Գ․ 25 ․

Այս Յովհաննէսի մկրտութեան վրայօք խընդիր մը ծագեցաւ Քրիստոսէ մկրտուած Հրէից և Յովհաննու աշակերտաց մէջ տեղը վասն սրբութեան , այսինքն , թէ միա՞յն Քրիստոսի մկրտութիւնը սրբարար է ․ ինչպէս Քրիստոսէ մկրտուող Հրէայք կը պնդէին թէ Յովհաննունը սըրբարար չէ ․ ուստի եկան աշակերտներն Յովհաննէսին քով և ըսին ։

Եկին առ Յովհաննէս և ասեն ցնա ․ Ռաբբի՛ որ էրն ընդ քեզ յայնկոյս Յորդանանու , որում դու վկայեցեր , ա-

հասանիցն նա մկրտէ՝ և ամենեքեան գան առ նա: Յովհ. Գ. 26

*Ահաւասիկ ան՝ որ Յորդանանու անդին կողմը ձեզ հետ էր, որուն համար դուն վկայութիւն տուիր, ահա՛ նա ալ կը մկրտէ և ամեն մարդ անոր քով կերթան: Խեղճ աշակերտները նախանձէն կը մաշէին, իբրև թէ իրենց վարդապետը Քրիստոսի հաւասար մէկն ըլլար:*

Պատասխանի ետ Յովհաննէս՝ և ասէ. Ո՛չ կարէ մարդ առնուլ յանձնէ և ոչինչ՝ եթէ ո՛չ իցէ տուեալ նմա յերկնից 'ի վերուստ: Դուք ինքնին վկայէք ինձ, զի ասացի ինչ՝ թէ չե՛մ ես Քրիստոսն, այլ թէ առաքեալ եմ առաջի նորա: Որ ունի հարսն՝ նա է փեսայ. իսկ բարեկամ փեսային՝ որ կայ և լսէ նմա, ուրախութեամբ ուրախ լինի վասն ձայնի փեսային. արդ այս ուրախութիւն որ իմս է, լցեալ է: Նմա պարտ է աճել, և ինձ նուաղել: Որ 'ի վերուստն գայ՝ 'ի վերոյ է քան զամենայն. որ յերկրէ անտի է, յերկրէ է՝ և յերկրէ խօսի: Որ յերկնից գայ, զոր ինչ ետես և զոր լուաւ՝ վկայէ. և զվկայութիւն նորա ո՛չ ոք ընդունի: Որ ընդունի զվկայութիւն նորա՝ կնքեաց, թէ Աստուած ճշմարիտ է: Զի զոր Աստուած առաքեաց՝ զբանս Աստուծոյ խօսի. զի ո՛չ եթէ չափով տայ Աստուած զՀոգին: Հայր սիրէ զՈրդի, և զամենայն ինչ ետ 'ի ձեռս նորա: Որ հաւատայ յՈրդի, ընդունի զկեանս յաւիտենականս. և որ ո՛չ հնազանդի Որդւոյ, ո՛չ տեսցէ զկեանս. այլ բարկութիւն Աստուծոյ մնայ 'ի վերայ նորա: Յովհ. Գ. 27-36:

*Բայց Յովհաննէս աշակերտաց հարցման վրայ սկսաւ խայտալ ցնծութեամբ և նորէն պարզեց իւր վարդապետութիւնը. 'ի վերուստ ո՛րչափ որ տրուած է՝ մարդս այնչափ իշխանութիւն կամ կարողութիւն կրնայ ունենալ. ահա՛ դուք ալ ձեզէն կը վկայէք թէ Քրիստոսն ես չեմ, հա-*

պս անոր ծառան, կարապետն ու Առաքեալն. ուրեմն մի՛ զարմանաք թէ ամեն մարդ անոր կը դիմեն, վասն զի եկեղեցիին փեսան նա է. իսկ ես հարսանիքի հրաւիրուած փեսայի բարեկամնե-րէն մէկն եմ, որ փեսին ուրախութեամբը կը ցնծամ. արդ այս ուրախութիւնը որ իմս է, կա-տարեալ է, վասն զի, կը տեսնեմ որ ժողովուր-դը անոր կը դիմեն, այն ժողովուրդը զոր ես պատրաստել կը ջանամ, իմ առաքելութեան պաշտօնս ալ ասով կը լմննայ. նա պէտք է որ մարդոց մտաց մէջ աճի և փառաւորուի. և ինձ պէտք է որ մեղմանամ ու իջնամ. նա երկինքէն կուգայ. իսկ ես երկրէն եմ, նա կը խօսի իբրև Աստուած մարդացեալ, իսկ ես իբրև մարդ՝ որ այս աշխարհքէն է, մի զարմանաք թէ նա ինձ-մէ շատ վեր է. վասն զի, Աստուած մարմնա-ցեալ, 'ի վեր է քան զամենայն. բայց 'ի վերայ այսր ամենայնի, տակաւին անոր վկայութիւնը քիչերը կ'ընդունին, բայց թէ ես և թէ այն սա-կաւուոր հաւատացեալները ստուգապէս հաւա-տալով անոր վարդապետութիւնը կը հաստա-տեմք և կը կնքենք թէ ճշմարիտ Աստուած է. և թէ Քրիստոս՝ իբրև իսկ մարդ կատարեալ ին-ծի պէս կամ ուրիշներուն չափով չտուացաւ զՍ. Հոգին: Հօրը սիրելի Որդին բոլոր երկրի ու եր-կընքի իշխանութիւնն իր ձեռքն ունի. ուստի Որդւոյն Աստուծոյ հաւատացողն յաւիտենական կենաց, իսկ չ'հաւատացողն Աստուծոյ բարկու-թեան կ'արժանանայ.

Մկրտչին Յովհաննու վերջին ու պանծալի վը-կայութիւնն էր այս. իւր բանտարկութենէն ա-ռաջ, թէպէտ բանտին մէջէն ալ խօսեցաւ:

Եւ յետ մատնելոյն Յովհաննու։ Մարկ. Ա. 14։ Իբրեւ գիտաց Յիսուս՝ եթէ լուան փարիսեցիքն՝ եթէ Յիսուս բազում աշակերտս առնէ և մկրտէ քան զՅովհաննէս, թէպէտ և ո՛չ եթէ Յիսուս ինքնին մկրտէր՝ այլ աշակերտքն նորա, եթող զՀրէաստան երկիր, և եկն միւսանգամ 'ի Գալիլեա։ Յովհ. Դ. 1-3։

*Յիսուս ինք չէր մկրտեր, իւր աշակերտները կը մկրտէին. փարիսեցիք կըսկսին նախանձիլ. առջի բերան Յովհաննէսի աշակերտներն ալ այս նախանձն ունեցեր էին. բայց Յովհաննէս լուսաւորեց զիրենք. փարիսեցիք կընախանձէին և առանց նախանձը գիտէր Յիսուս թէ ո՛ւր կերթայ, այսինքն, մինչև 'ի մահ. աստի ժամանակը չըլլալուն համար թողուց Հրէաստան ու Գալիլեա երթալու համար ճամբայ ելաւ, ինչպէս կը գրէ նաև Մատթէոս, Գլ. Դ. 12։ « Եւ իբրև լուաւ Յիսուս, եթէ Յովհաննէս մատնեցաւ, մեկնեցաւ գնաց 'ի Գալիլեա »։*

## Դ. Իրք կնոջն Սամարացւոյ

Եւ էր նմա անցանել ընդ Սամարիա։ Գայ նա 'ի քաղաք մի Սամարացւոց՝ որում անուն էր Սիքար, մերձ 'ի գեօղն զոր ետ Յակոբ Յովսեփայ որդւոյ իւրում։ Եւ անդ էր աղբիւր մի Յակոբայ. և Յիսուս վաստակեալ 'ի ճանապարհէն, նստէր 'ի վերայ աղբերն. և էր ժամ իբրև վեցերորդ։ Գայ կին մի 'ի Սամարիայ հանել ջուր. ասէ ցնա Յիսուս. տո՛ւր ինձ ըմպել։ Զի աշակերտքն նորա երթեալ էին 'ի քաղաք անդր՝ զի կերակուրս գնեսցեն։ Ասէ ցնա կինն Սամարացի. դու որ Հրեայդ ես, զիա՞րդ յինէն ըմպել խնդրես 'ի կնոջէ Սամարացւոյ. զի ո՛չ երբէք խառնակին Հրեայք ընդ Սամարացիս։ Պատասխանի ետ նմա Յիսուս և ասէ. եթէ գիտէիր զպարգեւսն Աստուծոյ, և ո՛վ է՝ որ ասէդ ցքեզ՝ թէ տուր ինձ ըմպել, դու արդեւք խնդրէիր 'ի նմանէ՝ և տայր քեզ

Ջրոյ կենդանի ։ Յովհ. Դ. 4–10 ։

Յիսուս Գալիլիա երթալու ատեն Սամարիայի ճամբուն վրայ Յակոբ նահապետին իր Յովսէփ որդւոյն տուած Սիւքար կամ Սիւքէմ (և հիմակ Նապլուս կամ Նէապօլիս Սամարիոյ) գեղին մօտ (նոյն Յակոբ նահապետին) նոյն իսկ անոր ձեռքով բացուած հորին կամ աղբիւրին քով նստաւ, ճամբէն յոգնած ըլլալուն համար. Նոյն ժամուն Սամարացի կին մը եկաւ ջուր առնելու. Յիսուս գիտէր այդ կնոջ մեղաւոր ըլլալը. ուստի զինքը դարձի բերելու դիտմամբ և միանգամայն չուզելով որ ամօթով մնայ ուրիշներուն քով, աշակերտներուն հաց գնելու համար քաղաք գնալնին առիթ առնելով կնոջ հետ առանձին մնաց. Քրիստոս խօսքի սկսաւ կնոջմէ խմելու ջուր ուզելով. որն որ խօսուածքէն հասկնալով, դուն որ հրեայ ես՝ Սամարացիէ մը ի՞նչպէս կրնաս որ ջուր կուզես, ըսաւ, ըստ որում Սամարացիք Հրէից աչքին՝ հեթանոսի և հերձուածողի և հերետիկոսի պէս էին. Յիսուս ալ, թէ որ գիտնայիր, ըսաւ, թէ ինչ մեծ շնորհ մ՚է իմ քեզի հետ այսպէս խօսքի բռնուիլս, եւ թէ ո՞վ է քեզնէ ջուր խնդրողը, շատ հաւանական էր որ դուն անորմէն կուզէիր, և այն ոչ այդ ջուրէն, այլ կենդանի ջուր կուտար քեզ ։

Ասէ ցնա կինն . Տէ՛ր, դու դոյլ իսկ ոչ ունիս, և ջրհորդ խոր է . իսկ արդ՝ ուստի՞ ունիցիս զջուրդ կենդանի ։ Միթէ դու մեծ իցես քան զհայրն մեր Յակովբ՝ որ զայս ջրհոր ետ մեզ . և ինքն աստի արբ՝ և որդիք նորա, և խաշինք նորա ։ Պատասխանի ետ նմա Յիսուս և ասէ . ամենայն որ ըմպէ 'ի ջրոյ յայսմանէ՝ ծարաւեսցի դար

բաւէ. բայց որ ըմպէ ՚ի ջրոյն, զոր ես տաց նմա՝ մի՛ ծարաւեսցէ յաւիտեան։ Այլ ջուրն զոր ես տաց նմա, եղիցի նմա աղբիւր ջրոյ բղխելոյ ՚ի կեանս յաւիտենականս։ Յովհ. Դ. 11—14.

Կինն այս այլաբանական խօսքն որ Հոգւով սրբով և մկրտութեամբ վերստին ծնունդ կը նշանակէր, չը հասկցաւ. բայց խօսուածքէն և խօսքին խորութենէն հիանալով առաւել որ հասարակ մարդու հետ խօսելու պէս կը խօսէր Յիսուսի հետ, ինքզինքը ժողվեց, և Տէր, անուանելով, ըսաւ, դու դոյլ ալ չունիս, ջրհորն ալ խորունկ է, քու կենդանի ջո՞ւրդ ուսկից է, չեմ ալ կարծեր որ դու այս ջրհորը մեզի տուող մեր Յակոբ նահապետէն ալ մեծ ըլլաս՝ որ թէ ինք և թէ իր խաշինքն ասկէց խմեցին և ապրեցան. Յիսուս պատասխան տուաւ ու ըսաւ. այդ ջուրը կեանք տուող ջուր մը չէ, քիչ ժամանակի համար մարդուս ծարաւը կ'անցունէ, բայց ես անանկ ջուր մը ունիմ՝ ուրկէ մէկը եթէ միանգամ խմելու ըլլայ, յաւիտենական չը ծարաւնար, և այն իմ տուած ջուրս յաւիտենական կեանքի մէջ բղխած ջուրի աղբիւր է, որ չը հատնիր. Աստուծոյ շնորհքներն և կենդանարար բաներն անապառ և յաւիտենական երանութիւն կը շնորհեն մարդուս, Աստուծոյ բանին տուած զովացումը պապակեալ շրթանց և ծարաւի սրտերու հնարաւոր չէ ակնակիտ աղբերց ջրոյ տուած զովացումին հետ բաղդատել.

Ասէ ցնա կինն. Տէ՛ր, տո՛ւր ինձ զջուրն զայն, զի մի՛ ծարաւեսցից. և մի՛ եկեսցից այսր՝ հանել ջուր։ Ասէ ցնա Յիսուս. Ե՛րթ կոչեա՛ զայր քո՛ և ե՛կ այսր։ Պատասխանի ետ

նմա կինն և ասէ. չի՛ք իմ այր. ասէ ցնա Յիսուս. բարւոք ասացեր՝ թէ չի՛ք իմ այր: Զի հինգ այր փոխեցեր դու, և զոր այժմ ունիս՝ չէ՛ քո այր. զայդ արդար ասացեր: Ասէ ցնա կինն. Տէ՛ր, թուի ինձ, թէ մարգարէ իցես դու: Հարքն մեր 'ի լերինս յայսմիկ երկիր պագին. և դուք ասէք՝ եթէ յԵրուսաղէմ է տեղի, ուր արժան իցէ երկիր պագանել: Ասէ ցնա Յիսուս. կի՛ն դու, հաւատա՛ ինձ, զի եկեսցէ ժամանակ՝ յորժամ ո՛չ 'ի լերինս յայսմիկ և ո՛չ յԵրուսաղէմ երկիր պագանիցէք Հօր: Յովհ. Դ. 15—21:

Կինն այս խօսքին հոգևոր իմաստը չըմբռնեց. և դարձեալ մարմնաւոր ջուր կարծելով խնդրեց այն ջուրէն որ ալ չը ծարաւի և մէյ մ'ալ այս աղբիւրին քով չը գայ ջուր հանելու: Յիսուս որ այս խօսքերով զանի դարձի բերել կուզէր, և միանգամայն կուզէր որ ըրած յանցանքը յանկարծ երեսը չը զարնէ, կնոջ այս խօսքին վրայ քու խնդիրդ կը կատարեմ, ըսաւ, թէոր էրիկդ հոս բերես. այն ատեն ուզած ջուրդ կուտամ քեզի: Այս խօսքը անոր համար ըսաւ՝ որ կինը իւր յանցանքն ինք խոստովանի. վասն զի գիտէր Յիսուս թէ օրինաւոր էրիկ չունի. կինը աչքը իմ այր, ըսաւ, վասն զի պոռնիկ էր, և հինգ սիրահար ունեցած էր. Յիսուս պատասխանեց, ստոյգ ըսիր որ այր չունիմ, վասն զի հինգ էրիկ մարդ փոխած ես, արդի ունեցածդ ալ քու օրինաւոր այրդ չէ. կինը պատասխանեց, Տէ՛ր, կերևի թէ մարգարէ մ'ես դուն. լուսաւորուելով կինը մարգարէ ըլլալն իմացաւ. բայց կասկած մը ունէր թէ Մեսիայն արդէն եկած է. ուստի աղէկ հասկնալու համար թէ ինքն է Մեսիայն, ուրիշ խնդիր մը բացաւ Յիսուսի. մեր հայրերն, ըսաւ, այս լերան վրայ երկրպագութիւն ըրին.

և դուք Հրէայքդ կըսէք որ Աստուծոյ երկիրպագանելու տեղին՝ միայն Երուսաղէմն է ։

Սիւքարի մօտ Գարիզին լեռը կար, ուր Իսրայելի կռապաշտութեան ատեն կուռքերու զոհեր կը մատուցանէին. և Սամարացւոց մէջ աւանդութիւն կար թէ ճշմարտին Աստուծոյ այդ լերան վրայ արժան է զոհ ողջակէզ հանդիսաւոր կերպիւ մատուցանել, իսկ Հրէայք օրէնք 'ի ձեռին, կըսէին թէ, թէպէտ ամեն տեղ Աստուծոյ երկրպագութիւն կ'ըլլայ, բայց զոհ ողջակէզ Երուսաղէմի տաճարին մէջ մատուցանելու է միայն. կինը հարցուց թէ այս կարծիքներէն ո՞րն է ճըշմարիտը. Յիսուս ալ կինը բոլորովին լուսաւորելու համար, ըսաւ թէ ժամանակը եկած է, որ ալ Սամարացւոց և Հրէից, Երուսաղէմի և Գարիզինի մէջ խտրութիւն չը պիտի ըլլայ. դուք այդ լերան վրայ կը զոհէք, վասն զի օրէնքը չը գիտէք, մեք Հրէայքս Երուսաղէմի մէջ կը զոհեմք վասն զի գիտեմք օրէնքը. գիտեմք նաև որ փրկութիւնը, այսինքն, Փրկիչն Հրէայներէն պիտի գայ. հիմայ հասած է այն ժամը, ուր Աստուծոյ ճշմարիտ երկրպագուներն ալ նիւթական և ստուերական զոհերով չը պիտի պաշտեն զանի. հապա Հօր Աստուծոյ երկրպագութիւն պիտի ընեն Ս. Հոգիով ու այն ճշմարտութիւնով որուն օրինակներն էին զոհերն ու ողջակէզներն. ուստի բուն հոգիով ու ճշմարտութեամբ, այսինքն, Քրիստոսով պիտի երկրպագեն Հօր ։ վասըն զի Աստուած ալ այնպիսի երկրպագութիւն ընողները կը փնտռէ ։ Աստուած մարմին նիւթ չէ .

Հոգի է Աստուած, և երկրպագուաց նորա՝ հոգւով և ճշմարտութեամբ պարտ է երկրպագանել : Յովհ. Դ. 24 .

*Աստուած՝ մարմին նիւթ չէ, այլ գերամաքուր հոգի . ուստի հոգիով երկրպագելու է անոր :*

Ասէ ցնա կինն . գիտեմ զի Մեսիա գայ՝ անուանեալն Քրիստոս . յորժամ եկեսցէ նա, պատմեսցէ մեզ զամենայն. Ասէ ցնա Յիսուս . Ես եմ՝ որ խօսիմս ընդ քեզ : Յովհ. Դ. 25—26 .

*Կինը՝ որ այս խօսքերն ընելով դիմացինին ո՛վ ըլլալն իմանալ ուզեր էր և արդէն սիրտը փոխուած էր՝ շնորհքը թափանցեր էր հոգւոյն մէջ, բայց չը համարձակելով ինքնիրեն ըսել թէ դու ես Մեսիայն . և միանգամայն ուզելով հասկնալ ու հաւատալ թէ արդեօք նա ի՞նքն է . ըսաւ, գիտեմ որ Մեսիայն պիտի գայ որն որ Քրիստոս ալ կըսուի և եկած ժամանակը մեզի բոլոր պէտք եղած բաները պիտի հասկցնէ պատմէ : Յիսուս պատասխան տուաւ, որ իրեն հետ խօսողն է Մեսիայն .*

Եւ յայն բան եկին աշակերտքն նորա, և զարմանային զի ընդ կնոջն խօսէր . բայց ոչ ոք ասաց ՚ի նոցանէ, թէ զի՞նչ խնդրես, կամ զի՞նչ խօսիս ընդ դմա : Եթող կինն զսափորն իւր՝ և չոգաւ ՚ի քաղաքն, և ասէ ցմարդիկն : Եկայք տեսէք զայր մի, որ ասաց ինձ զամենայն՝ որ ինչ իմ գործեալ է . միթէ նա՞ իցէ Քրիստոսն : Ելին ՚ի քաղաքէն՝ և գային առ նա : Եւ մինչչև եկեալ էին նոքա, աղաչէին զնա աշակերտքն և ասէին . Ռաբբի՝ հա՛ց կեր : Նա ասէ ցնոսա. Ես կերակուր ունիմ ուտել, զոր դուքն ո՛չ գիտէք : Ասէին աշակերտքն ընդ միմեանս . միթէ ոք եբեր ինչ նմա ուտել :

կուրս այն է որ զիս ղրկողին կամքը կատարեմ. դուք չէ՞ք ըսեր որ մինչև հնձոց ժամանակ չորս ամիս կայ. (այս ատեն Նոյեմբեր ամսոյն վերջն է. չորս ամիս կը մնայ առաջին հնձոց հնձուելու ատենին, այսինքն, Մարտ ամսոյն վերջին կամ Ապրիլի սկիզբին. և այն կողմերը հաճար և տեսակ մը շուտ հասնող ցորեան կելլէր, որոնցմէ զատկի տօնին խուրձ կապած տաճարին նուէր տալու կը տանէին) հունձքի համար այս առոյգ է. չորս ամիս կայ, բայց ես կըսեմ ձեզի, հոգւոյ աչքերնիդ վերուցէք և տեսէք, ոչ զգալի այլ իմանալի արտորայներն հնձուելու համար հասած են. ով որ հունձը հնձէ՝ հարկաւ վարձք կառնէ, և յաւիտենական կեանքի մէջ պտուղ կը ժողվէ. անանկ որ ցանողներն ու հնձողները կամ քաղողները մէկտեղ պիտի ցնծան։

Թէպէտ և մարմնաւոր սերմանողներն ու հնձողները միևնոյն մարդիկն են շատ անգամ, բայց հոգևորապէս այլ է՝ որ սերմանէ, և այլ է՝ որ հնձէ. ես զձեզ հնձելու ղրկեցի, այն բուսածներն՝ զորս դուք չը ցանեցիք. ուրիշներն աշխատեցան և դուք անոնց աշխատութեան պտուղը քաղեցիք. Ուրիշներն՝ այսինքն մարգարէներն և վերջինն 'ի մարգարէս առաքեալն և Մկրտիչն Յովհաննէս, որ Հրէաստանի մէջ շատերը մկրտեց և ուխտին մարգարէից հետ շատերը պատրաստեց Քրիստոսի թագաւորութեանը, և անոնք սերմանեցին հոգիներու մէջ հաւատքին սերմերը. նաև կինն Սամարացի, որ նոյն ժամուն գընաց ամբողջ քաղաքի մը քարոզութիւն ըրաւ, նա մանաւանդ որ Քրիստոս ինք պիտի աշխատէր իւր չարչարանքովն, քարոզութեամբն, և առա-

քնալէ՝ որ այն օրը հացը միայն կը մտածէին, Քրիստոսի սերմանածները պիտի քաղէին. Ահա՛ այս միջոցին Սամարացի կնոջն յորդորանքովը՝ քաղքէն շատ մը մարդիկ եկան Յիսուսը տեսնելու և անոր հետ խօսելու, կաղաչէին որ քովերնին կենայ. Յիսուս երկու օր կենալու յանձնառու եղաւ. առջի բերան կնոջ խօսքովը՝ բայց ետքը իրենց ներքին համոզմամբը հաւատացին Քրիստոսի. ըստ այնմ թէ,

Եւ 'ի քաղաքէն յայնմանէ Սամարացւոց՝ բազումք հաւատացին 'ի նա, վասն բանի կնոջն վկայելոյ՝ եթէ ասաց ինձ զամենայն, որ ինչ ինչ գործեալ էր։ Իսկ իբրեւ եկին առ նա Սամարացիքն, աղաչէին զնա լինել առ նոսա. և եկաց անդ աւուրս երկուս։ Եւ եւս բազումք հաւատացին 'ի նա վասն բանին նորա։ Եւ ասէին ցկինն, թէ ո՛չ այսուհետեւ վասն քո խօսիցդ հաւատամք, զի մեզէն իսկ լուաք 'ի դմանէ. և գիտեմք եթէ դա է ճշմարտիւ փրկիչ աշխարհի։ Յովհ. Դ. 39—42։

Վասն զի կնոջ կըսէին թէ իրեն պատմելուն համար չէ որ կը հաւատան, հապա որովհետեւ իրենք անձամբ տեսան, լսեցին և հասկցան թէ աս իրաւ է փրկիչն աշխարհաց.

# ԳԼՈՒԽ Է.

ԵՐԹ ՓՐԿՉԻՆ Ի ԳԱԼԻԼԻԱ. — ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ՈՐԴՒՈՅ ԹԱԳԱՒՈՐԱԶՆԻՆ. — Ի ՆԱԶԱՐԷԹ ԸՆԹԵՌՆՈՒ ԵՒ ՄԵԿՆԷ ԶԵՍԱՅԻ ՄԱՐԳԱՐԷ. — ԲՆԱԿԵԱԼ Ի ԿԱՓԱՌՆԱՈՒՄ ՎԵՐՍՏԻՆ ԿՈՉԷ ԶԱՇԱԿԵՐՏՍՆ ԱՌ ԻՒՐ. — ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԴԻՒԱՀԱՐԻՆ ԵՒ ԶՈՔԱՆՉԻՆ ՊԵՏՐՈՍԻ ԵՒ ԱՅԼՈՑ ԱԽՏԱԺԵՏԱՑ



## Ա. Երթ Փրկչին ՚ի Գալիլեա

Եւ յետ երկուց աւուրց ել անտի և գնաց ՚ի Գալիլեա: Զի ինքն Յիսուս վկայեաց՝ եթէ մարգարէ յիւրում գաւառի պատիւ ոչ ունի. Յովհ. Դ 43—44.

*Յիսուս Սամարիա՝ Սամարացի կնոջ պանծառաւն երկու օր կենալէն վերջն Գալիլեա անցաւ, վասն զի ինք ալ վկայեց՝ յիշելով հին առածը թէ տեղացին ով որ ալ ըլլայ, մարգարէ, իշխան, քահանայ ևլն. իւր բնիկ քաղաքին մէջ պատիւ չը կրնար գտնել. Թէպէտ, ըստ Ոսկեբերանի, ոչ թէ միշտ, այլ յաճախ այսպէս կը պատահի, ան ալ անոր համար, որ տեղացւոց մէջ միշտ ընտանութեամբ ապրած ըլլալուն, ժողովուրդ մանաւանդ ռամկական մարդիկ արդէն եղած ընտանութեամբ կեանքը կը յիշեն և նախանձու՝ չեն կրնար հանդուրժել չըտուած պատիւներն տալու իրեն, ուստի կամ կը զրպարտեն*

կամ կը չարախօսեն, որով կը հաստատուի այն խօսքը թէ, «Մարգարէ յիւրում գաւառի պատիւ ոչ ունի»:

Այլ յորժամ եկն նա 'ի Գալիլեա, ընկալան զնա Գալիլեացիքն, զի տեսեալ էին զամենայն նշանսն, զոր արար յԵրուսաղէմ 'ի տօնին. քանզի եւ նոքա եկեալ էին 'ի տօնն: Յովհ. Դ. 45:

Յիսուս Գալիլեա եկածին պէս, վասն զի տօնին Երուսաղէմ եղած ատեններին նորա հրաշագործութիւնները տեսած էին, բոլոր Գալիլեացիք սիրով ընդունեցին զինքը:

## Բ. Բժշկութիւն որդւոյ Թագաւորազնին

Եկն դարձեալ 'ի Կանա Գալիլեացւոց՝ ուր արար զջուրն գինի. և անդ էր Արքունական մի, որոյ որդի նորա հիւանդ կայր 'ի Կափառնաում: Յովհ. Դ. 46:

Եւ կրկին Գալիլեացւոց Կանա քաղաքն եկաւ, ուր որ ինքն ամիս յառաջ հարսնիքի մը մէջ ջուրը գինիի փոխած էր: Հոն իշխանաւոր Թագաւորազն մը կար, (որ յունական βασιλικός բառին արքունի պաշտօնեայ, Արքունական կամ Թագաւորական բառն նոյն կը նշանակէ) որուն որդին Կափառնաումի մէջ մահաբեր ախտիւ հիւանդ էր: Երբոր լսեց թէ Յիսուս Հրէաստանէն Գալիլեա եկած է, դիմաւորելու գնաց և աղաչեց թախանձանօք որ իւր մահուան դուռը հասած զաւակը գայ բժշկէ, ըստ այնմ թէ,

Նա լուեալ թէ Յիսուս եկեալ է 'ի Հր
'ի Գալիլեա, եկն առ նա՝ և աղաչէր, զի իջցէ և բ

# ԳԼՈՒԽ Է.

ԵՐԹ ՓՐԿՉԻՆ Ի ԳԱԼԻԼԵԱ. — ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ՈՐԴԻՈՅ ԹԱԳԱՒՈՐԱՑԻՆ. — Ի ՆԱԶԱՐԷԹ ԸՆԹԵՌՆՈՒ ԵՒ ՄԵԿՆԷ ԶԵՍԱՅԻ ՄԱՐԳԱՐԷ. — ԲՆԱԿԵԱԼ Ի ԿԱՓԱՌՆԱՈՒՄ ՎԵՐՍՏԻՆ ԿՈՉԷ ԶԱՇԱԿԵՐՏՍՆ ԱՌ ԻՒՐ. — ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԴԻՒԱՀԱՐԻՆ ԵՒ ԶՈՔԱՆՉԻՆ ՊԵՏՐՈՍԻ ԵՒ ԱՅԼՈՑ ԱԽՏԱԺԵՏԱՑ



## Ա. Երթ Փրկչին 'ի Գալիլեա

Եւ յետ երկուց աւուրց ել անտի և գնաց 'ի Գալիլեա: Զի ինքն Յիսուս վկայեաց՝ եթէ մարգարէ յիւրում գաւառի պատիւ ոչ ունի. Յովհ. Դ 43—44.

Յիսուս Սամարիա՝ Սամարացի կնոջ պանծաւաւն երկու օր կենալէն վերջն Գալիլեա անցաւ, վասն զի ինք ալ վկայեց՝ յիշելով հին առածը թէ տեղացին ով որ ալ ըլլայ, մարգարէ, իշխան, քահանայ ևլն. իւր բնիկ քաղաքին մէջ պատիւ չը կրնար գտնել. Թէպէտ, ըստ Ոսկեբերանի, ոչ թէ միշտ, այլ յաճախ այսպէս կը պատահի, ան ալ անոր համար, որ տեղացւոց մէջ միշտ ընտանութեամբ ապրած ըլլնելուն, ժողովուրդ մանաւանդ սովական մարդիկ արդէն եղած ընտանութեամբ կեանքը կը յիշեն և նախանձու՝ չեն կրնար հանդուրժել չըտուած պատիւնին տալու իրեն, ուստի կամ կը զրպարտեն

կամ կը չարախօսեն, որով կը հաստատուի այն խօսքը թէ. «Մարգարէ յիւրում գաւառի պատիւ ոչ ունի»։

Այլ յորժամ եկն նա ՚ի Գալիլեա, ընկալան զնա Գալիլեացիքն, զի տեսեալ էին զամենայն նշանսն, զոր արար յԵրուսաղէմ ՚ի տօնին. քանզի և նոքա եկեալ էին ՚ի տօնն։ Յովհ. Դ. 45։

Յիսուս Գալիլեա եկածին պէս, վասն զի տօնին Երուսաղէմ եղած ատենները Նորա հրաշագործութիւնները տեսած էին, բոլոր Գալիլեացիք սիրով ընդունեցին զինքը։

Բ. Բժշկութիւն որդւոյ Թագաւորազնին

Եկն դարձեալ ՚ի Կանա Գալիլեացւոց՝ ուր արար զջուրն գինի. և անդ էր Թագաւորազն մի, որոյ որդի նորա հիւանդ կայր ՚ի Կափառնաում։ Յովհ. Դ. 46։

Եւ կրկին Գալիլեացւոց Կանա քաղաքն եկաւ, ուր որ Ինք առջի յառաջ հարսնիքի մը մէջ ջուրը գինիի փոխած էր։ Հոն իշխանաւոր Թագաւորազն մը կար, (որ բառ յունական βασιλικώς բառին արքունի պաշտօնեայ, Թագաւորական կամ արքունական պաշտօնեայ կը նշանակէ) որոյ որդին Կափառնաումի մէջ մահուանը առջի հիւանդ էր։ Երբոր լսեց թէ Յիսուս Հրէաստանէն Գալիլեա եկած է, դիմաւորելու գնաց և աղաչեց թախանձանօք որ իր մահուան դուռը հասած զաւակը գայ բժշկէ, ըսա այնմ թէ,

Նա իբրև լուաւ եթէ Յիսուս եկեալ է ՚ի Հրէաստանէ ՚ի Գալիլեա, եկն առ նա՝ և աղաչէր, զի իջցէ և բժշկեսցէ

Թէ բոլոր ընտանիքը Մեսիային հաւատացին.

Զայս դարձեալ երկրորդ նշան արար Յիսուս եկեալ ի Հրէաստանէ ’ի Գալիլեա: Յովհ. Դ. 54:

Քրիստոսի Գալիլեայի մէջ այս երկրորդ անգամ ըրած հրաշագործութիւնն էր:

Եւ ել համբաւ զնմանէ ընդ ամենայն կողմանս գաւառին: Եւ նա ուսուցանէր ’ի ժողովուրդս նոցա փառաւորեալ յամենեցունց: Ղուկ. Դ. 14—15:

Թագաւորազնի որդւոյն այսպէս բժշկուելուն եւ Թագաւորազնին ընտանեաց ’ի Քրիստոս հաւատալուն լուրը շուտ մը գաւառին ամեն կողմը տարածուեցաւ. Ինքը Յիսուս ալ անցած քաղաքները ժողովարաններու մէջ (վասն զի Հրէայք քաղաքներու եւ գիւղերու մէջ ժողովարաններ ունէին, ուր Թէ կաղօթէին եւ Թէ ընթերցուածոց ունկն կըդնէին, կըմտնէր եւ Աստուածաշունչ Ս. Գիրք կըմեկնէր, եւ ամեն տեղ կըգովէին զինքը.

## Դ. Ի Նազարէթ ընթեռնու եւ մեկնէ Եսայի մարգարէ

Եւ եկն ’ի Նազարէթ՝ ուր սնեալն էր. եւ եմուտ ըստ սովորութեան իւրում յաւուրն շաբաթու ’ի ժողովուրդն: Եւ ետուն նմա գիրս Եսայեայ մարգարէի, եւ յարեաւ ընթեռնուլ. եւ իբրեւ եբաց զգիրսն՝ եգիտ զայն տեղի՝ յորում գրեալ էր. Հոգի Տեառն ’ի վերայ իմ, վասն որոյ եւ օծ իսկ զիս. աւետարանել աղքատաց առաքեաց զիս, բժշկել զբեկեալս սրտիւ. Քարոզել գերելոց զթողութիւն, եւ կուրաց տեսանել. արձակել զբեկեալս ’ի թողութիւն. քարոզել զտարեկան Տեառն ընդունելի: Եւ խփեալ զգիրսն՝ ետ

ցպաշտօնեայն, և նստաւ. և ամենեցուն որ 'ի ժողովրդեանն էին աչք 'ի նա հայէին: Եւ սկսաւ ասել ցնոսա. այսօր լը-ցաւ գիրս այս յականջս ձեր: Ղուկ. Դ. 16—21:

*Յիսուս գնաց Նազարէթ իր քաղաքն և իր սովորութեան համեմատ շաբաթ օրը ժողովարան (1) մտաւ. և Եսայեայ ԿԱ. րորդ գլուխը մեկնեց և հաստատեց թէ այն խօսքերն իրեն համար ըսած էր մարգարէն. յետոյ գոցեց գիրքը պաշտօնէին տուաւ ու ինքը նստաւ. ամենուն աչքը իր վրայ էր, և ըսաւ անոնց թէ իր իրենց ականջին կարդացած Ս. գրքին խօսքերն հետզհետէ 'ի գլուխ ելնելու վրայ են:*

Եւ ամենեքին վկայէին նմա, և զարմանային ընդ բանս

(1) Ժողովարան Յունարէն συναγωγή անուանով՝ բաբելացւոց գերութենէն յառաջ հաստատուած կերևի Հրէից մէջ. ինչպէս նաև մարգարէից գրքերուն մէջ Աստուծոյ փառաբանութիւն ընել սովորութիւն էր. ամեն տեղ այս ժողովարանները կային և տաճարի ձևով փոքրիկ շէնքեր էին, զորոնք տասնի չափ անձինք միանալով կը շինէին, և տասնմին անուանով շինողներն բարեպաշտութեան մեծ գործ կատարած կը համարուէին. բաց 'ի զոհագործութենէ որ վկայութեան խորանին և ապա տաճարին մէջ կը կատարուէր, ամեն բարեպաշտական պարտաւորութիւնք, այսինքն, աղօթք և ընթերցմունք անխափան կը պաշտուէին. աղօթքներն ու ընթերցուածքն միայն քահանայից սեփհական չէին, այլ որ ծերնուցեալ էր իբրև գիտուն, կարող էր այդ պաշտօնը կատարել. ժողովարանաց գլխաւորին՝ ժողովրդապետ կ'ըսուէր, և ժողովուրդէն կ'ընտրուէր. կային նաև զանազան պաշտօնեայք թէ ժողովարանին կարասիքն, աթոռներն, կանթեղներն եւն պահպանելու և թէ նոյն թաղի ժողովրդոց վէճերն եւն քննելու. կերևայ որ այս ժողովարաններն իրարմէ անկախ էին. Սուրբ Գիրքը տարին անգամ մը ընթերցուածներու բաժնուած ամբողջ ծայրէ 'ի ծայր կը կարդացուին: Ս. Գիրքը կարդացողը ոտքի կը կայնէր, իսկ մեկնողը կը նստէր. ըստ այնմ թէ, «Յարեաւ ընթեռնուլ... Եւ խը-փեալ զգիրսն ետ ցպաշտօնեայն եւ նստաւ»:

շնորհացն՝ որ ելանէին 'ի բերանոյ նորա . եւ ասէին . ո՞չ սա է որդին Յովսեփայ : Ղուկ. Դ. 22:

*Զարմացան հրեան Յովսեփայ տղան կարծուած Յիսուսին վրայ, որ տեղէ մը ուսումն չ'առած այնքան իմաստութեամբ Եսայեայ մարգարէութիւնն իւր վրայ մեկնելով կը պարզաբանէր: Գովեցին զինքը, բայց Յիսուս գովութիւն չէր փնտռեր անոնցմէ, այլ միայն հաւատքի պտուղ, Թէպէտ ուրիշ անգամ այս գովութիւնն ալ զըլացան. և յայտնապէս կորսնցնելու և սպաննելու աշխատեցան:*

### Դ. Բնակեալ 'ի Կափառնաում՝ վերստին կոչէ զաշակերտսն առ իւր

Եւ թողեալ զՆազարէթ, եկն բնակեցաւ 'ի Կափառնաում 'ի ծովեզերին, 'ի սահմանս Զաբուղոնի եւ Նեփթաղիմայ. զի լցցի բանն՝ որ ասացաւ 'ի ձեռն Եսայեայ մարգարէի : Երկիր Զաբուղոնի եւ երկիր Նեփթաղիմայ՝ ճանապարհ ծովու՝ յայնկոյս Յորդանանու, Գալիլեա հեթանոսաց : Ժողովուրդ որ նստէր 'ի խաւարի՝ ետես լոյս մեծ . եւ որոց նստէին յաշխարհին եւ 'ի ստուերս մահու՝ լոյս ծագեաց նոցա : Մատ. Դ. 13-16 :

*Յիսուս Նազարեթէն ելաւ Զաբուղոնի և Նեփթաղիմայ սահմաններուն մէջ Կափառնաում ծովեզերքին եկաւ բնակեցաւ. որպէս զի Եսայեայ Թ. 1. համարի մէջ եղած մարգարէութիւնը կատարուի, յորում կըսէ մարգարէն. դուք Զաբուղոնի (1) և Նեփթաղիմայ երկիրներ և Յորդա-*

(1) Զաբուղոն կը նշանակէ բնակարան, բնակիչ, օթեւան. եւ Յակոբայ Լիայ կնոջմէն ունեցած զաւկին անունն է, իր,

դեռ շրջէր Յիսուս ընդ եզր ծովուն Գալիլեացւոց, ետե֊
սերկուս եղբարս զՍիմոն զկոչեցեալն Պետրոս. եւ զԱն֊
դրէաս եղբայր նորա՝ արկեալ ուռկան ՚ի ծով. քանզի ձկնորս֊
էին։ Եւ ասէ ցնոսա. Եկա՛յք զկնի իմ, եւ արարից զձեզ
որսորդս մարդկան։ Եւ նոքա վաղվաղակի թողեալ զուռկանս՝
գնացին զհետ նորա։ Մտթ. դ. 18-20։

*Յիսուս Գալիլեայի ծովեզերքէն անցած ա֊տենը, տեսաւ Սիմէոն ու Անդրէասը որ ձկնորս ըլլալով ուռկաննին ծովը ձգած էին, (ասոնք ա֊շակերտած էին Քրիստոսի՝ կանուխ հարսնիքէն֊յառաջ, բայց Քրիստոսի առաջին անգամ Կա֊փառնաում՝ եկած ատենը հոն մնացած էին ու ձկնորսութիւն կընէին, թերեւս ոչ առանց դիտա֊մամբ հոն մնացած էին, այսինքն, Քրիստոսի հա֊մար խօսելու մտօք.) Յիսուս բսաւ անոնց, եկէք ետեւէս և զձեզ ոչ ձկանց, անբան անասնոց, կենդանեաց, այլ բանաւոր կենդանեաց, մարդ֊կան որսորդներ կազմեմ, որպէս զի ժողովուրդ֊ներ Աւետարանի ուռկանին մէջ որսան. անոնք ալ շուտ մը ուռկաննին թողլով ետեւէն գնացին։*

Եւ մատուցեալ անտի յառաջ, ետես այլ երկուս եղ֊
բարս, զՅակոբոս Զեբեդեայ եւ զՅովհաննէս եղբայր նորա
՚ի նաւի, Զեբեդեաւ հանդերձ հարբն իւրեանց, մինչ կազ֊
մէին զուռկանս եւ կոչեաց զնոսա։ Նոքա վաղվաղակի թողեալ
զնաւն եւ զհայրն իւրեանց գնացին զհետ նորա։ Մտթ.
դ. 21-22։

*Նոյն ծովակին եզերքը քիչ մը անդին դար֊ձեալ իրեն ծանօթներն Յակոբոս Զեբեդեայ և ա֊նոր եղբայրը Յովհաննէսը, իրենց Զեբեդիոս հօրը հետ մէկտեղ նաւուն մէջ տեսաւ որ ուռ֊կաննին կը կազմէին, զանոնք ալ կանչեց, որ*

հայրերնին, նաւերնին և գործիքնին թողլով ետևէն գնացին։ Դիտելու արժանի է որ Քրիստոսի կանչած մարդիկը միշտ գործով զբաղեալ են, ինչպէս Յակոբոս, Յովհաննէս և ասոնցմէ յառաջ Անդրէաս և Պետրոս. ուստի կը հետևի թէ Աստուծոյ շնորհաց արժանի եղողներուն մեծ մասըն աշխատութիւն սիրող մարդիկներ եղած են։ Ասոնք թէ հայրերնին և թէ նաւերնին թողին, որով և իրենց սիրոյն առ Քրիստոս կատարեալ լինելուն օրինակ տուին մեզ։

Եւ մտանէին ՚ի Կափառնաում, եւ փոյթ եւ փոյթ ՚ի շաբաթուն մտեալ ՚ի ժողովուրդն, ուսուցանէր զնոսա։ Եւ զարմանային ընդ վարդապետութիւն նորա, զի ուսուցանէր զնոսա իբրեւ իշխանութեամբ՝ եւ ոչ որպէս դպիրքն։ Մրկ. Ա. 21-22.

Ասոնցմով սկսաւ շաբաթ օրերը ժողովարաններու մէջ մտնել և քարոզել. Քրիստոսի քարոզութեան եղանակը նոր և անսովոր էր Հրէից, և դպիրներու վարդապետութենէն տարբեր. անոնք լոկ իբրև թարգմանող ու մեկնիչ կը խօսէին, իսկ Յիսուս իբրև Տէր և օրէնսդիր իշխանութեամբ կը խօսէր։

## Ե. Բժշկութիւն դիւահարին եւ զօքանչին Պետրոսի եւ այլոց ախտաժետաց

Եւ էր ՚ի ժողովրդեանն նոցա այր մի, յորում այս պիղծ գոյր ՚ի նմա. որ աղաղակէաց եւ ասէ. Մարկ Ա. 23. Թողացո՛՝ զի՞ կայ մեր եւ քո՛ Յիսուս Նազովրեցի, եկիր կորուսանել զմեզ. գիտեմ զքեզ ո՛վ ես սուրբդ Աստուծոյ։ Սաստեաց ՚ի նա Յիսուս եւ ասէ. պապանձեա՛ց եւ ե՛լ ՚ի

դմանէ ։ Զգետնեալ զնա դեւն 'ի մէջ անդր՝ եւ ել 'ի նմա-
նէ, եւ ինչ ո՛չ վնասեաց նմա ։ Ղուկ. Դ. 34-35։

Առաջին շաբաթը ժողովարանի բազմութեան մէջ պիղծ դեւ ունեցող մէկը կար․ ոմանք կը կարծեն թէ սատանան դիտմամբ հոն բերած էր այս մարդը Քրիստոսի քարոզութիւնը խռովանելու համար․ վասն զի երբոր դեւը ելաւ, աղաղակեց մեծ ձայնով, «զի՞ կայ մեր և քո Յիսուս Նազովրեցի», մենք ինչ վնաս տուեր ենք քեզի․ «գիտեմք զքեզ, ո՛վ ես սուրբդ Աստուծոյ»․ դու գիտես որ մենք Աստուծոյ սուրբերուն դէմ զօրութիւն չունինք․ որովհետեւ կասկած ունէր սատանան անոր ո՛վ ըլլալուն վրայ և միշտ Քըրիստոսի բերնէն պատասխանի մը կըսպասէր։ Բայց փոխանակ իւր ուզածը լսելու, յանդիմանութիւն լսեց, «պապանձեա՛ց և ե՛լ 'ի դմանէ»։ Դեւը բարկութենէն և կատաղութենէն ըսկեց խեղճ մարդն ու գետինը զարկաւ, մինչեւ կարծեցին թէ ոսկորները կոտրեցաւ, բայց վնաս մը չը կրնալով ընել, կորսուեցաւ ու ելաւ գնաց։

Եւ եղեւ զարմանալի 'ի վերայ ամենեցուն, խօսէին ընդ միմեանս և ասէին․ զի՞նչ է բանս այս, զի իշխանութեամբ և զօրութեամբ սաստէ այսոց պղծոց՝ և ելանեն։ Եւ երթայր հռչակ զնմանէ ընդ ամենայն տեղիս շուրջ գաւառացն ։ Ղուկ. Դ. 36—37 ։

Ահա՛ այս հրաշքին վրայ ամենքը զարմանալով իրարու կըսէին․ այս ի՞նչ է, մենք ասանկ վարդապետութիւն լսած չունինք, այս ինչ իշխանութեան տէր մէկն է, որ պիղծ (պիղծ ըսելուն պատճառն այն է որ դեւերը մեղսասէր են և միանգամայն զմարդիկ 'ի մեղս կհրապուրեն միշտ)

*դեւերն ալ կը հանէ ու կը հնազանդին իրեն. [illegible] ամեն կողմը տարածուեցաւ այս ըսքանչելիքը և ամեն մարդ կը գովէր այս սքանչելագործը:*

Եւ յարուցեալ 'ի ժողովրդենէ անտի, եմուտ. Ղուկ. Դ. 38. 'ի տուն Սիմոնի և Անդրեայ՝ Յակոբաւ և Յովհաննաւ հանդերձ. Մարկ. Ա. 29: Զոքանչ Սիմոնի տագնապէր ջերմամբ մեծաւ, և աղաչեցին զնա վասն նորա: Եկաց առ նմա՝ սաստեաց ջերմանն. Ղուկ. Դ. 38—39: Յարոյց զնա՝ կալեալ զձեռանէ նորա. և եթող զնա ջերմն՝ և պաշտէր զնոսա. Մարկ. Ա. 31:

*Յիսուս ժողովարանէն ելլալ ու աշակերտներըն հետն առած Սիմոնի և Անդրէասի տունն եկաւ. Սիմոնին զոքանչը մեծ ջերմով կը տագնապէր ու կաղաչէին անոր համար. Յիսուս ձեռքէն բռնեց և ջերմը շուտով թողուց, և սկսաւ տանտիկնոջ պէս ծառայութիւն ընել տան մէջ:*

*Քրիստոսի հրաշագործութիւններուն համբաւը տարածուելով՝ անհամար հիւանդներ և դիւահարներ բերին Պետրոսի տանը դրանը առջևը, Յիսուս ալ ամենքը բժշկեց. ըստ այնմ թէ,*

Իբրև երեկոյ եղև՝ 'ի մտանել արեգականն. Մարկ. Ա. 32: Ամենեքեան՝ որոց էին հիւանդք 'ի ցաւս ցաւս: Ղուկ. Դ. 40. Բերէին առ նա: Եւ էր ամենայն քաղաքն ժողովեալ առ դրանն: Մարկ. Ա. 32—33: Եւ եհան զայսսն բանիւ. Մատթ. Ը. 16: Եւ բժշկեաց բազում հիւանդս 'ի պէս պէս ցաւոց. Մարկ. Ա. 34: Եւ նա իւրաքանչիւր ումեք 'ի նոցանէ դնէր ձեռս և բժշկէր զնոսա. Ղուկ. Դ. 40: Զի լցցի բանն՝ որ ասացաւ 'ի ձեռն Եսայեայ մարգարէի. Նա զհիւանդութիւնս մեր վերցոյց, և զցաւս մեր եբարձ. Մատթ. Ը. 17:

Թէպէտ ախտաժէտներն ամէն տեղէն կու-գային Յիսուսէն բժշկութիւն առնելու, սակայն ցորեկուան ժողովուրդին բազմութենէն չը կըր-նալով ուղղակի իրեն մօտենալ, ժողովուրդին ցրուելէն վերջը իրիկուան մօտ ատեններ, նա մա-նաւանդ արեւը մարը մտնելէն վերջն ամէն մարդ իւր հիւանդը Յիսուսի մօտ կը բերէր. այնպէս որ բոլոր քաղաքացիք Պետրոսի դրան մօտ խռնած էին. Յիսուս սոսկ խօսքով դիւա-հարներէն դեւերն հանեց. զանազան ախտերով բռնուած հիւանդներն, ամենքն ալ վրայնին ձեռք դնելով միայն՝ բժշկեց: Այս բժշկութիւն-ներով կատարուած եղաւ Եսայի մարգարէին Յի-սուսի համար ըրած նախագուշակութիւնը թէ «Նա զհիւանդութիւնս մեր վերացոյց, եւ զցաւս մեր եբարձ»: Կամ ըստ գրոյն, Ես. Գլ. ԾԳ. 4. «Նա զմեղս մեր բառնայ, եւ վասն մեր չարչարի, եւ մեք համարեցաք զնա 'ի ցաւս եւ 'ի հարուածս եւ 'ի չարչարանս իբրեւ յԱստուծոյ եղեալ» կամ ըստ 12. համարի թէ «եւ նա զմեղս բազմաց վե-րացոյց եւ վասն անօրէնութեանց նոցա մատնե-ցաւ»:

Ելանէին դեւք 'ի բազմաց. աղաղակէին եւ ասէին. Եթէ դու ես որդի Աստուծոյ. եւ նա սաստէր՝ եւ ո՛չ տայր նո-ցա թոյլ խօսել, զի գիտէին զնա թէ Քրիստոս է. Ղուկ. Դ. 42:

Յիսուս հրաման ըրածին պէս դեւերը կ՚ելլէին մարդոցմէն եւ պոռալով Որդի Աստուծոյ կը դա-ւանէին. բայց Յիսուս չուզելով որ դեւերէն վը-կայութիւն առնու կամ գովեստ լսէ, եւ խրատել ուզելով զմեզ որ դեւերուն չը հաւատանք՝ թէ-

պէտս ճշմարտութիւն խօսել ձևացնեն, այլ կըսա-տէ իրենց որ լսեն, միանգամայն, ըստ Օգոս-տինոսի, Յիսուս գիտնալով որ նոցա Աստուծոյ վրայ դաւանութիւննին ու հաւատքնին կարծեօք է, չուզեր իրենցմէ կեղծաւոր հաւատոյ դաւա-նութիւն լսել և կը յարէ թէ «Քրիստոս այնչափ ծանուցաւ դիւաց՝ որչափ և կամեցաւ, և այն-չափ կամեցաւ, որչափ հարկ եղև»։

# ԳԼՈՒԽ Ը.

ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԲՈՐՈՏԻՆ ԵՒ ԱՅԼՈՑ ԱԽՏԱԺԵՏԱՑ. — ՎԱՐԴԱՊԵՏԷ Ի ՆԱՒԷ ԱՆՏԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ. — ՀՐԱՇԱԼԻ ՈՐՍ ՁԿԱՆՑ. — ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԱՆԴԱՄԱԼՈՅԾԻՆ Ի ԿԱՓԱՌՆԱՈՒՄ



## Ա. Բժշկութիւն բորոտին եւ այլոց ախտաժետաց

Եւ ընդ այգն ընդ առաւօտն յարուցեալ ել և գնաց յանապատ տեղի, և անդ կայր յաղօթս։ Եւ գնաց զհետ նորա Սիմոն՝ և որ ընդ նմայն էին։ Եւ եգեալ զնա ասեն ցնա, թէ ամենեքին խնդրեն զքեզ։ Եւ ասէ ցնոսա. Եկա՛յք երթիցուք և յայլ մօտաւոր գիւղաքաղաքսն, զի և անդ քարոզեցից. զի յայս իսկ եկեալ եմ։ Մարկ. Ա. 35—38. Եւ ժողովուրդքն խնդրէին զնա. եկին մինչ առ նա՝ և արգելուին զնա, զի մի՛ գնասցէ ՚ի նոցանէ։ Եւ նա ասէ

ցնոսա · և այլոց քաղաքաց պարտ է ինձ աւետարանել զարքայութիւնն Աստուծոյ, զի յայն իսկ առաքեցայ · Ղուկ. Դ. 42—43 ։ Եւ քարոզէր ՚ի ժողովուրդս նոցա ընդ ամենայն Գալիլեացիս, և դեւս հանէր · Մարկ. Ա. 39 ։

*Յիսուս առտուանց կանուխ ելաւ և անապատի կողմերը գնաց աղօթելու, ետևէն գնացին Սիմոն և հետևինները, գտան զինքը և ըսին որ ամենքը զինքը կը խնդրեն · Յիսուս եկէ՛ք, ըսաւ, մօտի քաղաքներն ալ այցելութիւն ընենք և քարոզեմ · վասն զի Աստուծոյ Արքայութիւնը միայն քարոզելու եկած եմ ։ Բայց ժողովուրդը թախանձեցին զինքը և չը թողուցին որ երթայ · թէպէտ Յիսուս իրենց կը զրուցէր թէ ուրիշ քաղաքներ ալ պիտի երթար քարոզելու, վասն զի ատոր համար միայն եկած է, ինչպէս որ բոլոր Գալիլեայի կողմերը կը քարոզէր, բժշկութիւններ կ'ընէր և շատ դիւահարներ կ'աղէկցնէր ·*

Եւ եղեւ ՚ի հասանելն նորա ՚ի մի քաղաքացն, ահա այր մի լի բորոտութեամբ իբրեւ ետես զՅիսուս՝ անկեալ ՚ի վերայ երեսաց աղաչէր զնա՝ և ասէ. Տէ՛ր, եթէ կամիս, կարօղ ես զիս սրբել ։ Ղուկ. Ե. 12 ։ Իսկ Յիսուս գթացեալ ձգեաց զձեռն, մերձեցաւ ՚ի նա՝ և ասէ ցնա · կամի՛մ սրբեա՛ց ։ Եւ իբրեւ ասացն ցնա, վաղվաղակի գնաց ՚ի նմանէ բորոտութիւնն՝ և սրբեցաւ ։ Եւ սաստեալ նմա՝ եհան զնա արտաքս վաղվաղակի, և ասէ · Զգո՛յշ լեր, մի՛ ումեք ինչ ասիցես. այլ ե՛րթ ցո՛յց զքեզ քահանայիցն, և մատո՛ վասն սրբութեան քո պատարագ՝ զոր հրամայեաց Մովսէս, ՚ի վկայութիւն նոցա ։ Եւ նա ելեալ սկսաւ քարոզել յոյժ՝ և համբաւ հանել զբանն . . . . Մարկ. Ա. 41—45 ։

*Գալիլեայի քաղաքներէն մէկին եկաւ մտաւ, մէջ մ'ալ բորոտութեամբ լի մարդ մը զՅիսուս*

տեսածին պէս, երեսի վրայ ինկաւ, աղաչեց որ զինքը բժշկէ ։

Այս տեղ յիշուած բորոտին բորոտութիւնը մեր ճանչցած և հասկցած բորոտութիւնը չէ ։

Այս՝ Եգիպտոսի և հարաւային փոքր Ասիոյ մէջ տեղական սովորական հիւանդութիւն մ՚էր, զոր Իսրայելացիք թերևս Աստուծոյ պատիժ կը նկատէին ։ Այս հիւանդութիւնը նախ՝ մորթի վրայ հերևար և շատ դժուարաբուժելի էր. ապա ոսկրները և ոսկորներուն ծուծը կը թափանցէր։ Քանի մը տեսակի կը բաժնուէր այս հիւանդութիւնը ։ Մէկ տեսակը թեթև էր՝ որ աւելի բորոտութեան տեսք ունէր, քան թէ բորոտութիւն էր. և այս տեսակը երկու ամիսէն մինչև երկու տարուան մէջ կանցնէր ։ Կային նաև ճերմակ և սև բորոտութիւն. կար նաև (éléphantiasis) Ելեփանդական բորոտութիւն (ալա թէնկիլիք,) ըսուած տեսակը. այս վերջիններն անբուժելի էին գրեթէ, և տակաւ առ տակաւ մարմնոյն մասունքները կը փտտեցնէին, կը թափէին ։

Այս հիւանդութիւններով բռնուած մարդիկը պիղծ կը համարուէին և Իսրայէլէն դուրս հանուելու էր ըստ Մովսիսեան օրինաց. Մինչև 200 տարի յառաջ այս հիւանդութիւնն Եւրոպայի մէջ ալ կ՚երևէր, զոր խաչակիրք Ասիայէն բերած էին կըսեն, և այս հիւանդներուն յատուկ տեղեր շինուած էին լազարէ (lazaret) անունով. (որ ըսել է, տեղի՝ ուր ժամանախտով ապականեալ կամ այնպէս կարծուած երկիրներէ եկած նաւերը քառասուն օր զգուշութեան կը դրուին, մանաւանդ Միջերկրական ծովուն նաւահանգիստներն) և մինչև 19,000 կը համարուէր կըսեն ։ Թէ՝ որ-

չափ կը վախնային կըզգուշանային այս հիւանդութիւններէն. լաւ կը հասկցուի, եթէ միանգամ աչքէ անցուի Ղևտացւոց, ԺԳ. ԺԴ. գլուխները. (Ղևտ. Գլ. ԺԳ. 1. "Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի՝ և ընդ Ահարոնի և ասէ. Մարդոյ ուրուք եթէ լինիցի 'ի մորթ մարմնոյ իւրոյ նշան սպւոյ, (վէրք, վէրքի նշան) կամ պալար (բշտիկ, ուռեցք, դապարճըդ) կամ պաղպաջ, (փայլուն բշտիկ, քոս. փարլագ չիչ, դապարճըդ սիվիլճիգ.) և լինիցի 'ի մորթ մարմնոյ նորա արած (վէրքի արատ, բիծ. պէրէ, լէքէ) բորոտութեան, եկեսցէ առ Ահարոն քահանայ. կամ առ մի յորդւոց նորա քահանայից. Եւ տեսցէ քահանայն զարածն, 'ի մորթ մարմնոյ նորա, և կամ թէ մազ արածին 'ի սպիտակ դարձեալ իցէ, և տեսիլ արածին գնստագոյն (աւելի վար, ցած. ալչագ) իցէ քան զմորթ մարմնոյն, արած բարոտութեան է, և տեսցէ քահանայն և պղծեսցէ զնա։ Ապա թէ պաղպաջն սպիտակ իցէ 'ի մորթ մարմնոյ նորա, և գնստագոյն չիցէ տեսիլ նորա քան զմորթն, և մազն 'ի սպիտակ չիցէ դարձեալ, և ինքն շլագոյն (մթնագոյն) իցէ, զատուսցէ քահանայն զարածն զեօթն օր։ Եւ տեսցէ քահանայն յաւուրն եօթներորդի, եթէ կայցէ նոյնպէս արածն առաջի նորա, և չիցէ փոխեալ արածն 'ի մորթն, զատուսցէ զնա քահանայն այլ ևս աւուրս եօթն։ Եւ տեսցէ քահանայն յաւուրն եօթներորդի միւս անգամ. և ահա շլագոյն իցէ արածն, և յայլագոյն չիցէ փոխեալ 'ի մորթն, սրբեսցէ զնա քահանայն. զի նշան ինչ է այն. և լուասցէ զձորձս իւր և եղիցի սուրբ։ Ապա թէ շրջելով շրջեսցի նշանն 'ի մորթն, յետ տեսանելոյ զնա քահա-

նային և սրբելոյ, և երևեսցի միւսանգամ քահանային և տեսցէ քահանայն, և ահա՛ այլագունեալ իցէ նշանն ՚ի մորթն, պղծեսցէ զնա քահանայն՝ զի բորոտութիւն է։ Եւ արած բորոտութեան եթէ լինիցի մարդոյ, եկեսցէ առ Ահարոն քահանայ, եւ տեսցէ քահանայն, և ահա՛ պալար սպիտակ իցէ ՚ի մորթն. և մազն նորա ՚ի սպիտակ դարձեալ իցէ, և յառողջ և ՚ի կենդանի մարմնոյ ՚ի պալար, բորոտութիւն հնացեալ իցէ ՚ի մորթ մարմնոյ նորա, պղծեսցէ զնա քահանայն, և զատուսցէ զնա՝ զի պիղծ է։ Ապա թէ սփռելով սփռեսցի բորոտութիւնն ընդ մորթըն, և ծածկեսցէ բորոտութիւնն զամենայն մորթ խրանացն ՚ի գլխոյ մինչև ցոտս, ըստ ամենայն տեսոյ քահանային. Եւ տեսանիցէ քահանայն, և ահա՛ ծածկեաց բորոտութիւնն զամենայն մորթ մարմնոյն, սրբեսցէ քահանայն զարածն. քանզի, ամենայն ՚ի սպիտակ դարձաւ, սուրբ է. Եւ յորում աւուր երևեսցի ՚ի նմա մարմին կենդանի, պղծեսցի. Եւ տեսցէ քահանայն զմարմինն կենդանի, և պղծեսցէ զողջ մարմինն. և պիղծ լիցի՝ քանզի բորոտութիւն է. Ապա թէ անդրէն հաստատեսցի մարմինն ողջ, և դարձցի ՚ի սպիտակ, եկեսցէ առ քահանայն. և տեսցէ զնա քահանայն, և ահա՛ դարձեալ իցէ արածն նորա ՚ի սպիտակ, սրբեսցէ քահանայն զարածն՝ քանզի սուրբ է։ Եւ մարդոյ եթէ լինիցի ՚ի մորթ նորա կեղ եւ ողջասցի, եւ եղիցի ՚ի տեղի կեղոյն (խոց, ուռեցք. չըպան) սպիտակ փայլուն, լռնացեալ կամ կարմրացեալ, և երևեսցի քահանային. Եւ տեսանիցէ քահանայն, և ահա՛ տեսիլն խորագոյն քան զմոր-

թըն իցէ, և մազն 'ի սպիտակ դարձեալ իցէ, պըղծեսցէ զնա քահանայն. զի բորոտութիւն է ընդ կեղոյն բորբոքեալ։ Իսկ եթէ տեսանիցէ քահանայն՝ և չիցէ 'ի նմա մազ սպիտակ և ոչ խորագոյն իցէ քան զմարմինն, և ինքն շլագոյն իցէ, զատուսցէ զնա քահանայն զեօթն օր։ Եթէ սփռեսցի ընդ մորթն, պղծեսցէ զնա քահանայն. զի արած բորոտութեան ընդ կեղոյն բորբոքեցաւ. ապա եթէ անդէն 'ի տեղւոջ կացցէ փայլիւնն և ոչ տարածեսցի, սպի կեղոյն է. սըրբեսցէ զնա քահանայն։ Եւ մարմնոյ եթէ լինիցի 'ի մորթ նորա այրեցած հրոյ, և լինիցի ողջացեալ մորթ նորա յայրեցածէ անտի, և լինիցի տեղին այրեցածին փայլիւն կամ պաղպաջ սպիտակ, կամ կարմրացեալ կամ լռնացեալ. (ճերմըկցած, աղարմըշ.) եւ տեսանիցէ զնա քահանայն և ահա փոխեալ իցէ մազն 'ի սպիտակ 'ի փայլուն, և տեսիլ նորա գիջագոյն իցէ (աւելի վար, ցած) քան զմորթն, բորոտութիւն է ընդ այրեցածին բորբոքեալ. պղծեսցէ զնա քահանայն՝ զի արած բորոտութեան է։ Եւ եթէ տեսանիցէ քահանայն, և ահա՛ չիցէ 'ի նմա փայլիւն ինչ կամ մազ սպիտակ, և ոչ զնստագոյն քան զմորթըն, բայց շլագոյն իցէ, զատուսցէ զնա քահանայն զեօթն օր. համար 1—26 ևն. ևն։

Եւ թէ բորոտութենէ սրբուելու համար ինչ օրէնքներ կային հրէից համար, կարդա՛ նաև ԺԴ. գլուխ Ղևտացւոց։

Այս հիւանդութիւնը փոխանցիկ էր, և մարդ չէր համարձակէր բորոտին մօտենալ։ Բորոտն այն ժամանակի մարդոց թշուառագոյնն էր. զի այդ հիւանդութիւնը շատ ժամանակ կը տևէր, և

պարտաւորած էր նողկալի կեանք մ'անցունել, մարդոցմէ երեսի վրայ ձգուած. վասն զի, ամէն մարդ կը գարշէր իրմէ, ու անտանելի չարչարանքներով դատապարտեալ էր անարդ և տխուր ՚կերպով ապրիլ, բնաւ բժշկուելու յոյս չունենալով. քանզի, իսրայելի մէջ առած էր թէ բորոտութենէ Աստուած միայն կարող է սրբել ըզմարդ. ինչպէս յայտնի կերևի Դ. Թագաւորութեանց Ե.րորդ գլուխէն, երբ Ասորւոց թագաւորն իւր Նէեման զօրաց իշխանն՝ որ բորոտութիւն ունէր, իսրայելի թագաւորին ղրկեց, որ բժշկել տայ. իսրայելի թագաւորն ըսաւ. «Մի՞թէ ես Աստու՞ած իցեմ, սպանանել կամ կեցուցանել, զի առաքեաց առ իս առաքել (բժշկել) զայրդ 'ի բորոտութենէ իւրմէ». զոր վերջն Եղիսէ այրն Աստուծոյ Յորդանանու մէջ եօթն անգամ լուացուել տալով՝ Աստուծոյ զօրութեամբ բժշկեց.

Ահա այն բորոտն ալ գիտնալով այս բանը, մեծաւ հաւատով կը մօտենայ Յիսուսի, և կըսէ. Տէ՛ր, թէ որ ուզես, կրնաս զիս բժշկել. և կ'երկրպագէ անոր. բորոտը՝ Քրիստոսի կարող լինելուն սրտանց հաւատաց. և Յիսուս Աստուածապէս ձեռքն երկնցուց, կամի՛մ, ըսաւ, ըստ որում տեսայ ջերմեռանդութիւնդ, կամի՛մ սրբեաց. և շուտով բժշկուեցաւ. Աստուածապէս ըսի, վասն զի մարդիկ ձեռք չէին դպցուներ, չը պղծուելու համար, և ինչ բան որ բնութիւնը տակաւ առ տակաւ դեղերով կ'ընէր, եթէ բուժելի իսկ լինէր նորա հիւանդութիւնը, Յիսուս Աստուածապէս մէկ երկվայրկենի մէջ կընէր կը լմնցունէր, կամ՝ միայն դպչելով կամ

փառ մը միայն արտասանելով ։ Այսպէս, ամեն բան կարելի է անոր առջև . և մեր մարմնաւոր բորոտութենէ շատ աւելի ծանր՝ հոգևոր բորոտութիւնն իսկ կարող է սրբել, միայն թէ նոյն ջերմեռանդութիւնը, նոյն հաւատքը պէտք է ունենամք, և նոյն հոգիովը պէտք է երկրպագեմք անոր՝ որում կրկնի ծունր երկնաւորաց և երկրաւորաց ։

Բորոտը բժշկուելէն յետոյ, Քրիստոս պատուիրեց իրեն՝ որ մարդու չըսէ, վասն զի քահանայից և դպրաց և փարիսեցւոց նախանձը շարժելով կարելի է որ հալածէին զինքը և շատ հիւանդներ ըստ մարմնոյ և ըստ հոգւոյ անոր փրկարար հրաշքներէն և խրատներէն զուրկ մնային . այլ, գնա՛, ըսաւ . Երուսաղէմ, (Գալիլեայէն մինչև Երուսաղէմ 40—50 մղոն ճանապարհ) ցցուր քահանային ինքզինքդ, և քահանայից վըկայութիւնն ա՛ռ, որպէս զի, Իսրայելի ընկերութեան մէջ նորէն ընդունուիս . և Մովսիսի հրամայած պատարագը մատո՛, առանց ինձմէ բժշկուած լինելդ իմացունելու ։ (Տե՛ս Ղևտ. ԺԴ. 1, ինչպէս վերը տեսնուեցաւ ։) Եւ «Այս օրէն լիցի բորոտի՝ յաւուր յորում սրբեսցի . ածցի առ քահանայն, եւ ելցէ քահանայն արտաքոյ բանակին, և տեսցէ քահանայն, և ահա բժշկեալ իցէ աբած բորոտութեանն ՚ի բորոտէ անտի . հրաման տացէ քահանայն, և առցեն ՚ի սրբելոյն երկու հաւս կենդանիս սուրբս, և փայտ եղևնեայ և կարմիր մանեալ և զոպա . Եւ հրաման տացէ քահանայն, և սպանցեն զմի հաւն յանօթ խեցեղէն ՚ի վերայ ջրոյ կենդանւոյ ։ Եւ զհաւն կենդանի առցէ . . . ։ Եւ յաւուրն ութերորդի առցէ

*երկուս գառինս անարատս տարեւորս, և որոջ մի անարատ տարեւոր, և երիս տասանորդս նաշհւոյ 'ի զոհ իւղով զանգեալ, և ճաշակ մի իւղոյ . . .*
Ղեւտ. Գլ. ԺԴ. 1—11։

*Բայց բորոտը մարդու չըսելու պատուէրը չը պահեց, և ուր որ գնաց իւր վրայ եղած բժըշկութեան այս մեծ հրաշքը պատմեց ամենուն։*

Եւ ել լուր նորա ընդ ամենայն երկիրն Ասորւոց(1), և մատուցին առ նա զամենայն հիւանդս՝ որ նեղեալ էին 'ի պէս պէս ցաւս և 'ի տանջանս, և զդիւահարս (2) և զլուսնոտս (3) և զանդամալոյծս (4). և բժշկեաց զնոսա։ Եւ երթային զհետ նորա ժողովուրդք բազումք 'ի Գալիլեէ և 'ի Դեկապոլեայ (5), և յԵրուսաղեմէ և 'ի Հրէաստանէ և յայնկոյս

(1) Երկիր Ասորւոց՝ Պաղեստինի հիւսիսային եւ Կիլիկիոյ հարաւային կողմը ինկած երկիրն է, որ Քրիստոսի ատեն այսպէս կըկոչուէր։ Այս երկիրն աւելի ընդարձակօրէն Արամ ալ կըսուի, որ Սեմին կրտսեր որդւոյն անունովն է, եւ որ Եփրատէն մինչեւ Միջերկրական՝ շատ ժողովուրդներու հայր եղած է։

(2) Դիւահար. դեւերն այն ատեններ շատ զօրութիւն կըբանեցնէին մարդոց վրայ, որոց մարմնոյն վրայ տիրած էին եւ անոնց կեանքը տաղտապալից ըրած էին. Թերեւս վերջին ճգնաժամին հասած էր եւ որհասական՝ հզօրագոյնս կը յարձակէին մարդոց վըրայ եւ զանազան հիւանդութիւններ կըբերէին մարդոց։

(3) Լուսնոտ. ասոր ըսուած հիւանդութեան նման ախտ մը՝ որ կըկարծուէր թէ լուսնին նուազելովը կամ լրանալովը յառաջ կուգայ։

(4) Անդամալոյծ. կաթուածով բոլոր մարմինը կամ մարմնոյն մէկ մասը կամ մէկ կողմը չըբանող հիւանդ, կամ միայն ձեռքը՝ որուն գօսացեալ ալ կըսուի։

(5) Դեկապոլիս. (յունարէն Δεκάπολις տասն քաղաքներու ըսել է.) յայնկոյս Յորդանանու արեւելեան կողմը Մանասէի կէս ցեղին հողին մէջ տասն քաղաքէ բաղկացեալ գաւառ մ'էր. որոց անուններն են, Կեսարիա Փիլիպպեայ, Կափառնաում, Ասոր, Բեթսայիդա, Կաթէս Նեփթաղիմայ, Յոտապատա որ է Ոփեր, Նեփ-

Յորդանանու, և բժշկեաց զնոսա. Մատթ. Դ. 24—25։ ... Մինչ ոչ ևս կարող լինել նմա յայտնապէս 'ի քաղաք մտանել, այլ արտաքոյ յանապատ տեղիս էր. Մարկ. Ա. 45։ Եւ կայր յաղօթս։ Ղուկ. Ե. 16։

*Յիսուսի սքանչելեաց և հրաշից լուրն Ասորւոց ժողովրդեան մէջ կը տարածուի, և ամեն կողմէ բազմաթիւ հիւանդներ լուսնոտ և անդամալոյծներ կուգան և զամենքը կը բժշկէ, և այնչափ բազմութիւն եռևէն կերթայ որ Յովհաննէսի «նմա պարտ է աճել և ինձ մեղմանալ» խօսքը կը կատարուի։*

Բ. Վարդապետէ 'ի Նաւէ անտի զժողովուրդն

Եւ եղեւ 'ի խռնել զնովաւ ժողովրդեանն և լսել զբանն Աստուծոյ, և ինքն կայր առ ծովակին Գեննեսարեթայ։ Եւ ետես երկուս նաւս՝ զի կային առ ծովակին, և ձկնորսքն ելեալ 'ի նոցանէ՝ լուանային զգործիսն։ Ել նա 'ի մի նաւացն՝ որ էր Սիմովնի, և աղաչեաց զնա սակաւիկ մի վարել 'ի ներքոյ 'ի ցամաքէն. նստաւ՝ և ուսուցանէր 'ի նաւէ անտի զժողովուրդսն. Ղուկ. Ե. 1—3։

*Երբոր Յիսուս տեսաւ որ ժողովուրդն իր քարոզութիւնները լսելու համար շուրջն առած են Գեննեսարեթայ (1) ծովակին մօտ, հոն գըտ-*

Թաղեմ, Տիբերիա, Քորազին, և Բեթսան որ է Սկիւթուպոլիս։ Յիսուս այս գաւառին և իր քաղաքաց մէջ շատ կըշրջէր, կըքարոզէր և կըբժշկէր. (Տե՛ս Մտթ. Դ. 23. Մրկ. Ե. 20. Է. 31։)

(1) Գեննեսարեթ. կընշանակէ պարտէզ իշխանի կամ պատերազմութիւն իշխանի, եւ Նեփթաղիմայ ցեղին գաւառի անունն է. Մտթ. ԺԴ. 34։ Կ'ըսուի նաև Գեննեսարեթ երկիր. Մրկ. Զ. 53։ Այս անունով կըսուի նաև մօտը գտնուած ծովակին ալ, ծովակ Գեննեսարեթայ. Ղուկ. Ե. 1։ Այս ծովակը կըսուի նաև ծով Գալիլեացւոց, ծով Տիբերիայ. տե՛ս գործոյս Է. գլխոյ չոր-

նուած երկու նաւերէն մէկուն մէջ մտաւ՝ որն որ Սիմոնինն էր, և աղաչեց զինքը՝ որ քիչ մը նաւը ցամաքէն հեռացունէ. աս որ եղաւ, Յիսուս սկսաւ նաւին մէջէն ժողովուրդն ուսուցանելու :

## Գ. Հրաշալի որս ձկանց

Եւ իբրեւ լռեաց 'ի խօսիցն, ասէ ցՍիմոն. Խաղացո՛ 'ի խորն, և արկէ՛ք զկարթիս ձեր յորս։ Պատասխանի ետ Սիմոն և ասէ ցնա. Վա՛րդապետ, զամենայն գիշերս աշխատ եղեաք՝ և ոչինչ կալաք. Բայց վասն քո բանիդ՝ արկցուք ըզգործիսս : Զայս իբրեւ արարին՝ փակեցին 'ի ներքս բազմութիւն ձկանց յոյժ, մինչեւ պատառէին ուռկանք նոցա. և ականարկէին ընկերացն 'ի միւս նաւն՝ գալ օգնել նոցա. և եկին, և լցին երկոքեան նաւքն՝ մինչեւ մերձ ընկղմել նոցա. Ղուկ. Ե. 4—7 :

Գեննեսարեթայ ծովակին մէջ՝ Սիմոնի նաւակէն ըրած քարոզութիւնն երբոր լմնցուց Յիսուս, հրամայեց Սիմոնի որ ուռկանները ծովը ձգեն որսալու. Սիմոն՝ բոլոր գիշերն աշխատելն ու բան մը չը բռնելն մէջ բերելէն յետոյ՝ Յիսուսի խօսքը տեղը տանելու համար կը հնազանդի և գործիքները կը ձգեն 'ի ծով. մէյ մ'ալ ինչ կը

բուրդ մասին ծանօթութեանց մէջ, ինչպէս յիշուած է Մատթ. Դ. 18. Յովհ. ԻԱ. 1: Կ'ըսուի նաեւ ծով Գեննեսարեթայ. Ա. Մակ. ԺԱ. 67: Իրեն մօտ սահմանն է, արեւելքի կողմէն՝ Մանասէի կէս ցեղի երկիրն, հիւսիսէն՝ Նեփթաղիմի ցեղին մէկ մաս երկիրն, արեւմուտքէն. Զաբուղոնի ցեղին երկիրն, հարաւէն. Իսաքարայ ցեղին մէկ մասը : Յորդանան գետն ալ սորա մէջ տեղէն անցնելով հիւսիսէն դէպ 'ի հարաւ՝ մեռեալ ծովը կը թափի : Այս ծովակին երկայնութեան տարածութիւնն է՝ 21 մղոն. լայնութեան տարածութիւնն է 10 մղոն : Ջուրն ալ քաղցր եւ ըմպելի :

նայիս, բռնուած ձկանց բազմութենէն ուռկան-ները կը պատռռտին և միւս նաւէն օգնութիւն կը փնտռեն որ գան իրենց օգնեն գործիքները վեր հանելու համար. կուգան և երկու նաւերն այնչափ լեցուեցան որ պիտի ընկղմէին:

Իբրև ետես Սիմոն Պետրոս՝ անկաւ առ ծունկսն Յիսուսի և ասէ. 'ի բաց գնա՛ յինէն Տէ՛ր, զի այր մեղաւոր եմ ես: Քանզի ահ պատեաց զնա և զամենեսեան որ ընդ նմայն էին՝ վասն որսոյ ձկանցն զոր ըմբռնեցին: Նոյնպէս և զՅակովբոս և զՅովհաննէս՝ զորդիսն Զեբեդեայ, որ էին որսակիցք Սիմոնի: Եւ ասէ ցՍիմոն Յիսուս. Մի՛ երկնչիր, յայսմ հետէ զմարդիկ որսայցես 'ի կեանս: Եւ հանեալ զնաւսն 'ի ցամաք, թողին զամենայն, և գնացին զհետ նորա. Ղուկ. Ե. 8—11:

Սիմոն Պետրոս՝ երբոր գիշերուան ունայն և անպտուղ աշխատութիւնը կը յիշէ և այս անակնունելի սքանչելիքը կը տեսնէ՝ որ մինչև ուռկանները պատռելու չափ անթիւ ձկներով կը լեցուին և ուրիշ նաւ իրենց օգնութեան կը ժամանէ ուռկանները վեր վերցնելու՝ կը հիանայ, ինչպէս նաև ընկերներն Յակոբոս և Յովհաննէս, և երկիւղալից կիյնայ նորա ծնկան վրայ, և կը խնդրէ որ իրեն պէս մեղաւորէ մը հեռի երթայ:

Բայց Յիսուս կը քաջալերէ զՊետրոս և մարդիկներ 'ի կեանս որսալու առաքելութեան պաշտօնը կուտայ իրեն ինչպէս նաև միւս առաքելոց:

Ասկէց վերջը նաւը ցամաք հանելով, ամեն բան թողուցին և ալ այնուհետև Յիսուսին հետևեցան իրմէն ոչ ևս բաժնուելով, վասն զի անկէց յառաջ կանուխ՝ միանգամ Սիմոն Պետրոս և

Անդրէաս, Յակոբոս և Յովհաննէս իրենց ուռ-կանները թողուցած ետեւէն գնացած էին, բայց դարձեալ ձկնորսութեան արհեստը կը շարունա-կէին, ուստի և հետեւաբար ամեն օր հետը չէին պտըտէր. այս անգամ ամեն բան կը թողուն և ալ իրմէն չեն մեկնիր.

## Դ. Բժշկութիւն անդամալուծին 'ի Կափառնաում

Եւ եմուտ դարձեալ 'ի Կափառնաում յետ աւուրց. Մարկ. Բ. 1: Եւ եղեւ 'ի միում աւուրց՝ և ինքն ուսուցանէր, և փարիսեցիքն և օրինաց վարդապետք նստէին. որ ժողովեալ էին յամենայն գեղջից Գալիլեացւոց՝ և Հրէաստանէ և Երուսաղէմէ. և զօրութիւն Տեառն էր 'ի բժշկել զնոսա. Ղուկ. Ե. 17: (Եւ իբրեւ) լուր եղեւ եթէ 'ի տան է, ժողովեցան բազումք, մինչեւ տեղի ևս ո'չ լինել և ո'չ առ դրանն, և խօսէր նոցա զբանն. Մարկ. Բ. 2:

*Յիսուս դարձեալ Կափառնաում եկաւ քանի մը օրէն:*

*Աւուրց առաջնոյն, այսինքն՝ միաշաբաթին օրը, կամ այն օրերը փարիսեցւոց և օրինաց վար-դապետներուն քարոզութիւն կընէր կը վարդա-պետէր. հոն կային նաև շատեր, որոնք որ Գա-լիլեայէն, Հրէաստանէն և Երուսաղեմէն եկած էին լսելու և բժշկուելու և իրենց հաւատոցն համաձայն Տէրոջը զօրութեամբ կը բժշկուէին:*

*Եւ երբոր լսեցին թէ տունն է, այնչափ բազ-մութիւնը լեցուեցաւ որ դրան մէջ ալ տեղ չէր մնացած. և Յիսուս նոցա Աստուծոյ արքայու-թեան վրայով կը խօսէր:*

Եւ ահա արք բերէին մահճօք այր մի՝ որ էր անդամալո

լոյծ, և խնդրէին զնա մուծանել 'ի ներքս՝ և դնել առաջի նորա: Եւ իբրև ո՛չ գտանէին թէ ընդ ո՛ր մուծանիցեն զնա 'ի ներքս վասն ամբոխին, ելին 'ի տանիս. Ղուկ. Ե.18-19: Քակեցին յարկն՝ ուր էր Յիսուս, և քակեալ զաստապատն իջուցին. Մարկ. Բ. 4: (Զանդամալոյծն) մահճօքն հանդերձ 'ի մէջ առաջի Յիսուսի. Ղուկ. Ե. 19: Եւ տեսեալ Յիսուսի զհաւատս նոցա, ասէ ցանդամալոյծն. որդեա՛կ, թողեալ լիցին քեզ մեղք քո: Մարկ. Բ. 5:

*Մէյ մ'ալ անդամալոյծ մը կը բերեն մահճով չորս ծայրերէն բռնած, և կուզէին որ տունէն ներս մտցունեն և Յիսուսի առջև հանեն. բայց տեսնելով որ բազմութենէն չեն կրնար ներս մըտնել, տանիքն ելան. (Թերևս տան մէկ կողմը լերան ստորոտ ըլլալով, տանիքը՝ մէկ կողմէն լերան ստորոտին հաւասար անցուդարձ ճամբայ մ'էր, ուսկից կրնային տանիքն ելնել. յիշելու է նաև որ այն ատենուան տուներուն վրայ լղած հող էր, ինչպէս նաև էր և է իսկ ցայժմ Հայաստանի ներսի գաւառներուն մէջ:) Յիսուսի եղած տեղին վրայի յարկը քակեցին և առաստաղը բանալով անդամալոյծը մահիճով Յիսուսի առջևն իջուցին: Յիսուս՝ անդամալոյծը բերողներուն հաւատոյ մեծութիւնը տեսնելով, որդեա՛կ, ըսաւ, թողութիւն ըլլայ մեղացդ, որով հասկըցուց թէ իր հիւանդութեան պատճառն ըրած մեղքերն էին:*

Սկսան խորհել դպիրքն և Փարիսեցիքն, որք անդ նըստէին. Մարկ. Բ. 6: Եւ ասեն. ո՛ է սա՝ որ խօսի զհայհոյութիւնս, ո՞վ կարէ թողուլ զմեղս, բայց միայն Աստուած: Իբրև գիտաց Յիսուս. Ղուկ. Ս. 22. Յոգի իւր. Մարկ. Բ. 8. Զխորհուրդս նոցա, պատասխանի ետ և ասէ ցնոսա.

Ղուկ. Ե. 22 ։ Ընդէ՞ր խորհիք դուք զայդ ՚ի սիրտս ձեր ․ Մատթ. Թ. 4 ։ Զի՞նչ դիւրագոյն է ․ Ղուկ. Ե. 23 ։ Ասել ցանդամալուծն, թողեա՞լ լիցին քեզ մեղք քո ․ Մարկ. Բ. 9 ։ Եթէ ասել, արի՛ և գնա՛ ․ Ղուկ. Ե. 23 ։ Այլ զի գիտասջիք եթէ իշխանութիւն ունի որդի մարդոյ յերկրի թողուլ զմեղս ․ ասէ ցանդամալուծն ․ քեզ ասեմ՝ արի՛ ա՛ռ ըզմահիճս քո՝ և ե՛րթ ՚ի տուն քո ։ Եւ նա ժամայն յարուցեալ առաջի ամենեցուն՝ առ զիւրն յորոյ վերայ անկեալ դնէր, գնաց ՚ի տուն իւր, և փառաւոր առնէր զԱստուած ։ Զարմանք կալան զամենեսեան ․ Ղուկ. Ե. 24—26 ։ Եւ փառաւոր առնէին զԱստուած՝ զտուիչն այնպիսի իշխանութեան մարդկան ․ Մատթ. Թ. 8 ։ Լի եղեն ահիւ և ասեն, (թէ) տեսաք այսօր նոր նշան ․ Ղուկ. Ե. 26 ։ (Եւ) թէ այսպիսի ինչ երբէք ո՛չ տեսաք ․ Մարկ. Բ. 12 ․

*Յիսուս երբոր անդամալուծին հիւանդութեան պատճառն եղող մեղքն Աստուածպէս ներեց, դպիրներն ու փարիսեցիք մարդկօրէն մտածելով և զՅիսուս մարդ նկատելով՝ կը հայհոյէ աս մարդն ըսին ․ վասն զի Աստուած միայն կարող է մարդոց մեղքերուն թողութիւն տալ և աս՝ մեզ նման մարդ՝ մեղաց թողութիւն տալ կը համարձակի ․*

*Յիսուս ոչ յայտնութեանց միջնորդութեամբ, ինչպէս մարգարէքն, այլ ինքնին յոգի իւր իմացաւ անոնց այս խորհուրդն, և յանդիմանեց զիրենք և սրտով խորհածնին երեսնին տալով՝ հասկցուց թէ Աստուած է ինք, որ ամենուն և իրենց երիկամունքը կը քննէ, կը տեսնէ, և անոնց ըսելուն վրայ թէ "ո՞վ կարէ թողուլ զմեղս, բայց միայն Աստուած ․․" կը հարցունէ թէ իրենց համար ո՞րն է դիւրին երեւցածը, մեղաց թողութիւն տա՞լը, չէ նէ անդամալոյծն իսկոյն առանց*

դեղատուութեան բժշկելը ։ Իմացունելու համար թէ իրենց դժուար և անհնարին կարծածնին՝ իրենց համար բան մը չեն և թէ հոգւոյ և մարմնոյ առ հասարակ կիշխէ Աստուած, մեղքը քաւելէն վերջն՝ որ անդամալոյծ ըլլալուն պատճառն էր, անմիջապէս մարմինն առողջացուց և հրամայեց որ մահիճը կռռնակն առնէ տուն երթայ ։ Այս որ տեսան՝ սոսկացին, և թէպէտ սքանչելիքն Աստուածային ըլլալուն վրայ չը տարակուսեցան, բայց սքանչելագործ Յիսուսը՝ յԱստուծոյ սիրեալ մէկը միայն դաւանեցին, որուն ձեռքովն այսպիսի մեծամեծ նշաններ կըլլան կըսէին, և խոստովանեցան թէ այսպիսի սքանչելիք բնաւ տեսած չէին, ուստի և փառք կուտային Աստուծոյ ։



# ԳԼՈՒԽ Թ.

ԿՈՉՈՒՄՆ ՄԱՏԹԷԻ .—ՓԱՐԻՍԵՑԻՈՑՆ ՏՐՏՈՒՆՋ .—ԽՆԴԻՐ ԸՋԳՍ-ՀՈՑ .—ՑԱՑՐՈՍ .—ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ՏԵՌԱՏԵՍԻՆ .—ՑԱՐՈՒԹԻՒՆ ԴՍՏԵՐՆ ՑԱՑՐՈՍԻ .—ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԵՐԿՈՒՑ ԿՈՒՐԱՑ , ԵՒ ՀԱՄԵՐՆ ԴԻՒԱՀԱՐԻ .



## Ա. Կոչումն Մատթէի

Եւ ել դարձեալ ՚ի ծովեզրն , և ամենայն ժողովուրդն գայր առ նա , և ուսուցանէր զնոսա . Մարկ. Բ. 13 ։ Եւ անցեալ ընդ այն Յիսուսի՝ ետես այր մի, զի նստէր ՚ի մաքսաւորութեան՝ Մատթէոս անուն . Մատթ. Թ. 9 ։ (Որ է) Ղևի Ալփեայ . Մարկ. Բ. 14 ։ Եւ ասէ ցնա . Ե՛կ զհետ իմ. Մատթ. Թ. 9 . Ղուկ. Ե. 27։ Եւ թողեալ զամենայն , յարեաւ և գնաց զհետ նորա ։ Եւ արար ընդունելութիւն մեծ նմա Ղևի ՚ի տան իւրում . Ղուկ. Ե. 28—29 ։

*Դարձեալ ծովեզերքն ելաւ Յիսուս և իրեն եկող ժողովրդեան քարոզութիւններ կ'ընէր . քիչ մը անդին կը տեսնէ Մատթէոս (1) մաքսաւորն իւր պաշտօնին մէջ և յաշակերտութիւն կը հրաւիրէ . նա ալ ցնծալով, ամեն ունեցածը կը թո-*

(1) *Մատթէոս-Քրիստոսի երկոտասան աշակերտներէն մէկն էր* . Մատթ. Ժ. 3. Մարկ. Գ. 18: *Կ'ըսուի նաև Ղևի և Ղևի Ալփեայ* . Մարկ. Բ. 14. Ղուկ. Ե. 27. *վասնզի Ալփէոսի որդին էր , Աւետարանը գրողներուն առաջինն այս մաքսաւորն եղաւ* ։

դու և խնդութենէն զՅիսուս ճաշի կը հրաւի-
րէ և շատ սիրով կ'ընդունի ։

### Բ. Փարիսեցւոցն տրտունջ

Եւ եղեւ իբրեւ բազմեալ էր ՚ի տան , և ահա բա-
զում մաքսաւորք և մեղաւորք եկեալ և բազմեալ էին ընդ Յի-
սուսի և ընդ աշակերտս նորա ։ Իբրեւ տեսին · Մատթ. Թ.
10—11 · Փարիսեցիքն և դպիրք՝ տրտնջէին . . . . զնմանէ
առ աշակերտսն նորա և ասէին. Ղուկ. Ե. 30 ։ Ընդէ՞ր ընդ
մաքսաւորս և ընդ մեղաւորս ուտէ վարդապետն ձեր · Մտթ.
Թ. 11 ։ (Եւ յետ) զի՞ է , զի · Մարկ. Բ. 16 · Ընդ մաք-
սաւորս և ընդ մեղաւորս ուտէք և ըմպէք. Ղուկ. Ե. 30։
Իսկ Յիսուս իբրեւ լուաւ՝ ասէ ցնոսա · ո՛չ է պէտս բժիշկ
հողջոց՝ այլ հիւանդաց ։ Երթա՛յք , ուսարո՛ւք զի՞նչ է ·
ողորմութիւն կամիմ , և ո՛չ զոհ · զի ո՛չ եկի . կոչել զար-
դարս՝ այլ զմեղաւորս · Մատթ. Թ. 12—13 ։

*Կեղծաւոր դպիրք և փարիսեցիք , մաքսաւո-
րաց կամ մեղաւորաց հետ Յիսուսի կերակուր ու-
տելը կը քամահէին · Յիսուս որ հոս աւելի ողոր-
մութիւնն Աստուծոյ սիրելի լինելը կը ցցնէ Ովսէէն
առնելով · Գլ. Զ. 6 · Եւ մեղաւորաց ողորմելու
համար , մեղաւորները կոչելու համար եկած ըլ-
լալը կ'իմացնէ ։ Հասկցնելով միանգամայն որ որ-
չափ մաքսաւորները դէշ կը ճանչցուին իրենց
մէջ , ինք անոնց համար եկած է զիրենք ուղղու-
թեան բերելու համար · և կը յաւելցունէ թէ ա-
նոնք հոգևոր հիւանդներ են · և Աստուածոր-
դւոյ մը տալիք աւետարանական դեղերուն կը կա-
րօտին · ինչպէս որ մարմնաւոր հիւանդներ ալ
կարօտ են մարմնաւոր բժիշկներու ·*

## Գ. Խնդիր զպահոց

Եւ էին աշակերտքն Յովհաննու և փարիսեցիքն 'ի պահս. Մարկ. Բ. 18։ (Յայնժամ) մատեան առ նա աշակերտքն Յովհաննու՝ և ասեն. ընդէ՞ր մեք և փարիսեցիքն պահեմք յաճախ, և քո աշակերտքդ ո՛չ պահեն. Մատթ. Թ. 14։ (Եւ այլքն ասէին). ընդէ՞ր աշակերտքն Յովհաննու պահեն ստէպ և խնդրուածս առնեն, նոյնպէս և փարիսեցւոցն, և քոյքդ ուտեն և ըմպեն. Ղուկ. Ե. 33։

*Այս միջոցներուն Յովհաննէսի աշակերտներն և փարիսեցիք պահք կը պահէին մարմիննին ճընշելու և ապաշխարելու համար։*

*Պահոց հաստատութիւնը կերևի թէ փարիսեցիք յօրինած ունէին. վասն զի, փարիսեցին՝ մաքսաւորին հետ տաճարին մէջ աղօթելու ատենը մէջ կը պարծենայ որ երկիցս 'ի շաբաթու պահք կը պահէ։*

*Իսկ աշակերտք Յովհաննու շատ հաւանական էր որ իրենց խստակրօն, առաքինի, սուրբ և ճգնազգեաց վարդապետին հետևելով կը պահէին։*

*Ահա՛, այս երկու կարգ պահողներն ալ ըզՔրիստոս բամբասել կը թուին. Յովհաննու աշակերտներն, իրենց վարդապետին վրայ անձնացեալ, չեն կրնար զՔրիստոս նախապատիւ համարել և կը մծանենան իրեն և կըսեն. ինչո՞ւ մենք և փարիսեցիները յաճախ պահք կը պահեմք և քու աշակերտքդ չեն պահեր. ըսել կուզեն թէ կամ մեր պահքը աւելորդ է, կամ նոցա հրամանն ըլլալու է որ իրենք ալ պահեն։*

*Փարիսեցիներն ալ կուգան Յիսուսի, ինչո՞ւ կըսեն քու աշակերտներդ առանց պահք պահե-*

րու՝ կ'ուտեն կը խմեն, մինչդեռ Յովհաննու ա-
շակերտներն և փարիսեցւոցս աշակերտք յաճախ
պահք կը բռնեն և պահեցողութեան մէջ Աս-
տուծմէ զանազան խնդրուածքներ կընեն.

Ասէ ցնոսա Յիսուս. միթէ մարթ ինչ իցէ մանկանց ա-
ռագաստի. Մատթ. Թ. 15. Պահել. Մարկ. Բ. 19. (Եւ)
սուգ առնուլ՝ մինչ փեսայն ընդ նոսա իցէ. այլ եկեսցեն
աւուրք՝ յորժամ բարձցի ՚ի նոցանէ փեսայն. Մատթ. Թ. 15.
Եւ ապա պահեսցեն յաւուրսն յայնոսիկ. Ղուկ. Ե. 35.

Յիսուս՝ Յովհաննու աշակերտաց և փարիսե-
ցւոց պահոց նկատմամբ ըրած հարցմանց պա-
տասխան տալով կըսէ. պահքն, մանաւանդ փա-
րիսեցւոցը պահանջած պահքը՝ սգոյ և տրտմու-
թեան նշան է, այնպէս որ իմ աշակերտացս բը-
նաւ այդպիսի պահք պահել վայելուչ և պատ-
կանաւոր չէ, քանի որ ես հարսին եկե-
ղեցւոյ փեսայն եմ և իրենց մէջ կը մնամ. անոնք
առագաստին զաւկըներն են, (որ ըստ եբրայա-
կան ոճոյ՝ փեսայէն սենեակը մտնողն եղողն,
կամ անոր հետ կենակցող բարեկամներն ըսել է)
պէտք է այժմ իբրև ՚ի յառագաստ հարսանեաց,
ցնծան և հրճուին. իսկ երբ իրենց մէջէն զատուիմ
և յերկինս առ Հայր համբառնամ, յայնժամ
փեսայն մէջերնին չունենալով ՚ի հարկէ պիտի
սգան, տրտմին և պիտի պահեն.

Ասաց և առակ մի առ նոսա, թէ ո՛չ ոք արկանէ ՚ի նոր-
հանդերձէ ՚ի հներոյ հնացելոյ ձորձոյ. Ղուկ. Ե. 36. Ապա
թէ ոչ, առնու լրութիւն իւրով նորն ՚ի հնոյ անտի, և ա-
ռաւել ևս պատառուած լինի. Մարկ. Բ. 21. Եւ ընդ հնոյն
չմիաբանի կապերտն որ ՚ի նորոյն. Ղուկ. Ե. 36.

Յիսուս՝ պահոց խնդրոյն առթիւ իւր ամենա-
մեծ սիրոյն և զինքը սիրողներուն հետ սերտ մը-
տերմութեան ապացոյց տալու համար, ինքզինք
փեսայ, եկեղեցին հարսն, և իւր առաքեալնե-
րըն ու աշակերտներն և բոլոր քրիստոնեայք՝
մանկունք առագաստի անուանելէն վերջ՝ կը յա-
ւելու նաև սա առակն ալ, թէ նոր լաթի մը
կտոր՝ հին լաթի մը վրայ կարկտան դնել աղէկ
չ'ըլլար, եթէ ոչ, նորն հին լաթին վրայ ծան-
րանալով անոր հնութիւնը աւելի կը գէշնայ և
պատառուածքը կը մեծնայ. որով կը հասկցնէ
Քրիստոս թէ ինչպէս նոր կտոր մը հին կտաւի
վրայ կարկտելն անյարմար է, այսպէս նաև ան-
յարմար է՝ եթէ աշակերտացս՝ իրենց տկարու-
թեան հնութեան մէջ պահոց նոր օրէնքներ
դնեմ և զիրենք ծանրաբեռնելով խրտչեցնեմ,
մանաւանդ թէ ժամանակն եկած չէ, երբոր ես
վերանամ, և Ս. Հոգին գայ իրենց վրայ հանգ-
չի, այն ժամանակ հոգևորապէս նորոգուելով,
նոր ծոմի, նոր պահքի, նոր սգոյ և ապաշ-
խարութեան օրէնքներուն ալ կընտելանան և կըր-
նան հանդուրժել։

Եւ ո՛չ ոք արկանէ գինի նոր 'ի տիկս հինս. ապա թէ ո՛չ պայթեցուցանէ գինին նոր զտիկսն հինս. գինին հեղու, և տիկքն կորնչին. Այլ գինի նոր 'ի տիկս նորս արկանելի է, և երկոքեան պահին։ Եւ ո՛չ ոք ըմպէ զհինն՝ և կամիցի զնորն. զի ասէ՝ թէ հինն քաղցրագոյն է. Ղուկ. Ե. 37—39։

Այս երրորդ այլաբանական խօսքովս ալ՝ թէ
նոր գինին հին տկի մէջ չեն դներ, զի նոր գի-
նւոյ եռացումին հին տիկը չդիմանալովն՝ գինին
կը վաթի և տիկը կը կորսուի. հապա նոր գի-

ներն նոր տկի մէջ կը դնեն, որպէս զի երկուքն ալ չըլ փտտուին. Նոյնպէս թէ մարդ հին գինի խմելէն վերջ, վասն զի քաղցր կըլլայ, նորը խըմելու չըլ բաղձար՝ կը հասկցնէ թէ, իր օրէնքները նոր գինւոյ պէս զօրաւոր ըլլալով, չուզէր առժամս աշակերտաց վրայ ծանրացունել, որք իրենց անկատարութեան համար հին տկերու կը նմանէին, այլ կըսպասեր մինչ Պէնտէկօստէին օրն, որպէս զի այն օր Ս. Հոգւոյն զօրութեամբ նորոգուէին և զօրանան և ապա նոր օրէնքներն իրենց հրամայեմ պահել, որով թէ իմ օրէնքներս (նոր գինին) կը պահուին և թէ աշակերտներս (այսինքն նորոգ չինուած տիկերն) առանց վըտանգելու, պահոց, մշտաց, չարչարանաց և տապաշխարութեանց և զանազան փորձութեանց կրնան ժուժկալել.

## Դ. Յայրոս

Մինչդեռ նա զայն խօսէր ընդ նոսա. Մատթ. Թ. 18։ Եկն այր մի որոյ անուն էր Յայրոս. և նա էր իշխան ժողովրդեանն։ (Եւ) դուստր միամօր էր նորա, ամաց իբրև երկոտասանից. Ղուկ. Ը. 41—42։ Իբրև եսես զնա. Մարկ. Ե. 22. Երկիրպագանէր նմա. Մատթ. Թ. 18։ Աղաչէր զնա յոյժ և ասէր. (Տէր) Մարկ. Ե. 23. Դուստր իմ. Մատթ. Թ. 18. Մերձ է 'ի մահ. Մարկ. Ե. 23։ Արդ եւս վախճանեցաւ. այլ եկեալ դիցես զձեռն քո 'ի վերայ նորա. Մատթ. Թ. 18. Որպէս զի ապրեսցի և կեցցէ. Մարկ. Ե. 23։ Յարեաւ Յիսուս և գնաց զհետ նորա աշակերտօքն հանդերձ. Մատթ. Թ. 19։ Երթայր և ժողովուրդ բազում զհետ նորա, և նեղէին զնա. Մարկ. Ե. 24։

Պահոց նկատմամբ Յովհաննու աշակերտաց

Եւ փարիսեցւոց ըրած հարցումներուն պատասխանելու ատեն, մէյ մ'ալ Յայրոս հրէից ժողովրդապետն եկաւ և երկրպագելով աղաչեց որ գայ իր մեռնելու մօտ կամ մեռած երկոտասանամեայ մէկ հատիկ աղջիկն ապրեցնէ ձեռք դընելով վրան : Հանեցաւ Յիսուս, և իր աշակերտներովը Յայրոսի ետևէն գնաց . Ժողովուրդըն ալ բազմութեամբ ետևնուն կուգար, այնպէս որ Յիսուս սկսաւ նեղուիլ բազմութենէն :

## Ե. Բժշկութիւն տեռատեսին

Եւ կին մի էր ՚ի տեւողութեան արեան երկոտասան ամ : Եւ յոյժ վշտացեալ ՚ի բազում բժշկաց, և ծախեալ զինչս իւր զամենայն՝ և չէր ինչ օգտեալ, այլ եւս առաւել աղայրացեալ : Իբրեւ լուաւ զՅիսուսէ՝ եկն ՚ի մէջ ամբոխին յետոյ . Մարկ. Ե. 25—27 . (Եւ) մերձեցաւ ՚ի դրօշակ հանդերձի նորա . Մատթ. Թ. 20 : Զանզի (խորհէր) ասէր ՚ի միտս, թէ միայն մերձեցայց ՚ի հանդերձս նորա փրկեցայց . Մարկ. Ե. 28 : Եւ վաղվաղակի ցամաքեցաւ աղբիւր արեան նորա, եւ գիտաց ՚ի մարմնի իւր թէ բժշկեցաւ ՚ի տանջանացն : Եւ անդէն վաղվաղակի գիտաց Յիսուս յանձն իւր զզօրութիւնն որ ել ՚ի նմանէ . դարձաւ յամբոխն եւ ասէ . ո՞վ մերձեցաւ ՚ի հանդերձս իմ . Մարկ. Ե. 29—30 .

Ճամբուն վրայ տեռատես կնիկ մը որ 12 տարի նոյն ախտով բռնուած և շատ ստակ ծախսած ըլլալով բժիշկներէն օգուտ մը չէր տեսած, մանաւանդ թէ աւելի վնասուած էր, երբոր լըսեց թէ Յիսուս կանցնի, բազմութեան մէջ մըտաւ, Յիսուսի լաթերուն դպաւ, միտքը դրած ըլլալով որ եթէ միայն լաթերուն դպնայ՝ իր ցաւերէն բոլորովին կազատուի . և իրաւցնէ, կը-

Երբ ամենամեծ հաւատքով Քրիստոսի հանդեր-ձին միայն դպչելով գաղտնի՝ բժշկութիւնն ալ գողցաւ. վասն զի, իսկոյն արիւնը վազելէն դադրեցաւ, և ինչպէս ինք կինն իսպառ բժշկուած ըլլալն իմացաւ, այնպէս նաև Յիսուս հասկցաւ թէ իր հրաշից զօրութիւնը բազմութեան մէ-ջէն միայն ներգործեց 'ի բժշկութիւն. և թէպէտ ամենագէտ Աստուածը Յիսուս Քրիստոս գիտէր թէ ո՞վ էր այն տառապեալ կինն՝ որ 'ի ժամուն իսկ կը բժշկուէր, բայց որպէս զի կնոջ հաւատ-քը կատարելագործէ և խրախուսէ զինքը, հոն խռնող ժողովրդեան իր աստուածութեան ա-պացոյց տայ և միանգամայն վայրիկ մը հոն ըղ-բաղելով Յայրոսի դստեր մահուան սեղի տայ, որպէս զի մեռածը յարուցանելով յարութեան հանդէսը փառաւոր գործէ. ուստի դպչողին ո՞վ ըլլալն իբր յանդէսս կը հարցնէ ժողովրդեան։

Իբրև ամենեքեան ուրանային ․ ասէ Պետրոս և որ ընդ նմա էին ․ վարդապետ ․ Ղուկ ․ Ը ․ 45 ․ Տեսանես ․ Մրկ ․ Ե․ 31 ․ ժողովուրդքդ շուրջեն և նեղեն զքեզ ․ Ղուկ Ը․ 45 ։ Եւ ասես թէ ո՞վ մերձեցաւ 'ի հանդերձս իմ ։ Եւ շուրջ հայէր տեսանել թէ ո՛վ զայն արար ․ Մարկ․ Ե․ 31—32 ։

Այս հարցման մարդ պատասխան չը տուաւ, մանաւանդ թէ ամեն մարդ կուրանար (չը դպայ կըսէին), և այնպէս կը կարծէին թէ ամենագէտ Աստուած Յիսուսը չէր կրնար ծածուկները տես-նել իմանալ, և թէ ո՞վ էր իրեն դպչողն ու բը-ժշկուողը։ Պետրոս և հետևողները, վարդապե՛տ, կըսեն, ընդամենուս պէս ահա ժողովուրդը քեզ նեղութիւն կ՚ուտայ ինչպէս որ դու ալ գիտես, կը ձկայես. Ու սկսաւ շուրջը նայիլ, որպէս թէ

կնոջ հասկցնելու համար թէ իրմէ բան մը ծածուկ չըմնար։

Իբրեւ ետես կինն եթէ ո՛չ ծածկեցաւ 'ի նմանէ. Ղուկ. Ը. 47։ Զարհուրեալ եւ դողացեալ վասն որոյ եղելոյն առաջ . . . . եկն անկաւ առաջի նորա, եւ ասաց զամենայն իրսն ճշմարտութեամբ. Մարկ. Ե 33։ Եւ պատմեաց առաջի ամենայն ժողովրդեանն, եւ թէ ո՛րպէս բժշկեցաւ առժամայն. Ղուկ. Ը. 47։ Եւ Յիսուս ասէ ցնա. դո՛ւստր, հաւատք քո կեցուցին զքեզ. երթ 'ի խաղաղութիւն, եւ եղիցի՛ս ողջ 'ի տանջանաց քոց. Մարկ. Ե. 34։

*Կինը տեսնելով որ Յիսուսի համար գաղտնի բան չկայ, եւ վախնալով որ գաղտնի իրեն մօտեցած ըլլալուն, յանցանք մը ըրած կը համարուի. Յիսուսի առջեւն ինկաւ, եւ ժողովուրդին ներկայութեան ամեն բան ինչ որ այս ախտէն պատճառաւ գլխէն անցած էր եւ ինչ նպատակաւ մօտեցած էր եւ ինչպէս ալ ժամայն բժշկուած էր, մի ըստ միոջէ պատմեց Յիսուսի։*

*Յիսուս ալ կնոջ մեծ եւ հաստատուն հաւատքը տեսնելով, ըսաւ իրեն թէ իւր ճշմարիտ ու անկեղծ հաւատքը զինքը բժշկած է հոգեւորապէս, ուստի եւ հետեւաբար հիւանդութիւնն ալ բոլորովին սրբուած է ըստ մարմնոյ. և երթ, ըսաւ, 'ի խաղաղութիւն։*

## Զ. Յարութիւն դստերն Յայրոսի

Մինչդեռ նա զայն խօսէր, գան ոմանք. Մարկ. Ե. 35. 'ի տանէ ժողովրդապետէն. Ղուկ. Ը. 49։ Եւ ասեն. Մրկ. Ե. 35. ցնա. Ղուկ. Ը. 49. Թէ դուստրն քո մեռաւ, զի՞ եւս աշխատ առնես զվարդապետդ։ Իսկ Յիսուս իբրեւ

լուաւ զբանն ասացեալ, ասէ ցժողովրդապետն · Մի՛ երկնչիր, բայց միայն հաւատա՛ · Մարկ. Ե. 35-36 · Եւ կեցցէ · Ղուկ. Ը. 50 : Եւ ոչ զոք եթող ընդ իւր երթալ, բայց միայն զՊետրոս և զՅակոբոս և զՅովհաննէս՝ զեղբայրն Յակոբայ · Մարկ. Դ. 37 :

*Յիսուս տեսաւ որ բժշկելէն և անոր խաղաղութիւն մաղթելէն վերջ, մէյ մ'ալ ժողովրդապետին տունէն եկան իմացուցին թէ աղջիկը մեռած է, պարապ տեղը զՅիսուս չը յոգնեցնէ չ'աշխատցնէ. Յիսուս լսածին պէս՝ մի՛ վախնար ըսաւ իրեն, վասն զի, եթէ հաւատաս՝ թէ կարող եմ մեռածը ողջնցնել, կը կենդանանայ աղջիկդ :*

*Այս ըսաւ և հետը միայն Պետրոսն, Յակոբոսն և իւր եղբայրն Յովհաննէսն առնելով ճամբայ ելաւ Յայրոսին տունն երթալու :*

Գայ 'ի տուն ժողովրդապետին, և տեսանէ ամբոխ յոյժ և լալականս և աղաղակս յոյժ : Եւ մտեալ 'ի ներքս՝ ասէ ցնոսա · Զի՞ խռովեալ էք և լայք, մանուկն ո՛չ է մեռեալ, այլ ննջէ · Մարկ. Ե. 38—39 : Եւ ծաղր առնէին զնա · Մարկ. Ե. 40 · Զի գիտէին թէ մեռաւ · Ղուկ. Ը. 43 :

*Եկաւ ժողովրդապետին տունը, տեսաւ բազմութիւն և հեթանոսական սովորութեան համեմատ մեռելին վրայ, (որ նաև հրէից մէջ ալ մտած էր) լացող պոռացողներու խումբ մը, ներս մտաւ. ի՞նչ է այդ, ի՞նչ խռոված կուլայք ըսաւ, այդ մեռելին յարուցանելը՝ քունէն արթընցունելէն աւելի դիւրին է ինծի համար, մեռած չէ ան, ըսաւ, հապա կը քնանայ : Խեղճ մարդիկ աստուածային կարողութիւն չեն յիշեր,*

չեն ալ մտածեր՝ թէ ամենայն համարձակութեամբ մեռած չէ, քնոյ մէջ կը խաղթայ ըսողն՝ Աստուած է, Աստուծոյ Որդին և աշխարհի փրկիչը։ Մեռած ըլլալուն վրայ այնչափ վստահ էին որ հաւատալնին չիգար թէ կ'ողջնայ։

Եւ նորա հանեալ արտաքս զամենեսեան, առնու ընդ իւր զհայր մանկանն եւ զմայր, եւ զնոսա որ ընդ նմայն էին, եւ մտանէ ուր դնէր մանուկն։ Եւ կալեալ զձեռանէ մանկանն, ասէ ցնա. տա՛լիթա կու՛մի, որ թարգմանի, աղջիկ դու, (քե՛զ ասեմ) արի՛. Մարկ. Ե. 40—41։

Ասոնք որ տեսաւ Յիսուս, զամենքը դուրս հանեց, հետը առաւ աղջկան հայրն ու մայրն և իւր հետևիններըն և մեռած աղջկան եղած սենեակը մտնելով բռնեց ձեռքէն. Տա՛լիթա կու՛մի, ըսաւ, այսինքն աղջի՛կ դու, ելի՛ր մեռելութենէդ, արթնցի՛ր որ աստուածութիւնը ծաղրող թերհաւատներն ազանչանան Աստուծոյ մեծ կարողութեան վրայ և դառնան հաւատքի գանե։

Եւ վաղվաղակի. Մարկ. Ե. 42. Դարձաւ ոգի նորա, եւ. Ղուկ. Ը. 56. Յարեաւ աղջիկն եւ գնայր. Մարկ. Ե. 42։ Եւ հրամայեաց տալ նմա ուտել։ Եւ զարմացան ծնօղքն նորա. Ղուկ. Ը. 56—57. Մեծաւ զարմանալեօք. Եւ պատուէր տայր նոցա յոյժ, զի մի՛ ոք գիտասցէ. Մարկ. Ե. 42—43. Որ ինչ եղեւ. Ղուկ. Ը. 57։ Եւ ել համբաւս այս ընդ ամենայն երկիրն ընդ այն. Մատթ. Թ. 26։

Մէյ մ'ալ աղջիկը կենդանացաւ, և սկսաւ քալել. Յիսուս ալ հրամայեց որ կերցունեն զինքը։ Ծնողաց զարմանքը անպատմելի էր, բայց Յիսուս պատուիրեց՝ որ ոչ ոք գիտնայ այս յարութեան գործը, թէպէտև Գալիլեայի ամեն կողմ տարածուեցաւ։

## Է. Բժշկութիւն երկուց կուրաց եւ համրոն դիւահարի

Եւ մինչդեռ անցանէր ընդ այն Յիսուս, զհետ երթային նորա կոյրք երկու. աղաղակէին եւ ասէին. ողորմեա՛ց մեզ որդի Դաւթի։ Մատթ. Թ. 27։

Յիսուս երբոր աղջկան յարուցանելէն վերջ ելաւ կերթար, երկու կոյրեր՝ ետեւէն որդի՛ Դաւթի ողորմէ՛ մեզ կը պոռային. ասոնք թէպէտ ըստ մարմնոյ կոյր, Քրիստոսի սքանչելիքը չէին տեսած. բայց եղած հրաշքները լսած ըլլալով, մտաց հաւատոյ աչքերնին բաց էր, կը տեսնէր. և որովհետև Ս. Գրքէն և հրեայից մարգարէութենէն գիտէին թէ 'ի ժամանակին Մեսիայն պիտի գայ Դաւթի ազգէն և կուրաց աչքերը պիտի բանայ, այս վկայութիւնը և եղած հրաշքները բաւական էին զիրենք համոզելու՝ թէ նա է մարգարէին Օծեալ Փրկիչն. ուստի աներկբայ հաւատով Դաւթի որդի անուանելով՝ աչաց լոյս կը խնդրէին։

Եւ իբրեւ եկն 'ի տուն, մատեան առ նա կոյրքն. եւ ասէ ցնոսա Յիսուս. հաւատա՞յք, եթէ կարող եմ առնել զայդ. ասեն ցնա՝ այո՛ Տէր։ Յայնժամ մերձեցաւ յաչս նոցա՝ և ասէ. ըստ հաւատոց ձերոց եղիցի ձեզ։ Մտթ. Թ. 28–29։

Երբոր Յիսուս տուն մտաւ, կոյրերն ալ եկան. Յիսուս բժշկութիւն տալէ յառաջ հաւատքնին գրաւական կուզէ, ինչպէս շատ այս տեսակ հրաշից պարագայներու մէջ ըրաւ. զձեզ բժշկելու կարող ըլլալուս կը հաւատայք, ըսաւ. կոյրերը որովհետև գրոց վկայութիւնը և հրաշքնե-

րու համբաւը լսած էին և գիտէին, թէ դու խոստացեալ Մեսիայն ես, ըսին, և կարող Աստուած՝ որ կրնաս մեր աչքերը լուսաւորել: Այն ատեն նոցա աչքերուն մօտ գնաց, հաւատացածնե՛ւդ պէս ըլլայ ձեզի, ըսածին պէս.

Եւ բացան աչք նոցա . և սաստեաց նոցա Յիսուս՝ և ասէ . զգո՛յշ կացէք՝ մի՛ ոք գիտասցէ : Եւ նոքա ելեալ համբաւեցին զնա ընդ ամենայն երկիրն ընդ այն . Մատթ. Թ. 30—31 :

Աչուըներին բացուեցան . բայց Յիսուս իբր մարդ, մարդոցմէ փառաւորուիլ չուզելով՝ սաստեց զիրենք որ մէկուն չիմացունեն. Թէպէտև կոյրերը բոլոր այն երկրի սահմաններուն մէջ՝ նորա անունն և մեծ սքանչելիքը համբաւեցին, վասն զի, Աստուած ինքնին թող կուտար՝ որ իւր գործերը փառաւորեն մարդիկ և հռչակեն:

Եւ յելանելն նոցա արտաքս, ահա մատուցին առ նա այր մի՝ համր դիւահար . Մատթ. Թ. 32 :

Կոյրերը բժշկուելով ելան և սկսան Աստուծոյ փառքը հռչակել. մէյ մ'ալ համր դիւահար մը ներկայացուցին Յիսուսի, որուն ախտը բնական չէր իրեն, այլ դևը նորա լեզուն կապած էր, ինչպէս որ զանազան ներկայացումներէն ալ յայտնի է որ դիւահարը ինք չէր կրնար խօսիլ. ատոր համար Յիսուս ալ իրմէն հաւատք չը՛ պահանջէր, հապա,

Եւ յելանել դիւին՝ խօսեցաւ համրն . Մատթ. Թ. 33 :

Իսկոյն կը մօտենայ. կը բժշկէ զանի և համրը կ'ըսկսի խօսիլ և զԱստուած օրհնել.

• Եւ զարմացան ժողովուրդքն՝ եւ ասէին . Եթէ եւ ո՛չ երբ-
էք երեւեցաւ այսպիսի յԻսրայէլի : Մատթ. Թ. 33 :

Պարզամիտ ժողովուրդն այս անսպառ հրաշքին վրայ զարմանալով խոստովանեցան թէ հրաշագործը գերմարդկային զօրութիւն ունի, այնպէս որ մարդու ձեռքով այդպիսի հրաշք մը եղած՝ չէին լսած :

Իսկ փարիսեցիքն ասէին, Եթէ իշխանաւն դիւաց հանէ զդեւս : Մատթ. Թ. 34 :

Փարիսեցիները միամիտ ժողովրդեան զարմանքին չը հանդուրժեցին, և որպէս զի իրենց նախանձու կիրքն յագեցունեն, դայթակղութիւն ձգել ուզեցին նոցա մէջ, համարձակելով ըսել թէ այդ հրաշագործը դևերու մեծին՝ բարեկամ ըլլալով, անոր զօրութեամբն և իշխանութեամբը կը գործէ, այսինքն, լուսաբերն սադայելին իշխանութեամբը :

Իրենց նախանձու կիրքն այն աստիճան զիրենք կուրցուցեր էր՝ որ նորա Աստուածութեան գործերէն և ոչ մէկն ուզեցին յիշել. բորոտները սրբելն, մեռելոց կեանք տալն, ծովը սանձելըն, մեղքերու թողութիւն տալն, արքայութիւնն աւետարանելն, որով զմարդիկ առ Աստուած կը մօտեցնէր, որուն չէին ախորժեր դևերը, մանաւանդ թէ (անոնք՝) զմարդիկ յԱստուծոյ կը հանեն և կորոյ կը տանին, երկնքի կեանքէն կը զըրկեն և մահու դերի կընեն, և բարիք ամենևին չեն կարող գործելու :

Այս ամենը չը յիշելով կուրանային Յիսուսի Աստուածութիւնն և դևերու իշխանութեամբ կը գործէ ըսելով կը դայթակղեցունէին զժողո-

վուրդն որ Յիսուսի վրայ հիմնալէն դադրի։



# ԳԼՈՒԽ Ժ.

ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԱՆԴԱՄԱԼՈՅԾԻՆ Ի ՊՐՈԳԱՏԻԿԷ.—ԳԱՏԱՓԱՆԻ ՓՐԿՉԻՆ ԱՌ ՓԱՐԻՍԵՑԻՍՆ ԴԱՏԱՊԱՐՏՈՂԱՑ.—ՀԱՍԿ ԿՈՐԶԵԼ ԱՇԱԿԵՐՏԱՑՆ, ԵՒ ՑՈՒՑՈՒՄՆ ԱՆՄԵՂԱԴԻՐ ԱՌՆԵԼ ԶՆՈՍԱ.—ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ՁԵՌԻՆ ԳՕՍԱՑԵԼՈՅ ԵՒ ԱՅԼՈՑ ԱԽՏԱԺԵՏԱՑ ԲԱԶՄԱՑ.



## Ա. Բժշկութիւն անդամալուծին ի Պրոգատիկէ

Յետ այսորիկ տօն էր Հրէից. Եւ ել Յիսուս յԵրուսաղէմ։ Եւ էր յԵրուսաղէմ ի Պրոգատիկէ աւազանին, որ կոչէր Եբրայեցերէն Բեթհեզդա, հինգ սրահ։ Յորս անկեալ դնէր բազմութիւն յոյժ հիւանդաց՝ կուրաց, կաղաց, գօսացելոց, որ ակնկալեալ էին ջրոյն յուզելոյ։ Յովհ. Ե. 1—3 ։

Հրէից զատկի տօնին (Ղևտ. ԻԳ. 6 ։ Բ. Օրինաց, ԺԶ. 1) Յիսուս Երուսաղէմ եկաւ. և տաճարին մօտ եղած աւազանին քովն գնաց. որ ըստ եբրայեցւոց Բէթհեզդա կը կոչուէր, (թերևս Գէյթը հասթայ որ ըսել է տուն հիւանդի, հիւանդանոց, կամ տուն ողորմութեան, ուր տեղոյն հրեշտակը կ'իջնէր, ջուրը կը յուզէր, և շատ հիւանդներ կը բժշկուէին մէջը իջնելով։ Յունարէն Պրոպատիկէ կըսուի այդ աւազանը. կ'ըսուա-

դրանի , ոչխարային , վասն զի տաճարը զոհուելիք կենդանիները հոն կը լուանային . և որովհետև տաճարին լուացքի ջուրերն հոն կը վազէր , ուստի ոմանք ալ Բէթհեզդան՝ տուն լուալեաց , կը թարգմանեն) տեսաւ հոն բազմաթիւ հիւանդ , կաղ , կոյր և գօսացեալներ , որք աւազանին ջուրը յուզելու համար երկինքէն իջնող հրեշտակին կ'սպասէին :

Նա հրեշտակ տեառն իջանէր ըստ ժամանակի յաւազանն՝ և յուզէր զջուրսն . և որ նախ ՚ի շարժմանն ջրոյն իջանէր, բժշկէր՝ ո՛չ ունելով նշան հիւանդութեան . Յովհ. Ե. 4 :

Այս աւազանը մեծ ու գեղեցիկ էր և շուրջը հոյակապ շինուածքներ ու հինգ սրահ ունէր . Տէրոջն հրեշտակը ժամանակ ժամանակ այս աւազանին մէջ կ'իջնէր , ջուրերը կը յուզէր , և հոն գտնուած հիւանդներէն որն որ առաջին անգամ ջուրը նետուէր , իսկոյն կը բժշկուէր :

Եւ անդ էր այր մի , որոյ երեսուն և ութ ամ էր ՚ի հիւանդութեան իւրում : Զնա իբրև ետես Յիսուս՝ զի անկեալ դնէր , և գիտաց եթէ բազում ժամանակս են այնուհետև , ասէ ցնա . կամի՞ս ողջ լինել . Յովհ. Ե. 5—6 :

Հոն աւազանին մօտ երեսուն և ութ տարի հիւանդութեամբ տառապող մարդ մը կար , որ կերևէր թէ մինչև ցայն վայր , ջուրն իջնելու կարող չ'ըլլալուն , անդամալոյծ մ'էր . Յիսուս երբոր տեսաւ այս հիւանդն անկողին պառկած , և գիտնալով որ ընդ երկար հիւանդութիւն կը կրէ , և ողջ լինել կ'ուզե՞ս , կուզե՞ս առողջանալ հարցումով նորա միտքը կ'արթնցնէ , որ բժըշկութեան յոյս մը ստանայ և իւր անօգնական և

իցէ . քանզի Յիսուս խոյս ետ ժողովրդենէն՝ որ էր ի տեղւո-ջն . Յովհ. Ե. 10—13 .

Հրէայք Քրիստոսի աստուածային խօսիցն ու զօրանշանաց վրայ նախանձոտ, ինչպէս նաև ժո-ղովրդեան զինքը մեծարելուն վրայ կատղած, և գիտնալով իսկ՝ թէ ո՛վ էր այն հնօրեայ հի-ւանդին բժիշկն, բայց չարախօսելու առիթ մը գտած ըլլալու միտօք կը յանդիմանեն զբժշկեալն որ շաբաթ օր առանց խղճելու անկողինն ՚առած կերթայ . Բժշկեալը՝ զիս բժշկողին հրամանն այս է կըսէ . հրէայներն կեղծաւոր չարասրտութեամբ այդ հրամանը տուողին ո՛վ ըլլալը չը գիտնալ ձևանալով կուզէին իմանալ . բժշկեալն՝ անունը չէր գիտեր, և հոն ալ չէր որ նշանով մը կամ մատնանիշ իմացունէր . վասն զի, Յիսուս ամբո-խէն խոյս տուած էր, հրէից նենգութիւնը գիտ-նալով ։

Յետ այսորիկ գտանէ զնա Յիսուս ՚ի տաճարին, և ասէ ցնա . Ահաւասիկ ողջացար, մի՛ ևս մեղանչեր ՝ զի մի՛ չար ևս ինչ լինիցի քեզ . Յովհ . Ե. 14 .

Յիսուս օր մը տաճարին մէջ գտաւ նոյն բը-ժշկեալն, եւ ըսաւ որ մէյ մ՚ ալ չըմեղանչէ, որ-պէսզի այսպիսի հիւանդութեան մէջ կրկին չիյ-նայ . որով հասկցուց թէ շատ անգամ մարդոց հիւանդութիւնն իրենց որ եւ իցէ յանցանքին կամ մեղաց պատուհասն է յԱստուծոյ տնօրինեալ ։

Գնաց այրն՝ և պատմեաց Հրէիցն, եթէ Յիսուս էր՝ որ բժշկեացն զնա ։ Յովհ. Ե. 15 ։

Բժշկեալն երբոր Յիսուսէն խրատուեցաւ որ մէյ մ՚ ալ չըմեղանչէ, այս առթով անունն ալ

տկարացաւ եւ կանուխէն իրեն հարցունողներուն երթալով, իմացուց թէ զինքը բժշկողին անունը Յիսուս էր։

### Բ. Պատասխանի Փրկչին առ փարիսեցիսն գայթակղեալս

Եւ վասն այնորիկ հալածէին զՅիսուս Հրէայքն, զի զայն առնէր ՚ի շաբաթու. Յովհ. Ե. 16.

Ելից Գլ. Ի. 8—11. և Երեմ. ԺԷ. 21—27. Համարներուն մէջ պատուէրներ կան շաբաթ օրը սուրբ պահելու, և սպառնալիք դէմն չը պահողներուն։ Հրէայք բնաւ չը հասկնալով թէ շաբաթ աւուր մէջ եղած բարեգործութիւնք շաբաթ օրը չը պղծելէ զատ՝ կը նուիրագործեն ալ, կը գայթակղէին Յիսուսի վրայ որ 38 տարի չարաչար վշտօք տառապեալ անդամալոյծ անօգնական հիւանդը շաբաթ աւուր մէջ՝ գործելով բժշկած էր, ուստի և ասոր համար զինքը կը հալածէին։

Եւ Յիսուս պատասխանի ետ նոցա. Հայր իմ մինչև ցայժմ գործէ, և ես գործեմ. Յովհ. Ե. 17.

Բայց Յիսուս իմանալով գայթակղողներուն միտքը, պատասխանեց թէ ինչպէս որ իւր Հայրը հանապազօր եւս և ՚ի շաբաթու, բոլոր տիեզերքը խնամելով կը գործէ, այնպէս նաև ինք կը գործէ մարդկան միշտ և հանապազօր բարերարելով։

Վասն այնորիկ առաւել խնդրէին Հրէայքն սպանանել զնա. զի ո՛չ միայն լուծանէր զշաբաթս, այլ և Հայր իւր

կոչէր զԱստուած , և հաւասար առնէր զանձն Աստուծոյ Յովհ. Ե. 18 :

Յիսուսի շաբաթ աւուր մէջ հրաշագործելով՝ զայն օրն աւրած ըլլալուն վրայ գայթակղելնին մոռցան . անոր՝ ինքզինք Աստուծոյ հաւասար սեպելուն և զԱստուած իրեն Հայր կոչելուն վրայ կատղած, ետևէ եղան որ զինքը սպաննեն :

Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա . ամէն ամէն ասեմ ձեզ . ո՛չ կարէ որդի մարդոյ առնել յանձնէ և ոչինչ . եթէ ոչ տեսանիցէ 'զՀայրն զի առնէ . զի զոր նայն առնէ , զնոյն և որդին նմին նման գործէ . Յովհ. Ե. 19 :

Պատասխան տուաւ Յիսուս ու ըսաւ . Որդին մարդոյ , այսինքն , ես չեմ կրնար զատաբար 'ի Հօրէ բան մ' ընել . վասնզի Հօրս ըրածը կընեմ, եւ Աստուծոյ ըրածն իմ ըրածս է , մեր գործերը մի եւ նոյն են :

Զի Հայր սիրէ զՈրդի , և զամենայն ինչ ցուցանէ նմա՝ զոր ինքն առնէ . և մեծամեծս ևս քան զայնս ցուցանէ նմա զգործս , ընդ որ դուք զարմանայք . Յովհ. Ե. 20 :

Հայրը զՈրդին կը սիրէ այնպիսի սիրով՝ զոր դուք չէք հասկնար . Հայրն ամեն բան կը ցցնէ Որդւոյն , Հօր եւ Որդւոյ մէջ գաղտնի բան չըկայ . դուք զարմանալի հրաշքներ կը տեսնէք հիմայ , բայց Հայրը Որդիով աւելի մեծ զարմանալի գործեր կրնայ ցուցնել ձեզի :

Զի որպէս Հայր յարուցանէ զմեռեալս և կենդանիս առնէ , նոյնպէս և որդի , զորս կամի կենդանիս առնէ : Յովհ. Ե. 21 :

վասնզի , ինչպէս որ Հայրը մեռելները կը-յարուցանէ , նոյնպէս ալ Որդին կըկենդանացու-

նէ զով որ կուզէ ։

Եւ ո՛չ եթէ հայր դատի զոք՝ այլ զամենայն դատաստան ետ որդւոյ իւրոյ. զի ամենեքեան պատուեսցեն զորդի՝ որպէս պատուեն զհայր. որ ո՛չ պատուէ զորդին, ո՛չ պատուէ զհայր զառաքիչն նորա։ Ամէն ամէն ասեմ ձեզ. զի որ զբանն իմ լսէ, և հաւատայ այնմ որ առաքեացն զիս, ընդունի զկեանս յաւիտենականս, և 'ի դատաստան ո՛չ մտանէ, այլ փոխեցաւ 'ի մահուանէ 'ի կեանս։ Յովհ. Ե. 22—24։

*Եւ թէպէտ Հայրն ալ Ս. Հոգին ալ կըդատեն, բայց վերջին դատաստանին օրը՝ Որդին իբրեւ Հանդիսաւոր դատաւոր 'ի կերպարան մարդոյ ինք պիտի տեսնայ ամեն դատաստան. ուստի, դիտեցէ՛ք որ ես յաւիտենական դատաւորն եմ, ո՛վ որ զիս չըպատուեր, զիս ղրկող Հայրն ալ չըպատուեր ։ Ուստի այս դատաստանէն, այսինքն, դատապարտութենէն ազատելու համար՝ պէտք է որ իմ խօսքս մտիկ ընէք, զի առով հաւատացած կ'ըլլաք զիս ղրկողին եւ յաւիտենական կեանք կըժառանգէք ։*

Ամէն ամէն ասեմ ձեզ. զի գայ ժամանակ՝ և արդէն իսկ է, յորժամ մեռեալք լուիցեն ձայնի որդւոյն Աստուծոյ. և որք լուիցենն՝ կեցցեն։ Զի որպէս հայր ունի կեանս յանձին իւրում, նոյնպէս ետ և որդւոյ ունել կեանս յանձին իւրում. և իշխանութիւն ետ նմա դատաստան առնել. և զի որդի մարդոյ է՝ ընդ այն զի՞ զարմանայք. զի եկեսցէ ժամանակ՝ յորժամ ամենեքին որ 'ի գերեզմանս կայցեն, լուիցեն ձայնի նորա, եւ ելցեն արտաքս. որոց զբարիս գործեալ իցէ՝ 'ի յարութիւն կենաց եւ որոց զչար արարեալ՝ 'ի յարութիւն դատաստանաց ։ Յովհ. Ե. 25—29 ։

*Ճշմարիտ կըսեմ ձեզի, որ ատեն պիտի գայ, ինչպէս նաեւ հիմայ ալ, մեռեալներն Աստուծոյ*

Որդւոյն ձայնը պիտի լսեն . վասնզի , ինչպէս որ Հայրն իւր Անձին մէջ կեանք ունի , եւ կըհաղորդէ զայն որու որ ուզէ , այսպէս եւ Որդին երկրորդ Անձն Երրորդութեան , Հօր Աստուծոյ պէս կեանք ունի իւր Անձին մէջ , եւ կուտայ կեանք որու որ ուզէ , եւ այս Որդւոյն Աստուծոյ , միանգամայն եւ Որդի մարդոյ ըլլալուն վրայ մի զարմանայք . վասնզի , օր մը պիտի տեսնէք նոյն Որդւոյ մարդոյ ձայնէն գերեզմանաց մէջ եղողներուն արթննալը դուրս ելնելն , եւ բարեգործներուն՝ ՚ի յարութիւն կենաց եւ չարագործներուն ՚ի յարութիւն դատաստանաց , ( այսինքն , դատապարտութեան ) երթալը .

Ո՛չ կարեմ ես յանձնէ առնել ես ոչինչ. այլ որպէս լսեմ դատեմ , եւ դատաստանն իմ արդար է . զի ո՛չ խնդրեմ զկամս իմ , այլ զկամս այնորիկ՝ որ առաքեացն զիս։ Յովհ. Ե. 30։

Ես առանձին ինքնին բան չեմ ըներ , իմ կամքըս Հօրս կամքն է . Հօրս կամքն իմս է , եւ իբրեւ որդի մարդոյ , իմ մարդկային կամքս ալ՝ աստուածային կամաց հպատակ է ։

Եթէ ես վկայեմ վասն իմ , վկայութիւն իմ չէ՛ ճշմարիտ ։ Այլ է՝ որ վկայէ վասն իմ . եւ գիտեմ , եթէ ճշմարիտ է վկայութիւնն՝ զոր վկայեաց վասն իմ։ Յովհ. Ե. 31—32։

Ես չեմ որ ինծի համար այսպէս կըսեմ , ինէ զատ երկու վկայ ալ կայ . մէկը Աստուած՝ իմ Հայրս , որ վկայեց ՚ի մկրտիլս . երկրորդ՝ Յովհաննու վկայութիւնը , որուն դուք մարդ ղըրկեցիք՝ նա ալ վկայեց , ըստ այնմ թէ ,

Դուք առաքեցէք առ Յովհաննէս՝ եւ վկայեաց ճշմար-

տուիրեցաւ եւ կանուխէն իրեն հարցունողներուն երթալով, իմացուց թէ զինքը բժշկողին անունն Յիսուս էր։

### Բ. Պատասխանի Փրկչին առ փարիսեցիսն գայթակղեալս

Եւ վասն այնորիկ հալածէին զՅիսուս Հրեայքն, զի զայս առնէր ՚ի շաբաթու. Յովհ. Ե. 16.

Նայեց Ել. Ի. 8—11. և Երեմ. ԺԷ. 21—27. Համայնքներուն մէջ պատուէրներ կան շաբաթ օրը սուրբ պահելու, և սպառնալիք զայն չը պահողներուն։ Հրէայք բնաւ չը հասկնալով թէ շաբաթ աւուր մէջ եղած բարեգործութիւնք շաբաթ օրը չը պղծելէ զատ՝ կը նուիրագործեն այն, կը գայթակղէին Յիսուսի վրայ որ 38 տարի չարաչար վշտօք տառապեալ անդամալոյծ անօգնական հիւանդը շաբաթ աւուր մէջ՝ գործելով բժշկած էր, ուստի և ասոր համար զինքը կը հալածէին։

Եւ Յիսուս պատասխանի ետ նոցա. Հայր իմ մինչև ցայժմ գործէ, և ես գործեմ. Յովհ. Ե. 17.

Բայց Յիսուս իմանալով գայթագղողներուն միտքը, պատասխանեց թէ ինչպէս որ իւր Հայրը հանապազօր ևս և ՚ի շաբաթու, բոլոր արարածները խնամելով կը գործէ, այնպէս նաև ինք կը գործէ մարդկան միշտ և հանապազօր բարերարելով։

Վասն այնորիկ առաւել խնդրէին Հրեայքն սպանանել զնա. զի ո՛չ միայն լուծանէր զշաբաթս, այլ և Հայր իւր

կոչէր զԱստուած , և հաւասար առնէր զանձն Աստուծոյ։ Յովհ. Ե. 18։

*Յիսուսի շաբաթ աւուր մէջ հրաշագործելովը՝ զայն օրն աւրած ըլլալուն վրայ գայթակղելնին մոռցան . անոր՝ ինքզինք Աստուծոյ հաւասար սեպելուն և զԱստուած իրեն Հայր կոչելուն վրայ կառչած, ետեւէ եղան որ զինքը սպաննեն ։*

Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա . ամէն ամէն ասեմ ձեզ . ո՛չ կարէ որդի մարդոյ առնել յանձնէ և ոչինչ, եթէ ոչ 'զՀայրն զի առնէ . զի զոր նոյն առնէ , զնոյն և որդին նմին նման գործէ . Յովհ. Ե. 19 ։

*Պատասխան տուաւ Յիսուս ու ըսաւ . որդին մարդոյ , այսինքն , ես չեմ կրնար զատաբար 'ի Հօրէ բան մ' ընել . վասնզի Հօրս ըրածը կընեմ, եւ Աստուծոյ ըրածն իմ ըրածս է , մեր գործերը մի եւ նոյն են ։*

Զի Հայր սիրէ զՈրդի , և զամենայն ինչ ցուցանէ նմա զոր ինքն առնէ . և մեծամեծս ևս քան զսոյնս ցուցանէ նմա գործս , զի դուք զարմանայք . Յովհ. Ե. 20 ։

*Հայրը զՈրդին կը սիրէ այնպիսի սիրով՝ զոր դուք չէք հասկնար . Հայրն ամէն բան կը ցցնէ Որդւոյն , Հօր եւ Որդւոյ մէջ գաղտնի բան չըկայ . դուք զարմանալի հրաշքներ կը տեսնէք հիմայ , բայց Հայրը Որդիով աւելի մեծ զարմանալի գործեր կրնայ ցուցնել ձեզի ։*

Զի որպէս Հայր յարուցանէ զմեռեալս և կենդանի առնէ , նոյնպէս և Որդի , զորս կամի կենդանի առնէ ։ Յովհ. Ե. 21 ։

*Վասնզի , ինչպէս որ Հայրը մեռեալները կըյարուցանէ , նոյնպէս ալ Որդին կըկենդանացու-*

*նէ զով որ կուզէ ։*

Եւ ո՛չ եթէ հայր դատի զոք՝ այլ զամենայն դատաստան ետ որդւոյ իւրոյ. զի ամենեքեան պատուեսցեն զորդի՝ որպէս պատուեն զհայր. որ ո՛չ պատուէ զորդի, ո՛չ պատուէ զհայր զառաքիչն նորա։ Ամէն ամէն ասեմ ձեզ. զի որ զբանն իմ լսէ, և հաւատայ այնմ որ առաքեացն զիս, ընդունի զկեանս յաւիտենականս, և 'ի դատաստան ո՛չ մտանէ, այլ փոխեցաւ 'ի մահուանէ 'ի կեանս։ Յովհ. Ե. 22—24։

*Եւ թէպէտ Հայրն ալ Ս. Հոգին ալ կըդատեն, բայց վերջին դատաստանին օրը՝ Որդին իբրեւ հանդիսաւոր դատաւոր 'ի կերպարան մարդոյ ինք պիտի տեսնայ ամեն դատաստան. ուստի, դիտցէ՛ք որ ես յաւիտենական դատաւորն եմ, ո՛վ որ զիս չըպատուեր, զիս ղրկող Հայրն ալ չըպատուեր ։ Ուստի այս դատաստանէն, այսինքն, դատապարտութենէն ազատելու համար՝ պէտք է որ իմ խօսքս մտիկ ընէք, զի առով հաւատացած կ'ըլլաք զիս ղրկողին եւ յաւիտենական կեանք կըժառանգէք ։*

Ամէն ամէն ասեմ ձեզ. զի գայ ժամանակ՝ և արդէն իսկ է, յորժամ մեռեալք լուիցեն ձայնի Որդւոյն Աստուծոյ. և որք լուիցենն՝ կեցցեն։ Զի որպէս հայր ունի կեանս յանձին իւրում, նոյնպէս ետ և որդւոյ ունել կեանս յանձին իւրում. և իշխանութիւն ետ նմա դատաստան առնել. և զի որդի մարդոյ է՝ ընդ այն զի՞ զարմանայք. զի եկեսցէ ժամանակ՝ յորում ամենեքին որ 'ի գերեզմանս կայցեն, լուիցեն ձայնի նորա, եւ եկեսցեն արտաքս. որոց բարիս գործեալ իցէ՝ 'ի յարութիւն կենաց եւ որոց չարս արարեալ՝ 'ի յարութիւն դատաստանաց ։ Յովհ. Ե. 25—29 ։

*Ճշմարիտ կըսեմ ձեզի, որ ատեն պիտի գայ, ինչպէս նաեւ հիմայ ալ, մեռեալներն Աստուծոյ*

Որդւոյն ձայնը պիտի լսեն ․ վասնզի , ինչպէս որ Հայրն իւր Անձին մէջ կեանք ունի , եւ կըհաղորդէ զայն որուն որ ուզէ , այսպէս եւ Որդին երկրորդ Անձն Երրորդութեան , Հօր Աստուծոյ պէս կեանք ունի իւր Անձին մէջ , եւ կուտայ կեանք որուն որ ուզէ , եւ այս Որդւոյն Աստուծոյ , միանգամայն եւ Որդի մարդոյ ըլլալուն վրայ մի զարմանայք ․ վասնզի , օր մը պիտի տեսնէք նոյն Որդւոյ մարդոյ ձայնէն գերեզմանաց մէջ եղողներուն արթննալը դուրս ելնելն , եւ բարեգործներուն՝ 'ի յարութիւն կենաց եւ չարագործներուն 'ի յարութիւն դատաստանաց , ( այսինքն , դատապարտութեան ) երթալը ․

Ո՛չ կարեմ ես յանձնէ առնել եւ ոչինչ. այլ որպէս լսեմ դատիմ , եւ դատաստանն իմ արդար է ․ զի ո՛չ խնդրեմ զկամս իմ , այլ զկամս այնորիկ՝ որ առաքեացն զիս։ Յովհ. Ե. 30։

Ես առանձին ինքնին բան չեմ ըներ , իմ կամքըս Հօրս կամքն է ․ Հօրս կամքն իմն է , եւ իբրեւ որդի մարդոյ , իմ մարդկային կամքս ալ՝ աստուածային կամաց հպատակ է ։

Եթէ ես վկայեմ վասն իմ , վկայութիւն իմ չէ՛ ճշմարիտ ։ Այլ է՝ որ վկայէ վասն իմ ․ եւ գիտեմ , եթէ ճշմարիտ է վկայութիւնն՝ զոր վկայէ վասն իմ։ Յովհ. Ե. 31—32։

Ես չեմ որ ինծի համար այսպէս կըսեմ , ինէ զատ երկու վկայ ալ կայ ․ մէկը Աստուած՝ իմ Հայրս , որ վկայեց 'ի մկրտելս ․ երկրորդ՝ Յովհաննու վկայութիւնը , որուն դուք մարդ ղըրկեցիք՝ նա ալ վկայեց , ըստ այնմ թէ ,

Դուք առաքեցէք առ Յովհաննէս՝ եւ վկայեաց ճշմար-

տութեանն։ Այլ ես ո՛չ եթէ ՚ի մարդկանէ առնում զվկայութիւն․ այլ զայս ասեմ զի դուք ապրեսջիք ։ Յովհ․ Ե․ 33–34։

Ես մարդիկներէ վկայութիւն առնելու կարօտութիւն չունիմ․ իսկ եթէ այս վկայութեան խօսքերն ալ զրուցեցի, ձեր փրկութեան համար զրուցեցի ։

Նա էր ճրագն ՚ որ լուցեալ էր և ծագէր․ և դուք կամեցարուք ցնծալ առ ժամանակ մի ՚ի լոյս նորա։ Յովհ․ Ե․ 35։

Յովհաննէս վառուած ճրագ մ՚էր, դուք անոր լուսովը ժամանակ մը ցնծալ ուզեցիք, բայց խօսքերը չը պահեցիք ։

Այլ ես ունիմ վկայութիւն մեծ քան զՅովհաննու․ զգործսն ՚ զոր ետ ինձ Հայր՝ զի կատարեցից զնոսա․ նոքին իսկ գործքն ՚ զոր գործեմ, վկայեն վասն իմ, եթէ Հայր առաքեաց զիս․ Յովհ․ Ե․ 36 ։

Իսկ ես Յովհաննէսէն աւելի վկայութիւն ունիմ․ այն գործերը՝ զոր իմ Հօր կամքովը պիտոր գործեմ, նոյն գործերն ալ կը վկայեն ինծի համար թէ Հայրս ղրկեց զիս․ ինչպէս որ ինքն Հայրս ալ, թէ Յորդանանու ջրերուն մէջ ՚ի մըկրտութեանն ժամու, և թէ Ս․ գրոց մէջ յայտնի վկայութիւններ տուաւ իմ իրեն սիրելի յաւիտենական զաւակն ըլլալուս ։

Դուք ՚ ո՛չ զձայն նորա երբէք լուարուք, և ո՛չ զտեսիլ նորա տեսէք ։ Եւ ո՛չ զբան նորա ունիք ՚ի ձեզ բնակեալ․ զի զոր նա առաքեաց ՚ դուք նմա ո՛չ հաւատայք ։ Յովհ․ Ե․ 37—38 ։

Դուք անոր ձայնը լսեցիք երբեմն, բայց մըտիկ չըրիք․ թէպէտ անոր տեսիլը ինչպէս ըլլա-

մը չըր գիտէք, և ոչ անոր խօսքը ձեր մտքին մէջ ունիք:

Քննեցէ՛ք զգիրս. զի դուք համարիք նոքօք ունել զկեանսն յաւիտենականս. և նոքին են՝ որ վկայեն վասն իմ, որովք համարիք ունել զկեանս: Յովհ. Ե. 39:

Այն գրքերն՝ որոնցմով կեանք ստանալ կը հաւատայք, ահա՛ այն գրքերը կը վկայեն ինձ համար. դուք չէք ուզեր ինծի գալ՝ որ կեանքըն ունենաք. վասն զի, իմ գալուս այն գրքերն անբաւական են. քան այնմ թէ,

Եւ դուք ո՛չ կամիք գալ առ իս՝ զի զկեանսն ունիցիք: Ես փառս ՚ի մարդկանէ ո՛չ առնում: Այլ ճանաչեմ զձեզ՝ թէ զսէրն Աստուծոյ ո՛չ ունիք յանձինս: Յովհ. Ե. 40—42:

Ես մարդիկներէն փառք չեմ ուզեր, սակայն գիտեմ որ Աստուծոյ սէրը չունիք դուք:

Ես եկի յանուն Հօր իմոյ՝ և ո՛չ ընդունիք զիս. եթէ այլ ոք եկեսցէ յիւր անուն, զնա ընդունիցիք: Յովհ. Ե. 43—44:

Ես Հօրս անունովը եկայ, և զիս չէք ընդունիր, ուրիշ մը եթէ իր անունովը գայ՝ կընդունիք. ինչպէս որ իր համբաւանալէն վերջը՝ շատերն իբրև Մեսիա, իբր ճշմարիտ մարգարէներ ընդունուեցան հրէիցմէ:

Զի՞արդ կարէք դուք հաւատալ. զի փառս ՚ի միմեանց առնուք, և զփառս զոր ՚ի միոյն Աստուծոյ ո՛չ խնդրէք: Յովհ. Ե. 44:

Բայց գիտեմ ես որ դուք չէք կրնար հաւատալ, վասն զի, իրարմէ փառք կը փնտռէք,

ամբարտաւան էք, և միոյ միայնոյ Աստուծոյ փառքը չէք փնտռեր ։

Մի՛ համարիք՝ եթէ ես չարախօս ինչ իցեմ զձէնջ առ Հօր. գո՛յ որ չարախօս կայ զձէնջ Մովսէս, յոր դուք յուսացեալ էք ։ Յովհ. Ե. 45 ։

Զը կարծէք որ ձեզի համար չարախօսութիւն կընեմ ես՝ որ երկնքի ու երկրի բարեխօսն եմ. ձեզ համար չարախօսողը Մովսէսն է, որուն այնչափ յուսացած էք, և որ Հօր Աստուծոյ քով ձեր խստասրտութեան ու անհաւատութեան համար կը չարախօսէ ։

Զի եթէ հաւատայիք դուք Մովսիսի, հաւատայիք արդեօք և ինձ. զի նա վասն իմ իսկ գրեաց ։ Յովհ. Ե. 46 ։

Վասն զի, թէ որ Մովսէսի և իւր գրածներուն հաւատ ընծայէիք, անտարակոյս ինծի ալ կը հաւատայիք, վասն զի Մովսէս՝ օձին անիծից պատուհասին առթիւ՝ զիս կը յիշատակէ «Ծննդ. Գ. 15. “Նա սպասեսցէ քում գլխոյ և դու սպասեսցես նորա գարշապարին” խօսքովը. Նոյնպէս Ծննդոց ԻԲ. 18 համարին մէջ՝ Տիրոջը հրեշտակին՝ Աբրահամու տուած օրհնութեան առթիւ, «Եւ օրհնեսցին 'ի զաւակի քում ամենայն ազգք երկրի, փոխանակ զի լուար ձայնի իմում” յիշուած խօսքը, ինծի կ'ակնարկէ, և զոր Մովսէս ինծի համար մարգարէանալով գրեց. ինծի համար յիշեց նաև Մովսէս՝ Յակոբ նահապետին առ Յուդա տուած օրհնութիւնը որ ինծի միայն կ'ակնարկէ. ըստ այնմ թէ, “Մի պակասեսցէ իշխան Յուդայ, և մի՛ պետ յերանաց նորա, մինչև եկեսցէ նա՝ որոյ իւրն են հանդերձեալքն, և նա է

ակնկալութիւն հեթանոսաց», Ծննդ. ԽԹ. 10 ։

Մովսէսն ինծի համար գրեց, ինծի համար մարգարէացաւ, այս խօսքովը՝ թէ «Մարգարէ յեղբարց քոց իբրև զիս յարուսցէ քեզ Տէր Աստուած քո, նմա լուիջիք», Բ. Օրինաց ԺԸ. 15 ։

Թէ որ դուք Մովսիսի կը հաւատայիք, ինծի ալ պէտք էր հաւատայիք. վասն զի, այս ամենը ինծի համար գրած է ։ Այս գրուածքները կան այժմ և իմ գուշակեալ Մեսիային լինելս կը հաստատեն և զձեզ կը դատապարտեն՝ որ այդպիսի մարգարէական գրուածոց չէք ուզեր հաւատալ․ ինչպէս նաև Մովսէս, որ այժմ յերկինս ձեր այս խստասրտութեանն համար Հօր Աստուծոյ կը չարախօսէ ։

Զի եթէ Նորա գրոցն ո՛չ հաւատայք, զի՞արդ իմոց բանիցս հաւատայցէք ։ Յովհ. Ե. 47 ։

Արդ․ քանի որ Նորա գրածներուն չէք հաւատար, զինքն ալ չէք ընդունիր, իմ խօսքերս ալ չէք ընդունիր ։

### Գ. Հասկ կորզել աշակերտացն, եւ Յիսուսի անմեղադիր առնել զնոսա

Եւ եղեւ 'ի շաբաթու յերկրորդում առաջնոյն՝ անցանել նմա ընդ արտորայսն. Ղուկ. Զ. 1. Եւ աշակերտքն նորա քաղցեան. Մատթ. ԺԲ. 1. կորզէին հասկ՝ շփէին ընդ ափս, և ուտէին ։ Ղուկ. Զ. 1 ։

Բաղարջակերաց և գլխաւոր տօներու Պէնտէկոստէի ալ. յաջորդող շաբաթին երկրորդ առաջնոյն կըսուէր. ամառ ժամանակ Յիսուս իւր աշակերտներովը դաշտը կը պտըտէր, աշակերտ-

*ներն անօթեցան, և սկսան հասկ կորզել և ա-փերնուն մէջ շփելով ուտել ։*

Փարիսեցիքն իբրեւ տեսին · Մատթ. ԺԲ. 2. ասեն ցնո-սա. զի՞նչ գործէք, զոր ոչ է օրէն 'ի շաբաթու ։ Ղուկ. Զ. 2։

*Պարսաւաղէտ փարիսեցիք աւասիկ բամբա-սելու նիւթ մ'ալ գտան. այս ի՞նչ պիտի ըլլայ, կ'ըսեն, աշակերտաց, շաբաթ օրը չը վայլէր որ այդպէս հասկ կորզելով օրէնքնիդ 'աղծէք.*

Եւ (ցՅիսուս) ասեն (ցնա). Ահաւասիկ աշակերտք քո գործեն, զոր ո՛չ է արժան գործել 'ի շաբաթու ։ Մատթ. ԺԲ. 2։

*Յիսուսի ալ դարձան ըսին՝ որ աշակերտացն շաբաթ օր հասկ կորզելով ուտելնին բնաւ չէ վայլեր.*

Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ. Չիցէ՞ ընթեր-ցեալ ձեր զոր արարն Դաւիթ Ղուկ. Զ. 3. յորժամ կարօտ եղեւ՝ եւ քաղցեաւ և որ ընդ նմայն էին ։ Զի՞արդ եմուտ 'ի տունն Աստուծոյ առ Աբիաթարաւ քահանայապետիւ, Մարկ. Բ. 26. եւ զհացն առաջաւորութեան եկեր, և ետ այնոցիկ, որ ընդ նմայն էին, զոր ո՛չ էր օրէն (ուտել) ու-տել, բայց միայն քահանայապետացն ։ Ղուկ. Զ. 4 ։

*Ասոր վրայ Յիսուս կը պատասխանէ՝ թէ ինչ-պէս երբեմն Դաւիթ տաճարը մտնելով քահա-նայից յատուկ եղած առաջաւորութեան հացն Աքիմելէք քահանայէն (որն որ տղային անունովը Աբիաթար ալ կ'ըսուէր) կ'առնէ և հետը եղող-ներուն հետ կուտէ ։ Այս՝ օրէնք չէր, որ քահա-նայ չեղողներ առաջաւորութեան հացն ուտէին,*

*բաց 'ի քահանայներէն, (1) բայց բնական հարկը, ստիպողական հարկը, այնչափ անդիմադրելի է, որ նոյն իսկ քահանայն ինքնին այդ օրէնքը կը լուծէ և կը թողու, որ ոչ միայն Դաւիթ՝ որն որ թագաւորութեան շնորհաց օծումն և մարգարէութեան շնորհք ալ ունէր, այլ և իւր հետևիններն, սովորական մարդիկ, իրենց յատուկ չեղած նուիրական հացէն ուտեն։ Արդ քանի որ Աքիմելէք կամ Աբիաթար այդ օրէնքը լուծելով անմեղադրելի է, ապա ուրեմն անմեղադրելի են նաև իմ աշակերտներս, որ անօթութեան հարկէն ստիպեալ, ցորենը շաբաթ օր արտերնուն մէջ կը շփեն կ'ուտեն։*

Կամ թէ չիցէ՞ ձեր ընթերցեալ յօրէնսն՝ զի 'ի շաբաթս քահանայքն 'ի տաճարին պղծեն զշաբաթն, եւ անմեղք են։ Մատթ. ԺԲ. 5։

*Ասկէ զատ ապացո՞յց կուզէք հարկն օրէնքը լուծելուն. կարդացէ՛ք Մովսիսի օրինաց գրքերը, տեսէ՛ք, ի՞նչպէս Աստուած Մովսիսի բերնով կը հրամայէ՝ որ շաբաթ օրերն ալ զոհեր մատուցանեն քահանայք և տաճարին պէտք եղած*

(Ա) Եւ առնուցուք նաշիհ, և առնիցէք զայն երկոտասան պան. յերկուց տասանորդաց լինիցի պան մի. Եւ դնիցէք զնոսա երկուս նուէրս, վեց պան զմի նուէրն 'ի վերայ սեղանոյն սրբոյ առաջի տեառն. Եւ դիցես 'ի վերայ նուէրին կնդրուկ սուրբ և աղ. և եղիցին 'ի հաց յիշատակի զառաջաւոր տեառն։ Յաւուրն շաբաթու դնիցէք առաջի տեառն հանապազորդ յորդւոցն Իսրայէլի ուխտ յաւիտենական։ Եւ եղիցի Ահարոնի և որդւոցն նորա, և կերիցեն զայն 'ի տեղւոջ սրբում. զի սրբութիւն սրբութեանց է այն նմա 'ի զոհաւորացն տեառն, օրէն յաւիտենական. Ղևտ. ԻԴ. 5–10։

ծառայութիւններն ընեն, ինչպէս կը տեսնուի Թուոց ԻԸ. 9 համարին մէջ թէ ամէն յաւուրն շաբաթուց մատուաջիք երկուս գառինս տարեւորս անարատս, և երկուս տասանորդս նաշհւոյ զանգելոյ իւղով 'ի զոհ. և զնուէր ողջակիզին շաբաթուց 'ի շաբաթս, և 'ի վերայ հանապազորդ ողջակիզին, և զնորուն նուէրն ։

Բայց ասեմ ձեզ՝ զի մեծ քան զտաճարն է աստ ։ Մատթ. ԺԲ. 6 ։

Բայց ես՝ որովհետեւ քահանայից քահանայանալուն և տաճարին մէջ ինչ եղանակաւ, ինչ կարգով շինուելուն հրամայող Աստուածը, քան զտաճարն և քան զքահանայս մեծ եմ. ապա ուրեմն՝ նոցա շաբաթն աւրելով անմեղադիր եղած ատեններդ, ինձ բոլորովին անմեղադիր ըլլալու էք՝ երբ շաբաթուն, քահանայից, տաճարին և տիեզերաց ամենակալ Աստուածն եմ, և Որդի մարդոյ. և կարող եմ, ձեր խիստ մեծ համարած շաբաթ աւուր պահպանութեան պատուէրը մարդկային ազգին փրկութեան պէտքին համար լուծանել ։ Բաց յիշեցէք նաև, որ Աստուած շաբաթ օրը սահմանեց՝ որ մարդիկ այն աւուր մէջ ծառայական գործերէ ազատ՝ հոգևորին և բարեգործութեան հետեւին, և թէ Որդի մարդոյ շաբաթ աւուր սահմանողն ինք ըլլալով, այդ աւուր տէրն ալ է. այն օրը՝ եթէ ուզէ՝ կը գործէ, ինք շաբաթը մարդուն համար որոշեց՝ և ոչ թէ զմարդ շաբաթուն համար. և թէ ինքն իբրև Աստուած ինչպէս որ Դաւթի հրամայեց առաջաւորութեան հացն ուտել քահանայապետին թոյլ տալովն, և քահանայից ալ՝ 'ի հարկին տա–

ճարկին ծառայութիւն ընելով շաբաթը լուծել, նոյն իշխանութեամբ և նոյն հրամանաւն կը թողու՝ որ աշակերտք ալ շաբաթ օրն հասկ կորզեն և ուտեն, իրենց քաղցեալ մարմինը զօրացընելու կամ տկարութենէ ազատ պահելու համար, ըստ այնմ թէ.

Շաբաթ վասն մարդոյ եղեւ, և ո՛չ (եթէ) մարդ վասն շաբաթու. Մարկ. Բ. 27. Զի Տէր է շաբաթու Որդին մարդոյ. Մատթ. ԺԲ. 8. Եւ եթէ գիտէիք զինչ է՝ ողորմութիւն կամիմ, և ո՛չ զոհս, ապա ո՛չ դատապարտէիք դուք զանպարտսն։ Մատթ. ԺԲ. 7։

Իսկ եթէ դուք Ովսէի(1) մարգարէութիւնը կարդացած ըլլայիք, պիտի հասկնայիք թէ Աստուած զոհէ աւելի ողորմութիւնը կը սիրէ, և այն ատեն չը պիտի մեղադրէիք զիս՝ որ իմ խօսքերս լսելու համար եկեղեցիս եկող՝ և հացով անօթի եղողներուն թող տուած եմ ողորմութեամբ՝ որ չը խղճեն և 'ի պահանջել հարկին շաբաթի օրն գործեն, թէ իրենց մարմնոյն անհրաժեշտ և ամենաստիպողական պէտքին համար, և թէ, և որ ամենամեծն է, իրենց հոգեկան պիտոյից համար։

## Դ. Բժշկութիւն ձեռինն գօսացելոյ եւ այլոց ախտաժետաց բազմաց

Եւ գնացեալ (2) անտի Յիսուս, եկն 'ի ժողովուրդն նո-

(1) «Զի ողորմութիւն կամիմ և ոչ զպատարագ, [և զգիտութիւն Աստուծոյ՝ քան զողջակէզս» Ովս. Գլ. Զ. 6։

(2) Ղուկաս աւետարանիչն՝ աշակերտաց 'ի շաբաթու հասկ

չս ․ Մատթ. ԺԲ. 9. Եւ յետ Ղուկ. Զ. 6 ։ Եւ եղեւ ՚ի միւսում շաբաթուն մտանել նմա ՚ի ժողովուրդն՝ և ուսուցանել․ և էր անդ այր մի՝ և ձեռն իւր աջ գօսացեալ էր ։ Եւ սպասէին նմա դպիրքն և փարիսեցիք՝ թէ ՚ի շաբաթուն բժշկիցէ, զի գտանիցեն ամբաստանութիւն զնմանէ ։ Ղուկ. 6—7 ։

*Միւս շաբաթ օրն Յիսուս ելաւ հրէից ժողովարանը մտաւ ՚ի կափառնաում․ հոն աջ ձեռքը գօսացեալ մէկը կար․ դպիրներն ու փարիսեցիք կըսպասէին՝ որ Յիսուս գօսացեալը բժշկէ, որպէս զի շաբաթ օրուան մէջ բժշկութեան գործ կատարելուն համար չարախօսեն ։*

Հարցին զնա՝ և ասեն, եթէ պա՞րտ իցէ ՚ի շաբաթու բժշկել․ զի չարախօսեսցեն զնմանէ ։ Մատթ. ԺԲ. 10 ։

*Հարցուցին իրեն դպիրք և փարիսեցիք, ոչ թէ ուսանելու նպատակաւ այլ կեղծաւորութեամբ․ որպէս զի կամ բժշկութենէն արգիլեն զինքը՝ որով կը կարծէին թէ այդպէս նորա մեծ վայելչութեան փառքն յընդհանուր ծաւալելու առիթներ կը պակսէին իրմէն․ կամ եթէ բժշկէ, հրապարակեն չարախօսելով՝ որ ո՛չ միայն իւր աշակերտներն, այլ նոյն իսկ ինքը շաբաթը պահելու օրէնքը չը յարգեր․ կը վայլէ՞, պէ՞տք է որ շաբաթ օր բժշկութիւն ընէ մէկն ։*

Եւ նա գիտէր զխորհուրդս նոցա ․ Ղուկ. Զ. 8. Եւ նա ասէ ցնոսա ․ ո՞վ է ՚ի ձէնջ մարդ՝ որոյ իցէ ոչխար մի, և

*կորզել և ուտելուն պատմութիւնը ընելէն վերջը, կը յաւելու թէ Յիսուս միւս շաբաթուն ալ հրէից ժողովարանը մտաւ ուսուցանելու, ուր կը պատահի գօսացեալին ալ ։ Ղուկ. Զ. 6 ։*

անկանիցի այն 'ի խորխորատ 'ի շաբաթու, ոչ ըմբռնիցէ և յարուցանիցէ զնա։ Մատթ. ԺԲ. 11.

Յիսուս նոցա կեղծաւոր խորհուրդը գիտէր, ուստի (1) հարցուց թէ իրենց մէջէն միոյն ոչխարը շաբաթ օր խորխորատ ինկած ժամանակ՝ նոյն օրը չե՞ն վերցներ, ազատեր. անշուշտ կ'ազատեն։

Իսկ արդ՝ ո՞րչափ ևս առաւել է մարդ քան զոչխար. ապա ուրեմն պարտ է 'ի շաբաթու բարիս գործել։ Մատթ. ԺԲ. 12.

Իսկ արդ, քանի որ անբան կենդանի մը, որ իւր մեռնելուն կամ ապրելուն վրայ մտածմունք և վիշտ չունի, շաբաթ օրը կ'ուզէք խորխորատէն հանել, միայն թէ ձեր ընչաքաղցութեան կրից յագուրդ տալու յաջողիք. որչափ ևս առաւել կամենալու էք հիւանդ բանաւոր արարածի մը բժշկութիւնն ու առաքինութիւնը՝ որ կըզգայ իւր նեղութիւնը և իւր նմաններաց օգնութեանը կարօտ վիճակի մէջ է, և որ քան զոչխար և քան զամենայն անբան կենդանիս պատուականագոյն է յաշխարհի. պէտք է ուրեմն շաբաթ օր ամեն բարեգործութիւն ընելու չը խղճել, ինչպէս նաև այսպիսի հիւանդներ բըժշկելու հոգ տանիլ։

Յայնժամ ասէ ցայրն. Մատթ. ԺԲ. 13. Որոյ ձեռանն

(1) Ագահութիւններին և ընչասէր բարքերնին երեւնին տալու համար, վասն զի խորխորատ ինկած ոչխարի մը համար շաբաթ օր այնչափ հոգեր կը քաշէին և մարդատեաց լինելնուն խեղճ հիւանդին ոչ բժշկութիւնը կ'ուզէին և ոչ ալ բժշկին կ'ողոքէին որ զանի բժշկել հաճի։

գօսացեալ էր. Արի՛ կաց ՚ի մէջ. և նա յարուցեալ եկաց։ Ասէ ցնոսա Յիսուս. Հարցից ինչ ցձեզ. զի՞նչ արժան է ՚ի շաբաթու, բարի՞ ինչ առնել՝ եթէ չար գործել, ոգի՞ ապրեցուցանե՞լ եթէ կորուսանել, և նոքա լռեցին։ Ղուկ. Զ. 8—9։

*Յիսուս հրամայեց՝ որ գօսացեալը մէջ տեղ ելնէ կայնի, որպէս զի գոնէ տեսնողներուն գութը, կարեկցութիւնը շարժելով, շաբաթ օրն աուրթ բռնելով ՚ի զուր չը չարախօսեն զինքը․ և հարցուց թէ շաբաթ օր ի՞նչ ընել աղէկ կերևի իրենց․ բարի՞ք ընել, թէ չարիք գործել, մարդու մը կորստեա՞ն պատճառ ըլլալ, թէ նորա կենաց․ ասոր դէմ բան մը չունէին, ուստի լռեցին․ վասն զի, գիտէին որ ինչպէս շաբաթն զմարդ կը հանգստացնէ, նոյնպէս բարեգործքն ալ մարդուն միտքն ու խորհուրդն, հոգին ու մարմինն հանգիստ ու խաղաղ վիճակի մէջ կը դնեն։*

Եւ հայեցեալ շուրջ զամենեքումբք զայրագին. Ղուկ. Զ. 10. Տրտմեալ վասն կուրութեան սրտից նոցա. Մարկ. Գ. 5. Ասէ ցնա. Ձգեա՛ զձեռն քո. և նա ձգեաց, և հաստատեցաւ ձեռն նորա իբրև զմիւսն։ Ղուկ. Զ. 10։

*Յիսուս շուրջը նայեցաւ տեսաւ՝ որ ամենքն ալ հոգիով կուրցած՝ չեն ուզեր ճշմարտութեան անսալ և համոզուիլ՝ թէ շաբաթ օրը բարեգործութիւն ընելը պղծութիւն չէ՝ զայրացաւ նոցա կուրութեան և նախանձու վրայ, և հրամայեց որ գօսացեալ ձեռքն երկնցնէ, և երկնցնելուն պէս ալ բժշկուեցաւ։*

Եւ ելեալ արտաքս վաղվաղակի փարիսեցիքն՝ հերովդիա-

նոսօքն հանդերձ, խորհուրդ առնէին վասն նորա՝ թէ զիա՞րդ կորուսցեն զնա։ Մարկ. Գ. 6.

Հրէայք, փարիսեցիք և Հերովդէսը կեղծաւորութեամբ իբրև Մեսիա յարգող Հերովդիանոսք, կամ ըստ Որոգինեայ, Երոնիմոսի, Կիւրղի և այլոց, հրէից հարկերը ժողվող Հերովդէսի ըսպասաւորներն, այս գօսացելոյն յանկարծական բժշկութիւնը տեսածնուն պէս, քէն ու նախանձնին աւելի գրգռուեցաւ, մանաւանդ որ պարզամիտներ ալ այդ և ասոր պէս նշաններ տեսած ըլլալով՝ բոլորովին հաւատացած էին Յիսուսի. ուստի անոնց խորհրդակցութիւնն ալ՝ չահելէ յուսահատ, դուրս կելնեն և կը խորհին՝ որ իրենց նախանձու կրակը արծարծող բորբոքող Յիսուսը կորսնցունեն։

Իսկ Յիսուս աշակերտօքն իւրովք գնաց ՚ի ծովեզրն. եւ բազում ժողովուրդ ՚ի Գալիլեացւոց երթային զհետ նորա, եւ ՚ի Հրէաստանէ, եւ յԵրուսաղեմէ, եւ յայնկոյս Յորդանանու, եւ որ ՚ի Տիւրոսէ եւ ՚ի Սիդոնէ. բազում ժողովուրդ եկեալ լուեալ՝ որչափ ինչ առնէր, գային առ նա։ Մարկ. Գ. 7—8.

Իսկ Յիսուս իւր աշակերտներովը ծովեզրն ելաւ. ժողովուրդք՝ որ իւր քարոզութեանց ու հրաշից ականջալուր և ականատես, ետևէն գընացին. Հրէաստանէն, Երուսաղեմէն, Յորդանանու միւս կողմէն, փիւնիկեցւոց ծովեզերեայ մայրաքաղաքն եղող Տիւրոսէն (Սուրէն), և Քանանու Սիդոն որդւոյն շինած ծովեզերեայ Սիդոն քաղաքէն, (որն որ փիւնիկիոյ մէջ էր և Աւետեաց երկրին վերջին սահմաններուն մօտ)։

Եւ ասէ ցաշակերտսն իւր, զի նաւակ մի պատրաստա-

նաւ կայցէ նմա վասն ամբոխին՝ զի մի՛ նեղիցեն զնա։ Քանզի զբազումս բժշկէր, մինչ գալ խռնել զնովաւ՝ զի մերձեսցին առ նա, որք ունէին ախտս ինչ։ Մարկ. Գ. 9—10. Եւ բժշկեաց զամենեսեան. Մատթ. ԺԲ. 15.

*Յիսուս տեսաւ՝ որ ժողովուրդը ետեւէ ետեւ կը խռնէր իւր շուրջը և պիտի նեղեն զինքը, աշակերտաց պատուիրեց՝ որ նաւ մը պատրաստ ունենան, որպէս զի հոն ելնելով՝ հանգիստ ըլլայ, և որոնք որ այն ժամուն եկան, զամենքն ալ բժշկեց, պատուիրելով միանգամայն՝ որ մէկուն չը յայտնեն։*

Եւ այսք պղծք յորժամ տեսանէին զնա, անկանէին առաջի նորա, աղաղակէին և ասէին. Թէ դու ես Որդին Աստուծոյ. և նա յոյժ սաստէր նոցա, զի մի՛ յայտնի արասցեն զնա։ Մարկ. Գ. 11—12.

*Երբոր դիւահարներն Աստուծոյ Որդին Յիսուս կը տեսնէին, կեցնային նորա աստուածային ոտքը՝ կը խոստովանէին սարսափմամբ թէ ինք Աստուծոյ Որդին է, և իսկոյն դևերը մէջերնուն խոյս տալով դիւահարք կը բժշկուէին. Յիսուս ալ կը հրամայէր՝ որ մէկուն երևան չը հանեն, յօրինակ մեզ, որ բարիք մը ըրած ատեննիս շահասիրութեան նպատակ չունենանք, միանգամայն փառասիրութեան ախտով վարակեալ չըլլանք. և եթէ բարիք մը ըրած ատեննիս, ուրիշներուն նախանձը պիտի գրգռենք՝ զգուշանանք երևնալ ուզելէ. վասն զի, ուրիշներէն գովուելու և համբաւուելու սնափառութիւնը ունեցած ատեննիս առաքինութիւննիս կը վտանգի։ Ասոր համար էր որ Յիսուս ալ կարգիլէր դիւահարներուն՝ որ յետ բժշկութեան, բժըշ-*

Վուելնին գաղտնալը պահեն։ Ասկէց զատ Յիսուս ինքն արժան չէր սեպեր՝ որ դևերու խոստովանութեամբ փառաւորուի, վասն զի չարագործ մարդու մը գովեստն առաքինույ փառքը չաւելցներ։

Զի լցցի, որ ասացաւն ՚ի ձեռն Եսայեայ մարգարէի. Ահա մանուկ իմ՝ զոր ընտրեցի, և սիրելի իմ՝ ընդ որ հաճեցաւ անձն իմ. եդից զհոգի իմ՝ ՚ի վերայ նորա, և իրաւունս հեթանոսաց պատմեսցէ։ Մատթ. ԺԲ. 17—18։

Որպէսզի Եսայեայ մարգարէութիւնն ալ կատարուի՝ թէ այս Յիսուսը այնչափ խոնարհ է, այնչափ անփառասէր է՝ որ իւր աստուածային հրաշից գովեստ եւ համբաւ չը խնդրեր, այնպէս որ իւր երկնաւոր Հայրն իսկ կը հաճի իւր գործերուն եւ կ՚ախորժի անոնցմէ, իր ընտրածն ու սիրելին կոչելով զայն. եւ թէպէտ ՚ի բնութենէն յինքն կրէր զՍ. Հոգին, բայց երկնաւոր Հայրն ՚ի սէր Որդւոյն եւ ՚ի վկայութիւն ժողովրդեան, աղաւնակերպ ՚ի Յորդանան նորա աստուածային գլխին վրայ կիջեցուցնէ, որով աստուածային օծումն կ՚ընդունի Քրիստոս Յիսուս, եւ հեթանոսաց իրաւունք կուտայ՝ որ իրենք ալ հաւատան եւ Ս. Հոգւոյն շնորհօքն արդարանալով՝ արքայութեան ժառանգորդ ըլլան։

Ո՛չ հակառակեսցի և ո՛չ աղաղակեսցէ, և ոչ ո՛ք լուիցէ ՚ի հրապարակս զբարբառ նորա։ Մատթ. ԺԲ. 19։

Մարգարէն Յիսուսի հեթանոսաց իրաւունքը յարգելը գուշակելէն վերջը՝ կը քարոզէ նաեւ՝ որ տարապայման խոնարհութեամբ զինքը չընդունողներու դէմ բնաւ պիտի չըհակառակի, ինչպէս

որ չըլսուեցաւ ալ զինքը 'ի մահ դատապարտող քահանայապետին առջեւն, 'ի խըրատ մեզ՝ որ մարդոցմէ պատահած ամեն տեսակ նեղութեանց զրկանաց եւ չարեաց բարեաւ յաղթենք եւ վրէժխնդիր չըլլանք :

Զեղէգն ջախջախեալ ո՛չ փշրեսցէ ; և զպատրոյգն առկայծեալ ո՛չ շիջուսցէ · Մատթ. ԺԲ. 20 :

Եսայի՝ հոս կրկին Յիսուսի հեզութիւնը կը պատմէ . նա, կ'ըսէ, կարող ալ ըլլալով, չուզեր որ ջախջախեալ եղեգի պէս կործանելու մօտ հրէից ժողովուրդը եւ առկայծեալ ճրագի պէս մարելու մօտ հրէից ազգն, եւ քահանայութեան իշխանութիւնը տակն ու վրայ ընէ, այլ երկայնմըտութեամբ նորա դարձին կ'սպասէ, եւ եթէ խըստանան եւ անհաւան գտնուին, յայնժամ կըրաւամբ ջախջախեալ եղեգին չի խնայող, առկայծեալ պատրոյգէ բնաւ չ'արժող հռովմայեցւոց հզօր տէրութիւնը զօրենք կը ջախջախէ և կը շիջուցանէ՝ թագաւորութիւն և քահանայութիւն առհասարակ բնաջինջ բառնալով :

Այսպէս Յիսուս Քրիստոս կարի հեզութեամբ և երկայնմըտութեամբ վարուեցաւ հրէից հետ, մինչ գողգոթայի վրայ նոցա ձեռքով անկուած խաչին ստորոտը մեռաւ անմահն և գծոխոց շղթաներուն վրայ մարդկային ազգի փրկութիւնն յաղթական կանգնեց, յետ այնորիկ վրէժխնդիր եղաւ հրէից խստապարանոց ժողովրդին և նոցա Աստուծոյ սիրելի ըլլալու նախանձելի իրաւունքը՝ հեթանոսաց շնորհեց, և զանոնք անհնարին պատժովք դատապարտեց . ըստ այնմ թէ :

Մինչեւ հանցէ 'ի յաղթութիւն զդատաստան ։ Եւ յանուն նորա հեթանոսք յուսասցին ։ Մատթ. ԺԲ. 20-21 ։

*Եւ երբ այսպէս աստուածային վրէժխնդրութիւնն հասնի հրէից ժողովրդին վրայ, Աստուած ձեռք պիտի առնու հեթանոս ժողովուրդն որ յԱստուծոյ առաքեալ Յիսուս Քրիստոսի երկնային վարդապետութիւններն ընդունելով նորա ամենամեծ ողորմութեանն ու գթութեանն և անհուն բարութեանը վրայ պիտի դնեն յուսերնին և նովաւ միայն պարծին, և մկրտութեամբ աւազանին՝ հին Ադամայ ժառանգական մեղքէն պիտի ազատին, և զօրութիւն մը պիտի զգենուն դիւաց յաղթելու, և յոյս՝ յաւիտենական տանջանքներէն զերծ մնալու ։*



# ԳԼՈՒԽ ԺԱ.

ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ԱՌԱՔԵԼՈՑ ․ — ՔԱՐՈԶՈՒԹԻՒՆ ՓՐԿՉԻՆ Ի ԼԵՐԻՆՆ ․



## Ա. Ընտրութիւն առաքելոց

Եւ եղեւ ընդ աւուրսն ընդ այնոսիկ ել 'ի լեառն կալ յաղօթս, և հանէր զգիշերն 'ի գլուխ յաղօթսն Աստուծոյ ։ Ղուկ. Զ. 12 ։

*Բազմազբաղ միտքը, գործն ու վիճակը մինչև արգելքներ են աղօթքն բառ Աստուծոյ կամաց*

ւոր) Սիմոնի եղբայրն էր ։

Գ. Յակոբոս, (խաբող)․ սա եղբայր էր Յով-
հաննէս աւետարանչին, և 'ի միասին կըսուին
Բանէրեգէս որ է որդիք որոտման ։

Դ. Յովհաննէս․ (շնորհ, պարգև․) Յակոբոսի
հետ Զեբեդեայ որդիքն են ։

Ե. Փիլիպպոս, (Յուն. պատերազմող, երիվա-
րասէր) գալիլեացւոց Բեթսայիդա քաղաքէն էր։

Զ. Բարթողիմէոս, (Ջուր կշռողի որդի) ա-
ռաքեալ Հայաստանեայց ։

Է. Մատթէոս (Եբր. պարգև, նէք, տուրք)
կըսուի նաև Ղևի, և քան որ ըսուի Ալփէոսի որդին
էր, կըսուի և Ղևի Ալփեայ ։

Ը. Թովմաս, (Եբր. երկուորեակ, նոյն նշա-
նակութեամբ, Յուն. դիդիմոս)․ կամ՝ 'ի միասին
ծնած եղբայր մը ունեցողն է, կամ եթէ ոչ, իւր
ազգատոհմին մէջ իբր մականուն դրուած ըլլա-
լով, իրեն ալ նոյնը կոչուած է ։

Թ. Յակոբոս Ալփեայ․ ասիկայ Զեբեդեայ
Յակոբոսէն զանազանութեան համար՝ փոքր ըսուե-
ցաւ, վասն զի, Զեբեդեայ Յակոբոսն ալ՝ մեծ
կըսուէր ։ Այս փոքր Յակոբոսը կըսուի նաև աղ-
գար․ Ալփէոսին որդին էր, ինչպէս կը յայտնուի,
և որովհետև Աստուածածին կուսին քրոջ որդին
էր, կըսուի նաև Եղբայր Տեառն ։

Ժ. Սիմոն կանանացի․ վասն զի գալիլեացւոց
Կանա քաղաքէն էր, և որովհետև եբրայեցերէն
կանա նախանձ կը նշանակէ, ուստի կանանացին
ալ կը թարգմանուի նախանձայոյզ ։

ԺԱ. Յուդայ՝ փոքր ըսուած Յակոբին Երու-
սաղէմի առաջին եպիսկոպոսին եղբայրն ըլլա-
լուն, կըսուի Յուդայ Յակոբեան․ Առաջուց կը-

ուէր նաև Ղեբէոս ( քաջասիրտ , իմաստուն , և փառաբանութիւն : ինչպէս նաև Թադէոս , գովող՝ դաւանող ըստ Ասոր. կուրծք) . սա է հեղինակ կաթողիկեայց Թղթոյն և առաքեալ Հայաստանեայց :

ԺԲ. Յուդա Իսկարիովտացի . ասիկայ մականուն մ՚էր Յուդային , որ կամ Եփրեմի ցեղին երկրին մէջ Իսկարիոտ գեղէն ըլլալուն այսպէս ըսուած է , կամ Իսաքարայ ցեղէն ըլլալուն Իսաքարացի ըլլալուն տեղ դրուած է Իսկարիովտացին , և որ կը նշանակէ այր վարձուց , և յարմար մականուն մ՚է Յուդայի , որ իւր Տէրն երեսուն արծաթ վարձքով մատնեց հրէից :

Յուդայի վրայ աւետարանիչք միշտ պարսաւանօք կը խօսին . կերևայ՝ որ ագահութեան համար Քրիստոսի աշակերտիլ ուզած էր , ըստ որում արկղը ինք կը կրէր , և « Ոչ զի զաղքատաց փոյթ էր նմա, այլ զի գող էր » . ԺԲ. Յովհ . Տէրն մեր գիտէր ասոր ինչ գէշ մարդ ըլլալը , ուստի առաքելութեան մտած օրը սորա սրտին չարութիւնը չէր յանդիմանած . Յիսուս գիտէր . «Մին 'ի ձէնջ սատանայ է» ըսաւ . բայց զՅուդայ ընդունելովն՝ յայտնել կուզէր թէ թող կուտայ որ Յուդայի գործերը զինքը դատեն : Այսչափ մեծ համբերութիւն և մարդասիրութիւն ունէր Փրկիչն մեր :

Եւ էջեալ նոքօք հանդերձ 'ի տեղի մի դաշտային . Եւ ժողով աշակերտացն նորա ՝ և բազմութիւն յոյժ ժողովրդեանն , յամենայն Հրէաստանէ և յԵրուսաղէմէ ՝ և յայնմ կողմանէ ՝ և 'ի ծովեզերէն Տիւրոսի և Սիդոնի . որ եկին լսել 'ի նմանէ ՝ և բժշկել 'ի հիւանդութեանց իւրեանց . և նեղեալ

էին յայսոց պղծոց բժշկէին. Եւ ամենայն ժողովուրդն խնդրէր մերձենալ 'ի նա, զի զօրութիւն բղխեալ ելանէր 'ի նմանէ՝ և բժշկէր զամենեսին. Ղուկ. Զ. 17-19.

*Յիսուս լերան մէջ աղօթելէն և առաւօտուն երկոտասան առաքեալներն ընտրելէն վերջն՝ իջաւ լեռնէն վար, լերան ստորոտը տափարակ տեղի մը վրայ, հոն էին նաև իր աշակերտները. ժողովուրդն ալ հեռաւոր Հրէաստանէն, Երուսաղէմէն, Տիւրոսի և Սիդոնի ծովեզերեայ քաղաքներէն կուգային կը խռնէին իր շուրջը և բժշկութեան պէտք ունեցող ամեն տեսակ հիւանդներ կը բժշկուէին. ժողովուրդն ալ տեսնելով այս աստուածային գործութիւններն՝ որով հիւանդները կ'առողջանային, կը փափաքէին Յիսուսի մօտենալու։*

Բ. Քարոզութիւն փրկչին 'ի լերինն

Եւ տեսեալ զժողովուրդսն՝ ել 'ի լեառն. և իբրև նստաւ անդ՝ մատեան առ նա աշակերտքն նորա. Մատթ. Ե. 1.

*Երբոր լերան ստորոտը ժողովուրդին բազմութիւնը տեսաւ, լեռն ելաւ նստաւ. աշակերտներն ալ իրեն մօտն եկան։*

Եւ բացեալ զբերան իւր ուսուցանէր զնոսա և ասէր. Երանի աղքատաց հոգւով, զի նոցա է արքայութիւն երկնից. Մատթ. Ե. 2-3.

*Երանի, ըսաւ, հոգիով աղքատներուն։ Հոգի՝ կամքի տեղ դրուած է. ըստ այնմ, «Հոգին յօժար է, բայց մարմինս տկար»։ կամաւոր աղքատներու երանի կուտայ, այսինքն, հարստու-*

ջնեան մէջ անգամ աղքատի պէս խոնարհ ապ-րելով չը հպարտացողներուն և աշխարհի ունայ-նութեանց անձնատուր չեղողներուն, որոնք կը հաւատան՝ թէ աշխարհիս հարստութիւնն իրենը չէ, հապա իրենց հարստութիւնն Աստուած է. Աստուծոյ համար աղքատ եղողներուն է երկ-նից արքայութիւնը։

Երանի՜ հոգւով աղքատ եղողներուն. կը նշ-անակէ հոգւով կամ սրտով աղքատ ըլլալ, մեր 'ի սրբութենէ, 'ի գիտութենէ, յարդարութե-նէ ու ամեն հոգւոյ պտուղներէն մերկ, զուրկ ու կարօտ լինելն և մեր հոգևոր պարտքերն հատու-ցանելու անկարող ըլլալն զգալ ու իմա-նալ, Աստուծոյ մեր վրայ ցուցած սէրը յիշելով մեր ալ ընկերիս ցուցած եղբայրսիրութեան շատ փոքր բան լինելն գիտնալ, մաքսաւորին ու Պօղոսին ոտներուն փչինակն ունենալ.

Երկնից արքայութիւնը այսպիսեաց է։

Այն ատենի Հրէայք թերևս կը կարծէին թէ Մեսիայն զիրենք աշխարհի մէջ երջանիկ, հա-րուստ, իրենց թշնամեաց դէմ վրէժխնդիր լի-նելու, մարդիկներու արիւն թափելու հզօր և կարող վիճակի մէջ պիտի դնէր, և իրենք թեր-ևս այսպիսի թագաւորութեան մը կըսպասէին։ Բայց Յիսուս՝ Մեսիային (իր) թագաւորութեան ի՛նչ բան լինելն, և այդ թագաւորութեան ար-ժանի լինելու համար ինչ տեսակ հոգւոյ հարկաւո-րութիւն կենալն՝ այս խօսքով սորվեցուց։

Երանի սգաւորաց, զի նոքա մխիթարեսցին։ Մատթ. Ե. 4։

Աշխարհս՝ խաղացող, խնդացող և ուրախ զու-արթ մարդոց երանի կուտայ. իսկ Տէրն մեր՝

տղաւորաց ։ «Որչափ թերևս ասոր հակառակը կ'ակնկալէին ․ կարելի է Սողոմոնի պէս թագաւոր Մեսիա մը կուզէին, որ անոր նման մեծամեծ խնջոյքներ տայ, բայց Մեսիայն, Այր մի էր ի հարուածս, և գիտէ համբերել ցաւոց»։ Եսայի, ԾԳ. 3 ։

Ուստի, ձախորդութեան և թշուառութեանց մէջ անտրտունջ Աստուծոյ ապաւինող և իւր մեղաց ու իւր ներքին դառնութեանց համար բեկեալ և տրտում սիրտ կրող անձինք՝ այս երանութեան արժանի են, որոնց կրած զրկումները լիապէս պիտի հատուցուին երկնից մէջ, և իրենց մեղաց վրայ ապաշխարելով թափած արցունքնին իրենց համար երջանկութիւն և մխիթարութիւն պիտի պտղաբերեն յաւիտենից կեանքին մէջ, ուր ոչ արտասուք կայ և ոչ հեծութիւն՝ որ աղոյ եւ ցաւոց վախճանն է, և ժառանգող հոգիներու անվախճան մխիթարութիւն ։

Երանի հեզոց, զի նոքա ժառանգեսցեն զերկիր ։ Մատ. Ե. 5 ։

Մարդկային յօժարութիւնն, ամբարտաւանութիւնն և վրէժխնդրութիւնը ամեն խօսքի դէմ խօսք, ամեն հայհոյութեանց դէմ հայհոյութիւն, ամեն և մինչև փոքրիկ չարութեանց դէմ վրէժխնդրութիւն կուզէ ընել ։ Քրիստոս և քրիստոնէութիւնը՝ հեզութիւն կը պատուիրեն, այդ ամբարտաւան և անհամբեր և ապականեալ կրից դէմ՝ որք վայրապար շատ անգամ կը չարչարեն զմարդն ։ Աշխարհի ընթացքն անվերջանալի կռիւներու կը տանի զմարդն. իսկ Քրիստոսի սովրեցուցածը սրտի խոնարհութիւն է՝ որ

գեղեցիկ յաղթանակի մը կ՚առաջնորդէ զմարդն. "Մի՛ յաղթիր ՚ի չարէն, այլ յաղթեա բարեաւն չարին»: Վրէժխնդրութեամբ ձեռք բերած յաղթանակիդ վրայ զգացած ուրախութիւնդ՝ վաղանցիկ և երբեմն և շատ անգամ փշալից է. Հեզութեամբ տարած յաղթանակիդ պտուղներն անթառամելի են, և ձեռք բերած ցնծութիւնդ անզբաւական. որովհետև շատ անգամ դիմացինըդ ալ կը շահիս. ուրիշի չարեաց դէմ համբերելովդ՝ Աստուծոյ քով իրաւունք կուններս քու ո՛ր եւ է գործոյդ, գնացիցդ եւ մեղացդ եւ մարդկօրէն յանցանացդ վրայ Աստուծոյ ներողութիւնը բերելու, եւ այն ատեն կը ժառանգես ոչ աւետեաց՝ ուր մտնող Իսրայէլը միշտ երջանիկ չըկրցաւ լինել. այլ բուն երկիրն, երանելեաց օթեւանը:

Երանի՜ որ քաղցեալ և ծարաւի իցեն արդարութեան, զի նոքա յագեսցին. Մատթ. Ե. 6.

Ծարաւն եւ անօթին ջուրի եւ հացի կը քաղձայ եւ անոնցմով կը յագենայ. իսկ առաքինին կշտացունող հացն եւ ծարաւն անցունող ջուրն այն է՝ որ միշտ Աստուծոյ փառացն համար գործէ, Նորա փառքը հոչակէ, իւր եւ ընկերին սրբութեանն ու առաքինութեան ջանայ: Առաքինին արդարութեամբ կամ հոգեւոր արդիւնքներով կը յագենայ եւ անոնց կըփափաքի անօթիին եւ ծարաւին հացի եւ ջրոյ բաղձացածին պէս, եւ զօրս թէ՛ երկնից մէջ եւ թէ՛ երկրիս վրայ Աստուծմէ պիտի ստանայ.

Երանի՛ ողորմածաց, զի նոքա ողորմութիւն գտցեն։ Մատթ. Ե. 7։

Աստուած պիտի գթայ անոնց վրայ, վասնզի Աստուծոյ կընմանին. Քրիստոսի աչքը, Քրիստոսի սիրտը, Քրիստոսի ձեռքերն ունին. անոնք թշուառութեան արտասուք կըսրբեն, եւ որբին եւ այրիին հաց ու մխիթարութիւն կուտան։ Եւ Աստուծոյ ողորմութիւնը յազգաց ազգս իւր երկիւղածներուն վրայ պիտի ըլլայ։ Անոնք՝ որ իրենց նման եղբայրներն երկնքէն կրակ իջեցունել տալու կամ բնաջինջ ընելու բաղձանք ունին, Աստուծմէ ողորմութիւն պիտի չըգտնեն։ Մարդասէր եւ կարեկից մարդիկ կարեկցութիւն պիտի գտնեն։

Երանի այնոցիկ՝ որ սուրբ են սրտիւ, զի նոքա զԱստուած տեսցեն. Մատթ. Ե. 8.

Խորհրդով, սրտով, մտքով սուրբ եղողները զԱստուած կըտեսնեն. Աստուած կեղծաւորութիւնը կատէ, արտաքնայարդար սրբութիւնը բանի տեղ չըդներ, ներքին եւ սրտի սրբութիւն եւ մաքրութիւն ունեցողներն՝ ամենէն ծայրագոյն երանութեան, այսինքն, աստուածատեսութեան արժանի պիտի ըլլան։

Երանի խաղաղարարաց, զի նոքա որդիք Աստուծոյ կոչեսցին. Մատթ. Ե. 9.

Աստուծոյ եւ ընկերին հետ խաղաղութիւն պահողներուն համար կըսէ. Քրիստոսի պիտի նըմանին եւ անոր պէս ըստ աստիճանի կարելութեան որդիք Աստուծոյ պիտի ըսուին. վասնզի Աստուած պատերազմներէ եւ արիւնահեղու-

թիւններէ կը գարշի . եւ ինքն՝ որ Հայր խաղաղութեան է, բոլոր այս մարդկային ազգը թշուառացունող պատճառները, կռիւ, ատելութիւն և այլն վերջացունողներն եւ խաղաղութեան պատճառ եղողներն իրեն որդի կը համարի .

Երանի՜ որ հալածեալ իցեն վասն արդարութեան, զի նոցա է արքայութիւն երկնից ։ Մատթ. Ե. 10 ։

*Արդարը, միշտ արդարութիւն խօսողն՝ այս աշխարհիս մէջ տեղ չունի . ամեն տեղէ կը հալածուի, անոր հայրենիքն երկինքն է ։*

Եւ նա ամբարձ զաչս իւր յաշակերտսն իւր՝ և ասէ ։ Երանի՜ աղքատացդ հոգւով, զի ձեր է արքայութիւնն Աստուծոյ ։ Ղուկ. Զ. 20 ։

*Սրտով աշխարհիս ամեն վայելչութիւններէն հեռացող մարդն հոգիով աղքատ է, այնպիսւոյն համար է երկնից արքայութիւնը .*

Երանի՜ որ քաղցեալ էք այժմ, զի յագենայցէք ։ Ղուկ. Զ. 21 ։

*Դուք ալ որ արդարութեան ծարաւցած էք եւ հացի անօթեցածի պէս անոր կը ցանկայք, օր մը պիտի յագենայք ։*

Երանի՜ որ լայք այժմ, զի ծիծաղեսջիք ։ Ղուկ. Զ. 22 .

*Մի՛ կարծէք թէ արդարութեան եւ ճշմարտութեան համար հալածուած ատեննիդ ձեր արտասուքը կը մոռցուին . ո՛չ, այլ ձեր լացը խնդութեան պիտի փոխուի՝ երբ հալածեալները վարձատրելու ժամն հասնի .*

---

Երանի՜ է ձեզ, յորժամ նախատիցեն զձեզ մարդիկ, և յորժամ որոշիցեն զձեզ և նախատիցեն. Ղուկ. Զ. 22։ Եւ ասիցեն զամենայն բան չար զձէնջ սուտ վասն իմ։ Մատթ. Ե. 11։ Եւ հանիցեն անուն չար զձէնջ վասն որդւոյ մարդոյ։ Ուրա՛խ լերուք յաւուր յայնմիկ և ցնծացէ՛ք, զի ահա վարձք ձեր բազում են յերկինս. ըստ դմին օրինակի առնէին մարգարէիցն հարքն նոցա. Ղուկ. Զ. 23.

*Բայց երկու պայմանով է այս երանութիւնը. մէկ մը Աստուծոյ համար պիտի ըլլայ հալածանքը. մէկ մ՚ ալ չարախօսութիւնը սուտ պիտի ըլլայ. յանդուգն գործերու համար, անխոհեմութեան համար, չարութեանց համար հալածուողներն երանելի չեն. վասնզի, այն հալածումին իրենց անկարգութեան պատիժն է. այսպէս, այս երանութեան մէջ Փրկիչն աչքի ցանկութեան, այսինքն հարստութեան և անկարգ փափագին դէմ աղքատութեան սէրը ցցուց. մարմնոյ ցանկութեան դէմ՝ վշտակցութեան սէրը. սրտի ցանկութեան դէմ՝ որ աշխարհի փառքը կը փնտռէ, հալածանաց և արհամարհանաց սէրը ցըցուց։ Ուստի, թէպէտ ամեն քրիստոնեայ, բայց առաւել դուք առաքեալքդ, պարտաւոր էք այս առաքինութիւններն ունենալ, (հալածանաց տանել և ուրախութեամբ սպասել՝ որ անպարտ տեղը դոցա հայրերէն սպաննուած մարգարէից հետ՝ անթառամ պսակներ երկնքի մէջ Աստուծոյ ձեռքէն ընդունիք ՚ի գլուխ. ձեր)։ Գիտցէ՛ք որ զձեզ պիտի հալածեն, նախատեն, գէշ անուններ պիտի տան ձեզ, զձեզ իբրև խռովարար պիտի հայհոյեն ու զրպարտեն իբր չարագործ եւ բանտարկեն, ձեզ հետևողները պիտի չարչարեն և իմ անունիս համար՝ բան չը պիտի մնայ՝*

որ չըքաշէք . բայց դուք ցնծացէք եւ ուրախ եղիք . դուք մարտիրոսաց բրաբիոններն ու փառաց թագերը պիտի ժառանգէք , ձեր չարչարանքը ո՛րչափ շատ ըլլայ , ձեր վարձքն այնչափ առաւել կըլլայ : Մարտիրոսաց արիւնը եկեղեցւոյ սերմանիքն են , ձեր արիութիւնը և համբերութիւնը և իմ անուանս համար կրելիք նեղութիւններն այնչափ շատ պտուղ պիտի բերէ , որ դուք անոր վարձքը լիովին պիտի ստանայք երկնքի մէջ: Այսպէս եղաւ մարգարէից նկատմամբ , ասանկ պիտի ըլլայ ամեն ճշմարիտ քրիստոնէից , այլ մանաւանդ առաքեա՛լքդ՝ ձեզ նկատմամբ , որ աշխարհի աղը , լոյսն ու ճրագն էք :

Բայց վա՜յ ձեզ մեծատանցդ՝ զի ընկալայք զմխիթարութիւն ձեր . Ղուկ. Զ. 24 :

Վա՛յ անոնց՝ որ իրենց համար կապրին , կըճոխանան եւ աղքատն անտես առնելով իրենց հանգիստը միայն կը մտածեն, և կը կարծեն՝ թէ մխիթարութիւնը գտեր են իրենց հանգստութեան մէջ :

Վա՜յ ձեզ որ յագեցեալդ էք այժմ՝ զի քաղցիցէք. Ղուկ. Զ. 25 :

Դուք որ միայն ձեր կրից յագուրդ տալ գիտէք եւ բոլոր կրքերնիդ 'ի գործ դնելով՝ կըշտապինդ վայելած կը համարիք աշխարհի վայելչութիւնքը, չըվայելածի պէս պիտի ըլլաք . ամեն աղէկութեանց կարօտ պիտի մնաք , հացի և ջրոյ կարօտ եղածի պէս , և պիտի չըկրնաք ստանալ:

Վա՜յ ձեզ որ ծիծաղիք այժմ, զի սգասջիք և լայցէք։ Ղուկ. Զ. 25 ։

Դուք որ անկարգ ուրախութեամբ և շուայտութեամբ կ'ապրիք և կեանքերնիդ ծաղրու կանցունէք, սուգ և տրտմութիւն պիտի ըլլայ վերջերնիդ ։

Վա՜յ ձեզ յորժամ բարի ասիցեն զձէնջ ամենայն մարդիկ, զի այդպէս առնէին սուտ մարգարէիցն հարք նոցա։ Ղուկ. Զ. 26 ։

Քանի որ ուրիշներուն աղէկ երևնալու համար, անոնցմէ գովուելու համար միայն կըգործէք, վա՜յ ձեզ ։

Դուք էք աղ երկրի. ապա թէ աղն անհամի՝ իւ՞ աղիցի. ո՞չ ինչ ազդիցէ այնուհետեւ, բայց եթէ ընկենուլ արտաքս՝ և կոխան լինել ՚ի մարդկանէ ։ Մտթ. Ե. 13 ։

Աղը կերակրոյ համ տալու համար կըգործածուի . աղը՝ շատ բաներ եւ մանաւորապէս ձըկնեղէններն եւ մսեղէններն փտութենէ եւ ապականութենէ կըպահէ . ուստի Աստուծոյ ամենամեծ պարգեւներէն մէկն է ։ Յիսուս այս խօսքը աշակերտաց կուղղէ, զանոնք Աստուծոյ ամենամեծ պարգեւներէն մեծ կըհամարի . անոնք աղի պէս աշխարհիս ամեն կողմը պիտի ցրուին, տարածուին եւ զաշխարհ եւ զմարդիկ մեղաց եւ հոգեւոր ապականութենէ եւ փտութենէ պիտի պահպանեն . Նոքա քարոզութեամբ բանին կենաց, անձանց սրբութեան, համբերութեան և առաքինութեան օրինակաւ մարդոց սրտերն ու մտքերն Աստուծոյ շնորհօքը պիտի աղեն եւ համեմեն ։ Իսկ եթէ աղը անհամի, թէ՛ արեգա֊

կան եւ լծէ՛ անձրեւի տակ երկար ժամանակ մը-
նալով կամ ուրիշ պատճառաւ , ինչո՛վ պիտի ա-
ղուի . աղին համը երթալէն ետքը , իւր յատկու-
թիւնը կորսնցնելէն յետոյ , հողին եւ աղբին ան-
գամ անպիտան եւ վնասակար կըլլայ եւ անպը-
տուղ կընէ ։ (Ղուկ. ԺԴ. 15.) Համ չունեցող քա-
րոզիչ մը կամ գայթագղեցուցիչ առաքեալ մը եր-
կրին կամ ժողովրդոց աղը լինելու տեղ , հոտ
մահու կամ 'ի մահուանէ 'ի մահ ( Բ. Կորն.
Բ. 16. ) կըլլայ . անոնց օգտակար լինելու
տեղ վնասակար կըլլայ եւ պատճառ 'ի հոգե-
ւորս անպտուղ մնալուն. այնպիսին արժանի է կո-
խան լինել 'ի մարդկանէ եւ ընկենուլ արտաքս ։
Այսպէս է նաեւ հայր մը եւ մայր մը իւր զա-
ւակաց համար ։

Դուք էք լոյս աշխարհի . ո՛չ կարէ քաղաք թաքչել՝ որ
'ի վերայ լերին կայցէ ։ Մտթ. Ե. 14 ։

Դուք աշխարհի լոյսն էք . առաքեալք եւ
վարդապետք եւ քահանայք եկեղեցւոյ ( եւ բո-
լոր քրիստոնեայք ) հոգեւոր խաւարի և մահու
ստուերներու մէջ մնացողներուն՝ Աստուծոյ լոյ-
սը , գիտութիւնը . իմաստութիւնը եւ փրկու-
թեան ճանապարհը քարոզողներն են , ինչպէս ե-
րեւելի լոյսը մեր աչքին ու մեր բնակած աշխար-
հին ծառայողներն են արեգակը , լուսինն եւ
կամ ճրագներն . այսպէս աներեւոյթ լուսոյն արե-
գակներն , աստղերն ու ճրագներն են առա-
քեալք եւ վարդապետք եւ քահանայք , որ հո-
գիներն կը լուսաւորեն , կազնուացունեն ու կը
բարւոքեն , ամենակորոյս տխմարութենէ կազա-
տեն ։ Լոյս տուող մարմիններն , մանաւանդ մը-

ութեան մէջ ամենուն տեսանելի և ականերեւ-
ւն ; չեն կրնար պահուիլ, լերան վրայ շինուած
քաղաքի մը պէս՝ որ ամեն կողմէն ամենուն աչքին
առջեւն է . այսպէս առաքեալք, վարդապետք,
պաշտօնեայք եկեղեցւոյ եւ բոլոր քրիստո-
նեայք ամենուն տեսութեան առարկայներն են,
չեն կարող պահուըտիլ ; անոնց ամեն պակասու-
թիւնները կը տեսնուին . ուստի որչափ զգոյշ,
որչափ խոհեմ և որչափ սուրբ և արդար լինելու
պարտաւոր են . որ իրենց լոյսը ամեն կողմ սփռ-
ուի և տարածուի և զմարդիկ լուսաւորէ , ա-
նոնց ճառագայթած լուսոյն մէջ սուտերատեսակ
քան կամ գայթագղեցուցիչ հանգամանք չը պիտի
տեսնուի ։

Չէ ո՛չ լուցանեն ճրագ՝ և դնեն ընդ գրուանաւ , այլ
՚ի վերայ աշտանակի . և լոյս տայ ամենեցուն՝ որ ՚ի տանն
իցեն . Այնպէս լուսաւորեսցէ լոյս ձեր առաջի մարդկան ,
որպէս զի տեսցեն զգործս ձեր բարիս , և փառաւորեսցեն
զՀայր ձեր՝ որ յերկինս է ։ Մատ. Ե. 15—16 ։

Ձեր լոյսը գրուանի տակ դրուած աշտանակի
պէս չը պիտի ըլլայ . զձեզ ամեն մարդ մատնանիշ
պիտի ցուցնէ, ձեր իմաստութենէն ամեն մարդ
օգուտ պիտի քաղէ , ձեր լոյսը շատերուն սրտե-
րուն խորշերը պիտի լուսաւորէ . դուք աշտանա-
կի վրայ դրուած ու վառուած ճրագներ էք , ու-
րիշներու լոյս տալու սահմանուած . դուք ձեզի
համար միայն չը պիտի ապրիք , հապա ուրիշնե-
րուն համար ալ . դուք ինքզինքնիդ ցուցնելու
էք՝ ոչ ցուցամոլութեամբ և հպարտութեամբ ,
այլ ուրիշներն աստուծոյ ճամբան , լուսոյ աղբիւ-
րին եւ արդարութեան արեգակին առաջնորդե-

լու , և ձեր երկնաւոր Հայրը փառաւորել տալու համար . Եւ որպէս զի ձեր այս առաքինութեան մէջ յաջողիք ՝ պարտական էք բարի և առաքինի գործեր ցցնելու . անձին մէկ բարի օրինակը հազար պերճախօսութիւն կ'արժէ ։

Նախկին դարերու եկեղեցականաց և քրիստոնէից բարի վարմունքը քանի՛ քանի՛ միլիոնաւոր մարդիկ 'ի լոյս աստուածգիտութեան առաջնորդեցին . դժբաղդաբար միջին դարու և այժմու եկեղեցականաց և քրիստոնէից գրեթէ մեծ մասին անքրիստոնեայ ընթացքը , ո՛րչափ դայթակղութեան եւ մեր երկնաւոր Հօրը և Քրիստոսի սուրբ անունը փառաւորուելուն տեղ հայհոյուելուն պատճառ եղան և կըլլան միշտ ։ Եկեղեցւոյ մեծ և փոքր պաշտօնէից վարուց բարուց և գործոց պատմութիւնները և հաւատաքննութեանց և չարաչար հալածմունքներու սոսկալի նկարագրութիւնները կ'ապացուցանեն ըսածնիս ։ Ապա ուրեմն այնպէս վարուեցէք յաշխարհի ՝ որ զձեզ տեսնողը ձեր առաքինի կենացն համար երկնաւոր Հայրերնիդ փառաւորէ ։

Մի՛ համարիք եթէ եկի լուծանել զօրէնս կամ զմարգարէս. ո՛չ եկի լուծանել՝ այլ լնուլ ։ Մատթ. Ե. 17 ։

Այս խօսքը՝ կէս մը փարիսեցւոց և դպրաց , կէս մ' ալ աշակերտաց ուղղելով՝ չը կարծէք՝ որ , կըսէ , օրէնքը աւրելու կամ մարգարէական գըրուածոց հակառակելու եկած եմ . մանաւանդ թէ եկած եմ՝ որ նոր օրէնքով մը հինը լրացնեմ եւ մարգարէական գրուածներն ինձմով աւարտ գտնեն ։ Օրէնքներն ոչ թէ ջնջելու ՝ այլ կատարելու եկայ , կըսէ ՝ ուստի շատ ճշդիւ պէտք է

պահուին . վասնզի անհնար է որ մէկ կէտ մ՚ ալ մոռցուի .

Ամէն ասեմ ձեզ, մինչեւ անցցեն երկինք եւ երկիր, յովտ մի (որ նշանախեց մի է) ո՛չ անցցէ յօրինացն եւ ՚ի մարգարէից, մինչեւ այս ամենայն եղիցի ։ Մատթ. Ե. 18 .

Երկինք ու երկիր պիտի անցնին (ըստ Պետր. Ա. 24. և յայտնութեան ի. 11.) և օրէնքէն ու մարգարէութենէն Յովտ (1) մը կամ երբայեցւոյ գրերուն վրայ դրուած մէկ կէտը պիտի չ՚անցնի, որ չըկատարուի ։ Օրէնք ըսելով Տասնաբանեայ օրէնքը կը հասկնայ, զոր ո՛չ միայն չաւրեց, այլ և կատարելագործեց . դատաստանական օրէնքն ալ կատարելագործեց, ժամանակաւոր պատժոց տեղ՝ յաւիտենականը սահմանելով . իսկ ծիսական օրէնքը, իրաւ, եղծուեցաւ, բայց ինչպէս պատկերահան մը պատկեր քաշելու համար առաջ գիծեր կը չինէ, Քրիստոսի քով ծիսականն ալ անանկ գծեր էին . պատկերահանը պատկերը չինելէն վերջը առջի գծերը կանհետանան, այսպէս Քրիստոս ալ նոր օրէնքը գծելէն ետքը, ծիսական գծերն աւրեց . որովհետև պատկերահանին գծերը բուն իսկ պատկերին համար է, երբ պատկերը՝ կը նկարի . ա՛լ գծերուն պէտք չիմնար ։

Որ ոք լուծցէ մի ինչ ՚ի պատուիրանացս յայսցանէ ՚ի փոքունց, եւ ուսուսցէ այնպէս զմարդիկ, փոքր կոչեսցի յարքայութեան երկնից . իսկ որ արասցէ՝ եւ ուսուսցէ, նա մեծ

(1) Յովտ—եբրա հրէից նշանագրերուն տասներորդը եւ ամենէն փոքրագոյնն է ;

կոչեսցի յարքայութեան երկնից : Մատթ. Ե. 19 :

իմ ձեզի սորվեցուցած պատուէրներէս մէկը ո՛վ որ լուծէ ու անանկ սորվեցունէ (յաչս մարդկան ամենամեծ կայսր կամ քահանայապետ կամ մեծ մարդ մը համարուած լինի), այնպիսին փոքր պիտի կոչուի Աստուծոյ թագաւորութեան մէջ. իսկ ամբողջ սորվեցունողն ու գործողը մեծ պիտի կոչուի, թէ և յաչս մարդկան անպատիւ սեպուած իսկ լինի :

Բայց ասեմ ձեզ. զի եթէ ո՛չ առաւելուցու արդարութիւն ձեր առաւել քան զդպրացն և փարիսեցւոց, ո՛չ մտանիցէք յարքայութիւն երկնից : Մատթ. Ե. 20 :

Դպիրներուն և փարիսեցիներուն մի՛ նայիք կ՚ըսէ, որոնք ուղիղ կը քարոզեն՝ բայց ծուռ կը գործեն, ձեր արդարութիւնը անոնցինէն պէտք է աւելի ըլլայ, կեղծաւորութիւն գործածելու չէ. անոնք արտաքնայարդար էին, արդար չէին, բայց մարդոց արդար կերևէին, իսկ դուք սրտանց պէտք է արդար և սուրբ լինիք :

Լուարուք զի ասացաւ առաջնոցն, թէ մի՛ սպանաներ. զի որ սպանանիցէ՝ պարտական լիցի դատաստանի : Մատթ. Ե. 21 :

Ամենէն փոքր պատուիրանին համար ամենէն մեծ զգուշութիւն ընելու է. Ադամայ պատուիրանը մէկ ծառի մը պտուղէն չուտելն էր : Փարիսեցիք միայն գործքը պատժոյ արժանի կը համարէին. զորօրինակ՝ մարդասպանութիւնը, շնութիւնը և այլն. իսկ Քրիստոս այս մեղքերուն պատճառները նախապէս կը դատապարտէ, ու անոնց սորվեցուցածներուն սխալները կը յայտ-

նէ, երբ կ'ըսէ թէ.

Այլ ես ասեմ ձեզ. Եթէ ամենայն որ բարկանայ եղբօր իւրում տարապարտուց, պարտաւոր լիցի դատաստանի. եւ որ ասիցէ ցեղբայր իւր յիմար, պարտաւոր լիցի ատենի. եւ որ ասիցէ ցեղբայր իւր մորոս, պարտաւոր լիցի ՚ի գեհենն հրոյն: Մատթ. Ե. 22.

Քրիստոս աստով վեցերորդ պատուիրանին հոգին կամ սկզբնապատճառները կիմացունէ, վասնզի մարդը գործքէն, իսկ Աստուած սրտէն և երիկամունքէն և այն սիրտերէն բղխած խօսքերէն կը քննէ, զի գիտէ թէ մեր խօսքերն ո՛ր գործոց կը տանին զ՚մեզ.

Քրիստոս՝ մարդասպանութիւնը կամ վեցերորդ պատուիրանին դէմ գործելը այսպէս կը բացատրէ. Նախ՝ սրտի մէջ եղբօր դէմ, (ընդարձակօրէն բոլոր մարդոց դէմ) անիրաւ բարկութիւն, քէն և ոխ պահել. երկրորդ՝ գէշ խօսքերով կամ ընկերին անունը վատահամբաւելով՝ սիրտ ցաւցունել, կամ զուրիշը բարոյապէս ըսպաննել. այս տեսակ վարմունքները մարդասպանութիւն կը համարուին:

Հին օրինաց մէջ սպանութիւնը արգիլուած էր, և գործնական մեղքը մեղք էր. բայց ես կըսեմ որ ՚ի զուր կամ տարապարտ եղբօրը բարկացողը դատաստաններու, ատեաններու պարտաւոր պիտի ըլլայ. ո՛վ որ մինչև անգամ եղբօրը յիմար ըսէ, (կամ ըստ քաղդէացւոց ռակա՝ որ յիմար, բախած, խելայեղ կը նշանակէ), նոյնպէս ծերակուտի դատաստանին պարտաւոր պիտի ըլլայ: Իւր եղբօրը մորոս (շաշկըն, խենթուկ) ըսօղն ալ գեհենի կրակին պարտաւոր պիտի ըլլայ:

Գէ, կամ արաբերէն ձէ, ձոր ըսել է. Հին-նոմ յատուկ անուն է, և գեհեն, հիննոմայ ձոր ըսել է, ուր Մողոք անուն պղնձէ կուռքը կը կե-նար երբեմն, և զոր կրակով տաքցնելով, նորա հրաբորբոք դրկաց մէջ տղաքներ կը նետէին 'ի զոհ։ Իսրայելի կռապաշտութեան ատեն այրը-ւող տղայոց ձայնը խափանելու համար թմբուկներ կը զարնէին. զորս Թօֆ կանուանէին, այս պատ-ճառաւ նոյն տեղին Թօֆէթ ալ կըսուի։ Այս տեղս ետքի ժամանակները հրէից շատ գարշելի եւ սոսկալի կ'երևէր և այլաբանութեամբ ալ դժոխք կ'իմացուէր. վերջը չարագործաց մարմիններն և քաղաքին աղտեղութիւններն հոս կայրէին ուսկից և ճէհէննէմ ըսուեցաւ ըստ արաբաց կամ տաճկաց։

Եթէ մատուցանիցես զպատարագ քո 'ի վերայ սեղանոյ, և անդ յիշեսցես՝ եթէ եղբայր քո ունի ինչ խէթ զքէն. թո՛ղ զպատարագն քո առաջի սեղանոյն. և՛րթ նախ հաշտեա՛ց ընդ եղբօր քում, և ապա եկեալ մատուսջի՛ր զպատարագն քո։ Մատթ. Ե. 23—24։

Յիսուս այնպէս մարդասպանութեան կամ ըս-պանութեան մեղքը բնաջինջ ընել կուզէ՝ որ մին-չեւ անգամ եղբօր դէմ եղած ինչ եւ իցէ խէթ աններելի կըհամարի եւ մեծ կըգրէ եւ իրենն նուի-րեալ զոհը կամ պաշտօնը չընդունիր, մինչեւ որ եղբայրն իւր եղբօր պակասութեան անմեղադիր չըլլինի, նորա սիրտը չ'առնու եւ չըհաշտուի ա-նոր հետ. ինք ալ Յիսուս այսպէս ըրաւ, խաչին վրայ անձին հիանալի պատարագը մատուցանելէ յառաջ՝ մախացող հրէից ազգին սիրտը կակղելու եւ իւր եւ նոցա մէջ խէթ չըկենալուն հասկցունե-լու համար, խնդրեց Հօր Աստուծմէն որ նոցա

անգիտութեան մեղաց եւ աստուածապաշտութեան յանցանաց ներքէ, յետոյ ուրեմն ինքզինք Հօր Աստուծոյ պատարագ ընծայեց մեռանելով ՚ի խաչին. Ըսել է թէ պատարագ, զոհ եւ աղօթք ոչ ինչ են յաչս Աստուծոյ, քանի որ սրտի եւ հոգւոյ անկեղծութեամբ եւ սրբութեամբ չըկատարուիր, եւ թէ սուրբ սիրտը քան զզոհ հաճոյ է Աստուծոյ։

Լե՛ր իրաւախոհ ընդ ոսոխի քում վաղվաղակի, մինչդեռ էցես ընդ նմա ՚ի ճանապարհի. գուցէ մատնիցէ զքեզ ոսոխն դատաւորի, և դատաւորն պահապանի և արկանիցես ՚ի բանդ. Մտթ. Ե. 25.

Կուզէ տէրն մեր ըսել՝ որ գժտութիւն մը տեղի ունենալուն պէս նայէ՝ որ հաշտուիս ոսոխիդ հետ, չըլլայ որ գժտութեանդ վախճանը զքեզ բանտ ձգէ։ Դեռ աշխարհիս մէջ եղած ատենդ որ երկնքին ճամբան է, նայէ՝ որ Աստուծոյ հետ հաշտուիս, չըլլայ որ դատաստանի օրուան հասս, ու բանտը կամ գեհեանը իյնաս, որ է դժոխոց տանջանքը.

Ամէն ասեմ քեզ. ո՛չ ելանիցես անտի, մինչև հատուցանիցես զյետին նաքարակիտն։ Մտթ. Ե. 26։

Այս «մինչեւ հատուցանես»ըն կընշանակէ, ըստ եբրայական ոճոյ, յաւիտեանս յաւիտենից պարտաւոր մնալով չես կրնար ելնել այն տեղէն։ Քեզ ո՛չ օգնութիւն, եւ ոչ պապակեալ շրթանցդ կաթիլ մը ջուր տուող կայ հոն։

Ուրեմն պարտական եմք ո՛չ խօսքով և ո՛չ խորհրդով մեր ընկերին հետ չխռովելու, եւ անոր վնաս չտալու եւ անոր դէմ չբարկանալու եւ

զանի չվշտացունելու . վասնզի եթէ խորհրդածեալ խելք ունենանք նէ, աղօթքը ու պատարագը պիտի թողունք, այսինքն, ամեն բանէ յառաջ անոր հետ պիտի հաշտուինք. վասնզի, ամենէն աւելի Աստուծոյ ուզածը՝ սուրբ սէրն ու հաշտութիւնն ու խաղաղութիւնն է ։

Վէճերն ու դատաստաններն իրաւախոհ չըլլալէն կըծագին, ուստի իրաւախոհ ըլլալ ջանալու է . առած է քրիստոնէութեան մէջ, թէ՝ ամենէն գէշ իրաւախոհութիւնը ամենէն աւելի վաստկուած դատէ մը աւելի աղէկ է ։

Լուարուք զի ասացաւ, մի՛ շնար ։ Բայց ես ասեմ ձեզ զի ամենայն որ հայի 'ի կին մարդոյ առ 'ի ցանկանալոյ նմա, անդէն շնացաւ ընդ նմա 'ի սրտի իւրում։ Մատթ. Ե. 27-28։

Ամեն մեղք իւր արմատէն կամ սկզբնաւորութենէն պէտք է մաքրել, շնութիւնը անպարկեշտ հայեցուածքէն կըծագի . ուստի ակնարկն համեստացունելու է ։

Եթէ ակն քո աջ գայթագղեցուցանէ զքեզ, խլեա՛ զնա՝ և ընկեա՛ 'ի քէն. զի լաւ է քեզ եթէ մի յանդամոց քոց կորիցէ, և մի՛ ամենայն մարմինդ քո անկանիցի 'ի գեհեն ։ Եթէ աջ ձեռն քո գայթագղեցուցանէ զքեզ, հա՛տ զնա՝ և ընկեա՛ 'ի քէն. զի լաւ է քեզ եթէ մի յանդամոց քոց կորիցէ, և մի՛ ամենայն մարմինդ քո երթիցէ 'ի գեհեն ։ Մատթ. Ե. 29-30 ։

Այնչափ զգուշութիւն ընել կը հրամայէ մեղքերու, որ եթէ զգուշութեան ուրիշ ճար չըլլայ, մինչեւ անգամ մեր ամենէն սիրելիներէն եւ ամենակարեւոր սեպուած բաներէն, որք կրնան մեղաց առիթ ըլլալ, հրաժարիլ կը հրամայէ բո-

բոլորովին ․ աչք եւ ձեռք խլելու հրամանը՝ կ՚անկներկէ մեր սիրելիներն եւ մեր աղէկ համարած բաներն, որոնցմէ հրաժարելու ենք՝ քանի որ մեզ մեղք կ՚առթեն։

Զմեզ գայթակղեցունող կամ Աստուծոյ ճամբէն զմեզ օտարայնող մեր ամեն կիրքերը ճաշակներն ու ցանկութիւններն եւ չար բնաւորութիւնները պէտք է խլենք եւ հանենք մեր սրտերէն, թէ եւ զանոնք հանելու ատեն աջ ձեռքը կամ աջ աչքը կտրելու ժամանակ զգացուած ցաւերու չափ ցաւեր ալ իմանալու ըլլանք։ Ոչ ապաքէն շատ տեսակ հիւանդութիւններ կան, որ բոլոր մարմինին չածանցելու համար վիրաւոր եւ փտտած ոտքերն ու ձեռուըներն եւ ուրիշ մասունք կըկտրուին, եւ այդ անդամոց կտրուիլը կենաքի համար հարկաւոր է, եւ ո՛րչափ ծանրալ լինի, հիւանդին հանդուրժելն անհրաժեշտ է։ Բնաւորեալ չար կրքերէն շատ դժուարաւ կրնայ բաժնուիլ մարդ․ բայց Աստուծոյ արքայութիւնը մտնելու եւ բոլոր մարմնով դժոխք չ՚երթալու համար շատ կարեւոր է այդ արիութիւնն ՚ի գործ դնել։ Այսպիսի մեծ փոփոխութիւն կրող մարդուն վարձքը շատ մեծ կըլլայ, զի փրկութեան եւ դարձի եւ իւր հոգին չըկորսնցունելու համար մեծ քաջութիւն գործած կըլլայ։ Ինչպէս այն արի զինուորն՝ որ թշնամւոյն յաղթելու եւ իւր հայրենիքը փրկելու համար պատերազմի մէջ աննկարագրելի քաջութեամբ կռուելով, իւր ոտքին կամ ձեռքին կամ աչքին կորսուելուն անվեհեր սրտով կը տանի, ամեն զինուորակիցներէն աւելի փառք կըստանայ և ամենէն աւելի հայրենակցաց երախտագիտութիւնն ու պսակները կը ժա-

ռանգէ՝ յաղթանակաւ իւր հայրենիքը մտած ատեն. այնպէս այս կենցաղոյս մէջ մեր հոգւոյն սպառնացող թշնամւոյն մոլութեան դէմ, իւր աչքին ձեռքին եւ այլն չափ սիրելի բաները զոհելով երկինք մտնող քրիստոնէին փառքն ու յաղթանակն ու պսակը ո՞վ կարէ նկարագրել ։ Ինչպէս զինուորին ամենէն փառաւոր յաղթանակն իւր կորսուած թեւը կամ ոտքը կամ խլուած աչքն է, այնպէս քրիստոնէին յաւիտենական և ամենափառաւոր յաղթանակը իւր սրտէն խլուած մոլեկան բնաւորութիւններն են ։

Առաջէն ասացաւ, եթէ որ արձակիցէ զկին իւր՝ տացէ նմա զարձակմանն։ Բայց ես ասեմ ձեզ, եթէ ամենայն որ արձակէ զկին իւր առանց բանի պոռնկութեան՝ նա տայ նմա շնալ. և որ զարձակեալն առնէ շնայ ։ Մտթ. Ե. 31-32 ։

Հին օրինաց մէջ զանազան պատճառներով մարդ իր կինը կ'արձակէր և արձակման թուղթ կուտար. Քրիստոս այնքան սէր կը հրամայէ՝ որ այս բաժանումը գրեթէ անհնար կընէ, եւ եթէ ըլլայ ալ, սարսափելի յանցանքի մը համար, տակաւին հրաման չ'տար ուրիշ մը առնելու ։ « Եթէ այր արձակէ զկին իւր եւ արասցէ այլ շնայ » ։ Հին օրինաց մէջ կինը ապահարզանի թուղթն 'ի ձեռին ուրիշ այր մը կրնար առնուլ. Նոր օրինաց մէջ արգիլուած է այս, որպէս զի կինն ու այրն իրարու միշտ հաւատարիմ մնան. « Եւ որ զարձակեալն առնէ՝ շնայ, և կին եթէ ելցէ յառնէ իւրմէ և եղիցի առն այլում շնայ ». Մարկ. Ժ ։ Բաժանումն ու արձակումը տարբեր բաներ են, այր և կին կրնան բաժնուիլ ժամանակաւոր, իսկ արձակուիլ՝ ոչ. և բաժանումը զերար յուզ-

ղութիւն կոչելու համար է ըստ Առաքելոյն ։ Օրինաց այս պատուիրանը կը կատարելագործէ Քրիստոս ․ փարիսեցիք սադուկեցիք և իրենց հետեւողները կինը միմիայն իրենց տռփանաց յագուրդ սահմանեալ կը նկատէին ․ առն և կնոջ պաշտօնը շատ մեծ և շատ ծանր է , անոնք լծակից պէտք է լինին այս կենաց առապարին վրայ , կենաց բեռն 'ի միասին բառնալու ․ անոնց պաշտօնը վսեմ է ․ ուստի մարդս ո՛չ հարևանցի ընտրելու է իւր լծակիցն , և ո՛չ թեթևութեամբ կամ դիւրութեամբ արձակելու է ․ Անոնք տեսակ մը Աստուծոյ նախախնամութեան պատկերներ են , 'ի պատկեր Աստուծոյ ստեղծեալ մարդը պիտի ծնանին , կրթեն և սնուցանեն ․ այր և կին ընտանիք պիտի կազմեն , եւ ընտանիքները ՝ բոլոր մարդկային սեռը ․ ուստի մարդկային սեռը կատարելագործել ՝ ընտանիքներ կատարելագործել ըսել է ։ Իւր կինը ստէպ փոխող և մէկէն աւելի կին ունեցող այրը ՝ հայր չէ ․ իւր այրը ստէպ փոխող և մէկէն աւելի այր ունեցող կինը՝ մայր չէ ․ մարդկային ազգի խստասրտութեան ժամանակի օրէնք էր Մովսիսի ձեռօք տրուած ․ բայց 'ի սկզբանէ այսպէս չէր , այլ մէկ մարդկան մէկ կին տրուած էր ․ հրէայք խստասիրտ էին և կնաթողութիւնը սովորութիւն դարձած էր մէջերնին ․ քրիստոնեայք բարեսիրտ պէտք է ըլլան , և այր և կին իրարու պակասութեանց ներող ։

Ի՞նչ կը սորվի այն զաւակն , երբ իւր հօրը ճակատին վրայ անվախճան ատելութիւն իւր մօրը դէմ և մօրը սրտին մէջ անսպառ յուսահատութիւն կամ կեղծաւորութիւն իւր հօրը դէմ տեսնէ ․ Այսպիսի ծնողաց ծնունդն ի՞նչ կըլլայ ․ երբ

ընտանեաց յարկերու ներքև տղան անմեղ անբիծ չը մնանի , երբ փոխադարձ վստահութեան գաղափարը մարմնաւորեալ չը տեսնէ , ի՞նչպէս տղան մարդասէր , ազգասէր և բարեսիրտ կըլլայ . Թող որ ծնողաց անվերջանալի անհաշտութիւններն ու գժտութիւնները որդւոց դաստիարակութիւնը բարձի թողի կընեն. և ահա՛ չար քան զծնողն շատ մը զաւակներ կը յառնեն փոխանակ հարց . տե՛ս թէ մարդիկ ի՜նչպէս չար , անառակ եւ անպիտան կըլլան . տե՛ս ուրեմն թէ Քրիստոս ի՛նչպէս ամեն բան ՚ի հիմանց և յազգերաց եւ ՚ի տարերաց կամ յըսկզբանց կը վերանորոգէ :

Դարձեալ լուարուք , զի ասացաւ առաջնոցն . Մի՛ երդնուցուս սուտ , այլ հատուսցես Տեառն զերդմունս քո : Այլ ես ասեմ ձեզ՝ ամենեւին մի՛ երդնուլ . մի՛ յերկինս՝ զի աթոռ է Աստուծոյ : Եւ մի՛ յերկիր՝ զի պատուանդան է ոտից նորա , եւ մի՛ յԵրուսաղէմ՝ զի քաղաք է մեծի արքային : Եւ մի՛ ՚ի գլուխ քո երդնուցուս, զի ո՛չ կարես մազ մի սպիտակ առնել՝ կամ սեաւ : Մտթ. Ե. 33—36 :

Սուտ երդումն ընել կարգիլէ. հրէայք ծերոց աւանդութեամբ միմիայն մեծ բաներու համար Աստուծոյ անուամբ եղած երդումը՝ երդումն կը համարէին . այսպէս կը մեկնէին երրորդ պատուիրանը , իսկ խօսքերու մէջ ընդհանրապէս երդնուլն ու երդումն չը բռնելը ներուած էր . Երուսաղեմի , երկնքի , գլխու կամ կեանքի եւ երկրի վրայ երդնուլը սովորութիւն դարձած էր , եւ խօսքի մէջ առանց խղճի կ՚ընէին այս երդումներն . Քրիստոս կըցցնէ թէ արարածներն՝ որ Աստուծոյ կըվերաբերին , կամ Աստուծոյ թագաւորին քաղաքն են, կամ անոր աթոռն են, կամ անոր

տաքին պատուանդանն են ․ և կամ անոր պար-գեւը, ինչպէս նաև կեանքդ, կամ ըստ արեւելեան ոճոյ՝ գլուխդ, որուն մէկ մազը չես կրնար սպիտակցնել կամ սեւցունել, որովհետեւ Աստուծոյ գործն է, և Աստուած միայն կրնայ իշխել անոր․ բոլոր ասոնց և ուրիշ բաներու վրայ երդումն ընելն երրորդ պատուիրանին վերաբերելով՝ Քրիստոս կը հրամայէ բնաւ սուտ և վայրապար տեղն երդումն չընել ։ Ասով չարգիլեր դատաստանաց մէջ ճշմարտութիւնը յայտնելու համար երդնուլը․ Պօղոս առաքեալն իւր խօսքերուն մէջ շատ անգամ Աստուծոյ անունը վկայութիւն կը բերէ․ ճշմարտութեամբ եւ պէտք եղած տեղն երդումն Մովսիսի ձեռօք Աստուծոյ հրամանն էր․ բայց ձեր այոն՝ այո՛, և ո՛չն ալ՝ ոչ պիտի ըլլայ կը յաւելու Քրիստոս․ դուք քրիստոնեայքդ այնքան ճշմարտախօս պիտի ըլլաք որ երդման հարկ չը պիտի մնայ, ձեր խօսքերը վկայեալ ճշմարտութիւններ պիտի ըլլան․ դուք երբոր ձեր կեանքին մէջ իններորդ պատուիրանը « մի՛ սուտ վկայեր » ճշդիւ գործադրելու ըլլաք, ալ ոչ ոք ձեզ երդումն ընել կը հարկադրէ․ ո՛վ որ կեանքին մէջ բնաւ սուտ չէ՛ խօսած, անոր վկայութեան ամեն մարդ հաւատացած է, անկէ աւելին, այսինքն, ստախօսութիւնն 'ի չարէն է, սատանայի գործ է, ըստ այնմ թէ

Այլ եղիցի ձեր բան, այոն՝ այո, և ոչն՝ ոչ․ զի որ աւելին քան զայն 'ի չարէն է ։ Լուարուք զի ասացաւ․ ական ընդ ական, և ատամն ընդ ատաման ։ Այլ ես ասեմ ձեզ, մի՛ կալ հակառակ չարին․ այլ եթէ ոք ածիցէ ապտակ յաջ ծնօտ քո՝ դարձո՛ նմա և զմիւսն ։ Եւ որ կամիցի ոք դատել

և առնուլ զշապիկս քո , թո՛ղ ՚ի նմա և զբաճկոն քո ։ Եւ որ տարապարհակ վարիցէ զքեզ մղոն մի , երթ ընդ նմա եր– կուս ։ Մտթ. Ե. 37—41 ։

Մովսիսական օրէնք էր այս . Ելից ԻԱ. 18—37. Ղևտ . ԻԴ. 20 . եւայլն համարներու մէջ գրուած . « ակն ընդ ական , ատամն ընդ ատամանս» . Եւ քաղաքական իշխանութեան ալ կանոն մը . Եւ է ցարդ և պէտք՝ է իրաւամբ ըլլայ . քանզի առանց այս կանոնի , արդարութիւն անկարելի է . սա– կայն դպիրք և փարիսեցիք իւրաքանչիւր անհա– տի մէջ ամենափոքր բաներու համար ալ այս կա– նոնը գործադրել կ'ուսուցանէին . ասով անվերջա– նալի կագ , կռիւ և վէճ տեղի ունեցած ու մուտ գտած էին և սէրն հեռացեր էր ընկերութեանց մէջէն ։

Քրիստոս՝ ապտակ երեսիդ զարնողին , շա– պիկդ կամ բաճկոնդ պահանջողին և տէրութեան գործերու համար զքեզ տարապարհակ ( Թագաւո– րական գործի համար անգարիայ տանողին ) վարողին՝ տեղի տուր կըսէ վէճը լմնցունելու և մեծամեծ ու անվերջանալի հակառակութեանց առջևն առնելու համար , բայց իրաւունքդ զո– հել չըր պատուիրեր . չարին մի հակառակիր կըսէ, բայց չարին դէմ , թէ Աստուծոյ և թէ քաղաքա– կան արդարութիւնը մի՛ պահանջեր չըսեր . թերևս շապիկէն , բաճկոնէն կամ վերարկուէն աւելի մեծ բաներ կորսնցունես , երկար բարակ հակառակորդին հետ դատ վարելովդ , կարելի է աւելի վնաս կընես իրեն դէմ մաքառելովդ ; ատոր համար եթէ կարելի է համբերել՝ համ– բերել կը խրատէ , աւելի մեծ չարիքներ չծա– գելու համար ։ Ասով թերևս ամօթով կընես քու

հակառակորդդ. և քեզի դէմ ըրած չարիքին վրայ խիղճ կընէ, վրէժխնդիր մի ըլլար. վրէժխնդրութիւնն Աստուծոյ թող, հին օրինաց մէջ ալ, որ այսպէս պատուիրած էր. դպրաց ըսածին պէս մի՛ ըներ, անոնք կըսեն թէ ամեն քեզ զարնողին դուն ալ զարկ. Քրիստոս և Պօղոս առաքեալ այսպէս չըրին իրենց զարնողներուն. փոխադարձ չըզարկին, այլ զարնողներուն անիրաւ ըլլալը միայն յայտնեցին: Քրիստոս իրեն ապտակ զարնողին. «ընդէ՞ր հարկանես, ըսաւ, եթէ չար ինչ խօսեցայ, վկայեա՛ վասն չարին». Յով. ԺԸ. 23. Եւ Պօղոս քահանայապետին՝ «Հարկանելոց է զքեզ Աստուած որմ բռեալ». պատասխանեց. ասով չարին հակառակ չը կենալ, բայց անոր անիրաւ ըլլալն իրեն իմացնել ուսուցին մեզ: Մարդկային ընկերութեան մէջ սէրը թագաւորեցնելու համար, կարելի եղածին չափ ներողամտութիւն և գթութիւն պէտք է ունենամք իրարու նկատմամբ. ինչպէս նաև, եթէ մէկը նեղը իյնալով մեզմէ փոխառութիւն ընել ուզէ:

Որում խնդրէ ՚ի քէն՝ տո՛ւր, և որ կամի փոխ առնուլ ՚ի քէն՝ մի՛ դարձուցանիցես զերեսս: Մատթ. Ե. 42: Եւ զոր ինչ հանէ ոք ՚ի քէն՝ մի՛ պահանջեր: Ղուկ. Զ. 30.

Պէտք է փոխ տամք իրեն, առանց երես դարձունելու. Եւ ողորմութիւն ուզող կարօտելոյն՝ մեր կարողութեան և նորա ցաւոյ դարման լինելու չափով պէտք է տամք:

Լուարուք ասացեալն զի ասացաւ. սիրեսցե՛ս զընկեր քո, և ատեսցես զթշնամի քո: Այլ ես ասեմ ձեզ. սիրեցէ՛ք զթշնամիս ձեր. օրհնեցէ՛ք զանիծիչս ձեր, բարի՛ արարէք ա-

ատելեաց ձերոց , և աղօթս արարէք ՚ի վերայ այնոցիկ՝ որ լլկենն զձեզ և հալածեն : Մտթ. Ե. 43—44 .

Երբեմն Աստուած Իսրայէլի միջոցաւ անօրէն եւ անգութ ազգերը ջարդել կոտորել տուած ըլլալով՝ վրէժ առած էր . դպիրք և փարիսեցիք Աստուծոյ այդ վրէժխնդրութեան մէկ քանի դէպքերն իրենց ամէն գործոց կանոն բռնելով՝ այնպիսի անբացատրելի և անսահման վրէժխնդրութեան հոգի և թշնամութիւն ընելու փափագ ներշնչած էին հրեայ ժողովուրդին՝ որ իսրայէլ չեղողը նողկալի էր իրեն : Օտարաց հետ անհաշտ ատելութեամբ և անյագ վրէժխնդրութեան ոգւով կը վարուէին , անոնց դէմ չարիք ընել , անոնց վերաբերեալ բաները գողնալ , զանոնք սպաննել , իրենց համար՝ ծերոց աւանդութեամբք և աստուածաշունչի սխալ մեկնաբանութեամբ ներելի էր : Քրիստոս այդ մեկնաբանութեանց բոլորովին հակառակ , ճշմարիտ վարդապետութեամբ , թշնամեաց՝ իբրեւ մեզ նման մարդոց վրայ գութ և կարեկցութիւն ունենալ կը սովրեցնէ . այո՛ , մեզի դէմ հայհոյողներու , մեզի անիծանողներու , զմեզ հալածողներու զմեզ չարչարողներու դէմ , բարի սիրտ և զգացմունք ունենալ , անոնց ՝ իրենց չարութիւններէն ուղիղ ճամբու գալը բաղձալ , անոնց սխալներուն չտկուելուն փափագիլ , բարի խորհուրդ բարի խրատ տալ անոնց , անոնց չտկուելուն համար աղօթք ընել Աստուծոյ , վրիժառու քինախնդիր մարդոց ստորին կարգէն ելնելով գթած , ներող , և Սէր անուն Աստուածութեան բարձրանալ : Քէն , վրէժ , ատելութիւն՝ անկատար մարդոց գործեր են . արգահատութիւն , կարեկ-

ցութիւն, Սէր, Աստուծոյ և կատարեալ մարդու գործեր են։

Քրիստոս զմեզ աստուածանմանութեան կը հրաւիրէ, կատարելագործելի մարդուն՝ կատարեալ օրինակ, գաղափար, նպատակ, զինքն՝ զԱստուած իւր և մեր երկնաւոր Հայրը կը կացուցանէ. այդպիսի չարի չար հատուցանել՝ անասնոց և գազանաց սովորական գործերն էին, ընդերկրաքարշ բնաւորութիւններէ՝ երկնաւոր սրբութեան և աստուածային կատարելութեան երթալ, Աստուծոյ որդիք ըլլալ, Աստուծոյ՝ այնպիսի Հօր, որ անխտիր չարերու և բարիներու վրայ կը ծագէ իւր արեւն և կը շնորհէ իւր անձրեւը։ Եթէ Աստուծոյ որդի ես, այնպիսի սիրտ մը պիտի ունենաս, որ բարեաց աղբիւր պիտի լինի, միմիայն բարի բաներ պիտի բղխին և տարածին ամենուն վրայ առանց փոխարինի սպասելու, քու վարձքդ այս աշխարհէն չ՚պիտի սպասես. այս աշխարհէն վարձք սպասող մաքսաւորք և մեղաւորք իրենց բարեկամներուն և սիրելիներուն միայն բարի կը կամենան. ըստ այնմ թէ,

Եւ եթէ սիրէք դուք զսիրելիս ձեր՝ զի՞նչ շնորհ է ձեր. զի և մեղաւորք սիրեն զսիրելիս իւրեանց։ Եւ եթէ բարի առնէք բարերարաց ձերոց՝ ո՞ր շնորհ է ձեր, զի և մեղաւորք զնոյն գործեն. Ղուկ. Զ. 32—33։ Եւ եթէ տայցէք միայն ողջոյն բարեկամաց ձերոց՝ զի՞նչ աւելի առնէք, ո՞չ ապաքէն մաքսաւորք և մեղաւորք զնոյն գործեն. Մտթ. Ե. 47։

Իսկ դուն՝, Քրիստոնեա՛յ, դու Աստուծոյ որդի ես, անոնցմէ շատ բարձր բարոյական պիտի ունենաս, դուն զայն պիտի սիրես՝ որ քու վրադ սէր չունի. զայն պիտի ողջունես՝ որ քու ողջոյնդ

28

իրեն համար հաճոյութիւն կ'ընկալէ. քեզի թշնամի եղողին ցոյց տուած սիրոյդ և անոր ընծայած ողջունիդ փոխարէնն երկինքէն պիտի սպասես. շատ հաւանական է որ դիմացինիդ ատելութեամբ լեցուն սիրտն ալ սիրով լեցնէ Աստուած, մինչդեռ երբ զանի ատես, փոխադարձ մշտնջեան ատելութիւն պիտի տեսնես:

Եւ եթէ փոխ տայք յորոց ակն ունիցիք առնուլ, ո՞ր շնորհ է ձեր. քանզի և մեղաւորք մեղաւորաց փոխ տան, զի առցեն անդրէն զհաւասարն: Ղուկ. Զ. 34:

Եւ այնպէս ողորմելու է, որ մարդ ըրած ողորմութեան փոխարէն առնելու բնաւ յոյս մը չունենայ, եթէ ոչ՝ մեղաւոր մարդու մը ըրածէն տարբերութիւն չունենար ըրածը. կ'ողորմի մէկուն, կօգնէ միւսին, օժանդակ կ'ըլլայ այլում, խորհուրդ կուտայ, բայց այս ամենը իւր անձնական շահուն համար միայն կընէ, և ոչ ուրիշ պատճառաւ երբէք:

Բայց սիրեցէ՛ք զթշնամիս ձեր, և բարի արարէ՛ք ատելեաց ձերոց. և տո՛ւք փոխ՝ ուստի ո՛չ ակն ունիցիք առնուլ. և եղիցի վարձք ձեր բազում, և եղիջիք որդիք Բարձրելոյ. զի նա քաղցր է ՚ի վերայ չարաց և ապաշնորհաց: Ղուկ. Զ. 35: Զարեգակն իւր ծագէ ՚ի վերայ չարաց և բարեաց, և ածէ անձրև ՚ի վերայ արդարոց և մեղաւորաց: Մատթ. Ե. 45:

Ոչ միայն մեր բարեկամներն, այլ և մեր թշնամիներն սիրելու եմք, զԱստուած յամենայն սրտէ հրամայուած է մեզ սիրել, մեր ընկերն՝ անձին չափ, կինն ալ՝ տկար նիւթոյ մը պէս խնամել. բայց թշնամին կը սիրեմք, և այնպէս կը

հրամայեն մեզ օրէնք, երբ անօթի եղած ատեն հաց տամք իրեն, ծարաւի եղած ժամանակը ջուր և ըստ հոգևորին՝ մեր խրատուց կարօտ եղած ատենը խորհուրդ տամք իրեն յուղղութիւն, որով շատ անգամ սոսկալի թշնամիներ կարծուածէն աւելի կը գիջանին։ Ապա ուրեմն թշնամին ալ սիրելու է, և այնպիսի մէկուն փոխ տալու է՝ որ փոխարէնն ընելու կարողութիւն չունի, և Աստուած այդպիսի փոխատուութեան վարձք կը խոստանայ. ասանկ թշնամիները սիրող սիրտերը բարձրեալ Աստուծոյ որդիք կը կոչուին, վասն զի Աստուած ալ իւր ակերն ու շնորհքը չի խտրեր, անխախանձաբար արեգակն ու անձրևն արդարոց ու մեղաւորաց, չարերուն և բարիներուն հաւասար կը մատակարարէ.

Արդ եղերո՛ւք գթածք՝ որպէս և Հայրն ձեր գթած է՝ ։ Ղուկ. Զ. 36 ։ Արդ՝ եղերո՛ւք (դուք) կատարեալք, որպէս և Հայրն ձեր երկնաւոր՝ կատարեալ է ։ Մատթ. Ե. 48 ։

Աստուծոյ պէս գութ ունենալու ջանալու ենք և մենք, նա ինչպէս գթածաբար կը նախախնամէ չարն ու բարին, բարիները վարձատրած ատեն՝ չարերուն ալ կ'արգահատի, նոցա դարձին կըսպասէ, նոցա թերութեանց և ծանր ծանր գնացից կը ներէ, նոյն օրինակ ընելու ենք մենք ալ, բաւական սեպելու չենք որ քչիկ մը արդարութիւն ունինք վրանիս. այլ ջանալու է որ, ինչպէս երկնաւոր Հայրն յամենայնի կատարեալ՝ մենք ալ մենէ պահանջուածներուն մէջ կատարեալ ըլլանք.

Զգո՛յշ լերուք ողորմութեան ձերում՝ մի՛ առնել առաջի մարդկան, որպէս թէ 'ի ցոյց ինչ նոցա. ապա թէ ոչ՝ վարձս ո՛չ ընդունիցիք 'ի Հօրէն ձերմէ՝ որ յերկինսն է։ Այլ յորժամ առնիցես ողորմութիւն, մի՛ հարկանիր փող առաջի քո, որպէս կեղծաւորքն առնեն 'ի ժողովուրդս և 'ի հրապարակս, որպէս զի փառաւորեսցին 'ի մարդկանէ. ամէն ասեմ ձեզ՝ այն ինչ են վարձք նոցա։ Մտթ. Զ. 1—2.

*Զգուշացէք ցուցամոլութեամբ մարդոց ողորմած երևնալու համար ողորմութեան գործեր ընելէն. Աստուած՝ որ ձեր երիկամունքը կը քննէ, այդ դիտաւորութեամբ եղած բարեգործութիւնը չի վարձատրեր. Կեղծաւոր մարդիկ (փարիսեցիք ելն.) ողորմութեան գործ մը ըրած ատեննին՝ իրենց առջևէն փող չալել կուտան, կամ իրենց բարիքը փողահար կը հռչակեն՝ մարդիկներէն փառաւորուելու համար թէ՛ ժողովրդանոցներու և թէ՛ հրապարակներու մէջ. ահա՛, անոնց վարձքը՝ միմիայն մարդիկներէն փառաւորուիլն է։*

Այլ դու յորժամ ողորմութիւն առնիցես, մի՛ գիտասցէ ձախ քո՝ զինչ գործէ աջ քո։ Որպէս զի եղիցի ողորմութիւն քո 'ի ծածուկ, և Հայրն քո որ տեսանէ 'ի ծածուկ՝ հատուսցէ քեզ յայտնապէս։ Մտթ. Զ. 3—4։

*Իսկ դուն ողորմութեան գործերդ այնչափ զգոյշ, այնչափ ծածուկ և այնչափ անփառասիրութեամբ պէտք է ընես, որ ձախ ձեռքդ աջ ձեռքիդ ըրածը չտեսնէ. այսպէս միմիայն ողորմելու՝ և ոչ փառաւորուելու համար ըրած բարիքներուդ վարձքն Աստուած յայտնապէս կը պարգևէ. և եթէ ողորմութիւն տուած ատենդ չը փառաւորուեցար, անշուշտ փոխարէնն Աս-*

տուծմէ ընդունած առենք կը փառաւորուիս ։ Ուրիշ բան է հասարակութիւնը կամ եղբարց բազմութիւնը ողորմութեան գործերու հրաւիրելու կամ անոնց բարի օրինակ և յորդորիչ լինելու համար հրապարակաւ ողորմութեան գործ կատարելը. Քրիստոս՝ կեղծաւորութիւնը կամ փառասիրութիւնը և ցուցամոլութիւնն կ'արգիլէ միայն ։

Եւ յորժամ յաղօթս կայցէք, մի՛ լինիջիք որպէս կեղծաւորքն. զի սիրեն ՚ի ժողովուրդս և յանկիւնս հրապարակաց կալ յաղօթս, որպէս զի երևեսցին մարդկան. ամէն ասեմ ձեզ՝ այն ինչ են վարձք նոցա ։ Այլ դու յորժամ կայցես յաղօթս, մուտ ՚ի սենեակ քո՝ և փակեա՛ զդրունս քո, և կա՛ց յաղօթս առ Հայր քո ՚ի ծածուկ, և Հայրն քո որ տեսանէ ՚ի ծածուկ, հատուսցէ քեզ յայտնապէս. Մատթ. Զ. 5—6 ։

Ինչպէս ողորմութիւնը՝ նոյնպէս նաև աղօթքը պէտք է ծածուկ և առանց ցուցամոլութեան ընել. աղօթքն ու ողորմութիւնն երկու լայն ու զօրաւոր թևեր են՝ որք մարդուն հոգին մինչև երկինք կը բարձրացնեն ։ Այս երկու կրօնական պարտաւորութեանց կատարումն երկնքին դըռները մեր առջև կը բանան. բայց աղօթքն ինչպէ՞ս ընելու է. — Աղօթքն երկու կերպ կըլլայ, հրապարակաւ, եկեղեցւոյն մէջ, և առանձինն. հրապարակաւ աղօթքն ալ Քրիստոսի պատուէրն է, Քրիստոսի անունով տեղ մը ժողուած ատեններս, Քրիստոս մեր մէջն է. առանձինն աղօթքն ալ մեր պարտաւորութիւնն է. շատ մարդիկ՝ ինչպէս հեթանոսք և այս ժամանակիս կեղծաւորք, մարդոց աչքին աղօթք ընող երևնալու

միօք միայն աղօթք կընէին և կընեն ․ և արդարև անոնց վարձքը ա՛յն իսկ է , այսինքն , մարդոց առջև աղօթող երևնալ և մարդիկ ալ այնպէս կը համարէին ․ բայց Աստուած ամեն փառաւորութենէ ազատ , խոնարհ ու բեկեալ սրտէ մը բղխած մրմունջները լսել կուզէ ․ մեր աղօթասէր երևնալը չէ անոր փնտռածն , Աստուծոյ ուզածը մեր անձամբ անձին ծանօթութիւնն է ․ ուստի մեր վիճակին վրայ լաւ մտածելու համար՝ մեր սենեակին մէջ առանձնանալու եմք և դրօք փակելովք , մտքերնիս ամփոփած կամ Քրիստոսի օնակին հետևելով առանձին դաշտի մը , պարտիզի մը մէջ կամ լերան մը վրայ , ուր աշխարհի աղմուկներէ հեռու , Աստուծոյ ահաւոր ատեանը ներկայացածի պէս՝ անոր բարութիւններըն ու մեր ապերախտութիւններն , անոր շնորհներն ու մեր ապաշնորհութիւնները յիշելու ենք ․ Աստուած ի՞նչ կը պահանջէր մեր Քրիստոնէական կոչման մէջ , մենք ի՞նչ գործեր գործած եմք , մեր հոգւոյն փրկութեան , մեր բարոյականին անեղծ պահպանութեան , մեր ծնողաց , մեր որդւոց , մեր ազգին նկատմամբ ․ մեր սրտերն որ աղբիւր բարեաց ըլլալու էինք , արդեօք չարութեանց թոյն չե՞նք ըրած ․ ասոնց վրայ մտախոհ , մեր հոգևորապէս և բարոյապէս երիցս թշուառ վիճակն Աստուծոյ խոստովանելով՝ անոր շնորհն ու գթութիւնն հայցելու եմք ․ և առանց յուսահատելու , նորա ամենակարողութեան վստահ՝ մեր հոգւոյն և սրտին վիճակին փոփոխութիւնը հայցելու ենք ․ այս աղօթքը կատարելն որչափ հարկաւոր է մեզ ․ այս սրտեռանդն աղօթքը շատ-

*խօսութեամբ չէ՛ կարելի ընել. բառ այնմ թէ.*

Եւ յորժամ կայցէք յաղօթս, մի՛ շատախօսէք իբրեւ զհեթանոսսն. զի համարին եթէ 'ի բազում խօսից իւրեանց լսելի լինիցին։ Արդ՝ մի՛ նմանիցէք նոցա. զի գիտէ Հայրն ձեր զինչ պիտոյ է ձեզ, մինչչեւ ձեր խնդրեալ ինչ իցէ 'ի նմանէ. Մտթ. Զ. 7—8։

*Հեթանոսաց պէս անմտաբար աղօթելու չենք, որք թէ՛ բառերին չեն իմանար և թէ՛ այնպիսի բաներ կը խնդրեն՝ որ հոգւոյն բնաւ չեն նպաստեր, ուստի և Աստուած աղօթքնին ալ չը լսեր. խնդրուածքնին ալ չը կատարեր. մեր մարմնական կարօտութիւններն ու պէտքերը հոգևոր կարօտութիւններուն հետ գիտէ Աստուած, մարմնաւոր պէտքերն իւր նախախնամութեամբն հոգացողաց կուտայ. իսկ հոգևոր պէտքերնուս մէջ խոնարհելու և անոր գթութեանը դիմելու ենք՝ ցուցնելու համար թէ միշտ իրեն կարօտ ենք, առանց իրեն մի վայրկեան կեանք չունինք, թէպէտ և Աստուած թէ՛ մարմնաւոր ըլլայ խնդրուածքն և թէ՛ հոգևոր. մեզի պէտք եղածը միայն կը շնորհէ, վասն զի, մեր ուզելէն առաջ նա գիտէ՝ թէ մեր բնութիւնը ինչ բաներու կարօտ է։*

*Հեթանոսք՝ մեքենայաբար և առանց միտքը հասկնալու երկար աղօթքներ կընէին. Յիսուս առանց եռանդեան, առանց ջերմ փափաքի՝ և ուշադրութեան եղած երկար երկար աղօթքները չընդունիր. բայց աղօթք ընելու եղանակն ալ սորվեցնելն ալ չը մոռնար։*

Եւ արդ՝ այսպէս կացէք դուք յաղօթս. Հայր մեր

որ յերկինս. սուրբ եղիցի անուն քո։ Եկեսցէ արքայութիւն քո. եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի. Մատթ. Զ. 9—10.

*Համարձակութիւն կուտայ ահեղազօր Տէրն մեզի Հայր կոչելու. երկնից զօրութեանց Աստուծոյն ընտանեաց անդամակցութեան հրաւիրելով զմեզ, և իբրև մէկ ընտանիքի անդամներ մեր ընտանեաց Հօր, այսինքն, Աստուծոյ անունը սուրբ պահել, մեր վարուց և բարուց մէջ երկնաւոր Հօր և միակ Որդւոյն անուանը արժանի երևել, թող Աստուծոյ անունը սուրբ ըլլայ, փառաւոր ըլլայ մեր մտքին, մեր սրտին և գործերուն և աշխարհի վրայ. Թող անոր թագաւորութիւնն՝ որ լուսոյ, իմաստութեան, հանճարոյ, շնորհաց, ազատութեան և արդարութեան թագաւորութիւն է՝ զոր Դանիէլ գուշակեց, զոր Յովհաննէս քարոզեց և Յիսուս Քրիստոս բերաւ մեզ՛, այն թագաւորութիւնը՝ թող գայ, անոր օրհնեալ օրէնքները տիրեն. բայց գիտնալու ենք որ այդ թագաւորութիւնը մինչև որ մեր սրտին մէջ չընդունինք, մինչև որ հոգւով և գործով չը բաղձանք ընդունելու, այդ թագաւորութեան մէջ մասն և բաժին չունինք. հոգւով վերստին ծնանելու է մարդ՝ որ այդ թագաւորութիւնը ժառանգէ. այս՝ ճշմարտութեան թագաւորութիւնն է, ճշմարտութիւն սրտով, մտքով, գործով չը սիրող մարդը արժանի չէ անոր։*

*Սովրեցուց մեզ Յիսուս Քրիստոս՝ որ խնդրեմք՝ թէ Աստուծոյ կամքը ըլլայ աշխարհի վրայ, ինչպէս կը կատարուի երկնքի մէջ։ Երկնքի մէջ՝ միութեամբ, հպատակութեամբ, սրբութեամբ և ուրախութեամբ, կը կատարեն Աս-*

տուծոյ կամքն , այսպէս ըլլայ նաև աշխարհի վը-րայ . Քրիստոս ինքն ալ այսպէս ըրաւ , իւր անհաւոր չարչարանաց մօտեցած ժամանակ ո՛չ իւր՝ այլ իւր Հօրը կամքին կատարումը խնդրեց ։

Տէրունական աղօթքին այս մասերն՝ Աստուծոյ Հօր կը վերաբերին , ինչպէս նաև տասնաբանեայ պատուիրանաց առաջին մասերը ։ Ասկէ ետքը մեր անձերուն համար կը սորվեցնէ Քրիստոս որ իրմէ այսպէս մեր հանապազօրեայ հացը խնդրենք . ըստ այնմ ,

Զհաց մեր հանապազորդ տո՛ւր մեզ այսօր . Եւ թո՛ղ մեզ զպարտիս մեր , որպէս և մեք թողումք մերոց պարտապանաց . Մատթ. Զ. 11—12 ։

Վասն զի ամենայն պարգևք և տուրք բարիք անորմէ կը շնորհուին , մեր աշխատութեամբ մեր հացը ձեռք բերելու համար Աստուծմէ պէտք է խնդրեմք գործելու կարողութիւն , գործելու յաջողութիւն , մտքի առողջութիւն ևլն. անորմէ ոչ միայն սոսկ մեր անձին , այլ ամենուն համար , աղքատաց , չքաւորաց ևլն համար ալ պէտք է խնդրեմք ազգաց մերոյ . և մարմնաւոր հացը՝ միայն մէկ աւուր համար , վասն զի մենք ժամանակեայ ենք աշխարհի վերայ . իսկ հոգևոր հացը՝ յաւիտենականութեան համար խնդրելու ենք , որուն արժանի ըլլալու համար , այս կենաց մէջ Աստուծոյ մեր Հօրը նմանելու ենք , նախընթաց գլուխներուն մէջ քարոզուած կատարելութեանց հետևելով , որուն մէկ նշանն ալ Աստուծոյ պէս ներողամիտ գտնուիլն էր՝ մեր դէմ մեղանչող , մեզի բարոյապէս պարտական եղող եղբարց . երբոր այսպէս ներողամիտ գտնուինք այլոց՝ յայն-

ժամ համարձակութիւն կունենանք ըսել, “և թող մեզ զպարտիս մեր, որպէս և մեք թողումք մերոց պարտապանաց„:

Եւ մի՛ տանիր զմեզ ՚ի փորձութիւն, այլ փրկեա՛ զմեզ ՚ի չարէ: Մտթ. Զ. 13.

Վասն զի, կարելի է որ Քրիստոսի պէս փորձութեան յաղթող կը գտնուինք՝ այլ Ադամայ պէս փորձութենէ խաբուինք, յաղթուինք, մարդկային տկարութեան համար. Աստուծոյ օգնութիւնը խնդրելու եմք, փորձութեան մէջ չիյնալու համար: Սակայն իյնալէն ետքն՝ ալ փորձութեան յաղթելու եմք, միշտ առժամանակեայ վշտաց, նեղութեանց, յաւիտենական կենաց յուսով անտրտում և անտրտունջ տանելով և խնդրելով միանգամայն՝ որ այդ փորձութիւնները կրկնապատկող չարէն կամ սատանայէն կամ նորա գործերէն և որոգայթներէն Աստուած իւր զօրութեամբն ու գթութեամբն ազատէ զմեզ. վասն զի, գուցէ Յովբայ համբերութիւնը չունենալով Յովբայ պէս չարին և չարութեանց վրայ յաղթանակ չը տանինք:

Զի քո է արքայութիւն և զօրութիւն և փառք յաւիտեանս. ամէն: Մտթ. Զ. 13.

Սակայն մեր ամեն գործերուն և մինչև փորձութեանց մէջ Աստուծոյ վրայ կատարեալ հաւատք ունենալու ենք, որ թէ չարին և թէ վրշտերուն մեր վրայ ունեցած տիրապետութիւնն առժամանակեայ է. Թագաւորութիւնը միշտ Աստուծոյ է. վասն զի, նա է՝ ամեն բանէ, աշխարհէ, փորձութենէ, սատանայէ, որոգայթէ

նաև մեր սրտէն և մեր երկրաւոր զօրութիւններէն աւելի հզօր։ Արքայութիւնը, զօրութիւնը, յաղթութիւնը, փառքը ոչ միայն անցաւոր ժամանակի մէջ, այլ յաւիտեանս յաւիտենից անորն է, ու միշտ և հանապազ խնդրելու ենք, որ այս այսպէս ըլլայ։ Ամէն եղիցի։

Զի եթէ թողուցուք մարդկան զյանցանս նոցա, թողցէ և ձեզ Հայրն ձեր երկնաւոր։ Ապա թէ ո՛չ թողուցուք մարդկան զյանցանս նոցա, և ո՛չ Հայրն ձեր թողցէ ձեզ զյանցանս ձեր. Մտթ. Զ. 14—15։

Գեղեցիկ պարզաբանութիւն, պարզ և դիւրահասկանալի, մինչ զի ասկէց աւելի լաւ պարզաբանել անկարելի է։ Սակայն, բարկացողաց, ոխակալներու, նախանձոտներու և ընկերատեաց մարդկան, ծուռ տրամաբանողներու անզգայ սրտքերն այդ պարզաբանութենէն բնաւ չեն ախորժեր։

Քրիստոսի այդ խօսքը դաշինք մ'է, և դաշանց թէութիւն մը բոլոր մեղաւորաց համար, եթէ 'ի մեղաց զերծանիլ կուզեն։ Թէ որ կուզեմք որ Աստուած մեր մեղաց թողու՝ թողլու ենք մեր ընկերներուն թերութեանցն. իսկ եթէ չուզենք ներել մեր ընկերներուն՝ բնաւ չը յուսանք որ Աստուած ալ մեր մեղքերուն պիտի ներէ։ Մարդու հետ ոխ պահել և յԱստուծոյ բըժշկութիւն յուսալ՝ խապառ անհնարին է։

Եւ յորժամ պահիցէք՝ մի՛ լինիք իբրեւ զկեղծաւորսն տրտմեալք. որ ապականեն զերեսս իւրեանց, որպէս զի երեւեսցին մարդկան թէ պահեն. ամէն ասեմ ձեզ, այն իսկ են վարձք նոցա. Մտթ. Զ. 16։

Եւ ինչպէս ողորմութիւն տուած ու աղօթք ըրած ատենդ՝ այսպէս և պահք պահած ատենդ ուրիշներու առջև ինքզինքդ պահեցող ցցնելու սնափառութենէն կամ սուտ բարեպաշտութենէն զգուշացիր, երեսդ մի՛ թթուեցներ, պահքը՝ Աստուծոյ գթութիւնը հայցելու համար քու կողմանէ զղջողութիւն մ'է, զքեզ Աստուծոյ առջև խոնարհեցնող համբերութիւն մ'է, ուստի քու սրտիդ ճշմարիտ զգացումները՝ քու բարեպաշտութիւնդ Աստուծոյ յայտնելու ապաշխարութեան գործ մը ըլլալու է. եթէ զայն ցուցամոլութեամբ ընես՝ Աստուծոյ առջև քու պահքըդ կեղծաւորի գործ մ'է միայն, ալ աւելի արժէք չունի. մարդիկներէն վարձքդ կ'առնես, այսինքն, անոնք այնպէս կը հաւատան թէ դուն կը պահես, ա՛յդ է վարձքդ: իսկ Աստուծմէ հարկաւ կեղծաւորի պատիժ պէտք է սպասես:

Այլ դու յորժամ պահիցես, օծ զգլուխ քո՝ և լուա՛ զերեսս քո: Զի մի՛ երեւեսցիս մարդկան իբրև պահող. այլ Հօրն քում ՚ի ծածուկ. և Հայրն քո որ տեսանէ ՚ի ծածուկ, հատուսցէ քեզ յայտնապէս. Մատթ. Զ. 17—18:

Ուստի պահք բռնած ատենդ քու սովորական ուրախութիւնդ և կերպդ մարդկանց առջև մի՛ փոխեր. երեսդ լուա՛, գլուխդ օծէ և միմիայն սիրտդ փոխէ, թող սրտիդ մէջ կարդայ Աստուած քու ներքին տրտմութիւնդ քու մեղացդ համար, Աստուած սիրտերն ու երիկամունքները կը քննէ:

Մի՛ գանձէք ձեզ գանձս յերկրի. ուր ցեց և ուտիճ ապականեն, և ուր գողք ական հատանեն և գողանան. Մատթ. Զ. 19.

Երկրի վրայ գանձ մի գանձէք ձեզի. այս երկիրը ձեզ միշտ բարեկամ չէ, ինչպէս ձեր ան–ձին, այսպէս ձեր գանձած գանձերուն վնաս տուող ի՛նչ որդեր, ի՛նչ ուտիչներ, ի՛նչ գո–ղեր կան, որ ձեր չը կարծած տեղէն ականներ բանալով ձեր ամենէն ապահով համարած տե–ղերէն ձեր գանձերը կը գողնան:

Այլ գանձեցէ՛ք ձեզ գանձս յերկինս, ուր ո՛չ ցեց և ո՛չ ուտիճ ապականեն, և ո՛չ գողք ական հատանեն և գողանան։ Մատթ. Զ. 20։

Ինչպէս որ իւր հայրենիքէն հեռու երկիր գնացող մարդ մը իւր խելքը, միտքը, սիրտը իւր հայրենեաց վրայ դարձնելու պարտաւոր է. այնպէս դուք հայրենիք մը ունիք, ուր անպատ–ճառ պէտք է երթաք օր մը, դուք այս աշխար–հէն առաւել այն տեղի վրայ մտածեցէ՛ք, թող ձեր գանձերն հոն ըլլան, հոն ժողվուին, անոր աշխատեցէ՛ք, այն երկիրը ձեզ վնասակար և թըշ–նամի չէ՛. հոն՝ ուտիճ որդ չիկայ և ոչ գող. ա՜հ, ձեր սրտին հայրենիքն է այն՝, ձեր և ո՛չ մէկուն հոգին ու սիրտը կշտացաւ այս աշխար–հիս մէջ. ամեն բան վայելել երազեցիք՝ բայց այդ ամեն վայելմունքէն դարձեալ այս ձեր կեան–քին մէջ թափուր մնաց ձեր սիրտը: Դուք ներք–նապէս ուրիշ հայրենիք մը կը փնտռէք, և կայ այդ ապահով հայրենիքն, ուրեմն ձեր սրտերն հոն ղրկեցէ՛ք, երկնքին տուէ՛ք. հոն ո՛չ այս ձանձրոյթը պիտի տեսնէք և ոչ այս խղճի որդը կամ խայթը. այս տեղ զանազան սուտումուտ և կեղծ փառք, հարստութիւն կամ դեղ չպարեալ և ծարիր, ձեր սրտերը կը գողնան, այո՛, անոնց

ըրածը գողութիւն է, "վասն զի ձեր սիրտը ի-րենցը չէ և իրենց սեփհականներ են. գողու-թիւն է այդ, անոնք ստորերկրեայ ծածուկ ճամ-բաններով, քսութիւններով. նենգութիւններով, ձեր հոգւոյն տիրեցին. վա՜խ, ձեր սիրտը, հո-գին գերի է եղած անոնց. թօթափեցէ՛ք ձեր շղթաներն և բարձրացէք դէպ 'ի երկինք, ձեր բուն հայրենիքն, ձեր հոգւոյ փնտռած տեղն, աչքերնիդ բացէ՛ք և այս խաբուսիկ պատրանք-ներով մի՛ խաբուիք. աչքերնիդ թող լուսաւո-րուի, եթէ այսպէս բուն ձեր օգուտը չէք տես-ներ՝ ուրեմն աչքերնիդ լուսաւոր չէ. աչքը չը տեսնող մարմինն՝ անկարգութեան մէջ է. աչքը չը տեսնող մարդ՝ որոգայթներու մէջ կիյնայ. վասն զի կոխած տեղը չը գիտեր։

Զի ուր գանձք ձեր են՝ անդ և սիրտք ձեր եղիցին ։ Ճրագ մարմնոյ ակն է . եթէ ակն քո առատ է , ամենայն մարմինդ լուսաւոր եղիցի ։ Ապա թէ ակն քո չար է՝ ամե-նայն մարմինդ խաւարին եղիցի ։ Մտթ. Զ. 21—23 ։

Մարմինին ճրագն աչքն է. ամեն բանի մէջ և մանաւորապէս մեր գանձերն երկինքը դի-զելու գործին մէջ մեր հոգւոյն և մնաց աչքն Աստուծոյ բանին լուսով միշտ լուսաւոր, այսին-քըն, առատ վիճակի մէջ պահելու ենք. եթէ մարմնոյ աչքդ անլոյս է, խաւար է. աղէկ չէ, գէշ է, չար է՝ հետևաբար բոլոր մարմինդ խա-ւարի մէջ է. իսկ եթէ հոգւոյդ աչքը չը տես-նայ. Աստուծոյ լոյսէն զուրկ մնայ, անոր մութը ո՜րչափ աւելի և անթարգմանելի ու սոսկալի խա-ւար է, անփարատելի մթութիւն է, ըստ այնմ,

Իսկ արդ՝ եթէ լոյսդ որ 'ի քեզ է՝ խաւար է, խաւարն ո՜րչափ ևս։ Ոչ ո՛ք կարէ երկուց տերանց ծառայել. կամ զմին ատեսցէ, և զմիւսն սիրեսցէ. կամ զմին մեծարեսցէ, և զմիւսն արհամարհեսցէ. ո՛չ կարէք Աստուծոյ ծառայել և մամոնայի. Մտթ. Զ. 23—24։

*Երբոր այս լոյսն ունենամք, մեր բոլոր ուշադրութիւնն Աստուծոյ կը դարձունեմք, և արտաքոյ արդարութեան, արտաքոյ պատշաճից և օրինաւորութեան՝ ոչ չափազանց հարստութեան գանձերու և ոչ զուտ աշխարհային իրաց վրայ կըզբաղինք՝ մեր գլխաւոր զբաղմունքն երկինքը կըլլայ. զի անկարելի է երկուք բաժնուիլ և աշխարհն ու երկինքը միօրինակ սիրել. Աստուծոյ և աշխարհի համաչափ հաւատարմութեամբ անկարելի է ծառայել. ինչպէս երկու իրարու հակառակ տէրերու անկարելի է ծառայել, այնպէս մամոնայի, այսինքն, ընչից, կուռքի, և շահապետին, ստացուածոց և Աստուծոյ միանգամայն անկարելի է որ սրտերնիս նուիրենք. կամ Աստուծոյ նուիրելով ինքզինքնիս կամ մամոնայէն հրաժարելու ենք, կամ մամոնային անձնատուր ըլլալով զԱստուած մոռնալու ենք։*

Վասն այսորիկ ասեմ ձեզ. մի՛ հոգայք վասն ոգւոց ձերոց՝ զինչ ուտիցէք, կամ զինչ ըմպիցէք. և մի՛ վասն մարմնոց ձերոց՝ թէ զինչ ագանիցիք։ Մատթ. Զ. 25։

*Դուք մի՛ հոգաք, կըսէ, ձեր երկրաւոր պիտոյից համար, չէ թէ մի՛ աշխատիք, կամ հոգ մի՛ տանիք, այլ չափէ դուրս, հեթանոսաց պէս, որոնք երկնաւոր մտածմունք չունին. հոգերու ու տառապանքներու մէջ մի՛ մաշեցնէք ինքզինքնիդ, դուք կանոնաւոր և օրինաւոր սահմա-*

նի մէջ պէտք է աշխատիք։ Եւ Աստուած որ գիտէ թէ ձեզ այդ ամեն բաները պէտք են՝ կուտայ ձեզ։

Հայեցարո՛ւք 'ի թռչունս երկնից՝ զի ո՛չ վարեն եւ ո՛չ հնձեն եւ ո՛չ ժողովեն 'ի շտեմարանս, եւ Հայրն ձեր երկնաւոր կերակրէ զնոսա․ ո՞չ ապաքէն դուք առաւել եք քան զնոսա։ Մատթ. Զ. 26։

Չե՞ք տեսներ թռչուններն՝ որ ձեզմէ շատ տարբեր արարածներ են, իրենց անհոգութեանը մէջ իսկ, ո՛րչափ ուրախութիւն, ո՛րչափ զուարճութիւն ունին․ անոնց անհոգութեան մէջ ճռուողաց բերկրութեան դայլայլիկներուն տեղ, ձեր մեծամեծ հոգերով շինուած ոսկէձեղուն պալատներէն լսուածները շատ անգամ հեծութեանց ու հիւանդագին անկողին խշտիներէ ելած հառաչանքներու ձայներ չե՞ն։

Իսկ ո՞ ոք՝ ո՛ 'ի ձէնջ առ հոգալ կարող՝ յաւելուլ կարիցէ 'ի հասակ իւր կանգուն մի։ Մատթ. Զ. 27։

Իսկ դուն որչափ որ կուզես՝ հոգերու մէջ մաշուէ՛, անհնար է, ասանկ աւելորդ հոգերով ինքզինք մաշեցնողն այնպէս անհնարութեան կը մնայ, ինչպէս եթէ մէկը ուզեր՝ որ իր հասակը կանգուն մի աւելի բարձրանայ։

Եւ վասն հանդերձի զի՞ հոգայք․ հայեցարո՛ւք 'ի շուշանն վայրենի՝ որպէ՞ս աճէ․ ո՛չ ջանայ, եւ ոչ նիւթէ։ Ասեմ ձեզ՝ զի եւ ո՛չ Սողոմոն յամենայն 'ի փառսն իւրում զգեցաւ իբրեւ զմի 'ի նոցանէ։ Մատթ. Զ. 28-29։

Ձեր սրտամաշուքներով շինուած կերպասները ձեր վրայ միթէ այնպէս փայլուն կերեւի՞ն՝ որ-

չափ վայելչագեղ կը փայլէին սպիտակափայլ շուշաններն 'ի դաշտին, որոց եւ ոչ մէկուն չափ պայծառատեսիլ էր Սողոմոն՝ արեւելից ամենէն հարուստ թագաւորն՝ իւր ոսկեճամուկ եւ մարգարտայեռ հագուստներուն մէջ. և ինչո՞ւ բնութեան մէջ մինչև շուշանն երթալու է ձեր անապահոգերը դատապարտելու համար ։

Իսկ եթէ զխոտն 'ի վայրի՝ որ այսօր է, և վաղիւն 'ի հնոց արկանի, Աստուած այնպէս զգեցուցանէ, որչափ եւս առաւել զձեզ թերահաւատք ։ Մատթ. Զ. 30 ։

Տեսէք գետնի խոտն և բաւական է, այն խոտըն՝ որ այսօր կեցած է, վաղը կը փրցուի և կըրակը կը նետուի, (Պաղեստինի մէջ փուռը վառելու համար չոր խոտեր ալ կը գործածէին.) ո՞չ ապաքէն ձեզմէ աւելի զուարթատեսիլ և գեղեցիկ են, թռչնոց և խոտերուն խնամք տանող Աստուածը՞ միթէ՞ զձեզ կը մոռնայ ։ Բայց դուք մէկէն 'ի մէկ հարուստ, մէկէն 'ի մէկ աշխարհի վրայ մեծ գանձերու տէր ըլլալ կ'ուզէք, այս է ձեր հոգն ու մտմտուքն, այդ ալ կը նմանի մէկ կանգուն հասակ ունեցող տղուն՝ մէկէն 'ի մէկ երեք կանգուն հասակ ունենալ բաղձալուն՝ որ անկարելի է. այդ հոգն ալ տղայական և հեթանոսական է բոլորովին. դուք սակաւահաւատ էք. Աստուծոյ վրայ վստահութիւն չունիք՝ որ ձեզի պէտք եղածը լիով կը շնորհէ ։

Մի այսուհետեւ հոգայցէք և ասիցէք. զի՞նչ կերիցուք, կամ զի՞նչ արբցուք, կամ զի՞նչ զգեցցուք. Զի զայդ ամենայն հեթանոսք խնդրեն. քանզի գիտէ Հայրն ձեր երկնաւոր՝ թէ պիտոյ է ձեզ այդ ամենայն ։ Խնդրեցէք նախ

զարքայութիւնն Աստուծոյ և զարդարութիւն նորա , և այդ ամենայն յաւելցի ձեզ ։ Մի՛ այսուհետև հոգայցէք վասն վաղուի , զի վաղին վասն իւր հոգասցի , շատ է աւուրն՝ չար իւր ։ Մատթ. Զ. 31—34 ։

*Դուն ապրուստ ճարէ , այսօրուան և վաղուան համար հեթանոսաց պէս սիրտ մի՛ մաշեցներ , քու մտացդ և սրտիդ մեծագոյն զբաղմունքն Աստուծոյ արքայութիւնը պէտք ըլլայ ։ Թէ որ հոգալու ըլլաս , ամեն օրուան համար հոգ , ցաւ, վիշտ (չարիք) չը պակսիր ։*

Մի դատէք զի մի՛ դատիցիք ։ Մատթ. Է. 1 ։

Մի՛ պարտէք և ոչ պարտիցիք . արձակեցէ՛ք և արձակեսցիք ։ Ղուկ. Զ. 37 ։

*Մի՛ դատէք ուրիշներուն , երբ դատելու իշխանութիւն և պաշտօն չունիք. ապա թէ ոչ, դուք որչափ պակասութիւններ ունիք՝ դիտեցէք որ ամենքն ալ զձեզ կը դատեն ։ Նոյնպէս՝ քանի որ պատժելու իշխանութիւն չունիք , չէք կրնար ուրիշները պատժել ուզել, եթէ ոչ՝ ուրիշներն ալ կելնեն զձեզ պատիժներու կենթարկեն՝ թէպէտ իշխանութիւն չունենան ալ . այլոց ներեցէ՛ք , իրենց պակասութեանց վրայ ընդերկար մի՛ քննադատութիւններ ընէք , մանաւանդ երբ կը տեսնէք որ յանցաւորն իւր սրտին մէջ զեղջ ունի և արտաքուստ ալ ապաշխարանաց նշաններ ցոյց կուտայ . ասանկ ըրած ատեննիդ , այլք ալ ձեր ըրածին պէս ձեզ կընեն . եթէ յանձանք գործէք , եթէ թերութեան մը մէջ գտնուիք , եթէ սխալ մ'ընէք , Աստուած այնպէս կը տնօրինէ՝ որ ուրիշներն ալ ձեզ կը ներեն։*

Տո՛ւք՝ և տացի ձեզ. չափ բարւոք, թաթաղուն, շարժուն, զեղուն, տացեն 'ի ծոց ձեր. նովին չափով որով չափէք, չափեսցի ձեզ։ Ղուկ. Զ. 38 ։

Թշնամի ընկերդ մինչև անգամ երբ հալածէ ալ զքեզ և նախատէ եւ անիծանէ, սիրէ՛ զանիկայ եւ առանց բարեաց ակնկալութեան սրտով սիրէ զանիկայ. եւ ահա՛ ասոր համար առաւելութեամբ վարձք պիտի առնուս. եւ այս առաւելութիւնը ցորեն չափելու համար գործածուած չափով կիմացնէ, այսինքն, երբոր առաւելութեամբ ցորեն կամ ուրիշ բան մը տրուելու ըլլայ՝ ամանը կը լեցնեն, լեցնելէն յետոյ կը շարժեն, (շարժուն,) ու երբոր զեղանի (զեղուն) այն ատեն կը պարպեն.

Եթէ դուք ձենէ ուզող ինչ եւ իցէ կարօտ մէկու մը լսէք եւ ուզածը տաք իրեն, Աստուած այնպէս կընէ՝ որ այլ ալ օր մը ձեր կարօտութեան մէջ պէտք եղածը տան ձեզ, ինչպէս որ ինք ալ Աստուած այսպիսի առատատուր ողորմածներուն համար երկնքին արքայութիւնը պիտի տայ։ Եթէ սրտի յօժարութեամբ եւ ամենայն առատութեամբ կուտանք կարօտ եղօղին և ուրախութիւն կը զգայք՝ երբոր մէկուն կ'առատանաք, այսպէս պիտի ընեն նաեւ այլք, երբոր դուք օր մը կարօտ վիճակի մէջ իյնաք. և եթէ ընդհակառակն պատահի ձեզ՝ մի՛ վհատիք, երկնքի վարձքը ձեզ համար ընաւ չիկորսուիր։ Իսկ եթէ ընդհակառակն ժլատ էք ձեր տրոց և ձեր ողորմութեանց մէջ, այնպէս որ ողորմելու ատեններնիդ սրտերնիդ ու հոգինիդ թախիծ կը զգենու, վասնզի ունեցածներդ ամենաուչինչ մաս մը կորսնցուցեր էք, այն ժամանակ ձեզ ալ ձեզնը-

մանները պիտի պատահին . եթէ չը պատահիր ՝ ապօրէնք ըրէք որ փոխադարձն յԱստուծոյ չ՚ընդունիք՝ որ գիտէ իւրաքանչիւրին ըստ գործոց վարձատրել ու պատժել . ինչ չափով որ ուրիշներուն կ՚ողորմիք կամ անոնց նկատմամբ անգութ սիրտ մը կը տածէք ու կը քարանաք անոնց դէմ, այնպէս պիտի պատահի ձեզ ալ , եթէ ոչ միշտ ՚ի մարդկանէ , այլ անշուշտ յաւիտեան Աստուծմէ ։

Ասաց և առակ մի առ նոսա . միթէ կարիցէ՞ կոյր կուրի առաջնորդել . ո՞չ ապաքէն երկոքին ՚ի խորխորատ անկանիցին։ Ղուկ. Զ. 39 ։

Եթէ դուք քար սիրտ ունենալով եւ անգութ ըլլալով՝ գթոտ եւ ողորմած սրտի պատահել կ՚ուզէք , անհնար բան կ՚երազէք , ինչպէս անհընար է որ կոյրեր կոյրերու առաջնորդ ըլլան ու առաջնորդ և առաջնորդեալ խորխորատ չիյնան։

Ո՛չ է աշակերտ լաւ քան զվարդապետ իւր . ամենայն կատարեալ եղիցի իբրև զվարդապետ իւր ։ Ղուկ . Զ. 40 ։

Դուք աշակերտ ըլլալով , անշուշտ ինձմէ՝ ձեր վարդապետէն մեծ չէք ու չէք կըրնար լինել ։ Արդ , քանի որ ես ձեր վարդապետն եմ եւ միշտ կարօտ եղողներուն չխնայեցի , առատութեամբ ջնորհեցի , նոյն իսկ ինձ դէմ անհնարին լուտանք տեղացողներուն ներեցի , ապա եւ դուք նոյն օրինակ վարուելու էք , որպէս զի ձեր վարդապետին կատարելութենէն մաս մը գոնէ ունեցած լինիք վրայնիդ ։

Զի՞ տեսանես շշիւղ յական եղբօր քո , և ՚ի քում ական

զգերանդ ո՛չ նշմարես : Ղուկ. Զ. 41 : Կամ զիա՞րդ ասես ցեղբայր քո, Մատթ. Է. 4. Եղբայր, թող հանից զշիւղդ յականէ քումմէ. Ղուկ. Զ. 42. Եւ ահաւասիկ ՚ի քում ականդ գերան կայ : Մատթ. Է. 4 :

*Քրիստոս հրէից այս « մի՛ դատէք՝ զի մի՛ դատիցիք, մի՛ պատժէք եւ ոչ պատժիցիք. որով չափով չափէք՝ չափեսցի ձեզ. զի՞ տեսանես զշիւղ յական եղբօր քո եւ ՚ի քում ական զգերանդ ոչ նշմարես » հին առածները քի՛չ շատ տարբերութեամբ մէջ բերելով արդարութիւն և գթութիւն կը պատուիրէր այլոց նկատմամբ, ինչպէս մենք մեզի կուզենք. շատ մարդիկ ուրիշներուն յանցանքները դատելու մէջ, ինչպէս էին փարիսեցիք, խիստ եւ անողոք, պղտիկը մեծցնող, զրպարտող, անգութ դատաւորներ են, իսկ մի եւ նոյն յանցանքներն երբ իրենց վրայ կերեւին՝ կը թաքնեն, կ'աշխատին անանց ուրիշ գոյն տալ, այն բանը որ ուրիշին վրայ յանցանք է՝ իրենց վրայ այնչափ կը փոխուի՝ որ մինչեւ առաքինութիւն կըլլայ. բծախնդիր ոգին այնչափ սաստկացած է՝ որ մարդիկ ալ իրենց յանցանքները տեսնելու ժամանակ չունին. հին փիլիսոփայից խօսքը կ'արդարանայ. մարդս, կըսէին, ուսին վրայ պայուսակ մը ունի երկու աչքով, առջեւի աչքին մէջ՝ ուրիշներուն յանցանքը կը նետէ, իսկ ետեւի աչքին մէջ՝ բուն իւր յանցանքներն, ուրիշներունը միշտ տեսնելու եւ իրենները բնաւ չը տեսնելու համար : Այս տեսակ մարդիկները Քրիստոս իրաւամբ փարիսեցւոց նմանցունելով կեղծաւոր կ'անուանէ, ըստ այնմ թէ*

Կեղծաւոր, հան նախ զգերանդ յականէ քումմէ. եւ

ապա հայեսցիս հանել զշիւղն յականէ եղբօր քո ։ Ղուկ. Զ. 42 ։

Եւ այս կեղծաւոր բառովս ալ չը բաւականանալով՝ խող անունը կուտայ իրենց խոշոր խոշոր մեղքերն ու պակասութիւնները թողուցող և ալոց աչքի չը զարնելու թերութիւնները քըննող տարող մարդոց, որք ընդ միշտ աղտեղութեանց մէջ կը գեգերին և ինքնըստիր ու ինքնահաւան երիտասարդներ են, և եկեղեցւոյ վըրնաստակար են խոզերու պէս. ատոնց ճաշակը շատ անպիտան ըլլալով՝ ստամոքսնին ամեն բան կը մարսէ, ուստի արժանի չեն որ մարդարտէ աւելի յարգ ունեցող Աստուծոյ խօսքին քարոզիչներուն ըլլան, և ո՛չ ալ Աստուծոյ հետ հաղորդուելով՝ զԱստուած՝ զՍրբութիւն Սրբութեանցն իրենց մէջն ընդունին։ Այսպիսի մարդիկները շուներու կը նմանցնէ իրենց չար գործերուն համար. ըստ այսմ՝ թէ

Մի՛ տայք զսրբութիւն շանց, և մի՛ արկանէք զմարգարիտս ձեր առաջի խոզաց, զի մի՛ առ ոտն կոխիցեն զնոսա. և դարձեալ երբեքեամանիցեն զձեզ ։ Մատթ. Է. 6 ։

Եւ կը հրամայէ որ անանկներուն չը վստահինք՝ իրենց խելքին կամ բերաններէն ելած խօսքերուն հաւատալով. ատոնք բարի մարդիկ կերևին, բայց սուրբ բաներն իրենց աւանդուելուն պէս ոտնակոխ կընեն, կ'անարգեն ու կը դառնան զձեզ կը բըզըքտեն ։

Խնդրեցէ՛ք և տացի ձեզ, հայցեցէ՛ք և գտջիք, բաղխեցէ՛ք և բացցի ձեզ։ Զի ամենայն որ խնդրէ՝ առնու, և որ հայցէ՝ գտանէ. և որ բաղխէ՝ բացցի նմա։ Մատթ. Է. 7–8։

Դուք այն շուներուն ու խոզերուն նմանող մարդոց կարօտ չէք , ձեր ամէն կարօտութիւնը Աստուած կը լեցնէ . դուք խնդրեցէ՛ք ու պիտի տրուի ձեզի , թէ երկրաւոր ու թէ երկնաւոր բարիք դուք հայցեցէ՛ք ու պիտի գտնէք ձեր հոգւոյ ու մարմնոյ ամենակարեւոր պիտոյքը , դուք չալեցէ՛ք և պիտի բացուի ձեզ երկնային ողորմութեանց դուռը ։

Ո՞ իցէ ՚ի ձէնջ մարդ , զոր խնդրիցէ որդի իւր հաց , միթէ քա՞ր տայցէ նմա ։ Եւ կամ խնդրիցէ ձուկն , միթէ օձ տայցէ նմա ։ Արդ , եթէ դուք որ չարքդ էք , գիտէք պարգեւս բարիս տալ որդւոց ձերոց , ո՛րչափ եւս առաւե՛լ Հայրն ձեր որ յերկինս է՝ տացէ բարիս այնոցիկ՝ որ խնդրեն զնա ։ Մատթ. է. 9—11 ։

Եթէ ձեր շահախնդիր աշխարհային հայրերն իրենց մարդկային չար կամ՝ ՚ի չարն հակամէտ բնութեամբք իսկ իրենց զաւակաց հացի տեղ քար և ձուկի տեղ օձ չեն տար , այլ բարի պարգեւներ կուտան . ո՞րչափ աւելի ձեր երկնաւոր ու ամենաբարի և ամենառատ Հայրն իրմէ խնդրողներուն շնորհներ չը պիտի առատաձեռնէ ։

Զամենայն՝ զոր միանգամ կամիջիք՝ թէ արասցեն ձեզ մարդիկ , այնպէս և դուք արարէք նոցա . զի այն է օրէնք և մարգարէք ։ Մատթ. է 12 ։

Ահա , այս մեր կենաց ոսկի կանոնը կուտայ Քրիստոս , զոր կռապաշտ կայսրն Հռովմայ , Աղեքսանդրոս Սեբերոս իսկ՝ ոսկի գրերով իւր սենեկին պատերուն վրայ գրել տուած էր ։ Այս էր քրիստոնէական բարոյականին համառօտութիւնը , «զամենայն զոր միանգամ կամիջիք թէ արասցեն

հեզ մարդիկ, այնպէս և դուք արարէք նոցա. օրէնքն ու մարգարէք ալ զայս կը սովրեցնեն. մի՛ ըներ այն բանը ուրիշին՝ զոր ուրիշին քեզի ընելը չես ուզեր ։ Բարիք ըրէ այլոց, վասն զի, դու ալ այնպէս կուզես որ քեզ ընեն այլք ։ Բարի մտածէ եղբօրդ վրայ, գութ ունեցիր, սէր սածէ սրտիդ մէջ. այս է, օրէնքն ու մարգարէք և կեանքը գլխովին. սակայն ո՜րչափ քիչ են այս կանոնը գործով բռնողներն, ո՜րչափ սակաւաթիւ են անոնք՝ որոնց քաղցր է այս օրէնքին գործադրութիւնը. ինչ դիւրութեամբ և զուարճութեամբ ուրիշի դէմ կը մաքառին, դէշ կը խօսին, կը զրպարտեն, չարիք կը հասցնեն այլոց, ո՜րչափ դժուարութեամբ բարիք ընել կը մտաբերեն.

Մտէք ընդ նեղ դուռն, զի ընդարձակ է դուռն և հանգիստ ճանապարհն՝ որ տանի ՚ի կորուստ. և բազումք են որ մտանեն ընդ նա ։ Մատթ. Է. 13 ։

Արդարև նեղ է կեանքին դռներն և ճանապարհն, և շատ մարդոց անհնար ու դժուար է եղած այս կանոնը գործադրել, որոնք սովրած են լայն ճանապարհներէ և դռներէ անցնիլ երթալ. սրտերնուն չար հակամիտութեանցն հետևիլ, նախանձ, մախանք, չարանենգութիւն, ոխակալութիւն, քինախնդրութիւն, այս է իրենց կեանքին տարազն, ասոնք են իրենց մտած դռներն և գնացած ճամբաներն ։

Քանզի անձուկ է դուռն և նեղ ճանապարհն՝ որ տանի ՚ի կեանս, և սակաւք են որ գտանեն զնա ։ Մատթ. Է. 14։

Բուն կենաց դուռն ո՛րչափ նեղ ու անձուկ կուգայ իրենց, երբոր պարտաւորին բարի վկայութիւն մ՚ընել, ճշմարիտը խօսել, բարիք մը ընել. ո՛րչափ կընեղուին, կը քրտնին, կը հալին, կը մաշին. Նաև շատ նեղ է կեանքի դուռն և անձուկ ճանապարհն անոնց համար՝ որ սովորած են աշխարհի ունայն զուարճութեանց և իրենց կրքերն յագեցնելու, և անոնց շատ լայն ու ընդարձակ կուգայ մեղաց ճանապարհն ու դուռն, և ոտքերնին աւելի այս դուռը կը դիմէ, քան թէ միւս դուռը։

Զգոյշ լերուք 'ի սուտ մարգարէից որ գան առ ձեզ հանդերձիւք ոչխարաց, և 'ի ներքոյ են գայլք յափշտակողք. 'ի պտղոց նոցա ծանիջիք զնոսա։ Միթէ քաղիցեն 'ի փշոց խաղող. կամ 'ի տատասկէ թուզ. Այսպէս ամենայն ծառ բարի, պտուղ բարի առնէ. և ծառ չար, պտուղ չար առնէ։ Ոչ կարէ ծառ բարի, պտուղ չար առնել, և ոչ ծառ չար, պտուղ բարի առնել, Ամենայն ծառ որ ոչ առնէ պտուղ բարի, հատանի և 'ի հուր արկանի։ Ապա 'ի պտղոց նոցա ծանիջիք զնոսա։ Մատթ. 15—20.

Իմ այս խօսքերուս հակառակը սորվեցնողներուն մի՛ հաւատաք, անոնք թէև ոչխարի հեզութեան ու անմեղութեան հագուստով կուգան ձեզ, բայց դրսուանց է անոնց առաքինութիւնը. ներքնապէս յափշտակող գայլեր են և սուտ մարգարէներ՝ ճշմարիտ մարգարէներու անուանց տակ։ Անոնք իրենց պտուղէն կը ճանչցուին, անոնք լայն ճամբայները կ՚առաջնորդեն ձեզ, և ընդարձակ կենցաղավարութիւն կը քարոզեն, մի՛ հաւատաք, անոնց պտուղին տեսքը գեղեցիկ է, բայց համը դառն է, փուշեր են, որ չեն կըր-

նար խաղող բերել, և տատասկներ են՝ որ չեն կրնար թուզ բերել. աւետարանին հեզութեան ոգւոյն հակառակ անոնք ամբարտաւանութիւն կը ներշնչեն 'ի ձեզ, անոնք ոչ հոգևորութիւն՝ այլ սոսկ մարմին կ'ուսուցանեն. անոնց վարդապետութեան պտուղը՝ ձեր հոգւոյն վիշտ և ցաւ կուտայ. անոնք փտտած ծառեր են, որոնց պտուղը գէշ է. ես եմ կենաց ծառը, բարի, աղէկ ծառն, իմ պտուղս ճաշակեցէ՛ք և տեսէ՛ք զի բարի է։ Բարի ծառը կենդանութեան վտակներով ոռոգեալ, թէև տեսք չունենայ, չար պտուղ՝ և չար ծառը թէև գեղեցկատեսիլ ալ ըլլայ և սաղարթախիտ՝ սակայն և այնպէս բարի պտուղ չի կրնար բերել, անոնք կրակը ձգուելու յատկացած ծառեր են։ Խօսքերնին ու տեսքերնին գեղեցիկ, բայց գործերնին և պտուղնին չար է։

Այր բարի, 'ի բարի գանձուց սրտի իւրոյ հանէ բարի, և այր չար 'ի չարէն հանէ զչար, զի 'ի յաւելուածոյ սրտին խօսի բերան. Ղուկ. Զ. 45.

Բարի սիրտ ունեցող մարդը բնաւ չարիք չը խորհիր, չարիքը՝ չար սրտի արգասիք և ծնունդ ըլլալով չարերը միայն չարիք կը խորհին և այլոց չարիք կը նիւթեն.

Զի՞ կոչէք զիս՝ Տէ՛ր Տէ՛ր, և զոր ասեմս ոչ առնէք, Ղուկ. Զ. 46։ Ոչ ամենայն որ ասէ ցիս Տէ՛ր, Տէ՛ր, մտցէ յարքայութիւն երկնից, այլ որ առնէ զկամս Հօր իմոյ որ յերկինսն է. Մատթ. Է. 21.

Քանի որ զիս ձեզ Տէր կը դաւանիք և այնպէս յօգնութիւն կը կոչէք ձեզ, բոլոր ըսածներս կատարելու փոյթ ունենալու էք. վասն զի, սոսկ

անունով , լոկ արտաքին կերպով զիս իրենց Տէ՛ր , Տէ՛ր , անուանելով պոռացողներն , ըստ որում իմ երկնաւոր Հօրս կամաց համեմատ չեն ուզեր գործել , չեն կրնար Աստուծոյ արքայութիւնը մտնել և ժառանգել ։

Այնպիսիներն եթէ իմ անունովս ալ քարոզեն , դարձեալ Աստուծոյ արքայութիւնը չը պիտի ժառանգեն ․ Աստուած կը պահանջէ որ իւր կամքը կատարեն ։ Ո՛վ որ Աստուծոյ կամքը կատարէ , նա միայն կը ժառանգէ արքայութիւնը ։

Բազումք ասիցեն ցիս յաւուր յայնմիկ ․ Տէ՛ր , Տէ՛ր ․ ո՞չ յանուն քո մարգարէացաք , և յանուն քո դևս հանաք , և յանուն քո զօրութիւնս բազումս արարաք ։ Եւ յայնժամ ասացից ցնոսա , եթէ ո՛չ երբէք ճանաչէի զձեզ ։ Ի բաց կացէք յինէն՝ ամենեքեան որ գործէք զանօրէնութիւն ։ Մատթ ․ է․ 22-23 ․

Վերջին օրը շատերը պիտի յիշեցնեն Աստուծոյ , Տէ՛ր , Տէ՛ր , ո՞չ ապաքէն քու անունովդ մարգարէացանք , հրաշքներ գործեցինք , մենք մարգարէներ չէ՞նք մի , քու անունովդ դևեր չը հանեցի՞նք մի ․ բայց Աստուած՝ որ Բաղաամին ու Կայիափային մարգարէութիւն ընել տուած էր , և մինչև անգամ Բաղաամու իշուն աչքերը բացած , լեզուին խօսել տուած էր , այնպիսի շնորհքներն իրեն՝ և ոչ անոնց սեպհականելով զձեզ չեմ ճանչնար , պիտի ըսէ , ո՛վ որ անիրաւութիւն կը գործէիք ու իմ կամքս չէիք կատարեր ։

Ամենայն որ գայ առ իս ․ Ղուկ․ Զ․ 47 ․ Եւ լսէ զբանս իմ զայսոսիկ , և առնէ զնոսա , նմանեսցի առն իմաստնոյ , Մատթ․ է․ 24 ․ Որ շինէր տուն , որ փորեաց և խորեաց

եւ եդ հիմն ՚ի վերայ վիմի ։ Ղուկ. Զ. 48 ․ Իջին անձրեւք եւ խաղացին գետք , շնչեցին հողմք եւ բախեցին զտունն , եւ ոչ կործանեցաւ , քանզի , ՚ի վերայ վիմի հաստատեալ էր ։ Մատթ. Է. 25 ։

*Ով որ իմ այս խօսքերս լսելով գործադրելու կ'աշխատի , իւր տունը վէմ քարի վրայ հիմնող իմաստունին կը նմանի ․ Հեղեղանման անձրեւներ, շղթայագերծ հողմունք և գարնանազայր գետերու հոսանքները չեն կարող կործանել ․ Քրիստոս ինքն է հաստատուն վէմը ․ իմաստուն կըլլանք՝ եթէ անոր վրայ , անոր խօսքերուն վրայ կըռթնցնենք մեր հոգին , այն ատեն աշխարհային և սուտ վարդապետութեանց հողմունք և կրից հոսանք չեն կրնար տապալել մեր հոգին ։*

Եւ ամենայն որ լսէ զբանս իմ զայսոսիկ՝ եւ ո՛չ առնէ զնոսա , նմանեսցէ առն յիմարի՝ որ շինեաց զտուն իւր ․ Մատթ. Է. 26 ․ ՚Ի վերայ հողոյ առանց հիման ․ Ղուկ. Է. 49 ։ Իջին անձրեւք՝ յարեան գետք , շնչեցին հողմք՝ հարին զտունն , եւ անկաւ , եւ էր կործանումն նորա մեծ յոյժ ։ Մատթ. Է. 27 ։

*Աստուծոյ խօսքերը լսող շատ կայ, սակայն անոնք՝ որ լսածնուն համեմատ չեն գործեր, առաքինութիւն ՚ի փառս մարդկան կը գործեն , հազարաւոր չարեաց պատճառ կըլլան , և առանց ճշմարիտ ու անկեղծ հաւատոյ և սիրոյ և յուսոյ կապերին , շէնքերնին (իրենց հոգւոյ շէնքը) աւազի վրայ տուն հիմնող յիմար մարդուն տանը պէս շուտ մը կը կործանի , երբ աշխարհի վիշտերը , ձախորդութիւններն , և չարին հնարած սոսկալի խաբէութիւններն ու յարուցած անհնարին փորձութիւնները հեղեղանման անձրեւոյ պէս վրայ*

դան։ Այսպիսի հեղեղներու պատահած հողին մը կործանումն այնքան մեծ է՝ որ մինչև Աստուծոյ արքայութենէն ալ կը զրկուի և վերջին աւուր սոսկալի դատաստանին կը մատնուի։

Եւ (եղեւ) իբրեւ կատարեաց Յիսուս զամենայն զբանս զայսոսիկ, զարմանային ժողովուրդքն ընդ վարդապետութիւն նորա։ Զի իբրեւ իշխանութեամբ ուսուցանէր՝ և ո՛չ որպէս դպիրքն (և փարիսեցիք)։ Մատթ. է. 28—29։

Յիսուսի այս ընդ երկար քարոզութիւնը փոխանակ ժողովրդեան ձանձրոյթ և զայրոյթ պատճառելու, նոցա զարմանքը շարժեց. վասն զի իմաստութեամբ և սքանչելի վարդապետութեամբ կը խօսէր և բոլոր ըսածներն իւր գործոց կը համապատասխանէին, և դպրաց և փարիսեցւոց պէս չէր վարդապետեր, որոց խօսքերն որչափ ալ ճարտար ըլլային, բայց հոգեշահ իմաստներ չը պարունակելնուն, տաղտուկ կ'առթէին լսողներուն, մանաւանդ որ խօսքի համաձայն գործք չունէին. ուստի և իրենց ըսածները բնաւ չէին ներգործեր ժողովրդեան սրտին։ Բայց երբոր Յիսուս կը խօսի, թէպէտ լերան վրայ, թէպէտ ընդ երկար, և թէպէտ ծանր խօսքերով և բարձր և Աստուածային հրամաններով, այլ սակայն չի ձանձրանայր ժողովուրդը, կը հրճուի, կը զարմանայ և կը հաւանի որ ամենայն ինչ ճշմարտութեամբ խօսեցաւ. ինչպէս չէին համարձակեր ընել դպիրներն, վասն զի իրենց անարդար վարմունքն և Աստուծոյ կամաց հակառակ ընթացքնին ու գործերնին, նոյն իսկ իրենց դէմ դատախազ ունէին, որով չէին կրնար ամենայն ինչ ճշմարտութեամբ խօսիլ, եթէ ոչ՝

ծագր ու ծանակ կըլլային ։ Ժողովուրդը կը հիա-նար, կը զարմանար Յիսուսի վարդապետութեան վրայ՝ որ իշխանութեամբ, ինչպէս երբեմն Թո-հերու և բոհերու մէջ զերկիր պատած խա-ւարի վրայ «եղիցի լոյս» ըսելով իշխանութեամբ լոյս ճառագայթեց, այնպէս և այժմ խաւարեալ մտքերու, սրտերու և հոգիներու մէջ հոգևոր լոյս կը ճառագայթէր, և դպիրներու ու փարի-սեցիներու պէս ըլլալուն, տղայական և առա-պելախառն վարդապետութիւններ չէր ըներ ։



# ԳԼՈՒԽ ԺԲ.



ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԲՈՐՈՏԻՆ .— ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԾԱՌԱՅԻ ՀԱՐԻՒՐԱՊԵՏԻՆ ԵՒ ԴԻՒԱՀԱՐԱՑ ԲԱԶՄԱՑ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ՀԻՒԱՆԴԱՑ . — ՅԱՐՈՒԹԻՒՆ ՈՐԴԻՈՅ ԱՅՐԻՈՅՆ Ի ՆԱՅԻՆ .—ՀԱՐՑՈՒՄՆ ԱՇԱԿԵՐՏԱՑՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ.— ԳՈՎՈՒԹԻՒՆՔ ՓՐԿՉԻՆ ԶՅՈՎՀԱՆՆԷ .—ՆԱԽԱՏԷ ՔՐԻՍՏՈՍ ԶՔԱՂԱՔՍՆ ԱՆՀԱՒԱՏՍ. — ՀՐԱՒԷՐ ՎԱՍՏԱԿԱՐԵԿ ՏԱՌԱՊԵԼՈՑ.



## Ա. Բժշկութիւն բորոտին .

Այլ երբ էջ 'ի լեռնէ անտի , գնացին զհետ նորա ժողովուրդք բազումք ։ Մատթ. Ը. 1 ։

Յիսուս իր վարդապետութիւնը լերան վրայ բազմաթիւ ժողովրդեան խօսելէն վերջը իջաւ անկէ , թող տալով որ ժողովուրդն ալ եղած նորանոր ու հիանալի վարդապետութեանց բարձր իմաստներուն վրայ որոճայ և օգտի . մանաւանդ թէ 'ի լերին քարոզելուն բուն պատճառը ժողովրդեան օգուտն եղած էր . վասն զի մէկ կողմանէ ունկնդիրք անզբաղ միտք ունենալով կրնային հեշտին ըմբռնել Յիսուսի աստուածային վարդապետութիւններն , ուրիշ կողմանէ կը հասկընային որ Սինէական լերան վրայ օրէնքներ ու պատգամներ որոտացող Աստուածն է ինք՝ որ

քարեղէն տախտակներու վրայ գրելու տեղ՝ իրենց սրտերուն մէջ անջինջ կը քանդակէ աստուածային հրամաններն ու պատգամներն և Աստուծոյ արքայութեան տենչը։ Բայց որոնք որ ճշմարիտ վարդապետութեանցը միտ դրին, և Յիսուսի աստուածային խօսքերուն վրայ սէր մը կապեցին, չէին ուզեր որ բաժնուին իրմէ, որպէս զի նորա խօսքերէն և գործած հրաշքներէն օգտին. ուստի շատերն ետևէն գնացին։

Եւ ահա մատուցեալ բորոտ մի, երկիրպագանէր եւ ասէր. Տէ՛ր, եթէ կամիս՝ կարող ես զիս սրբել։ Մատթ. Ը. 2։

Քիչ մը յառաջ լերան վրայ բանիւք իւր աստուածութիւնը կը փառաւորէր՝ այժմ հրաշիւք. բորոտ մը կուգայ, կ'երկրպագէ իրեն, Տէ՛ր, կըսէ, թէ որ ուզես՝ անտարակոյս կրնաս զիս իմ բորոտութենէս բժշկել։ Յիսուս կը տեսնէ որ բորոտը սրտանց կը հաւատայ։

Ձգեաց զձեռն իւր և հասոյց ի նա Յիսուս և ասէ. կամի՛մ՝ սրբեա՛ց. և վաղվաղակի սրբեցաւ ի նմանէ բորոտութիւնն։ Մատթ. Ը. 3։

Աստուածապէս ձեռքն երկնցուց. կամի՛մ, ըսաւ, ըստ որում տեսայ ջերմեռանդութիւնդ, կամի՛մ, սրբուէ՛. և շուտով բժշկուեցաւ. Աստուածապէս երկնցուց, վասն զի մարդիկ չէին ձեռք դպցուներ չ'պըլըշտըկուելու համար, և ինչ բան որ բնութիւնը տակաւ առ տակաւ դեղերով կընէր, եթէ բուժելի իսկ լինէր հիւանդութիւնը. Յիսուս աստուածապէս մէկ երկվայրկենի մէջ կընէր, կը լմնցունէր կամ միայն դպչե-

լով կամ բառ մը միայն արտասանելով, այսպէս ամէն բան կարելի է նորա առջև և մեր մարմնաւոր բորոտութեանց չափ աւելի ծանր հոգևոր բորոտութիւնն ևս կարող է սրբել, միայն թէ նորա ջերմեռանդութիւնը, նոյն հաւատքը պէտք է ունենալը և նոյն հոգւով պէտք է երկրպագելը անոր՝ որուն կրկնէ ձայնը երկնաւորաց և երկրաւորաց ։

Եւ ասէ ցնա Յիսուս, զգո՛յշ լեր՝ մի՛ ումեք ասիցես ։ Մատթ. Ը. 4. Այլ երթ ցո՛յց զանձն քո քահանայիդ և մատո՛ պատարագն՝ զոր հրամայեաց Մովսէս ՚ի վկայութիւն նոցա ։ Մատթ. Ը. 4 ։

Աւա՛ գնա՛, ըսաւ, նորոգուածդ, ինքզ զգուշացիր ցոյց տո՛ւր քահանային, եւ քահանային վկայութիւնն առ, որպէսզի իսրայելի ընկերութեան մէջ նորէն ընդունուիս եւ Մովսէսի հրամայած պատարագը մատո՛, առանց ինծմէ բժշկուած ըլլալդ իմացնելու ։ ( կարդա՛ Ղուկ. ԺԴ. ԺԳ. գլուխները ։ )

Բ. Բժշկութիւն ծառայի հարիւրապետին ։

Տիբեր կայսրը Պաղեստինը հնազանդութեան մէջ բռնելու համար տեղ տեղ զօրաց գունդեր դրած եւ բերդեր շինած էր . Յուդայի երկրին մէջ երկար ատենէ ՚ի վեր այս գունդերէն միոյն հրամանատար հարիւրապետ մը՝ որ հրէից ազգը կը սիրէր եւ անոնց բարեկամութիւն եւ բարերարութիւն ալ ըրած էր, Կափառնաումի ժողովարանն իսկ ծախսովը շինելով . այս մարդն ինչպէս կերևի, Մատթէի Ը. եւ Ղուկասու Է.

գլուխներուն մէջ՝ Ս. գրոց տեղեկութիւն ալ ու-
նէր . վասնզի , իւր անդամալոյծ հիւանդ ծա-
ռային իւր որդւոյն պէս խնամ կը տանէր , ծա-
ռաները Հռովմայեցւոց աչքին բան մը չէին ,
բայց ըստ Մովսիսի օրինաց “ ընկեր ” և խնամոց
արժանի էին . այդ ծառայն յաչս հարիւրապե-
տին շատ սիրելի , շատ պատուական էր . սա
Քրիստոսի վրայօք լսած էր եւ առ խոնարհութեան
ինք անձամբ չհամարձակեցաւ Քրիստոսի երթալ,
այլ իւր բարեկամ հրէից երեւելիներուն աղաչեց
որ իր ծառային համար Յիսուսի բարեխօսեն ։

Եւ . . . եմուտ (Յիսուս) ՚ի Կափառնաում ։ Հարիւրա-
պետի ուրումն ծառայ չարաչար հիւանդացեալ՝ մերձ էր ՚ի
վախճանել , որ էր նմա պատուական ։ Իբրեւ լուաւ զՅիսու-
սէ՝ առաքեաց զծերսն հրէից , աղաչէր զնա՝ զի եկեսցէ
ապրեցուսցէ զծառայն նորա . Ղուկ. Է. 1—4 ։

« Եկեսցէ եւ ապրեցուսցէ զծառայն՝ » եբ-
րայական ոճ մ՚ է , որ շուտով բժշկել կը նշանա-
կէ . « եկեսցէ » բառը՝ “ գալ ” չը նշանակեր ։

Եւ ասէր , Տէ՛ր , մանուկ իմ անկեալ կայ ՚ի տան ան-
դամալոյծ՝ չարաչար տանջեալ ։ Մտթ. Ը. 6 ։

Հարիւրապետին միջնորդներն եկան բարե-
խօսելու եւ անոր հրէից ազգին ժողովրդեան
ըրած բարիքն յիշելով՝ Յիսուսի գութը շարժել
կուզէին . ըստ այնմ

Եւ նոքա եկեալ առ Յիսուս՝ աղաչէին զնա ստէպ ա-
սէին , Թէ արժանի է՝ որում զշնորհս զայս առնես ։ Զի
սիրէ զազգս մեր , և զժողովրդանոցն նա շինեաց մեզ .
Ղուկ. Է. 4—5 ։ (Եւ) ասէ Յիսուս , Ես եկից և բժշկե-

ցից զնա ․ Մատթ․ Ը․ 7 ։ (Եւ գնաց ընդ նոսա) ․ Իբրեւ ոչ֊ ինչ կարի հեռի էր ՚ի տանէն , յղեաց առ նա հարիւրապետն բարեկամս , եւ ասէ ցնա ․ Տէ՛ր, մի՛ ինչ աշխատ լինիր , զի չեմ բաւական եթէ ընդ յարկաւ իմով մտանիցես ։ Ղուկ․ Է․ 6 ։ (Եւ նա ինքնին) հարիւրապետն եւ ասէ ․ Տէ՛ր, չեմ բաւական՝ եթէ ընդ յարկաւ իմով մտցես ։ Մատթ․ Ը․ 8 ․ Վասն որոյ եւ ո՛չ զանձն համարեցայ արժանի՝ առ քեզ գալոյ ․ այլ ասա բանի՛ւ եւ բժշկեսցի մանուկ իմ ։ Քանզի եւ ես այր մի եմ կարգեալ ընդ իշխանութեամբ ․ ունիմ ընդ ինեւ զինուորս , եւ ասեմ սմա՝ ե՛րթ , եւ երթայ ․ եւ այլում թէ ե՛կ , եւ գայ․ եւ ծառայի իմում թէ արա՛ զայս, եւ առնէ ։ Ղուկ․ Է․ 7—8 ։

*Միջնորդները կըթախանձէին, այսպիսի մարդու մը իրաւցնէ կը վայլէ , կըսէին , որ շնորհք ընես իւր սիրական ծառայն բժշկելու ․ ինք մեր ժողովրդին վրայ այնչափ մեծ սէր ունի՝ որ մինչեւ մեր ժողովրդանոցն ինք շինած է ։ Գորովեցաւ Յիսուս եւ ուզեց անձամբ երթալով բժշկել , եւ այն եկող անձանց հետ գնաց ․ Եւ երբոր մօտեցաւ՝ հարիւրապետը դէմ ելաւ՝ ու իւր մեղաց վրայ կատարեալ զիղջ ընող մարդու մը կամ Աստուծոյ դարձող, ապաշխարող սրտի մը արժանի խոնարհութեամբ՝ նախ ուրիշի ձեռքով, յետոյ ինք անձամբ դալով, ըսաւ․ Տէ՛ր, արժանի չեմ որ քեզ նման գերամարդկային էակ մը իմ տունս ընդունիմ , որ միայն մեղաւորի մը բնակարան է ․ կաղաչեմ , ՚ի զուր ծանրութիւն տուած չըլլամ ձեզ․ մի՛ անհանգստանաք , ինչպէս ես իշխանութեան ներքեւ հնազանդ հարիւրապետ մ՚ եմ , իմ ներքեւս ալ ինձ հնազանդ զինուորներ ունիմ, մէկուն գնա՛ կըսեմ՝ կերթայ , միւսին ե՛կ կըսեմ՝ կուգայ , ծառայիս ալ ի՛նչ հրաման ընեմ, կը կատարէ․ այս֊*

տանելով բազում դիւահարներ և հիւանդներ բերին իրեն. Յիսուս տեսնելով որ ժողովուրդն հաւատովլի, մութը կոխելն ալ հոգ չըներ, այլ գթութիւն կը հայյէ, բոլոր ախտաժետաց բըժշկութիւն շնորհեց և այսահարներն ու դեւերը հանեց և բժշկեց իր աստուածային խօսքովը.

## Գ. Յարութիւն որդւոյ այրւոյն 'ի Նային

Եւ եղեւ 'ի վաղիւն երթայր 'ի քաղաք մի, որում անուն էր Նային. երթային ընդ նմա և աշակերտք նորա եւ ժողովուրդ բազում. Իբրեւ մերձ եղեւ 'ի դրուն քաղաքին, և ահա բերէին մեռեալ մի՝ որդի միամօր մօր իւրոյ, և նա էր այրի. եւ ժողովուրդ բազում քաղաքին էր ընդ նմա։ Ղուկ. է. 11—12։

Հետեւեալ օրն Յիսուս Կափառնաումէն եօթը կամ ութը մղոն հեռու Թաբոր լերին ստորոտը իրիկուան դէմ իր աշակերտաց հետ Նային քաղաքը կ'երթար. երբոր քաղաքին դրան մօտեցան՝ ամբոխ մը տեսան յուղարկաւորաց, որ այրի կնոջ մը մէկ հատիկ տղաակը գերեզման կը տանէին, բազում ժողովուրդ ալ մեծ ցաւ զգալով այդ տղաակին մահուանը վրայ՝ դագաղին ետեւէն յուղարկաւոր կերթային։ Տառապեալ մօրը կըսկիծն այնչափ դառն էր՝ որ անչափ հեծեծանօք և արտասուօք իր տղակին կը հետեւէր՝ նորա մարմնոյն վերջին տապանը մատուցանելու։

Իբրեւ ետես զնա Տէր՝ գթացաւ 'ի նա և ասէ. Մի՛ լար։ Եւ մատուցեալ մերձեցաւ 'ի դագաղն. և որք բարձեալն տանէին՝ կացին. և ասէ, պատանեակ՝ քեզ ասեմ՝ արի՛։ Կանգնեցաւ և նստաւ մեռեալն, և սկսաւ խօսել.

և ետ զնա ցմայր իւր ։ Ղուկ. Է. 13—15 .

Գթացաւ Յիսուս և այրւոյն դառնալով՝ մի՛ լար, ըսաւ. մօտեցաւ դագաղին և այն ժամանակ դագաղակիրք կանգ առին. և ահա՛ նորէն հնչեց այն ձայնն աստուածային՝ որ բորոտին և հարիւրապետին ծառային և անհամար հիւանդներու բժշկութիւն շնորհած էր. «Պատանի՛, քեզ ասեմ, արի՛»։ Մահը, այո՛, մահը հնազանդեցաւ կենաց և մահու Աստուծոյն հրամանին, և իսկոյն մեռեալն ելաւ, նստաւ և խօսեցաւ ։ Մի և նոյն հզօր ձայնն՝ օր մը բոլոր մարդկային ազգին գերեզմաններուն վրայ պիտի որոտայ այդ հրամանն, և ինչպէս Նայինի պատանին՝ այնպէս ազգք և ազինք գերեզմաններէն պիտի յարուցանէ ։

Եւ առ հասարակ զահի հարան, և փառաւոր առնէին զԱստուած՝ և ասէին, թէ մարգարէ մեծ յարուցեալ է 'ի միջի մերում, և թէ այց արար Աստուած ժողովրդեան իւրում 'ի բարութեան ։ Ղուկ. Է. 16 .

Որչա՜փ ուրախութիւն, որչափ ահ, ի՛նչ զարմանք պատճառեց յուղարկաւորաց այս սքանչելւոյն յարութիւնն 'ի ժամանակաւոր կեանս, և ո՛րչափ փառաբանութիւններ նուիրեցին Աստուծոյ այն ժամուն, ըսելով թէ՝ «այց արար Աստուած ժողովրդեան իւրում», և թէ մեջերնիս մեծ մարգարէ մը ելած է ։ Այս ուրախութիւնն ու զարմանքն որչա՛փ պիտի բազմապատկի այն մեծ օրն՝ յորում յաւիտենական կեանքի համար պիտի ողջանան մեռեալք ամենայն ։ Աստուծոյ որդին ո՛րչափ ահաւոր պիտի երևնայ այն օրը չարերուն, և ի՛նչ փառաբանութիւններ և անըս-

նըն և այլ հրաշագործութիւններ լսեց , և իր աշակերտաց ալ Յիսուսի վրայ 'ի նախանձ շարժելնին կամ գայթակղելնին նկատեց , զիրենք այս վիճակէն հանելու և զՅիսուս փրկիչն իրենց ճանչցընելու և նորա սիրոյն վառելու համար , դացէ՛ք , ըսաւ , Յիսուսի և հարցուցէք թէ ի՞նքն է հրէից ակնկալած Մեսիայն ՝ չէնէ ուրիշին սպասենք ։

Եւ եկեալ արքն առ նա՝ ասեն , Յովհաննէս Մկրտիչ առաքեաց զմեզ առ քեզ՝ և ասէ , դո՞ւ ես որ գալոցն ես ։ եթէ այլում ակնկալցուք ։ Ղուկ. Է. 20 ։

Եկան երկու աշակերտներն Յիսուսի քով և ինչպէս որ հրամայած էր Յովհաննէս իրենց վարդապետն՝ այն կերպով հարցուցին Յիսուսի թէ , ի՞նքն է Մեսիայն . յայտնի է որ Յիսուսի տալիք պատասխանը , Յովհաննու աշակերտաց պիտի օգնէր . վասն զի Յովհաննէս ինք կանխաւ գիտէր նորա Աստուծոյ որդի և աշխարհի Մեսիայ փրկիչ լինելն ։

Եւ 'ի նմին ժամու բժշկեաց զբազումս 'ի հիւանդութեանց և 'ի հարուածոց և յայսոց չարաց , և կուրաց բազմաց շնորհեաց տեսանել ։ Պատասխանի ետ նոցա և ասէ . երթա՛յք , պատմեցէ՛ք Յովհաննու՝ զոր տեսէքդ և լուայք . զի կոյրք տեսանեն , և̥ կաղք գնան , բորոտք սրբին , խուլք լսեն , մեռեալք յառնեն , աղքատք աւետարանին . և երանի է՝ որ ո՛չ գայթագղեսցի յիս ։ Ղուկ. Է. 21—22 ։

Յիսուս այս եկողներուն պատասխան տալէ յառաջ , իւր գերմարդկային էակ մի լինելն իրապէս ցըցուց . վասնզի աչքերնուն առջև շատ մը բժշկութիւններ ըրաւ , հիւանդներու , դիւա-

հարճներու եւ կոյրերու . այս կերպով Յովհաննու աշակերտաց իւր վրայ ունեցած գայթակղութիւնին և տարակուսանքին վարատեց, յետոյ ուրեմն դարձաւ ըսաւ՝ որ երթան տեսածնին ու լսածնին իրենց վարդապետին պատմեն , այն վարդապետին՝ որ այս նշանագործութիւններէն առաջ կը ճանչնար զՅիսուս եւ Հոգւով որքով յորովայնէ երկրպագեց անոր , գնացէ՛ք պատմեցէ՛ք որ , ըսաւ , Եսայեայ մարգարէութիւնք կը կատարուին, թէ « Ահաւասիկ Աստուած մեր . . . ինքնին եկեսցէ , եւ փրկեսցէ զմեզ . յայնժամ աչք կուրաց բացցին , եւ ականջք խլից լուիցեն . յայնժամ վազեսցէ կաղն իբրեւ զեղջերու եւ պա՛րզ լիցի լեզու ծանրախօսաց , զի ջուր բղխեցաւ յանապատի եւ գետ ՚ի ծարաւուտ երկրի „ ( Եսայի ԼԵ. 4—6 . եւ երանի՜ անոր որ այս ամենը կատարուած տեսնելով ոչ եւս կը տարակուսի իմ աշխարհի Մեսիայն ըլլալուս վրայ . որով կը յանդիմանէր այս երկու աշակերտաներն , որք Յիսուսի վրայ ճշմարիտ գաղափար չունէին եւ իրենց վարդապետը քան զՅիսուս մեծ կը գրէին :

## Ե. Գովութիւնք Փրկչին զՅովհաննէ

Եւ իբրեւ նոքա գնացին , սկսաւ Յիսուս ասել ժողովրդեան զՅովհաննէ . զի՞նչ ելէք տեսանել յանապատին , եղէ՞գն շարժուն ՚ի հողմոյ . Մատ. ԺԱ. 7 .

Աշակերտք երբոր գնացին , Յիսուս ժողովուրդին հետ խօսել սկսաւ՝ ըսելով . դուք այն անապատը երբոր գնացիք , Յովհաննէսն ի՞նչ կարծեցիք , հովմերէ շարժուղ եղէ՞գն , այսինքն ամեն նեղութիւններէ շարժող փոփոխամի՞տ մէկն.

կամ անձնասէր ու փափկասէր մէկն․ այսպիսիք յարքունիս են եւ ոչ յանապատս եւ 'ի բանտի։ Հապա ի՞նչ ելիք տեսնել անապատին մէջ, մարգարէ՞ մը․ — այո՛, կըսեմ ձեզ, առաւել եւս քան զմարգարէ էր նա։ Միւս մարգարէները Քրիստոսէ շատ յառաջ իբրև սուրհանդակներ՝ որ Թագաւորին գալը խիստ հեռուէն կ'իմացնէին զայն ընդունելու պատրաստուելու համար, իսկ Յովհաննէս, իբրև Թագաւորի քով գտնուող արքունեաց մեծ իշխանաւորը Քրիստոսի առջեւէն կը գար, խիստ մօտիկ, հրեշտակ՝ զի պատրաստեսցէ զճանապարհս քո առաջի քո, ըստ Մաղաքեայ եւ Եսայեայ։

Այլ զի՞նչ ելէք տեսանել, մա՞րդ 'ի հանդերձս փափկութեան զարդարեալ. Մատթ. ԺԱ. 8 ։ Ահաւասիկ որ 'ի հանդերձս երևելիս և 'ի փափկութեան են՝ Ղուկ. Է. 25. 'ի տունս թագաւորաց են։ Այլ զի՞նչ ելէք տեսանել. մարգարէ՞. այո՛ ասեմ ձեզ, և առաւել ևս քան զմարգարէ. Մատթ. ԺԱ. 8-9 ։ Ամէն ասեմ ձեզ. մեծ 'ի ծնունդս կանանց մարգարէ քան զՅովհաննէս ո՛չ ոք է. Ղուկ. Է. 28 ։ Բայց փոքրիկն յարքայութեան երկնից մեծ է քան զնա ։ Մատթ. ԺԱ. 11 ։

Մարգարէից մէջ քան զայս մեծ մարգարէ չէ եղած․ մեծ է քան զՄովսէս, զԵղիաս, Դաւիթ, Եսայի և այլն, Նորա մեծութիւնը կըրնայ չափուիլ իւր բարուց բարձրութենէն․ որ նոր եղանակաւ քան զամենը գերազանցեց, եւ բոլոր ժամանակին աղօթից եւ օրհնութեանց նուիրեց, ոչ խորտիկօք կըկերակրուէր եւ ոչ փետրալից անկողիններու մէջ կըհանգչէր եւ ոչ իսկ հրապարակներէ անցնելով՝ երեւիլ կ'ախորժէր․ սաստիկ

ու հեղ էր, եւ առ Թագաւորս կարի համարձակ, ծնունդն ալ մեծ է, վասնզի դեռ չծնած՝ իւր փրկչին երկրպագելու երջանկութեան արժանացաւ, եւ զանի մարմնաւոր աչօք տեսաւ. բայց փոքրիկն յարքայութեան երկնից մեծ է քան զնա. այսինքն թէ, ինքն Քրիստոս իբր յետոյ քան զնա ծնանելով՝ թէպէտեւ փոքրիկ է հասակաւ, այլ մեծ է քան զնա յոյժ ։

Բայց յաւուրց Յովհաննու Մկրտչի մինչեւ ցայժմ՝ արքայութիւնն երկնից բռնադատի, եւ բռնաւորք յափշտակեն զնա ։ Մատթ. ԺԱ. 12 ։

Հիմակ՝ Աստուծոյ արքայութեան դուռը ձեռք առին, առջի ժամանակներուն պէս Մեսիայի գալստեանն ակնկալութիւն չմնաց. դուռը բաց է ու հաւատովք արիացեալք (բռունք) ձեռքէ ձեռք կը յափշտակեն (գափմագ) ։

Քանզի ամենայն օրէնք եւ մարգարէք մինչեւ ցՅովհաննէս մարգարէացան ։ Մատթ. ԺԱ. 13 ։

Ինձ համար, մինչեւ Յովհաննէս, բոլոր մարգարէները գուշակեցին, ժողովուրդն արթնցուցին՝ որ աշխարհի փրկիչ Մեսիային գալստեան ակնկալէ. մարգարէացան իմ գալուստս եւ քարոզեցին մինչ ցՅովհաննէս, այլ երբ մարգարէութիւնն ինձմով լմնցաւ՝ մարգարէք ալ լռեցին.

Եւ եթէ կամիք ընդունել՝ նա է Եղիա՝ որ գալոցն է ։ Մատթ. ԺԱ. 14 ։

Նա է՝ որ Հոգւով սրբով սրբուած կընմանի Մովսէսի եւ Եղիայի եւ է մեծ վարդապետ ապաշխարութեան ։

Որ տանիցն անկեանց վերայ՝ մի իջցէ ։ Մրկ. ԺԳ. 15 ։

*Յիսուս այն ժամանակի համար ըսել կուզէ ժո- ղովուրդին մէջ՝ աղէկ ուշադրութիւն ըրէք ըսած խօսքերուս ։*

Եւ ամենայն ժողովուրդն իբրև լուան՝ և մաքսաւորքն, արդարացուցին զԱստուած. զի մկրտեցան ՚ի մկրտութիւն Յովհաննու ։ Ղուկ. է. 29 ։

*Ժողովուրդն ու մաքսաւորներն որոնք որ Յով- հաննեսէն մկրտուած էին, երբ Յիսուսէն՝ Յով- հաննու վրայ այս մեծ գովեստները լսեցին, գո- վեստներն ըսող Տէրոջ Յիսուսի խօսից հաւատացին.*

Իսկ փարիսեցիքն և օրէնսգէտք, զխորհուրդն Աստու- ծոյ անարգեցին յանձինս իւրեանց, զի ոչ մկրտեցան ՚ի նմանէ. Ղուկ. է. 30 ։

*Իսկ փարիսեցիներն ու օրինաց վարդապետ- ները Աստուծոյ այս խորհրդաւոր տնօրէնութիւ- նըն՝ թէ Յովհաննէս հոգւով Եղիայի պէտի գար՝ անարգեցին. չուզեցին հաւանիլ, վասն զի, իրենց հպարտութեամբն Յովհաննէսէն չէին մկրտուած ։*

Ո՞ւմ նմանեցուցից զմարդիկ ազգիս այսորիկ. և ո՞ւմ իցեն նմանօղք ։ Նման են մանկտւոյ՝ որ ՚ի հրապարակս նստի- ցին, կարդայցեն զմիմեանս և ասիցեն. փող հարաք ձեզ՝ և ո՛չ կաքաւեցէք, ողբացաք և ո՛չ լացէք ։ Ղուկ. է. 31—32 ։

*Աւասի Յիսուս ողբական ձայնով մը՝ որո՞ւ նը- մանցունեմ կըսէ, այս ազգին այս տեսակ մար- դիկը.— կը նմանին ազատ մանկանց դասէն փո- ղեր հնչեցնելով և ողբեր կարդալով հրաւիրուած ամբարտաւան ընկերներու՝ որ այդ ընկերաց հը-*

բառերին ականջ չի կախելով՝ ամբարտաւանու-թեամբ այն մանկանց նոյն սգակից չեղան կա-քաւելով ալ. ըստ այն առենի սովորութեանց, այսինքն, մարգարէից և Յովհաննու ազդարարու-թեանց ականջ չը կախեցին։

Եկն Յովհաննէս մկրտիչ՝ ոչ ուտէր և ոչ ըմպէր, եւ ասէիք. դեւ գոյ ՚ի նմա։ Եկն որդի մարդոյ՝ ուտէ և ըմպէ, և ասէք, ահա այր կերող և արբեցող՝ բարեկամ մաքսաւորաց և մեղաւորաց։ Եւ արդարացաւ իմաստութիւն յորդւոց իւրոց։ Ղուկ. Է. 33—35։

Ինչպէս մանկտիները իրենց ընկերներն, այս-պէս և Քրիստոս, որ ոչ սգաւոր էր և Յովհան-նէս, այլ ուրախ դէմքով, զուարթութեամբ և զոր-նականս կոչեց յունկնդրութիւն և նոքա յանձն չառին։ Յովհաննէս չէր ուտեր, չէր խմեր, կ՚ը-սէին դև գոյ ՚ի նմա. Յիսուս անճառելի խոնար-հութեամբ մինչև մեղաւորաց և մաքսաւորաց հետ կուտեր կը խմէր, անոր ալ կըսէին. ահա՛ կերող և արբեցող մարդ մը. այսպէս փարիսեցիք ամբարտաւանութեամբ իրենց եղած հրաւէրը չէին ընդունէր. Ուստի թէ՛ Յովհաննէսին և թէ՛ Քրիստոսի այս երկու յորդորիչ ձայները կը դատապարտեն զփարիսեցիս, և փարիսեցիք ու օրինականք ինչ որ ալ ըսեն, Յովհաննու և Քրիս-տոսի իմաստութիւնն՝ իմաստուններէն կարդարա-նայ (այսինքն, իմաստունք իրաւունք (հախ) կու-տան Քրիստոսի և Յովհաննու)։

Այս փարիսեցւոց ըրածին պէս այսօր ալ քա-նի՜ քանիներ Քրիստոսի խօսքերը կը ծաղրեն, միշտ անոնց կերող և արբեցող ըսելով խմբել-

նոյն պէս՝ թեթևամտութեամբ Աւետարանը քաշկռտելով ։

## Զ. Նախատէ Քրիստոս զքաղաքսն անհաւատս

Յայնժամ սկսաւ Նախատել զքաղաքսն՝ յորս եղեն բազում զօրութիւնք նորա, և ո՛չ ապաշխարեցին ։ Վա՜յ քեզ Քորազին, վա՜յ քեզ Բեթսայիդա. զի եթէ ՚ի Տիւրոս և ՚ի Սիդոն եղեալ էին զօրութիւնքն՝ որ ՚ի ձեզ եղեն, վաղուց ապաքէն խորգով և մոխրով ապաշխարեալ էր ։ Մատթ. ԺԱ. 20—21 ։

Այնչափ ժամանակ հրաշք ու վարդապետութիւններ ընելով անհաւան գտնելէն վերջ, կը պախարակէ Յիսուս բոլոր այն քաղաքներն՝ յորս ժողովուրդը լսեց իր վարդապետութիւնները՝ բայց անպտուղ գտաւ. կը պախարակէ զանոնք՝ որպէս զի թերևս այնու զգաստութիւն բերէ զիրենք. վասն զի, շատ անգամ մարդիկ եղած նըշաններէն, սքանչելիքներէն և տուած խրատականներէն աւելի՝ եպերական խօսքերէն կըզգաստանան, կը լաւանան, ուստի այս դարմանը ձեռք կ'առնու անոնց՝ որ շատ անգամ Աստուծոյ շնորհաց ընդունակ լինելով մոռցած էին զայն ։

Վա՜յ կուտայ այն քաղաքներուն՝ յորս մնացած եղած էր, և շատ վարդապետութիւններ խօսած էր, բայց չէին հաւատ ընծայած. վա՜յ կը կարդայ Քորազին քաղաքին, որ կ'ըստուգաբանի թէ տաս է խորհուրդ իմ. և ըստ այսմ՝ երկրաւորները խորհելով և նմա կեանքը սիրելով՝ երկնաւորին չը հետևեցաւ.

Վա՜յ կը կարդայ նաև երբայեցւոց Բեթսայիդայ (տուն մթին, կամ տուն որսորդաց) քաղաքին

որ նոյնպէս Քորազինի նման վայելելով իր սքանչելիքն ու աստուածային վարդապետութիւնքը, սիրտը գոցեց, հոգւոյն աչքերը մթնցուց և չը լսելու զարկաւ ու չընտանել ձևացուց։ Եւ եթէ կըսէ. ձեր հոգևոր կենաց համար եղած վարդապետութիւններուն ու հրաշագործութիւնք Տիւրոս և Սիդոն քաղաքներու մէջ եղած ըլլային, դեռ ևս կանգուն կը մնային և նշաններուն հաւանելով կ'ապրէին, որով կը հասկցնէ թէ քան զՍիդոնացիս և քան զՏիւրացիս պատժոյ և տանջանքներու արժանաւոր են. ըստ այնմ թէ

Բայց ասեմ ձեզ. դիւրագոյն լիցի երկրին Տիւրոսի եւ Սիդոնի յաւուրն դատաստանի՝ քան ձեզ։ Մատթ. ԺԱ. 22.

Ըստ որում Սիդոնացիք և Տիւրացիք 'ի չարերնին մեկուսանալու համար ստէպ պատուէրներ չէին լսած և սքանչելագործութիւնք չէին տեսած, նոցա դատաստանը թեթև է քան զձերինն՝ որ յետ այնչափ գերբնական նշանաց և աստուածային խօսից, դեռ ևս անհաւան կը մնաք. ուստի դուք առաւել քան զնոսա պիտի մշտանայք յաւուրն դատաստանի։

Եւ դու Կափառնայում, մի՛ մինչեւ յերկինս բարձրացեալդ մինչեւ 'ի դժոխս իջցես. զի եթէ 'ի Սոդոմ եղեալ էին զօրութիւնքն՝ որ 'ի քեզ եղեն, ապաքէն կային եւս մինչեւ ցայսօր. Բայց ասեմ ձեզ՝ եթէ երկրին Սոդոմացւոց դիւրագոյն լիցի յաւուրն դատաստանի՝ քան քեզ. Մատթ. ԺԱ. 23—24.

Դուն ալ, Կափառնաու՛մ, ագարակի պանդըխտութեան կամ ապաւինութեան, 'ի քեզ պանդըխտեցայ ընդ երկար. մի՛ այդչափ մեծամբը-

տէր, և ամրութեանդ վրայ մի՛ պանծար. վասն զի զքեզ յերկինս բարձրացնող արարիչ Աստուծոյն չանսացիր, մինչ ՚ի դժոխս պիտի իջնես. և եթէ Սոդոմայ մէջ ՚ի քեզ ըրած սքանչելիքներս ցոյց տայի և քու լսած աստուածային վարդապետութիւններդ նոցա վարդապետէի, ցարդ հոն կանգուն կը մնային. բայց գիտցէք որ նոքա միայն Տիրոջը ծառայն արհամարհելով մեղանչեցին, իսկ դուք Տէրն ինքնին տեսաք, նորա երկնային անհամեմատ բարիքներն վայելեցիք և զանի ըսպաննելու խորհրդով աստուածասպանութեան մեղքը գործելու պատրաստուեցաք. ուստի Սոդոմացւոց մեղքը ձեր մեղաց քով պիտի արդարանայ յաւուրն դատաստանի.

## Է. Հրաւէր վաստակաբեկ տառապելոց

Յայնմ ժամանակի պատասխանի ետ Յիսուս՝ և ասէ. գոհանամ զքէն Հա՛յր՝ Տէր երկնի և երկրի. զի ծածկեցեր զայս յիմաստնոց և ՚ի գիտնոց, եւ յայտնեցեր տղայոց: Մատթ. ԺԱ. 25:

Այն ժամանակ, գոհութիւն կուտայ երկնաւոր Հօր՝ որ իւր մարդեղութեան խորհուրդն, աստուածային գործքերը, խօսքերուն ոյժն եւ հաւատքն ծածուկ մնային դպրաց ու փարիսեցւոց համար՝ որ յաչս մարդկան իմաստուն կըթուէին, օրինօք կը պանծային առանց առաքինութեան գործերու, եւ խորամանկութեամբ կը հակառակէին իրեն Աստուծոյ որդի ըլլալուն դէմ, եւ տգէտ ու արհամարհ եւ աղքատ կարծըուած առաքելոց յայտնուեցան:

Այո՛ Հա՛յր, զի այսպէս հաճոյ եղեւ առաջի քո։ Մատթ. ԺԱ. 26։

Այո՛, քու կամքդ այսպէս էր, Հա՛յր, որ այս աստուածային խորհուրդներն ու սքանչելեաց ու բանից ոյժը՝ մոլութեանց մէջ աղքատիկ եւ առաքինութեան մէջ ճոխ ձկնորս առաքելոց յայտնեցիր, եւ մոլութեանց գիտութեան մէջ իմաստուն եւ հարուստ դպրաց ու փարիսեցւոց անհասկնալի մնացին։

Ամենայն ինչ տուաւ ինձ 'ի Հօրէ իմմէ, եւ ոչ ոք ճանաչէ զՈրդի՝ եթէ ոչ Հայր, եւ ոչ զՀայր ոք ճանաչէ՝ եթէ ոչ Որդի, եւ յ'ում Որդին կամիցի յայտնել։ Մատթ. ԺԱ. 27։

Կը բացատրէ՝ թէ ինք Աստուածորդին լինելով Նորա բնութիւնը, Նորա կամքը, զօրութիւնն ու փառքը, իմաստութիւնն ու կարողութիւնն եւ այլ ինչ որ աստուածային էութեան կը պատշաճի, Հօր Աստուծոյ այդ աստուածային ստորոգելիքները իւր վրայ ալ ունի և միանգամայնապէս փըրկագործութեան պաշտօնն իրեն տրուած է։ Սակայն ոմանք ինձ բնաւ չեն հաւատար, կ՚ըսէ Յիսուս, ոմանք ալ հաւատքով կը ճանչեն զիս, բայց իսկ էութեանս բնութեան չեն տեղեակ. իմ իսկ բնութեանս տեղեակ՝ իմ երկնաւոր Հայրս է՝ որուն յաւիտենական միածինն եմ. ինչպէս որ Նորա բընութեանը, Նորա էութեան՝ ոչ ոք երկրածին, ոչ ոք արարած, այլ միայն Նորա Որդին միածին, ես ինքն, գիտակ եմ ըստ ամենայնի, եւ անոնք միայն կրնան վերահասու ըլլալ այս մեծ գիտութեանց՝ որոց որ 'ի յաւիտենից 'ի ծոց Հօր Որդին իւր գիտակակից Հօր խորհրդոցը՝ կը յայտնէ։

Եկա՛յք առ իս ամենայն վաստակեալք եւ բեռնաւորք, եւ ես հանգուցից զձեզ։ Մատթ. ԺԱ. 28։

Կը յորդորէ՝ որ բոլոր մարդիկ, որոնք որ հոգերու տրտմութեանց ու մեղքերու մէջ կը չարչարուին, իրեն դիմեն. ո՛չ, որպէսզի վրէժխնդրութիւն պահանջեն իրենց վշտաց փոխարէն՝ այլ իրենց մեղաց ծանրութենէն զերծանին. ու ինքն կը կոչէ, որպէս զի իրենց փրկութիւնը գըլխաւորեն։

Կը խոստանայ որ ոչ միայն մեղքերէ ազատեցընէ՝ այլ եւ հանգստեան արժանաւոր ընէ՝ որոնք որ հաւատքով կը յարակցին, մարմնով խոնջ ու վաստակեալ են, եւ հոգւով մեղաց ծանրութեան տակ ճնշուած։ Յաւիտենից հանգիստը Քրիստոս ինքն է։

Առէ՛ք զլուծ իմ ի ձեզ, եւ ուսարո՛ւք յինէն՝ զի հեզ եմ եւ խոնարհ սրտիւ. եւ գտջիք հանգիստ անձանց ձերոց։ Մատթ. ԺԱ. 29։

Իմ լուծս (կրօնս) սիրոյ լուծ է, այս լուծը առէ՛ք ձեր վրայ, խոնարհ եւ հեզ եղիք, եւ այս խոնարհութիւնն ինձմէ սովրեցէք,

Զի լուծ իմ քաղցր է. եւ բեռն իմ փոքրոգի։ Մատթ. ԺԱ. 30։

Ձեր պարանոցին վրայ դրած լուծս՝ դժուարակիր չէ, եւ ձեր վրայ հաստատած բեռս՝ ծանր չէ։ Երկնից արքայութեան համար միշտ, նեղութիւն, անոնց համար է ծանր՝ որք ծոյլ ու թոյլ են եւ լոկ մարմին կորած, անոնց համար արքայութեան ճամբայն ալ շատ նեղ է եւ անձուկ։

իսկ առաքինութեամբ վշտաց տանողներու համար՝ ամեն դառնութիւն քաղցր է, ամեն առապար դիւր է, ամեն անձուկ ճամբաներ լայն պողոտաներ են։

# ԳԼՈՒԽ ԺԴ.



ԿԻՆՆ ՄԵՂԱՒՈՐ Ի ՏԱՆ ՓԱՐԻՍԵՑՒՈՅՆ.—ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԿՈՅՐ ԵՒ ՀԱՄՐ ԴԻՒԱՀԱՐԻՆ. — ՔԱՐՈԶՈՒԹԻՒՆ ՓՐԿՉԻՆ Ի ՔԱՂԱՔՍ ԵՒ Ի ԳԻՒՂՍ.—ՀԱՅՀՈՅՈՒԹԻՒՆ ՓԱՐԻՍԵՑՒՈՅՆ.—ՆՇԱՆ ԽՆԴՐԵՆ Ի ՆՄԱՆԷ. —ՄԱՅՐՆ ԵՒ ԵՂԲԱՐՔ ՔՐԻՍՏՈՍԻ



## Ա. Կինն մեղաւոր 'ի տան փարիսեցւոյն

Աղաչէր զնա ոմն 'ի փարիսեցւոց՝ զի կերիցէ հաց ընդ նմա. եւ մտեալ 'ի տուն փարիսեցւոյն՝ բազմեցաւ։ Ղուկ. է. 36։

Սիմոն անունով փարիսեցին կ'աղաչէր Յիսուսի՝ որ բարեհաճի իրեն հետ ճաշ ընել. փարիսեցին այս հրաւէրով Քրիստոսի մեծ պատիւ ընել կը համարէր. բայց սովորական համբոյրն ու դրկախառնութիւնը, ոտքերու ջուրն ու գլուխ օծելու եւ անուշահոտ խունկերու բուրումը զլացեր էր մեծամտութեամբ։ Փարիսեցիներն ընդհանրապէս հարուստ մարդիկներ էին, Յիսուս՝ փարի-

սեցւոց կեղծաւորութիւնը գիտնալով իսկ՝ որք արտաքնայարդար մարդիկներ էին, և զայն արհամարհելու մէջ միշտ վարժ ու պատրաստ, սակայն հասկցնելու համար թէ ինք զմեղաւորները ընդունելու պատրաստ է, եթէ երբեք զինքն աղաչեն. կընդունի հրաւէրը. կը մտնէ փարիսեցւոյն տունը, և նորա հետ սեղան կը բազմի։

Եւ կին մի էր 'ի քաղաքին մեղաւոր. իբրեւ գիտաց թէ բազմեալ է 'ի տան փարիսեցւոյն, բերեալ շիշ մի իւղոյ անուշից։ Կայր յետոյ առ ոտս նորա, լայր եւ արտասուօքն սկսաւ թանալ զոտս նորա, եւ հերովք գլխոյ իւրոյ ջնջէր, եւ համբուրէր զոտս նորա, եւ օծանէր իւղովն։ Ղուկ. է. 37—38։

Այրի կինմը՝ Մագդաղենացի անուամբ՝ գուցէ իր երկանը ցեղին բնակութիւնն ըլլալուն, Մագդաղենացի կըսուէր, որ խառնակեաց վարքն զղջացեր էր. (Մագդաղենացի՝ երբայեցերէն մեծագործ ալ կը թարգմանուի)։ Այս Մարիամ լսելով որ Յիսուս փարիսեցւոյն տունը սեղանի նստած է, վազեց տուն եկաւ. իր զղջմամբն Աստուծոյ առջև արդարացած էր և գոհութիւնյայտնելու համար կուգար հոն, և ազնիւ իւղովլի շիշ մը առած, Յիսուսի ետևի կողմէն թափեց, արտասուօք ոտքերը թրջեց, հերովը սրբեց և ազնիւ իւղովը սկսաւ օծանել, զոր տեսնելով Յիսուս՝ կրկին կը թողու մեղքերը՝ մխիթարելու զինքն և տեսնողներուն միտքը բաժնելու համար, որ դեռ եւս իբր մեղաւոր կին կընդունէի զինքն։

Եւ տեսեալ փարիսեցւոյն՝ որ կոչեացն զնա, ասէ ընդ

միտս իւր. սա թէ մարգարէ ոք էր, ապա գիտէր թէ ո՛վ՝ և ո՛րպիսի ոք է կինն մերձենայ 'ի դա. զի մեղաւոր է։ Ղուկ. Է. 39։

*փարիսեցին, զինքն հրաւիրող տանտէրն, զինքն արդարի տեղ դնելով երբ զայս կը տեսնէր որ մեղաւոր համբաւեալ կին մը Յիսուսի ոտքը արտասուօք կը լուայ, հերով կը սրբէ և իւղով կ'օծանէ՝ կը գայթակղի, և կը կարծէ որ Յիսուս կնոջ մեղաւոր ըլլալուն վրայ գիտութիւն չունի, և մարգարէ մը ըլլալուն իսկ կը տարակուսի, միանգամայն միտքը դրած էր որ Յիսուս ալ փարիսեցւոց պէս կեղծաւորելով մեղաւորները կը պատժէ։*

Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա, Սի՛մոն՝ ունիմ ինչ ասել քեզ. և նա ասէ, ասա՛ վա՛րդապետ. եւ նա ասէ. Երկու պարտապանք էին միում փոխատուի. մին պարտէր դահեկանս հինգհարիւր, եւ միւսն յիսուն. Եւ իբրեւ ո՛չ գոյր նոցա հատուցանել, երկոցունց շնորհեաց. արդ ասա՛, ո՞վ առաւել սիրեսցէ զնա։ Ասէ Սիմոն. Ինձ այսպէս թուի՝ եթէ որում զառաւելն շնորհեաց. եւ նա ասէ ցնա. ուղիղ դատեցար։ Ղուկ. Է. 40—43։

*Յիսուս Սիմոնի գայթակղութիւնը կանխելով պատասխան տուաւ. Սիմոն քեզի բան մը պիտի ըսեմ, եւ նա ըսաւ. հրամմէ՛ վարդապետ։*

*Երկու պարտականներ փոխատուի մը պարտք ունէին. մին հինգ հարիւր, միւսն յիսուն (մէկը փարիսեցին, միւսը մեղաւոր կինը.) երբոր անկարող էին հատուցանել, երկուքին ալ պարտքերնին շնորհեց. ըսէ՛ հիմայ, ասոնցմէ ո՞վ աւելի պէտք է սիրէ փոխատուն։*

*Սիմոն կարծիքը յայտնեց, ըսելով թէ որուն*

որ շատ շնորհեց՝ նա առաւել սիրելու է. Յիսուս ըսաւ, ուղիղ դատեցիր:

Եւ դարձեալ ի կինն կողմն, ասէ ցՍիմովն. տեսանե՞ս զայս կին, մտի ի տուն քո՝ ջուր ոտից իմոց ոչ ետուր, բայց դա արտասուօք իւրովք եթաց զոտս իմ, և հերովք իւրովք եսրբեաց: Ղուկ. Է. 44:

Կնոջ կողմը դառնալով՝ կը տեսնե՞ս այս կինը. պարտականին մէջը դու ես, դուն ինծի համբոյր մ' ալ չի տուիր, եւ ոչ ոտքերուս ջուր, դու ինքզինքդ շատ մեղաւոր չես կարծեր թերեւս. իսկ աս քանի որ տունդ մտեր եմ, արտասուօք ոտքերս կը թրջէ եւ համբուրելէն չի դադրիր. դու իւղով իմ գլուխս չ'օծեցիր, աս անոյշ իւղով կ'օծէ եւ մազերովը կը սրբէ:

Դու զղջացեալ սիրտ չունէիր, եւ չըյուսացիր մեղացդ թողութիւն գտնելու, աս յուսաց իւր մեղաց բժշկութիւնը, ուստի եւ շատ կըսիրէ զիս:

Համբոյր մի դու ոչ ետուր ինձ, դա ահաւասիկ յորմէ հետէ մտեալ եմ՝ ոչ դադարեաց ի համբուրելոյ զոտս իմ: Իւղով զգլուխ իմ ոչ օծեր, դա իւղով անուշիւ օծ: Ղուկ. Է. 45—46:

Այն կինը ետեւանց Յիսուսի ոտքերուն առջեւ խոնարհած՝ իւր զղջացեալ սրտէն բղխած արտասուքով փրկչին ոտքերը կը թրջէր, իւր մազերով կը սրբէր, անոյշ իւղերով կ'օծէր, կը համբուրէր, պաշտելու ու երկրպագելու արարողութեամբ. ըստ որում այն ժամանակներուն սովորութեանց համեմատ՝ բարձի վրայ կռթնած պառկած կամ ընկողմանեալ սեղան կը նստէին եւ նստօղներուն ոտքերը դուրս կը մնային: Յի-

սուտի ձայն չընդունելն զփարիսեցին գայթակղեցուց. թէ որ մարգարէ մ՚ էր, կըսէր մտքէն, պիտի գիտնար անշուշտ իրեն մօտեցող կնկան ինչ ըլլալն ։

. Վասն որոյ ասեմ քեզ. Թողեալ լիցին սմա մեղք իւր բազումք, զի յոյժ սիրեաց. զի որում շատ թողացաւ՝ շատ սիրէ, և որում սակաւ՝ սակաւ ։ Ղուկ. Է. 47 ։

Անհաւատալիկ ես ալ կըսեմ՝ որ իւր բոլոր մեղքերուն թողութիւն ըլլայ, վասն զի շատ սէր ցուցուց. և այս ալ ճշմարիտ է որ՝ որուն որ շատ թողուի, շատ կը սիրէ. և որուն որ սակաւ շնորհուի, թողուի, ըստ սակաւ թողութեան սակաւ կը սիրէ ։

Եւ ասէ ցնա. Թողեալ լիցին քեզ մեղք քո ։ Եւ սկսան որ բազմեալն էին ընդ նմա, ասել ընդ միտս իւրեանց. Ո՞վ է սա՝ որ զմեղս թողու ։ Եւ նա ասէ ցկինն. Հաւատք քո կեցուցին զքեզ՝ ե՛րթ ՚ի խաղաղութիւն ։ Ղուկ. Է. 48–59 ։

Քրիստոսի այս մեղաց թողութիւն տալը աստուածային կարողութիւնն աւելի գայթակղեցուց այն տեղ նստողներն, և զղջացեալ կնոջ հաւատքն՝ յոյսն ու սէրը չունենալով՝ ո՞վ է այս որ մեղքերու թողութիւն կուտայ կըսէին. բայց Յիսուս հաւատք, յոյս և սէր կնոջ վրայ լիապէս տեսնելով՝ ըսաւ. հաւատք քո կեցուցին զքեզ, ե՛րթ ՚ի խաղաղութիւն ։

## Բ. Քարոզութիւն փրկչին ՚ի քաղաքս եւ ՚ի գիւղս

Եւ եղեւ յետ այնորիկ՝ և ինքն շրջէր ընդ քաղաքս և ընդ գեօղս, քարոզէր և աւետարանէր զարքայութիւնն Աս-

Աստուծոյ. եւ երկոտասանքն ընդ նմա: Ղուկ. Ը. 1.

Փարիսեցւոյն տունը կնոջ թողութիւն տալու գործը լմնցունելէն յետոյ, սկսաւ քաղաքներ ու գիւղեր պտըտիլ և քարոզել՝ որ ամեն մարդ առաքինութեան ճամբայն ընթանայ, որպէս զի Աստուծոյ արքայութեան ալ արժանի ըլլայ. իր հետն էին նաև տասներկու առաքեալները:

Եւ կանայք ոմանք՝ որ բժշկեալ էին յայսոց չարաց եւ 'ի հիւանդութեանց. Մարիամ՝ որ կոչէր Մագդաղենացի, յորմէ եօթն դեւ ելեալ էր: Եւ Յովհաննա կին Քուզայ՝ հազարապետին Հերովդի, եւ Շուշան՝ եւ այլք բազումք՝ որք պաշտէին զնա յընչից իւրեանց. Ղուկ. Ը. 2-3.

Յիսուսի քարոզութեան միջոցին՝ հետն էին նաև երկոտասաններէն զատ՝ իրմէն բժշկուող կանայք ոմանք, ինչպէս Մարիամ Մագդաղենացի (որուն համար՝ Ղազարու Մարիամ քոյրն էր կըսեն) ուսկից եօթն դև հանած էր Յիսուս. 'ի միասին կը պտըտէր նաև Հերովդէսի թագաւհազարապետին կինն Յովհաննա՝ որ Յիսուսի աշակերտելով ուրիշ կանանց հետ ինք ալ կերակրով և հանդերձիւ նորա նիւթական պէտքերը կը հոգար, ինչպէս որ դերեզմանն ալ գնաց յետոյ Յիսուսի մարմինն օծանել գնացող իւղաբերից հետ: Նոյնպէս կը յիշուի Շուշան անունով բարեպաշտ կին մի՝ որ միշտ Քրիստոսի հետ կը պտըտէր, և նորա նիւթական պէտքերը կը հոգար:

Գան 'ի տուն, եւ գայ միւսանգամ ընդ նոսա ժողովուրդն. մինչ զի եւ հաց եւս ո՛չ ժամանել ուտել նոցա: Եւ իբրեւ լուան որ իւրքն էին՝ ելին ունել զնա, զի համարէին թէ մոլեգնեալ իցէ: Մրկ. Գ. 20-21.

Ասոնցմով, կափառնաում իւր սովորական բնակարանն իջաւ Յիսուս, ժողովուրդն ալ վառուած նորա վարդապետած աւետարանին լուսով՝ չէին ուզեր զինքը ձգել. ուստի անոր հետ տուն մտան, և այնպէս եռանդագին փափաք մը ունէին զՅիսուս մօտիկ ընելու՝ որ մինչև անգամ հաց ուտելու ժամանակ չունէին. այսպէս Ս. Գրոց աստուածային իրերու վրայ մտախոհ լինելն, այնչափ կը քաղցրանայ մարդուս՝ որ հաց ուտել անգամ կը մոռնայ. Յիսուս այս միջոցին մեծ եռանդով կ'ուսուցանէր՝ քանի որ ժողովուրդին ալ ջերմ փափաքը կը տեսնէր. իր մարդիկները ժողովուրդին բազմութեամբ տունը լեցուիլն և Յիսուսի ալ եռանդագին քարոզութիւնը տեսնելով թերևս ըստ չարախօսելոյ փարիսեցւոց՝ մոլեգնեալ կը համարէին զինքն և կուզէին բռնել տանիլ անտի ։

## Գ. Բժշկութիւն կոյր եւ համր դիւահարին

Յայնժամ մատուցան առ նա դիւահար մի կոյր և համր, և բժշկեաց զնա. որպէս զի համրն և կոյրն խօսէր և տեսանէր։ Զարմացան ամենայն ժողովուրդքն՝ և ասէին. միթէ սա՞ իցէ Քրիստոսն որդի Դաւթի. Մտ. ԺԲ. 22-23 ։

Եւ ահա կոյր միանգամայն համր և դիւահար մէկը բերին, ու այս երեք ախտէն ալ բըժըշկեց Յիսուս, մինչև բոլոր ժողովուրդը զարմացաւ և հաւատացողներէն ալ ոմանք կ'ըսէին՝ մի՛թէ որդի Դաւթի Մեսիայ Քրիստոսը սա՞ է ։

Իսկ փարիսեցիքն. Մտթ. Թ. 34, Եւ դպիրքն՝ որ յԵրուսաղեմէ իջեալ էին, ասէին թէ Բէեղզեբուղ գոյ ի դմա,

Եւ իշխանաւ դիւացն հանէ դա զդեւս ։ Մրկ. Գ. 22 ։

Իսկ փարիսեցիներն ու Յերուսաղեմէն եկող դպիրներն երբոր այս լսեցին, աւելի կատղեցան ու նոր բան մը հնարեցին ժողովուրդը Քրիստոսէն հեռացունելու համար. ըսին թէ Բէեղզեբուղ դիւաց իշխանին խորհրդակիցն է նա, ու անոր զօրութեամբը կ՚իշխէ դեւերուն վրայ։

Եւ այլք փորձէին՝ եւ նշան յերկնից խնդրէին ՚ի նմանէ ։ Ղուկ. ԺԱ. 16 ։

Ուրիշներ ալ երկնքէն սքանչելիք մը կ՚ուզէին տեսնել Յիսուսի ձեռօք, ինչպէս երբեմն Յեսու ցոյց տուաւ արեւին հրամայելով։ Բայց միտքերնին ոչ թէ հաւատալ էր՝ այլ որպէս զի ծաղրեն ։

Իբրեւ գիտաց Յիսուս զխորհուրդս նոցա՝. Մտթ. ԺԲ. 25. Կոչեաց զնոսա առ ինքն առակօք խօսել ընդ նոսա. Եւ. Մրկ. Գ. 23. Ասէ ցնոսա. Ամենայն թագաւորութիւն բաժանեալ յանձն իւր՝ աւերի. Եւ ամենայն քաղաք կամ տուն բաժանեալ յանձն իւր՝ ո՛չ կացցէ ։ Մտթ. ԺԲ. 25 ։

Յիսուս երբոր իմացաւ որ լուլ և համր դիւահարը բժշկած ատեն՝ շատերն առ նախանձու եղած հրաշքը դեւերու իշխանութեան կուտան և աւելի փորձելու քան թէ հաւատալու համար իրմէն տարօրինակ սքանչելիք մը կուզեն երկնքէն, կը կանչէ զիրենք իւր մօտ և կը խայտառակէ, և թագաւորութիւն, տուն, քաղաք, օրինակ բերելով՝ կըսէ թէ ասոնք եթէ իրենց մէջ բաժնուին՝ կը քակուին և կը կործանին ։

Զի՞արդ կարէ սատանայ զսատանայ հանել. Մարկ. Գ.

23 ։ Եւ եթէ սատանայ զսատանայ հանէ՝, յանձն իւր՝ բաժանեցաւ . Մատթ. ԺԲ. 26 ։ Եւ եթէ սատանայ 'ի վերայ անձին իւրոյ յարեաւ և բաժանեալ է , ո՛չ կարէ կալ , այլ վախճանեալ է . Մրկ. Գ. 26 ։ Արդ՝ զիա՞րդ կացցէ թագաւորութիւն նորա ։ Եւ եթէ ես Բէեղզեբուղաւ հանեմ զդևս՝ որդիքն ձեր իւ՞ հանիցեն . վասն այնորիկ նոքա՝ եղիցին ձեր դատաւորք ։ Մատթ. ԺԲ. 26-27 ։

*Եթէ սատանան սատանայ հանէ՝ ինք իր մէջ կը բաժնուի , և ի՞նչպէս կը մնայ նորա թագաւորութիւնը . և եթէ ես բէեղզեբուղով կը հանեմ , հապա ձեր զաւկըներն՝ որ ինձ աշակերտ եղան , անո՞նք ինչով պիտի հանեն . ոչ ապաքէն յանուն Յիսուսի (իմ անունովս) դևեր կը հանեն . ուրեմն թող ձեր որդիքը ձեզ դատաւոր ըլլան ։*

Ապա թէ հոգւով (ես) . Մատթ. ԺԲ. 28 . Մատամբ Աստուծոյ . Ղուկ. ԺԱ. 20 . Հանեմ ես զդևս՝ ապա հասեալ է 'ի վերայ ձեր արքայութիւնն Աստուծոյ ։ Մատթ. ԺԲ. 28 ։

*Բայց եթէ Հոգւով Աստուծոյ կը հանեմ դևերն՝ ուրեմն պէտք է որ մտքերնիդ առնէք թէ Աստուծոյ արքայութիւնն իմ ձեռօք եկած հասած է ։*

Յորժամ հզօր վառեալ պահիցէ զգաւիթ իւր , 'ի խաղաղութեան են ինչք նորա . Ղուկ. ԺԱ. 21 ։ Զի՞արդ կարէ ոք մտանել 'ի տուն հզօրի՝ և զկարասին նորա յափշտակել՝ եթէ ոչ նախ կապիցէ զհզօրն . Մատթ. ԺԲ. 29 ։ Բայց եթէ հզօրագոյն քան զնա 'ի վերայ եկեալ յաղթեսցէ նմա , զսպառազինութիւնն հանէ՝ յոր յուսացեալ էր , և զաւար նորա բաշխեսցէ . Ղուկ. ԺԱ. 22 ։

*Ինչպէս կարելի է որ սատանան վռնտէի ու-*

անոր զօրութիւնը խորտակէի՝ եթէ սատանայէն աւելի զօրաւոր չըլլայի․ կըրնա՞յ մի մարդ զօրաւորի մը տուն մտնել ու զօրաւորը չը կապած՝ անոր ունեցածը յափշտակել․ կըհաւատացուի ուրեմն որ վառեալ հզօրը սատանան է՝ որուն տունն է այս աշխարհս, եւ նորա վերայ յաղթանակող և զօրաւորն ալ՝ Տէրն մեր Յիսուս Քրիստոս է։

Որ ո՛չն է ընդ իս՝ հակառակ իմ է, և որ ո՛չ ժողովէ ընդ իս, ցրուէ։ Ղուկ. ԺԱ. 23։

Դուք փարիսեցիքդ երբ գիտակք օրինաց․ պարտաւոր էիք զատոնք գիտնալ ու ինծի հետ միաբանել․ արդ, ով որ ինծի հետ չը միաբանիր՝ հակառակող է ճշմարտութեան․ ուստի եւ ցրուող է այնպիսին՝ որ չը միաբանիր ինծ հետ ժողովելու։

Ամէն ասեմ ձեզ, զի ամենայն թողցի որդւոց մարդկան մեղք և հայհոյութիւնք՝ որչափ և հայհոյեսցեն․ Մրկ. Գ. 28։ Եւ որ (ոք) ասասցէ բան զորդւոյ մարդոյ՝ թողցի նմա․ բայց որ զՀոգւոյն Սրբոյ ասասցէ՝ մի՛ թողցի նմա․ մի՛ յայսմ աշխարհի՝ և մի՛ 'ի հանդերձելումն. Մտթ. ԺԲ. 32։ Այլ պարտապան լիցի յաւիտենից մեղաց։ Զի ասէին թէ այս պիղծ գոյ 'ի նմա։ Մարկ. Գ. 29-30.

Ձեր այդ խօսքերն աններելի հայհոյութիւն են․ շատ մեղքեր կան՝ որ ատոնց հետ բաղդատելով՝ ներելի են․ մինչև անգամ իմ մարդկութեանս դէմ եղած հայհոյութիւնը կըրնայ ներելի լինել, Հոգւոյն Սրբոյ դէմ եղած հայհոյութեանց հետ բաղդատելով՝ ի՞նչ է, գիտէ՞ք ձեր մեղքը, գիտէ՞ք, դուք օրէնքը գիտնալով կուրանաք զիս եւ կը հակառակիք Հոգւոյն Սրբոյ եւ ճշմարտու-

թեան դէմ, եւ ես իբրեւ Աստուծոյ կարդալով ձեր խիղճը՝ կը տեսնեմ որ չը պիտի զըղջաք կամաւորապէս յաւիտեան այս ձեր հայհոյութեան վերայ. դուք Աստուծոյ Հոգւոյն գործերը միշտ սատանայի գործ պիտի համարիք, եւ ձեր հայհոյութեանը վրայ անզեղջ պիտի մնաք, ուրեմն ձեր մեղքը չի պիտի թողուի. ո՛չ այս աշխարհիս մէջ՝ ոչ ալ հանդերձեալին մէջ, (ուստի կը մակաբերուի թէ կան ալ մեղք՝ որ 'ի հանդերձելումն կը քաւուին)։ Ձեր յամառութիւնը մինչեւ գերեզման պիտի տանի զձեզ, դուք բարիէն եղած բանին համար չարէն եղաւ կըսէք դիտութեամբ։

Կամ արարէ՛ք զծառն բարի՝ և զպտուղ նորա բարի, կամ արարէ՛ք զծառն չար՝ և զպտուղ նորա չար. զի անտի՛ 'ի պտղոյ անտի ծառն ճանաչի։ Մտթ. ԺԲ. 33.

Մինչեւ ցե՛րբ յերկուս ոտս կը կաղայք, Աստուծոյ եւ սատանայի ծառայելով. եթէ Ս. Հոգւոյն աշակերտ էք, բարի՛ք պտղաբերեցէք, եւ եթէ հակառակորդին՝ մի կեղծաւորիք որ իբր թէ ուղիղ կը խօսիք, բայց գործերնիդ ընդ հակառակն գէշ է։

Ով որ ինձ նման կենցաղավարի, այսինքն, կուսուցանէ եւ կընէ, ճշմարտապէս բարի ծառ է, եւ բարի պտուղ կը բերէ, իսկ՝ ով որ չարութեամբ կապրի, եւ չարեաց վարդապետ կը լինի՝ չար ծառ է, եւ իր գործովը չարին վրայ արմատ բռնած է։

Ծնունդք իժից, զիա՞րդ կարէք բարիս խօսել՝ որ չարք էք. զի 'ի յաւելուածոյ սրտի խօսի բերան։

Մարդ բարի 'ի բարի գանձուց սրտի իւրոյ հանէ զբարիս. և մարդ չար 'ի չար գանձուց սրտի իւրոյ հանէ զչարիս: Մատ. ԺԲ. 34—35.

*Յովհաննէսի պէս կը խօսի. նա երբ տեսաւ որ խորամանկութեամբ իրեն եկած են՝ որպէս զի ըրած մկրտութիւնը խափանեն, զանոնք իժի ծնունդ կոչեց, այսպէս և Յիսուս ցոյց տալու համար՝ թէ ինքն է Յովհաննէս Մկրտչի քարոզուած Մեսիայն, և զիրենք Աբրահամու ազգականութենէն, անոր հաւատոյ զաւակ ըլլալէ կը մերժէ՝ որով կը պարծէին, և իժերու ծնունդ կանուանէ զիրենք:*

*Չարութեամբ սրտի գգածեալ էք, չէք կրնար բարի բաներ, բարի խորհուրդներ արտաբերել՝ և այս բնութեան կարգն է՝ որ ի՛նչ որ սիրտը ներսը կը յղանայ՝ զայն դուրս կուտայ բերանն, թէպէտ այնչափ՝ որչափ որ ժամանակը, տեղը, պարագայն ևայլն. կը ներեն. սրտով ամեն տեսակ չարիք կը ծնանի մարդն. իսկ լեզուն զայնս տակաւ առ տակաւ կ'արտաբերէ, երբ ամօթ ու պատկառանք ու խիղճ չունենայ.*

Բայց ասեմ ձեզ. Եթէ ընդ ամենայն դատարկ բանի զոր խօսիցին մարդիկ, տացեն համար յաւուր դատաստանի: Զի 'ի բանից քոց արդարասցիս. և 'ի բանից քոց դատապարտեսցիս: Մատ. ԺԲ. 36-37:

*Բայց մի՛ կարծէք թէ իմ ըրած հրաշքներս բեէզզեբուղի տուած ատեններդ միայն է որ պիտի դատապարտուիք. ո՛չ, այլ նոյն իսկ եթէ այնպիսի խօսքեր խօսիք որ ո՛չ լսողին շահ կը բերէ և ո՛չ ըսողին, այլ թերևս շատ անգամ ուրիշներու վնասաբեր ըլլան, ծաղրածութեամբ, զըր-*

պարտութեամբ, չարախօսելով, և այլն, կամ սոսկ ժամանակ անցունելու համար արտաքերուելով այն խօսքերն եւս կըրնան ձեզ դատապարտութեան մատնել.

Յայնժամ պատասխանի ետուն նմա ոմանք 'ի դպրացն և 'ի փարիսեցւոց՝ և ասեն. Վա՛րդապետ՝ կամիմք նշան ինչ տեսանել 'ի քէն: Մատ. ԺԲ. 38:

Փարիսեցիք և դպիրք այս խօսքերուն ճըշմարիտ և օգտակար լինելուն վրայ երկմիտ, անմտութեամբ լի, յետ ա՛յնչափ նշանաց, այնչափ սքանչելեաց՝ իբրև թէ բան մը լսած չէին՝ իրմէ նշան տեսնել կը խնդրեն:

Նա պատասխանի ետ. Մատ. ԺԲ. 39: 'Ի դիմելն 'ի վերայ նորա ժողովրդոց. Ղուկ. ԺԱ. 29. Նա ասէ ցնոսա. Ազգ չար և շնացող նշան խնդրէ. և նշան մի՛ տացի նմա, բայց նշանն Յովնանու մարգարէի: Մատ. ԺԲ. 39:

Ժողովուրդք երբ հետզհետէ իրարու վրայ կը խռնէին՝ պատասխանեց Յիսուս՝. թէ այս շընացող և չար ազգը (ըստ գրոց լեզուին՝ շնացող կռապաշտ ըսել է կամ իրենց կիրքերը կուռքերու պէս պաշտող) նոր նշան խնդրելով յայտնի կ'իմացնէ թէ անհաւատութեան ախտով բռնուած է, որ մինչև ցարդ եղած նշաններով չըհաւատար, ուստի ձեր ուզած հրաշքը չը պիտի ընեմ, ձեզի նշան պիտի տրուի Յովնանի հրաշքը. ինչպէս նա երեք օր 'ի փոր կիտին մնալով բարձրեալ Աստուծոյ կողմանէ ղրկուած ըլլալուն համոզիչ նշան մը եղաւ. այնպէս որդւոյ մարդոյ 'ի սիրտ երկրի երեք օր հողի տակ մնալն՝ այս Աստուծմէ մեղօք հեռացեալ ժողովուրդին Աստուծ-

մէջ գրկուած լինելուն ստոյգ նշանը պիտի ըլլայ։

Զի որպէս էր Յովնան ՚ի փոր կիտին զերիս տիւս և զերիս գիշերս, նոյնպէս եղիցի և որդի մարդոյ ՚ի սիրտ երկրի զերիս տիւս և զերիս գիշերս։ Մատ. ԺԲ. 40։

Մինչև ցարդ տեսած հրաշքներնուդ և իմ խօսքերուս վրայ ձեր հոգւոյն փրկութիւնը չը գործեցիք յամառութեամբ. Յովնանի հրաշքը, այսինքն, իմ խաչին վրայ մեռնելով թաղումս և յարութիւնս և մահու յաղթանակելս ձեզ փրկութիւն պիտի պարգևէ. բայց դուք դարձեալ անհաւան պիտի մնաք և անզեղջ, զի Նինուէացիք իրենց համար եղած Յովնանին հրաշքովը զղջացին, բայց դուք ձեզի համար ըլլալիք Որդւոյն Աստուծոյ նշանովը դարձեալ չը պիտի զղջաք։ Նինուէացիք դատախազ պիտի կանգնին ձեր դէմ յաւուրն դատաստանի, զի անոնք Յովնանի քարոզութեամբ զղջացին՝ իսկ դուք ձեր աչքին առջև Յովնանէն շատ մեծ մէկը ունիք ու անզեղջ էք։ Հարաւային թագուհին Սաբայ իսկ պիտի դատախազ լինի ձեր դէմ և պիտի դատապարտէ այս ազգը, զի աշխարհի հեռաւոր տեղերէն եկաւ Սողոմոնի իմաստութիւնը լսելու, և դուք իմաստնագունին քան զՍողոմոն՝ զոր այս տեղ կը տեսնէք՝ ուշադրութիւն չէք ըներ, և չէք հաւանիր այնչափ շնորհաբուղխ խօսքեր քարոզուելէ և այնչափ մեծամեծ հրաշքներ տեսնելէ յետոյ։ Նոյն յամառութիւնն է գոգցես որ ցայսօր կը շարունակուի շատ տեղեր, անհաւատներն անկարող Քրիստոսի սրբութիւնը, գերմարդկային վարքն ու գործերն ուրանալու՝ տակաւին կը պնդեն՝ թէ հաւատալու համար ուրիշ նշաններու

*պէտք ունին ։*

Այլ յորժամ այսն պիղծ ելանէ 'ի մարդոյ՝ շրջի ընդ անջրդի տեղիս, խնդրէ հանգիստ և ոչ գտանէ. Յայնժամ ասէ. դարձայց 'ի տուն իմ՝ ուստի ելի. և եկեալ գտանէ զնա պարապորդ, մաքրեալ և յարդարեալ: Յայնժամ երթայ և առնու ընդ իւր եօթն այլ այսս չարագոյնս քան զինքն, և մտեալ բնակէ անդ. և լինի յետինն մարդոյն այնորիկ չար քան զառաջինն. այնպէս եղիցի և ազգիս այսմիկ չարի. Մատթ. ԺԲ. 43—45 ։

*Դուք կը նմանիք՝ կ'ըսէ, այն մարդուն՝ ուսկից դեւ մը կ'ելլէ կ'երթայ, ու ասդիս անդին պտըտելէն ետքը՝ կ'ըսէ. իմ ելած տեղս դառնամ. կուգայ եւ այն տեղը պարապ մաքրուած ու շտկուած կը գտնէ ։ Նորէն կերթայ, իրմէ աւելի վատթար եօթն ուրիշ դեւեր ալ առած կուգայ ու կը մտնէ հոն կը բնակի. ահա այն ատեն նոյն մարդուն յետին վիճակն առաջինէն աւելի գէշ կ'ըլլայ ։ Իսրայելին ալ այսպէս պիտի լինի. արդէն մէկ դեւն, այսինքն, անհաւատութեան դեւն ելած էր Իսրայելէն. բայց յետոյ նախանձն ու ատելութիւնն, անհաւատութեան ու խստասրտութեան տեղ եօթն ալ պիտի աւելցնէ ։*

## Դ. Մայրն եւ եղբարք Քրիստոսի

Մինչդեռ նա ընդ ժողովուրդսն խօսէր, ահա մայր նորա և եղբարք նորա կային արտաքոյ, և խնդրէին խօսել ընդ նմա ։ Մատթ. ԺԲ. 46 ։

*Այս միջոցին Յիսուսի մայրն ու ազգականները քովը կ'ուզէին գալ, բայց բազմութենէն չէին կրնար մօտենալ՝ որ հետը խօսին. (ըստ ատ-*

վորութեան եբրայական ոճոյ՝ ազգականն եղ-
բայր կը կոչուի։

Եւ եղեւ մինչդեռ խօսէր զայս, ձայն եբարձ կին մի ՚ի ժողովրդենէ անտի եւ ասէ. Երանի՛ է որովայնին՝ որ կրեաց զքեզ, եւ ստեանցն՝ որ դիեցուցին զքեզ։ Եւ նա ասէ. Նա երանի՛ այնոցիկ է, որ լսեն զբանն Աստուծոյ եւ պահեն։ Ղուկ. ԺԱ. 27—28։

Ու երբոր այս խօսքերը կ՚ընէր՝ ահա ժողովրդեան մէջէն կին մի գորովալից ձայնիւ պոռաց. Երանի՛ քեզ կրող որովայնին և դիեցնող ստեանցն։ Կինը ճշմարտութեամբ ըսաւ. վասն զի արդէն Տիրոջը մայրն ալ ըսած էր. «Այսուհետեւ երանեսցեն ինձ ամենայն ազգք»։ Ղուկ. Ա. 48։ Բայց Յիսուս՝ որպէս զի ունկնդրաց միտքըն աւելի վսեմ խօսքով մը լուսաւորէ, պատասխանեց. մանաւանդ անոնք են երանելի՝ որոնք Աստուծոյ խօսքը լսելէն անմիջապէս յետոյ կը կատարեն։ վասն զի ամէն բանէ յառաջ Յիսուսի խնդրածն էր՝ լսել ու կատարել։

Եւ ասէ ոմն ցնա. ահա մայր քո եւ եղբարք քո կան արտաքոյ եւ խնդրեն խօսել ընդ քեզ։ Նա պատասխանի ետ այնմիկ՝ որ ասացն ցնա, եւ ասէ. ո՞վ է իմ մայր, կամ ո՞վ են իմ եղբարք։ Եւ ձգեալ զձեռն իւր յաշակերտսն ասէ. ահաւասիկ մայր իմ եւ եղբարք իմ. զի որ առնիցէ զկամս Հօր իմոյ՝ որ յերկինսն է, նա է իմ եղբայր եւ քոյր եւ մայր։ Մատթ. ԺԲ. 47—50։

Բազմութեան մէջէն մէկն երբ իմաց տուաւ Յիսուսի, թէ մայրդ ու ազգականներդ դուրսը կեցած քեզ հետ խօսել կ՚ուզեն, հարցուց անոր. ո՞վ է իմ մայրս կամ եղբայրներս։ Եւ առանց ըս-

պէտք ունին ։

Այլ յորժամ այսն պիղծ ելանէ 'ի մարդոյ՝ շրջի ընդ անջրդի տեղիս, խնդրէ հանգիստ և ոչ գտանէ. Յայնժամ ասէ. դարձայց 'ի տուն իմ՝ ուստի ելի. և եկեալ գտանէ զնա պարապորդ, մաքրեալ և յարդարեալ։ Յայնժամ երթայ և առնու ընդ իւր եօթն այլ այսս չարագոյնս քան զինքն, և մտեալ բնակէ անդ. և լինի յետինն մարդոյն այնորիկ չար քան զառաջինն. այնպէս եղիցի և ազգիս այսմիկ չարի. Մատթ. ԺԲ. 43—45 ։

Դուք կը նմանիք՝ կ'ըսէ, այն մարդուն՝ ուսկից դև մը կ'ելլէ կ'երթայ, ու աստիս անդին պտըտելէն ետքը՝ կ'ըսէ. իմ ելած տեղս դառնամ. կուգայ և այն տեղը պարապ մաքրուած ու շտկուած կը գտնէ ։ Նորէն կերթայ, իրմէ աւելի վատթար եօթն ուրիշ դևեր ալ առած կուգայ ու կը մտնէ հոն կը բնակի. ահա այն ատեն նոյն մարդուն յետին վիճակն առաջինէն աւելի գէշ կ'ըլլայ ։ Իսրայելին ալ այսպէս պիտի լինի. արդէն մէկ դևն, այսինքն, անհաւատութեան դևն ելած էր Իսրայելէն. բայց յետոյ նախանձն ու ատելութիւնն, անհաւատութեան ու խստասրտութեան տեղ եօթն ալ պիտի աւելցնէ ։

## Դ. Մայրն եւ եղբարք Քրիստոսի

Մինչդեռ նա ընդ ժողովուրդսն խօսէր, ահա մայր նորա և եղբարք նորա կային արտաքոյ, և խնդրէին խօսել ընդ նմա ։ Մատթ. ԺԲ. 46 ։

Այս միջոցին Յիսուսի մայրն ու ազգականները քովը կ'ուզէին գալ, բայց բազմութենէն չէին կրնար մօտենալ՝ որ հետը խօսին. (ըստ ստ-

վորութեան եբրայական ոճոյ՝ ազգականն եղբայր կը կոչուի։

Եւ եղեւ մինչդեռ խօսէր զայս, ձայն էբարձ կին մի 'ի ժողովրդենէ անտի եւ ասէ. Երանի՛ է որովայնին՝ որ կրեաց զքեզ, եւ ստեանցն՝ որ դիեցուցին զքեզ։ Եւ նա ասէ. Նա երանի՛ այնոցիկ է, որ լսեն զբանն Աստուծոյ եւ պահեն։ Ղուկ. ԺԱ. 27—28։

Ու երբոր այս խօսքերը կ'ընէր՝ ահա ժողովրդեան մէջէն կին մի գոռալով ձայնիւ պոռաց. Երանի՛ քեզ կրող որովայնին և դիեցնող ստեանցն։ Կինը ճշմարտութեամբ ըսաւ. վասն զի արդէն Տիրոջը մայրն ալ ըսած էր. «Այսուհետև երանեսցեն ինձ ամենայն ազգք»։ Ղուկ. Ա. 48։ Բայց Յիսուս՝ որպէս զի ունկնդրաց միտքըն աւելի վսեմ խօսքով մը լուսաւորէ, պատասխանեց. մանաւանդ անոնք են երանելի՝ որոնք Աստուծոյ խօսքը լսելէն անմիջապէս յետոյ կը կատարեն։ վասն զի ամէն բանէ յառաջ Յիսուսի խնդրածն էր՝ լսել ու կատարել։

Եւ ասէ ոմն ցնա. ահա մայր քո եւ եղբարք քո կան արտաքոյ եւ խնդրեն խօսել ընդ քեզ։ Նա պատասխանի ետ այնմիկ՝ որ ասացն ցնա, եւ ասէ. ո՞վ է իմ մայր, կամ ո՞վ են իմ եղբարք։ Եւ ձգեալ զձեռն իւր յաշակերտսն ասէ. ահաւասիկ մայր իմ եւ եղբարք իմ. զի որ առնիցէ զկամս Հօր իմոյ՝ որ յերկինսն է, նա է իմ եղբայր եւ քոյր եւ մայր։ Մատթ. ԺԲ. 47—50.

Բազմութեան մէջէն մէկն երբ իմաց տուաւ Յիսուսի, թէ մայրդ ու ազգականներդ դուրսը կեցած քեզ հետ խօսել կ'ուզեն, հարցուց անոր. ո՞վ է իմ մայրս կամ եղբայրներս։ Եւ առանց ըս-

պատմելու՞ որ պատասխանէ իրեն, ձեռօքն իւր աշակերտները ցոյց տուաւ և ըսաւ. ահա ատոնք են իմ մայրս ու եղբայրներս. վասն զի ո՛վ որ երկնաւոր Հօրս կամքը կը կատարէ՝ նա է մայրս ալ, քոյրս ալ, եղբայրս ալ։ Այսպէս հոգևոր ազգականութիւնը՝ մարմնոյ ազգականութենէ նախապատիւ կը քարոզէ. այսպէս երբ Աստուծոյ հակառակող փարիսեցիներն ու դըպիրները կը յանդիմանէր, Աստուծոյ հնազանդողներն ալ ամենէն քաղցր անուններով, մայր, քոյր և եղբայր տիտղոսներով իրեն ազգակից կ՚անուանէր։ Մօրն ու ազգականաց երկիւղն այն էր, թէ այդ խուռն բազմութեան մէջ փորձանք մի կուգայ գլուխն, անոր համար եկած էին զՅիսուս առնել տանելու։



# ԳԼՈՒԽ ԺԴ.

ՔԱՐՈԶՈՒԹԻՒՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՌ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ Ի ԾՈՎԵԶՐԻՆ.— ԱՌԱԿՔ ՍԵՐՄԱՆԱՑԱՆԻՆ ՍԵՐՄԱՆԵԱՑՆ ՀԱՍԵԼՈՑ Ի ՀՈՒՆՁՍ. — ՈՐՈՄԱՆՑՆ ՑԱԳԱՐԱԿԻ, ՀԱՏՈՑՆ ՄԱՆԱՆԽՈՑ, ԽՄՈՐՈՑՆ, ԵՒՍ ԵՒ ԳԱՆՁԻՆ ԾԱԾԿԵԼՈՑ. — ՊԱՏՈՒԱԿԱՆ ՄԱՐԳԱՐՏԻՆ ԵՒ ՈՒՌԿԱՆԻՆ ԱՐԿԵԼՈՅ Ի ԾՈՎ.



## Ա. Քարոզութիւն Քրիստոսի առ ժողովուրդն 'ի Ծովեզրին

Դարձեալ սկսաւ ուսուցանել առ ծովեզերբն, և ժող-

նեցան զնովաւ ժողովուրդք բազումք, մինչ 'ի նաւ մ-տանել նմա և նստել 'ի ծովուն. և ամենայն ժողովուրդն զծովեզերբն ցամաքին կային։ Մարկ. Դ. 1։

Եւ 'ի ժողովել բազում ժողովրդոց և ըստ քաղաքաց քաղաքաց եկելոց առ նա՝ ասէ առակաւ։ Ղուկ. Ը. 4։

*Յիսուս Նորէն սկսաւ քարոզել ծովափանց վրայ այն ամեն ժողովրդոց առջև՝ որոնք զանազան քաղաքներէ իւր քով ժողովուած էին Նորա քարոզութիւններն ու խրատները լսելու համար։ Բայց երբ նկատեց, որ բազմութիւնը հետզհետէ կը խռնի, և անհնարին կ'ըլլայ զամէնը գոհացընել միանգամայն՝ նաւ մտաւ, ծովուն մէջ քիչ մի առաջ բացուեցաւ, մինչդեռ բազմաթիւ ժողովուրդն ալ ծովուն եզերքը կեցած էին ցամաքին վրայ։*

## Բ. Առակ սերմանացանին, սերմանեացն հասելոց 'ի հունձս

Եւ ուսուցանէր զնոսա առակօք բազում ինչ, և ասէր նոցա 'ի վարդապետութեան իւրում. Լուարո՛ւք, ահա ել սերմանող սերմանել։ Եւ եղև 'ի սերմանելն՝ այն անկաւ առ ճանապարհաւ, և եկին թռչունք և կերին զնա։ Եւ այլն անկաւ յապառաժի՝ ուր ոչ գոյր հող բազում, և վաղվաղակի բուսաւ, քանզի ոչ գոյր հիւթ երկրին. և յորժամ ծագեաց արեւ՝ ջերաւ, և զի ոչ գոյին արմատք՝ ցամաքեցաւ։ Եւ այլն անկաւ 'ի մէջ փշոց, ելին փուշքն և հեղձուցին զնա, և պտուղ ոչ ետ։ Եւ այլն անկաւ յերկիր բարւոք, և ելեալ աճեցեալ տայր պտուղ. և բերէր ընդ միոյ երեսուն, և ընդ միոյ վաթսուն և ընդ միոյ հարիւր։ Եւ ասէր. որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ։ Մարկ. Դ. 2—9։

*Հոն բազմութեան առջև նաւուն մէջ սկսաւ առակներով իր վարդապետութիւնն ընել 'ի լսելիս ժողովրդեան ։ Ըսաւ . մտի՛կ ըրէք . ահա սերմնացանն իր սերմերը ցանելու ելաւ ։ Դիպուածով մէկ քանին ճամբու վրայ ինկան , թըռչուններն եկան զանոնք յափշտակեցին ու կերան։ Ոմանք ապառաժի վրայ ինկան , և որովհետև հոն բաւական հող չկար , և երկիրը զանոնք սընուցանելու և մինչև պտղաբերութեան ատեն աճեցնելու չափ հիւթ չունէր , չունէր նաև արմատ արձակելու յարմար տեղի , ուստի արևը ծագելուն պէս՝ ջերմութենէն տաքցաւ , խամրեցաւ ու ցամքեցաւ ։ Ոմանք փուշերու մէջ ինկան , փշերը մէկտեղ մեծցան , խեղդեցին զանոնք , ուստի պտուղ չտուին ։ Ոմանք ալ պարարտ կամ արգաւանդ հողի մէջ ինկան . աճեցան , պտուղ տուին՝ մէկին տեղ երեսուն , վաթսուն և մինչև հարիւր ։ Ո՛վ որ լսելու ականջ ունի՝ թող լսէ ։*

Եւ իբրև եղև առանձինն՝ հարցին ցնա , որ զնովաւն էին աշակերտօքն հանդերձ՝ զառակն ։ Եւ ասէ ցնոսա . Ձեզ տուեալ է գիտել զխորհուրդս արքայութեան Աստուծոյ , բայց նոցա որ արտաքինքն են՝ ամենայն ինչ առակօք լինի . Մարկ. Դ. 10—11 .

*Ու երբ մինակ մնաց , Յիսուսի շուրջը գըտնուողներն աշակերտաց հետ միացած՝ վերոյիշեալ առակին իմաստը կամ մեկնութիւնը հարցուցին ։ Նա ալ պատասխանեց . դուք միայն բացորոշ պիտի գիտնաք Քրիստոսի երկրի վրայ ունեցած թագաւորութեան խորհուրդը կամ գաղտնիքն՝ աշխատելով ընդ նմին , որ եկեղեցին*

հաստատուն ու կարգաւորի։ Բայց անոնց համար՝ որոնք Աստուծոյ արքայութենէն դուրս մնացած են, առակներով պէտք է պատմել Աստուծոյ խօսքը։ Յիսուս չէ թէ առակօք կը խօսէր, որպէս զի չիմանան, այլ իբրև սրտագէտ գիտէր՝ որ անոնց ներսը չէին թափանցեր իր խօսքերը. ուստի այս կերպով կը խօսէր, որպէս զի գէթ ուղղախոհ մարդիկ լաւ հասկնան։

Զի որ ունիցի՝ տացի նմա և յաւելցի. և որ ոչն ունիցի, և զոր ունիցին՝ բարձցի ի նմանէ։ Մատ. ԺԳ. 12։

Վասն զի՝ կ'ըսէ, ով որ ունի, այսինքն որու սրտին մէջ որ սերմն ցանուած է իբր պարարտ հողի վրայ և պտղաբերած, վերստին պիտի տրուի անոր ու պիտի յաւելնայ նորա ունեցածը. իսկ ով որ իւր սրտին մէջ անպտուղ թողած է սերմը, զայն նորա սրտէն պիտի առնու Տէրը։

Վասն այնորիկ առակօք խօսիմ ընդ նոսա. զի տեսանեն՝ և ո՛չ տեսանեն և լսեն՝ և ո՛չ լսեն, և ո՛չ առնուն ի միտ։ Մատ. ԺԳ. 13.

Անոր համար առակօք կը խօսիմ անոնց հետ. որպէս զի ով որ հաւատք ունի՝ միայն լուսոյ աճումն ընդունի և պտղաբերէ։ իսկ ով որ կը թողու՝ որ հաւատքը շիջանի իր սրտին մէջ, հոն արդէն ունեցած առկայծեալ լոյսն ալ կորուսանէ։ Այնպէս պիտի ըլլայ, որ հոգևոր պտուղ տուողին՝ վարձք պիտի տրուի, իսկ պտուղ կորսընցնողին՝ ունեցած սերմն ալ պիտի առնուի։

Եւ կատարի առ նոսա մարգարէութիւն Եսայեայ՝ որ ա-

սէ. լսելով լուիջիք՝ եւ մի՛ իմասջիք, եւ տեսանելով տեսջիք եւ մի՛ տեսջիք. զի թանձրացաւ սիրտ ժողովրդեանս այսորիկ, եւ ականջօք իւրեանց ծանրանս լուան. եւ զաչս իւրեանց կափուցին՝ զի մի՛ երբեք տեսցեն աչօք՝ եւ ականջօք լուիցեն՝ եւ սրտիւք իմասցին, եւ դարձցին եւ բժշկեցից զնոսա։ Մտթ. ԺԳ. 14–15։

*Եսայեայ մարգարէութիւնն այնպիսեաց համար գրուած է. անոնք կամաւոր և անյաղթելի յամառութեան մէջ մնան, և իրենց գիտութեամբ մեղանչելուն ու անվերջ մնալուն համար՝ մեղաց թողութիւն չը պիտի գտնեն. Նոքա արտաքին են, այսինքն, Աստուծոյ արքայութենէն դուրս մնալու դատապարտուած, վասն զի աչքերնին փակեցին՝ որ չը տեսնեն զլոյսն Քրիստոս, և ականջնին կամաւ խցացուցին՝ որ Նորա կենարար վարդապետութեանց և Հոգևոր կենաց հասնելու համար քարոզած պայմաններուն փրկարար ձայնը չը լսեն։*

Բայց ձեր երանի է աչացդ՝ զի տեսանեն, եւ ականջաց ձերոց՝ զի լսեն։ Ամէն ասեմ ձեզ. զի բազում մարգարէք եւ արդարք ցանկացան տեսանել զոր տեսանէքդ՝ եւ ո՛չ տեսին, եւ լսել զոր լսէքդ՝ եւ ո՛չ լուան։ Մտթ. ԺԳ. 16–17։

*Մինչդեռ այսպէս կամաւ չը լսողներ ու չը տեսնողներ, կոյրեր եւ խլեր կան ու կը գըտնուին, սակայն երանի՜ ձեր աչաց՝ որ յստակ կը տեսնեն, և ձեր ականջաց՝ որ անայլայլակ կը լսեն։ Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզ, որ շատ մարգարէներ, առաքինի մարդիկ ու աստուածապաշտք ձեր տեսածը տեսնել ու ձեր լսածը լսել փափաքեցան. այլ անպատակ մնաց իրենց իղձն ու փափաքը։*

Եւ ասէ ցնոսա. ո՛չ գիտէք զառակս զայս, և զիա՞րդ զամենայն առակսն գիտիցէք։ Մրկ. Դ. 13։

Եթէ այս առակին իմաստին չը կրցաք թափանցել, հապա ինչպէ՞ս պիտի կարենաք բոլոր իմ ըսած առակացս նշանակութիւնն իմանալ՝ որոնք թերևս այս առակէն առաւել խորին իմաստ պարունակեն։

Բայց առակդ այս ինչ է. սերմն՝ բանն Աստուծոյ է։ Եւ որք առ ճանապարհաւն, այնոքիկ են՝ որ լսեն, և ապա գայ սատանայ հանէ զբանն ՚ի սրտից նոցա, զի մի՛ հաւատասցեն և ապրեսցին։ Եւ որք յապառաժին, որք յորժամ լսիցեն՝ խնդութեամբ ընդունին զբանն, և արմատս ոչ ունիցին. որք առ ժամանակ մի հաւատան և ՚ի ժամանակի փորձութեան հեռանան։ Իսկ որ ՚ի մէջ փշոցն անկաւ, նոքա են՝ որ եկեալ լսեն զբանն, և ՚ի հոգս և ՚ի մեծութիւն և ՚ի ցանկութիւն աշխարհիս զբաղեալ հեղձնուն և անպտուղ լինին։ Իսկ որ յերկիրն պարարտ, որոց բարւոք և զուարթութեամբ սրտի լուեալ զբանն՝ ընդունին, և տան պտուղ համբերութեամբ։ Ղուկ. Ը. 11—15։

Աստուծոյ խօսքը սերմի կը նմանի՝ զոր սերմանացանն հողի մէջ կը ցանէ ՚ի ժամանակին. բայց այս սերմերէն ոմանք ճամբու մէջ, ոմանք քարակոյտ հողի վերայ, ոմանք արօտ չըջապատող մացառապատ ցանկին մէջ, ոմանք կարծր և ցամաք գետնի վերայ կ՚իյնան և ոմանք ալ մշակեալ արտորէից մէջ։ Ճամբու վրայ ինկածները՝ մարդոց ոտքերուն կոխան կամ թռչնոց կեր կ՚ըլլան. ցանկի մէջ իյնողները՝ փշերէն ու եղինձներէն կը խեղդուին. կարծր գետնի կամ քարի վերայ, ուր քիչ հող կայ, իյնողները՝ տակաւ ցողուն մի կըձգեն, բայց արևակեզ կը ցամաքին.

արդաւանդ երկրի վերայ ցանուածներն՝ կը հասուննան։ փարիսեցւոց և ասոնց նմաններու սըրտէն անհաւատութեան, հպարտութեան և չար սովորութեանց հեղինակն սատանայ՝ Աստուծոյ սերմանեալ բանը կ'առնու կը վերցնէ. ճամբու վերայ ինկած հատերն ասոնք են։ կան մարդիկ՝ որ Աստուծոյ խօսքը մտադիւր կըլսեն, այնպէս կ'երևի թէ Աստուծոյ խօսքն անոնց սիրտը թափանցեց, որոնք Քրիստոսի աշակերտաց հետ քալեցին խուռն բազմութեամբ, բայց երբ հաւատոյ փորձը՝ հաւատացելոց կրելիք նեղութիւններն ու հալածանքը կը հասնին՝ ամէնքն ալ կը չորնան փորձութեանց 'արևէն խանձելով. անոնց սրտից մէջ Աստուծոյ խօսքը արմատ ձգած չէ, այսինքն, ճշմարիտ հաւատք ու ճշմարիտ դարձ չունին։ կան շատեր ալ՝ որ Աստուծոյ խօսքը միայն լսած են, բայց սրտերնին չէ թափանցած, և բնաւ հոգևոր պտուղ չէ քաղուած. անոնց հոգին՝ երկրաւոր կենաց հոգերով, և հեշտութեամբք խեղդուած է, ասոնք են մացառներու մէջ ինկողներն և փշերէն ու եղինճներէն խեղդուողներն։ Իսկ պարարտ երկրի վերայ ցանուած սերմը՝ Աստուծոյ խօսքը մտիկ ընելով գործադրողներուն սիրտն է, ուր երեսնաւոր վաթսնաւոր և հարիւրաւոր պտուղ կը տեսնուի։ Աստուծոյ խօսքը նոյնն է միշտ, ասոր հետ մէկտեղ կան ու կը գտնուին միշտ կակուղ և կարծր սրտեր, բարեպաշտութեամբ՝ անհաւատութեան մէջ անգամ պտղաբերող հոգիներ, անտարբեր և սին հոգերով Աստուծոյ խօսքը ապարդիւն վիճակի մէջ պահող մարդիկ. ուստի այս առակը միտք պահելու համար կ'աւելցնէ. «Ով ունիցի ականջս

լսելոյ՝ լուիցէ.» Յիսուս այս վերջին խօսքը կը կրկնէր ամէն անգամ որ կարևոր կամ առանձին մտադրութեան արժանի բան մ'ըսելու լինէր։

Եւ ասէր ցնոսա. մի թէ գա՛յ ճրագ՝ զի ընդ գրուանաւ դնիցի կամ ընդ մահճօք. ո՛չ ապաքէն ՚ի վերայ աշտանակի դնիցի. Մրկ. Դ. 21։ Զի որ մտանիցեն՝ զլոյս տեսցեն. Ղուկ. Ը. 16։

Հնա՞ր է միթէ ճրագը վառելէն յետոյ գրուանի կամ մահճի ներքև դնել զայն. ո՛չ. աշտանակի վերայ կը դրուի՝ մտնողներուն լոյս տալու համար։ Այսպէս ալ դուք ապարդիւն չը պիտի պահէք իմ լուսով լուսաւորեալ ձեր հանճարն, այլ բացարձակ համարձակութեամբ պիտի քարոզէք, պիտի լուսաւորէք մարդկային մտաց խաւարն՝ երբ առ ձեզ կուգան ու կը խնդրեն։

Զի չէ՛ ինչ ՚ի ծածուկ՝ որ թէ ո՛չ յայտնեսցի. և ո՛չ եղև ինչ գաղտնի, եթէ ո՛չ ՚ի յայտ գայցէ։ Մրկ. Դ. 22։

Ինչ բան որ ես հօս առանձնակի կը խօսիմ ձեզ հետ, դուք պարտաւոր էք յունկն աշխարհի և ՚ի վերայ տանեաց աւետարանել իմ խօսքերս առանց երբէք ծածկելու։ Եթէ ամեն բան և մինչև ՚ի ծածուկ միտքը, դատապարտութիւններն և վճռուածներն ՚ի յայտ և յերևան կուգան միշտ՝ ո՛րչափ ևս առաւել Աստուծոյ խօսքը, զոր որչափ ծածկել ջանան՝ այնչափ և աւելի յայտնաբարբառ պիտի քարոզուի։

Եւ ասէ ցնոսա. տեսէ՛ք զինչ լսէք՝ և յաւելցի ձեզ որոց լսէք. որով չափով չափէք՝ նովին չափեսցի ձեզ. Որ ոք ունիցի՝ տացի նմա. և որ ո՛չն ունիցի, և զոր ունիցին՝

բարձցի 'ի նմանէ : Մրկ. Դ. 24-25 :

*Տեսէ՛ք՝ կ'ըսէ, ինչպէս լսեցիք՝ այնպէս պի-տի ըլլայ. հոգևոր պտուղ տուողին վարձք պի-տի տրուի, պտուղ կորսնցնողէն՝ ունեցած սեր-մըն ալ պիտի առնուի : Որչափ աշխատիք աւե-տարանի լոյսն՝ այս ձեր լսածները տարածելու տիեզերաց մէջ, նոյն չափով պիտի վարձատրուիք :*

Եւ ասէր . այսպէս է արքայութիւն Աստուծոյ . որ-պէս զի այր մի արկանիցէ սերմանիս յերկիր , եւ ննջիցէ եւ յառնիցէ զցայգ եւ զցերեկ , եւ սերմանիքն բուսանիցեն եւ աճիցեն , եւ նա ո՛չ գիտէ : Թէ երկիրն ինքնին բերէ զպտուղ. նախ զխոտն եւ ապա զհասկն , եւ ապա զցորեանն ատոք 'ի հասկին : Այլ յորժամ տայցէ զպտուղն , վաղվաղակի առաքէ մանգաղ , զի հասեալ հունձք : Մրկ. Դ. 26–29 .

*Աստուծոյ արքայութեան աճումն ու տա-րածումը՝ կը նմանի դարձեալ սերմնացանու-թեան . ինչպէս որ մարդ մը հողին մէջ սերմն ցանելէն յետոյ ուրիշ գործերու կը զբաղի , և թէև իր ցանած սերման նկատմամբ հոգ և ուշադրութիւն ալ չընէ , յանդէտս իր իսկ՝ եր-կիրն զսերմը կը բուսցունէ , նախ խոտը , ապա հասկը , և վերջապէս հասկին մէջ լեցուն ցորեա-նը : Երբ հնձոց ժամանակը կը հասնի՝ մանգաղն իր պաշտօնը կատարելու կը ղրկուի :*

Այլ առակ արկ առ նոսա՝ եւ ասէ . նմանեցաւ արքա-յութիւն երկնից առն՝ որ սերմանիցէ սերմն բարի յագարակի իւրում : Եւ 'ի ննջել մարդկան՝ եկն թշնամին նորա եւ ցանեաց 'ի վերայ որոմն 'ի մէջ ցորենոյն եւ գնաց : Ե-երբ բուսաւ խոտն՝ եւ արար պտուղ , ապա երեւեցան ե-որոմնն : Մատուցեալ ծառայք տանուտեառնն , ասեն ցնա .

Տէ՛ր՝ ո՞չ սերմն բարի սերմանեցեր յագարակին քում , արդ՝ ուստի՞ ունիցի զորոմն։ Եւ նա ասէ ցնոսա. այր թշնամի արար զայն · ասեն ցնա ծառայքն . կամի՞ս՝ զի երթիցուք քաղեսցուք զայն 'ի բաց ։ Եւ նա ասէ ցնոսա . ո՛չ · գուցէ մինչ քաղիցէք զորոմնն , և զցորեանն ընդ նմին 'ի բաց խլիցէք ։ Թոյլ տուք երկոցունց աճել 'ի միասին մինչև 'ի հունձս , և 'ի ժամանակի հնձոցն ասացից հնձողացն. քաղեցէ՛ք նախ զորոմնն և կապեցէ՛ք զայդ խրձունս առ 'ի այրել , և զցորեանն ժողովեցէ՛ք 'ի շտեմարանս իմ ։ Մատթ. ԺԳ. 24—30.

*Դարձեալ երկնից արքայութեան կամ եկեղեցւոյն մէջ որոմն , այսինքն, բարի անդամներու հետ չար մարդոց ընկերութիւնը սերման առակով մը կը յայտնէ ։ Մարդ մի կ'ըսէ , իւր ագարակին մէջ բարի սերմն ցանեց . իսկ սատանան՝ բարութեան թշնամին զանխուլ յամենեցունց կամ ամենուն քնացած ատենն՝ այն ցանուած սերման վրայէն եկաւ որոմն ցանեց ու գնաց . բուսաւ խոտն , երևցաւ ցորենն , որոյ հետ որոմն ալ գլուխ տուաւ ։ Ծառայք զարմանալով կը հարցնէին , թէ որո՞մն ուսկից մուտ գտաւ արտին մէջ . տէրը գիտէր՝ որ չար մարդոց եկեղեցւոյ մէջ գտնուիլը սատանային գործն էր . մի՛ քաղէք հիմայ՝ ըսաւ . այս աշխարհի մէջ չարերը բարիներէն մի՛ զատէք . գուցէ չարը զատած ատեն բարին ալ մէկտեղ վնասուի . թո՛ղ տուէք որ չարն ու բարին միասին աճին . հընձոց ատենն՝ վերջին դատաստանի ժամանակ հրեշտակներուն պիտի պատուիրեմ , պիտի հրամայեմ հնձողներուն՝ նախ որոմը քաղեցէք, խուրձ կապեցէք այրելու համար , ցորենն ալ շտեմարաններուս մէջ ամփոփեցէք ։ Պատիժն յետոյ պիտի սահմանուի ։*

Եւ ասէր . ո՞ւմ նմանեցուսցուք զարքայութիւնն Աստուծոյ , կամ որո՞վ առակաւ առակեսցուք զնա ։ Որպէս հատն մանանխոյ՝ որ յորժամ սերմանիցի յերկրի , փոքրագոյն է քան զամենայն սերմանիս՝ որ են յերկրի ։ Եւ յորժամ սերմանիցի , բուսանի եւ լինի մեծ քան զամենայն բանջարս, եւ արձակէ ոստս մեծամեծս , մինչեւ բաւական լինել ընդ հովանեաւ նորա թռչնոց երկնից բնակել ։ Մրկ. Դ. 30-32 ։

*Աստուծոյ Թագաւորութիւնն՝ եկեղեցին մանանխոյ հատի պէս է . Թէեւ ցանուած ատեն ամէն սերմերէն փոքր է , բայց յետոյ այնչափ կաճի՝ որ ամէն բանջարներէն աւելի մեծ կը լինի , մինչեւ անգամ իւր արձակած մեծամեծ ոստերուն հովանւոյն ներքեւ երկնից թռչունները բոյն կը շինեն եւ ազատ կը բնակին . այսպէս ահա պիտի ծաւալի եկեղեցին , ընդարձակի եւ տարածի .*

Այլ առակ խօսեցաւ ընդ նոսա եւ ասէ . Նման է արքայութիւնն երկնից խմորոյ , զոր առեալ կնոջ թաքոյց 'ի գրիւս երիս ալեր՝ մինչեւ ամենայն խմորեցաւ ։ Մատթ. ԺԳ. 33 ։

*Դարձեալ երկնից արքայութիւնը խմորոյ կը նմանի , զոր կին մի երեք գրիւ ալիւրի մէջ խառնեց , ու այս ամբողջ ալիւրը . խմորեցաւ ։ Աստուծոյ արքայութիւնն իւր ծաւալման եւ տարածման սկզբունքն իւր մէջն ունի ։*

Զայս ամենայն խօսեցաւ Յիսուս առակօք ընդ ժողովուրդսն, եւ առանց առակի ոչինչ խօսէր ընդ նոսա. զի լցցի ասացեալն 'ի մարգարէէն . Բացից առակօք զբերան իմ , բղխեցից զծածկեալսն 'ի սկզբանէ աշխարհի ։ Մատթ. ԺԳ. 34—35 ։ Բայց առանձինն աշակերտացն իւրոց մեկնէր զամե-

Նոյն ։ Մարկ. Դ. 34 ։

*Հոն՝ ուր որ ժողովուրդք և աշակերտք համախմբեալ էին Յիսուսի բոլորտիքն, այս ամէն առակները խօսեցաւ. վասն զի առանց առակի ժողովրդեան հետ խօսելու սովորութիւն չունէր նա. ինչպէս Դաւիթ կ'ըսէ. իմ բերանս առակներով պիտի բանամ, և աշխարհի սկիզբէն 'ի վեր ծածկեալ աստուածային խորհուրդներն անոնցմով պիտի բացատրեմ ։ Սակայն երբ առանձին միայն իւր աշակերտաց հետ, կը մեկնէր անոնց ։*

Յայնժամ Թողեալ Յիսուսի զժողովուրդսն եկն 'ի տուն. մատեան առ նա աշակերտքն և ասեն. մեկնեա՛ մեզ զառակ որոմանցն անդաստանի ։ Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. որ սերմանէ սերմն բարի՝ է որդի մարդոյ, և անդաստանն աշխարհս է. սերմն բարի նոքա են՝ որ որդիքն արքայութեան են, իսկ որոմնն որդիք չարին են. և Թշնամին՝ որ վարեաց զայն, սատանայ է. և հունձքն կատարած աշխարհի է. և հնձողքն հրեշտակք են ։ Մտթ. ԺԳ. 36—39 ։

*Յիսուս ժողովուրդները թողլով տուն եկաւ. աշակերտներն որոմանց մեկնութիւնը խնդրեցին ։ Նա թերևս փարիսեցւոց առջևը չէր ուզած մեկնել ։ Որոմն՝ որդիք չարին են՝ ըսաւ, այսինքն՝ փարիսեցիք, սադուկեցիք և հերովդիանոսք. ագարակն աշխարհս է. սերմը ցանողը՝ Տէրն ինքըն է. բարի սերմն՝ արքայութեան զաւակներն են. զորոմը վարող թշնամին՝ սատանան է. հունձքն՝ աշխարհիս վերջն է, և հնձողներն ալ՝ հրեշտակներն են ։*

Որպէս ժողովին որոմնն՝ և 'ի հուր այրին, այնպէս եղի-

ցէ 'ի կատարածի աշխարհի։ Առաքեսցէ որդի մարդոյ զհրեշտակս իւր, եւ ժողովեսցեն յարքայութենէ նորա զամենայն գայթակղութիւնս, եւ զայնոսիկ որ գործեն զանօրէնութիւն։ Եւ արկցեն զնոսա 'ի հնոց հրոյ. անդ եղիցի լալ եւ կրճել ատամանց։ Յայնժամ արդարքն ծագեսցեն իբրեւ զարեգակն յարքայութեան Հօր իւրեանց. որ ունիցի ականջս լսելոյ լուիցէ։ Մատթ. ԺԳ. 40—43։

*Ինչպէս որ որոմը կրակը կը նետուի, այնպէս ալ չարին զաւակներն յաւիտենից հուրը պիտի ձգուին։ Տէրն իւր հրեշտակները պիտի խրկէ, եւ Աստուծոյ արքայութեան մէջ գտնուած ամէն գայթակղութիւնները, կամ թէ իրենց ընթացքովը, խօսքերովը, ծուռ վարդապետութեամբքն ու հերետիկոսութիւններովը զեկեղեցին գայթակղեցնողներն ու բոլոր անիրաւ գործող տէրերը պիտի հաւաքեն ու հրոյ հնոցը պիտի նետեն. հոն տեսնելու արժանի բան է նոցա լացն ու ատամանց յուսահատ կրճտուքը։ Սակայն արդարներն արեւու պէս լուսափայլ պիտի ծագին Աստուծոյ արքայութեան մէջ. աղէկ միտք բրէ՛ք։*

Դարձեալ՝ նման է արքայութիւն երկնից գանձի ծածկելոյ յագարակի, զոր գտեալ մարդոյ՝ թաքոյց. եւ 'ի խնդութենէ անտի երթայ վաճառէ զամենայն ինչ զոր ունի, եւ գնէ զագարակն զայն. Մատթ. ԺԳ. 44։

*Դուք Աստուծոյ արքայութիւնը ձեռք բերելու համար ամէն զոհ աչք առնելու էք. վասն զի անկեց աւելի թանկագին բան չկայ, կը նմանի ագարակի մէջ ծածկեալ գանձի, զոր մարդ մը գտաւ պահեց, ուրախութենէն առանց մէկուն իմացընելու գնաց բոլոր ունեցածը ծախեց, զոհեց, եւ գնեց այն ագարակն՝ ուր գանձը թաղուն էր։*

Գանձք՝ հաւատոյ ճշմարտութիւններն են, և ագարակ՝ Աստուածաշունչ Ս. Գիրքն։ Իսկ ամէն բան վաճառել և զայն ագարակը գնելն կը նշանակէ՝ փրկուելու համար ճշմարտութեանց հետամուտ լինել և 'ի բոլոր սրտէ սիրել աւետարանն, և զայն ձեռք բերելու համար հարկ եղած ատեն ամեն բան զոհել և հաւատքը գործով կատարել։

Դարձեալ նման է արքայութիւն երկնից առն վաճառականի՝ որ խնդրիցէ մարգարիտս գեղեցիկս։ Եւ գտեալ մի պատուական մարգարիտ՝ երթեալ վաճառեաց զամենայն զոր ինչ ունէր՝ և գնեաց զայն մարգարիտ։ Մատթ. ԺԳ. 45–46։

Գեղեցիկ մարգարիտներ փնտռող վաճառականի մը պէս՝ որ պատուական մարգարիտ մի գտնելով գնաց բոլոր ունեցածը ծախեց, ու զայն մարգարիտը գնեց։ Աստուծոյ արքայութիւնը ձեռք բերելու համար պէտք է որ ամէն բանէ աւելի սիրենք՝ նախ Աստուծոյ արքայութիւնն. և այնչափ սիրենք՝ որ մեր երկրաւոր մեծութիւններն, հարստութիւններն ու իղձերն՝ զայն շահելու համար գործածենք. կ'արժէ որ արիւնըն ու կեանքն անգամ վրայ տանք. վասն զի աշխարհ և իւր ճոխութիւնք չեն կարող 'ի 'կշիռ գալ Աստուծոյ թագաւորութեան։

Դարձեալ նման է արքայութիւն երկնից ուռկանի արկելոյ 'ի ծով՝ և յամենայն ազգաց ժողովելոյ։ Զոր իբրև լցաւ, հանեալ 'ի ցամաք՝ և նստեալ ժողովեցին զբարի բարին յամանս, և զխոտանն 'ի բաց ընկեցին։ Այնպէս եղիցի 'ի կատարածի աշխարհիս. ելցեն հրեշտակք՝ և մեկնեսցեն զչարս 'ի միջոյ արդարոց։ Եւ արկցեն զնոսա 'ի հնոց հրոյն.

անդ եղիցի լալ և կրճել ատամանց : Մատթ. ԺԳ. 47-50 :

Եկեղեցւոյ մէջ ամէն տեսակ մոլորամիտ, չարամիտ և դայթակղեցուցիչ մարդիկ գտնուիլն ուրիշ առակաւ կ'իմացընէ Քրիստոս : Աստուծոյ արքայութիւնը՝ կ'ըսէ, ծովը ձգուած ուռկանի կը նմանի, ուր ամեն ազգի բաներ՝ աղէկն ու պիտանին, գէշն ու անպիտանն լեցուեցան. ցամաքը հանեցին զայն, ու նստան՝ աղէկներն ու պիտանիներն ամաններու մէջ առին, իսկ գէշերն ու անպիտանները մէկդի նետեցին : Այսպէս պիտի լինի աշխարհի վերջն ալ. հրեշտակներն՝ արդարները չարերուն մէջէն պիտի զատեն. չարերն ու անօրէններն հնոցը պիտի նետեն, անդ է առ վշտին և յուսահատութեան լալ և կրճտել ատամանց :

Ասէ ցնոսա Յիսուս. իմացարո՞ւք զայս ամենայն. ասեն ցնա. այո՛ Տէր : Եւ նա ասէ ցնոսա. վասն այսորիկ ամենայն դպիր աշակերտեալ արքայութեանն երկնից՝ նման է առն տանուտեառն, որ հանէ 'ի գանձէ իւրմէ զնոր և զհին: Մատթ. ԺԳ. 51—52 :

Հարցուց Յիսուս իր աշակերտաց, ըսածներուս ամենն ալ հասկցա՞ք. ուրեմն մտքերնիդ պահեցէք. դուք տանուտիրոջ մը պէս ձեր մտաց մէջ ամբարեցէք ըսածներս. որպէս զի թէ՛ Հին և թէ՛ Նոր կտակարաններէն՝ պէտք եղած ամեն պատրաստ ճարակ ունենանք մարդոց հոգևոր փրկութեանն համար : Դուք՝ երկնից արքայութեան աշակերտեալ դպիրներն էք, և ձեր ուսումը՝ այդ միւս դպրաց ուսումէն տարբեր պիտի լինի : Աստուծոյ եկեղեցւոյն պաշտօնեայն, նոյն բանաւոր այգւոյն մշակը՝ ո՛րչափ հմտութիւն ունենալու է Ս. Գրոց և նորա վարդապետութեանց :

# ԳԼՈՒԽ ԺԵ․

ԴՊԻՐՆ ՄԵՐԺԵԱԼ ՅԱՇԱԿԵՐՏՈՒԹԵՆԷ ․ — ԱՇԱԿԵՐՏՆ՝ ՈՐ ԹՈՂԵԼ ՆԱԽ ԶՀԱՅՐՆ ԿԱՄԷՐ ․ — ՄՐՐԻԿՆ ՅԱՆՈՒՑԵԱԼ ․ — ԻՐՔ ԴԻՒԱՀԱՐԱՑՆ ԳԵՐԳԵՍԱՑԻՈՑ ․ — ԴԱՐՁ ՅԻՍՈՒՍԻ Ի ՆԱԶԱՐԷԹ ․ — ԱՆՀԱՒԱՏՈՒԹԻՒՆ ՆԱԶԱՐԷԹԱՑԻՈՑՆ ԵՒ ԿԱՄԵԼ ՍՊԱՆԱՆԵԼ ԶՆԱ ․



## Ա․ Դպիրն մերժեալ յաշակերտութենէ

Յաւուրն յայնմիկ իբրեւ ընդ երեկս լինէր ․ Մարկ․ Դ․ 35 ։ Տեսեալ Յիսուսի ժողովուրդս բազումս շուրջ զիւրեաւ՝ հրամայեաց երթալ յայնկոյս ։ Մատթ․ Ը․ 18 ։

*Այն օրն երեկոյեան դէմ Յիսուս տեսնելով որ ժողովրդեան բազմութիւնը հետզհետէ կը խռնի, աշակերտներուն հրամայեց որ ծովուն միւս եզերքն անցնին, ուր քիչ մը հանգիստ կարենայ գտնել ։*

Եւ մատուցեալ դպիր մի ասէ ցնա ․ եկից և ես զհետ քո՝ ուր վայր և երթիցես ։ Ասէ ցնա Յիսուս ․ աղուէսուց որջք գոն, և թռչնոց երկնից՝ բոյնք ․ այլ որդւոյ մարդոյ ոչ գոյ՝ ուր դիցէ զգլուխ իւր ։ Մատթ․ Ը․ 19—20 ։

*Դպիր մը կը խնդրէ Քրիստոսի հետեւիլ՝ ուր որ գնայ ․ այսու ամենայնիւ կը մերժէ զանի Յիսուս ․ քանզի նորա մտաց և սրտին խորը թափանցելով կ՚իմանայ՝ որ նա մարմնոյ հանգստութեան կամ փառաց և շահասիրութեան համար կը խնդրէ ․ վասն որոյ կը պատասխանէ, թէ ես*

աղուէսներէն ու թռչուններէն առաւել աղքատ ըլլալովս՝ անհնար է որ դու կարող լինիս քու աշակերտութեանդ փափաքիդ հասնիլ։

Բ. Աշակերտն որ Թաղել Նախ զհայրն կամէր

Ասէ ցմիւս ևս. եկ զհետ իմ. Եւ նա ասէ. Տէ՛ր՝ հրաման տո՛ւր ինձ երթալ նախ թաղել զհայր իմ։ Ասէ ցնա Յիսուս. թող մեռելոց թաղել զմեռեալս իւրեանց, և դու երթ պատմեա՛ զարքայութիւնն Աստուծոյ։ Ղուկ. Թ. 59. 60:

*Կղեմէս Աղէքսանդրիոյ հայրապետը կը պատմէ սորա համար՝ թէ Յիսուսի աշակերտներէն մին էր՝ ինչպէս Մատթէոս աւետարանիչ կ'ըսէ, Փիլիպպոս անուն։ Սա թէև կ'ուզէր Քրիստոսի հետևիլ, սակայն և այնպէս ընտանեացն և իւրայնոց սէրը կը դժուարացնէր զայդ փափաքը կատարել։ Հրաման տո՛ւր՝ կ'ըսէ, երթամ նախ իմ հայրս թաղեմ՝ և ապա շաւղացդ հետևիմ. Թո՛ղ որ, կը պատասխանէ Քրիստոս, աշխարհի ընչից և մեծութեանց յարող մարդիկն, այդպիսի հոգեր ստանձնեն. դու պէտք չունիս՝ դէթ դոյզն ինչ ժամանակ հեռանալու ինձմէ՝ երբ կոչուած ես. դու միայն Աստուծոյ արքայութիւնը պիտի քարոզես. այդ է քու պաշտօնդ ու պարտաւորութիւնդ, դու մի՛ թողուր զկենդանիներն յաւիտենից և զկենդանարարն, և երթար զհետ մեռելոց կամ մեռելութեան։*

Գ. Մրրիկն ցածուցեալ

Թողուն զժողովուրդն, և առնուն զնա նաւաւն հան-

ջերյ, և զայլ եւս նաւսն որ էին ընդ նմա։ Եւ լինէր մըր-
րիկ մեծ հողմոյ, և զալիսն ՚ի նաւն զեղոյր, մինչ գրեթէ լի
լով լինել։ Եւ ինքն ննջէր ՚ի խելս նաւին ՚ի վերայ բարձի.
զարթուցանէին զնա և ասէին. վա՛րդապետ, ոչինչ է քեզ
փոյթ, զի կորնչիմք ահաւասիկ։ Եւ զարթուցեալ սաստեաց
հողմոյն և ծովուն. ասէ. դադարեա՛ կարկեա՛ց. և դադա-
րեաց հողմն, և եղև խաղաղութիւն մեծ։ Եւ ասէ ցնոսա.
ընդէ՞ր այդպէս վատասիրտ էք, ու՞ր ոչ ունիք հաւատս.
և երկեան երկիւղ մեծ, և ասէին ցմիմեանս. ո՛վ ոք արդեօք
իցէ սա, զի եւ հողմ եւ ծով հնազանդին սմա։ Մարկ. Դ.
35—40.

*Ոչ միայն աշակերտներն էին՝ որ Յիսուսի հետ նաւ մտան յայնկոյս անցնելու, այլ և նորա կենարար վարդապետութեանց ծարաւի ժողովուրդներէն շատեր ուրիշ նաւերու մէջ լեցած՝ հետևեցան անոր։ Մրրիկ մը՝ որ հաղուադէպ էր այն ծովուն մէջ, որոյ նմանը թերևս խիստ քիչ անգամ՝ տեսած լինէին Քրիստոսի ձկնորս աշակերտներն, այնքան սաստկացաւ՝ որ ալիքն սկսան նաւուն մէջ լեցուիլ. սակայն ինքը անփոյթ կը քնանար. նա՝ որ տիեզերաց անքուն պահապանն էր, մարդկային մարմնոյ խոնջութեան ներքև կը ննջէր։ Աշակերտք զանի արթնցուցին, մարդկային բոլոր հնարքն ՚ի գործ դնելէն յետոյ՝ անյոյս ինքնովլին փրկութենէ՝ կ՚աղաչէին որ փրկէ զիրենք. Ելաւ. սաստեց շնչող մրրկին և ուռուցեալ ծովուն. կոհակք դադրեցան Արարչին ձայնէն, հանդարտեցին հողմունք։ Սաստեց զիւր աշակերտներն ալ՝ թէ ինչո՛ւ տակաւին հաւատք չունին։ Ամենքն ալ այս արտաքոյ կարգի խաղաղութեան վրայ չը կրնալով իրենց հիացումը զսպել՝ «Ո՞վ է այս անձը՝ կ՚ըսէին,*

ի՞նչ պիսի մարդ է աս, որ կ'իշխէ անհեղամբռունչ հողմոց և կատաղի ալեաց »։ Այս մեծ հրաշքը կը ցուցընէ թէ ո՛րքան մեծ և անհարկու լինին մեր վիշտերն ու տառապանք, ո՛րքան ճընչեն զմեզ մեր ներքին կիրքն և նոցա սոսկալի յուզմունք, այնքան մեծ է Աստուծոյ իշխանութիւնը՝ փարատել առջիններն ու ջնջել երկրորդը, կամ խոնարհեցընել իւր պատուիրանաց և հրամանին առջև, բաւ է միայն՝ որ մեր փրկութեան յոյսն իւր վերայ խարսխենք և հաւատանք իրեն ամենամեծ կարողութեան, և եթէ գթենք իսկ՝ դառնանք առ նա ։

## Դ. Իրք դիւահարացն գերգեսացւոց ։

Եւ եկեալ նորա յայնկոյս յերկիրն Գերգեսացւոց, պատահեցին նմա դիւահարք երկու՝ ելեալք 'ի գերեզմանացն, չարաչարք յոյժ. որպէս զի չէ՛ր հնար անցանել ումեք ընդ այն ճանապարհ ։ Եւ ահա աղաղակեցին և ասեն. զի՞ կայ մեր և քո Յիսուս որդի Աստուծոյ, եկիր տարաժամ տանջել զմեզ ։ Մատ. Ը. 28—29 ։ Որոյ և բնակութիւն իւր էր 'ի գերեզմանս էր. և ո՛չ շղթայիւք ոք ևս կարէր կապել զնա ։ Վասն բազում անգամ ոտնակապօք և շղթայիւք կապելոյ, և խզելոյ 'ի նմանէ շղթայիցն, և ոտնակապացն խորտակելոյ. և ո՛չ ոք կարէր կապել զնա ։ Քանզի հանապազ ցայգ և ցերեկ 'ի գերեզմանս և 'ի լերինս աղաղակէր, և կոծէր զանձն իւր քարամբք ։ Իբրև ետես զՅիսուս 'ի հեռաստանէ, ընթացաւ և երկիր եպագ նմա ։ Աղաղակեաց 'ի ձայն մեծ՝ և ասէ, զի՞ կայ իմ և քո՝ Յիսուս որդի՛ Աստուծոյ բարձրելոյ. երդմնեցուցանեմ զքեզ յԱստուած, մի՛ տանջեր զիս ։ Քանզի ասէր ցնա. ե՛լ այսդ պիղծ 'ի մարդոյ այտի ։ Եւ հարցանէր ցնա՝ թէ զի՞նչ անուն է քո. և ասէ ցնա. Լեգէոն անուն է իմ, քանզի բազումք եմք ։ Եւ աղաչէին զնա յոյժ.

զի մի՛ առաքեսցէ զնոսա արտաքս քան զաշխարհն : Եւ անդ էր առ լերամբն երամակ մի խոզաց արօտական մեծ : Աղաչեցին զնա ամենայն դեւքն եւ ասեն , առաքեա՛ զմեզ 'ի խոզսն , զի մտցուք 'ի նոսա : Եւ հրամայեաց նոցա . եւ իբրեւ ելին այսոքն պղծք՝ մտին 'ի խոզսն , եւ դիմեաց երամակն 'ի դարէ անդի 'ի ծովն . էին իբրեւ երկու հազար , եւ հեղձնուին 'ի ծովուն : Եւ խոզարածքն փախեան , եւ պատմեցին 'ի քաղաքին եւ յագարակս , եւ ելին տեսանել զինչ էցէ՝ որ գործեցաւ : Գան առ Յիսուս , եւ տեսանեն զդիւահարն զի նստէր զգեցեալ եւ զգաստացեալ , որ ունէր զլէգէոնն . եւ զահի հարան : Եւ պատմեցին նոցա՝ որոց տեսեալ էր , թէ զի՞նչ եղեւ այսահարին , եւ զինչ վասն խոզիցն : Եւ սկսան աղաչել զնա գնալ 'ի սահմանաց նոցա Մրկ. Ե. 3-17 .

*Քրիստոս վերյիշեալ անօրէնութեան մէջ՝ նախ ցոյց տուաւ թէ դիւաց իշխանութիւնը ջնջելու եկած է , և թէ սատանան մեր մեղաց պատճառաւ միայն այսուհետև մեր վրայ կը համարձակի յարձակիլ : Դևերն՝ որ դիւահարաց ներսն իրենց բնակութիւն ընտրած կը չարչարէին զանոնք , և պատճառ տուած էին՝ որ հրէայք զանոնք քաղքէն դուրս մինչև գերեզմաններն արտաքսեն , տեսնելով՝ որ իրենց իշխանութեան բարձումը մօտեցած է, կը պոռան: ի՞նչ կ'ուզես մեզնէ , մեզ տանջելու համար շատ կանուխ եկար . Յիսուս Որդի Աստուծոյ Բարձրելոյն : Գիտէին արդէն, թէ պիտի ըլլայ այդ , սակայն դեռ ուշ կը յուսային հասնել, և Յիսուս այն ատեն միայն երբ կը հաճէր՝ ինքզինք կը ճանչցնէր դիւաց, եթէ չը կամէր՝ չէին կարող ճանչնալ զինքը : Երկրորդ՝ թէ մասնաւորաց առանձնական չահը պէտք չէ որ դայթակղութիւն պատճառէ հասարակաց : Մովսիսական խտրութեան օրէնքը կ'արգելուր հրէից՝ խոզենի չուտել, ասոր հակա-*

ուակ հրէայք ոմանք չահախնդրութեան ոգւով տոգորուած խռով կը սնուցանէին, որպէս զի հեթանոսաց ծախելով՝ սուտակ վաստկին. դերդեսացի հրեայք այդ գործով Աստուծոյ օրինաց դէմ արհամարհանք ցուցած էին. Այս գայթակղութիւն մ՚ էր բարեպաշտ հրէից համար. Աստուծմէ արգիլեալ խոզաց չահավաճառով զբաղելն իւր կամաց հակառակ լինելուն յապացոյց՝ Քրիստոս Տէրն մեր խոզից երամակը սատանայի իշխանութեանը յանձնելուն թոյլատրութիւն ըրաւ՝ իբրև արդարև սատանայի վերաբերեալ շահավաճառ։

Նոքա՝ որ եկան ականատես եղան սքանչելեացն. սկսան աղաչել զՅիսուս՝ որ մեկնի իրենց երկրէն. կը վախնային որ նմանօրինակ դէպք մը իրենց ալ կը պատահի 'ի վնաս, զի մեղաւոր ըլլալնին կիմանային։

Եւ նա մտեալ 'ի նաւ՝ դարձաւ անդրէն։ Աղաչէր զնա այրն՝ յորմէ դեւքն ելեալ էին լինել ընդ նմա. արձակեաց զնա՝ և ասէ. Դարձի՛ր 'ի տուն քո ;՝ և պատմեա՛՝ զոր միանգամ արար քեզ Աստուած. Գնաց 'ի քաղաքն և քարոզէր զոր ինչ արար նմա Յիսուս։ Ղուկ. Ը. 38-39։

Երբ նաւը մտաւ ետ դառնալու համար, դիւահարն՝ որ բժշկուած էր, կ՚աղաչէ որ իրեն հետևի, կը վախնար որ նորէն կը դիւահարի, կամ թէ կը խնդրէր՝ որ զինքն իւր աշակերտաց թուոյն մէջ ընդունի։ Հարկ չը տեսներ Քրիստոս. որ Աստուծոյ հրաշալիքը պատմելու համար նա միշտ ետևէն դնայ. բաւ կը համարի պատուիրել, որ իւր քաղաքը դառնալով աստուածային դթութեան քարոզ լինի, և կ՚ապահովէ զանի՝

*թէ դևերը չը սկսին կարենան դառնալ զինքն անհանգիստ ընել վերստին։*

Ե. Դարձ Յիսուսի 'ի Նազարէթ

Եւ իբրև դարձաւ անդրէն Յիսուս, ընկալաւ զնա ժողովուրդն. քանզի ամենեքեան ակն ունէին նմա. Ղուկ. Ը. 40. Եւ ել անտի, եկն 'ի գաւառ իւր. և երթային զհետ նորա աշակերտքն իւր։ Եւ եղև 'ի շաբաթուն՝ սկսաւ ուսուցանել 'ի ժողովրդեանն. և բազումք իբրև լսէին՝ զարմանային ընդ վարդապետութիւն նորա, և ասէին. ուստի՞ է սմա այս, կամ զի՞նչ է իմաստութիւնն՝ որ տուեալ է սմա. զի զօրութիւնք այսպիսիք 'ի ձեռաց սորա լինիցին։ Ո՞չ սա է մանուկ հիւսանն և որդին Մարեմայ, եղբայր Յակոբայ և Յովսեայ և Յուդայի և Սիմոնի, և ոչ ե՞ն քորք դորա աստ առ մեզ. և գայթագղէին 'ի նա։ Մրկ. Զ. 1-3։

*Ժողովուրդք ամէն տեղ մեծ սիրով կըսպասէին Քրիստոսի՝ ոմանք նորա հրաշից վրայ 'ի հետաքրքրութենէն միայն շարժեալ, և ոմանք իրենց հաւատոց ճարակ գտնելով նորա կենարար վարդապետութիւններէն ու բարոյական խրատներէն. ուստի երբ տեսան՝ որ իւր քաղաքը դարձաւ, ուրախութեամբ ընդունեցին զանի։ Ժողովարանը մտաւ, ու սկսաւ քարոզել։ Բայց որովհետև հաւատացեալ ժողովրդեան մէջ կը գտնուէին նաև նախանձոտ փարիսեցիք և սադուկեցիք, տեսնելով որ անհնար է ազդեցութեան և հաւատոյ տարածման առաջքն առնուլ, կը գայթակղէին նորա իմաստութեան վերայ, և կ'ըսէին, ինչպէս որ սովոր է ռամիկն ընդհանրապէս ըսել. Ասի՝ հիւսն Յովսէփին տղան չէ՞, սորա քոյրերն ու եղբայրները հոս մեր մէջ չե՞ն.*

ո՞ւր սորվեցաւ այսչափ բան՝ որ մեզ կը հիա-ցընէ ։

Եւ ասէ ցնոսա. ապաքէն ասիցէք առ իս զառակս զայս. բժիշկ՝ բժշկեա՛ զանձն քո. որչափ լուաք զոր արարեր ՚ի Կափառնաում, արա՛ և աստ ՚ի քում գաւառի ։ Եւ ասէ . ամէն ասեմ ձեզ՝ թէ չէ՛ մարգարէ ընդունելի ՚ի քաղաքի իւրում ։ Ղուկ. Դ. 23—24 ։

Յիսուս այս խօսքով կամ առածով յանդիմանել ուզեց հրէից անհաւատութիւնը. վասն զի նոցա սրտից մէջ հաւատք չը գտնելով՝ զանոնք իւր չնորհացն արժանի չէր դատեր. ուստի պէտք էր որ ուրիշ տեղեր երթար քարոզեր, հրաշքներ գործեր. վասն զի թէև շատ անդամ իրենց ժողովարաններուն մէջ քարոզած ու հրաշագործած էր, սակայն նոքա իրենց վարուց մէջ անուղղայ մնացած էին ։ Այն առածն՝ որ հասարակաց էր յայնժամ, բսաւ. ըստ որում այն տեղն՝ որ մէկուն ազայութիւնը գիտեն, որչափ ալ նշանաւոր և անզուգական մէկն ըլլայ, կրնան գտնուիլ ոմանք որ խծբծեն, թէ այս ինչ կամ այն ինչ մարդուն որդին չէ՞, անոր խօ՞սքը կ՚ըլ-լայ ։

Արդարև ասեմ ձեզ. զի բազում այրիք էին յաւուրս Եղիայի ՚ի մէջ Իսրայէլի՝ յորժամ փակեցան երկինք զերիս ա-մըս և զվեց ամիս. և եղև սով մեծ ընդ ամենայն երկիր ։ Եւ ո՛չ առ մի՛ ՚ի նոցանէ առաքեցաւ Եղիա, բայց միայն ՚ի Սարեփթայ Սիդոնացւոց՝ առ կին մի այրի ։ Եւ բազում բորոտք էին յԻսրայէլի առ Եղիսեիւ մարգարէիւ. և ո՛չ ոք ՚ի նոցանէ սրբեցաւ, բայց միայն Նէեման Ասորի ։ Ղուկ. Դ. 25—27 ։

Այս հին կտակարանէն առնուած երկու օրինակներովս կ'ուզէ իմացնել Յիսուս՝ որ եթէ իր գաւառակիցներէն աւելի օտար երկրի բնակիչներն, և իր ազգէն աւելի ուրիշ ազգերը նախապատիւ կը համարի՝ զարմանալու չէն. քանզի ուր որ ինքը հաւատք և գործնական հաւատք կը տեսնէ՝ հոն կրնայ իր աստուածային զօրութեան չափը ցոյց տալ. ինչպէս որ իր հրաշագործութեանց ատեն պահանջած միակ բանն էր. կը հաւատա՞ք՝ կ'ըսէր, թէ զայդ կրնամ ես ընել։ Խնդրողներուն բերնէն և մանաւանդ թէ սրտէն ջերմ խոստովանութիւնն առնելով նոցա պէտքը կը մատակարարէր ամենակարող զօրութեամբն։

## Զ. Անհաւատութիւն Նազարէթացւոյն եւ կամել սպանանել զնա

Եւ լցան ամենեքեան բարկութեամբ 'ի ժողովրդեանն՝ իբրև լուեալ զայս։ Եւ յարուցեալ հանէին զնա արտաքոյ քաղաքին, և ածէին զնա մինչև յարտևան լերինն՝ յորոյ վերայ քաղաքն նոցա շինեալ էր՝ գահավէժ առնել զնա։ Եւ նա անցեալ ընդ մէջ նոցա՝ գնայր։ Ղուկ. Դ. 28–30։

Յիսուսի անաչառ յանդիմանութեանց վերայ ամբոխը զայրացած՝ բռնեցին զանի լերանը դարեւանդը բերին, որոյ վրայ Նազարէթ քաղաքը շինուած էր, որպէս զի զանի վար նետեն՝ նորա ձեռքէն ազատելու համար։ Այլ որովհետև դեռ ոչ ամենայն ինչ կատարեալ էր Քրիստոսի համար, քանզի տակաւին հայրական տնօրինութեան վախճանին ժամն հնչած էր, հոն ալ իր աստուածային զօրութիւնը ցոյց տալով՝ անտես յա-

չաց ամենեցուն, որ անշօշափելի է, անցաւ գը-նաց ազատեցաւ ամբոխին ձեռքէն, ընդ որ բը-նական է ըսել՝ յանհնարինս զարմացան ամէն-քըն ալ։

Եւ ոչ կարէր անդ և ո՛չ մի ինչ զօրութիւն առնել. բայց սակաւ հիւանդաց ձեռն եդեալ՝ բժշկէր զնոսա. Եւ զարմանայր վասն անհաւատութեան նոցա։ Մրկ. Զ. 5-6.

Քանի որ ծանր էր հրէից, կամ մասնաւորա իւր քաղաքակցաց, ճշմարտութիւնը լսել միշտ և հաւատալ Աստուծոյ որդւոյն, ուստի իրենց հի-ւանդներն ալ բժշկութեան արժանաւոր չէին. վասն զի չարերը բժշկուած ըլլալով հանդերձ՝ տակաւին չար էին, անոր համար միայն արժա-նաւորները բժշկեց։

# ԳԼՈՒԽ ԺԶ.

ՔԱՐՈԶՈՒԹԻՒՆՔ ՓՐԿՉԻՆ Ի ԳԱԼԻԼԻԱ. — ԱՌԱՔՈՒՄՆ ԱՇԱ-ԿԵՐՏԱՑ Ի ՔԱՐՈԶՈՒԹԻՒՆ. — ԽՐԱՏՔՆ ԱՌ ՆՈՍԱ



## Ա. Քարոզութիւնք փրկչին 'ի Գալիլիա

Եւ շրջէր Յիսուս ընդ ամենայն քաղաքս և ընդ գեւղս. ուսուցանէր 'ի ժողովուրդս նոցա, և քարոզէր զաւետարանն արքայութեան. և բժշկէր զամենայն ախտս և զամենայն հիւանդութիւնս՝ 'ի ժողովրդեանն. Եւ տեսեալ զժողովուրդսն՝

գթացաւ 'ի նոսա · զի էին աշխատեալք և. ցրուեալք իբրև զոչխարս՝ որոց ո՛չ իցէ հովիւ ։ Յայնժամ ասէ ցաշակերտսն իւր · Հունձք բազում են՝ և մշակք սակաւ ։ Արդ՝ աղաչեցէ՛ք զՏէր հնձոց՝, զի հանցէ մշակս 'ի հունձս իւր ։ Մատթ. Թ. 35—38 ։

*Յիսուս այս երրորդ անգամ Գալիլիոյ բոլոր քաղաքներն ու գիւղերը կը շրջագայէր, անդադար արքայութեան աւետարանը կը քարոզէր, ու ժողովրդեան ցաւերն ու հիւանդութիւնները կը բժշկէր ։ Անոր անցած գնացած տեղերն երկնային լոյս կը ճառագայթէր և կենաց ցօղ կը տեղար . մինչդեռ աշխարհի երկրակալաց ոտից ներքևէն արեան ճապաղիք կը հոսին, զուարթ դաշտեր՝ դերեզմանական սխրութիւն կըզգենուն, քաղաքներ ու գիւղեր՝ յաւերակս կը մնան, ձորեր ու հովիտներ՝ մեռելոց ոսկերոտւով կը լցուին, տանց և հիւղերու յարկերէն՝ հառաչանաց և հեծեծանաց ողբեր կը ելնան, մահատիպ յուսահատութիւնն առհասարակ ամէնուն դէմքերն ու ճակատները կը թօշնէ ։ Եւ ո՞վ կարող է նկարագրել ճշդիւ հայրակորոյս մանկտւոյն աղիողորմ ճիչերն, ամուսիններ կորսնցնող հարսներուն սրտէն ելած թառաչքն և որդեկորոյս ծնողաց անմխիթար վիշտերը ։ Յիսուսի քայլերն այս հետքը չեն թողուր . կենդանարար ականակիտ վտակի մը կը նմանի՝ որ հեզիկ սողոսկելով իր անցած տեղերը կանաչ մարգագետին, զուարթ ափունք, սաղարթաշատ և պտղալից ծառեր և ծաղկաշատ դաշտեր կը շինէ իւր ճամբուն վերայ, յուսահատ սրտերն՝ երջանկութեան և կենաց զգացմամբ կը կենդանանան, հիւանդներն ու ցաւագարները կը բը-*

ժըշկուին, և ոչ միայն մարմիններն, այլ և վա-
րանեալ և չուարեալ միտքերը կը նորոգուին։ Յի-
սուս՝ աւերակ և լքեալ սիրտերու և հոգիներու
այնպիսի անբացատրելի սփոփանք կուտայ թէ՛
քաղաքներու և թէ՛ գիւղերու մէջ առհասարակ՝
որ թշուառութիւնը չը կրնար ստնանել նոյն իսկ
թշուառ համարուած մարդոց։ Անոր խօսքերը
լսող աղքատն՝ որ հիւղ մ՚ունի, հոյակապ պա-
րաններու մէջ բնակող և երջանիկ կարծուած
մարդոցմէ աւելի ուրախ է. Քրիստոսի խօսքն է
այդ յեղափոխութիւնը գործողն՝ որ ոչ միայն
կեանքը չը սիրէ, այլ և գերեզմանէն անգամ չի
վախնայ. զի կը հաւատայ՝ որ գերեզմանն իր
առժամանակեայ տառապանաց վախճանն է, և
համոզուած լինելով՝ թէ իր կրածները մշակին
իր թոշակը լիապէս ընդունելու համար թափած
քրտինքէն տարբեր բաներ չեն, վստահ է վար-
ձատրողին առատաձեռնութեան վրայ։ Այն
վեհ գիտակցութիւնն ունի՝ թէ աշխարհիս մէջ
ունեցած իր աշխատութիւնը՝ միմիայն իրեն
համար է։

Աստուծոյ արքայութեան աւետարանը կը
քարոզէր Յիսուս։ Ո՛վ սէր և գութ աստուա-
ծային. Ի՞նչ կ՚ըզգար Յիսուս, երբ այդ բազ-
մութիւնը տեսաւ, այդ տառապեալ ժողովուր-
դը մխիթարեց։ Աւետարանը կարճ կը խօսի.
տեսաւ ու գթաց կ՚ըսէ, վասն զի հովիւ չունե-
ցող ոչխարներու պէս յոգնած և ցրուած էին.
ինչպէս անհովիւ խեղճ ոչխարները ուսարարտ
մարդադեսիններն և կենդանի ջրոց վտակներն
անձամբ անձին չեն կարող գտնել, այլ լեռնէ
լեռ ձորէ ձոր թափառելով մերթ գիշատիչ գա-

զաններու որս կ'ըլլան, մերթ գահավիժութեանց վտանգներու կ'ենթարկլին, մերթ արևակէզ ջերմութենէ փրփրալից կը տառապին, ոչ մէկն ունին՝ որ իրենց ծարաւն անցունելու ջրոյն և խորշակէ պատսպարուելու հովանւոյն առաջնորդէ կարեկցաբար. այսպէս այդ անհամար ժողովուրդըն յոգնած և ընկճած էր՝ զուրկ 'ի ճշմարիտ հովուաց. անոնք ոչ կենաց բանը մատակարարող և ոչ հոգւոյն վտակներին արբուցանող ճշմարիտ ուսուցիչներ ունէին. այդ ժողովուրդն որս էր միշտ հոգւոյ թշնամի գազանին ճիրաններուն և ժանեաց. Աստուծոյ պաշտպանութեան հովանւոյն առաջնորդող կարեկից հովիւներ չունէր, և իրենց անուանեալ վարդապետներէ՝ կեղծաւոր դպիրներ ու փարիսեցիներ էին, որ վտանգներու, անջուր և անհովանի դաշտերու կ'առաջնորդէին զիրենք. այդ ժողովուրդը վարուք, բարուք, սրտիւք և հոգւովք վատթարացեր էր. ուստի ամենողորմ փրկիչը գթաց անոնց վրայ ու ըսաւ, "Հունձքերը շատցեր են՝ բայց հնձող մշակները խիստ քիչ են", այդ ժողովուրդն Աստուծոյ համար պատրաստուելու տրամադրութիւն ունի. այդ ժողովուրդն՝ Աստուծոյ արքայութեան շտեմարաններու համար պատրաստուած հունձքեր են. Աստուծոյ Հօր աղաչեցէք, որ երկրի արտերէն այդ ժողովուրդն հընձելու համար մշակներ հանէ:

## Բ. Առաքումն աշակերտաց 'ի քարոզութիւն

Եւ կոչեաց առ ինքն զերկոտասանսն, և սկսաւ առաքել զնոսա երկուս երկուս: Մարկ. Զ. 7: Գործակցեաց նո-

ցա՝ և ասէ, 'ի ճանապարհս հեթանոսաց մի՛ երթայցէք, և 'ի քաղաքս սամարացւոց մի՛ մտանիցէք : Այլ երթայք առաւել առ ոչխարսն կորուսեալ տանն Իսրայէլի : Եւ յերթալ երթայցէք՝ քարոզեցէ՛ք և ասացէ՛ք, թէ մերձեալ է արքայութիւն երկնից : Զհիւանդս բժշկեցէ՛ք, զբորոտս սրբեցէ՛ք, զդևս հանէ՛ք. ձրի առէք՝ եւ ձրի՛ տուք : Մատթ : Ժ. 5—8 :

*Յիսուս իւր երկոտասան առաքելոց՝ Աստուծոյ արքայութեան մերձենալը քարոզելու, հիւանդները բժշկելու, բորոտները սրբելու, դևերըն հանելու հրաման և իշխանութիւն տալէն յետոյ՝ սկսաւ զանոնք աստիս անդին ղրկել։ Այս առաջին առաքելութիւնն էր աշակերտաց. պատուէր տուաւ անոնց՝ որ առ ժամանակ մի հեթանոսաց և սամարացւոց չը քարոզեն, վասն զի տակաւին հեթանոսաց դարձին ժամանակն հասած չէր, այլ Իսրայէլի տանը կորուսեալ ոչխարներուն. և այս շնորհաց վարդապետութիւններն և միանգամայն հրաշագործութիւններն՝ ինչպէս որ իրենք ձրի առին, ձրի մատակարարեն ժողովրդեան։*

## Գ. Խրատք՝ առ աշակերտսն

Մի՛ ստանայք ոսկի և մի՛ արծաթ և մի՛ պղինձ 'ի գօտիս ձեր : Մի՛ պարկ 'ի ճանապարհ եւ մի՛ երկուս հանդերձս, մի՛ կօշիկս, մի՛ գաւազան. զի արժանի է մշակն կերակրոյ իւրոյ : Մատթ. Ժ. 9—10 :

*Ոսկի, արծաթ ու պղինձ ձեր կամարներուն մէջ չը դնելին, և բնաւ բանի մը կարօտ չեղող մարդոց պէս՝ երկերկու շապիկ, հանդերձ, ցուպ և կօշիկ մի՛ առնուք, կամ ձեր վրայ, ձեր*

ձեռքն ու ձեր ոտքը գտնուածներէն աւելի բան մի՛ պատրաստէք ձեզի համար. վասն զի դուք՝ որ ժողովրդեան համար կ'աշխատիք, իրաւունք ունիք ձեր պիտոյքը ձեր կերակուրն ընդունելու, դուք անոնց հոգեւոր մշակութեանը կը պարապիք, ուստի անոնք ալ ձեր մարմնոյն հոգը պիտի տանին՝ իբր ձեր վաստակը վարձատրելու համար:

Յո՛ր քաղաք մտանիցէք կամ ՚ի գեւղ, հարցանիջիք՝ թէ ո՞ է ՚ի նմա արժանի եւ անդ լինիջիք՝ մինչեւ ելանիցէք անտի: Եւ իբրեւ մտանիցէք ՚ի տունն, ողջո՛յն տաջիք նմա՝ եւ ասասջիք. ողջոյն տանս այսմիկ: Եթէ իցէ տունն արժանի, եկեսցէ ողջոյնն ձեր ՚ի վերայ նորա. ապա թէ ո՛չ իցէ արժանի, ողջոյնն ձեր առ ձեզ դարձցի: Եւ որ ո՛չ ընդունիցի զձեզ՝ եւ ո՛չ լուիցէ բանից ձերոց, իբրեւ ելանիցէք ՚ի տանէն՝ կամ ՚ի քաղաքէն յայնմանէ, թօթափեսջիք զփոշին յոտից ձերոց: Ամէն ասեմ ձեզ՝ դիւրագոյն լիցի երկրին Սոդոմացւոց եւ Գոմորացւոց յաւուրն դատաստանի, քան քաղաքին այնմիկ: Մատթ. Ժ. 11—15:

Ո՛ր քաղաքը կամ գիւղը մտնէք՝ պարտաւոր էք քննել, թէ ո՛վ է ամենէն բարեպաշտն և ըզձեզ ընդունելու արժանաւորագոյնը, և անոր տունը պիտի մտնէք կերակրուիք. և մինչև քաղաքէն ելած ատեն հոն պիտի մնաք, որպէս զի ձեզ ընդունողները չատաշրջիկ կամ փափկասէր և կամ թեթեւսոլիկ չը կարծեն զձեզ: Ձեզ ընդունողներուն՝ քրիստոնէութեան խաղաղութիւնը նշանակող ողջոյնը տուէք, որպէս զի եթէ արժանի են այն ողջունին՝ խաղաղութեան ողջոյնը հանգչի անոնց վրայ. իսկ երբ անարժան լինին անոնք՝ առ ձեզ դառնայ, այսինքն, ձեր

անոնց նկատմամբ ըրած բարեմաղթութիւնները ձեր վրայ կատարուին. Ձեզ չ՚ընդունող քաղաքներէն ելած ատեննիդ՝ ոտքերնուդ պ·ըշտը կած փոշին թօթուեցէք։ Հրեայք սովոր էին կըռապաշտ երկրէ իրենց երկիրը դարձած ատեն իրենց ոտից փոշին թօթափել՝ պիղծ չի մնալու մոռք. Քրիստոս այս սովորութիւնը յիշելով՝ ըսել կ՚ուզէր՝ թէ այդ գործողութիւնը թո՛ղ նշան համարուի, որ ըստ որում, մեզ չ՚ընդունեցիք՝ մեք և ոչ ձեր քաղքին փոշին կ՚ընդունինք, կամ թէ մեք անպարտ ենք ձեր արիւնէն։ Վա՜յ այն քաղքին՝ որ զձեզ չ՚ընդունիր. Ճշմարիտ կ՚ըսեմ. որ Սոդոմէն ու Գոմորէն աւելի ծանր պիտի ըլլայ անոնց պատասխանատուութիւնը. քանզի անոնք այս աւետարանական լոյսէն զուրկ էին.

Ահաւասիկ ես առաքեմ զձեզ իբրև զոչխարս 'ի մէջ գայլոց. եղերո՛ւք այսուհետև խորագէտք իբրև զօձս և միամիտք իբրև զաղաւնիս։ Մատթ. Ժ. 16։

Անմեղ ոչխարներու պէս թշնամի գայլերու մէջ կը ղրկեմ զձեզ. ասով պատուիրել կ՚ուզէր՝ թէ չը գրգռին բարկութեամբ, ցասմամբ և անհամբերութեամբ, այլ օձի խորագիտութիւնն ու խոհեմութիւնն և աղաւնոյ միամտութիւնն իրարու միացուցած ունենան իրենց վրայ, (օձը գազաններէ կ՚ըզգուշանայ և գլուխը կը պահպանէ վտանգներէ) — Հին եգիպտացւոց խորհրդագրոշմ գրերուն մէջ օձի նշանը խելք և իմաստութիւն կը նշանակէր — և աղաւնւոյ միամտութեամբ և հեզութեամբ՝ հակառակութեան և կռիւներու պատճառ չըտան, և վնաս չեղած

տանն՝ 'ի զուր չը զոհեն ինքզինքնին ։

Զգո՛յշ լինիջիք 'ի մարդկանէ, զի մատնեսցեն զձեզ յատեանս, և 'ի ժողովուրդս իւրեանց տանջեսցեն զձեզ ։ Եւ առաջի դատաւորաց և թագաւորաց տանիցին զձեզ վասն իմ 'ի վկայութիւն նոցա, և հեթանոսաց ։ Մատթ. Ժ. 17-18 ։

*Ամպարիշտ մարդերէն զգո՛յշ կեցէ՛ք, որոնք զձեզ իրենց ատեաններուն և ժողովարաններուն պիտի մատնեն ։ Իսրայել թէպէտ Աստուծոյ որդեգրութեան կոչուած է, բայց դուք երբ նոյա պակասութիւններն երևան հանեք՝ զձեզ զրպարտելով ատեան պիտի քաշեն ։ Արդարներն այս երկրի վրայ նեղութիւններ պիտի կրեն միշտ, բայց զգուշութիւնը ձեռքէ ձգելու չեն, որ որչափ կարելի է՝ փիշտերը քիչ պատահին ։ Հրեշտակները Սոդոմի մէջ դէթ գիշեր մ'ալ չը կըրցին հանգիստ վայելել․ զձեզ ալ պիտի տանջեն ծեծեն իրենց ժողովրդանոցներուն մէջ ։ Հրէայք սովոր էին յանցաւոր համարուածներու ծեծ զարնել սինակոկներու մէջ՝ իբր քառասուն խարազան․ այսպէս վարուեցան Պօղոսի հետ հինգանգամ․ բայց այս գործողութիւնը շուտով կատարելու և քառասունէն աւելի զարկած չըլլալու համար, երեք փոկերով (խայիշ) խարազաններ ունէին, որով տասներեք անգամ զարնելով՝ երեսուն և ինն հարուած տուած կ'ըլլային․ «'ի Հրէից հնգիցս՝ քառասուն միով պակաս առի․ Բ. Կորնթ. ԺԱ. 24 ։ Ուստի անխոհեմ անզգուշութեամբ վտանգներու չը դիմադրաւել պարտք են եկեղեցականաց՝ ըստ յատուկ պատուէրի փրկչին մերոյ․ իսկ Քրիստոսի վկայութեան կամ անոր ճշմարտութիւնը քարոզելու համար՝ ոչ միայն*

ժողովարաններն ու հրէից ատեանները պիտի տանին զձեզ, այլ նեռոններու, հռովմայեցի դատաւորներու, թագաւորներու, հերովդէսներու՝ առաջ, յԵւրոպէ, յԱսիա, յԵգիպտոս, ՚ի Հնդիկս, ՚ի Հայաստան՝ ամեն կողմ պիտի տանին. ահա հո՛ն է ձեր արիութիւնն, այսինքն՝ զՔրիստոս վըկայելուն մէջ։

Այլ յորժամ մատնիցեն զձեզ, մի՛ հոգայցէք՝ թէ որպէս կամ զի՞նչ խօսիցիք. զի տացի ձեզ ՚ի ժամուն յայնմիկ զի՞նչ խօսիցիք։ Զի ո՛չ եթէ դուք իցէք՝ որ խօսիցիքդ, այլ Հոգին Հօր ձերոյ՝ որ խօսի ՚ի ձեզ. Մատթ. Ժ. 19-20։

Դուք բնաւ այդ իշխանութեանց մատնուած ատեններդ մի՛ մտածէք՝ թէ ի՞նչ պիտի խօսիք. թո՛ղ ձեր սիրտն հանդարտ լինի, դուք հասարակ մարդոց պէս՝ թագաւորներու դէմն ելած ատեններդ սարսափ չը պիտի զգաք. երկնի և երկրի թագաւորը ձեր հետն է. դուք փաստաբաններու և պերճախօսութեանց պէտք չունիք. դուք չը պիտի ընէք խօսողը՝ այլ ձեր Հօրն Հոգին է, որ ձեր միտքը բեղմնաւորելով և լուսաւորելով պիտի շարժէ ձեր լեզուն. ա՛ն է ձեզմով խօսողն։ Եւ արդարև այնպէս եղաւ. ձկնորս առաքեալներն՝ աշխարհիս իմաստունները կարկեցուցին, և կայսերաց ու թագաւորաց դահոյքը սասանեցուցին. անոնց լեզուն աստուածային կըրակէ էր, և կրակն Հոգին սուրբ էր. անոնք Աթենայ Արիսպագոսին և Հռովմայ արքունեաց մէջ Աստուծոյ խօսքը քարոզեցին. անոնց պարզ խօսքերուն մէն մի բառը՝ մէկ մէկ յաղթանակ էր աշխարհի իմաստութեան վրայ։

Մատնեսցէ եղբայր զեղբայր ՚ի մահ, և հայր զորդի. և յարիցեն որդիք ՚ի վերայ հարց՝ և սպանանիցեն զնոսա. Եւ եղիջիք ատեցեալք յամենեցունց վասն անուան իմոյ. իսկ որ համբերեսցէ իսպառ՞, նա կեցցէ. Մատթ. Ժ. 21—22 :

Աւետարանի, այսինքն աշխարհի վրայ Աստուծոյ շնորհաց ամենէն դերագոյն բարեաց քարոզուած ժամանակը՝ չար և խաւարի մարդիկ ո՛րչափ պիտի ատեն և պիտի դարշին լոյսէն կամ աւետարանէն. Նոքա իրենց կիրքերը գոհ ընելու համար՝ եղբայրներ, որդիներ, հայրեր, քոյրեր ու մայրեր՝ զիրար պիտի սպաննեն Աստուծոյ Թագաւորութիւնը խափանելու համար. այս պատերազմը սոսկալի պիտի ըլլայ. ձեր ազգականներէն ու եղբայրներէն պիտի մատնուիք, և իմ անուանս համար պիտի անարգեն զձեզ։ Բայց ո՛վ որ մինչև վերջն համբերէ՝ նա պիտի ապրի.

Եւ յորժամ հալածիցեն զձեզ ՚ի քաղաքի յայսմիկ՝ փախիջիք յայլ. և եթէ յայնմանէ հալածիցեն զձեզ՝ փախիջիք ՚ի միւս. ամէն ասեմ ձեզ՝ ո՛չ սպառեսջիք զքաղաքս Իսրայէլի՝ մինչև եկեսցէ որդի մարդոյ. Մատթ. Ժ. 23 :

Զձեզ քաղքէ քաղաք պիտի հալածեն. Դուք խոհեմութեամբ՝ այս քաղքէն հալածուած անոնկից միւսը գացէք, մինչև որդին մարդոյ գայ, այսինքն, մինչև ձեր մահը. այսչափ ժամանակի մէջ Իսրայելի քաղաքները չեն սպառիր, այսինքն միշտ քարոզելու համար նոր քաղաք կը գտնուի։ — Ոմանք «մինչև եկեսցէ որդի մարդոյ» խօսքը՝ Երուսաղեմայ կործանումը կը հասկնան Տիտոսի ձեռօք, և ոմանք ալ. թէ մինչև բոլոր հեթանոսութիւնը Քրիստոսի եկեղեցւոյն աշա-

կերտի — ։

Ո՛չ է աշակերտ առաւել քան զվարդապետ ; և ո՛չ ծառայ քան զՏէր իւր ։ Շատ է աշակերտին՝ եթէ եղիցի իբրև զվարդապետ իւր, և ծառային՝ իբրև զՏէր իւր ․ եթէ զտանուտէրն Բեեղզեբուղ կոչեցին, ո՞րչափ ևս առաւել զընտանիս նորա ։ Մի՛ այսուհետև երկնչիցիք ՚ի նոցանէ ։ Մատթ. Ժ. 24—26 ։

*Աշակերտն իր վարդապետէն գերագոյն չէ ․ բաւ է՝ որ աշակերտն իր վարդապետին և ծառայն իր տիրոջը չափ ըլլայ ։ Եթէ տանը տէրը Բէեղզեբուղ անուանեցին, ա՛լ ընտանեա՞ցն ինչեր չը պիտի ըսեն ։ Բէեղզեբուղ՝ Ակկարոնի ճանճիկ չաստուածոյն մէկ անունն էր ․ հրէայք՝ գըժոխոց ոգիներուն գլխաւորն ու առաջնորդը սատանան այս անունով կը կոչէին ․ զՔրիստոս նախատու համար՝ չ՚ամչցան այս անունով կոչել զնա ։ Դուք մի՛ վախնաք բնաւ անոնցմէ ։*

Զի ոչինչ է ՚ի ծածուկ՝ որ ոչ յայտնեսցի, և գաղտնի՝ որ ոչ ծանիցի ։ Զոր ասեմ ձեզ ՚ի խաւարի՝ ասացէ՛ք ՚ի լոյս ․ և զոր լուէք յականջս՝ քարոզեցէ՛ք ՚ի վերայ տանեաց ։ Մատթ. Ժ. 26—27 ․

*Չկայ ծածուկ՝ որ չը յայտնուի, և գաղտնի՝ որ երևան չելլայ ․ անոնց բոլոր ձեր համար ըսածներուն արժէքը յետոյ պիտի իմացուի ․ ինչ որ ըսեն, ինչ որ ընեն հիմայ՝ ժամանակը պիտի դատէ զանոնք, և անոնց այժմու բարեպաշտութեան, օրինաց նախանձախնդրութեան և ազգասիրութեան տակ ծածկուած չարութիւններն, որոնցմով զձեզ իբրև անկրօն, ապստամբ և ազգին վնասակար մարդիկ պիտի բամբասեն, հա-*

լածեն և չարչարեն, պիտի յայտնուին բնաւին. դուք մի՛ վախնաք, ժամանակը և ապագայն անոնց վրայ դատաստան ընելով անոնց իր արդար վճիռը պիտի տայ։ Դուք Աստուծոյ Բանը քարոզելու մի՛ վախնաք. առանձին ինծմէ լսածնիդ՝ հրապարակաւ, մութ տեղը լսածնիդ՝ լուսոյ մէջ, ականջէ ականջ մէկզմէկէ լսածնիդ՝ տանեաց վրայ քարոզեցէք. (Ասիոյ մէջ մունետիկները՝ տանեաց վրայէն կը ծանուցանէին բարձր ձայնով)։ Ես առակօք խօսեցայ՝ դուք պարզելով պիտի ուսուցանէք։

Եւ մի՛ երկնչիք յայնցանէ՝ որ սպանանեն զմարմին, եւ զոգի ո՛չ կարեն սպանանել, այլ, երկերուք դուք առաւել յայնմանէ՝ որ կարող է զոգի և զմարմին կորուսանել ՚ի գեհենի։ Ո՞չ ապաքէն երկու ճնճղուկք դանկի միոջ վաճառին, և մի ՚ի նոցանէ յերկիր ո՛չ անկցի առանց Հօր ձերոյ։ Այլ ձեր և ամենայն հեր գլխոյ թուեալ է։ Եւ արդ՝ մի՛ երկնչիցիք զի լաւ էք քան զբազում ճնճղուկս։ Ամենայն որ խոստովանեսցի յիս առաջի մարդկան, ՙխոստովանեցայց և ես զնմանէ առաջի Հօր իմոյ որ յերկինսն է։ Եւ որ ուրասցի զիս առաջի մարդկան, ուրացայց և ես զնա առաջի Հօր իմոյ որ յերկինսն է։ Մտթ. Ժ. 28—33։ Ղուկ. ԺԲ. 4—9։

Միայն ձեր մարմինը սպաննելու կարողութիւն ունեցողներէն մի՛ վախնաք. մարմնաւոր մահն աննշան բան մ'է, սակայն ձեր հոգին ու մարմինը միանգամայն մահացնելու կարողէն վախցէք։ Աստուծոյ բարկութենէն միայն սոսկացէք։ Ճնճղուկներն՝ որոյ երկուքը մէկ դանկի (փող) կը ծախուին, այնչափ աննշան արարածներն անգամ առանց ձեր երկնաւոր Հօրը հրամանին գետին չեն իյնար։ Գիտցէք, որ դուք Թանկագին

էք Աստուծոյ առջև, ձեր և ոչ մէկ մազը պիտի կորսուի՝ որ համրանքի տակ է, յայտնի է Աստուծոյ՝ որ պիտի հոգայ զձեզ։ Ուրեմն արիութեամբ հոգւոյ և սրտի խոստովանեցէք զիս մարդոց առջև և մի՛ վախնաք. ազնիւ համարձակութեամբ քարոզեցէք իմ աւետարանս, Աստուծոյ արքայութեան ճանապարհը ցուցուցէք։ Այսպէս զիս խոստովանողներն ես ալ պիտի խոստովանիմ երկինքը Հօրս առջև, զանոնք պիտի ընդունիմ և ներկայացնեմ Հօրս՝ իբրև իմ արեամբ փրկեալներն, իբրև արքայութեան ժառանգորդներն ու գոհարներն. իսկ զանոնք՝ որ առ ահի առ աշխարհասիրութեան և չողոքորթութեան և զանազան պատճառաւ զիս կ'ուրանան մարդոց առջև, ես ալ զանոնք պիտի ուրանամ Հօրս և երկնից հրեշտակաց առջև։

Մի՛ համարիք եթէ եկի արկանել խաղաղութիւն յերկիր. ո՛չ եկի արկանել խաղաղութիւն, այլ սուր։ Քանզի եկի քակել զայր ՚ի հօրէ իւրմէ, և զդուստր ՚ի մօրէ իւրմէ, և զհարսն ՚ի սկեսրէ իւրմէ։ Եւ թշնամիք առն ընտանիք իւր։ Որ սիրէ զհայր կամ զմայր առաւել քան զիս՝ ո՛չ է ինձ արժանի. և որ սիրէ զուստր կամ զդուստր առաւել քան զիս՝ չէ ինձ արժանի։ Եւ որ ո՛չ առնու զխաչ իւր՝ և գայ զհետ իմ, չէ ինձ արժանի։ Որ գտանէ զանձն իւր, կորուսցէ զնա՝ և որ կորուսցէ զանձն իւր վասն իմ, գտցէ զնա։ Որ ընդունի զձեզ՝ զիս ընդունի, և որ զիս ընդունի՝ ընդունի զառաքիչն իմ։ Որ ընդունի զմարգարէ յանուն մարգարէի՝ զվարձս մարգարէի առցէ. և որ ընդունի զարդար յանուն արդարոյ՝ զվարձս արդարոյ առցէ։ Եւ որ արբուսցէ միում ՚ի փոքրկանցս յայսցանէ բաժակ մի ջուր ցուրտ միայն՝ յանուն աշակերտի, ամէն ասեմ ձեզ, ո՛չ կորուսցէ զվարձս իւր։ Եւ եղեւ իբրեւ կատարեաց Յիսուս զպատուէր երկոտասան-

նէց աշակերտացն խօսից , գնալ առնուլ զխաչն եւ ստորոտա-նել 'ի տաղտա նոցա : Մտթ. Ժ. 34–42 : ԺԱ. 1 :

Իմ անունանս, իմ քարոզած ճշմարտութեանս համար՝ իմ խօսքերս չընդունող մարդիկ այնչափ պիտի մաքառին և հակառակին իմ խօսքերս ընդունողներուն և ինծի հաւատացողներուն. և այնչափ պիտի պատերազմին, որ այս երկուններուն համար աշխարհի վրայ սուր ձգելու եկած պիտի համարեն զիս, զիս՝ որ թագաւոր եմ խաղաղութեան, փրկութեան և հաշտութեան. և ինչպէս որ առաջ ըսի, կերպով մը պատճառ պիտի համարեն զիս՝ որդին իւր հօրէն, աղջիկն իւր մօրմէն, հարսն իւր սկեսրէն զատուելուն. վասն զի ինծի չը հաւատացողներն հաւատացողաց դէմ պատերազմ պիտի բանան, մինչև անգամ ամբողջ ընտանիքը՝ հաւատքի համար, մէկ մարդու համար թշնամի պիտի ըլլան: Դուք այդ թշնամութիւններէն ու կռիւներէն ալ չը պիտի վախնաք. երբ ձեր հայրը, մայրը, կինը, քոյրերն ու որդիքը ինծի համար զձեզ ատեն՝ դուք զանոնք ինձմէ աւելի չը պիտի սիրէք. այո՛, ամէն բանի մէջ պարտաւոր էք սիրել զանոնք, բայց ոչ Քրիստոսէ աւելի. բուն սէրը՝ Քրիստոս է. դուք Քրիստոսով պիտի սիրէք զամէնքը և ոչ առանց Քրիստոսի. եթէ ինձմէ աւելի զանոնք սիրէք՝ ինծի արժանի չէք. առաւել Աստուծոյ քան մարդկան հնազանդ պիտի ըլլաք: Դուք մինչև որ ձեր խաչը չառնուք և իմ ետևէս չը գաք՝ ինծի արժանի չէք.—Այս չարչարանաց և մահու գործին՝ որ երկու անտաշ փայտերէ կերտուած էր, մահապարտին ուսը կը բեռցնէին

մինչև խաչելութեան տեղին տանելու. — Ձեր բարոյական խաչը, այսինքն Քրիստոսի հնազանդելու համար ձեր ամէն կրելիք ձանրութիւն ու նեղութիւն համբերութեամբ տանելու էք. Քրիստոսի գնացած ճամբէն, այսինքն, ամէն նեղութեանց անտրտունջ համբերելով ինձ հետևելու էք մինչև երկինք: Իսկ այս տառապանքը չը կրելու համար զիս ուրացողը, այսինքն, աշխարհի վրայ զիս թողլով՝ իւր անձը կամ իւր անցաւոր կեանքը գտնողը՝ բուն իւր անձը կամ կեանքը պիտի կորուսանէ. բայց ո՛վ որ ինձ համար իւր աշխարհային կեանքը կորուսնէ՝ յաւիտենականութեան մէջ պիտի գտնէ անշուշտ մի և նոյն կեանքն յաւէտ երջանիկ։ Ձեր այս հալածանաց և նեղութեանց մէջ զձեզ ընդունողները, ձեզի օգնողներն ու պատսպարողները ձեզ ընդունելով զիս ընդունած պիտի ըլլան. և զիս ընդունողն ալ՝ զՀայրն իմ, յորմէ անբաժանելի եմ աստուածութեամբ. այս՝ զԱստուածութիւնն գլխովին ընդունած պիտի լինի. զձեզ իբրև մարգարէ կամ իբրև պատգամաբեր Աստուծոյ և կամ իբրև արդար ընդունողը՝ բուն մարգարէի կամ արդարոյ վարձք պիտի ստանայ Աստուծոյ անհուն առատութենէն. այդ՝ ձեր քարոզութեանց առեն, իբրև իմ աշակերտացս՝ ձեզի մինչև իսկ գաւաթ մը պաղ ջուր տուողը՝ բնաւ իւր վարձքը չը պիտի կորուսանէ: Երբ Յիսուս այս պատուէրներն իւր առաքելոց աւանդեց լմնցուց՝ կափառնաումայ սահմանակից քաղաքները քարոզելու համար ճամբայ ելաւ:



տէն 'ի փեբրուարի ։ Մրկ. Զ. 19—29 ։ Ն– եկեալ զատոծ–ցէն Յիսուսի . Մտթ. ԺԴ. 6—12 ։

Թէ Յովհաննէս ի՞նչպէս գլխատուեցաւ՝ այս տեղ Աւետարանիչները կը պատմեն ։ Հերովդէս Անթիպաս՝ արաբաց Արետ թագաւորին աղջկան հետ ամուսնացած էր, երբ իւր եղբօրը Հերովդեան փիլիպպոսի կնոջ Հերովդիայի սիրահարեցաւ ։ Այս Հերովդիան դարձեալ մեծին Հերովդէսի Արիստաբուղոս որդւոյն աղջիկն էր . Անթիպաս զՀերովդիան առնելու համար եղբօրմէն յափշտակեց զանի, և արաբացւոց թագաւորին աղջիկն, այսինքն՝ բուն իւր կինն արձակեց ։

Անապատի ճշմարտութեան ձայնն Յովհաննէս՝ համարձակութեամբ արքունեաց մէջն ալ խօսելի կ'ըլլար . և այս Անթիպաս՝ որ հօրը չափ չար մարդ չէր, Յովհաննէսի ձայնին քաղցրութեամբ մտիկ կ'ընէր, և նորա պատուէրները մեծ մասամբ կը կատարէր . քանզի սուրբ և արդար մարդ մի կը ճանչէր զՅովհաննէս, և երկիւղ ունէր անկէ ։ Բայց Հերովդիա ոխ պահած էր Յովհաննէսին դէմ, վասն զի սա՝ այդ ամուսնութիւնն արժան չէր դատած, և Հերովդէսի ըսած էր . "Ոչ է արժան քեզ առնուլ զկին եղբօր քո" . անոր համար բանտը դնել տուած էր զանի . թէև Հերովդէս Անթիպաս "սպասէր նմա", զգուշութեամբ կը պահէր զանի իւր բնակած Մաքերունդ ըսուած մեծաշէն դղեկին մէջ՝ որ Մեռեալ ծովուն եղերքը ժայռերու վրայ շինուած էր ։

Հերովդիայի Յովհաննու դէմ ոխութիւնը հետզհետէ կը սաստկանայր այնչափ՝ որչափ որ իւր Հերովդէսի նկատմամբ ունեցած տռփանքը կը

վայրանար ։ յարմար առիթ մը կը փնտռէր վրէժ լուծելու, զի Յովհաննու այն աստուածային լեզուն անշուշտ բանտերու և շղթայից մէջէն ալ կ՚որոտար, մինչ դժոխոց հուրը՝ ծառին արմատին քով կեցած տապարն և որոմը ցորենէն զատող հեծանոցին մաքրելը սպառնալով ։

Յարմար ժամանակն եկաւ ։ Հերովդէս Անթիպաս իւր ծննդեան տարեդարձը կը կատարէր, և հարկաւ մեծածախ խնջոյք, ընթրիք, զեղխութիւն և անպարկեշտ ներկայացմունք տեղի ունեցան այն մեծահաց կոչունքին մէջ, որ ամենայն նախարարք պալատանն, մեծամեծք և հազարապետք Գալիլիացւոց ներկայ էին ։ Գինւոյ բաժակները պարպուած և նուագարանաց ներդաշնակութիւնները հնչած ատեն՝ աղջկունք ալ անշուշտ հրաւիրուեցան պարելու խնջոյից փայլն աւելցնելու համար . ատոնց հետ նաև եկաւ պարել Հերովդիայի Փիլիպպոսէն ունեցած Սաղոմէ աղջիկը . որ անտարակոյս մօրը պէս գեղեցիկ և մօրը չափ հաճոյանալու փառանդալից արուեստն ու հրապոյրը կանուխ սորված էր ։

Թագաւորն և բազմականք շատ հաւնեցան աղջկան գեղեցիկ կերպարանքին . և աշխարհի անուանական երջանկութեան վայրկենի մը մէջ յափշտակուած՝ իմաստութիւնն ու խոհեմութեան առողջ դատումը մէկդի թողուց Անթիպաս, և Սաղոմէի լիրբ գեղեցկութենէն և լկտի շարժուածքէն խելքը գլխէն թռաւ, և այն անզսպելի գինով յիմարութեան միջոցին ըսաւ, թէ «Սաղոմէի գեղը մեծ արժէք ունի, և այնքան թանկագին է՝ որ թագաւորութեանս կէսն անգամ կ՚արժէ» ։ Թէ և թագաւորութիւնն

իւրը չէր , այլ Հռովմայեցւոց , և չէր կարող իւրը չեղած բանը ուրիշին շնորհել ։ «Սուտի՝ ըսաւ , խնդրէ յինէն՝ ինչ որ կուզես , և պիտի տամ քեզի ․ և այս աղջկան խնդիրն ինչ որ ալ լինէր ․ մինչև իսկ թագաւորութեան կէսն ալ ուզէր , անպատճառ կատարելու համար ունեցած մտադրութիւնը բազում անգամ երդմամբ հաստատեց ։

Աղջիկն անշուշտ կանխաւ մօրմէն խրատուած՝ որ այսպիսի պարագայի մը մէջ իրեն դիմէ ․ մօրմէն այս չար խրատն առաւ , թէ Յովհաննու Մկրտչին գլուխն ուզէ ։ Ո՜հ , ի՜նչ զօրաւոր է Յովհաննու Մկրտչի ձայնը, ճշմարտութեան ձայնըն , որ բանտին խորերէն ալ կը յանդիմանէր անշուշտ , և Հերովդէսի կենաց փուշն էր՝ նորա հեշտութեանց արգելքը , նորա երևակայութեան ճիւաղը ։ Ի՞նչ զօրաւոր և թափանցիկ է այդ ձայնը , զոր մէյ մ՚ալ չը լսելու համար Հերովդիա՝ կէս թագաւորութիւն ստանալէ աւելի մեծ շնորհ կը համարի զայդ ձայնը լռեցընելն , այդ աստուածային և ճշմարտախօս բերանը գոցելն ․ բայց չը գիտէ , թէ Յովհաննէս՝ միջոց մ՚ է , ձայն մը ճշմարտութեան՝ որոյ վրայ լեռներ ալ դիզես՝ դարձեալ հրաբուղխի պէս ժայթքելով կը պատռտէ և դուրս կը պոռթկայ ։ Սակայն սխալութիւնն ո՜րչափ կը նուաստացնէ , և ո՜րչափ անկարեկիր և անգութ կ՚ընէ զմարդ ․ մինչև անմեղը զոհել , որպէս զի մեղաւորն իւր կիրքը համարձակ պաշտէ ։

Կը մտնէ աղջիկը ներս , և չոր ցուրտ ձայնով “Տո՛ւր , կ՚ըսէ ․ այս սկտեղ վրայ Յովհաննու Մկրտչի գլուխը , և փաղփաղակի , հիմայ , չու-

տալ»․ չ'ըլլայ որ Անթիպաս խղճմտանք ընէ՝ գիտաւորութիւնը կորուսանել․ ժամանակն էր, նորա այն յափշտակութեան վայրկենէն օգուտ քաղելու էր։ Ո՜հ, ո՛րչափ թշուառ են աշխարհի մեծամեծք․ վասն զի չարիք գործելու և իրենց կիրքը գոհ ընելու շատ միջոցներ ունին իրենց ձեռքն․ և ասոնց հետ բաղդատելով՝ անզօր, տկար և խեղճ մարդիկ ո՛րչափ երջանիկ են՝ որ միջոց չունին իրենց յօժարած չարութիւններն ՚ի գործ դնելու։

Տրտմեցաւ թագաւորը․ «Ուրախութիւնն ՚ի սուգ գայ», կ'ըսէ Սողոմոն․ Առակք ԺԴ․ 13։ Սակայն անզուսպ կիրքը զմտաց լոյսը կը խաւարեցնէ, զգայարանք առանց բանին կշռոյն՝ զմարդ կը յիմարեցնեն։ Տրտմեցաւ թագաւորը․ բայց իւր երդմանցն համար, այն ալ ոչ թէ Աստուծմէ, հապա առ ամօթոյ ՚ի բազմականացն, և որպէս զի իբրև երդմնազանց և իբրև խեղճ ընող մարդ ծաղու ծանակ չ'ըլլայ այն հանդիսականներէն, որոնք այս աւուր աշխարհի մարդոց մէկ մասին պէս կը ծաղրեն ամէն կրօնական և սուրբ զգացմունք, զրկեց դահիճը բանտին խորշը, և Յովհաննու գլուխը բերել տասկտեղը, աղջկան յանձնեց՝ որ դայն իւր մօրը տարաւ։ Յագեցա՞ւ այս նոր Յեզաբէլն, արդարոյն, այս նոր Աբէլի արիւնէն, սիրտը հանգչեցա՞ւ ․․․ չեմ կարծեր․ խղճմտանաց որդն առաւել չարչարեց զինքը, իւր դժոխային երևակայութիւնն առաւել խանգարեցաւ․ նա գիշերըն իւր քունը ու ցերեկն իւր զուարթութիւնը կորսնցուց անշուշտ․ Յովհաննու կտրած գլուխը քանի՞ հազար անգամ արդեօք նորա երևակայու-

խուլը չէր , այլ Հռովմայեցւոց , և չէր կարող խուլը չեղած բանը ուրիշին շնորհել ։ « Աւանի ՝ ըսաւ , խնդրէ յինէն ՝ ինչ որ կուզես , և պիտի տամ քեզի ․ և այս աղջկան խնդիրն ինչ որ ալ լինէր ․ մինչև իսկ Թագաւորութեան կէսն ալ ուզէր , անպատճառ կատարելու համար ունեցած միտադրութիւնը բազում անգամ երդմամբ հաստատեց ։

Աղջիկն անշուշտ կանխաւ մօրմէն խրատուած՝ որ այսպիսի պարագայի մը մէջ իրեն դիմէ , մօրմէն այս չար խրատն առաւ , թէ Յովհաննու Մկրտչին գլուխն ուզէ ։ Ո՜հ , ի՜նչ զօրաւոր է Յովհաննու Մկրտչի ձայնը, ճշմարտութեան ձայնըն , որ բանտին խորերէն ալ կը յանդիմանէր անշուշտ , և Հերովդիայի կենաց փուշն էր՝ նորա հեշտութեանց արգելքը , նորա երևակայութեան ճիւաղը ։ Ի՞նչ զօրաւոր և թափանցիկ է այդ ձայնը , զոր մէյ մ'ալ չը լսելու համար Հերովդիա՝ կէս թագաւորութիւն ստանալէ աւելի մեծ շնորհ կը համարի զայդ ձայնը լռեցընելը , այդ աստուածային և ճշմարտախօս բերանը գոցելը ․ բայց չը գիտէ , թէ Յովհաննէս՝ միջոց մ'է ․ ձայն մը ճշմարտութեան՝ որոյ վրայ լեռներ ալ դիզես՝ դարձեալ հրաբուղխի պէս ժայռերը կը պատռէ և դուրս կը պոռթկայ ։ Սակայն սխակալութիւնն ո՞րչափ կը նուաստացնէ , և ո՞րչափ անկարեկիր և անգութ կ'ընէ զմարդ ․ մինչև անմեղը զոհել , որպէս զի մեղաւորն իւր կիրքը համարձակ պաշտէ ։

Կը մտնէ աղջիկը ներս , և չոր ցուրտ ձայնով "Տո՛ւր , կ'ըսէ ․ այս սկուտեղ վրայ Յովհաննու Մկրտչի գլուխը , և փաղփաղակի , հիմայ , շու-

տով»․ չ՛ըլլայ որ Անթիպաս խղճմտանք ընէ՝ գի-
տաւորութիւնը կորուսանէ․ ժամանակն էր, նո-
րա այն յափշտակութեան վայրկեանէն օգուտ քա-
ղելու էր։ Ո՛հ, ո՜րչափ թշուառ են աշխարհի
մեծամեծք․ վասն զի չարիք գործելու և իրենց
կիրքը գո՛հ ընելու շատ միջոցներ ունին իրենց
ձեռքն․ և սոցնց հետ բաղդատելով անզօր,
ակար և խեղճ մարդիկ ո՜րչափ երջանիկ են՝ որ
միջոց չունին իրենց յօժարած չարութիւններն
՚ի գործ դնելու։

Տրտմեցաւ թագաւորը․ «Ուրախութիւնն ՚ի
սուգ դայ» կ՛ըսէ Սողոմոն․ Առակք․ ԺԴ․ 13։
Սակայն անզուսպ կիրքը զմտաց լոյսը կը խա-
ւարեցնէ, զգայարանք առանց բանին կշռոյն՝
զմարդ կը յիմարեցնեն։ Տրտմեցաւ թագաւորը․
բայց իւր երդմանցն համար, այն ալ ոչ թէ Աս-
տուծմէ, հապա առ ամօթոյ ՚ի բազմականացն,
և որպէս զի իբրև երդմնազանց և իբրև խիղճ
ընող մարդ ծաղու ծանակ չ՛ըլլայ այն հանդի-
սականներէն, որոնք այս աւուր աշխարհի մար-
դոց մէկ մասին պէս կը ծաղրեն ամէն կրօնական
և սուրբ զգացմունք, զրկեց դահիճը բանտին
խորշը, և Յովհաննու գլուխը բերել տուաւ
սկտեղը, աղջկան յանձնեց՝ որ զայն իւր մօրը
տարաւ։ Յագեցա՞ւ այս Նոր Յեզաբէլն, արդա-
րոյն, այս Նոր Աբէլի արիւնէն, սիրտը հանդչե-
ցա՞ւ․․․ չեմ կարծեր․ խղճմտանաց որդն առա-
ւել չարչարարեց զինքը, իւր դժոխային երևա-
կայութիւնն առաւել խանդարեցաւ․ Նա գիշե-
րըն իւր քունը ու ցերեկն իւր զուարթութիւնը
կորանցուց անշուշտ․ Յովհաննու կտրած գլուխը
քանի՞ հազար անգամ արդեօք նորա երևակայու-

թեանը ներկայացաւ, քանի՛ անգամ նորա մազերը անկուեցան և ոսկորներն ու մարմինը քըրտմընեցան....։

Բայց Հերովդէս Անթիպաս՝ արաբացւոց Թագաւորին հետ պատերազմելով յաղթուեցաւ, և ժողովուրդը վճռեց թէ՝ արդարոյն արեան պատժապարտ վրէժն լինելու, ինչպէս կը պատմէ Յովսեպոս.

Յեսոյ աշակերտներն իրենց վարդապետին մահը լսելով եկան մարմինը վերուցին, գերեզմանի մէջ թաղեցին, ու գնացին Յիսուսի պատմեցին։

Յովհաննէս Մկրտիչ՝ Հերովդէսի զՀերովդիան կին առնելու ըղձիցը դէմ իր ցոյց տուած ընդդիմութիւնը՝ Ղևտական օրինաց սա՛ պարբերութեան վրայ յեցուցած էր. "Զառականս կնոջ եղբօր քո մի՛ յայտնեսցես. ԺԸ. 16. Հերովդի համար կ'ըսեն, թէ Սադուկեցւոց աղանդէն էր. վասն զի ինքն ալ նոյն աղանդաւորաց պէս «Զի՛ք յարութիւն» կը դաւանէր։

Եւ ելեալ շրջէին (առաքեալքն) ընդ գաւառս և ընդ գիւղս՝ աւետարանէին, եւ բժշկէին ընդ ամենայն տեղիս։ Ղուկ. Թ 6. Եւ ելեալ քարոզէին զի ապաշխարեսցեն. Եւ դևս բազումս հանէին. և օծանէին իւղով զբազում հիւանդս՝ և բժշկէին զնոսա : Մրկ. Զ. 12—13.

Առաքեալներ՝ իրենց վարդապետէն հրաման և իշխանութիւն առնելով՝ այնուհետև սկսան ամէն քաղաք ու գիւղ շրջել, և իրենց իշխանութիւնն 'ի գործ դնել հաւատոց յաջողութեամբ՝ ոմանց ձեռք դնելով, և ոմանս իւղով օծելով։

### Բ. Լսել Հերովդի զՅիսուսէ .

Լուաւ Հերովդէս չորրորդապետ զգործսն ամենայն . և զարմանայր վասն ասելոյն յոմանց : Թէ Յովհաննէս յարեաւ 'ի մեռելոց , և յոմանց՝ թէ Եղիա յայտնեցաւ , և այլոց՝ թէ մարգարէ ոմն յառաջնոցն յարեաւ : Ասէ Հերովդէս . զՅովհաննէս ես գլխատեցի . իսկ սա ո՞վ իցէ՝ զորմէ զայսպիսիս ես լսեմ . և խնդրէր տեսանել զնա : Ղուկ. Թ. 7—9 : Նա ասէր (Հերովդէս) , թէ Յովհաննէս մկրտիչ յարեաւ 'ի մեռելոց , եւ վասն այնորիկ զօրութիւնք լինին նովաւ . Մրկ. Զ. 14 :

*Երբ Հերովդէս լսեց , թէ մէկը կայ՝ որ զարմանալի հրաշագործութիւններ կ'ընէ , մեռելոց յարութիւն կուտայ , կոյրեր կը բժշկէ և այլն , և թէ ոմանք « Եղիա է » կ'ըսեն , ոմանք « Նախկին մարգարէներէն մէկն է » կըսեն , ինքը յայն կարծիս հակամիտեցաւ , ըստ ասելոյ ոմանց , թէ Յովհաննէս Մկրտիչն ըլլալու է նա՝ որ կենդանացած է 'ի մեռելութենէ , և թէ նա է՝ որ այդ սքանչելիքը կը գործէ : Եւ կը վախնար , թէ նա ո՛և է կերպով ընդդէմ իւր անիրաւութեան բողոք կը բառնայ , եւ իւր գլխատման վրէժը կ'առնու . ասոր համար կ'ուզէր և շատ կը փափաքէր զանի տեսնել՝ հաւաստելու համար , թէ իւր սպանածն է թէ ոչ : Կը կասկածէր նաեւ . թէ գուցէ նորէն գայ զինքը յանդիմանելու իւր անառակ գործոցն համար :*

### Գ. Դարձ առաքելոցն 'ի Քարոզութենէ .

Դարձան առաքեալքն , և պատմեցին նմա զամենայն զոր

առաքեալքն · Եւ առեալ զնոսա՝ խուսեաց առանձինն 'ի տեղի անապատ քաղաքի միոյ, որում անուն էր Բեթսայիդա : Ղուկ. Թ. 10 : Եւ ասէ ցնոսա Յիսուս · եկա՛յք դուք առանձինն յանապատ տեղի, և հանգիջիք սակաւ մի · զի էին բազումք որ երթային և գային, և հաց անգամ չժամանէին ուտել : Եւ գնացին նաւաւ յանապատ տեղի առանձինն : Մարկ. Զ. 31—32 :

*Առաքեալներն իրենց առաջին փորձերուն մէջ յաջողուած՝ դարձան, և իրենց բոլոր ըրածները Քրիստոսի պատմեցին : Յիսուս այս առաջին քարոզութիւնը գէթ առ ժամն բաւ համարելով, և տեսնելով՝ որ թէ՛ ինքն և թէ՛ իր աշակերտները հանգստեան պէտք ունէին՝ առանձին անապատ տեղ մը քաշուեցաւ, զի այնքան բազմութիւն կը խռնէր նոցա շուրջն՝ որ հաց ուտելու անգամ միջոց չունէին :*

## Դ. Կերակրել հինգ հազարացն 'ի հնգից նկանակաց·

Եւ տեսին զնոսա զի երթային, և զգացին բազումք, և հետի յամենայն քաղաքաց խուռն ընթանային անդր, եւ մերձենային առ նոսա : Եւ ելեալ ետես ամբոխ բազում, եւ գթացաւ 'ի նոսա . . . . . և սկսաւ ուսուցանել զնոսա յոյժ : Եւ իբրեւ բազում ժամ եղեւ, մատուցեալ աշակերտքն ասէին · տեղիս անապատ է, մինչդեռ աւուր կայ, արձակեա՛ զժողովուրդդ, զի երթեալ շուրջ յագարակս և 'ի գեօղս՝ գնեսցեն իւրեանց զինչ ուտիցեն, զի ոչ ուտել ինչ ո՛չ ունին. Մարկ. Զ. 33—36 : Ասէ (Յիսուս) ցՓիլիպպոս · ուստի՞ գնեսցուք հաց՝ զի կերիցեն դոքա : Զայս ասէր փորձելով զնա · այլ ինքն գիտէր զինչ առնելոցն էր : Պատասխանի ետ նմա Փիլիպպոս · երկերիւր դահեկանի հաց չ'է դոցա բաւական. Թէպէտ և իւրաքանչիւր ոք սակաւ ինչ առնուցու : Ասէ ցնա մի յաշակերտացն նորա Անդրէաս՝

եղբայր Սիմոնի Պետրոսի · Է՛ աստ՝ պատանեակ մի , որ ունի հինգ նկանակ գարեղէնս՝ և երկուս ձկունս · այլ այն զի՞նչ է առ այսչափ մարդիկ · Յովհ. Զ. 5—9 ։ Եւ ասէ ցնոսա · Բերէ՛ք այսր զայն ։ Եւ հրամայեաց բազմեցուցանել զժողովուրդն ՚ի վերայ խոտոյ · և առեալ զհինգ նկանակսն և զերկուս ձկունսն՝ հայեցաւ յերկինս , օրհնեաց և եբեկ՝ և ետ աշակերտացն զնկանակսն , և աշակերտքն ժողովրդոցն ։ Եկեր ամենեքեան՝ և յագեցան , և բարձին զնշխարս կոտորոցն երկոտասան սակառի լի ։ Եւ որք կերանն՝ էին արք իբրև հինգ հազար · թո՛ղ զկանայս և զմանկտի · Մատթ. ԺԴ. 18—21 ։ Իսկ մարդիկն իբրև տեսին զնշան զոր արար՝ ասէին , եթէ սա՛ է ճշմարիտ մարգարէն , որ գալոց էր յաշխարհ ։ Յովհ. Զ. 14 ։

*Երբ ժողովուրդը տեսաւ՝ որ Յիսուս և իր աշակերտները կը մեկնին գրեթէ ծածկապէս իրենց ընթերակայութենէն, հասկցաւ՝ որ կը փախչին · ուստի բազմութեամբ անոնց ետևէն գացին քալելով և գտան զանոնք ։ Յիսուս գթաց անոնց · Նախ անոնց հոգին կենաց հացիւը կշտացուց , և ապա տեսնելով ու զգալով՝ թէ նոցա մարմինն ալ մարմնոյ հացի կարօտութիւն ունի , սակաւ ինչ հացի և ձկանց վրայ կատարեց զայդ հրաշագործութիւնն՝ հասկցնելու համար , թէ ինքն է տէր երկնի և երկրի , ծովու և ցամաքի · քանզի իր արարչագործ ձեռաց մէջ հացերն ու ձկները կը բազմանային ։ Հինգ հազար անձինք , բաց ՚ի մանկտւոյ և ՚ի կանանց , վերջապէս հաւատացին և խոստովանեցան՝ որ նա է աշխարհի փրկութեան համար գալիք Մեսիայն կամ մարգարէից գերագոյնը ։*

Յիսուս իբրև գիտաց եթէ գալոց են յափշտակել զնա ,

զի արասցեն զնա թագաւոր, գնաց դարձեալ 'ի լեառն միայն. Յովհ. Զ. 15 : Եւ նոյն ժամայն ստիպեաց զաշակերտսն մտանել 'ի նաւ, և յառաջագոյն քան զնա երթալ յայնկոյս 'ի Բեթսայիդա, մինչ ինքն զժողովուրդն արձակէր : Եւ հրաժարեալ 'ի նոցանէ՝ ել 'ի լեառն կալ յաղօթս : Մարկ. Զ. 45—46 :

*Հրէայք՝ թէև այսչափ հրաշագործութիւններէն հիացած ու յափշտակուած էին, սակայն դեռ իրենց աշխարհասիրութենէն չէին բժշկուած, և Մեսիայի թագաւորութիւնը աշխարհական մտօք կ'ըմբռնէին. ուստի եթէ հաւատային իսկ՝ թէ նա է Մեսիայն, սակայն և այնպէս կ'ուզէին՝ որ Մեսիայն իրենց աշխարհային թագաւորութիւնն ալ վարէ, զիրենք աշխարհի վրայ օտարին բռնութենէն ազատէ, և աշխարհային փառք յաճախէ իրենց : Աշակերտներն արձակելէն յետոյ՝ թողուց ժողովուրդն, ու լեռն ելնելով աղօթք ըրաւ, ինչպէս սովորութիւն ունէր ամէն անգամ :*

Եւ իբրև ընդ երեկս եղև, անդ էր միայն : Եւ նաւն մեկնեալ էր 'ի ցամաքէն բազում ասպարիզօք ծփեալ յալեաց. քանզի ընդդէմ էր հողմն : Եւ 'ի չորրորդում պահու գիշերոյն եկն առ նոսա Յիսուս գնացեալ 'ի վերայ ծովուն : Իբրև տեսին զնա աշակերտքն, զի գնայր 'ի վերայ ծովուն՝ խռովեցան, և ասեն թէ առասպել ինչ իցէ . և առ ահին աղաղակեցին : Եւ վաղվաղակի խօսեցաւ ընդ նոսա Յիսուս՝ և ասէ. քաջալերեցարո՛ւք ես եմ, մի՛ երկնչիք : Պատասխանի ետ նմա Պետրոս՝ և ասէ . Տէ՛ր՝ եթէ դու ես, հրամայեա՛ ինձ գալ առ քեզ 'ի վերայ ջրոց: Եւ նա ասէ, ե՛կ . և իջեալ 'ի նաւէն Պետրոս՝ գնաց 'ի վերայ ջրոցն, և եկն առ Յիսուս: Եւ տեսեալ զհողմն սաստիկ՝ երկեաւ . և իբրև սկսաւ ընկղմել՝ աղաղակեաց և ասէ . Տէր փրկեա՛ զիս : Եւ վաղվաղա-

նէ Յիսուս ձգեաց զձեռն իւր՝ կալաւ զնա և ասէ . Թե՛րահաւատ՝ ընդէ՞ր երկմտեցեր ։ Եւ ելեալ նոցա ’ի նաւն՝ հանդարտեաց հողմն ։ Եւ որ ’ի նաւին էին՝ մատեան, երկիրպագին նմա և ասեն . արդարև որդի Աստուծոյ ես դու ։ Մտթ. ԺԴ. 23—33 ։

*Այսպէս Յիսուս Քրիստոս յանակընկալ պահու՝ մեր ծփանաց մէջ հաւատացելոց յօգնութիւն կը հասնի, և իւր փրկարար ձայնը լսելի կ’ընէ յերկնից յերկիր ։*

*Հաւատով յԱստուծոյ մեծ բաներ խնդրելն անտեղի չէ երբեմն . սակայն ոչ երկմտելու է և ոչ վախնալու ։ Այլ երբ երկիւղը կուգայ պաշարել զմեզ, Պետրոսի պէս առ այն՝ որ մեր ապաւէնն է, դիմելու եմք հաւատով, և նորա օգնութիւնը խնդրելու եմք ’ի մեր փրկութիւն ։ Այն ատեն Յիսուս իւր զօրաւոր ձեռքը կ’երկընցունէ, և զմեզ ոչ միայն ’ի ծով ընկղմելէ, այլ հոգևոր կորստեան անդունդէն ալ կը փրկէ և յաւիտենական խաղաղութեան կ’առաջնորդէ ։*

Եւ անցեալ եկին ’ի ցամաք ’ի Գեննեսարէթ ։ Եւ ծանեան զնա արք տեղւոյն այնորիկ, առաքեցին ընդ ամենայն գաւառն՝ և ածին առ նա զամենայն հիւանդս ։ Եւ աղաչէին զնա, զի գոնէ միայն ’ի քղանցս հանդերձի նորա մերձեսցին . և որ միանգամ մերձեցան՝ փրկեցան ։ Մտթ. ԺԴ. 34—36 ։ Մրկ. Զ. 53—56 ։

*Գեննեսարեթայ բնակիչք արդէն ուրիշ անգամ՝ Յիսուսի հրաշագործութիւնքը տեսած ու վայելած ըլլալով կը հաւատային, որ ոչ միայն նորա աստուածային շուրթն ու ձեռքերը կրնան բժշկել հիւանդներն ու ախտացեալներն, այլ և նորա մարմինը պարունակող հանդերձներէն ալ*

կը բղխէր սքանչելեաց զօրութիւնք։



# ԳԼՈՒԽ ԺԷ.

ՔԱՐՈԶԷ ՔՐԻՍՏՈՍ ԺՈՂՈՎՐԴԵԱՆՆ Ի ԿԱՓԱՌՆԱՈՒՄ, ԵԹԷ ՄԱՐՄԻՆ ԻՒՐ ՃՇՄԱՐԻՏ ԿԵՐԱԿՈՒՐ Է, ԵՒ ԱՐԻՒՆ ԻՒՐ ՃՇՄԱՐԻՏ ԸՄ-ՊԵԼԻ Է. — ՏՐՏՆՋԻՆ ՀՐԷԻՑՆ. — ԳԱՅԹԱԿՂԻՆ ՈՄԱՆՑ ԱՇ-ԱԿԵՐՏԵԼՈՑՆ։



## Ա. Քարոզէ Քրիստոս ժողովրդեան 'ի Կափառ-նաում, եթէ մարմին իւր ճշմարիտ կերակուր է, եւ արիւն իւր ճշմարիտ ըմպելի է.

'Ի վաղիւն անդր ժողովուրդն՝ որ կայր յայնկոյս ծովուն, տեսանէր թէ այլ նաւ ո՛չ գոյր անդ բայց միայն 'ի միայն, յոր մտին աշակերտքն Յիսուսի. և զի չէր մտեալ Յիսուս ընդ աշակերտսն իւր 'ի նաւն, բայց միայն աշակերտքն նորա գնացին։ Իբրև այլ նաւք գային 'ի Տիբերիայ մօտ յայն տե-ղին՝ ուր զհացն կերան. իսկ իբրև ետես ժողովուրդն եթէ Յիսուս ո՛չ է անդ՝ և ո՛չ աշակերտքն նորա, մտին նաւա-կսն, և եկին 'ի Կափառնայում խնդրել զՅիսուս։ Յովհ. Զ. 22—24։

*Ժողովուրդն՝ որ Յիսուսի աշակերտաց՝ մեկ-նիլը տեսաւ, և գիտէր, որ մէկ նաւ միայն կար ծովեզրը՝ յոր մտան անոնք և մեկնեցան, և թէ Յիսուս նոցա հետ չը գնաց՝ կը զարմանային թէ ի՞նչ կերպով գնացած է նա. Տիբերիայէն եկած նաւերը մտան ու Կափառնաում անցան, որպէս*

զի զանոնք գտնեն ։

*Յիսուս որչափ խոյս կուտար՝ ժողովուրդն ալ այնչափ անձկութեամբ ետեւէն կ'երթար ։ — Այս օրինակ է այնպիսի անձանց , որ աշխարհի փառաց ետեւէն կ'ընթանան , այլ նա իբր ստուեր կը խուսէ իրենցմէ — ։*

Եւ իբրեւ գտին զնա յայնկոյս ծովուն , ասեն ցնա . Ռա՛բբի՝ ե՞րբ եկիր այսր ։ Պատասխանի ետ նոցա Յիսուս եւ ասէ . ամէն ամէն ասեմ ձեզ . խնդրէք զիս , ո՛չ եթէ զի նշանս ինչ տեսէք , այլ զի կերայք ՚ի հացէ անտի՝ եւ յագեցարուք ։ Երթա՛յք գործեցէ՛ք մի՛ զկորստական կերակուրն , այլ զկերակուրն , որ մնայ ՚ի կեանսն յաւիտենականս , զոր Որդին մարդոյ տացէ ձեզ . քանզի զնա Հայր կնքեաց Աստուած ։ Ասեն ցնա . զի՞նչ առնիցեմք՝ զի զգործն Աստուծոյ գործեսցուք ։ Պատասխանի ետ Յիսուս , եւ ասէ ցնոսա . այս է գործն Աստուծոյ , զի հաւատայցէք յայն՝ որ առաքեացն զնա ։ Յովհ. Զ. 25—29 ։

*Չը կրնալով իրենց զարմանքը բռնել՝ պարտաւորեցան հարցնել Քրիստոսի , թէ ի՞նչպէս արդեօք անցած է յայսկոյս ։ Նա առանց անոնց հարցման ուղղապէս պատասխանելու՝ կ'ըսէ . իմ խօսքերս հաստատելու և զձեզ ձեր հոգւոց փրրկութեան պարտաւորելու համար ըրած հրաշիցս աղագաւ չէ՝ որ զիս կը փնտռէք , այլ թէ պահ մ'առաջ զձեզ յագեցուցի անապատին մէջ ։ Այդ կերակուրը , այդ հացը կորստական է . յաւիտենական է այն կերակուրը միայն՝ որ մարդոյ հոգին կը սնուցանէ . հոգեւոր կերակուրն՝ որ Աստուծոյ գործ է , ես պիտի տամ ձեզ , ես Որդի Աստուծոյ՝ զոր Աստուած հաստատեց և վաւերացոյց ՚ի Յորդանան և մարգարէից խօսքերովը ։*

կը հարցնէք, թէ Աստուծոյ հաճոյական գործքը ո՞րն է՝ զոր կատարել կը խոստանաք. — Այն է՝ որ նորա միակ և ճշմարիտ Առաքելոյն, յինձ, հաւատաք անկեղծութեամբ ։

Ասեն ցնա. զի՞նչ նշան առնիցես՝ զի տեսցուք եւ հաւատասցուք, զի՞նչ գործիցես ։ Հարքն մեր կերան զմանանայն յանապատի անդ՝ որպէս եւ գրեալ է. հաց յերկնից ետ նոցա ուտել ։ Ասէ ցնոսա Յիսուս. ամէն ամէն ասեմ ձեզ. եթէ ո՛չ Մովսէս ետ ձեզ զհացն յերկնից, այլ Հայրն իմ տայ ձեզ զհացն յերկնից զճշմարիտ ։ Զի հաց յԱստուծոյ է, որ իջանէ յերկնից՝ եւ կեանս տայ աշխարհի ։ Ասեն ցնա, Տէ՛ր՝ յամենայն ժամ տո՛ւր մեզ զհացդ զայդ ։ Ասէ ցնոսա Յիսուս. ես եմ հացն կենաց. որ գայ առ իս՝ ո՛չ քաղցիցէ, եւ որ հաւատայ յիս՝ ո՛չ երբեք ծարաւեսցի. Յովհ. Զ. 30—35 ։

Այնքան սքանչելագործութիւնները բաւ չը համարելով՝ դեռ կը յամառին հարցընել՝ թէ ի՞նչ նշան պիտի ցոյց տաս՝ որ տեսնենք ու հաւատանք ։ Տէ՛ս միանգամ. Մովսէս ինքզինքն ապացուցանելու համար երկինքէն մանանայ տեղացուց՝ որ երկնային հաց ըսուեցաւ. բայց չը գիտէին՝ որ Մովսիսի տուածն երկնաւոր հաց չէր, այլ մանանայ՝ որ ՚ի ստորին երկինս օդերէն կը գոյանար. ուստի ըսաւ Քրիստոս. Հայր Աստուած ձեր հոգւոյն ճշմարիտ կերակուրը և սնունդը ղըրկեց. այդ հացն ես եմ ։ Աստուածային հացն է միայն՝ որ յերկնից իջնելով յաւիտենական կեանք կու տայ. դուք եթէ յանձն առնուք միշտ ինձմէ չը բաժնուիլ և ձեր հաւատքն յիս հաստատուն լինի՝ ոչ երբէք պիտի անօթենաք և ծարաւիք. զի ոչ միայն կենաց հաց եմ ես, այլ և կենդանութեան աղբիւր մշտահոս ։

Այլ ասացի ձեզ՝ թէ տեսէք զիս, և ոչ հաւատայք։ Զամենայն՝ զոր տայ ինձ Հայր, առ իս եկեսցէ. և որ գայ առ իս՝ ո՛չ հանից արտաքս։ Զի իջի ես յերկնից, ո՛չ զի զկամս իմ արարից, այլ զկամս այնորիկ՝ որ առաքեացն զիս։ Յովհ. Զ. 36—38։

*Զիս տեսաք, աստուածային զօրութեանս փորձերն առիք, ու տակաւին կը թերահաւատիք։ Նա՝ որ նախասահմանեալ է 'ի Հօրէ յառաջագոյն և յիս հաւատալով ինծ կը դիմէ, բընաւ չը պիտի մերժեմ։ Նորա կամքն յայտնի են ձեզ արդէն. ահա ես եկայ, ոչ իմ՝ այլ նորա կամքը կատարելու՝ յոր միացած եմք ես և Հայրն իմ։*

Այս է կամք Հօր իմոյ, որ առաքեացն զիս. զի զամենայն զոր ետ ցիս Հայր՝ ո՛չ կորուսից 'ի նմանէ, այլ յարուցից զնա յաւուրն յետնում։ Այս է կամք Հօր իմոյ, զի ամենայն որ տեսանիցէ զՈրդի՝ և հաւատայցէ 'ի նա, ընկալցի զկեանսն յաւիտենականս. և ես յարուցից զնա յաւուրըն յետնում։ Յովհ. Զ. 39—40։

*Հօր Աստուծոյ կամքն՝ որ չէ որիշ 'ի կամաց և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այնպէս մեկին կը ցուցնէ Քրիստոս՝ որով դիւրաւ կ'իմացուի, թէ փրկութիւնը միայն քրիստոնէական եկեղեցւոյ մէջ կրնայ ընդունիլ մարդ և ոչ այլուր. և թէ մասնաւոր եկեղեցւոյ տրուած չէ այդ առանձնաշնորհն, այլ ընդհանրական ուղղափառ եկեղեցւոյ, որոյ մէջ Հայ, Յոյն, Լատին ևլն. միոյ Հօր որդիք և եղբարք միմեանց են միով հաւատովք և միով մկրտութեամբ։ Յիշեալ խօսքին մէջ նաև սադուկեցի աղանդն իւր բոլոր նշանակութիւնը կորուսած կը տեսնուի.*

Տրտնջէին զնմանէ հրեայքն, զի ասաց թէ ես եմ հացն իջեալ յերկնից: Եւ ասէին, ո՞չ սա է Յիսուս որդին Յովսեփու, զորոյ մեք գիտեմք զհայրն և զմայր. իսկ արդ, զիա՞րդ ասէ՝ թէ ես յերկնից իջի: Պատասխանի ետ Յիսուս, և ասէ ցնոսա. մի՛ տրտնջէք ընդ միմեանս: Ոչ ո՛ք կարէ գալ առ իս, եթէ ոչ հայրն՝ որ զիս առաքեաց՝ ձգեսցէ զնա. և ես յարուցից զնա յաւուրն յետնում: Գրեալ է ՚ի մարգարէս, և եղիցին ամենեքեան ուսեալք յԱստուծոյ. ամենայն որ լուեալ ՚ի հօրէ և ուսանի՝ գայ առ իս: Իբրև ո՛չ եթէ զհայր ոք տեսեալ իցէ, եթէ ո՛չ որ էն յԱստուծոյ, նա ետես զհայր: Ամէն ամէն ասեմ ձեզ. զի որ հաւատայ յիս՝ ընդունի զկեանսն յաւիտենականս: Յովհ. Զ. 41—47:

*Հրեայք միշտ նիւթապէս կամ մարմնապէս կը խորհէին. կ'ուզէին և կը պահանջէին՝ որ Աստուծոյ խօսքերուն մէջ խորհուրդ չ'ըլլայ. և կամ խորհուրդները քննադատել կը նկրտէին: Նորա երկնային վարդապետութիւններն ու աստուածային առաքելութիւնը չի կարելով թափանցել՝ ըստ մարդկութեան կը քրթմնջէին, թէ սա մեր գիտցած ու ճանչցած Յովսեփայ ու Մարիամայ որդին չէ՞: Բայց Նա մարգարէին կանխագուշակութիւնն 'ի վկայութիւն կը բերէր: Չէք կարող հասկնալ՝ կ'ըսէր, դուք ինքնին, այլ պէտք է որ Հայրս ձեզ կենդանի հաւատք տայ՝ որով այս իմ խօսքերս ընդունիք և առ իս գայք. Ես միայն իբրև յաւիտենակից Հօր Աստուծոյ, կրնամ ձեզ վստահեցնել՝ որ այն ատեն անմահութիւն պիտի ստանայք՝ երբ հաւատաք թէ ես Աստուծմէ զրկուեցայ:*

Ես եմ հացն կենաց: Հարքն ձեր կերան զմանանայն յա-

նապատին՝ եւ մեռան ։ Այս է հացն, որ յերկնից իջանէ . զի որ ուտիցէ ոք ՚ի սմանէ՝ մի՛ մեռանիցի ։ Ես եմ հացն կենդանի, որ յերկնից իջի ։ Եթէ ոք ուտիցէ ՚ի հացէ յայսմանէ՝ կեցցէ ՚ի յաւիտեան . եւ հացն զոր ես տաց՝ մարմին իմ է, զոր ես տաց վասն կենաց աշխարհի ։ Ցովհ. Զ. 48—51 ։

*Ես եմ կենդանի կամ կենաց հացը . ձեր հայրերուն կերած մանանայն՝ անոնց հոգեւորապէս չը մեռնելուն օգուտ չ'ըրաւ . յաւիտենական կեանքն իմ մարմինս ճաշակելով միայն կրնաք ընդունել, այն մարմինը՝ զոր խաչին վերայ պիտի զենում վասն կենաց աշխարհի ։*

### Բ. Տրտունջ Հրէից

Մարտնչէին ընդ միմեանս Հրէայքն՝ եւ ասէին . զիա՞րդ կարէ դա տալ մեզ զմարմին իւր յուտել։ Ասէ ցնոսա Յիսուս. ամէն ամէն ասեմ ձեզ, եթէ ո՛չ կերիջիք զմարմին որդւոյ մարդոյ եւ արբջիք զարիւն նորա, ո՛չ ունիք կեանս յանձինս ։ Որ ուտէ զմարմին իմ՝ եւ ըմպէ զարիւն իմ, ունի զկեանս յաւիտենականս . եւ ես յարուցից զնա յաւուրն յետնում ։ Զի մարմին իմ ճշմարիտ կերակուր է, եւ արիւն իմ ճշմարիտ ըմպելի է ։ Որ ուտէ զմարմին իմ եւ ըմպէ զարիւն իմ, յիս բնակեսցէ, եւ ես ՚ի նմա ։ Որպէս առաքեաց զիս կենդանին Հայր, եւ ես կենդանի եմ վասն Հօր . եւ որ ուտէն զիս, եւ նա կեցցէ վասն իմ ։ Այս է հացն՝ որ յերկնից իջանէ . ո՛չ որպէս կերան հարքն ձեր զմանանայն՝ եւ մեռան . որ ուտէ զհացս զայս՝ կեցցէ յաւիտեան ։ Զայս ասաց ՚ի ժողովրդեանն՝ յուսուցանելն ՚ի Կափառնաում ։ Ցովհ. Զ. 53-60 ։

*«Զիա՞րդ» . Երբ Յիսուսի այսպէս կը հաւատակէին, այսինքն, մարդկային տրամաբանութեամբ Աստուածային խորհուրդները կ'ուզէին ըմբռնել՝ Յիսուս անոնց պատասխան չէր տար .*

այն ատեն Աստուածային իշխանութեամբ կ՚ուսուցանէր, և հպատակութիւն միայն կը խնդրէր ։

Երբ Նիկոդիմոս կը հարցընէր, « Զի՞նչ կարէ մարդ ծնանել՝ որ ծեր իցէ », Յիսուս ըսաւ. « Պէտք է վերստին ծնանել », և ի՛նչ եղանակաւ լինելը չը մեկնեց ։ Երբ Նիկոդիմոս դարձեալ տրամաբանելով « Զիա՞րդ մարթ է այդմ լինել » կ՚ըսէր, Քրիստոս չէր մեկներ, այլ կը պատասխանէր հեղինակութեամբ՝ ճշմարտութիւնը բացայայտելով. « Զոր գիտեմք՝ խօսիմք, և զոր տեսաք՝ վկայեմք » ։ Նմանապէս երբ հրէայք « Զիա՞րդ կարէ սա տալ մեզ զմարմին իւր յուտել » հարցուցին՝ Յիսուս ըսաւ. « Կեանք ունենալու համար պէտք է որ իմ մարմինս ուտէք և արիւնս խմէք առանց ա՛-ւէլը գիտնալու ։ Այսպէս՝ պէտք է հաւատալ — և առանց հաւատալու անկարելի է փրկուիլ — թէ ամենասուրբ Երրորդութիւնն ունի Երեք Անձինք և Մի Բնութիւն. բայց զիա՞րդ — ասի անթարգմանելի է ։ Որդին է ծնունդ Հօր յաւիտենական, և Հոգին սուրբ 'ի Հօրէ կը բղխի. բայց զիա՞րդ — անհասանելի է այդ ։ Նմանապէս Նախախնամութիւնն և մարդկային անձնիշխան ազատութիւնն ի՞նչպէս կարելի է լինել, չէ յայտնուած Աստուծմէ ։

## Գ. Գայթակղութիւն բազմաց յաշակերտաց

Եւ բազումք յաշակերտացն նորա ըսին՝ թէ. Խիստ է բանդ այդ, ո՞ կարէ լսել դմա ։ Յովհ. Զ 61 ։

Մինչև այսօր այս խորհրդոյն նկատմամբ այս օրինակ դատաստան կտրողներ շատ կան. մարդուս ապստամբ խելքը չը կրնար ըմբռնել, ծա-

նըր է լսել։ Յիսուս Քրիստոս կ՚ըսէ. «իմ մար-
մինս կերէ՛ք ու արիւնս խմեցէ՛ք, այն մարմինս
ու արիւնս՝ զոր ես պիտի տամ աշխարհի կենաց
համար»։ Արդ ի՞նչ է Քրիստոս — Աստուծոյ գը-
թութեան, սիրոյն, անմեղութեանն և կատա-
րելութեան անձնաւորութիւնը։ Արեամբ ի՞նչ մեծ
շնորհք է այս. Քրիստոս ինքզինք կուտայ մեզի.
մեր սիրտն՝ որ Աստուծոյ դէմ թշնամութեան,
իրերաց դէմ ատելութեան, անկատար զգայ-
մանց. կռիւ և մեղաց բոյն եղած է. այո՛ այս
սիրտը կը մաքրէ, այդ հոգին կը սրբէ Քրիստոս,
և դոցա փոխանակ ինքզինքը, այսինքն, սէր,
սրբութիւն, կատարելութիւն ու գթութիւն կը
դնէ կը լեցնէ։ Մարդուն հոգին՝ Աստուծոյ հետ
իւր անմեղութեան և սրբութեան յարաբերու-
թիւնը կըտրած էր, Յիսուս այս յարաբերութիւ-
նը կը վերահաստատէ. Աստուած մարդէն հե-
ռացած էր, հիմայ Աստուած մեր մէջ կը բնա-
կի, և մեք անոր մէջ. հիմայ հաղորդութիւն ու-
նիմք կամ հաղորդուած եմք Աստուծոյ հետ։
Աստուած մեր հայրն է, և Ս. Պատարագի Սե-
ղանն՝ իւր սեղանն է. այդ Ս. Սեղանէն մեր ա-
ռած սնունդը՝ Հացը՝ նոյն ինք Քրիստոս է, այս
երկնքէն իջած հացը կատարեալ հաւատովք ճա-
շակելով կը ճաշակենք սէրը, յարութեան կե-
նաց յոյսը և յաւիտենական կեանքը. Քրիստոս
մեր մէջն է միշտ այս խորհրդով, ինչպէս ըսած
է առաքելոց և ամենայն հաւատացելոց, թէ
մինչև աշխարհի վերջը ես ձեզի հետ եմ։ Նա
այս աստուածային սահմանադրութեամբ մեր
միութիւնը կը պահանջէ, որոյ համար յատուկ
աղօթք մ՚ըրաւ. «Հա՛յր՝ կամիմ, զի սոքա մի

լցեն՝ որպէս և մեք մի եմք»։ Նա կը բաղձայ, որ այդ Սեղանէն սրբութիւն ստանամք մեք, որոյ համար ալ մասնաւորապէս աղօթեց. «Սուրբ պահեա՛ զնոսա» ըսելով։ Յիսուս իւր մաքուր, անապական, սուրբ և անարատ արիւնը՝ մեր ապականեալ արեան երակաց մէջ կը քալեցնէ, նորա արիւնը՝ մեր արիւնը կը սրբէ, Նորա մարմինը՝ մեր մարմինը կը մաքրէ։ Այս սուրբ խորհուրդն պատարագի՝ զոր վերնատան մէջ հաստատեց, միշտ կրկնելու պարտաւոր եմք՝ Նորա սէրը, անօրինութիւնները, մարդասիրութիւնը, մահը, յարութիւնն՝ և խոստացած յաւիտենական կեանքը յիշելով, զոր վերջը պիտի առնեմք։

Իբրև գիտաց Յիսուս յանձն իւր՝ եթէ տրտնջեն վասն այնորիկ աշակերտքն, ասէ ցնոսա. Այդ գայթագղեցուցանէ զձեզ։ Իսկ արդ՝ եթէ տեսանիցէք զՈրդի մարդոյ, զի ելանիցէ ուր էր զառաջինն։ Հոգին է կենդանարար, մարմինն ինչ ո՛չ օգնէ. զբանսն զոր ես խօսեցայ ընդ ձեզ՝ հոգի է և կեանք։ Այլ են ոմանք ՚ի ձէնջ՝ որ ո՛չ հաւատան, քանզի գիտէր Յիսուս ՚ի սկզբանէ, ո՞վ են այնոքիկ՝ որ ո՛չն հաւատան, և ո՞վ է այն՝ որ մատնելոցն է զնա. և ասէր։ Վասն այնորիկ ասացի ձեզ՝ թէ ո՛չ ոք կարէ գալ առ իս, եթէ ո՛չ իցէ տուեալ նմա ՚ի Հօրէ իմմէ։ Յովհ. Զ. 62-66։

Իմ ըսածս ձեզ կը գայթակղեցընէ՞. եթէ հիմայ ես անձամբ ներկայ եմ ու բերան առ բերան կը խօսիմ՝ չէք հասկընար, կամ չէք հաւատար մարմնոյս և արեանս վրայ տուած հոգեղէն բացատրութեանցս ու կը տրտնջէք, հապա երբ երկինք ելնելս տեսնէք և ես բացակայ գտնուիմ ՚ի ձէնջ, ի՞նչպէս պիտի հաւատայք կամ ո՞վ պիտի հասկըցընէ ձեզ. մինթէ այն ատենն իսկ պի֊

տի գայթակղի՞ք ։ Իմ ձեզի տուած կերակուրս՝ մարմնաւոր սոսկ կերակուր կամ մանանայ և կամ իմ ձեզի կերուցած հացս չէ ։ Մարմինը չօգներ . այն մարմինը՝ զոր ես ձեզի պիտի տամ, միաւորեալ է աստուծոյ Բանին հետ . հոգևորապէս նկատեցէք զայն . հոգևոր կերակուր է իմ տալիքս . մարմնաւոր կերակուրը՝ մարմինը առժամանակեայ կորստենէ կը պահէ, իսկ հոգին կենդանարար է ։

Յայսմանէ բազումք յաշակերտացն Նորա չոգան յետս, և ո՛չ ևս շրջէին ընդ նմա ։ Յովհ. Զ. 67 ։

Քրիստոսի Հաղորդութեան խորհրդոյն վրայ բրած խօսքերէն՝ շատերը գայթակղեցան, և թողուցին Յիսուսի ետևէն երթալը, ասոնց մէջ աշակերտներ ալ կային ։ Մինչև ցայսօր այսպէս է, շատեր կան՝ որ այս խորհուրդս իրենց խելապատակին մէջ չկարենալով պարունակել, կամ խելքէ վեր դատելնուն համար՝ չեն հաւատար ։ Ասոնք Յիսուսի այն ատեն բաժնուող աշակերտաց պէս են . և սորա պատճառն ուրիշ բան չէ, եթէ ոչ իրենց անհաւատութիւնը . վասն զի ինչպէս կըսէ Քրիստոս, Հօրմէն չէր տրուած անոնց հաւատալ Ս. Բանից անոր՝ որոյ ծագումը, մարմնանալն յարութիւնը, համբարձումն և այլն՝ բոլորովին գերբնական են . ուստի — ըստ իրենց դատման — հացը մարմին դարձընելու անկարող մէկուն ի՞նչպէս Աստուած է՝ կ՚ըսեն, ասոր ալ իմ խելքս չհասնիր ։

Ասէ Յիսուս ցերկոտասան աշակերտսն . միթէ և դո՞ւք կամիք երթալ ։ Պատասխանի ետ նմա Սիմոն Պետրոս . Տէ՛ր՝

առ ո՞վ երթիցուք. բանս կենաց յաւիտենականս ունիս։ Եւ մեք հաւատացաք՝ և ծանեաք՝ եթէ դու ես Քրիստոսն որդի Աստուծոյ։ Պատասխանի ետ նոցա Յիսուս. ո՞չ ես զձեզ զերկոտասանսդ ընտրեցի, և մի ՚ի ձէնջ սատանայ է։ Եւ ասէր զՍիմովնեան Յուդայէ Իսկարիովտացւոյ. զի նա էր մատնելոց էր զնա. և մի էր յերկոտասանիցն։ Յովհ. Զ. 68-72։

Իսկ մեք գիտնալով՝ որ նոյն իսկ ընտրեալ երկոտասանից մին սատանայ էր, անհաւատ էր, գիտնալով՝ որ շատերը այն ատեն ալ չհաւատացին այս խորհրդոյն, տրտնջեցին ու գայթակղեցան, պէտք է Քրիստոսի սեղանին դիմենք միշտ, և Պետրոսի խօսքը կրկնենք. Տէ՛ր որո՞ւ երթանք. դու յաւիտենական կենաց խօսքեր ունիս՝ որով զմեզ կը սնուցանես, քու խօսքերդ զմեզ պարտաւորեցին ՚ի սրտէ հաւատալ, որ դու Աստուծոյ Որդին Քրիստոսն ես, կարող՝ ոչ միայն քու Մարմինդ ու Արիւնդ իբրև կերակուր մեզի տալու, այլ աւելի մեծ բաներ ընելու, յաւե՛լ մեզ հաւատս։ Քրիստոնէութեան մէջ խորհուրդներ կան ՚ի վեր քան զմիտս և զխորհուրդս. «Ծածուկքն Տեառն՝ յայտնիքն մեզ», ուստի ասոնց խորը թափանցելու, հետամուտ ըլլալու համար՝ պէտք է աղաչեմք զԱստուած՝ որ այս սուրբ Պատարագի խորհուրդն ՚ի վերնատան ինչ դիտաւորութեամբ և խորհրդով որ կատարեց և ինչ հաւատք որ պահանջեց իւր աշակերտներէն՝ նոյն դիտաւորութիւնը մեր գլխուն մէջ՝ և նոյն հաւատքը մեր սրտին և հոգւոյն մէջ հաստատելու բարեհաճի։

# ԳԼՈՒԽ ԺԹ.

ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ ՓԱՐԻՍԵՑՒՈՑ ԿԵՂԾԱՒՈՐՈՒԹԵԱՆ. — ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԴՍՏԵՐ ԿՆՈՋՆ ՔԱՆԱՆԱՑՒՈՑ.



## Ա. Յանդիմանութիւն փարիսեցւոյն կեղծաւորութեան։

Եւ յետ այսորիկ շրջէր Յիսուս ՚ի Գալիլեա. քանզի ո՛չ կամէր ՚ի Հրէաստանի շրջել, զի խնդրէին զնա Հրեայքն սպանանել։ Յովհ. Է. 1։

Դեռ ժամանակը հասած չէր, ուստի պէտք էր թշնամի ամբոխին կատաղութենէն խուսափել. թէև ամենակարող էր, և կրնար նոցա մէջ գտնուելով իսկ նոցա զայրոյթէն ազատ մնալ՝ ինչպէս որ ուրիշ անգամ՝ ըրաւ, սակայն այս անգամ խոհեմութիւն համարեց հրէայներէն հեռու մնալ։

Եւ ժողովեցան առ նա փարիսեցիք՝ և ոմանք ՚ի դպրացն՝ որ եկեալ էին յԵրուսաղեմէ։ Եւ տեսեալ զոմանս յաշակերտացն նորա, զի խառնակ ձեռօք. այսինքն է անլուայ ուտէին հաց, բամբասեցին։ Զի փարիսեցիքն և ամենայն Հրեայք՝ եթէ ոչ բռնալիր լուանան զձեռս՝ հաց ո՛չ ուտեն. քանզի ունին զաւանդութիւն ծերոցն. և ՚ի հրապարակէ մտեալ՝ եթէ ոչ նախ մկրտիցին, ոչ ուտեն. և այլ ինչ է բազում՝ զոր ընկալան ունել, մկրտութիւնս բաժակաց և ստամանց և պղնձեաց մահճաց։ Մարկ. Է. 1—4։

Շատ հեռուէն, Երուսաղէմէն, Թերևս ութսուն մղոն հեռուէն եկան դպիրքն ու փարիսեցիք. և չարամտութեամբ խծբծելով. և մեծ բանի տեղ դնելով Յիսուսի աշակերտաց ոմանց՝ աւանդութեանց մասին անհոգութիւնն, ըսին. Ինչո՞ւ համար քու աշակերտներդ (մէկ քանին ըսելու տեղ) ծերոց աւանդութիւնները չեն բռներ, ինչո՞ւ համար անլուայ ձեռօք հաց կ'ուտեն. վասըն զի ըստ աւանդութեան ծերոց փարիսեցիք և ամէն հրեայք բուռերնին ջրով լեցընելով (բըռնալիր) և մինչև արմուկներէն վար հոսելով ձեռքերնին կը լուանան՝ ամէն ատեն հրապարակներէն և շուկայէն ետ դարձած ատենին իսկ՝ դուցէ պիղծ բաներու դպած ըլլալու կասկածանօք, և ապա հաց կ'ուտէին։ Այս աւանդութիւնն 'ի գործ կը դնեն ցարդ. (Թէև իրենց ձեռքը կը լուան, բայց յետոյ խիստ աղտոտ բանով մը կը ջնջեն զայն, որ լուացուելէն աւելի աղտոտել կը նշանակէ). Արդ ի՞նչ է այս աւանդութիւն ծերոց, զոր այնքան խստիւ և խղճիւ կը պահէին և կը պահեն ցայժմ՝ մինչև անտես ընել Աստուծոյ պատուիրանները, և ամեն չարչարանք յանձըն կ'առնուն՝ իրենց ամանները, սռոմանները և մինչև մահիճները և բազմոցները ստէպ լուալու համար։

Ապա հարցանէին զնա փարիսեցիքն և դպիրք. Թէ ընդէ՞ր աշակերտքն քո ոչ գնան ըստ աւանդութեան ծերոցն, այլ խառնակ ձեռօք հաց ուտեն։ Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. Մատթ. ժե. 3։ Իսկ դուք ընդէ՞ր անցանէք զպատուիրանաւն Աստուծոյ վասն ձերոյ աւանդութեանն։ Զի ասաց Աստուած ('ի ձեռն Մովսէսի). պատուեա՛ զհայր

քո և զմայր. և որ բամբասէ զհայր կամ զմայր՝ մահու վախ-ճանեսցի։ Եւ դուք ասէք. որ ասիցէ ցհայր իւր կամ ցմայր իւր, թէ պատարագ է՝ զոր յինէն օգտեսցիս, և ոչ պա-տուեսցէ զհայր իւր և զմայր իւր. և խոտէք զբանն Աստուծոյ վասն ձերոյ աւանդութեանն. Կեղծաւո՛րք՝ բարւոք մար-գարէացաւ ՚ի վերայ ձեր Եսայի և ասէ. Ժողովուրդս այս շրթամբք պատուէ զիս, և սիրտ իւրեանց հեռացեալ մե-կուսի է յինէն։ Զուր պաշտեն զիս. ուսուցանեն վարդապե-տութիւնս զմարդկան պատուիրանս. Մատթ. ԺԵ. 3—9։

*Ի սկզբանէ անտի Հրէայք աւանդութիւններ ունէին, և անոնց վերաբերեալ գրքեր՝ որ կոր-սուեցան, ինչպէս ուղղութեանց եւն. գրքեր։ Այս աւանդութիւնները խանգարելով բերնէ բե-րան՝ ա՛յն աստիճան շատցան և կարևորութիւն ստացան՝ որ ա՛լ գրեթէ Ս. Գիրքը մոռնալ սկը-սան Հրէայք, և նոյն բաներու վրայ կը կայա-նային իրենց պաշտամունքը։ Քրիստոսի ծննդե-նէն երկու հարիւր յիսուն տարուայ չափ յետոյ՝ Յուդա սուրբ կոչուած րապպի մ'այս աւանդու-թիւնները ժողովեց. և վեց հատորէ բաղկացեալ գիրք մը կազմեց, որ* Միշնա՛, *այսինքն,* Երկրորդ Օրէնք *ըսուեցաւ։*

*Այս* Միշնան *մեկնելու համար* Թալմուտ *անու-նով երկու գիրք գրուեցան, և այս* Թալմուտը *մեկնելու համար շատ մը բաներ հրատարակուե-ցան։ Այս* Թալմուտներէն *մին՝ Քրիստոսի երեք հարիւր թուականին գրուած է, և* Երուսաղէմայ Թալմուտ *կ'ըսուի, և մէկ հատոր է. միւս* Թալ-մուտը Բաբելոնի Թալմուտ *կ'ըսուի՝ և Քրիստոսի 500 թուականին գրուած է. և տասներկու հատոր-ներէ կը բաղկանայ։ Այս* Թալմուտներուն Միշնա՛, *և անոնց մեկնութեանց ալ* Կեմա՛րա *կ'ըսուի։ Մին-*

չէ ցարդ թէ՛ Մէջլիս՝ և թէ կէմէր՝ որ խառնիխուռն և մուտի խօսքերով լեցուն են, չատ յարգի են հրէից ազգէն, և այնչափ՝ մինչև անցանել զպատուիրանաւն Աստուծոյ վասն նոցա, այսինքն, վասն աւանդութեանց ծերոց. անոր համար Քրիստոս յանդիմանեց զիրենք։ Աստուած ըսած է՝ ըսաւ. Պատուեա՛ զհայր քո և զմայր. և ո՛վ որ իւր հայրը կամ մայրը բամբասէ՝ կամ չարախօսէ՝ պիտի սատկի։ Իսկ դուք կ՚ըսէք կամ այնպէս կը սորվեցընէք՝ ո՛ դպիրքդ, որ ամէն մարդ ըսէ իւր կարօտ և չքաւոր վիճակի մէջ եղող հօրն ու մօրը, թէ ինձմէ խնդրած օգնութիւնդ կամ օգուտդ՝ կորբան (պատարագ) պատարագ է, այսինքն, ես՝ զայն նպաստը՝ որ ինձմէ կ՚ուզես, տաճարին պատարագցու սահմանած եմ։ Եւ այսպէս կը սորվեցընէին որդւոց՝ իրենց չքաւոր ծնողաց չօգնել։ Աստուծոյ խօսքը, կ՚ըսէ, մարդոց շինած մուտի աւանդութեանց համար կ՚արհամարհէք, և դեռ ուրիշ ասոնց պէս բաներ կ՚ընէք։

Եւ կոչեցեալ առ ինքն զժողովուրդսն՝ ասէ ցնոսա. լուարո՛ւք եւ ի միտ առէք։ Ոչ որ ինչ մտանէ ընդ բերան՝ պղծէ զմարդ, այլ որ ինչ ելանէ ի բերանոյ՝ այն պղծէ զմարդ. Մատթ. ԺԵ. 10—11։

Մտիկ ըրէք. պղծութիւնը ձեր հասկըցածին պէս՝ միայն մարմնոյ պղծութիւնը չէ. նա՛ մանաւանդ մարդուն հոգին պղծողն է պղծութիւն. սիրտն աղբիւր ամենայն ղղտացմանց, այո՛, ձեր սիրտը պէտք է մաքուր պահէք, որ չերկնէ ագահութիւն, չարակնութիւն, պոռնկութիւն, գողութիւն, սպանութիւն. վասն զի ասո՛նք կը

*պղծեն զմարդ. իսկ անլուայ ձեռօք հաց ուտե՛լը՝ թէև անվայել է, մարդը չի պղծեր ։*

Յայնժամ մատուցեալ աշակերտքն նորա՝ ասեն ցնա. Գիտե՞ս, զի փարիսեցիքն իբրև լուան զբանն՝ գայթակղեցան ։ Նա պատասխանի ետ նոցա և ասէ. Ամենայն տունկ՝ զոր ոչ տնկեաց Հայր իմ երկնաւոր, խլեսցի ։ Թոյլ տուք զնոսա, կոյրք են կուրաց առաջնորդք. կոյր կուրի յորժամ առաջնորդէ՝ երկոքին ՚ի խորխորատ անկանին ։ Պատասխանի ետ նմա Պետրոս և ասէ. Մեկնեա՛ մեզ զառակս զայս ։ Ասէ Յիսուս. Տակաւին և դուք անմի՞տ էք, ո՞չ իմանայք, եթէ ամենայն՝ որ մտանէ ՚ի բերան, յորովայն երթայ և արտաքս ելանէ, իսկ որ ելանէ ՚ի բերանոյ՝ ՚ի սրտէ անտի գայ, և այն պղծէ զմարդ ։ Զի ՚ի սրտէ ելանեն խորհուրդք չարք՝ սպանութիւնք, շնութիւնք, պոռնկութիւնք, գողութիւնք, սուտ վկայութիւնք, հայհոյութիւնք ։ Այս ամենայն է՝ որ պղծէ զմարդ. այլ անլուայ ձեռօք ուտել՝ ո՛չ պղծէ զմարդ. Մատթ. ԺԵ. 12—20 ։ Մարկ. Է. 17—23 ։

*Փարիսեցիք զայրացան ու գայթակղեցան Քրիստոսի վրայ՝ ինչպէս որ աշակերտք իմացան ու զգացուցին անոր ։ Փարիսեցիներն ու դպիրներն անպիտան և վնասակար տունկերու կը նմանեցունէ Յիսուս, և անոնց համար "պիտի փրցուին, մէջ տեղէն պիտի վերնան" կ՚ըսէ. ա՛լ այն դպիրքըն ու փարիսեցիք Աստուծոյ ժողովրդեան առաջնորդները չը պիտի լինին. Նոքա Աստուծոյ արտին կամ այգւոյն, այսինքն, եկեղեցւոյ մէջէն պիտի վերցուին. կոյր են նոքա՝ կոյրերու և տգէտներու առաջնորդ. առաջնորդը լուսաւոր պէտք է լինի ։ Երբ տգիտաց առաջնորդն ալ տգէտ ըլլայ և իրեն տգիտութիւնը կամ կուրու-*

թիւնը չի ճանչող ժողովուրդն ալ՝ որ իրեն հետևելու պարտաւոր է՝ սխալեցընէ ուղիղ ճամբէն, մոլորեալ ժողովուրդն ՚ի խորխորատ կ՚առաջնորդէ, և երկուքն ալ՝ առաջնորդ և ժողովուրդ փոսը կ՚իյնան։ Հոս Քրիստոս միւսանգամ բացատրեց իւր աշակերտաց՝ այն խօսքերը՝ զորս միանգամ ըսած էր. ըստ որում նոքա չէին կրցած լաւ ըմբռնել զանոնք։ Յիսուս աւանդութիւնները չէր անարգեր, այլ դպրաց և փարիսեցւոց այդ սնոտի աւանդութեանց համար Աստուծոյ խօսքն անարգելը կը յանդիմանէր. աւանդութեամբք միայն զԱստուած պաշտելն՝ եսայեայ մարգարէացած շրթամբք պատուելն է՝ կ՚ըսէր։

Եւ անտի յարուցեալ եկն ՚ի սահմանս Տիւրոսի և Սիդովնի. և մտեալ ՚ի տուն՝ ոչ կամէր ումեք յայտնել, և ոչ կարաց թաքչել. Մարկ. Է. 24.

Թէ ինչո՞ւ համար ինքզինքը կ՚ուզէր չը յայտնել. ոմանք նախընթաց խօսքերուն համար կը հասկընան, ոմանք ալ իւր անձին պահպանութեանն համար. բայց և այնպէս չը կրցաւ զինքը ծածկել։

## Բ. Բժշկութիւն դստեր կնոջն Քանանացւոյ

Եւ ահա կին մի Քանանացի ՚ի սահմանաց անտի նորա ելեալ՝ աղաղակէր և ասէր, ողորմեա՛ց ինձ՝ Տէ՛ր, որդի Դաւթի, դուստր իմ չարաչար դիւահարի. Մատթ. ԺԵ. 22.

Այս կնոջ համար Մատթէոս քանանացի կ՚ըսէ, իսկ Մարկոս՝ փիւնիկ Ասորի յազգէ։ Տիւրո-

սի և Սիդոնի սահմաններն 'ի հնումն քանանացւոց ձեռքն եղած ըլլալով՝ այս տեղերուն քանան ալ կ'ըսուէր. փիւնիկեցիք՝ քանանացւոց սերնդէն ըլլալով՝ քանանու այս կողմերը կը բընակէին։ Տիւրոսի և Սիդոնի կողմերը բնակող ամէն Ասորւոց ալ այս անունը կը տրուէր (քանանացի)։

Եւ նա ոչ ետ նմա պատասխանի. և մատուցեալ աշակերտքն նորա աղաչէին զնա և ասէին. Արձակեա՛ զնա, զի աղաղակէ զհետ մեր։ Մատթ. ԺԵ. 23։

Քրիստոս կնոջ հաւատքը փորձելու համար միայն՝ զառաջինն նորա աղաչանքը մերժելու պէս ցոյց կուտայ, և չը պատասխաներ։ Երբ Յիսուսի լռութիւնը տեսան աշակերտներն՝ իրենք ըկսան բարեխօսել կնոջ համար։ Բարեխօսութիւնը հաւատքով կ'ըլլայ, և առանց հաւատոյ բարեխօսութիւնն՝ օգուտ չունի։

Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. ոչ առաքեցայ, եթէ ոչ առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայելի։ Եւ նա մատուցեալ երկիրպագանէր նմա և ասէր։ Տէ՛ր՝ օգնեա՛ ինձ։ Պատասխանի ետ նմա Յիսուս և ասէ. ոչ է բարւոք առնուլ զհաց մանկանց և արկանել շանց։ Եւ նա ասէ. Այո՛, Տէ՛ր. քանզի և շունք կերակրին 'ի փշրանաց անկելոց 'ի սեղանոյ տեառն իւրեանց. Մարկ. Է. 27—28.

Հրէայք՝ հեթանոսները շուն կ'անուանէին. նոյն լեզուն կը գործածէ նաև Քրիստոս ըստ իսրայէլեան ասութեան։ Այնքան մեծ էր քանանացի կնոջ հաւատքն՝ որ երբ Քրիստոս իսրայելացիքը բուն տանտիրոջ զաւակներն անուանելով՝ սեղանն ու հացը միայն անոնց սեփականել կը

ցուցընէ, յանձն կ՚առնու կինը. աշուներն ալ իրենց տիրոջը սեղանին փշրանքէն չե՞ն մի կըշտանար, կ՚ըսէ. ես շատ բան չեմ ուզեր, շնորհաց փշրանքն անգամ բաւ է ինձ։ Միթէ զաւակները սնուցանողն՝ իւր շներն ալ սնուցանել կը զըլանա՞յ »։

Յայնժամ պատասխանի ետ նմա Յիսուս և ասէ. Ո՜վ կին դու, մեծ են հաւատք քո. եղիցի քեզ՝ որպէս և կամիս. Մատթ. ԺԵ. 28։ Գնաց ՚ի տուն իւր, և եգիտ ելեալ զդեւն, և զդուստրն՝ զի անկեալ դնէր ՚ի մահիճս. Մարկ. Է. 30։

Ո՜վ որ կատարեալ սրտիւ կը հաւատայ ՚ի Քրիստոս, ի՛նչ ազգէ ալ ըլլայ՝ պիտի փրկուի։ Այս հաւատոց արդասիքն էր, որ երբ հեթանոս կինն իւր տունը դարձաւ՝ տեսաւ, որ աղջիկն հանդարտած էր իւր ցաւոց մէջ։



# ԳԼՈՒԽ Ի.

ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԽԼԻՆ ԵՒ ՀԱՄՐ.— ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ՀԻՒԱՆԴԱՑ ԲԱԶՄԱՑ Ի ԾՈՎԵԶԵՐԻՆ.— ԿԵՐԱԿՐԵԼ ՉՈՐԻՑ ՀԱԶԱՐԱՑ ԵՕԹՆ ՆԿԱՆԱԿԱՒ.— ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ ԽՆԴՐՈՂԱՑՆ Ի ՆՄԱՆԷ ՆՇԱՆ, ԵՒ ԱՇԱԿԵՐՏԱՑՆ ՎԱՍՆ ՀԱՑԻ.— ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԿՈՒՐԻՆ Ի ԲԵԹՍԱՅԻԴԱ.— ԴԱՒԱՆՈՒԹԻՒՆ ՊԵՏՐՈՍԻ Ի ԴԻՄԱՑ ԱՌԱՔԵԼԱԿՑԱՑՆ։

## Ա. Բժշկութիւն խլին եւ համր

Եւ ելեալ դարձեալ 'ի սահմանացն Տիւրոսի եւ Սիդովնի, եւ եկն 'ի ծովեզերն Գալիլեացւոց 'ի մէջ սահմանացն 'ի Դեկապոլեա։ Եւ բերեն առ նա խուլ մի եւ համր. եւ աղաչէին զնա՝ զի դիցէ ձեռն 'ի վերայ նորա։ Եւ առեալ զնա մեկուսի յամբոխէն, արկ զմատունս իւր յականջս նորա, եւ թքեալ եմերձ զլեզուաւ նորա. հայեցաւ յերկինս՝ յոգւոց եհան՝ եւ ասէ. Եփփաթայ՝ որ է բացի՛ր։ Եւ նոյն ժամայն բացան լսելիք նորա, եւ լուծան կապանք լեզուի նորա. եւ խօսէր ուղիղ. Եւ պատուիրեաց նոցա՝ զի մի՛ ումեք ասիցեն։ Եւ որչափ նա պատուիրէր նոցա, նոքա եւս առաւել քարոզէին. եւ եւս քան զեւս զարմանային եւ ասէին. զամենայն ինչ բարւոք գործեաց. զի խուլս լսել տայ՝ եւ համրս խօսել։ Մարկ. Է. 31-37։

*Վերոյիշեալ ձեւերը կ'ընէ Յիսուս, որպէս զի չ'ըլլայ թէ բժշկութիւնը յանկարծադէպ բան մը եղած համարուի։ Քրիստոս յոգւոց հանեց. առ մարդկային ազգի թշուառութեան վրայ կարեկցելու նշանն էր։ Եփփաթա Ասորի կամ Քաղդէացի բառ մ'է, ֆաթ կամ ֆէթ (բացուիլ) բառէն եղած*

Ժողովուրդը կըզգար և կը հասկընար, որ Յիսուսի ամէն ըրած բաներն աղէկ էին. Նա մէկ կողմանէ հոգևոր հիւանդութեանց դարման կը տանի. միւս կողմանէ ալ մարմնոյ ցաւերը կ՚ամոքէ կամ մանաւանդ կը ջնջէ. վասն որոյ՝ թէև կը պատուիրէր՝ որ իրեն ըրածներն լռութեան քողով ծածկեն, այսու ամենայնիւ ժողովուրդը նորա գերմարդկային զօրութեան վրայ զմայլած յաշխարհ ամենայն կը սփռէր նորա գործոց համբաւը։

## Բ. Բժշկութիւն հիւանդաց բազմաց ՚ի ծովեզրին

Եւ գնացեալ անտի Յիսուս, եկն ՚ի ծովեզրն Գալիլեացւոց, և ելեալ ՚ի լեառն նստէր անդ. Մատեան առ նա ժողովուրդք բազումք՝ որ ունէին ընդ իւրեանս՝ կաղս, կոյրս, համրս, միակողմանիս, և այլս բազումս. և ընկեցին զնոսա առ ոտս նորա՝ և բժշկեաց զնոսա։ Մինչև զարմանալ ժողովրդոցն՝ որ տեսանէին, զի համրքն խօսէին, կաղք գնային, միակողմանիք բժշկէին, կոյրք տեսանէին, և փառաւոր առնէին զԱստուած Իսրայէլի. Մատթ. ժե. 29-32.

Աստուծոյ անունը կը փառաբանէր այն ժողովրդեան բազմութիւնն, որ ինչպէս ուրիշ անգամներ, այս անգամ ալ իր ունեցած կաղ, կոյր, համր, միակողմանի (սաքաթ) — խեղանդամ, հաշմ— և ուրիշ ազգի ազգի ցաւերով վարակեալ հիւանդները լեռը Յիսուսի առջև բերելով զմայլմամբ և սքանչացմամբ տեսաւ, որ համրերը սկսան խօսիլ, կաղերն՝ ուղիղ քալել, միակողմանիները բժշկուիլ և կոյրերը տեսնել։

## Գ. Կերակրել չորից հազարացն եօթն նկանակօք

Եւ կոչեցեալ առ ինքն Յիսուսի զաշակերտսն՝ ասէ. գթամ ՚ի ժողովուրդս, զի ահա երեք աւուրք են զի կան առ իս, և ո՛չ ունին ինչ ուտիցեն. և արձակել զդոսա նօթիս՝ ոչ կամիմ, գուցէ նուաղիցեն ՚ի ճանապարհի։ Ասեն ցնա աշակերտքն. ուր՝ մեզ յանապատի աստ ուստի՞ իցէ այնչափ հաց՝ մինչև յագեցուցանել զայսչափ ժողովուրդ։ Եւ ասէ ցնոսա Յիսուս. քանի՞ նկանակ ունիք. և նոքա ասեն. եօթն, և սակաւ ձկունս։ Եւ հրամայեաց ժողովրդեանն բազմել ՚ի վերայ գետնոյ։ Եւ առեալ զեօթն նկանակսն և զձկունսն գոհացաւ և եբեկ և ետ ցաշակերտսն, և նոքա ժողովրդեանն։ Կերան ամենեքեան և յագեցան. և բարձին զնշխարհս կոտորոցն՝ եօթն զամբիւղ լի։ Եւ որք կերանն՝ էին արք իբրև չորք հազարք. թո՛ղ զկանայս և զմանկունս։ Իբրև արձակեաց զժողովուրդսն, ել ՚ի նաւ՝ և եկն ՚ի սահմանս Մագդաղենայ։ Մատթ. ԺԵ. 32-39։

*Քրիստոս՝ հոգևոր և մարմնաւոր հիւանդութեանց դարման տանելուն հետ մեկտեղ ժողովրդեան վերայ գթալով այս երկու անգամ՝ անօթեցած ժողովուրդը կը կերակրէր՝ հացը հրաշիւք շատցնելով։ Աստուած՝ մեր հոգւոյն հետ՝ մեր մարմնոյն վրայ ալ իւր խնամքը կը տարածէ, ինչպէս որ առաջուց ըսած էր Նախնական հաւատացելոց. «խնդրեցէք նախ զարքայութիւնն Աստուծոյ, և այլն ամենայն յաւելցի ձեզ»։*

*Այս հրաշքին մէջ դիտելու կէտը սա՛ է, որ Յիսուս նախ հացի կարօտութիւնը կը հաստատէ աշակերտաց միջոցաւ. վասն զի պէտք եղած ատեն հրաշք կ՚ընէր։ «Օրհնեաց կամ գոհացաւ» այսինքն, երկնաւոր Հօր օրհնութիւնը կարդաց վրան, և կամ գոհութիւն տուաւ Հօր։ Մատ-*

*թէոս՝ Մագթաղեայ սահմաններն, իսկ Մարկոս Դալմանունեայ սահմանները գնաց Յիսուս՝ կ'ըսէ, իւր աշակերտաց հետ։ Այս վերջինն ալ Մագթաղայի մօտ էր կ'ըսուի։*

### Դ. Ցանդիմանութիւն խնդրողացն 'ի Նմանէ Նշան, եւ աշակերտացն վասն հացի

Եւ մատուցեալ Փարիսեցիքն եւ Սադուկեցիք փորձելով խնդրէին 'ի նմանէ՝ նշան յերկնից ցուցանել նոցա։ Նա պատասխանի ետ՝ եւ ասէ ցնոսա. յորժամ երեկոյ լինի՝ ասէք, պայծառ լինիցի՝ զի կարմրացեալ է երկինք։ Եւ առաւօտուն՝ այսօր մրրիկ, զի շառագունեալ տրտմութեամբ է երկինք. արդ՝ զերեսս երկնի գիտէք ճանաչել, եւ զնշան ժամանակիս ո՞չ կարէք գիտել. Մտթ. ԺԶ. 1—3։ Եւ հառաչեաց հոգւով իւրով եւ ասէ. զի՞ է՝ զի ազգս այս նշան խնդրէ. ամէն ասեմ ձեզ, թէ տացի նշան ազգիս այսմիկ։ Եթող զնոսա. դարձեալ եմուտ 'ի նաւ՝ եւ գնաց յայնկոյս։ Մարկ. ԺԶ. 12–13։

*Օդերուն անստոյգ երեւոյթներէն կը համարիք՝ թէ կարող էք գուշակել կամ թէ կը գուշակէք իսկ օդոց փոփոխութիւնները. բայց այս ժամանակին նշանն, այսինքն, մարգարէից՝ Մեսիայի համար կանխաւ ըրած գուշակութիւններըն, և թէ այս ահա այն ժամանակն է, ինչո՞ւ չէ՞ք կարող գիտնալ կամ չէ՞ք 'ի միտ առնուր, այլ կեղծաւորելով ուրիշ նշան կը խնդրէք ինձմէ։ Աստուծոյ յայտնած նշանները բաւ չէք համարիր, և կամահաճաբար, ձեր ուզած կերպերո՞վը նշան կամ հրաշք կ'ուզէք. Դանիէլի եօթանասուն եօթնեակներն չէ՞ք հաշուեր, մարգարէները չէ՞ք քններ. ո՞ւր է Յուդայի իշխանութիւնն՝ որ չը*

պիտի պակսէր՝ "Մինչև եկեսցէ Նա՝ որոյ իւր են հանդերձեալքն և Նա է ակնկալութիւն հեթանոսաց ։

Այսօր ալ ո՞րչափ մարդիկ կան, որ այն ժամանակի նշանները դեռ կ'ուրանան, և ուրիշները կը փնտռեն՝ նշան յերկնից, այսինքն, Եղիայի պէս երկնքէն կրակ իջեցնել, ևն ։ Հրեայք՝ աչքի երևալու ահաւոր ու սոսկալի բաներ կ'ուզէին, այլ Քրիստոս պէտք եղածը միայն կ'ընէր, այն չար ժողովրդեան՝ որ իրեն սիրոյն միայնակ անփոխանակելի առարկայն եղող Եհովան թողլով, և իրեն կուռքերը կամ կիրքերը պաշտելով կռապաշտութեամբ կը պոռնկէր, այն շնացող ժողովրդեան կ'ըսէր՝ Յովնանու նշանը պիտի տրուէր ։ Յովնան երեք օր ու երեք գիշեր ողջ մնաց 'ի փոր կիտին . այս՝ առ այն մեղաւոր ժողովուրդն Աստուծմէ ղրկուած ըլլալուն համոզիչ նշանն էր . Քրիստոսի թաղման և յարութեան նշանն ալ՝ նորա Աստուծմէ խրկուած ըլլալուն ամենապայծառ նշանը պիտի ըլլայ առ Իսրայէլ ։ Առանց նոցա ապօրինի խնդիրը կատարելու՝ անցաւ գնաց անոնցմէ ։

Գնացին և աշակերտքն յայնկոյս, և մոռացան առնուլ հաց ։ Ասէ ցնոսա Յիսուս . տեսէ՛ք և զգո՛յշ լերուք 'ի խմորոյ Սադուկեցւոց և Փարիսեցւոց ։ Նոքա խորհէին ընդ միմեանս՝ և ասէին թէ հաց ո՛չ բարձաք ։ Գիտաց Յիսուս և ասէ . զի՞ խորհիք 'ի միտս ձեր թերահաւատք՝ եթէ հաց ոչ ունիք ։ Տակաւին չիմանա՞յք՝ և ո՛չ յիշէք զհինգ նկանակսն 'ի հինգ հազարսն, և քանի՞ սակառի բարձէք ։ Եւ ո՞չ զեօթն նկանակսն 'ի չորս հազարսն, և քանի՛ զամբիւղս բարձէք ։ Արդ՝ զիա՞րդ ոչ իմանայք՝ եթէ ոչ վասն հացի ասացի ձեզ՝ զգուշ

լինել 'ի խմորոյ սադուկեցւոց և փարիսեցւոցն ։ Յայնժամ 'ի միտ առին, թէ ո՛չ ասաց զգուշանալ 'ի խմորոյ, այլ յաղանդոյ փարիսեցւոցն և սադուկեցւոց ։ Մտթ. ԺԶ. 5-12. Մրկ. Ը. 14—21 ։

Աշակերտներն իբրև նիւթական հացի խմոր կարծելով Քրիստոսի անուանած խմորը՝ պարտաւորեցին իրենց երկնաւոր վարդապետն, որ բացատրէ զայն ։ Եթէ նիւթական հացի համար ըլլար՝ կ'ըսէ, միթէ հո՞գ էր՝ որ կը պակսէր այն. չե՞ք յիշեր՝ թերահաւատնե՛ր, թէ հինգ հացիւ՝ հինգ հազար, և եօթն հացիւ՝ չորս հազար անձինք կշտացուցի. Ես՝ սադուկեցւոց ու փարիսեցւոց բարոյական խմորէն զգուշանալ կը հրամայեմ ձեզ, որ կեղծաւորութիւնն է ։ Խմորը՝ նըշանակ կ'առնու Քրիստոս հպարտութեան և կեղծաւորութեան՝ իբրև ուռեցընող ու թթուեցընող բան ։ Խմորով նաև իմացնել կ'ուզէ փարիսեցւոց, սադուկեցւոց և հերովդիանոսաց աղանդներն ու վարդապետութիւնները ։ Փարիսեցիք ու սադուկեցիք՝ թէև իրարու հակառակ, իրե՛նց իբր հաւասարակաց թշնամի կը համարէին զՔրիստոս, վասն զի Քրիստոս կեղծաւորութեան հակառակ էր ։ Երկու աղանդաց ալ ծառայող մարդիկ կեղծաւոր էին. վասն զի զիրենք խըմորող խմորը թունաւոր էր և թունաւորուած էին իր հետևողները ։

## Ն. Բժշկութիւն կուրին 'ի Բեթսայիդա

Գան 'ի Բեթսայիդա. և ածեն առաջի նորա կոյր մի, և աղաչէին զնա՝ զի մերձեսցէ 'ի նա ։ Եւ առեալ զձեռանէ կուրին՝ եհան արտաքոյ գեղջն, եթուք յաչս նորա, և ձեռն

եդ ՚ի վերայ նորա . և հարցանէր ցնա թէ տեսանիցե՞ս ինչ ։ Բացաւ՝ և ասէր . տեսանեմ զմարդիկ՝ զի շրջին իբրև ըզ ծառս ։ Դարձեալ եդ ձեռս ՚ի վերայ աչաց նորա՝ եբաց , և տեսանէր . ողջացաւ՝ և տեսանէր համարձակ զամենայն։ Արձակեաց զնա ՚ի տուն իւր՝ և ասէ . ՚ի շէնդ մի՛ մտանիցես , այլ ե՛րթ ՚ի տուն քո . և յորժամ ՚ի շէնն մտանիցես՝ մի՛ ումեք ասիցես ՚ի շէնին ։ Մրկ Ը. 22—26 ։

*Կ՚իմացուի , թէ այս մարդը չէր կոյր ՚ի ծնէ , այլ ետքէն կուրացեալ . Յիսուս տակաւ կը բըժշկէ զանի , որպէս զի իւր թերատեսութիւնը լաւ հասկնայ ինքնին ։ Եւ կարծես թէ այս կուրին աչաց տակաւ բացուիլը օրինակ մ՚ է՝ Հոգւոյն սրբոյ շնորհօք ՚ի հոգևոր կուրութենէ ՚ի լոյս աստուածգիտութեան դարձողի մը՝ որ առաջին անգամ ամէն հաւատալիք՝ ինչպէս որ են , այնպէս չըմբռներ , այլ տակաւ առ տակաւ Հոգւոյն շնորհօք լուսաւորուելով՝ վերջապէս հոգւոյն աչքերը բոլորովին կը բացուին ՚ի լոյս հաւատոյ ։ Յիսուս՝ փարիսեցւոց ու սադուկեցւոց նախանձը չը գրգռելու համար էր միայն , որ պատուիրեց բժշկեալ կուրին , որ քաղաք գնացած ատեն մարդու բան չըսէ ։*

## Զ. Դաւանութիւն Պետրոսի ՚ի դիմաց առաքելակցացն

Եւ եկեալ Յիսուս ՚ի կողմանս Փիլիպպեայ Կեսարեայն , հարցանէր ցաշակերտսն՝ և ասէր . զո՞ ոք ասեն զինէն մարդիկ՝ թէ իցէ որդի մարդոյ ։ Եւ նոքա ասեն . ոմն զՅովհաննէս Մկրտիչ , և այլք զԵղիա , և կէսք զԵրեմիա , կամ զմի ոք ՚ի մարգարէից ։ Մտթ. ԺԶ. 13—14 ։

*Փիլիպպոս չորրորդապետն Իտուրայեցւոց և Տրակոնացւոց աշխարհին , նորոգելով Պանէաս*

քաղաքը յակունս անդ Յորդանանու՝ Կեսարիա անուանած էր զայն ՚ի պատիւ երեսաց Տիբերիոս կայսեր. անոր համար Կեսարիա Փիլիպպեան սովոր էին անուանել զայն։

Յիսուս չը հարցներ՝ թէ փարիսեցիք, սադուկեցիք և այլք ի՞նչ կ՚ըսեն. ըստ որում գիտէր, թէ նոքա մոլորեցուցիչ կ՚անուանէին զինքը. այլ թէ հասարակաց կարծիքն ի՞նչ է իրեն նկատմամբ, ո՞վ է՝ կ՚ըսեն որդւոյ մարդոյ համար։ Եւ առաւ անոնցմէ հասարակաց գաղափարը։

Ասէ ցնոսա. Իսկ դուք զո՞ ասէք զինէն թէ իցեմ։ Պատասխանի ետ Սիմոն Պետրոս՝ և ասէ. Դու ես Քրիստոսն որդի Աստուծոյ կենդանւոյ։ Պատասխանի ետ Յիսուս՝ և ասէ ցնա. Երանի՜ է քեզ Սիմոն որդի Յովնանու. զի մարմին և արիւն ո՛չ յայտնեաց քեզ՝ այլ Հայր իմ որ յերկինսն է։ Եւ ես քեզ ասեմ. զի դու ես վէմ, և ՚ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, և դրունք դժոխոց զնա մի՛ յաղթահարեսցեն։ Եւ տաց քեզ զփականս արքայութեան երկնից. և զոր միանգամ կապեսցես յերկրի, եղիցի կապեալ յերկինս. և զոր արձակեսցես յերկրի, եղիցի արձակեալ յերկինս։ Մատթ. ԺԶ. 15—19։

Ապա աշակերտաց՝ իրենց հաւատքը հարցուց։ Սիմոն Պետրոս՝ միւս աշակերտաց կողմանէ իրենց հաւատքը զուրցեց և խոստովանեցաւ. «Դու ես Քրիստոսն Որդի Աստուծոյ կենդանւոյ»։ Բոլոր աշակերտք, բաց ՚ի Յուդայէ, այս հաւատքըն ունէին. Պետրոս անոնց կողմանէ անոնց և իւր հաւատքը խոստովանեցաւ, ինչպէս որ ուրիշ շատ անգամներ ալ սովորոյթ ըրած էր անոնց կողմանէ խօսիլ. Յիսուս բերանայիր. Երա-

նութիւն տուաւ Սիմոնին ։ Այս հաւատքը մարմնէն ու արիւնէն, այսինքն, մարդոց միջոցաւ չընկալար դու՝ ըսաւ, այլ երկնաւոր Հօրը լուսովը՝ որ Քրիստոսի խոնարհութեանն ու աղքատութեանը հակառակ կրցած էր առաքելոց՝ ինչպէս նաև Պետրոսի հոգւին լուսաւորել, թէև ոչ կատարելապէս ։ Անոր համար՝ "Դու Պետրոս, այսինքն վէմ ես ըսաւ, արդէն երկու տարի յառաջ տուած անունը Բեֆաս կրկնելով. "Եւ ՚ի վերայ այդր վէմ՝ (Բեֆայէ՝) շինեցից զեկեղեցի իմ" ։ Յորում եկեղեցին՝ Քրիստոսի ըսածը կ՚իմանամք, վասն զի իմ եկեղեցիս այնտի շինեմ, ըսաւ. (բոլոր Ս. Գրոց մէջ՝ Քրիստոս ըստ Յունական թարգմանութեան կ՚ըսուի՝ Պետրա կամ Բեֆա և ոչ բնաւ Պետրոս կամ Բեֆաս, ուր Յովնանու որդան Սիմոնին միշտ Պետրոս կամ Բեթրոս յիշուած է և ոչ երբէք Բէթրա կամ Պետրա ։

Ըսել է որ Յիսուս իր եկեղեցին այս դաւանութեան (Դու ես Քրիստոսն Որդի Աստուծոյ կենդանւոյ), կամ Քրիստոսի՝ Որդի Աստուծոյ ըլլալուն ճշմարտութեան, և կամ նոյն իսկ Քրիստոսի Աստուծոյ կամ ճշմարիտ դաւանութեան վերայ հիմնեց ։

Քրիստոս ինքը Բեֆա, այսինքն վէմ է. Սիմոնի հաւատոց հաստատութիւնը տեսնելով՝ զանի ալ վէմ անուանեց, ինչպէս բոլոր աշակերտներն՝ իրենց հաւատոց հաստատութեանն համար, ինչպէս նաև Պետրոս ինքը զբոլոր հաւատացեալները վէմ կ՚անուանէ ։ Ասկէց յայտնի կ՚ըլլայ, թէ եկեղեցին մեծ շէնք մ՚է, վէմը կամ հիմը Քրիստոս է, առաքեալք և մարգարէք՝ գլխաւոր հիմունքն կամ վէմք են, և հաւատացեալք՝ հիման և հիմանց վերայ հաստատեալ վէմեր ։

եւ դրունք դժոխոց զնա մի՛ յաղթահարեսցեն»։ Հին ատենն արեւելից քաղաքներու դըռներէն ներս ընդարձակ տեղեր թողուած էին, ուր կը տեսնուէին դատաստանները՝ ուր կը ժողովէին օրէնսգէտք և իրաւարարք։ Ասկէց սովորութիւն եղաւ արեւելից մէջ բարձրագոյն արդարութեան ատեանները նիստ ըրած կամ իշխանութեանց բնակած տեղերը՝ դուռն կամ դըռունք անուանել, ինչպէս մինչև ցարդ Տաճկաստան կ՚անուանէ իւր արդարութեան ատեանը բարձրագոյն դուռն (Պապը—Ալի)» տիտղոսով։ Դժոխոց դուռն այլաբանաբար՝ չարախորհուրդ ատեանք, չար խորհուրդք, Քրիստոսի եկեղեցին տապալել կամեցող և սատանայի գործիք եղող բարձրագոյն իշխանութիւնք կը հասկցուին։ Եւ արդարև ո՛չ Պարսից, ո՛չ Հռովմայ և ո՛չ այլոց ազգաց իշխանութիւնները դարերով մարտընչելէն և զեկեղեցին հալածելէն վերջն ալ չը կըրցան յաղթել անոր։ Այս ամենէն յետոյ Յիսուս ամէնուն մէկտեղ 'ի դէմս Պետրոսի՝ կապելոյ և արձակելոյ իշխանութիւնը տալ խոստացաւ։ Կապելոյ և արձակելոյ իշխանութիւնն առաւել դիւրահասկանալի գործելու համար՝ բանալեաց իշխանութիւն կ՚անուանէ զայն, որոյ բացայայտ նշանակութիւնն է՝ հազարապետութիւն Աստուծոյ եկեղեցւոյն մէջ, տնտեսութիւն և մատակարարութիւն շնորհաց, ընդունել զոք 'ի խորհուրդս եկեղեցւոյ և դուրս հանել, հաստատելոց գործոց նկատմամբ Աստուծոյ կողմէն իրեն տուած իշխանութեամբն տալ մեղաց թողութիւն և սրբութեամբ և աստուածային շնորհաց ընդունելութեան տրամադրութեամբ արժանաւոր-

զխաչ մահուան՝ ՚ի ձեռն մարդկանց։

Եւ կոչեցեալ առ ինքն զժողովուրդն աշակերտօքն հանդերձ՝ ասէ ցնոսա. Եթէ ոք կամի գալ զհետ իմ՝ ուրասցի զանձն իւր, և բարձցէ զխաչ իւր՝ և եկեսցէ զհետ իմ. Զի որ կամիցի ապրեցուցանել զանձն իւր՝ կորուսցէ զնա. և որ կորուսցէ զանձն իւր վասն աւետարանին, ապրեցուսցէ զնա։ Զի՞նչ օգուտ է մարդոյ՝ եթէ զաշխարհս ամենայն շահեսցի. և զանձն իւր տուժեսցի։ Կամ զի՞նչ տացէ մարդ՝ փրկանս անձին իւրոյ։ Զի որ ոք ամօթ համարեսցի զիս և զբանս իմ ՚ի շնացօղ և ՚ի մեղաւոր ազգիս յայսմիկ. և որդի մարդոյ յամօթ արասցէ զնա՝ յորժամ եկեսցէ փառօք Հօր իւրոյ և հրեշտակօք սրբովք։ Մրկ. Ը. 34—38։

*Ամեն իմ ետևէս եկողները պէտք է որ իրենց խաչը կրեն. ապա թէ ոչ՝ անձնուիրութեան մէջ ինձի աշակերտութիւն անհնարին է. թէ՛ մարմնոյ և թէ՛ հոգւոյն կեանքը միանգամայն չահիլ չը կրնար ըլլալ. ո՛վ որ մարմնոյ կեանքը կը փընտըռէ՝ հոգւոյն կեանքը պիտի կորսնցնէ։ Ով որ մարդկային երկիւղը նախամեծար կը համարի՝ քան զիս խոստովանելով՝ մարդկային տառապանաց մատնուիլը, կամ առ աչառութեան զիս կը մոռնայ կամ կ'ուրանայ, անշուշտ ես ալ զանի պիտի մերժեմ իմ արքայութենէս, երբ անձնուրացներուն՝ յաւիտենական կեանք, և անձնասէրներուն՝ յաւիտենական մահ տալու համար գամ իմ աստուածային փառօքս և հրեշտակներովս մէկտեղ։*

Եւ ասէ ցնոսա. ամէն ասեմ ձեզ. զի են ոմանք ՚ի սոցանէ որ աստ կան, որք մի՛ ճաշակեսցեն զմահ՝ մինչև տեսցեն զարքայութիւնն Աստուծոյ եկեալ զօրութեամբ։ Մրկ. Ը. 39։

զլխովի մատնեմ 'ի ձեռն մարդկանց։

Եւ կոչեցեալ առ ինքն 'զժողովուրդն աշակերտօքն հանդերձ՝ ասէ ցնոսա. Եթէ ոք կամի գալ զհետ իմ՝ ուրասցի զանձն իւր, եւ բարձցէ զխաչ իւր՝ եւ եկեսցէ զհետ իմ։ Զի որ կամիցի ապրեցուցանել զանձն իւր՝ կորուսցէ զնա. եւ որ կորուսցէ զանձն իւր վասն աւետարանին, ապրեցուսցէ զնա։ Զի՞նչ օգուտ է մարդոյ՝ եթէ զաշխարհս ամենայն շահեսցի. եւ զանձն իւր տուժեսցի։ Կամ զի՞նչ տացէ մարդ՝ փրկանս անձին իւրոյ։ Զի որ ոք ամօթ համարեսցի զիս եւ զբանս իմ 'ի շնացօղ եւ 'ի մեղաւոր ազգիս յայսմիկ, եւ Որդի մարդոյ յամօթ արասցէ զնա՝ յորժամ եկեսցէ փառօք Հօր իւրոյ եւ հրեշտակօք սրբովք։ Մրկ. Ը. 34—38։

*Ամեն իմ ետեւէս եկողները պէտք է որ իրենց խաչը կրեն. այսպէս թէ ոչ՝ անձնդիւրութեան մէջ ինձի աշակերտութիւն անհնարին է. թէ՛ մարմնոյ և թէ՛ հոգւոյն կեանքը միանգամայն շահիլ չը կրնար ըլլալ. ո՛վ որ մարմնոյ կեանքը կը փրկէ՝ հոգւոյն կեանքը զլխովի կորսընցնէ։ Ով որ մարդկային երկիւղը նախամեծար կը համարի՝ քան զիս խոստովանելով՝ մարդկային տառապանաց մատնուիլը, կամ առ աչառութեան զիս կը մոռնայ կամ կ'ուրանայ, անշուշտ ես ալ զանի զլխովի մերժեմ իմ արքայութենէս, երբ անձնուրացներուն՝ յաւիտենական կեանք, և անձնասէրներուն՝ յաւիտենական մահ տալու համար գամ իմ աստուածային փառօքս և հրեշտակներովս մէկտեղ։*

Եւ ասէ ցնոսա. ամէն ասեմ ձեզ. զի են ոմանք 'ի սոցանէ որ աստ կան, որք մի՛ ճաշակեսցեն զմահ՝ մինչեւ տեսցեն զարքայութիւնն Աստուծոյ եկեալ զօրութեամբ։ Մրկ. Ը. 39։

Այսինքն, մի՛ մեռանիցին ոմանք՝ որ աստ կան, մինչև տեսցեն զփառս Աստուծոյ 'ի Թափոր, և պիտի համոզուին, որ այս խոնարհ կերպարանօք մարդն ինչ մեծ փառքի տէր է. և պիտի իմանան, որ այդ փառաց և մեծութեանց տէրը պիտի չարչարուի ևս։

# ԳԼՈՒԽ ԽԱ.

ՊԱՅԾԱՌԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ ՔՐԻՍՏՈՍԻ .— ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԴԻՒԱՀԱՐԻՆ .— ԴԱՐՁԵԱԼ ԳՈՒՇԱԿՈՒԹԻՒՆ ՉՉԱՐՉԱՐԱՆԱՑՆ .— ԵՐԿԴՐԱՄԵՆԻՆ ՀԱՏՈՒՑՈՒՄՆ ։

## Ա. Պայծառակերպութիւն Քրիստոսի

Եւ եղեւ յետ այսց բանից իբրեւ աւուրք ութ, առեալ զՊետրոս և զՅովհաննէս և զՅակոբոս՝ ել 'ի լեառն կալ յաղօթս ։ Եւ 'ի կալն նորա յաղօթս՝ եղեւ տեսիլ երեսաց նորա այլակերպ . և փոխեցաւ հանդերձ նորա՝ և եղեւ սպիտակ փայլատակն ։ Եւ ահա արք երկու խօսէին ընդ նմա . որ էին Մովսէս և Եղիա ։ Երեւեալ փառօք ։ և ասէին զելս նորա՝ զոր կատարելոց էր յԵրուսաղէմ ։ Իսկ Պետրոս՝ և որ ընդ նմայն էին՝ ծանրացեալք 'ի քնոյ զարթուցեալ , տեսին զփառսն նորա՝ և զերկոսին արսն որ կային առ նմա ։ Եւ եղեւ 'ի մեկնելն նոցա 'ի նմանէ , ասէ Պետրոս ցՅիսուս . Վարդապետ՝ բարւոք է մեզ աստ լինել , և արասցուք երիս տաղաւարս , մի քեզ՝ և մի Մովսէսի՝ և մի Եղիայի . և ո՛չ գիտէր զինչ խօսէր ։ Եւ իբրեւ զայս ասաց , եղեւ ամպ և հովանի եղեւ

Քրիստոս իւր փառքը ցուց հաւատոյ մէջ գան-գաղտնիքներուն, որպէս զի զօրանան այն հաւատ-քին մէջ՝ «Դու ես Քրիստոս Որդին Աստուծոյ կեն-դանւոյն», և միանգամայն հասկնան, թէ Քրիս-տոս չէ մի 'ի մարգարէից, այլ տէրն է ամենայն մարգարէից. և աշխարհիս և Մովսիսի և Եղիայի կենդանեաց և մեռելոց։ Եւ միշտ ամենայն մէջէն խօսող Աստուածն այս երկրորդ անգամ հանդի-սապէս հաստատեց, թէ Այն է իւր սիրելի և ընտրեալ Որդին, և պէտք է որ ամէն մարդ Ա-նոր խօսքին մտիկ ընէ, զի Անոր ձայնը իւր ձայ-նըն է.

Պետրոս շուարեցաւ, և Անոր՝ որոյ ոչ գոյ տեղի ուր դիցէ զգլուխ իւր, զի և երկինք և եր-կիր չեն բաւական նմա, տաղաւար շինել կ'ա-ռաջարկէ երեք հատ՝ մին Յիսուսի և միւս եր-կուքը Մովսիսի և Եղիայի համար. չ'ուզեր այն տեղէն վար իջնել. չ'ուզեր առջի խորհուրդներ-րուն՝ չարչարանաց եւն. գործերը տեսնել. տկար է Պետրոս, և միտքն ու հոգին չէ զօրեր. դեռ իւր առջի խօսքին վրայ է։ Աստուած հին օրէն-քըն ալ կը կատարելագործէ և օրէնսդիրը կը ցու-ցունէ, որոյ իւր Որդին ըլլալը յայտնապէս կը հը-րատարակէ, և միանգամայն բոլոր աշխարհը կը հրաւիրէ՝ որ անոր լսեն ու մտիկ ընեն.

Այն բարբառէն յետոյ՝ միայն Յիսուս մնաց։

Եւ մինչդեռ իջանէին 'ի լեռնէ անտի, պատուիրեաց նո-ցա Յիսուս՝ և ասէ. Մի՛ ումեք ասիցէք զտեսիլդ՝ մինչև որ-դի մարդոյ 'ի մեռելոց յարիցէ. Մտթ. ԺԷ. 9. Եւ նո-քա լռեցին, և ո՛չ ումեք պատմեցին յաւուրսն յայնոսիկ և ոչինչ՝ յորոց տեսինն. Ղուկ. Թ. 36.

*Յիսուսի այս պատուէրը կ'արգիլուր, որ աշակերտք ոչինչ խօսին այն տեսլեան վրայօք. վասըն զի եթէ պատմեն՝ ոչ ոք պիտի հաւատայ. այլ երբ 'ի մեռելոց յարութիւն առնու՝ որ սքանչելեաց գերագոյնն է, այն ատեն թո՛ղ պատմեն. և պիտի տեսնեն, թէ աշխարհ ամենայն պիտի հաւատայ: Այս պատուէրը ընդունեցին աշակերտք. և այնպէս գործադրեցին.*

Եւ նոքա զբանն 'ի մտի առնէին, և խնդրէին ընդ միմեանս՝ թէ զինչ իցէ 'ի մեռելոց յառնել: Հարցին զնա և ասեն. զինչ է այն զոր դպիրքն ասեն՝ եթէ նախ Եղիայի պարտ է գալ: Նա պատասխանի ետ նոցա և ասէ. Եղիա նախ եկեալ յարդարեսցէ զամենայն. և զի՞արդ գրեալ է զՈրդւոյ մարդոյ, զի բազում ինչ չարչարեսցի և անարգեսցի: Այլ ես ասեմ ձեզ, եթէ Եղիա եկն, և արարին ընդ նմա զինչ և կամեցան. որպէս և գրեալ է վասն նորա. Մարկ. Թ. 9—12: Նոյնպէս և Որդի մարդոյ չարչարելոց է 'ի նոցանէ: Յայնժամ 'ի միտ առին աշակերտքն, թէ վասն Յովհաննու Մկրտչի ասաց ցնոսա. Մատթ. ԺԷ. 12—13:

*Մաղաքիայի այս խօսքն իրաւ է, թէ Եղիա պիտի գայ. բայց արդէն եկած ալ է. եկած է մէկը Եղիայի զօրութեամբ և հոգւովը, բայց անոր իրենց ուզածն ըրին. ես ալ անանցմէ պիտի չարչարուիմ: Այն ատեն հասկըցան աշակերտները, թէ Եղիայի նախանձախնդրութեամբ եկողն՝ Յովհաննէս Մկրտիչն էր:*

## Բ. Բժշկութիւն դիւահարին

Եւ եկեալ առ աշակերտսն՝ տեսին ամբոխ բազում շուրջ զնոքօք, և դպիրսն՝ զի վիճէին ընդ նոսա: Եւ վաղվաղակի

ալ ամիս և կամ ժամանակ ժամանակ աւելի կը չարչարուին 'ի դիւէն ։ Ահա այսպիսի դիւահար մի բերուած էր Քրիստոսի աշակերտաց քով՝ նորա բացակայութեանն ատեն . բայց նոքա դեռ իրենց հաւատոյ փորձերուն մէջ անհաստատ չը կրցան զայն բժշկել, և հոն վիճելու տեղի տուին ։ Քրիստոս եկաւ յանդիմանեց զիրենք . «մինչև ե՞րբ համբերեմ, ըսաւ, ձեր անհաւատութեան կամ թերահաւատութեան . ինձի բերէ՛ք զայն» ։ Եւ ուզելով՝ ինչպէս սովոր էր, մանկան հօրը հաւատքը չափել, և տեսնելով՝ թէ մարդն օգնութիւն և իրեն հաւատոյ թերութեան լրումն կը խնդրէ, բժշկեց տղան և հօրը յանձնեց ։

Աշակերտներն առանձին հարցուցին անոր, թէ ինչո՞ւ մեք ալ չը կրցինք բժշկել, մեք՝ որ արդէն այդ իշխանութիւնն առած եմք 'ի քէն ։ «Ձեր թերահաւատութենէն է՝ ըսաւ Քրիստոս . դուք եթէ մանանխոյ հատի չափ ալ հաւատք ունենայք, և լեռները տեղափոխել, այսինքն, անկարելի բաներ իսկ հնարաւոր ընել ուզէք՝ դժուարին չ'ըլլար ձեզ համար ։ Սակայն այս տեսակ դևն ուրիշ բանով չը բժշկուիր, եթէ ոչ պահօվք և աղօթիւք» . այսինքն, երբ փորձութիւնը մեծ, վտանգն ահաւոր, և սատանան խիստ կատղած է, պէտք է որ մարդս իւր սովորական կերակուրներն և ուրախութիւնները մէկդի դնէ, իւր մարմնոյն ցանկութիւնները կատարելէ ետ կենայ, և Աստուծով զօրանալու և հաւատքը կենդանացնելու համար աղօթս մատուցանէ առ Աստուած . այն ատեն կը յաղթէ փորձութեան, դիւին և սատանային ։

### Գ. Դարձեալ գուշակութիւն չարչարանացն

Եւ անտի ելեալ անցանէին ընդ Գալիլեա. եւ ոչ կամէր՝ եթէ ոք գիտասցէ: Քանզի ուսուցանէր զաշակերտսն իւր եւ ասէր ցնոսա. Թէ որդի մարդոյ մատնելոց է ՚ի ձեռս մարդկան, եւ սպանցեն զնա. եւ եթէ սպանցեն՝ յետ երից աւուր յարիցէ. Մարկ. Թ. 29—30: Եւ նոքա ոչ գիտէին զբանն, եւ էր ծածկեալ ՚ի նոցանէ՝ զի մի՛ գիտասցեն: Եւ երկնչէին հարցանել զնա վասն բանին այնորիկ. Ղուկ. Թ. 45:

Գալիլիայէն անցնելու ատեն չէր ուզեր որ իմացուի. վասն զի հայրական տնօրինութեանց լրման ժամը մօտեցած լինելով կը փութայ որ օր յառաջ յԵրուսաղէմ հասնի: Ճամբան սկսաւ նորէն աշակերտները պատրաստել մօտաւոր ապագայի մէջ կատարուելիք բաներուն, ինչպէս որ շատ անգամ յիշած էր, թէև անոնք դեռ ոչինչ կը հասկնային իւր խօսքերէն: Կ՚ուզէին իրենց անհասկանալի եղած խորհրդոց բացատրութիւնները խնդրել, բայց կը վախէին, որ Պետրոսի նման յանդիմանութեանց կ՚արժանանան:

### Դ. Երկդրամենին հատուցումն

Իբրեւ եկին ՚ի Կափառնաում, մատեան՝ որք զերկդրամեանն պահանջէին՝ առ Պետրոս, եւ ասեն. Վարդապետն ձեր ո՞չ տայ զերկդրամեանն: Եւ ասէ. այո՛: Եւ իբրեւ եմուտ ՚ի տուն՝ յառաջեաց նա ցնա Յիսուս եւ ասէ. Զի՞նչ թուի քեզ Սիմոն. թագաւորք աշխարհի յումմէ՞ առնուն զհարկս կամ զհաս, յորդւո՞ց իւրեանց թէ յօտարաց: Եւ իբրեւ ասաց՝ թէ յօտարաց, ասէ ցնա Յիսուս. ապա ուրեմն ազատ են որդիքն: Բայց զի մի՛ գայթակղեցուսցուք զնոսա, երթ ՚ի ծո-

ե՛ ընկեա՛ կարթ, և զառաջին ձուկն որ ելանիցէ, ա՛ռ, և բա՛ց զբերան նորա, և գտանիցես սատեր. զայն առեալ տացես նոցա ընդ իմ և ընդ քո: Մատթ. ԺԷ. 23-26:

*Երկդրամեան տուրքն էր կէս արծաթի սիկղ, կամ չորս դրամ արծաթի, զոր իւրաքանչիւր Հրէայ տարուէ տարի կը հատուցանէր Հերովդի կամ Հռովմայեցւոց, և կամ 'ի պէտս ծախուց տաճարին, և զոր ցայնվայր վճարած ըլլալու էր Քրիստոս: Յիսուս իբրև իւր պարտաւորութեանց ճշդիւ կատարող՝ չուղելով պնդել, թէ ինքն իբրև թագաւորական ցեղի սերունդ՝ ազատորդի է, (Արևելեան թագաւորք իրենց ընտանեաց անդամներէն տուրք չէին առնուր) և տուրք վճարելու հարկին ենթակայ չէ, և թէ իբրև Աստուած՝ և թագաւոր թագաւորաց՝ մարդկային ազգէն վճարելի իրաւունքներ ունի, զերկդրամեանըն հատոյց իբրև մարդ, և իբրև Աստուած, ձըկան բերնէն սատերը դուրս կորզեց հանեց, որ չորս դրամ կ'արժէր, երկու՝ իրեն, և երկու՝ Պետրոսին համար. այս՝ իբրև Աստուած տեսաւ ամենուն աչաց տեսութենէն խուսափող ձուկն, իբրև Աստուած ստեղծեց այն սատերը. վասն զի ծով և ցամաք, երկինք և երկիր և որ ինչ 'ի նոսա՝ կը հնազանդին անոր:*



# ԳԼՈՒԽ ԻԲ.

ԽՐԱՏ ԵՒ ՕՐԻՆԱԿ ԽՈՆԱՐՀՈՒԹԵԱՆ .— ԶԳՈՅՇ ԼԻՆԵԼ Ի ԳԱՅԹԱԿՂՈՒԹԵԱՆՑ . — ԱՌԱԿ ՄՈԼՈՐԵԱԼ ՈՉԽԱՐԻՆ . — ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ ԿԱՊԵԼՈՅ ԵՒ ԱՐՁԱԿԵԼՈՅ .— ՆԵՐԵԼ ՅԱՆՑԱՒՈՐԻՆ ԱՆՍԱՀՄԱՆԱՐԱՐ .— ԱՌԱԿ ԶԱՐ ԾԱՌԱՅԻՆ :



## Ա. Խրատ եւ օրինակ խոնարհութեան

Եմուտ խորհուրդ 'ի նոսա , թէ ո՞ արդեօք մեծ իցէ 'ի նոցանէ . Ղուկ . Թ. 46 . Յայնմ աւուր մատեան աշակերտքն առ Յիսուս և ասեն , ո՞վ իցէ 'ի մէջ մեծ յարքայութեան երկնից . Մատթ. ԺԸ. 1 . Եկն 'ի Կափառնաում , և իբրև եմուտ 'ի տուն ՝ հարցանէր զնոսա : Զի՞նչ վիճէիք զճանապարհայն ընդ միմեանս , Եւ նոքա լուռ լինէին . զի ընդ միմեանս վիճէին 'ի ճանապարհին , թէ ո՞վ մեծ իցէ : Եւ իբրև նստաւ ՝ կոչեաց զերկոտասանսն և ասէ ցնոսա . եթէ ոք կամի առաջին լինել՝ եղիցի ամենեցուն կրտսեր և ամենեցուն սպասաւոր : Մարկ . Թ. 32-34 . Եւ կոչեաց առ ինքն Յիսուս մանուկ մի , կացոյց զնա 'ի մէջ նոցա , և ասէ . ամէն ասեմ ձեզ . եթէ ոչ դարձջիք և եղիջիք իբրև զմանկունս՝ ոչ մտանիցէք յարքայութիւն երկնից : Արդ որ խոնարհեցուսցէ զանձն իբրև զմանուկս զայս՝ նա է մեծ յարքայութեան երկնից : Եւ որ ոք ընկալցի մանուկ մի այսպիսի յանուն իմ՝ զիս ընդունի : Մատ. ԺԸ. 2-5 : Եւ որ զիս ընդունիցի՝ ոչ զիս ընդունի , այլ զայն՝ որ առաքեացն զիս : Մարկ . Թ. 36 :

*Յիսուս արքայութեան խօսք ըրաւ . աշակերտներէն երեքը միայն հետն 'ի Թաբօր սա-*

րած՝ իւր փառքը ցցուց, Պետրոսի՝ 'ի դէմս առաքելոց բանալիք խոստացած էր, ուստի անշուշտ Պետրոսէ սկսեալ իւրաքանչիւր ոք մաքէն կ'անցընէր, թէ ո՞վ է մեծ Աստուծոյ արքայութեան մէջ ։ Ըսել է որ Յիսուս Պետրոսի մեծութիւն չը տուաւ. վասն զի եթէ այսպիսի բան մ''ըրած ըլլար՝ անտարակոյս այս հարցումը չը պիտի ընէին ։ Առաքեալք տակաւին զհոգին Աստուծոյ չընդունած՝ փարիսեցիներէն ուսած շատ մը սխալ գաղափարներ ունեցած ըլլալու էին Մեսիայի թագաւորութեան նկատմամբ. Քրիստոս պատասխանեց. ճշմարիտ կ'ըսեմ ձեզի. թէ որ ձեր այդ կարծեաց սխալանքն իմանալով զայն չը փոխէք, և տղու պէս խոնարհ, միամիտ և հլու չը լինիք՝ երկնից թագաւորութիւնը ձեզ համար չէ. վասն զի Աստուծոյ արքայութեան մէջ մեծ լինել փափագողը՝ քան զամենեսին ստոր և ամենուն ծառայ պիտի լինի ։ Եւ յինքն օրինակելով փոքրներն ու նուաստ համարուածները՝ խոնարհութիւնը սիրելի կ'ընէ իւր աշակերտաց ։

Այս նախագահութեան, մեծամտութեան և գոռոզութեան խորհուրդներն, այսօր ալ ո՞րչափ մա՛րդոց սրտերուն մէջ մուտ գտած՝ ամեն բան մոռցընել տուած է. Յիսուս կը ճանչէ նոցա սըրտից խորհուրդները, զի ամեն բան մերկապարանոց է Աստուծոյ առջև ։ Քրիստոսի 'ի գիրկն առած տղուն օրինակը թո՛ղ մեզի կենդանի դաս մ''ըլլայ միշտ, թէ ամեն Քրիստոնէի ճշմարիտ մեծութիւնն՝ իրենց տկարութիւնն ու ոչնչութիւնը սրտովին զգալուն մէջ կը կայանայ,

Պատասխանի ետ նմա Յովհաննէս և ասէ . վարդապետ՝ տեսաք զոմն , զի յանուն քո դեւս հանէր՝ և զնա ինք ո՛չ Հրմէր , և արգելաք զնա ։ Եւ նա ասէ . մի՛ արգելուք զնա . զի ո՛չ ոք է որ արասցէ զօրութիւնս յանուն իմ , և կարասցէ հայհոյել զիս ։ Զի որ ո՛չն է ընդդէմ մեր հակառակ , 'ի մեր կողմն է ։ Եւ որ ոք արբուսցէ ձեզ ջուր բաժակաւ յանուն յայս , թէ դուք Քրիստոսի էք , ամէն ասեմ ձեզ՝ մի՛ կորուսցէ զվարձս իւր ։ Մարկ. Թ. 37—40 ։ Ղուկ. Թ. 49—50.

*Քրիստոնէից ոմանք ՝ղանազան բաներու մէջ պարզմտութեամբ չը միաբանելով միմեանց հետ՝ դարձեալ եկեղեցւոյ անդամ կը համարուին , այսինքն , Քրիստոսէ զատուած չեն՝ երբ Քրիստոսի Տեառն մերոյ յայտնութեան չեն հակառակիր։ Ա՛չ ոք իրաւունք ունի տարբեր ձեւերով և արարողութիւններով զՔրիստոս պաշտողները քամահելու և արքայութենէ արտաքսեալ հրատարակելու . կրօնականներողամտութիւնը՝ նոյն իսկ կրօնից հիմնադրէն ՝կըսկսի , և եկեղեցւոյ և Քրիստոնէական հաւատոց ընդհանուր ծաւալման միակ միջոցն է ։ Ծառին ոստերն որչափ որ իրարմէ հեռացած երևին՝ իրարմէ զատուած չեն վասն զի մի և նոյն արմատին վրայ բուսած են ։*

## Բ. Զգոյշ լինել 'ի գայթակղութեանց

Եւ որ ոք գայթագղեցուսցէ զմի 'ի փոքրկանցս՝ որ հաւատան յիս , լաւ էր նմա առաւել՝ եթէ արկեալ էր ընդ պարանոց նորա երկան իշոյ , և ընկեցեալ 'ի ծով ։ Մարկ. Թ. 41 ։ Վա՜յ աշխարհի 'ի գայթագղութեանց . հարկ է գալ գայթագղութեանց , բայց վա՛յ մարդոյն այնմիկ՝ յորոյ ձեռն գայցէ գայթագղութիւն ։ Մատթ. ԺԸ. 7 ։ Ղուկ. ԺԷ. 1—2։ Եւ եթէ գայթագղեցուսցէ զքեզ ձեռն քո , հա՛տ՝ ընկեա՛ 'ի-

քեն · զի լաւ իցէ քեզ խեղ մտանել ՚ի կեանսն յաւիտենից, քան երկուս ձեռս ունել՝ եւ երթալ ՚ի գեհեն ՚ի հուրն անշէջ ։ Ուր որդն նոցա ո՛չ մեռանի՝ եւ հուրն ո՛չ շիջանի ։ Եւ եթէ ոտն քո գայթագղեցուցանէ զքեզ, հա՛տ՝ ընկեա՛ զնա ՚ի քէն · լաւ է քեզ կաղ մտանել ՚ի կեանսն յաւիտենից, քան երկուս ոտս ունել՝ եւ անկանել ՚ի գեհեն ՚ի հուրն անշէջ ։ Ուր որդն նոցա ո՛չ մեռանի՝ եւ հուրն ո՛չ շիջանի ։ Եւ եթէ ակն քո գայթագղեցուցանէ զքեզ, հան զնա ՚ի բաց · լաւ է քեզ միով ականբ մտանել յարքայութիւն Աստուծոյ, քան երկուս աչս ունել՝ եւ անկանել ՚ի գեհեն ։ Ուր որդն նոցա ո՛չ մեռանի՝ եւ հուրն ո՛չ շիջանի ։ Մարկ. Թ. 42—47 ։ Մատթ · ԺԸ. 8—9 ։

*Ո՛վ որ հաւատացելոց հոգեւորական վնասուն պատճառ կը լինի, աւելի աղէկ կ՚ընէ՝ որ իշոյ երկանաքար մը (Հին ատենը Հրէայք իշոյ դարձուցած երկանաքար կը կախէին չարագործաց պարանոցէն և ծովը կը նետէին) կախէ պարանոցէն ու ծովը իյնայ. վասն զի թէև աշխարհ բազմաթիւ գայթակղութեանց երեսէն մեծամեծ չարիք պիտի տեսնէ, բայց վա՜յ գայթակղութեանց պատճառ եղող անձին՝ որ սրտի ապականութեան արգասիք է ։ Նոյն իսկ եթէ մարմնոյդ անդամներէն մէկը, օրինակի համար աչքդ կամ ոտքդ և կամ ձեռքդ՝ քու գայթակղութեանդ պատճառ տան՝ հանէ՛ մէկդի նետէ՛ զանոնք, երբ տեսնես՝ թէ նոքա քու հոգւոր կորստեանդ կամ վնասուդ առիթ պիտի լինին, և զքեզ այն գեհենը նետելու պատճառ պիտի տան, ուր խղճի խայթը անվախճան է և յաւիտեանս պիտի տանջէ զքեզ ։*

Զի ամենայն ինչ հրով յաղեսցի, եւ ամենայն ողջակէզ աղի-

յաղեսցի : Բարւոք է աղ, եւ եթէ աղն անհամեսցի , իւ՞ հա-մեմեսցի , արդ՝ դուք ունիջի՛ք յանձինս ձեր աղն , եւ խա-ղաղութիւն արարէ՛ք ընդ միմեանս : Մարկ. Թ. 48—49 :

Յայտնի է թէ ամեն ողջակէզ կամ զոհ աղիւ կ'աղուէր . այսպէս հուրը պիտի աղէ զամեն մարդ՝ որ քրիստոնեայ է . այսինքն՝ նեղութիւնք, հալածանք , յափշտակութիւն ընչից և չարչա-րանք պիտի կրեն քրիստոնեայք : Այս զոհողու-թիւններէն փախչող ամենայն ոք 'ի գեհենին հրոյ արդարութեամբն Աստուծոյ պիտի աղուի 'ի պատիժ : Աղը բարւոք է . Աստուծոյ շնորհաց ա-ղը պահպանող է զմեզ ամեն նեղութիւններէ . ուստի աղիւ համեմելու պէս բարեխառնեցէք ձեր գնացքն ու խօսքերն , այսինքն . քաղցրու-թեամբ և խաղաղութեամբ վարուեցէ՛ք իրարու հետ , կամ Աստուծոյ շնորհաց աղն առատու-թեամբ ունեցէք ձեր սրտին մէջ , որպէս զի ե-կեղեցին մշտնջենաւոր խաղաղութիւն ունենայ :

Զգո՛յշ լերուք՝ մի՛ արհամարհիցէք զմի 'ի փոքրկանցս յայս-ցանէ . ասեմ ձեզ զի հրեշտակք նոցա յերկինս հանապազ տե-սանեն զերեսս Հօր իմոյ՝ որ յերկինս է : Զի եկն Որդի մարդոյ կեցուցանել զկորուսեալն : Մատթ. ԺԸ. 10—11 :

Զգոյշ կեցէ՛ք , չ'ըլլայ որ հաւատացեալներէս ամենէն փոքրն արհամարհէք , զի նոցա պահա-պան հրեշտակք՝ որք միշտ Աստուծոյ ծառայու-թեան մէջ են , յերկինս զրկելոյն համար 'կը բա-րեխօսեն և զրկողին համար կը բողոքեն առ Հայ-րըն իմ երկնաւոր : Ես եկայ կորուսեալ հոգին չահելու և ոչ չահեալը կորսնցնելու . այսպէս կը պատուիրեմ նաև ամեն անոնց՝ որք յիս կը հաւատան :

## Գ. Առակ մոլորեալ ոչխարին ։

Զիա՞րդ թուի ձեզ. եթէ լինիցի մարդոյ հարիւր ոչխար՝ և մոլորեսցի մի ՚ի նոցանէ, ո՞չ թողուցու զիննսուն և զինն ոչխարսն ՚ի լերինս, և երթիցէ խնդրիցէ զմոլորեալն. Եւ եթէ լինիցի գտանել զնա, ամէն ասեմ ձեզ. զի ուրախ լինի ՚ի վերայ նորա առաւել՝ քան ՚ի վերայ իննսուն և իննանցն, որ չէին մոլորեալ։ Այսպէս ո՛չ է կամք առաջի Հօր իմոյ որ յերկինս է՝ եթէ կորիցէ մի ՚ի փոքրկանցս յայսցանէ. Մատթ. ԺԸ. 12–14.

*Ինչպէս հարիւր ոչխար ունեցող հովիւն՝ երբ անոնցմէ մէկ հատը կորսնցընէ, ամէնքն ալ մի և նոյն աստիճանի սիրով սիրելուն համար՝ իննըսուն և ինը կը թողու, և միոյն ՚ի խնդիր ընդ ձոր և ընդ սար, ընդ առապար և ընդ խուլ կը դեգերի, այսպէս հովիւն քաջ Քրիստոս մեր կորուսեալ հոգւոց համար մինչև երանելեաց գաւառ՝ հրեշտակաց խումբը գոգցես կը մոռնայ, և յայս աշխարհ կուգայ զմոլորեալ մարդկութիւնը գտնելու. և գտնելէն վերջը՝ զայն խաչին հետ իւր ուսը կը բառնայ և կը տանի երկինք առ Հայրն իւր անհեղազօր, և հրեշտակաց հետ ուրախ կը լինի գտնուած մոլորելոյն վրայ՝ չը մոլորելոց վրայ զգացած ուրախութենէն աւելի։*

Եթէ մեղիցէ քեզ եղբայր քո՝, ե՛րթ յանդիմանեա՛ զնա՝ յորժամ դու և նա միայն իցէք. Եթէ լուիցէ քեզ, շահեցար զեղբայր քո։ Ապա թէ ոչ լուիցէ քեզ, ա՛ռ ընդ քեզ մի ևս՝ կամ երկուս. զի ՚ի բերանոյ երկուց և երից վկայից հաստատեսցի ամենայն բան։ Իսկ եթէ նոցա ո՛չ լուիցէ. ասասջի՛ր յեկեղեցւոջ. ապա թէ և եկեղեցւոյն ո՛չ լուիցէ.

Եղիցի քեզ իբրեւ զհեթանոսն եւ զմաքսաւոր ։ Մատթ . ԺԸ ․ 15-17 ․

Թէ որ եղբայրդ քեզ վնաս մի հասցնէ, դու առանձինն անոր պատիւը պահելով և զանի չը խայտառակելով գնա՛ յանդիմանէ՛ զինքն. եթէ լսեց քեզ՝ անոր հոգին վաստկեցար, բայց երբ չը լսէ քեզի՝ մէկ կամ երկու հոգի ալ հետդ ա՛ռ. զի ըստ Մովսիսի օրինաց՝ երկու կամ երեք վկայիւք ամէն բան, ամէն յանցանք կը հաստատուի. այս՝ խրատելու համար. իսկ եթէ անոնց ալ չը լսէ, եկեղեցւոյ իշխանութեան՝ հոգեւոր իշխանութեան իմաց տո՛ւր, որ ըստ կանոնի եկեղեցւոյ՝ անոր ապաշխարանք մի դնէ, իսկ եթէ եկեղեցւոյն ալ չը լսէ, քեզի համար հեթանոս, այսինքն, եկեղեցիէն դուրս համարուի. (Հրէայք իրենցմէ դուրս եղող ազգաց հեթանոս անունը կուտային, ինչպէս էին մաքսաւորք՝ որոց գործերուն մեծ մասը անիրաւ էր. թէեւ Հրէայք անոնց հետ արտաքին յարաբերութիւն ունէին, բայց հոգեւոր հաղորդակցութիւն չէին ըներ)։

### Դ. Իշխանութիւն կապելոյ եւ արձակելոյ

Ամէն ասեմ ձեզ. զոր կապիցէք յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս, եւ զոր արձակիցէք յերկրի՝ եղիցի արձակեալ յերկինս ։ Մատթ. ԺԸ. 18 ․

Եկեղեցին միշտ ունեցած է և ունի 'ի Քրիստոսէ այս կապելու և արձակելու իշխանութիւնը. մինչև իսկ երկնից մէջ կապուած է նա՝ որ եկեղեցիէն կը կապուի, և արձակուած է նա՝ որ եկեղեցւոյ ձեռօք կ'արձակուի. բայց զանոնք

հալածել, չարչարել և հաւատաքննական խարոյկներու մատնել չը հրամայեր Քրիստոս, այլ հեթանոսաց և մաքսաւորաց տեղ դնելով զանոնք՝ դարձեալ անոնց քարոզել, խրատել և 'ի Քրիստոս շահիլ պէտք է ։

Դարձեալ ասեմ ձեզ, եթէ երկու 'ի ձէնջ միաբանեսցեն յերկրի վասն ամենայն իրաց, զինչ և խնդրեսցեն՝ եղիցի նոցա 'ի Հօրէ իմմէ որ յերկինսն է ։ Զի ուր իցեն երկու կամ երեք ժողովեալ յանուն իմ, անդ եմ ես 'ի մէջ նոցա ։ Մատթ. ԺԸ. 19-20 ։

Միաբանութիւն եղբարց՝ եկեղեցի. ո՛րչափ զօրաւոր են աղօթք եկեղեցւոյ. ինչ որ խնդրէք եկեղեցւոյն պիտի առնուք ։ Երբ շատ մը մաքուր սրտեր և ջերմեռանդն հոգիներ մէկտեղ կուգան, Քրիստոս անյապաղ անոնց հետ կը միանայ ։ Քրիստոսի անուան շուրջը միաբանող մարդոց զօրութիւնը ո՛րքան մեծ է ։

## Ե. Ներել յանցաւորին անսահմանաբար ։

Յայնժամ մատուցեալ առ նա Պետրոս՝ և ասէ. Տէր՝ քանի՞ցս անգամ եթէ մեղիցէ ինձ եղբայր իմ, և թողից նմա. մինչև ցե՞օթն անգամ ։ Ասէ ցնա Յիսուս. ո՛չ ասեմ քեզ՝ թէ մինչև ցեօթն անգամ, այլ մինչև յեօթանասնեկին եօթն ։ Մատթ. ԺԸ. 21-22 ։ Ղուկ. ԺԷ. 3-4 ։

Պետրոս այս ներողամտութեան վարդապետութենէն յափշտակուած՝ եկաւ հարցուց, թէ մինչև քանի՞ցս անգամ եղբօր մը յանցանքին ներելու պարտաւոր է, մինչև եօ՞թն անգամ բոլոր կենացը մէջ ։ Փարիսեցիք մինչև երեք անգամ կը պարտաւորէին. Պետրոսի արդարութիւնը

ո՞չ էր պարտ եւ քեզ ողորմել ծառայակցին քում, որպէս եւ ես քեզ ողորմեցայ: Եւ բարկացեալ տէրն նորա, մատնեաց զնա դահճաց, մինչեւ հատուսցէ զամենայն զպարտսն: Նոյնպէս եւ Հայր իմ որ յերկինս է՝ արասցէ ձեզ, եթէ ոչ թողուցուք իւրաքանչիւր եղբօր իւրում ի սրտից ձերոց զյանցանս նոցա: Մատթ. ԺԸ. 23-35:

*Աստուծոյ մեծ շնորհն ու գթութիւնը ու մեր ըրածին փոքրութիւնն. Աստուծոյ ողորմութիւնն ու մարդուն անգթութիւնը նմանութեամբ իւիք կը բացատրէ այս տեղ Յիսուս. Աստուծոյ արքայութիւնը թագաւորի մը կը նմանի՝ կ'ըսէ, որ իւր ծառայներէն հաշիւ առնուլ ուզեց: Բիւր քանքար պարտք ունեցող ծառայ մի եկաւ, որ պարտքը վճարելու կարողութիւն չունէր. տէրը հրամայեց, որ զինքը, կինը, զաւակներն և բոլոր ունեցածները վաճառեն ու պարտքը լեցնեն. ծառայն երեսի վրայ ինկաւ, երկրպագութիւն կ'ընէր ու կ'ըսէր. Համբերէ՛, միջոց տո՛ւր ինձ՝ պարտքս հատուցանեմ: Տէրը ծառային գթաց, արձակեց զանի և պարտքը շնորհեց: Ազատուած ծառայն դուրս ելաւ, իրեն՝ հարիւր դահեկան պարտք ունեցող ծառայակիցը գտաւ, բռնեց զանի, կը չարչարէր, նեղը կը ձգէր: 'Պարտականը ոտքը ինկած՝ կ'աղաղակէր ու կ'ըսէր. Համբերէ՛, միջոց տո՛ւր ինձ՝ որ պարտքս հատուցանեմ: Անգութ ծառայն չէր՝ զիջաներ. բռնեց բանտը նետեց զանի՝ որ պարտքը հատուցանէ: Միւս ծառայակիցները զայրացան, տիրոջը լուր տուին, և բոլոր եղածը պատմեցին մի ըստ միոջէ: Բարկացաւ տէրը, կանչեց զանի յանդիմանեց ու ըսաւ. Չա՛ր ծառայ՝ դուն ինձմէ այդքան մեծ բարիք ու շնորհ վայելելէդ յետոյ՝ պար-*

տաւոր չէի՞ր, որ դու ալ քու ծառայակցիդ ո-ղորմէիր։ Եւ իր բրած շնորհն յետս կոչելով դահիճներու մատնեց, բանտը նետեց, որ մինչև իր ամբողջ պարտքը հատուցանէ՝ հոն մնայ։ Այսպէս պիտի վարուի երկնաւոր Հայրս ձեզի հետ, եթէ իւրաքանչիւրդ իւր եղբօր յանցանաց ներողամիտ չը գտնուի, Աստուած ալ չը պիտի ներէ ձեր մեղքերը։

## ԳԼՈՒԽ ԻԳ.

ԵՂԱՆԵԼ ՓՐԿՉԻՆ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ Ի ՏՕՆԻՆ. — ԶԻ ԳԻՒՂ ՄԻ ՍԱՄԱՐԱՑԻՈՑ ԶՉԸՆԿԱԼԱՒ ԶՆԱ. — ԽՐԱՏ ԵՒ ՕՐԻՆԱԿ՝ ԱՐՈՑ ԿԱՄԻՑԻՆ. ԶՀԵՏ ԵՐԹԱԼ ՅԻՍՈՒՍԻ. — ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏՔՆ ԱՌԱՔԵՆ ՍՊԱՍԱՒՈՐՍ՝ ԱՌՆԵԼ ԶՆԱ. — ԻՐՔ ԿՆՈՋՆ ՇՆԱՑԵԼՈՅ։

### Ա. Ելանել Փրկչին յԵրուսաղէմ ՚ի տօնին

Եւ էր մերձ տօնն հրէից տաղաւարահարաց։ Ասեն ցը-նա եղբարքն նորա. ելի՛ր անտի եւ երթ ՚ի Հրէաստան, զի եւ աշակերտքն քո տեսցեն զգործսդ քո՝ զոր գործես։ Զի ոչ ոք է որ ՚ի ծածուկ ինչ գործէ՝ եւ խնդրէ ինքն համարձակ լինել. եթէ զայդ գործեսդ, յայտնեա՛ զանձն քո աշխարհի։ Քանզի եւ եղբարքն իւր չէին հաւատացեալ ՚ի նա։ Ասէ ցնոսա Յիսուս. ժամանակ իմ չեւ է հասեալ. բայց ձեր ժամանակ յամենայն ժամ պատրաստ է։ Ո՛չ կարէ աշխարհս ատել զձեզ. բայց զիս ատէ, զի ես վկայեմ վասն նորա՝ եթէ գործքն իւր չարութեան են։ Դուք ելէք ՚ի տօնն

յայն, ես ոչ ելանեմ ի տօնն յայն․ զի իմ ժամանակ չեւ է լցեալ։ Զայս իբրեւ ասաց՝ ինքն մնաց անդէն ի Գալիլեա։ Իբրեւ ելին եղբարքն նորա, ապա եւ ինքն ել ի տօնն․ ո՛չ յայտնի, այլ իբրեւ ի ծածուկ։ Յովհ. Է. 2-10։

*Տաղաւարահարաց տօնն 'ի Մովսիսէ կարգեալ էր 'ի յիշատակ քառասնամեայ ուղեւորութեան Հրէից յանապատին, և ութն օր կը տևէր սեպտեմբեր ամսոյ մէջ։ Գնա՛ Երուսաղէմ, կ'ըսեն, իւր ազգականներն․ որպէս զի քեզի աշակերտեալ ժողովուրդն ալ տեսնէ ըրած հրաշքներըդ, և իրեն հաւատոց մէջ հաստատուի․ Դու՝ որ միշտ ծածուկ կը գործես՝ իրաւունք չունիս փառաւորուելու, և որովհետև այդպիսի սքանչելիք կը կատարես՝ ցո՛յց տո՛ւր աշխարհի, թէ դու ես Քրիստոսն։ Վասն զի իւր եղբարքներն ալ տակաւին չէին հաւատացած 'ի Քրիստոս․ և կը բաղձային, որ Քրիստոս Երուսաղէմ երթայ, փարիսեցիք ու քահանայապետք ըրած հրաշքները տեսնեն, և իրենք ալ՝ իբրև ազգականք նորա, փառաւորուին։ Այս մարմնաւոր փափաքը միայն ունէին նոքա։ Բայց Քրիստոս տակաւին գործեր ունէր կատարելիք․ Երուսաղէմ երթալու և յայտնի երևելու դեռ ատենն հասած չէր․ անոր համար ծածուկ գնաց, ոչ քարոզութիւն և ոչ հրաշք ըրաւ։*

## Բ. Զի գիւղ մի սամարացւոց չընկալաւ զնա

Եւ եղեւ ի կատարել աւուրց վերանալոյ նորա՝. եւ ինքն զերեսս հաստատեաց երթալ յԵրուսաղէմ։ Եւ առաքեաց հրեշտակս առաջի երեսաց իւրոց․ եւ իբրեւ չոգան՝ մտին ի գեօղ մի սամարացւոց պատրաստել ինչ նմա։ Եւ ո՛չ ընկալան զնա,

զի դէմ եդեալ էր նորա երթալ յԵրուսաղէմ : Իբրեւ տեսին աշակերտքն Յակոբոս և Յովհաննէս, ասեն. Տէ՛ր, կամի՞ս զի ասասցուք, և իջցէ հուր յերկնից ՚ և սատակեսցէ զնոսա : Դարձաւ սաստեաց ՚ի նոսա՝ և ասէ. ո՛չ գիտէք՝ որոյ հոգւոյ էք դուք : Զի որդի մարդոյ ո՛չ եկն զոգիս մարդկան կորուսանել՝ այլ կեցուցանել, և գնացին յայլ գեւղ : Ղուկ. Թ. 51-56 .

*Քրիստոնէութեան հոգին՝ հեզութեան հոգի է՝ և ո՛չ նախանձայոյզ վրէժխնդրութեան : Արդէն ուրիշ քաղաքներ ալ չէին ընդունած զՅիսուս, բայց Քրիստոս միշտ ներողամտութիւն ցըցուցած էր : Եղիա կրակ իջեցուց երկինքէն . հին օրէնքը՝ վրէժխնդրութեան, իսկ նոր օրէնքը՝ սիրոյ օրէնք է . Աւետարանի ոգին՝ մարմնաւոր խստութիւն, պատիժ և երկրաւոր պատուհաս չը սահմաներ : Աւետարանը չ՚ընդունող քաղաքին ի՞նչ ընելու է — Զայն թողլով ուրիշ քաղաք երթալու է, ինչպէս ըրաւ Քրիստոս :*

## Գ. Խրատ եւ օրինակ՝ որոց կամիցին զհետ երթալ Յիսուսի

Ասէ և այլ ոմն . Եկից զկնի քո Տէ՛ր , բայց նախ հրաման տուր ինձ հրաժարել ՚ի տանէ իմմէ : Ասէ ցնա Յիսուս . ոչ ո՛ք արկանէ զձեռն զմաճով՝ և հայիցի յետս , եթէ յաջողեալ իցէ արքայութեանն Աստուծոյ : Ղուկ. Թ. 61-62 .

*Այս մարդն ալ թէև կ՚ուզէր Քրիստոսի հետևիլ, բայց իւր ընտանեաց և իւրայնոց սէրը կը դժուարացընէր զայդ աշակերտութիւն նորա : Արօրադիրն՝ արօրադրութեան գործէն ձանձրութիւն յայտնած կ՚ըլլայ, երբ ետևը դառնայ և արօրադրեալ տեղերուն նայի : Այսպէս և Քրիս-*

*տալի ատենէն գնացող մարդը պէտք չէ անդրադառնայ իր անցած ճամբաներուն, թէ յաջողա՞ծ է արդեօք Աստուծոյ արքայութիւնը։ Ըսել է թէ՝ պէտք չէ բնաւ տաղտկանալ և ժամանակ կորուսանել։*

Եւ հրեայքն խնդրէին զնա 'ի տօնին անդ՝ և ասէին, ո՞ւր իցէ նա։ Եւ տրտնջիւն էր զնմանէ 'ի ժողովրդեան. կէսքն ասէին՝ թէ բարի է. այլքն ասէին, ո՛չ՝ այլ մոլորեցուցանէ զժողովուրդն։ Եւ ոչ ո՛ք համարձակ խօսէր զնմանէ՝ վասն երկիւղին հրէից. Յովհ. Է. 11–13։

*Ինչպէս ուրիշ ատեն և ուրիշ տեղ, նոյնպէս և այս առնին մէջ սկսան իրարու հետ վիճաբանիլ։ Ընդհանրապէս ժողովուրդը գոհ էր Քրիստոսէ, բայց քահանայք և այլք տեսնելով թէ իր ամենակարող զօրութեամբն բազում հրաշս առնէ, և շատերն իրեն կ'աշակերտէ, կը պնդէին՝ թէ ոչ ճշմարիտ ուսուցիչ, այլ մոլորեցուցիչ մ'է. Սակայն և այնպէս չէին կարող համարձակ խօսիլ. քանզի նոյն իսկ իրարմէ կը վախնային։*

## Դ. Քահանայապետքն առաքեն սպասաւորս՝ ունել զնա

Իբրև տօնն ընդմիջեցաւ, ել Յիսուս 'ի տաճարն՝ և ուսուցանէր։ Զարմանային հրեայքն և ասէին. զիա՞րդ գիր գիտէ սա, զի ուսեալ ինչ չէ՛։ Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ. իմ վարդապետութիւնս չէ՛ իմ, այլ այնորիկ՝ որ առաքեացն զիս։ Եթէ ոք կամի զկամս նորա առնել՝ ծանիցէ վասն վարդապետութեանս, յԱստուծո՞յ իցէ արդեօք, եթէ ես ինչ յանձնէ իմմէ խօսիմ։ Որ յանձնէ իւրմէ խօսի՝ զփառս անձին իւրում խնդրէ. իսկ որ խնդրէ զփառս այնո-

րէն որ առաքեացն զիս՝ Նա ճշմարիտ է, և անիրաւութիւն ոչ գոյ 'ի նմա: Ո՞չ Մովսէս ետ ձեզ զօրէնս, և ոչ ոք 'ի ձէնջ առնէ զօրէնսն. Զի՞ խնդրէք զիս սպանանել: Պատասխանի ետ ժողովուրդն և ասէ. դև գոյ 'ի քեզ. ո՞վ խնդրէ զքեզ սպանանել: Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ. գործ մի գործեցի, և ամենեքին զարմացեալ էք: Վասն այնորիկ Մովսէս ետ ձեզ թլփատութիւն. ոչ զի 'ի Մովսիսէ էր, այլ 'ի հարց անտի. և 'ի շաբաթու թլփատէք զմարդ: Իսկ արդ եթէ թլփատութիւն առնու մարդ 'ի շաբաթու՝ զի մի՛ օրէնքն Մովսիսի լուծցին, ընդ իս ցասուցեալ էք, զի ողջոյն զոլ մարդ բժշկեցի 'ի շաբաթու. Յովհ. է. 14-23:

*Յիսուս դպիրներէն չէր սորված, այլ ուղղակի 'ի Հօրէ. ո՛վ որ աստուածապաշտ էր սրտիւ և հոգւով, և Աստուծոյ կամքը կը կատարէր՝ հաւող էր հասկնալ՝ թէ Քրիստոսի խօսքերն աստուածային ճշմարտութիւններ էին: Ճշմարտութիւնք մի և անփոփոխ՝ ամէն բարի և լուսաւոր մարդոց սրտերուն կը խօսի. բարի մարդը Քրիստոսի վարդապետութեան վրայ տարակոյս չունենար, թէ Աստուծմէ է: Քրիստոս երբէք սնափառութեամբ իւր անձին փառք շորթելու եղանակաւ չէր ուսուցանէր՝ ինչպէս դպիրներն սովոր էին ընել. Աստուծոյ փառաց համար կը քարոզէր, և բնաւ անիրաւութիւն չէր 'ի նմա.*

*Աստուածային օրէնքն ըսած էր՝ «Մի՛ սպանաներ». փարիսեցիք սպանանել կուզէին զՅիսուս ընդդէմ օրինաց, որուն խորհուրդը ժամանակ յառաջ ըրած էին իրենց մէջ. բայց չէին կրնար այդ իրենց չար դիտաւորութիւնը համարձակ հռչակել. ատոր համար Յիսուսի հակառակորդք՝ կեղծաւորութեամբ ժողովրդեան մէջ աղաղակ կը հանէին՝ թէ կա՞յ քեզ սպանանել ուզող, և*

ամենամեծ նախատանօք դիւահար կանուանէին զանի ։ Քրիստոս՝ նոցա ըստ օրինի ըրած մէկ բանն յօրինակ բերելով՝ կըսէ ․ « Անդամալուծին կատարելապէս բժշկութեան վրայ ամենքնիդ ալ զարմացած էք եւ կը մռմռաք , թէ ինչո՞ւ շաբաթ օր բժշկեցի ․ շատ լաւ ․ դուք թլփատութեան օրէնք մը ունիք , որոյ համար կըսէք՝ թէ Մովսիսէն հաստատուեցաւ ․ բայց ո՛չ ․ այդ օրէնքը Մովսիսէ յառաջ , Մովսիսի հաստատած օրէնքէն յառաջ ալ կար՝ 'ի հարց անտի յԱբրահամէ , յԻսահակայ եւ 'ի Յակովբայ ․ դուք շաբաթ օր՝ Աստուծոյ հաճոյ գործ մը կատարելու համար մարդ կը թլփատէք ․ էշ կամ ոչխար կամ ձի փոսը իյնալու ըլլայ՝ մեծ աշխատութիւն յանձն կանուք զանի անկից դուրս հանելու համար , եւ շաբաթ օրը արգելք մը չէք համարիր կամ օրէնքը եղծանելէն չէք վախնար ․ ինչո՞ւ ուրեմն կը զայրանաք ինձ դէմ , երբ ես ամբողջ մարդ մը բժշկեցի շաբաթ օրը» ։

Մի՛ ըստ աչս դատիք , այլ ուղիղ դատաստան արարէք ․ Յովհ ․ Է ․ 24 ։

Մի՛ 'ի վերին երեւոյթս դատէք կեղծաւորութեամբ , այլ ձեր դատելիք առարկային բոլոր հանգամանքը մանրամասնաբար քննելով՝ ճշմարիտ եւ ուղիղ դատեցէք ։

Ասէին ոմանք յերուսաղեմացւոց անտի ․ Ո՞չ նա է զոր խնդրէին սպանանել ․ եւ ահաւասիկ յայտնապէս խօսի , եւ ոչինչ ինչ ընդ դմա ․ գուցէ արդարեւ եւ իշխանքն գիտացին , թէ սա իցէ Քրիստոսն ։ Այլ զսա գիտեմք՝ ուստի՛ է ․ իսկ Քրիստոսն յորժամ գայցէ՝ ոչ ոք գիտէ ուստի՛ է ։ Աղաղակեաց

[illegible] Յովհ. ժ. 25-29 :

Այս միջոցին Երուսաղէմացիներէն ոմանք՝ որ իշխանաց զՅիսուս սպաննելու դիտաւորութիւնը կռահած էին, կը զարմանային՝ որ իրենց դիտաւորութիւնը չեն գործադրեր. Ահա՝ կ'ըսէին, յայտնապէս կը խօսի, ու բան մը չեն ըսեր անոր. մի՞ գուցէ իշխաններն ալ համոզուեցան՝ թէ սա՛ է Քրիստոսը. չը գիտէին, թէ ամեն չար խորհրդոյ գործադրութիւնն անմիջապէս տեղի չունենար. և ահա անոնց մէջէն ոմանք կը տարակուսէին խսկ Քրիստոսի վրայ. Եսայեայ՝ Քրիստոսի աստուածութեանը նկատմամբ ըսած „Զազգատոհմն նորա ո՞ պատմեսցէ„ խօսքը՝ նորա մարդկութեանն համար առնելով իմաստակօրէն՝ Քրիստոսի ազգատոհմին ծանօթ լինելէն՝ նորա Քրիստոս չը լինելը կ'եզրակացնէին։ Յիսուս անոնց պատասխանեց. „Դուք զիս իբրև մարդ գիտէք. կը ճանչէք թէ ո՛ր ազգատոհմէն եմ. բայց բուն ազգատոհմս 'ի յաւիտենից աստուածութիւնս և Հայրս չէք գիտեր, և իմ ճշմարիտ պաշտօնս չէք ճանչեր. ես բաղդախնդիր մէկը չեմ. զիս ճշմարիտը խրկած է՝ որ զինքը քարոզեմ ու ձեզի ճանչցընեմ զայն՝ զոր դուք չէք ճանչեր, ես միայն կը ճանչեմ. վասն զի անկէ եմ և ան խրկեց զիս„ :

[illegible] Յովհ. ժ. 30.

Այս խօսքերէն Յիսուսի թշնամիք զէնքերնկեց չեզան, դարձեալ կ'ուզէին զանի բռնել. բայց Յիսուս անոնց կատաղութենէն ազատեցաւ. անոնց ձեռքն էր՝ բայց ձեռքերնէն խալսեցաւ, և անոնց կատաղութենէն շատ հզօր կամք մը չը թողուց՝ որ բռնուի. զի ժամանակը հասած չէր. այն ժամանակը՝ զոր Յիսուս գիտէր ։

Եւ բազումք 'ի ժողովրդենէն հաւատացին 'ի նա, և ասէին. Քրիստոս՝ յորժամ գայցէ, միթէ առաւե՞լ ինչ նշանս առնիցէ՝ քան զոր դա առնէ ։ Յովհ. Է. 31 ։

Եւ սակայն շատերը հաւատացին. Քրիստոս կ'ըսէին, ասկէց աւելի՞ գործեր պիտի գործէ ։ փարիսեցւոց ամենէն ծանր եկած բանը՝ ժողովրդեան այս հաւատքն էր ։

Եւ լուան փարիսեցիքն զշշնջիւն ժողովրդեանն զնմանէ, և առաքեցին քահանայապետքն և փարիսեցիք սպասաւորս, զի կալցին զնա ։ Ասէ Յիսուս. Դեռ մի եւս ժամանակ ընդ ձեզ եմ, և երթամ առ այն՝ որ առաքեացն զիս ։ Խնդրիցէք զիս, և ոչ գտանիցէք, և ուր եսն իցեմ՝ դուք ոչ կարէք գալ։ Ասեն Հրեայք ընդ միմեանս. Իսկ յո՞ երթայցէ դա, զի մեք ոչ գտանիցեմք զդա, միթէ 'ի սփիւռս հեթանոսա՞ց երթայցէ և ուսուցանիցէ զհեթանոսս. զի՞նչ է բանն այն՝ զոր ասաց, Խնդրիցէք զիս և ոչ գտանիցէք. և ուր եսն իցեմ՝ դուք ոչ կարիցէք գալ ։ Յովհ. Է. 32–36 ։

Երբ տեսան փարիսեցիք և քահանայապետք որ շատերը կը դառնան դէպ 'ի Քրիստոս, սպասաւորներ խրկեցին՝ որ Յիսուսը բռնեն կամ ըսպաննեն. որոնք փոխանակ զանի ձերբակալելու՝ իրենք բռնուեցան յանկնգրութիւն վարդապետութեան նորա, և չը կրցան իրենց եղած հրա-

մանը կատարել։ Յիսուս ըսաւ. «Ես դեռ քիչ մը ժամանակ ևս ձեզի հետ պիտի ըլլամ այս աշխարհի վրայ, և ապա պիտի մեկնիմ զիս խրկողին քով. այն ատեն զիս կը փնտռէք ու չէք գտներ. դուք իմ գնացած տեղս (յարքայութիւն իմ երկնաւոր) չէք կարող գալ»։ Հրէայք կ՚ըսէին իրարու, այդ ո՞ւր կ՚երթայ՝ որ մեք չը կրնանք գըտնել զինքը, միթէ հեթանոսաց մէջ ցրուեալ հըրէից պիտի երթայ ու քարոզէ. ի՞նչ կը նշանակէ այդ ըսած վերջին խօսքը։

Ի վերջում աւուր մեծի տօնին կայր Յիսուս, աղաղակէր և ասէր. Եթէ ոք ծարաւի իցէ՝ եկեսցէ առ իս և արբցէ։ Որ հաւատայ յիս՝ որպէս և ասէն գիրք, գետք յորովայնէ նորա բղխեսցեն ջրոց կենդանութեան։ Զայս ասէր վասն Հոգւոյն՝ զոր ընդունելոց էին՝ որ հաւատային ՚ի նա, զի չև էր Հոգի, վասնզի Յիսուս չև էր փառաւորեալ։ Ոմանք ՚ի ժողովրդենէն իբրև լուեալ զբանս զայս, ասէին. Սա է ճշմարիտ մարգարէն։ Այլքն ասէին, Սա է Քրիստոսն. իսկ կէսքն ասէին. միթէ ՚ի Գալիլեէ՞ գալոց իցէ Քրիստոսն, ո՞չ գիրք ասեն, եթէ ՚ի զաւակէ Դաւթի և ՚ի Բեթղեհեմ գեղջէ՝ ուր Դաւիթն էր, գալոց է Քրիստոսն։ Եւ եղև հերձուած ՚ի մէջ ժողովրդեանն վասն նորա։ Եւ ոմանք ՚ի նոցանէ կամէին ունել զնա, այլ ոչ ոք ձեռն արկ ՚ի նա։ Յովհ. Է. 37–44։

Տաղաւարաց տօնին եօթներորդ օրը՝ որ առաջիններէն աւելի մեծ կը համարուէր, Յիսուս կեցեր մեծ բազմութեան մէջ կը պոռար. Ամէն որ շնորհաց և յաւիտենից փրկութեան ծարաւի է՝ ինծի թո՛ղ դիմէ, այսինքն թող յիս հաւատայ, և ցյագ խմէ։ Ով որ ինծի հաւատայ՝ ինչպէս որ ըսուած է Աստուածաշունչ Ս. Գրոց մէջ, «Զի ես տաց ջուր ՚ի ծարաւս՝ որոց գնան յանջրդւոջ»։

Եսայ. ԾԸ. 11 ։ Առակք. ԺԸ. 4 ։ Նորա ներքէն կենդանի ջրոց վտակներ ու գետեր պիտի խաղան ։ Քրիստոսի հաւատացողն՝ ինքը լեցուն կշտանալէն յետոյ՝ երջանկութեան, բարութեան, սիրոյ, շնորհաց, շինութեան ’ի բանին յորդահոս աղբիւր կը դառնայ՝ ուրիշներն արբուցանելու, յագեցնելու, շինելու, շնորհօք և սիրով լեցնելու համար ։ Այս շնորհքը, այդ կենդանի վտակն՝ Հոգին սուրբ է, որոյ համար կը խօսէր այս տեղ. Քրիստոսի հաւատացողը Հոգին սուրբ պիտի ընդունէր՝ ո՛չ այն ատեն, այլ յետ փառաւորելոյն՝ յետ չարչարանացն, յարութեան և համբարձման. զի ամէն բանի ժամանակը կար. ինչպէս բանին Աստուծոյ մարմին առնելու ժամանակը եկաւ, այնպէս և Հոգւոյն սրբոյ առատապէս ’ի հաւատացեալս՝ յորդելս Աստուծոյ ծաւալելու ատենը կար ։

Ահա այս խօսքերուն վրայ ժողովրդեան մէջ խլրտում մը և կարծեաց տարբերութիւն մը ծագեցաւ. շատերն ըսին, թէ սա՛ է Մովսէսի ըսած ճշմարիտ մարգարէն. ոմանք՝ որ Գալիլիացի կամ Գալիլիայի մէջ ծնած կը կարծէին զՅիսուս, կասկածելով կ’ըսէին, թէ Ս. Գիրք կ’ըսեն, որ ’ի Բեթլեհէմէ պիտի ծնանէր Քրիստոս Դաւթի զաւակներէն ։ Դարձեալ հակառակորդք ուզեցին՝ որ անոր վրայ ձեռք դնեն. սակայն դարձեալ աներևոյթ զօրութիւնը ցրուեց նոցա խորհուրդը ։

Եւ եկին սպասաւորքն առ քահանայապետսն և փարիսեցիս, և ասեն նոքա ցնոսա, ընդէ՞ր ոչ ածէք զնա այդ ։ Պատասխանի ետուն սպասաւորքն և ասեն. Ոչ երբէք այնպէս խօսեցաւ մարդ որպէս այրն ։ Պատասխանի ետուն.

Յիսուս 'ի Բեթղեհէմ ծնած էր ըստ կանխասացութեան մարգարէից առաջնոց։

Եւ գնացին իւրաքանչիւր ոք 'ի տունս իւր։ Իսկ Յիսուս գնաց 'ի լեառն Ձիթենեաց։ Յովհ. Է. 53. Ը. 1։

Այս խօսքերէն ու առարկութիւններէն յետոյ՝ իւրաքանչիւր ոք իւր տեղը դարձաւ առանց Յիսուսի բան մ'ընել կարողանալու։ Երուսաղէմի արեւելեան հիւսիսային կողմը քաղաքէն քիչ հեռու է Ձիթենեաց լեռը, որ երբեմն Դաւիթ ապաշխարեր ու արտասուեր էր. այն տեղ եկաւ Տէրն մեր նախ օրուան յոգնութիւններէն ետքը քիչ մը հանգիստ առնելու, մինչդեռ անդին իւր թշնամիները՝ քահանայապետք եւ դպիրք իրենց ապարանքներին կը քաշուէին։

Եւ ընդ առաւօտն դարձեալ եկն 'ի տաճարն. եւ գայր առ նա ամենայն ժողովուրդն, եւ նստեալ ուսուցանէր զնոսա։ Ածեն առ նա դպիրքն եւ փարիսեցիքն կին մի ըմբռնեալ 'ի շնութեան. եւ կացուցեալ զնա առաջի՝ ասեն ցնա. Վարդապետ, կինս այս ըմբռնեցաւ՝ յայտնապէս շնացեալ։ Եւ յօրէնս Մովսէս մեզ պատուիրեաց զայսպիսիսն քարկոծել. արդ դու զի՞նչ ասես վասն դորա։ Զայս ասէին փորձելով զնա, զի ունիցին ամբաստանութիւն զնմանէ։ Իսկ Յիսուս 'ի խոնարհ նայեալ գրէր մատամբն յերկիր։ Իսկ իբրեւ ստիպէին հարցանելով զնա, հայեցաւ 'ի վեր՝ ասէ ցնոսա. Անմեղն 'ի ձէնջ նախ նա ընկեսցէ քար 'ի վերայ դորա։ Եւ դարձեալ 'ի խոնարհ նայեալ գրէր յերկիր։ Յովհ. Ը. 2-8։

Առաւօտուն կանուխ նորէն Տաճարը՝ իւր հօրը եւ իւր տունը եկաւ Քրիստոս՝ ըստ սովորութեանն քարոզելու ժողովրդեան. Նորա թշնամիները ալ իրենց սովորութեանն համեմատ գանի

ընկալցի զլոյսն կենաց : Յովհ. Ը. 12 :

Դարձեալ Յիսուս խօսեցաւ անոնց հետ և ըսաւ. Ես եմ աշխարհին լոյսը. ո՛վ որ իմ ետեւէս կուգայ՝ խաւարէն կ'ազատի, հոգւոյ, որտի և խղճի լոյս կ'ունենայ, միտքը կը լուսաւորի, հոգին և սիրտը և զգացմունքը կ'ազնուանան, կը բարւոքին, հոգևոր անդորրութիւն և խաղաղութիւն կը վայելէ. կենաց լոյսը ինձմով կ'ստացուի, այս լոյսը իմ գերեզմանէս անդին ալ յաւիտեան կը ճառագայթէ, խաւարին և տգիտութեան և մահու կը յաղթէ :

Ասեն ցնա փարիսեցիքն. Դու վասն անձին քո վկայես, և վկայութիւն քո չէ ճշմարիտ. Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. Թէպէտ և ես վկայեմ վասն անձին իմոյ՝ վկայութիւն իմ ճշմարիտ է. զի գիտեմ՝ ուստի՛ եկի և յո՛ երթամ. Դուք ըստ մարմնոյ դատիք, ես ոչ դատիմ և ո՛չ զոք. Թէպէտ և դատիմ ես զոք՝ դատաստանն իմ ճշմարիտ է, զի ոչ եմ միայն, այլ ես և որ առաքեացն զիս Հայր : Եւ յօրէնսն ձեր գրեալ է, թէ երկուց մարդոց վկայութիւն ճշմարիտ է : Ես եմ՝ որ վկայեմ վասն իմ, և վկայէ վասն իմ՝ որ առաքեացն զիս Հայր : Ասէին ցնա. Ո՞ւր է Հայր քո : Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. Ո՛չ զիս գիտէք և ո՛չ զՀայրն իմ. եթէ զիս գիտէիք, և զՀայրն իմ գիտէիք : Զայս բանս խօսեցաւ 'ի տան գանձին՝ յորժամ ուսուցանէր 'ի տաճարի անդ. և ոչ ոք կալաւ զնա, զի չև ևս հասեալ էր ժամ նորա. Յովհ. Ը. 13-20 :

Յիսուս փարիսեցւոց չարամիտ դիտողութեանց պատասխանեց. "Որովհետև 'ի կրից և ախտութեամբ չեմ խօսիր, այլ անսխալ ճշմարտութեամբ, և դուք չէք կրնար՝ ճշմարտութենէ դուրս խօսելուս համար մեղադրել. վասն որոյ իմ վկայութիւ-

Նա ինծի համար ճշմարիտ է. ես գիտեմ՝ որ Աստուծմէ եկայ, և առ Հայր Աստուած կ'երթամ: Դուք մոլորած էք, և ձեր միտքերնիդ երկրաւոր խորհուրդներով ու դատաստաններով լի են. դուք չէք հասկընար, որ յաւիտենական կենաց համար կը խօսիմ. պէտք է որ շուտով առ Աստուած դառնամ իմ միջոցաւս, ես ձեր կորած մարմնաւոր դատաստաններուն մէջ դատապարտուած չեմ ատեներ. իմ վճիռներս ու խորհուրդներս հոգեւոր են, ձեր դատաստանները սխալ են. ես եթէ դատեմ մէկը՝ ճշմարտութեամբ կը դատեմ, թէև հիմայ չեմ դատեր: Ես մինակ չեմ ինծի համար վկայող, զիս ղրկողն ալ կը վկայէ ինծի համար: Ձեր օրէնքէն գէթ սորվեցէք, որ երկու հոգւոյ վկայութիւն ճշմարիտ է կ'ըսէ. արդ մէյ մը ես եմ՝ որ ինծի համար կը վկայեմ, մէյ մ'ալ զիս ղրկող Հայրը, ահա երկու հոգւոյ վկայութիւն՝ Հօր և Որդւոյ: Կը հարցնէին Յիսուսի. ո՞ւր է քու Հայրդ, ո՞վ է քու հայրդ՝ չը գիտենք: Այո՛, այնպէս է. ո՛վ որ զՔրիստոս չը ճանչեր՝ Հայրն ալ չը գիտեր. «Եթէ զիս ճանչէիք՝ Հայրս ալ ճանչած կ'ըլլայիք. վասն զի Ես ու Հայրս մի եմք. Ես զանի ճանչցնելու եկայ ձեզի. իմ խօսքերս՝ նորա խօսքերն են: Յիսուս այս խօսքերը կամ քարոզութիւնը խօսեցաւ տաճարին այն գաւթին մէջ՝ ուր գանձանակը կը կենար. և ոչ մէկը չը կրցաւ կամ չը համարձակեցաւ բռնել զանի ո՛չ խօսքով և ոչ ձեռքով. զի դեռ սահմանեալ ժամանակը չէր հասած:

* Ասէ դարձեալ ցնոսա Յիսուս. Ես երթամ, և խնդրեսջիք զիս, և ի մեղս ձեր մեռանիջիք. ուր ես երթամ՝

դուք ոչ կարէք գալ։ Ասէին Հրէայքն. միթէ զանձն սպանանի-
ցէ. զի ասէ, թէ ուր ես երթամ՝ դուք ոչ կարէք գալ։
Եւ ասէ ցնոսա. Դուք ՚ի ներքուստ աստի էք, եւ ես ՚ի վե-
րուստ անտի եմ. դուք յաշխարհէ աստի էք, ես չեմ յայսմ
աշխարհէ։ Բայց ասացի ձեզ, թէ ՚ի մեղս ձեր մեռանիջիք;
զի եթէ ոչ հաւատայցէք՝ թէ ես եմ, մեռանիջիք ՚ի մեղս ձեր։
Ասեն ցնա. դու ո՞վ ես. Ասէ ցնոսա Յիսուս. նախ զի եւ
խօսիմ իսկ ընդ ձեզ։ Բազում ինչ ունիմ վասն ձեր խօսել
եւ դատել, այլ որ առաքեացն զիս՝ ճշմարիտ է. եւ ես՝ զոր
լուայ ՚ի նմանէ, զայն խօսիմ յաշխարհի։ Եւ ոչ ծանեան;
թէ զՀայրն ասէր ցնոսա ։ Յովհ. Ը. 21-27.

*Դարձեալ Յիսուս իր առ Հայր երթալն ե-
մացնելով ծանոյց՝ թէ իրենց մեղքերէն շուտով
դարձ ընելու հարկաւորութիւն ունէին. «Ես
կ'երթամ, ըսաւ, վերջը կը փնտռէք զիս. ան-
սո՛ս, ձեր մեղաց մէջ կը մեռնիք։ Ուր որ
ես կ'երթամ, դուք չէք կարող մեղօք մուտ
գտնել»։ Հրէայք միշտ մարմնաւորապէս խորհե-
լով՝ բնական մահը և կամ անձնասպանութիւն
կը հասկնային այս երթալը։ Յիսուս կը յանդի-
մանէ զանոնք ու կ'ըսէ. «Դուք վարէն՝ այս աշ-
խարհէն էք, ամէն բան երկրաւորապէս մարմնա-
պէս կ'իմանաք. բայց ես վերէն՝ ուրիշ աշխար-
հէ եմ. չէք հասկնար կամ չէք ուզեր հասկնալ.
և հաւատալ իսկ չէք յօժարիր, թէ ես եմ Այն.
անոր համար ձեր մեղաց մէջ պիտի մեռնիք»։
Ասոր վրայ հարցուցին, թէ դու ո՞վ ես. Յիսուս
ըսաւ. «Նոյն եմ նախ՝ որ խօսիմ ընդ ձեզ. այ-
սինքն, ես եմ սկիզբն, Աստուած՝ Արարիչ երկնի
և երկրի, յառաջ քան զլինելն յաւիտենից, որ
այժմ իջեալ յաշխարհ և մարդ եղեալ վասն ձե-
րոյ փրկութեան և ազատութեան ՚ի մեղաց՝ ձեր*

*հոգւոյն փրկութեան համար ձեզի հետ ահա կը խօսիմ»։ Ես 'ի հօրէ Աստուծոյ առաքեցայ. զիս ղրկողը ճշմարիտ է. իմ խօսքերս՝ Աստուծմէ լը֊սած խօսքերս են». սակայն նոքա չէին կարող հասկնալ, թէև ուրիշ անգամ զԱստուած՝ իւր Հայրն անուանելուն համար՝ զՆնի սպաննել կ'ու֊զէին.*

Ասէ ցնոսա Յիսուս. Յորժամ բարձրացուցանիցէք զՈրդի մարդոյ, յայնժամ գիտասջիք՝ թէ ես եմ, և յանձնէ իմմէ ինչ ոչ առնեմ, այլ որպէս ուսոյց զիս Հայրն իմ՝ զայն խօսիմ։ Եւ որ առաքեացն զիս՝ ընդ իս է. ոչ եթող զիս միայն, զի ես զհաճոյս նորա առնեմ հանապազ։ Իբրև զայս խօսեցաւ՝ բազումք հաւատացին 'ի նա։ Յովհ. Ը. 28-30.

*«Բայց երբ դուք իմ բարձրանալուս պատ֊ճառ լինելով զիս խաչէք, այնուհետև պիտի ի֊մանաք՝ թէ ես եմ Որ էն. պիտի տեսնէք, որ այդ՝ իմ վրայի մարդկութիւնը փառաւորեալ է և հնազանդ բոլորովին Աստուածութեան. պիտի տեսնէք, որ այս ձեր առջև արհամարհեալ մար֊դը՝ Աստուածութենէն չը պիտի թողուի, զի ըստ ամենայնի նորա հաճոյքը կը կատարեմ».*

*Այս խօսքերուն վրայ՝ որ անշուշտ շատ եր֊կար ըլլալու էին, և որոց մի միայն իմաստը կամ բովանդակութիւնը մէջ բերած է Աւետարանիչը, շատերը հաւատացին Յիսուսի Քրիստոսի։*

Եւ ասէր Յիսուս առ Հրէայսն հաւատացեալս, եթէ դուք կացջիք 'ի բանի իմում՝ ճշմարիտ աշակերտք իմ էք. և ծանիջիք զճշմարտութիւնն, և ճշմարտութիւնն ազատեսցէ զձեզ։ Պատասխանի ետուն նմա և ասեն. Զաւակ Աբրահամու եմք, և ոչ ումեք երբէք ծառայեցաք. զի՞արդ ասես,

թէ ազատք լինիջիք: Պատասխանի ետ նոցա Յիսուս. Ամէն ամէն ասեմ ձեզ, եթէ ամենայն՝ որ առնէ զմեղս, ծառայ է մեղաց: Եւ ծառայն ոչ յաւիտեան կայ ի տան, իսկ որդին յաւիտեան կայ: Իսկ արդ եթէ որդին զձեզ ազատեսցէ, ճշմարիտ ազատք լինիջիք: Գիտեմ, զի զաւակ Աբրահամու էք. այլ խնդրէք սպանանել զիս, զի բանին իմոյ չէ տեղի ի ձեզ: Ես՝ զոր տեսի առ Հօր իմում, խօսիմ, և դուք՝ զոր լուարուք ի հօրէն ձերմէ, առնէք. Ը. 31–38:

Կը քարոզէր Յիսուս այն Հրէից՝ որ դեռ հաստատուն հաւատք չունէին իւր վերայ. "Եթէ իմ խօսքերուս մէջ, իմ գծած ճամբուս մէջ մնաք հաստատապէս՝ իմ ճշմարիտ աշակերտներս կ՚ըլլաք, և զիս՝ զճշմարտութիւնն կատարելապէս կը ճանչնաք, և ճշմարտութիւնն զձեզ 'ի կուրութենէ, 'ի ծառայութենէ մեղաց կ՚ազատէ": Պատասխան տուին ու ըսին. մենք Աբրահամու զաւակներն եմք, և ոչ ումեք բնաւ ծառայեցինք. ուրեմն ի՞նչպէս կ՚ըսես՝ թէ ազատութիւն կը գտնէք: Այս խօսքը սուտ էր, վասն զի Աբրահամու զաւակք ըստ մարմնոյ իսկ՝ Եգիպտացւոց, Ամոնացւոց, Մադիանացւոց, փղշտացւոց, Քաղդէացւոյ և Պարսից ծառայեցին, և նոյն պահուն ալ Հռոմայեցւոց հարկատու էին. բայց Յիսուս դարձեալ հոգևոր կերպով պատասխանեց. "Մեղաւորը՝ մեղաց ծառայն է՝ ըսաւ. ծառայն տան մէջ (եկեղեցւոյ մէջ, մեղաւոր ծառայն՝ Աստուծոյ տանը մէջ) յաւիտեան չը կենար. այլ դուրս կը հանէ Աստուած. այնպիսի ծառայներ Դուք մեղաւոր էք՝ մեղաց, մոլութեանց և մոլորութեանց ծառայ. Որդին միայն ազատէ զձեզ, մինչև որ ես չազատեմ զձեզ, ճշմարտապէս ա-

համառօտէ կրկնեց անոնց․ ա՛ դուք Աբրահամու զաւակունքն չէք, ըսաւ․ եթէ իրօք անոր զաւակներն ըլլայիք՝ անոր գործերուն պիտի հետեւէիք։ Աբրահամ ձեզի պէս չըրաւ, իրեն հիւր գնացող Աստուծոյ պատգամաւորներուն ընդունեց․ իսկ դուք սպաննել կ'ուզէք Աստուծոյ առաքեալը, մարդ մը, զիս՝ որ միմիայն ճշմարտախօս ըլլալու համար յանցաւոր կը համարուիմ 'ի ձէնջ։ Աբրահամ՝ այդպէս չըրաւ, ուրեմն դուք բուն ձեր հօրը կամքը կը կատարէք։

Յիսուսի՝ այսպէս երկու հայրերու խօսք ընելուն վրայ բարկացան հրէայք ու ըսին, թէ մեք պոռնկորդի չեմք․ մեր հայրը մէկ է՝ Աստուած, որ է Աբրահամու և իսահակայ հայրը։ Այն ատեն Յիսուս ըսաւ անոնց․ «Եթէ Աստուած ըլլար ձեր հայրը՝ անշուշտ հիմայ պիտի սիրէիք զիս․ զի ես Աստուծմէ ելայ ու եկայ՝ չէ թէ ինքնին ըստ մարդկութեանս, այլ նա ղրկեց զիս։ Դուք չէք համոզուիր իմ խօսքերուս, վասն զի չէք կըրնար լսել կամ հանդուրժել իմ խօսքերուս՝ որ ճշմարտութիւն են։ Ես հիմայ բացայայտ ըսեմ, թէ ձեր հայրն ո՛վ է․ ձեր գործերէն յայտնի է, որ ձեր հայրը սատանան է․ դուք անոր կամքը կը կատարէք, նա ալ ձեզի պէս 'ի սկզբանէ մարդասպան էր, նա ալ ձեզի պէս ճշմարտութեան մէջ չը կեցաւ․ վասն զի անոր մէջ ճշմարտութիւն չկայր։

Վերը բացարձակ չըսաւ, հիմայ յայտնի ըսաւ, թէ իրենք գործքով ինչպիսի հօր զաւակներ են․ այսինքն սատանայի որդիք, որչափ որ Աբրահամու զաւակ ալ ըլլան սերնդեամբ։

«Երբոր մէկը սուտ կը խօսի՝ յարեց Քրիստոս,

սատանայէն թելադրեալ է և ո՛չ յԱստուծոյ. զի սատանայ՝ սուտ է, և հայր է ստոյ: Բայց ես ճշմարտութիւնը կը խօսիմ, ու չէք հաւատար ինծի»:

Ո՞ 'ի ձէնջ յանդիմանէ զիս վասն մեղաց. եթէ զճշմարիտն ասեմ ձեզ՝ ընդէ՞ր ոչ հաւատայք ինձ: Որ էն յԱստուծոյ՝ զբանս Աստուծոյ լսէ. և դուք վասն այնորիկ ոչ լսէք, զի չէք յԱստուծոյ. պատասխանի ետուն Հրէայքն և ասեն ցնա. Ո՞չ բարւոք ասեմք մեք՝ եթէ Սամարացի ես դու, և դև գոյ 'ի քեզ: Պատասխանի ետ Յիսուս և ասէ. յիս դև ոչ գոյ, այլ պատուեմ զՀայր իմ, և դուք անարգէք զիս: Ես ոչ խնդրեմ զփառս իմ, է՛ որ խնդրէն, և դատի: Ամէն ամէն ասեմ ձեզ. եթէ ոք զբանն իմ պահեսցէ՝ զմահ մի՛ տեսցէ 'ի յաւիտեան: Յովհ. Ը. 46-51:

«Ո՞վ կրնայ ձեր մէջէն զիս մեղաց համար, յանցանաց համար յանդիմանել»: Բնաւ մէկը Քրիստոսի երեսին չէր կարող ըսել, թէ փոքրիկ մեղք մը գործած ըլլայ: Մարդոց ամէն կարգերուն մէջ՝ մարգարէ, առաքեալ, մարտիրոս, ո՛չ ոք բաց 'ի Քրիստոսէ՝ չէ համարձակած այսպիսի խօսք մ'ըսել: Քրիստոսի Աստուածութեան ամենամեծ ապացոյցներէն մին ալ այս է. Նա բընաւ մեղք չը գործեց: «Այլ ասոր եթէ ճշմարտութիւնը կը պատմեմ ձեզի, կ'ըսէ, ինչո՞ւ չէք հաւատար. դուք Աստուծմէ չէք, Աստուծմէ եղողը՝ Աստուծոյ, և ոչ ուրիշին խօսքը կը լսէ»: Բարկացան Հրէայք ու ըսին. մեր ըսածն աղէկ է քեզի համար, դու Սամարացի, կամ հերետիկոս, կամ հերձուածող և կամ դիւահար ես: Պատասխան տուաւ Յիսուս. «Ես դիւահար չեմ. ես իմ Հօրս պատիւը կը պահեմ, դուք զիս կ'անարգէք

կ՚անպատուէք . ես չեմ ինծի համար հիմայ ձեզմէ վրէժխնդիր եղողն կամ իմ փառքս ու պատիւն փնտռողն , կայ ինծի համար վրէժխնդիր մէկը , իմ փառքս ու պատիւս փնտռող մը . Նա պիտի կտրէ ձեր դատաստանը . Բայց ես ձեր վրայ գը-թալով կ՚ըսեմ ճշմարտապէս , թէ յաւիտեան չը պիտի մեռնի այն մարդը՝ որ իմ խօսքերս կը պա-հէ» ։

Ասեն ցնա Հրեայքն . Արդ գիտացաք , եթէ դև գոյ ՚ի քեզ . Աբրահամ մեռաւ և մարգարէքն . և դու ասես , եթէ ոք զբանն իմ պահեսցէ՝ մի՛ ճաշակեսցէ զմահ ՚ի յաւիտեան ։ Միթէ դու մեծ ինչ ո՞ք իցես քան զհայրն մեր Աբրահամ՝ որ մեռաւ , և մարգարէքն մեռան . արդ դու զո՞ առնես զքեզ ։ Պատասխանի ետ Յիսուս . եթէ ես փառաւորեմ զանձն իմ՝ փառքն իմ ոչինչ են . է Հայր՝ որ փառաւորէ զիս , զորմէ դուքդ ասէք՝ թէ Աստուած մեր է , և ոչ ճանաչէք զնա , բայց ես գիտեմ զնա . և թէ ասեմ , թէ ոչ գիտեմ զնա՝ ձեզ նման սուտ լինիմ . այլ գիտեմ զնա , և զբանն նորա պահեմ , Աբրահամ հայր ձեր ցանկայր տեսանել զօր իմ . ետես և ուրախ եղև ։ Ասեն ցնա Հրեայքն . յիսուն ամ չև ևս է քո , և զԱբրահա՞մ տեսեր ։ Ասէ ցնոսա Յիսուս . Ամէն ամէն ասեմ ձեզ . յառաջ քան զլինելն Աբրահամու եմ ես . Վերառին Հրեայքն , զի արկցեն ՚ի վերայ նորա . և Յիսուս թաքեաւ , և ելեալ ՚ի տաճարէ անտի ։ Յովհ . Ը . 52-59 ։

Հրէայք փոխանակ համոզուելու՝ դարձեալ կրկնեցին . հիմայ աղէկ հասկցանք , որ դիւահար ես դու . Աբրահամ ալ մեռաւ , մարգարէները ալ մեռան . և դու կ՚ըսես՝ թէ խօսքդ պահողը յաւիտեան չը մեռնիր . միթէ մեր հայր Աբրահամէն ու մարգարէներէն մե՞ծ մարդ մ՚ ես դու , որոց ամէնն ալ մեռան գնացին . դու ինք-

զինքդ ով կը կարծես, ո՞ւր տեղ կը դնես: Պա-
տասխան տուաւ Յիսուս. եթէ ինքզինքս ես
փառաւորեմ՝ ըստ մարդկութեան իմ փառքս ոչ
ինչ են․ սակայն զիս փառաւորողը Հայրս է, ո-
րուն համար կ՚ըսէք՝ թէ Աստուած մեր է. որ
բնաւ չէք ճանչեր, այլ ես կը ճանչեմ զանի․ Ե-
թէ ըսեմ՝ թէ չեմ ճանչեր, ձեզի պէս ստախօս
եղած պիտի ըլլամ. բայց ես գիտեմ ու կը ճան-
չեմ զանի, և անոր խօսքը կը պահեմ։ Ձեր Աբ-
րահամ հայրը իմ օրս տեսնել ուզեց. տեսաւ և
ուրախացաւ. Աբրահամ տեսաւ զիս՝ զՄեսիայն,
զՄիածին Որդին Աստուծոյ՝ օրինակաւ Իսահա-
կայ, պատարագաւ խոյին և հետեւեալ խօսքով.
«՚ի զաւակի քում օրհնեսցին ամենայն ազգք երկ-
րի»։ Հրէայք ըսին. դեռ յիսուն տարեկան չկաս,
ի՞նչպէս կրնայ ըլլալ, որ Աբրահամը տեսած ըլ-
լաս։ Պատասխան տուաւ Յիսուս. «Աբրահամ
չծնեալ՝ կամ և եմ ես» (որ էն միշտ, և ոչ
էի կամ կայի, ըստ այլում թարգմանութեան)։

Ասոր վրայ Հրէայք խոշոր քարեր առին, որ
Յիսուսի վրայ նետեն քարկոծեն։ Ի՞նչ ծանր է
ճշմարտութիւնը լսել. չարերն խեղդել կ՚ուզեն,
սպաննել կ՚ուզեն, քարակոյտի տակ թաղել կ՚ու-
զեն։ Եւ Յիսուս խոյս տուաւ, ելաւ գնաց տա-
ճարէն՝ ՚ի կորուստ հոգւոց նոցա

## Բ. Բժշկութիւն ՚ի ծնէ կուրին

Եւ մինչդեռ անցանէր՝ տեսաւ այր մի կոյր ՚ի ծնէ, և
հարցին զնա աշակերտքն նորա և ասեն. Ռաբբի՛, ո՞յր մեղաւ
է, սորա՞ թէ հօր և մօր իւրոյ, զի կոյր ծնցի: Պատաս-
խանի ետ Յիսուս. Ոչ սորա մեղաւ, և ոչ հօր և մօր իւրոյ,

այլ զի յայտնեսցին գործք Աստուծոյ ՚ի դմա։ Եւ ինձ պարտ է գործել զգործս այնորիկ՝ որ առաքեացն զիս, մինչ աւուր կայ. գայ գիշեր՝ յորժամ ոչ ոք կարէ գործել։ Մինչ դեռ յաշխարհի եմ՝ լոյս եմ աշխարհի. Յովհ. Թ. 1-5։

*Յիսուս երբ կ'անցնէր՝ ՚ի ծնէ կոյր մարդ մը տեսաւ. աշակերտները՝ որ ամէն հիւանդութիւն և ցաւ՝ մեղաց հետեւութիւն կը համարէին. հարցուցին Յիսուսի, ասո՞րն է յանցանքը, թէ չէ՝ հօրը ու մօրը, որ կոյր ծնած է։ Աշակերտաց գիտէին, որ համաշխարհական ջրհեղեղին ատենն անմեղ մանկունք ալ մեռան, գիտէին նաև, որ Ադամայ և Սեբոյիմի պատժոյն ատենը մանկունք ալ գետինը սուզան. և կամ՝ գիտէին, որ անօրէնութեամբ յղացեալ էին մանկունք ՚ի մարդըն, անոր համար հարցուցին, թէ որո՞ւն մեղացըն համար է այս կուրութիւնը։ Յիսուս պատասխան տուաւ, թէ "Ամէն վիշտ ու նեղութիւն մեղաց համար չեն գար, այլ շատ անգամ առաքինութեան փորձուելուն և առաքինոյն ընտիր երեւելուն և երբեմն Աստուածային գործոց փառաւորութեանն համար. ուստի ոչ ինքն է յանցաւոր և ոչ ծնողքը. այլ Աստուծոյ գործոց ատոր վրայ յայտնուելուն համար է. Ես պարտաւոր եմ զիս ղրկողին գործերը գործել, քանի որ ցորեկ է։ Քանի որ ՚ի խաչին չեմ մեռած՝ գիշեր չէ. գործելու ժամանակը՝ լոյս եղած ատենն է։ Ես եմ աշխարհի լոյսը. ես գործելու ժամանակը գիտեմ"։*

Զայս իբրեւ ասաց՝ եթուք ՚ի գետին, և արար կաւ ՚ի թքոյն, և ծեփեաց զկաւն ՚ի վերայ աչաց կուրին, և ասէ ցնա. Երթ լուա՛ յաւազանին Սիլովամայ՝ (որ թարգմանի ա-

առաքեալ)․ գնաց լուացաւ, եկն և տեսանէր ։ Յովհ. Թ. 6—7 ։

*Այս ըսելէն վերջը գետինը թքաւ, ու թքով կաւ շինեց, և կուրին աչքն անով ծեփեց. չէ թէ խօսքով անկարող էր բժշկել, այլ իր Աստուածական զօրութիւնը և արարչագործութիւնը ցուցնելու համար՝ կաւով կուրին նորէն աչք ստեղծեց ։ Զմարդն ՚ի հողոյ ինքն ստեղծած ըլլալը՝ այս գործողութեամբ ցցուց, և միանգամայն յայտնեց, թէ մարդուն հոգւոյ աչքը ո՛չ միայն յանկարծ, այլ շատ անգամ՝ աստիճանաբար կը լուսաւորուի Աստուծոյ խօսքովը. և հրամայեց կուրին, որ Սելովմայ աւազանը երթայ և լուացուի, Սելովմայ աւազանը՝ որ առաքեալ կը թարգմանուի ։ Այս ջուրը Գեհոնէն գետին ակէն կուգար, և Երուսաղէմէն մէկ մղոնի չափ հեռու տեղ մը կը լճանար. և թերևս քաղաքին վերի կողմէն գալով պարտէզներն երթալ ջրելուն համար* առաքեալ *անունն առած ըլլայ ։ Գնաց կոյրը Սելովմայ աւազանը ու լուացուեցաւ. աչքը բացուեցան ու կը տեսնէր ։ Ամէնուն համար Քրիստոս՝ առաքեալն յերկնից՝ ունի իր շնորհաց աւազանը, ուր մաքուր և սուրբ վտակներով ամէնուն իմացականութիւնը և սիրտը կը մաքրուի, և Աստուծոյ արքայութիւնը տեսնելու համար՝ հոգւոց աչքերն կը լուսաւորուին ։*

Իսկ դրացիքն և որոց տեսեալ էր զնա յառաջագոյն՝ թէ մուրացիկ էր, ասէին. ո՞չ սա էր որ նստէր և մուրանայր ։ Կէսքն ասէին, նա է. այլքն ասէին, ո՛չ. այլ նման է նմա. և ինքն ասէր, թէ ես եմ ։ Ասեն ցնա. իսկ զի՞արդ բացան աչք քո ։ Նա ետ պատասխանի. այր մի որում Յի-

սուս ասեն, կաւ արար, և ծեփեաց զաչս իմ, և ասէ ցիս. Երթ ՛ի Սիլովամ և լուա՛. չոգայ լուացայ, և տեսանեմ։ Ասեն ցնա. ո՞ւր է նա. ասէ ցնոսա. ո՛չ գիտեմ։ Յովհ. Թ. 8—12.

Հակառակորդ Հրէայք՝ որ զՔրիստոս դատապարտելու համար առիթ կը փնտռէին, երբ կուրին դրացիներէն այս հրաշալեաց պատմութիւնը և անոնց զարմանքը լսեցին, մանաւանդ երբ ոմանք կ'ըսէին, թէ այս այն կոյրն էր՝ որ տաճարին դուռը նստած կը մուրար, կը պնդէին, թէ սա ան չէ, այլ անոր նման մէկն է. իսկ կոյրը միամտաբար չխտակը 'կը զրուցէր, թէ ինքն է. և կը պատմէր պարզութեամբ իւր աչաց բժշկութիւնը Յիսուսի միջոցաւ, որուն ո՛ւր երթալը չը գիտէր։

Ածէին առ փարիսեցիսն զնա՝ որ երբեմն կոյրն էր։ Եւ էր շաբաթ՝ յորժամ զկաւն արար Յիսուս, և եբաց զաչս կուրին։ Դարձեալ հարցանէին զնա փարիսեցիքն, թէ զիա՞րդ տեսանես. Եւ նա ասէ ցնոսա. կաւ եդ ՛ի վերայ աչաց իմոց, և լուացայ, և տեսանեմ։ Ասեն ոմանք ՛ի փարիսեցւոցն. ոչ է այրն այն յԱստուծոյ, զի զշաբաթս ոչ պահէ։ Կէսքն ասէին. իսկ զիա՞րդ կարէ մարդ մեղաւոր այսպիսի նշանս առնել։ Եւ էին հերձուածք ՛ի մէջ նոցա։ Ասեն դարձեալ ցկոյրն. դու զի՞ ասես վասն նորա, զի եբաց զաչս քո. և նա ասէ, թէ մարգարէ է։ Յովհ. Թ. 13-17.

Զարմանքն ու վէճը շատնալով փարիսեցւոց առջև տարին կոյրը. փարիսեցիք հետաքրքրութեամբ հարցումներն կրկնեցին. բժշկեալն ալ նորէն նոյն պարզութեամբ իւր բժշկութեան պատմութիւնը կրկնեց։ փարիսեցիք նոյն աւուր շաբաթ լինելը առիթ և պատճառ բռնելով շա-

րամտութեամբ ուզեցին, որ այդ հրաշքին տեսնող ժողովուրդն ու բժշկեալը Յիսուսի վրայօք գայթակղեցնեն. և չը կրնալով ուրանալ զայդ մեծ և զարմանալի հրաշքը՝ ծաղրելի իմաստակութեամբ ըսին ամենք 'ի փարիսեցւոց. որովհետև այդ մարդը շաբաթը չը պահեր, ուրեմն Աստուծմէ չէ։ Բայց նոյն իսկ իրենց մէջէն շատերն կ'ըսէին, թէ մեղաւոր մարդ մը ի՞նչպէս կրնայ այդպիսի հրաշք մը գործել։ Ասոր համար երկպառակութիւն ծագեցաւ իրենց մէջ։ Ա՛յն ատեն նորէն կուրին հարցուցին, թէ դո՛ւ ինչ գաղափար ունիս աչքդ բացողին նկատմամբ. Նա դարձեալ պարզմտութեամբ պատասխանեց, թէ մարգարէ մ'է։

Եւ ոչ հաւատացին Հրէայքն զնմանէ, թէ կոյր էր՝ և բացաւ, մինչև կոչեցին զծնողս բացելոյն։ Հարցին ցնոսա և ասեն. սա՞ է որդին ձեր՝ զորմէ դուքն ասէիք, եթէ կոյր ծնաւ. արդ զիա՞րդ տեսանէ։ Պատասխանի ետուն նոցա ծնողքն նորա և ասեն. գիտեմք, զի սա է որդին մեր, և զի կոյր ծնաւ. Բայց զիա՞րդ այժմ տեսանէ՝ ոչ գիտեմք. կամ թէ ո՞ եբաց զաչս դորա՝ մեք ոչ գիտեմք. զդա եւեթ հարցէ՛ք, ինքնին 'ի չափ հասեալ է, ինքն իւր խօսեսցի վասն իւր։ Զայս ասացին ծնողքն նորա, զի երկնչէին 'ի Հրէիցն. քանզի առաջինն եդեալ էր Հրէից, եթէ ոք խոստովանեսցի զնա Քրիստոս՝ 'ի բաց կացցէ 'ի ժողովրդենէն. Վասն այնորիկ ասացին ծնողքն նորա, թէ ինքնին 'ի չափ հասեալ է, զնա եւեթ հարցէք։ Յովհ. Թ. 18—23։

փարիսեցիք միշտ անհաւատ՝ չէին կրնար ընդունիլ, թէ աչքը բացուող կոյրն անի էր. ուստի ծնողքը կանչեցին և ստուգեցին անոնցմէ, թէ իրենցմէ կոյր ծնած որդին անի էր. և երբ

ինչպէս նորա աչաց բացուելուն վրայօք հարցումն ուղղուեցաւ իրենց՝ չըգիտնալ կեղծեցին, կամ առ ահին փարիսեցւոց՝ իրենց հաւատքը պահեցին, զի հրէայք դաշն դրած, ուխտ ըրած էին, թէ Յիսուսի համար «Քրիստոս է» ըսողն ու դաւանողը՝ ժողովարանէն արտաքսեն. անոր համար ըսին, թէ մեք չը գիտեմք՝ թէ հիմայ ինչպէս դորա աչքերին բացուեր են, և կամ ո՞վ բացեր է մեր որդւոյն աչքը. և ըստ որում ինքն չափահաս է՝ իրեն հարցուցէ՛ք, ինքն իրեն համար թո՛ղ խօսի.

Դարձեալ կրկին անգամ կոչեցին զայրն՝ որ կոյրն էր, և ասեն ցնա. տո՛ւր փառս Աստուծոյ. մեք գիտեմք, զի այրն այն մեղաւոր է։ Եւ նա ասէ. Եթէ մեղաւոր իցէ՝ ես ոչ գիտեմ. բայց զայս գիտեմ, զի կոյր էի, և արդ տեսանեմ։ Դարձեալ ասեն ցնա. զի՞նչ արար քեզ, զիա՞րդ եբաց զաչս քո։ Պատասխանի ետ նոցա. ասացի ձեզ, և ոչ լուարուք. զի՞ կամիք դարձեալ լսել. միթէ և դո՞ւք կամիք աշակերտել նմա։ Նոքա հայհոյեցին զնա և ասեն. դու լիցիս նորա աշակերտ. մեք Մովսէսի աշակերտք եմք. մեք գիտեմք, զի ընդ Մովսէսի խօսեցաւ Աստուած. զսա ո՛չ գիտեմք՝ ուստի՞ իցէ։ Յովհ. Թ. 24—29.

փարիսեցիք դարձեալ Քրիստոսի ճշմարտութեան վրայ ժողովրդեան հաւատքը մոլորեցնելու միտօք՝ կանչեցին բժշկեալն ու ըսին. դու Աստուծոյ միայն փառք տո՛ւր, չըլլայ որ հաւատաս այն մարդուն. մեք՝ որ օրինաց գիտուններն եմք, աղէկ գիտեմք՝ որ այն մարդը մեղաւոր է։ Բժշկեալը կրկնեց. անոր մեղաւոր ըլլալուն վրայօք բան մը չը գիտեմ. բայց սա լաւ գիտեմ՝ որ կոյր էի, ու հիմայ աչքերս կը տեսնեն։

Դարձեալ հարցուցին փարիսեցիք. ի՞նչ ըրաւ քե-զի, ի՞նչպէս բացաւ աչքերդ: Այս անգամ բժըշ-կեալը քիչ մը տաքնալով պատասխանեց: Հիմայ ըսի ձեզի, ու չիմացաք. ինչո՞ւ համար նորէն լը-սել կ'ուզէք. միթէ դո՞ւք ալ անոր աշակերտիլ կը բաղձաք: Անոնք իրենց սրտին դառնութիւնը դուրս թափելով՝ հայհոյութիւններ ըրին եւ ա-ւելցուցին, թէ դո՛ւ եղիր անոր աշակերտ, մեք Մովսէսի աշակերտած եմք արդէն, մեք գի-տեմք, որ Աստուած մի միայն Մովսէսի հետ խօ-սեցաւ. մեք ան մարդուն ո՛ւրկից ըլլալն ան-գամ չը գիտենք:

Պատասխանի ետ այրն եւ ասէ ցնոսա. այդ իսկ են զարմանք. զի դուք ո՛չ գիտէք՝ ուստի իցէ, եւ զիմ զա-չս եբաց: Գիտեմք զի Աստուած մեղաւորաց ո՛չ լսէ. բայց եթէ աստուածապաշտ ոք իցէ՝ եւ զկամս նորա առնիցէ, նը-մա լսէ: 'Ի յաւիտենից ոք ո՛չ լուաւ՝ եթէ եբաց ոք զաչս կուրի 'ի ծնէ կոյր ծնելոյ: Եթէ ո՛չ յԱստուծոյ էր այրն այն՝ ո՛չ կարէր առնել ինչ: Պատասխանի ետուն եւ ասեն ցնա. 'ի մեղս իսկ ծնեալ ես ամենեւին, եւ դու վարդապետե՞ս զմեզ. եւ հանին զնա արտաքս: Լուաւ Յիսուս՝ եթէ հանին զնա արտաքս, եւ իբրեւ եգիտ զնա՝ ասէ ցնա. դու հաւատա՞ս յՈրդի Աստուծոյ: Նա պատասխանի ետ եւ ասէ. Տէ՛ր ո՞վ է՝ զի հաւատացից 'ի նա: Ասէ ցնա Յիսուս. եւ տեսեր զնա, եւ որ խօսիդ ընդ քեզ՝ նա է: Եւ նա ասէ. հաւատամ Տէ՛ր, եւ երկիր եպագ նմա: Յովհ. Թ. 30–38.

Պատասխան տուաւ բժշկեալն ու ըսաւ ա-նոնց: Ահա այդ բանն է զարմանք. դուք՝ անոր ո՛ւսկից ըլլալը չը գիտեմք՝ կ'ըսէք, բայց նա իմ աչքերս բացաւ. Գիտեմք, որ Աստուած մեղա-ւորներուն չի լսեր, կամ անոնց խօսքովը այսպէ-

սի հրաշքներ չի գործեր, սակայն Աստուծոյ կամաց՝ գործադիր աստուածապաշտ անձին՝ խօսքը կը լսէ ու կը կատարէ։

Կուրին այս խօսքը Աստուածաշունչ Ս. Գրոց հմտութեամբ չէ. սակայն կարծես թէ՝ մարդարէութիւն մ'է Քրիստոսի համար՝ որ բնաւ մեղք չը գործեց, թէև կոյրը չէր ճանչեր զՅիսուս և չէր գիտեր կատարելապէս անոր ո՛վ ըլլալը։ 'Ի սկզբանէ աշխարհի մէկը չէ լսած՝ կ'ըսէ, թէ մարդ մը՝ կոյր ծնած կուրին աչքը բացած ըլլայ. թէ որ այդ մարդը Աստուծմէ չ'ըլլար՝ բան մը չէր կրնար ընել։

Այս խօսքին վրայ փարիսեցիք զայրանալով ըսին, թէ դու բոլորովին մեղաց ծնունդ ես— Առաքեալք ալ գրեթէ ասոնց մերձաւոր կարծիք ունեցան—, ու մեզի վարդապե՞տ ըլլալ կ'ուզես։ Ու դուրս հանեցին զանի կամ վռնտեցին։ Եւ ահա անոնց վռնտածը Յիսուս Քրիստոս ընդունեց և ըսաւ. "Դու կը հաւատա՞ս Որդւոյն Աստուծոյ". Երբ բժշկեալն Աստուծոյ Որդւոյն ո՛վ ըլլալն հարցուց, Յիսուս անոր հոգւոյ աչքն ալ լուսաւորելով՝ ինքզինքը ներկայացուց, և 'ի ծնէ կոյրն հաւատալով՝ երկրպագութիւն ըրաւ Աստուածորդւոյն, զոր ընդունեց։

Եւ ասէ Յիսուս. 'ի դատաստան եկի յաշխարհս յայս, զի որ ոչն տեսանեն՝ տեսցեն, եւ որք տեսանենն՝ կուրասցին։ Լուան ոմանք 'ի փարիսեցւոցն՝ որք ընդ նմա էին, եւ ասեն ցնա. Միթէ եւ մեք կո՞յրք իցեմք։ Ասէ ցնոսա Յիսուս. Եթէ կոյրք էիք՝ ոչ էր ձեր մեղ. բայց արդ ասէք՝ եթէ տեսանեմք, եւ մեղքն ձեր 'ի ձեզ հաստատեալ են։ Յովհ. Թ. 39—41։

վրան արդարութեան եկի յաշխարհս . որոնք որ իրենց կուրութիւնը ճանչեն՝ անոնք պիտի լուսաւորուին ինև . իսկ որոնք որ փարիսեցւոց պէս կոյր ըլլալնին չիմանան, և լուսաւոր կարծեն ինքզինքնին ու յամառ մնան՝ առաւել պիտի կուրանան: Եթէ դուք բնաւպէս կոյր լինէիք՝ այդ յանցանք չէր ձեզ համար. բայց որովհետև ամէն բան դիտել կը պարծենաք՝ բռնել է թէ դիտութեամբ կը մեղանչէք . և քանի որ չէք ապաշխարեր՝ մեղքը ձեր վրայ կայ և կը մնայ՝ առանց ներողութեան արժանանալու:

## Գ. Առակ քաջի հովուին

Ամէն ամէն ասեմ ձեզ. որ ո՛չ մտանէ ընդ դուռն 'ի գաւիթ ոչխարաց, այլ ընդ այլ ելանէ՝ նա գող է, և աւազակ: Իսկ որ մտանէ ընդ դուռն, հովիւ է ոչխարաց: Նմա դռնապանն բանայ, և ոչխարքն ձայնի նորա լսեն. և զիւր ոչխարսն կոչէ յանուանէ, և հանէ զնոսա: Եւ յորժամ զիւրսն զամենայն հանիցէ, առաջի նոցա երթայ՝ և ոչխարքն զհետ նորա երթան, զի ճանաչեն զձայն նորա: Զօտարի զհետ ո՛չ երթիցեն, այլ փախիցեն 'ի նմանէ, զի ո՛չ ճանաչեն զձայն օտարաց: Յովհ. Ժ. 1-5:

Եւ որպէս զի Հրէայք չըսեն, թէ՝ եթէ մեք քու ըսածդ չենք գար, ոչ թէ մեր կուրութեանըն համար է, այլ անոր համար՝ թէ դու մոլորեցուցիչ մ'ես, Յիսուս յաւելցուց, թէ ինքը մարգարէից ձեռօք գուշակուած քաջ հովիւն է, որ իւր սուտ մարգարէ կամ գող ըլլալը՝ դաւթին դռնէն միայն ներս մտնելովն կ'ապացուցանէ: "Նա՝ որ դաւթին դռնէն չի մտներ, կ'ըսէ. այլ ուրիշ տեղէ, գող և աւազակ է: Քրիստոս

է դաւթին դուռն ու հովիւը, և դռնապան՝ Հոգւոյն սուրբ է. Քրիստոսի կամ Քրիստոս ըսուած դռնէն մտնելու է Աստուծոյ եկեղեցին կամ արքայութիւնը։ Դռնապանը միշտ գործակից է հովուին, որ բոլոր իւր ոչխարներն կը ճանչէ այնչափ, որ անոնց անուններն անգամ գիտէ, և յանուանէ կը կոչէ զանոնք։ Իւր ոչխարներն անոր ձայնը կը ճանչեն. անոր ձայնը՝ մխիթարութեան և փրկութեան ձայնն է։ Օտարին ետևէն չեն երթար, զի գիտեն, թէ օտարը զիրենք գահավիժութեանց և գայլերու պիտի մատնէ. օտարին ձայնը անծանօթ է իրենց. օտարը զիրենք դալարաւէտ մարգագետիններու, ծիծաղախիտ դաշտերու չառաջնորդեր, բայց միայն հովիւն Քրիստոս՝ որ զիրենք հանգստեան և կենդանութեան առուներու և վտակներու քով կը տանի.

Զայս առակ ասաց նոցա Յիսուս, և նոքա ո՛չ գիտէին եթէ զինչ էր զոր խօսէրն ընդ նոսա։ Դարձեալ ասէ ցնոսա Յիսուս. ամէն ամէն ասեմ ձեզ, զի ես եմ դուռն ոչխարաց։ Ամենեքեան՝ որ յառաջ քան զիս եկին, գողք էին և աւազակք. այլ ո՛չ լուան նոցա ոչխարքն։ Ես եմ դուռն. ընդ իս եթէ ոք մտանիցէ, կեցցէ՝ մտցէ և ելցէ, և ճարակ գտցէ. Գող ո՛չ գայ՝ եթէ ո՛չ՝ զի գողասցէ և սպանցէ և կորուսցէ. ես եկի զի զկեանս ունիցին, և առաւել ևս ունիցին։ Յովհ. Ժ. 6—10։

Բայց նոքա Քրիստոսի այս առակը չիմացան. ոչ թէ խօսքերը չէին լսեր, այլ թէ ի՛նչ էին նոցա խորհրդաւոր իմաստներն՝ չէին կարող թափանցել։ Կրկնեց Քրիստոս. Ես եմ դուռն. ինձմէ առաջ եկածներն՝ զոր օրինակ դպիրք, փա-

ըխսեցիք և սուտ մարգարէք, գողեր՝ ու աւազակներ էին. ես չը ղրկեցի զանոնք։ Ես եմ կենաց դուռն. ո՛վ որ յիս ներսմտնէ, (ելցէ մըտցէ՝ եբրայական ոճէ, որ գործել կը նշանակէ) նա՝ հոգևոր կերակուր, Աստուծոյ խօսքը, անուշ յաւիտենական պիտի գտնէ և պիտի ապրի։ Գողը կամ սուտ մարգարէն գողնալու և ձեր հոգին սպաննելու համար կուգայ. բայց ես եկայ որ ձեզի յաւիտենական կենանք տամ" զոր անձամբ բերի երկնքէն, զկենանս շնորհաց խաղաղաւէտս յայսմ աշխարհի, և 'ի հանդերձելումն առաւելյոյժ զկենանս յաւիտենից„։

Ես եմ հովիւն քաջ. հովիւ քաջ զանձն իւր դնէ 'ի վերայ ոչխարաց։ Իսկ վարձկանն՝ որ ոչ է հովիւ, որոյ ոչ իւր են ոչխարքն, իբրև տեսանէ զգայլն զի գայ՝ թողու զոչխարսն և փախչի, և գայլն յափշտակէ զնոսա և ցրուէ։ Քանզի վարձկան է, և ոչ՛ փոյթ նմա վասն ոչխարացն։ Ես եմ հովիւն քաջ, և ճանաչեմ զիմսն՝ և ճանաչիմ յիմոցն։ Որպէս գիտէ զիս Հայր, գիտեմ և ես զՀայր. և զանձն իմ դնեմ 'ի վերայ ոչխարաց։ Նաև՝ այլ ևս ոչխարք են իմ, որ ո՛չ են յայսմ գաւթէ. և զայն ևս պարտ է ինձ ածել այսր. և ձայնի իմում լուիցեն, և եղիցին մի հօտ՝ և մի հովիւ։ Յովհ. Ժ. 11—16։

Ես եմ քաջ հովիւը, հովուին քաջութիւնը և հաւատարմութիւնը՝ իւր անձը ոչխարներուն վըրայ դնելէն յայտնի կ'ըլլայ. վարձկան չեմ ես. վարձկանը ոչխարներուն տէրը չէ. գայլը՝ Թըշնամին տեսածին պէս՝ առանց անձնուիրութեան կը փախչի՝ թողլով ոչխարներն վտանգի մէջ, և թշնամին կը յափշտակէ զանոնք։ Վարձկանը միայն իւր վարձքը առնելուն կ'սպասէ, և ոչխա-

խարաց վրայ գութ և գորով չունի։

Ինչպէս Հայր, Որդի և Հոգի՝ միասնական են, այսպէս Քրիստոս և իւր եկեղեցին՝ միասնական և անբաժանելի են իրարմէ։ Ինչպէս ինք զիւր Հայրը և Հայրը զինք կը ճանչեն, և կը սիրեն զիրեար, այսպէս Քրիստոս իւր ոչխարներէն կը ճանչէ և կը ճանչուի իւր ոչխարներէն ու կը սիրուի։ Հեթանոսք և կռապաշտք՝ որ եկեղեցւոյ անդամակից և արտաքոյ են եկեղեցւոյ, ըստ բանին Քրիստոսի և միայն Նորա միջոցաւ պիտի գան մտնեն Ս. Եկեղեցւոյ փարախին մէջ, անոնք ալ Յիսուսի ձայնը պիտի լսեն, պիտի ճանչեն զանի, և պիտի ըլլան մի հօտ՝ կաթուղիկէ եկեղեցի, և մի հովիւ՝ որ է Յիսուս Քրիստոս։

Վասն այնորիկ սիրէ զիս Հայր իմ, զի ես դնեմ զանձն իմ. զի միւսանգամ առից զնա։ Ո՛չ ոք հանէ զնա յինէն. այլ ես դնեմ զնա անձամբ իմով. իշխանութիւն ունիմ դնել զնա, և իշխանութիւն ունիմ միւսանգամ առնուլ զնա. զայս պատուէր առի 'ի Հօրէ իմմէ։ Յովհ. Ժ. 17—18։

Անոր համար չափազանց կը սիրէ զիս Հայրըս, զի ես Հովիւս պիտի մեռնիմ ոչխարացս համար. իմ անձս պիտի դնեմ Նոցա փրկութեանն համար, բայց միւսանգամ պիտի առնում զայն՝ յարութեամբս 'ի մեռելոց. և մշտնջենաւոր Հովիւ պիտի լինիմ խնև փրկեալ հօտին։ Ոչ ոք իշխանութիւն ունի կեանքս ինձմէ բառնալու. իմ է այդ իշխանութիւնը. իշխանութիւն ունիմ դընել զնա (մեռանիլ 'ի վերայ ոչխարաց), և իշխանութիւն ունիմ միւսանգամ առնուլ զնա (առնուլ զմարմինն 'ի գերեզմանէն). այս պատուէր կամ Հայրական տնօրինութիւն է՝ զոր ընկալայ

՚ի Հօրէ իմմէ ։

Դարձեալ հերձուած լինէր ՚ի մէջ Հրէից վասն բանիցս այսոցիկ ։ Եւ ասէին բազումք ՚ի նոցանէ ․ դեւ գոյ ՚ի նմա՝ եւ մոլեգնի , զի՞ լսէք դմա ։ Այլք ասէին ․ այդ բանք ո՛չ դիւահարի են ․ միթէ դեւ կարէ՞ զաչս կուրաց բանալ ։ Յովհ․ Ժ․ 19—21 ։

*Դարձեալ կարծեաց տարբերութիւններ երեւցան Հրէից մէջ այս խօսքերուն վրայ ․ Քրիստոսի թշնամիք՝ «խենդեցեր է , այդպիսի մարդուն ինչո՞ւ մտիկ կ'ընէք» կ'ըսէին ․ իսկ ուրիշներն կը պատասխանէին ․ «խենդը ասանկ խօսքեր չը կըրնար ընել ․ դեւը՝ կուրին աչքը կրնա՞յ բանալ» ։ Ուրեմն կը խոստովանէին , թէ աստուածային զօրութեամբ եւեթ ՚ի ծնէ կուրին աչքը բացաւ ։*



# ԳԼՈՒԽ ԻԵ․

ԱՌԱՔՈՒՄՆ ԵՕԹԱՆԱՍՈՒՆ ԵՒ ԵՐԿՈՒՑ ԱՇԱԿԵՐՏԱՑ Ի ՔԱՐՈԶՈՒԹԻՒՆ ․— ԴԱՐՁ ՆՈՑԻՆ ԱՌ ՔՐԻՍՏՈՍ ․— ՕՐԻՆԱԿ ՍԱՄԱՐԱՑՒՈՑՆ ԲԱՐԵՐԱՐԻ ․— ՄԱՐԹԱ ԵՒ ՄԱՐԻԱՄ



## Ա․ Առաքումն եօթանասուն եւ երկուց աշակերտաց ՚ի քարոզութիւն

Յետ այսորիկ երեւեցոյց Տէր եւ այլ եւս եօթանասուն եւ երկուս ․ եւ առաքեաց զնոսա երկուս երկուս առաջի իւր

յամենայն քաղաք և 'ի տեղի, ուր ինքն երթալոց էր։ Ղուկ. Ժ. 1։

Յիսուս ընտրեց նորէն իր հաւատացելոց խըմբին մէջէն եօթանասուն և երկու աշակերտներ ալ՝ բաց յառաքելոց (ասոնք եօթանասունք ալ կ'ըսուին). և որպէս զի նոքա իրարու օգնական և վկայ լինէին իրենց խորհրդոյն ու քարոզութեամբ՝ սկսաւ զանոնք երկու երկու իւր առջևէն ղրկել այն ամէն քաղաքներն ու տեղերը՝ ուր ինքը պիտի երթար յետոյ, որպէս զի ժողովուրդը պատրաստեն 'ի լուր բանին ճշմարտութեան և 'ի հաւատս Որդւոյն Աստուծոյ։ Եւ երկոտասան առաքելոց տուած խրատներն՝ անոնց ալ կրկնեց (զոր իւր տեղը գրեցինք արդէն)։

## Բ. Դարձ Նոցին առ Քրիստոս

Դարձան եօթանասուն և երկուքն խնդութեամբ և ասեն. Տէ՛ր՝ և դևք հնազանդին մեզ յանուն քո։ Եւ ասէ ցնոսա. տեսանէի զսատանայ անկեալ յերկնից իբրև զփայլակն։ Ահա ետու ձեզ իշխանութիւն կոխել զօձս և զկարիճս և զամենայն զօրութիւն թշնամւոյն, և ձեզ ոչինչ մեղանչեսցէ։ Բայց ընդ այն մի՛ խնդայք՝ եթէ այսք հնազանդին ձեզ, այլ խնդացէ՛ք զի անուանք ձեր գրեալ են յերկինս։ Ղուկ. Ժ. 17—20։

Նոքա՝ որ իրենց առաքելական պաշտօնավարութենէն դարձան Յիսուսի քով, խիստ մեծ ուրախութիւն ունէին. ըստ որում կը տեսնէին, թէ դևերն իրենց հրամանաց կը հնազանդին յանուն Քրիստոսի։ Եւ երբ իրենց այս ցնծութիւնը յայտնեցին իրենց երկնաւոր վարդապետին, նա պատասխանեց. «Սատանայի իշխանութիւնը

ոչ թէ հիմայ , այլ նոյն իսկ իմ մարդեղութեանս առաջին վայրկենին մէջ կործանեցաւ . Նա չը պիտի կրնայ բնաւ դիմակալել ձեզի տրուած իշխանութեան և զօրութեան . զձեզ տեսած ատեն հալածական պիտի փախչի, իմ անունէս պիտի սարսի և դողայ ։ Բայց դուք մի՛ հպարտանաք և մի՛ զեղծանիք այդ իշխանութեամբ. դուք ուրախ եղէք , որ ձեր անուանքն արդէն 'ի դըպրութեան կենաց արձանագրուեցան յորէ անտի ընտրութեան և կոչման ձերոյ .

'Ի նմին ժամու ցնծացաւ Յիսուս Հոգւովն սրբով և ասէ· գոհանամ զքէն Հա՛յր՝ Տէր երկնից և երկրի , զի ծածկեցեր զայս յիմաստնոց և 'ի գիտնոց՝ և յայտնեցեր զայս տղայոց . այո՛ Հայր , զի այսպէս հաճոյ եղև առաջի քո ։ Ամենայն ինչ տուաւ ինձ 'ի Հօրէ իմմէ . և ոչ՛ք գիտէ թէ ո՞վ է Որդի , եթէ ոչ՝ Հայր , և ո՞ է Հայր՝ եթէ ոչ՝ Որդի , և ում կամիցի Որդին յայտնել . Ղուկ. Ժ. 21—22 ։ Եկա՛յք առ իս ամենայն վաստակեալք և բեռնաւորք , և ես հանգուցից զձեզ ։ Առէ՛ք զլուծ իմ 'ի ձեզ , և ուսարուք յինէն զի հեզ եմ և խոնարհ սրտիւ ։ Մատթ. ԺԱ. 28-29 ։

Քրիստոսի տնօրինութեանց սուրբ Հոգին գործակից է միշտ . այս ժամուն Քրիստոս սուրբ Հոգիով ցնծաց , և գոհութիւն տուաւ՝ իւր երկնաւոր Հօրն՝ իւր աշակերտաց վրայ նայելով , որոնք՝ տղայ և տգէտ կը համարուէին, յաչս դըպրաց և փարիսեցւոց, որ գիտունքն և իմաստունքըն էին , իսկ Քրիստոսի տնօրինութեանց անտեղեակ . և թէև աշակերտ ալ դեռ չը գիտէին՝ բայց Քրիստոս տէրն մեր՝ անոնց անկեղծութեանըն ու բարութեանը համար պիտի յայտնէր անոնց ամէն բան . զի Աստուծոյ կամքն զանձինս

իմաստուն համարողներն կործանել, և անոնցմէ տգէտ ու տղայ համարուածներն բարձրացունել էր՝ տալով նոցա այն ճշմարիտ աստուածգիտութիւնը, զոր միայն Որդին Աստուծոյ կարող էր յայտնել՝ որոց որ կը կամէր. Աստուծոյ իմաստութիւնը հպարտ և դոռոզ անձինքներէ ծածկուած պիտի մնայ. զի անոնք տրամադիր չեն ուսանելու. Հպարտ և ամբարտաւան անձինք՝ ուրիշներու համար չը պիտի աշխատին՝ ուրիշներու բեռները չը պիտի տանին. Քրիստոսի աշակերտք՝ Քրիստոսի եկեղեցւոյն մէջ որչափ հոգնած աշխատած ու բեռնաւորուած ալ լինին, Քրիստոսով պիտի հանգչին. ուստի կը հրաւիրէ տէրն մեր այս կարգի անձինք 'ի հանգիստ, և կազդարարէ որ իւր լուծն յօժարութեամբ տանին. Քրիստոսի պաշտօնը քաղցր լուծ մ'է և թեթև, մանաւանդ երբ ետքի վարձքը միտքը բերէ։ Սակայն այդ լուծն ստանձնողն ամէն այս պաշտամանց մէջ՝ Քրիստոսի խոնարհութիւնն ու հեզութիւնը ունենալու է; և ոչ ինքզինքնին իմաստուն կարծող մարդոց դոռոզութիւնն. այս հեզութիւնն և սրտի խոնարհութիւնն 'ի Քրիստոսէ միայն կրնամք սորվիլ։

## Գ. Օրինակ Սամարացւոյն բարբառի

Նա ահա յարեաւ ամն օրէնական, փորձէր զնա և ասէր. վարդապե՛տ, զի՞նչ գործեցից, զի զկեանս յաւիտենականս ժառանգեցից։ Եւ նա ասէ ցնա. յօրէնս զի՞նչ գրեալ է, որպէ՞ս ընթեռնուս։ Նա պատասխանի ետ և ասէ. սիրեսցես զՏէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ և յամենայն զօրութենէ քումմէ և յամենայն մտաց քոց, և զընկեր քո

իբրեւ զանձն քո։ Եւ ասէ ցնա. Ուղիղ ետուր պատասխա-
նի. զայդ արա՝ եւ կեցցես։ Նա իբրեւ կամեցաւ զանձն
արդարացուցանել՝ ասէ ցՅիսուս. Եւ ո՞վ է իմ ընկեր։ Պա-
տասխանի ետ Յիսուս եւ ասէ. Այր մի իջանէր յԵրուսաղեմէ
յԵրիքով, եւ անկաւ ի ձեռս աւազակաց, որք մերկացուցին
զնա՝ եւ վէրս ի վերայ եդին, թողին կիսամահ եւ գնացին։
Դէպ եղեւ քահանայի միոջ իջանել ընդ նոյն ճանապարհ, եւ
տեսեալ զնա՝ զանց արար։ Նոյնպէս եւ Ղեւտացի մի եկեալ
ընդ նոյն տեղի՝ տեսեալ եւ զանց արար։ Սամարացի ոմն ճա-
նապարհորդեալ եկն ընդ նոյն առ նովաւ, եւ տեսեալ զնա՝
գթացաւ։ Եւ մատուցեալ պատեաց զվէրս նորա, արկեալ
ի վերայ ձէթ եւ գինի. եւ եդեալ ի վերայ գրաստու իւրոյ՝
ած զնա ի պանդոկ մի, եւ դարմանեաց զնա։ Եւ ի վա-
ղիւն անդր իբրեւ ելանէր անտի, հանեալ ետ պանդոկապե-
տին երկուս դահեկանս՝ եւ ասէ. Դարման տար դմա, եւ
զոր ինչ ծախեսցես ի դա՝ ի միւսանգամ գալստեան իմում
հատուցից քեզ։ Արդ՝ ո՞ յերիցանց ի նոցանէ թուի քեզ
մերձաւոր լեալ անկելոյն ի ձեռս աւազակաց։ Եւ նա ասէ.
Որ արար զողորմութիւնն ի վերայ նորա. ասէ ցնա Յիսուս.
Երթ եւ դու արա նոյնպէս։ Ղուկ. Ժ. 25—37։

*Նոյն ինքն օրինականի հարցման վրայ՝ թէ յաւիտենական կեանքը վաստկելու համար ի՞նչ ընել պէտք է, անոր կը թողու քննել զօրէնս կամ զգիրս. և երբ պատասխան կ՚ընդունի, թէ զայն չահելու համար՝ զԱստուած և զընկերն պարտաւոր եմք սիրել, որով և անոնց վերաբերեալ պարտաւորութիւններն կատարել պէտք է, գոհ եղաւ Յիսուս և ըսաւ. «Ուրեմն կատարէ՛ զայդ, և յաւիտենական կեանքը ժառանգելուդ վրայ բնաւ տարակոյս մի՛ ունենար»։ Սակայն օրինականը՝ որ ինքզինքն արդար և հոգւոյն փրկութեան համար փութաջան ցոյց տալ կ՚ուզէր, կը*

ցանկար իմանալ նաև, թէ ո՞վ պիտի լինի իւր ընկերը՝ զոր աստուածասիրութեան անհրաժեշտ պարտաւորութեանն հետ միասին կը պարտի սիրել։ Քրիստոս իբր ստոյգ իրողութեամբ մը ջանաց ցուցընել, թէ ոչ այնչափ բարեկամներն են՝ որոց բարիք ընել կր պարտաւորի, որքան իրեն անծանօթներն և մինչև իւր անձին թշնամիներն զորոնք 'ի վտանգի սիրելու, դարմանելու և հոգալու է՝ նման այն Սամարացւոյն, որ թէև հերձուածող և նզովեալ ըստ Հրէից, աւելի գթաց և մօտեցաւ աւազակներէն վիրաւորելոյն և զանի մահուան ճիրանէն փրկեց մարդասիրաբար և առանց կրօնից խտրութեան քան այն քահանայն և Ղևտացին, որք թէև ուսեալ զօրէնս, զանցառու գտնուեցան օգնել իրեն ընկերին։ Գնա՛, ըսաւ, դու ալ այնպէս ըրէ. սիրէ՛ քու թշնամիդ, և օգնէ անոր. այն ատեն քուկդ է յաւիտենական կենաց ժառանգութիւնը։

## Դ. Մարթա եւ Մարիամ

Եւ եղեւ 'ի գնալն նոցա, եւ ինքն եմուտ 'ի գեօղ մի. եւ կին մի անուն Մարթա ընկալաւ զնա 'ի տուն իւրում։ Եւ նորա էր քոյր մի, որում անուն էր Մարիամ. որ եւ եկն նստաւ առ ոտսն Տեառն, եւ լսէր զբանս նորա։ Եւ Մարթա զբաղեալ էր 'ի բազում սպասու. եկն եկաց առ նմա եւ ասէ. Տէ՛ր՝ ոչինչ է փոյթ քեզ, զի քոյրդ իմ միայն եթող զիս 'ի սպասու. արդ՝ ասա՛ դմա զի օգնեսցէ ինձ։ Պատասխանի ետ Յիսուս եւ ասէ. Մարթա՛ Մարթա՛, զբազում հոգաս եւ զբազում իրիք զբաղեալ ես. բայց սակաւ ինչ պիտոյ է. Մարիամ մասն բարի ընտրեաց, որ ո՛չ բարձցի 'ի նմանէ։ Ղուկ. Ժ. 38—42։

Յիսուս Մարթայի յարգական գանգատանաց պատասխան կուտայ. «Մարթա՛ դու մարմնոյ պիտոյից շատ հոգ կը տանիս, մարմնոյ կենդանութեան համար գոյզն ինչ կերակուր բաւ է. տե՛ս թէ Մարիամ ի՞նչպիսի աղէկ բաժին մ՚ընտրեց։ Երանի՜ անոր, որ զբաղմանց լաւը կ՚ընտրէ»։ Մարիամ հոգևոր խօսքերը լսել կը սիրէր այնչափ, որ ա՛լ բան մը չէր երևէր աչքին, մանաւանդ երբ Յիսուս կը խօսէր, կերակուրն ալ կը մոռնար, զի յաւիտենից հոգևոր կերակրոյն ճաշակն առած էր։

Եւ եղեւ՝ իբրեւ կատարեաց Յիսուս զբանս զայսոսիկ, փոխեցաւ ՚ի Գալիլեէ՝ և եկն ՚ի սահմանս Հրէաստանի յայնկոյս Յորդանանու։ Եւ գնացին զհետ նորա ժողովուրդք բազումք, և բժշկեաց զնոսա անդ։ Մատ. ԺԹ. 1—2։

Ու երբոր Յիսուս իւր այս խօսքերը լրացուց, ելաւ Գալիլիայէն, անցաւ Հրէաստանի սահմանները, բժշկեց ժողովրդեան մարմնաւոր ցաւերն ու հիւանդութիւնները, և հոգևոր սնունդ ալ տուաւ անոնց, ինչպէս կ՚ըսէ Մարկոս աւետարանիչ։



# ԳԼՈՒԽ ԺԶ.

ՈՒՍՈՒՑԱՆԷ ՔՐԻՍՏՈՍ ԱՇԱԿԵՐՏԱՑՆ ՅԱՂՕԹՍ ԿԱԼ. — ԶՕՐՈՒԹԻՒՆ ԱՂՕԹԻՑ. — ԽՍՏԱՄԲՈՒԹԻՒՆ ՓԱՐԻՍԵՑԻՈՑ, ԵՒ ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ ԿԵՂԾԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՆՈՑԱ. — ԽՐԱՏԷ ԶԱՇԱԿԵՐՏՍՆ ՅԱՍՏՈՒԾՈՅ ԵՐԿՆՉԻԼ, ԵՒ Ի ՆԱ ԴՆԵԼ ԶՅՈՅՍ

## Ա. Ուսուցանէ Քրիստոս աշակերտացն յաղօթս կալ

Եւ եղեւ 'ի տեղւոջ ուրեք կալ յաղօթս. և իբրեւ դադարեաց՝ ասէ ցնա ոմն յաշակերտացն նորա. Տէ՛ր՝ ուսո՛ մեզ յաղօթս կալ. որպէս և Յովհաննէս ուսոյց աշակերտաց իւրոց։ Ասէ ցնոսա, յորժամ կայցէք յաղօթս, ասասջի՛ք. Հայր մեր՝ սուրբ եղիցի անուն քո. եկեսցէ արքայութիւն քո։ Զհաց մեր հանապազորդ տո՛ւր մեզ զօրըստօրէն։ Եւ թո՛ղ մեզ զմեղս մեր, զի և մեք թողումք ամենայնի՝ որ պարտիցէ մեզ. և մի՛ տանիր զմեզ 'ի փորձութիւն։ Ղուկ. ԺԱ. 1—5։

*Կ'երևի թէ այդ աշակերտը՝ Փրկչին 'ի լերին քարոզութիւնը լսած չէր. ուստի և Յիսուս յարմար դատեց կրկնել զայն 'ի լսելիս աշակերտացն իւրոց և ժողովրդեան, ուսոյց այն աղօթքը, որ աղօթից ամենէն համառօտն ու վսեմն է, և որոյ բացատրութիւնն արդէն գրուեցաւ։*

## Բ. Զօրութիւն աղօթից

Եւ ասէ ցնոսա. ո՞վ է 'ի ձէնջ որոյ իցէ բարեկամ, և երթիցէ առ նա 'ի մէջ գիշերի, և ասիցէ ցնա. բա՛րե-

որ զարտաքինն արար՝ և զներքինն նոյն արար ։ Բայց աղէ զարժանն էաց՝ տո՛ւք զողորմութիւն , և ահա ամենայն սուրբ է ձեր ։ Այլ վա՜յ ձեզ փարիսեցւոց․ զի տասանորդէք զանանուխ և զփեգենայ և զամենայն բանջար , և անցանէք զիրաւամբք և զսիրովն Աստուծոյ․ զայս արժան էր առնել՝ և զայն ո՛չ անցանել ։ Վա՜յ ձեզ փարիսեցւոց․ զի սիրէք զնախաթոռս ՚ի ժողովուրդս , և զողջոյնս ՚ի հրապարակս։ Վա՜յ ձեզ՝ զի էք դուք իբրև գերեզմանք անյայտք , և մարդիկ գնան ՚ի վերայ՝ և ո՛չ գիտեն ։ Ղուկ․ ԺԱ․ 37-44 ։

*Այս խօսքերը խօսած ատենը՝ փարիսեցինե-րէն մարդասիրագոյն մէկը զՅիսուս ճաշի հրաւի-րեց․ գնաց Յիսուս և ճաշի նստաւ․ հոն ուրիշ փարիսեցիներ ալ կային ։ Յիսուսի՝ կերակրէն յա-ռաջ ձեռքը չը լուալուն վրայ զարմացաւ տա-նուտէրը․ Յիսուս պատասխանեց․ "Հիմայ դուք փարիսեցիքդ բաժակին ու պնակին արտաքին կողմը կը մաքրէք , և ձեր ներքինը՝ յափշտակու-թեամբ և չարութեամբ լեցուն է ։ Ո՛վ անմիտք՝ միթէ նոյն Աստուածը չէ՞ , որ ներքինն ու արտա-քինը շինեց․ բայց գոնէ պէտք եղած , այսինքն, արժանաւոր առատաձեռն ողորմութիւնը տուէ՛ք․ անցեալին մէջ ըրած անիրաւ յափշտակութիւննե-րըն յետ դարձուցէ՛ք՝ որ սրբուիք ։ Դուք՝ որ ամենափոքր բաներէն , այսինքն , անանուխէն ու փեղենայէն (սէտէֆ օթու) ու խոտեղէններէն տիրոջը տասանորդ կը հանէք , և ամենամեծ բա-ները, այսինքն, Աստուծոյ սէրն ու իրաւունքը ա-ռանց խորութեան չէք պահեր․ ես չեմ՛ըսեր , որ տասանորդ մի՛ վճարէք , բայց պէտք չէ որ Աստուծոյ սէրն ալ զանցառութեան տաք ։ Վա՜յ ձեզի՝ փարիսեցի՛ք , դուք կը սիրէք ժողովարան-*

ներու մէջ բարձր տեղ նստիլ, և կ՚ուզէք որ հրապարակաց մէջ ամէնքն ձեզ յարգական բարև մատուցանեն. սակայն վա՜յ ձեզի. վասն զի կը նմանիք այն դերեզմանաց՝ որոնք չեն երևար, հողին հաւասարած են, ու մարդիկ վրայէն կը քալեն՝ առանց գիտնալու, որ այն գետնին մէջ նեխեալ փտութիւն կայ. այսպէս էք դուք. մարդիկ ձեզ բան մը կը կարծեն, բայց ձեր ներսիդին շատ աղտոտ է»:

Պատասխանի ետ ոմն յօրինականացն՝ և ասէ ցնա. վա՛րդապետ՝ զայս բանս ասելով և զմեզ թշնամանես: Եւ նա ասէ. և ձեզ վա՜յ օրինականացդ. զի բեռնայք մարդկան բեռինս դժուարակիրս, և դուք մատամբ միով 'ի բեռինսն ո՛չ մերձենայք: Վա՜յ ձեզ՝ զի շինէք զշիրիմս մարգարէիցն և հարքն ձեր սպանին զնոսա: Արդ ապաքէն վկայէք՝ եթէ կամակից էք գործոց հարցն ձերոց. զի նոքա կոտորեցին զնոսա, և դուք զշիրիմսն նոցա շինէք: Վասն այնորիկ իմաստութիւնն Աստուծոյ ասաց. առաքեցից 'ի նոսա մարգարէս և առաքեալս, և 'ի նոցանէ սպանանիցեն և հալածիցեն: Զի խնդրեսցի արիւն ամենայն մարգարէից՝ հեղեալ 'ի սկզբանէ աշխարհի՝ յազգէ յայսմանէ. յարենէն Աբելի մինչև ցարիւնն Զաքարիայ կորուսելոյ ընդ սեղանն և ընդ տաճարն. այո՛ ասեմ ձեզ՝ խնդրեսցի յազգէ յայսմանէ. Վա՜յ ձեզ օրինականացդ. զի թաքուցանէք զփականս գիտութեան. դուք ո՛չ մտանէք, և որ մտանելոցն էին՝ արգելուք: Եւ 'ի խօսելն զայս ամենայն առ նոսա առաջի ամենայն ժողովրդեանն, զամօթի հարկանէին. և սկսան դպիրքն և փարիսեցիք զայրալ՝ և երեսել ընդ նմա վասն բազում իրաց: Եւ սպասէին որսալ ինչ բանս 'ի բերանոյ նորա, զի ամբաստանեսցեն զնմանէ. Ղուկ. ԺԱ. 45—54:

Հոն գտնուող օրէնսգէտ վարդապետներէն

մէկը ըսաւ. վարդապե՛տ՝ այս խօսքերովդ զմեզ ալ կը թշնամանես։ Յիսուս պատասխանեց. «Վա՜յ ձեզի ալ՝ ո՛վ օրինականք, որ ուրիշներուն խղճմտանքին վրայ ծանր ու դժուարակիր բեռներ կը բեռցընէք, և դուք մատով անգամ նոյն բեռներուն չէք մօտենար։ Վա՜յ ձեզի, որ մարգարէից համար մեծ մեծ ու փառաւոր գերեզմաններ կը շինէք, այն մարգարէից համար՝ զոր ձեր հայրերն սպաննեցին։ Դուք մինչդեռ կ'ըսէք, թէ մեք այն սպանողներուն որդին եմք, ու մէկ կողմէ հին մարգարէից գերեզմանները կը շինէք, և միւս կողմանէ նոր մարգարէները և մինչև իսկ ամենամեծ մարգարէն գերեզման խրկելու վրայ կը խորհիք, դուք խորհրդով ու գործով կը վկայէք, թէ այն սպանողներուն որդիքն էք և կամակից անոնց չարութեան. վասն զի անոնք սպաննեցին, և դուք ալ սնափառութեամբ՝ ձեր հայրերէն աւելի չար մարդիկ էք, բայց մարդոց առջև սուրբ երևնալու համար անոնց գերեզմաններն կը զարդարէք ու կը շինէք։ Իմաստութեանըն Աստուծոյ ձեզ համար ղրկած մարգարէներն ալ դուք սպաննեցիք և պիտի սպաննէք. արդար Աբէլի արիւնէն սկսելով մինչև Բարաքիայի որդուն Զաքարիայի, այսինքն վերջին փոքր մարգարէներէն մէկուն արիւնը՝ զոր տաճարին ու սեղանին մէջ տեղն սպաննեցիք, ճշմարիտ կ'ըսեմ ձեզի՝ այս ազգէն պիտի փնտռուի։ Վա՜յ ձեզի՝ ո՛վ օրէնսգէտք, որ Աստուծոյ գիտութեան բանալիներն կը պահէք. դուք չէք մտներ, ու մտնողներուն ալ արգելք կ'ըլլաք»։ Ճշմարտութիւնն Աստուծոյ էր՝ որ կը խօսէր հրապարակաւ. ու ճշմարտութիւնը կը խօսի՝ կեղծ ա-

ւանդուլթիւնն ու սառութիւնը կ'ամչնայ. այսպէս կ'ամաչէին դպիրներն ու փարիսեցիները, և մինչև իսկ զրգռուեցան չար հարցումներ ընելու, ո,պէս զի բերնէն բան մ'որսան և Նորա վրայօք չարախօսութիւն ընեն։

Դ. Խրատէ զաշակերտսն յԱստուծոյ երկնչիլ, եւ 'ի Նա դնել զյոյս

Որովհետև 'ի հաւաքել բիւրաւորաց ժողովրդեանն՝ մինչև կոխել զմիմեանս, սկսաւ ասել ցաշակերտսն իւր. Նախ՝ զգուշ լերուք անձանց 'ի խմորոյ փարիսեցւոցն, որ է կեղծաւորութիւն. և այլն։ Ղուկ. ԺԲ. 1—11։

Այս պատմութեանց բացատրութիւնը դըրուած է Նախորդ. գլխոյ մէջ։



# ԳԼՈՒԽ ԻԵ.

ԱՌԱԿ ՄԵԾԱՏԱՆՆ ԱՆՄՏԻ.— ԽՐԱՏ ԱՊԱՒԻՆԵԼՈՑ Ի ԽՆԱՄՍ ՏԵՍՉՈՒԹԵԱՆՆ ԱՍՏՈՒԾՈՅ.— ՕՐԻՆԱԿ ԱՐԹՈՒՆ ԾԱՌԱՅԻՑ ԵՒ ՀԱՒԱՏԱՐԻՄ ՏՆՏԵՍԻՆ.— ԹԷ ԶԱՐԴՆ ԳՐԳՌԵՍՑԻՆ ԸՆԴԴԷՄ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ.— ՎԱՍՆ ԳԱԼԻԼԻԱՑԻՈՑՆ ԿՈՏՈՐԵԼՈՑ Ի ՊԻՂԱՏՈՍԷ.— ԹԶԵՆԻՆ ԱՆՊՏՈՒՂ։



## Ա. Առակ մեծատանն անմտի

Ասէ ոմն 'ի ժողովրդենէն ցնա. Վա՛րդապետ, ասա՛ եղբօրս իմ բաժանել ընդ իս զժառանգութիւնն։ Եւ նա ասէ ցնա. ո՛յր դատ՝ ո՞ կացոյց զիս դատաւոր կամ բաժանարար 'ի վերայ ձեր։ Եւ ասէ ցնոսա. տեսէ՛ք և զգո՛յշ լերուք յամենայն ագահութենէ, զի ո՛չ եթէ 'ի մթերէց ընչից ուրուք էցեն կեանք նորա։ Ղուկ. ԺԲ. 13—15։

*Քաղաքական օրէնք չուսուցանէր Քրիստոս. մարդուն խիղճը կը մաքրէ, սիրտը կը սրբէ։ Ամէն ժառանգութեանց և շատ անգամ վէճերուն շարժառիթն ագահութիւնն է. “Ագահութիւնը կռապաշտութիւն է„ կ'ըսէ առաքեալն Պօղոս։ Մարդս թէ՛ երկրաւոր և թէ՛ երկնաւոր կեանք ունի. երկրաւոր կենաց համար թէև ստակ պէտք է, բայց արդարութեամբ վաստկուածը կը բաւէ, մանաւանդ անոր՝ որ խղճի մօք կեանք վարել կ'ուզէ. իսկ երկնաւոր կենաց ստացումը՝ ընչից մթերիւք կամ դիզուած հարստութեամբ չը կրնար ըլլալ։*

## Բ. Խրատ ապաւինելոյ 'ի խնամս տեսչու-Թեանն Աստուծոյ

Ասէ ցաշակերտսն իւր. Վասն այսորիկ ասեմ ձեզ. մի՛ հոգայք ընդ ոգւոյ՝ թէ զինչ ուտիցէք. և մի՛ ընդ մարմնոյ՝ թէ զինչ զգենուցուք և այլն ։ Ղուկ. ԺԲ. 22—23 ։

*Հոգւոյ քան զմարմին նախապատուութեան. և նախ քան զամենայն՝ Աստուծոյ արքայութիւնն խնդրելու պատուիրանաց և վարդապետութեան բացատրութիւնն տե՛ս յ'ԺԲ. գլուխ ։*

Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ. զի հաճեցաւ Հայր ձեր տալ ձեզ զարքայութիւնն. Վաճառեցէք զինչս ձեր, և տո՛ւք ողորմութիւն. և արարէ՛ք ձեզ քսակս որ ոչ հնանայցեն, գանձ անպակաս յերկինս. ուր ո՛չ գող մերձենայ, և ո՛չ ցեց ապականէ ։ Զի ուր գանձն ձեր է, անդ և սիրտք ձեր եղիցին ։ Ղուկ. ԺԲ. 32—34 ։

*Ոչ ամենեքին, այլ սակաւք պիտի կարողանան այդ օրինակ առաքինանալ. և դուք՝ որ զայդ փոքրիկ խումբը, զայդ հօտը զայդ եկեղեցին կը կազմէք՝ մի՛ վախնաք. վասն զի ձեր Հայրն երկնաւոր՝ յատուկ ձեր անընչութեանն 'ի վարձ երկնից Թագաւորութիւնը պատրաստած է ։ Բոլոր ձեր ունեցածը՝ եթէ պէտք իսկ լինի. վաճառեցէ՛ք ու աղքատներուն տուէ՛ք. աղքատաց ձեռքերն ըլլան ձեր գանձուց պահարաններն, ձեր անհնանալի քսակներն, և հոն՝ ուր ոչ գող մերձենայ և ոչ ցեց ապականէ. այսինքն յերկինս՝ հոն կը դիզուին ձեր գանձերն անկորուստ, որով հոն կ'ըլլան նաև ձեր սիրտերն ալ. որով մարդկութիւնը հետզհետէ կը բարձրանայ*

'ի լաւ անդր, և կարօտութիւնը կը պակսի ։

### Գ. Օրինակ արթուն ծառայից եւ հաւատարիմ տնտեսին,

Եղիցին գօտիք ձեր պնդեալ ընդ մէջ՝ և ճրագունք լուցեալ ։ Եւ դուք նմանող մարդկան՝ որ ակն ունիցին տեառն իւրեանց՝ թէ երբ դառնայցէ 'ի հարսանեաց . զի յորժամ գայցէ և բախիցէ, վաղվաղակի բանայցեն նմա ։ Երանի՛ է ծառայիցն այնոցիկ՝ զորս եկեալ տէրն գտցէ արթունս . ամէն ասեմ ձեզ՝ զի գօտի ընդ մէջ ածցէ՝ և բազմեցուսցէ զնոսա, և անցեալ պաշտեսցէ զնոսա ։ Եւ եթէ յերկրորդ՝ կամ յերրորդ պահու եկեսցէ՝ և գտցէ այդպէս, երանելի են ծառայքն այնոքիկ ։ Բայց զայն գիտասջի՛ք, եթէ գիտէր տանուտէրն յորում ժամու գող գայ՝ հսկէր, և ոչ տայր թոյլ ականել 'ի տան իւրում ։ Եւ դուք եղերո՛ւք պատրաստ՝ զի յորում ժամու ո՛չ համարիցիք, գայ որդի մարդոյ ։ Ղուկ. ԺԲ. 35—40 ։

*Գիշեր և ցերեկ ճամբայ քալելու համար՝ թէ՛ լապտերնիդ վառած և թէ՛ գօտիներնիդ պինդ կապած պատրաստ կեցէք . դուք չէք գիտեր, թէ ձեր տէրն ե՞րբ կուգայ՝ այն ծառայից պէս, որ չեն գիտեր, թէ իրենց տէրը ե՞րբ կը դառնայ հարսնիքէն . որպէս զի եթէ յանկարծ գալու և դուռը զարնելու ըլլայ՝ շուտով բանան, չ'սպասեցընեն, չը սրդողցընեն զանի, միշտ արթուն կը մնան . այսպէս և դուք արթուն կեցէ՛ք . Երանի՜՝ իրենց պարտաւորութիւնը արթնութեամբ և ճշդիւ կատարող ծառաներուն ։ Ձեր տէրն ըզ-ձեզ՝ երբ պարապերնիդ կատարէք, ծառայի պէս չը պիտի ընդունի . տէրը այն աստիճան գոհ պիտի ըլլայ ձեզմէ, որ մինչև իսկ ձեզի չափազանց*

պատուիրանները պիտի ընէ ։ Ձեր Տէրը գողի պէս յա-նախկրնկալ պահու պիտի գայ ։ Գող մտած տան-տէրը՝ եթէ գիտնար գողին մտնելու ատենը, որ-թուն կը մնար, և թող չէր տար՝ որ գողը դըռ-ները գոց և աղէկ պատրաստուած տան ներքևէն ճամբայ բանալով տուն մտներ ։ Պատրաստ եղէք դուք ալ . զի ձեր չը կարծած պահուն պիտի գայ ձեր Տէրը ։

Ասէ ցնա Պետրոս . Տէ՛ր՝ առ մե՞զ ասացեր զառակդ զայդ՝ եթէ առ ամենեսեան ։ Եւ ասէ Տէր . ո՞վ իցէ հաւատարիմ տնտեսն և իմաստունն, զոր կացուցէ Տէր իւր ՚ի վերայ ծառ-աստանի իւրոյ տալ ՚ի ժամու զկերակուրս ։ Երանի իցէ ծառային այնմիկ՝ զոր եկեալ Տէր իւր գտանիցէ արարեալ այն-պէս ։ Արդարև ասեմ ձեզ՝ զի ՚ի վերայ ամենայն ընչից իւ-րոց կացուսցէ զնա ։ Ապա եթէ ասիցէ ծառայն այն ՚ի սրտի իւրում . յամէ Տէր իմ ՚ի գալ . և սկսանիցի հարկանել զծա-ռայսն և զաղախնայս , ուտել և ըմպել և արբենալ ։ Ե-կեսցէ Տէր ծառային այնորիկ՝ յաւուր յորում ակն ոչ ունիցի, և ՚ի ժամու յորում ո՛չ գիտիցէ . ընդ մէջ կտրեսցէ զնա , և զբաժին նորա ընդ անհաւատս դիցէ ։ Ղուկ. ԺԲ. 41–46 ։

Պետրոսի հարցման՝ թէ «Մե՞զ, եթէ ոչ՝ ա-մենուն ուղղեցիր այդ առակը», պատասխաներ Յիսուս . «Այո՛, և ձեզ և ամենուն . դուք տըն-տեսներ էք, պէտք է հաւատարիմ և իմաստուն ըլլիք . եթէ Տէրը ձեր այդ հաւատարիմ գոր-ծերը տեսնէ, ձեր պատիւն ու ձեր պաշտօնը ա-ւելի պիտի բարձրացնէ . իսկ եթէ ծառայն մըտ-քէն ըսէ, «Տէրս կ'ուշանայ գալու», և սկսի ծա-ռաները ու աղախինները ծեծել, ուտել, խմել ու գինովնալ՝ անգթութեամբ և անհոգութեամբ, և անանկ օր մը յանկարծ յանկարծակիալ կու գայ Տէ-

*ապաշխարանութեանը՝ մեղաց ։*

Համարի՞ք եթէ խաղաղութիւն եկի տալ յերկիր , ո՛չ , ասեմ ձեզ , այլ բաժանումն ։ Զի եղիցին յայսմ հետէ հինգ 'ի տան միում բաժանեալք , երեքն յերկուս , և երկուքն յերիս . և այլն ։ Ղուկ. ԺԲ. 51—59 ։

*Ասոնց բացատրութիւն գրուած է արդէն գրքիս նախորդ գլխոց մէջ ։*

## Ե. Վասն Գալիլիացւոցն կատարելոց 'ի պիղատոսէ ։

Եկին ոմանք 'ի նմին ժամանակի , և պատմեցին նմա վասն Գալիլեացւոցն , որոց զարիւնն Պիղատոս խառնեաց ընդ զոհս նոցա ։ Պատասխանի ետ և ասէ ցնոսա . համարի՞ք եթէ այն Գալիլեացիք եղեն մեղաւորք քան զամենայն Գալիլեացիս , զի զայնպիսիս ինչ կրեցին ։ Ո՛չ , ասեմ ձեզ . այլ եթէ ո՛չ ապաշխարիցէք՝ ամենեքին նոյնպէս կորնչիջիք ։ Կամ նոքա ութուտասանքն , յորոց վերայ աշտարակն անկաւ 'ի Սելովամ , և սպան զնոսա . համարի՞ք եթէ նոքա պարտապանք եղեն քան զամենայն մարդիկ՝ որ բնակեալ են յԵրուսաղէմ ։ Ո՛չ , ասեմ ձեզ . այլ եթէ ո՛չ ապաշխարիցէք՝ ամենեքեան նոյնպէս կորնչիջիք ։ Ղուկ. ԺԳ. 1—5 ։

*Յիշեալ Գալիլիացւոց համար կը կարծուի , թէ Գալիլիացի Յուդայի հետեւողներն էին , որոնք « կայսեր հարկ տալ արժան չէ » կ'ըսէին ։ Ասոնց զոհագործութեանն ատեն Պիղատոս վըրայ հասաւ սպաննել տուաւ զանոնք , և նոցա արիւնը իրենց զոհից արեան հետ խառնեց ։*

*Երբ Աստուած մեզ նման մարդոց մէկ մասը պատուհասով մը կը պատժէ կամ սրածութեամբ կամ հիւանդութեամբ և կամ ուրիշ ո՛ և է դի-*

պուածական արկածներով, պէտք է որ մենք նոյն պատուահասէն խրատ առնունք զգուշութեան և ապաշխարենք։ Աստուած իւր ձայնն՝ որ արդարութեան ձայն է, լսելի կ'ընէ մեզ ամեն ատեն զանազան առիթներու մէջ. մեք զմեզ կշռած ատեններս՝ այնպէս գտնենք, որ պատահած մարդոց մեղքերն մեք ալ ունինք. ուստի ապաշխարելու ենք, որպէս զի նոյն օրինակ արկածներէ ազատ մնանք աստուածային գթութեան շնորհիւ։

## Գ. Թզենին անպտուղ

Ասաց և զառակս զայս. Թզենի մի էր ուրուք տնկեալ յայգւոջ իւրում. և եկն խնդրել պտուղ 'ի նմանէ՝ և ո՛չ եգիտ։ Ասէ ցայգեգործն. ահա երեք ամք են՝ յորմէ հետէ գամ խնդրել պտուղ 'ի թզենւոջս՝ և ո՛չ գտանեմ. հատ զդա, ընդէ՞ր և զերկիրս խափանէ։ Նա պատասխանի ետ և ասէ. Տէ՛ր՝ թո՛ղ զդա յայս ամ ևս, մինչև շուրջ զդովաւ բրեցից՝ և արկից աղբ։ Թերևս արասցէ պտուղ. ապա թէ ոչ յամէ հատցես զդա։ Ղուկ. ԺԳ. 6-9։

Այս թզենին՝ Քանանու երկիրը տնկուած Իսրայէլն, կամ Աստուծոյ եկեղեցւոյն մէջ եղող քրիստոնեայն է։ Աստուած այգեպանէն՝ 'ի Քրիստոսէ կը պահանջէ, որ պտուղ տայ թզենին. երեք տարի էր՝ որ կը քարոզէր Քրիստոս, այլ Իսրայէլ պտուղ չտուաւ։ «Տապար առ արմին ծառոց դնի». այդ ծառը պիտի կտրուի, նոյն խաչ Քանանու երկրէն դուրս պիտի նետուի. վասն զի անպտուղ ըլլալուն հետ մէկտեղ՝ շրջակայ երկիրն ալ կը խափանէ կոր։ Աստուծոյ երկայնմտութեան ու ներողամտութեան նշանակն է այդ տարւոյն մէջ

ցուցուած համբերութիւնը․ Յիսուսի Քրիստոսի արիւնը 'ի Հոգւոյն սրբոյ շնորհքը այդ ծառին՝ պտուղ բերել տալու համար՝ ամէն խնամքները կ'ընեն, և միջոց կ'ուզեն 'ի Հօրէն Աստուծոյ՝ 'ի գործադրութիւն արդարութեան նորա։ Պօղոս կ'ըսէ․ «Չգիտե՞ս, որ Աստուծոյ քաղցրութիւնն ու համբերութիւնը զքեզ յապաշխարութիւն կը կոչէ»․ ուստի մինչև որ պտղաբեր չըլլանք՝ կտրուելու սպառնալիքէն ազատ չպիտի մնանք։

«Յամէ ևս» Յոյն բնագրին մէջ նշանակուած է՝ «յետոյ, այնուհետև»։



# ԳԼՈՒԽ ԻԸ.

ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԿՆՈՋՆ ԿԱՐԿԱՄԵԼՈՅ.— ԱՌԱԿ ՄԱՆԱՆԵԽՈՅՆ ԵՒ ԽՄՈՐՈՅ.— ԱՒԱՂԷ ՔՐԻՍՏՈՍ ԶԵՐՈՒՍԱՂԷՄ.— ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԱՌՆՆ ՋՐԳՈՂԵԼՈՅ.— ԶՑԱԾԻՆ ՏԵՂԻՆ ՈՒՆԵԼ.— ԱՌԱԿ ՀՐԱՒԻՐԵԼՈՑՆ ԸՆԹՐԻՍ.



## Ա. Բժշկութիւն կնոջն կարկամելոյ

Եւ ուսուցանէր 'ի միում 'ի ժողովրդարանացն 'ի շաբաթու։ Եւ ահա կին մի՝ որ ունէր այս հիւանդութեան ամս ութուտասն, և էր կորկամեալ, և ո՛չ կարէր ամենևին 'ի վեր հայել։ Եւ տեսեալ զնա Յիսուսի՝ կոչեաց առ ինքն՝ և ասէ ցնա․ կին դու՝ արձակեալ ես 'ի հիւանդութենէ քումմէ

մէ։ Եւ եդ ՚ի վերայ նորա ձեռն, եւ առ ժամայն ուղղեցաւ, եւ փառաւոր առնէր զԱստուած։ Պատասխանի ետ ժողովրդապետն ցասուցեալ թէ ընդէ՞ր ՚ի շաբաթու բժշկեաց Յիսուս, եւ ասէ ցժողովուրդն. Վեց օր է՝ յորս արժան է գործել, յայնս եկա՛յք բժշկեցարո՛ւք, եւ մի՛ յաւուր շաբաթու։ Ղուկ. ԺԳ. 10—14։

*փոխանակ փառք տալու Աստուծոյ և փոխանակ փառաւորելու զՔրիստոս՝ որ այդպիսի անտանելի հիւանդութեան մէջ ինկած թշուառ արարած մը կը փրկէր, իրենց սովորութիւնը մէջ բերելով՝ Քրիստոսի բարերարութեան դէմ կը հայհոյէին։*

Պատասխանի ետ նմա Տէր՝ եւ ասէ. Կե՛ղծաւորք՝ իւրաքանչիւր ոք ՚ի ձէնջ ՚ի շաբաթու ո՞չ արձակէ զեզն իւր կամ զէշ ՚ի մսրոյ՝ եւ տանի ջուր տայ։ Իսկ այս՝ դուստր Աբրահամու էր, զոր կապեաց սատանայ ահաւասիկ ութուտասն ամ, ո՞չ էր արժան արձակել ՚ի կապանաց անտի ՚ի շաբաթու։ Եւ զայս իբրեւ ասէր, յամօթ լինէին ամենեքին որ հակառակն կային նմա. եւ ամենայն ժողովուրդն ուրախ լինէին ՚ի վերայ ամենայն փառաւորութեանցն, որ գործէին ՚ի նմանէ։ Ղուկ. ԺԳ. 15—17։

*Ժողովրդապետն առ նախանձու արգելուլ կ՚ուզէր. վասն զի կը տեսնուէր, որ Քրիստոսի հանապազօրեայ հրաշագործութեամբք և վարդապետութեամբք ժողովրդեան համակրութիւնն հետզհետէ կը զօրանայ և հաւատքը կը հաստատուի, չգիտէր, թէ «Տէր է որդի մարդոյ և շաբաթու»։ Անձնական շահն արգելեալ է ՚ի շաբաթու, իսկ բարեգործութիւնն արգելեալ չէ սուրբ օրը։*

նար . թէ՛ մարմնական հեշտութիւններն և թէ՛ հոգևոր պարտաճանութիւնները համընթաց վարել անհնար է ։ Այսպիսի մարդիկ պիտի մօտենան դրանս առջև, երբ առաքինիները ներս ընդունելով՝ պիտի փակեմ. սակայն ես ոչ միայն չպիտի բանամ դուռը, այլ և պիտի մերժեմ զանոնք. հեռացէք ինձմէ՝ պիտի ըսեմ, ո՛վ դուք՝ որ զանիրաւութիւնը անխոնջ կը մշակէք կամ կը գործէք, ձեր գործքերը բովանդակ լի էին անիրաւութեամբ. անծանօթ էք ինձ »։

Անդ եղիցի լալ և կրճել ատամանց, յորժամ տեսանիցէք զԱբրահամ և զԻսահակ և զՅակոբ՝ և զամենայն մարգարէս յարքայութեան Աստուծոյ, և զձեզ հանեալ արտաքս ։ Եւ եկեսցեն յարևելից և յարևմտից և ՚ի հիւսիսոյ և ՚ի հարաւոյ, և բազմեսցին յարքայութեանն Աստուծոյ. Եւ ահա են յետինք՝ որ եղիցին առաջինք, և են առաջինք՝ որ լինիցին յետինք ։ Ղուկ. ԺԳ. 28—30 ։

Դուք կը պարծիք, թէ Աբրահամայ, Իսահակայ և Յակոբայ զաւակունքն էք, և թէ ձերն են մարգարէք. սակայն պիտի տեսնէք, որ նոքա Աստուծոյ արքայութեան մէջ պիտի մտնեն, և դուք դուրսը պիտի մնաք. վասն զի նոցա գործերն չունիք, և շատ հեռի էք անոնց ունեցած և քարոզած շաւղէն ու վարքէն ։ Եւ ոչ միայն այսչափ, այլ և հեթանոսներէն շատեր՝ զորս փրկութեան անարժան կը համարիք, ձեզմէ խիստ յառաջ պիտի փրկուին և պիտի ընդունուին Աստուծոյ արքայութիւնը ։

## Գ. Աւաղէ Քրիստոս զԵրուսաղէմ

'Ի նմին աւուր մատեան ոմանք փարիսեցիք, եւ ասեն ցնա. Ե՛լ եւ գնա՛ աստի, զի Հերովդէս կամի սպանանել զքեզ. Եւ ասէ ցնոսա. Երթա՛յք ասացէ՛ք աղուեսուդ այդմիկ. աւասիկ հանեմ դեւս, եւ բժշկութիւնս կատարեմ այսօր եւ վաղիւ. եւ յերրորդ աւուր կատարիմ։ Բայց պարտ է այսօր եւ վաղիւ եւ 'ի միւսում աւուր գնալ, զի ո՛չ է մարթ մարգարէի կորնչել արտաքոյ քան զԵրուսաղէմ. Ղուկ. ԺԳ. 31-33։

*Փարիսեցիք զՅիսուս կը խրատէին՝ նենգութեամբ, որ Երուսաղէմ երթայ, որպէս զի սպաննուի։*

*Հերովդէս զՅիսուս սպաննել չէր ուզէր, ընդհակառակն կը փափաքէր, որ Նորա հրաշագործութիւնն անձամբ տեսնէ, բայց վասն Հրէից՝ կ'ուզէր, որ Յիսուս իւր սահմանէն դուրս ելնէ, չ'ըլլայ որ ինքը պարտաւորի Նորա դէմ բռնութիւն 'ի գործ դնել. անոր համար Յիսուս աղուէս կ'անուանէ զՀերովդէս, նենգաւոր մարդ ըսելու մտօք, եւ կ'ըսէ. «Այսօր եւ վաղը դեռ ժամանակ ունիմ՝ հրաշքներ գործելու. երրորդ օրը Երուսաղէմ պիտի ելնեմ, ուր ո՛չ թէ Հերովդէսի, այլ ձեր ձեռօք պիտի սպաննուիմ»։*

Երուսաղէ՛մ Երուսաղէ՛մ՝ որ կոտորէիր զմարգարէս, եւ քարկոծ առնէիր զառաքեալսն առ քեզ. քանի՞ցս անգամ կամեցայ ժողովել զորդիս քո, որպէս հաւ զձագս իւր ընդ թեւովք, եւ ո՛չ կամեցարուք։ Ահա թողեալ լիցի ձեզ տուն ձեր։ Բայց ասեմ ձեզ, եթէ ո՛չ եւս տեսանիցէք զիս, մինչեւ ասիցէք՝ օրհնեալ եկեալն յանուն Տեառն։ Ղուկ. ԺԳ. 34-35։ Մատթ. ԻԳ. 37-39։

«Ո՜վ Երուսաղէ՜մ Երուսաղէ՜մ, կ'ըսէ սրտաշարժ կերպիւ, դու՝ որ մարգարէները կը ջարդէիր և քեզի խրկուածները կը քարկոծէիր, գիտ ալ զվերջին առաքեալն 'ի Հօրէ՝ զՈրդին միածին ալ պիտի սպաննես. Ո՜հ. քանի՜ անգամ զձեզ իմ փարախս, իմ գաւիթս, իմ հովաթև պաշտպանութեան ներքև հրաւիրեցի՝ դուք չը կամեցաք, ձեր սիրտը անզեղջ մնաց. ա՜հ՝ այդ քաղաքը, այդ Իսրայելի տունը՝ աւերակ պիտի դառնայ, պիտի կործանի. և մինչև որ չհաւատաք՝ իմ փառքս չը պիտի տեսնէք. այո՛՝ այն ատեն պիտի չլինուի Սիօնը, երբոր հաւատաք ու ըսէք. օրհնեա՛լ է և օրհնեա՛լ ըլլայ Տիրոջ անուամբ եկողը»:

## Դ. Բժշկութիւն առնն ջրգողելոյ.

Եւ եղեւ 'ի մտանելն նորա 'ի տուն ուրուք իշխանաց փարիսեցւոց 'ի շաբաթու ուտել հաց, և նոքա սպասէին նմա։ Եւ ահա այր մի էր անդ Ջրգողեալ առաջի նորա. Պատասխանի ետ Յիսուս՝ և ասէ ցօրէնուսոյցսն և ցփարիսեցիսն. Եթէ արժա՞ն է 'ի շաբաթու բժշկել. Եւ նոքա լուռ եղեն. և բուռն հարեալ զնմանէ՝ բժշկեաց զնա, և արձակեաց։ Եւ ասէ ցնոսա. Ո՞յր ուրուք 'ի ձէնջ էշ կամ եզն անկանիցի 'ի ջրհոր, և ոչ վաղվաղակի հանիցէ զնա յաւուր շաբաթու։ Եւ ո՛չ կարացին տալ նմա պատասխանի առ այն։ Ղուկ. ԺԴ. 1–6։

Ինչպէս որ սովորութիւն ունէին փարիսեցիք և օրինաց վարդապետք՝ անոր բերնէն ամբաստանութեան արժանի խօսք մը կամ ձեռքէն գործ մը որսալու համար զՅիսուս ճաշի հրաւիրող փարիսեցի իշխանին տունը կ'ըսպասէին։

Յիսուս ալ անոնց խորհուրդը հասկցած ըլլալը ցըցընելու համար՝ Ջրգողեալ մարդը բժշկեց շաբաթ օրը, հաւանական դէպքի մը պատմութեամբ զանոնք կանխաւ կշտամբելէն յետոյ:

Ե. Զյետին տեղին ունել:

Ասաց և առ հրաւիրեալսն առակ մի, հայեցեալ թէ զիա՛րդ բարձրանիստս ընտրէին, ասէ ցնոսա. Յորժամ կոչիցեն զքեզ 'ի հարսանիս՝ կամ 'ի կոչունս, մի՛ բազմեսցիս յառաջին բարձին. գուցէ պատուականագոյն ևս քան զքեզ իցէ կոչեցեալ 'ի նմանէ. Եւ եկեալ՝ որ զքեզն և զնա կոչեաց՝ ասիցէ ցքեզ. տո՛ւր սմա տեղի. և ապա սկսանիցես ամօթով զյետին տեղին ունել. Այլ յորժամ կոչիցիս, երթիցե՛ս՝ բազմեսցի՛ս 'ի յետին տեղւոջ. զի յորժամ գայցէ՝ որ կոչեացն զքեզ, ասասցէ ցքեզ. բա՛րեկամ 'ի վե՛ր նստիր. յայնժամ եղիցի քեզ փառք առաջի բազմակցացն քոց: Զի ամենայն որ բարձրացուցանէ զանձն, խոնարհեսցի. և որ խոնարհեցուցանէ զանձն՝ բարձրասցի: Ղուկ. ԺԴ. 7-11.

Այս խրատովը կը կշտամբէր փարիսեցւոց ամբարտաւանութիւնը՝ որ իրարմէ վեր նստիլ կ'ուզէին ամէնուրեք. Նոյնպէս և այդ տանը մէջ անշուշտ զմիմեանս կ'նեղանէին: Կը պատուիրէր անոնց՝ սրտով խոնարհ ըլլալ Աստուծոյ և մարդոց առջև: Դու եթէ արժանաւորութիւն իսկ ունենաս՝ պէտք է որ ուրիշը գնահատէ զայն. Ճշմարիտ փառքը՝ ուրիշներուն քու արժանաւորութիւնդ իրաւամբ ճանչելուն մէջ է. Եթէ դու զքեզ բարձրացընես՝ թէ՛ Աստուծոյ և թէ՛ մարդոց առջև բարձրամիտ և հպարտ երևելէ զատ ուրիշ բան չես կարող ընել.

Ասէ և ցկոչնատէրն. յորժամ առնիցես ճաշ կամ ընթրիս՝ մի՛ կոչեր զբարեկամս քո, և մի՛ զեղբարս քո, և մի՛ զազգականս քո, և մի՛ զդրացիս քո, և մի՛ զմեծատունս. զի մի՛ և նոքա փոխարէն կոչեսցեն զքեզ, և լինիցի քեզ հատուցումն։ Այլ յորժամ առնիցես ընդունելութիւն, կոչեա՛ զաղքատս և զխեղանդամս զկաղս և զկոյրս։ Եւ երանելի լինիցիս. զի ո՛չ ունին փոխարէն հատուցանելոյ քեզ. և հատուսցի քեզ փոխարէն 'ի յարութեան արդարոց։ Ղուկ. ԺԴ. 12–14։

*Բարերարութեան մէջ անգամ պէտք է որ Քրիստոնեայն այդ օրինակ վարուի · բարերարութեան առնէն բնաւ պէտք չէ փոխարէն կամ երախտագիտութիւն սպասել ուրիշէն ։ Ճշմարիտ հարստութիւնը երկնից մէջ է · ինչպէս որ խոնարհութեան փոխանակ՝ մեծութիւն երկնից մէջ կ'ընդունուի միայն, այսպէս և բարերարութեան փոխադարձն Աստուած պիտի հատուցանէ հանդերձելոյն մէջ · Անոր համար Յիսուս յանդիմանելով զփարիսեցին՝ որ զինքը հրաւիրեր էր միայն 'ի ցոյց մարդկան և փառասիրական ոգւով, ըսաւ. « Երբ հաց կերցընես՝ աղքատաց կերցուր, որ փոխարէն չունին հատուցանելու · սակայն անշուշտ եղի՛ր, որ փոխարէնը կ'ստանաս 'ի յարութեան արդարոց »։*

## Է. Առակ հրաւիրելոցն յընթրիս ։

Իբրև լուաւ զայս ոմն 'ի բազմականացն՝ ասէ ցնա. երանի՛ որ կերիցէ հաց յարքայութեան Աստուծոյ։ Եւ նա ասէ. այր ոմն գործեաց ընթրիս, և հրաւիրեաց զբազումս։ Եւ առաքեաց զծառայ իւր 'ի ժամու ընթրեացն կոչել զհրաւիրեալսն՝ թե եկայք, զի ահաւասիկ պատրաստ է ամենայն

ինչ: Եւ սկսան մի ըստ միոջէ ամենեքեան հրաժարել, առաջինն ասէ. ագարակ գնեցի, եւ հարկ է ելանել տեսանել զնա. աղաչեմ զքեզ՝ կա՛լ զիս հրաժարեալ: Եւ միւսն ասէ. լուծս հինգ եզանց գնեցի, եւ երթամ փորձել զնոսա. աղաչեմ զքեզ, կա՛լ զիս հրաժարեալ: Եւ միւսն ասէ. կին առի, վասն այնորիկ ո՛չ կարեմ գալ: Եւ եկեալ ծառայն պատմեաց զայն Տեառն իւրում: Յայնժամ բարկացեալ տանուտէրն՝ ասէ ցծառայն իւր. ե՛լ վաղվաղակի ՚ի հրապարակս եւ ՚ի փողոցս քաղաքիդ, եւ զաղքատս եւ զխեղս եւ զկաղս եւ զկոյրս մո՛յծ այսր: Եւ ասէ ծառայն. Տէ՛ր՝ եղեւ զոր հրամայեցերն, եւ կայ եւս տեղի: Եւ ասէ Տէրն ցծառայն, ե՛լ ՚ի ճանապարհս եւ ՚ի ցանկս, եւ արա՛ այսր մտանել, զի լցցի տուն իմ: Ասեմ ձեզ, զի ոչ՛ ոք յայնց կոչեցելոց ճաշակեսցէ յընթրեաց իմոց: Ղուկ. ԺԴ 15–24:

*Կը կարծէր փարիսեցին, թէ Աստուծոյ արքայութեան մէջ նիւթական ճաշ պատրաստուած է, ուստի երանի կը կարդայ զայն ուտողին: Սակայն Քրիստոս առակաւ մը անոր կը պատասխանէ: Առակին մէջ նշանակեալ այրն՝ Աստուած է. ընթրիքը Աստուածային թագաւորութեան ՚ի վերայ երկրի՝ Ս. Եկեղեցի. հրաւիրեալներն՝ Հրէայք են, որ զանազան պատճառներով հրաւէրին չըպատասխանեցին անձամբ. և հրապարակներէն ժողովեալները՝ հեթանոսք և բարբարոսք, որ անոնց յաջորդեցին և անոնց տեղը բռնեցին յեկեղեցին Աստուծոյ:*



# ԳԼՈՒԽ ԻԹ.

ՅԻՍՈՒՍ Ի ՆԱՒԱԿԱՏԻՍՆ՝ ՈՐ ԵՐՈՒՍԱՂԷՄ.— ՀՐԷԱՅՔՆ ԿԱՄԻՆ ՔԱՐԿԾԵԼ ԱՌՆԵԼ ԶՆԱ.— ԳՆԱԼՆ ՅԻՍՈՒՍԻ ՅԱՅՆԿՈՅՍ ՅՈՐԴԱՆԱՆՈՒ.— ԽՐԱՏ ՈՒՐԱՑՈՒԹԵԱՆ ԱՆՁԻՆ.— ԱՌԱԿՔ ՄՈԼՈՐԵԱԼ ՈՉԽԱՐԻՆ, ԴՐԱՄՈՅՆ ԿՈՐՈՒՍԵԼՈՅ, ԵՒ ՈՐԴԻՈՅՆ ԱՆԱՌԱԿԻ։



## Ա. Յիսուս 'ի Նաւակատիսն՝ որ յԵրուսաղէմ

Եղեն յայնժամ Նաւակատիքն յԵրուսաղէմ, եւ ձմեռն էր։ Եւ շրջէր Յիսուս 'ի տաճարին՝ 'ի սրահին Սողոմոնի։ Շուրջ եղեն զնովաւ Հրէայքն եւ ասեն. Մինչեւ յե՞րբ թափես զոգիս մեր, եթէ դու ես Քրիստոսն՝ ասա՛ մեզ համարձակ։ Պատասխանի ետ նոցա Յիսուս եւ ասէ. ասացի ձեզ՝ եւ ո՛չ հաւատայք ինձ. զգործսն զոր ես գործեմ յանուն Հօր իմոյ նոքին իսկ վկայեն վասն իմ։ Այլ դուք ո՛չ հաւատայք, զի չէ՛ք յոչխարաց անտի իմոց։ Ոչխարք իմ ձայնի իմում լսեն, եւ ես ճանաչեմ զնոսա, եւ գնն զհետ իմ։ Եւ ես տամ նոցա զկեանս յաւիտենականս եւ մի՛ կորիցեն յաւիտեան. եւ մի՛ ոք յափշտակեսցէ զնոսա 'ի ձեռաց իմոց։ Հայրն իմ՝ որ ետ ինձ զնոսա, մեծ է քան զամենայն, եւ ոչ ոք կարէ յափշտակել 'ի ձեռաց Հօր իմոյ։ Ես եւ Հայր իմ մի եմք։ Յովհ. Ժ. 22-30։

*Երուսաղէմի տաճարը քանիցս շինուած ըլլալուն համար՝ անոր զանազան անգամ շինութեան Նաւակատիքը կը կատարէին Հրէայք։ Առաջին անգամ Սողոմոնէ շինուած էր, որ 34 տարի միայն չէն ու պայծառ մնաց. զոր Եգիպտոսի Սիսակ թագաւորն կողոպտեց. վերջը քա-*

նի՛ քանի անգամ ալ կողոպտուելէն զատ՝ Քրիստոսէ 588 տարի յառաջ բաբելացւոց Նաբուգոդոնոսոր թագաւորին ատենը հրոյ ճարակ եղաւ ։

Երկրորդ անգամ Զօրաբաբելի ձեռամբ շինուեցաւ առաջինէն նուազ փառօք . յետոյ Աղեքսանդրի յաջորդ թագաւորաց ժամանակը Անտիոքոս Եպիփանէս՝ ողջակիզաց սեղանին վրայ Արամազդայ պատկերը կանգնելով պղծեց տաճարը՝ որ երեք տարի այսպէս մնալէն յետոյ՝ Յուդա Մակաբէի ձեռօք մաքրուեցաւ և նորոգուեցաւ 165 ամօք նախ քան զՔրիստոս ։ Յուդա Մակաբէ՝ հաստատեց այս նաւակատեաց տօնը կամ յիշատակութիւնը՝ 'ի յիշատակ մաքրութեան տաճարին 'ի պղծութենէ Եպիփանեայ ։

Տասնեւվեց տարի յառաջ քան զՔրիստոս Մեծըն Հերովդէս այս տաճարը նորոգելու սկսաւ . իննուկէս տարուան մէջ սոյն գործին 18 հազար բանուոր գործածեց , և առաջին տաճարին պայծառութեանն ու շքեղութեանը հաւասարցընելու համար բան չխնայեց , թէև այս տաճարին մէջ հաւանականաբար Տապանակ ուխտի չէր ։

Այս նաւակատիքը իններորդ ամսոյն՝ որ է Քասլև կամ Դեկտեմբեր 25 ին կ'սկսէր և ութն օր կը տևէր ։ Հրէից առաջին ամիսը կամ առաջին լուսինը՝ Ապրիլի կը պատահէր . ասկէց համրելով հռովմայեցւոց տասներորդ կամ Դեկտեմբեր ամիսը՝ Հրէից իններորդին կը հանդիպի . նաւակատեաց տօնը՝ տաղաւարահարաց տօնէն եօթանասուն օր ետքը կուգայ ։

Բոլոր տաճարը սպիտակ ու կարծր քարէ շինուած էր . արևելեան դրան անունը Շուշան էր . բոլոր տաճարին շուրջը պատած գաւթին հեթանո-

ոսց ֆուէլի կ'ըսուէր, իւրաքանչիւր կողմը 200 կանգուն երկայնութեամբ. այս տեղ կը ծախուէին զոհի համար կենդանիներ, աղ և խունկ. սորա շուրջը գտնուած սենեակներէն մէկը գանձատուն էր։ Ասկէց ներս քանի մ' ոտք բարձրութեամբ կանանց գաւիթը կար, որ միջնորմով առաջիններէն բաժնուած էր. և սորա վրայ՝ հեթանոսաց և անմաքուր անձանց մուտքը արգիլելու համար խոշոր գրերով պատուէրներ նշանակուած էին։ Ասկէց 15 ոտք աւելի բարձր սանդղով արանց գաւիթը կը մտնէին։ Այս արանց և կանանց երկու գաւիթներուն մէկէն Իսրայէլ ֆուէլ ալ կ'ըսուէր. այս տեղերն կ'աղօթէին ժողովուրդք, մինչ քահանայն սրբարանին մէջ խնկարկութիւն կ'ընէր։

Այս քառակուսի գաւթին չորս անկիւններն՝ բորոտներու մաքրութեան և Նազովրացւոց (ուխտաւորաց) գործածութեան համար սենեակներ կային։ Իսրայէլի գաւիթներէն աւելի ներս էր քահանայից գաւիթը, ուր միայն քահանայք կարէին մտնել։ Այս գաւթէն 12 ոտք սանդղով բուն տաճարը կը մտնուէր. այս ճամբուն վրայ ժողովրդեան նուէրներն պահելու տեղ մ'ալ կար։ Այս տեղն էին՝ Սանհեդրին կոչուած ծերակուտի ժողովոյն յատկացեալ սրահներն, թէև երբեմն արտաքին գաւթի սրահներուն մէջ ալ կը գումարէր այս ժողովը։ Յիշեալ սրահէն կը մտնէին բուն տաճարը, որուն մէջ էր Սրբարանն ու Սրբութիւն Սրբութեանցը. որոնք վարագուրաւ մի իրարմէ բաժնուած էին։ Քրիստոսի խաչելութեան ատեն այս վարագոյրը վերուստ 'ի վայր ճեղքուեցաւ. վասն զի բուն քահանայապետն Ցի-

սուս Քրիստոս՝ բուն Արքայարանը, երկինքը իւր արեամբն բացաւ ամենուն ։

Թերևս նախնի տաճարին Սողոմոնեան որահին ձևովը շինուած, և տաճարին վերջին շրջապատն ձևացնող սրահին մէջ՝ Հրէայք բերնէն խօսք առնելու և զինքը հռովմայեցւոց մատնելու համար բոլորտիքը ժողովեցան և ըսին․ «Մինչև ե՞րբ այսպէս տարտամ և 'ի ծուխս, 'ի չարչարանս և 'ի տագնապս կը թողուս մեր միտքը․ եթէ դու ես Քրիստոսն, այսինքն, օծեալն և թագաւորն՝ համարձակ ըսէ՛ մեզի»․ իբր թէ Քրիստոս մինչև հիմայ ըսած չըլլար իր Մեսիայն եղած ըլլալը․ բայց կ՚ուզէին՝ որ [illegible] բառը հանէր բերնէն ։ «Ես ձեզի ըսի՝․ կրկնեց Քրիստոս, բայց դուք չէք ուզեր հաւատալ․ չէ՞ք տեսներ իմ գործերս, անոնք կը վկայեն ինձ համար, որ ես Քրիստոսն եմ․ բայց դուք իմ ոչխարներէս, իմ աշակերտներէս, իմ հոգևոր թագաւորութեանս ժառանգորդներէն չէք․ անոր համար չէք հաւատար ։ Դուք իմ ձայնս չէք լսեր, դուք իմիններէս չէք, ես ձեզ բնաւ չը պիտի ճանչեմ, դուք ինձ հետևողներէն չէք, դուք հակառակորդներ էք․ Ես իմիններուս յաւիտենական կեանք պիտի տամ, և յաւիտեան պիտի ապրին ու չը պիտի կորսուին, և ոչ ոք պիտի յափշտակէ զանոնք իմ ձեռքէս․ զանոնք ինձ յանձնող Հայրը՝ ամենամեծ Աստուածն է․ ամենակալ Տէրն է այն, որոյ ձեռքէն ո՛չ դուք և ո՛չ ձեզ նմաններ՝ ձեր բոլոր խարդաւանութեամբքն իսկ՝ ինձ հաւատացեալ աշակերտներն չէք կարող յափշտակել․ 'ի զուր մի՛ աշխատիք իմիններս ինձմէ գայթակղեցնելու ։ Ես ինչ որ ինձ համար կ՚ը-

ամ՝ Հօրս համար ալ հասկըցէ՛ք ՝ վասն զի ես և Հայրս մէկ ենք . ես էակից եմ Հօր և Աստուած , և խակակից Նմա :

### Բ. Հրէայք կամին քարկոծ առնել զնա

Վէմս առին հրէայքն զի քարկոծ արասցեն զնա : Պատասխանի ետ նոցա Յիսուս . Բազում գործս բարիս ցուցի ձեզ 'ի Հօրէ իմմէ , վասն որո՞յ գործոյ 'ի նոցանէ քարկոծ առնէք զիս : Պատասխանի ետուն նմա հրէայքն , վասն բարւոյ գործոյ ո՛չ առնեմք զքեզ քարկոծ , այլ վասն հայհոյութեան . և զի դու մարդ ես , և զանձն քո Աստուած առնես : Պատասխանի ետ նոցա Յիսուս . ո՞չ յօրէնս ձեր գրեալ է . Ես ասացի թէ աստուածք էք : Իսկ եթէ զնոսա աստուածս ասէ , առ որս բանն Աստուծոյ եղև . և ո՛չ մարթ եղծանել գրոյն : Իսկ զոր Հայր օրհնեաց՝ և առաքեաց յաշխարհ , դուք ասէք՝ թէ հայհոյես . զի ասացի՝ թէ որդի Աստուծոյ եմ : Եթէ ո՛չ գործեմ զգործս Հօր իմոյ , մի՛ հաւատայք ինձ : Ապա թէ գործեմ , թէև ինձ ո՛չ հաւատայք , ապա գործոցն հաւատացէ՛ք . զի գիտասջիք և ծանիջիք՝ եթէ Հայր յիս է և ես 'ի Հայր : Դարձեալ խնդրէին զնա ունել , և ել 'ի ձեռաց նոցա : Յովհ. ժ. 31-39 :

Հրէայք սրտերնին ատելութեամբ և ձեռքերնին քարերով լեցուն՝ ուզեցին քարկոծել զՅիսուս , բայց չըկրցան բան մ'ընել , և ո՛չ լեզուաւ և ո՛չ ձեռնի քարերով սանձանել անոր . վասն զի ինքը չուզեց : Յիսուս պատասխանեց . «Ես՝ իմ Հօրս աստուածային զօրութեամբն գործուած շատ մը բարի գործեր ցոյց տուի ձեզ , այնչափ խօսքեր խօսեցայ , և այնչափ բժշկութիւններ ըրի . այդ իմ գործերէս ո՞ր մէկուն համար կը քարկոծէք զիս» : Հրէայք պատասխան տուին , թէ բարի

գործերուդ համար չէ որ զքեզ կը քարկոծենք, այլ քանի որ մարդ ես և ինքզինքդ կ'աստուածացընես, հայհոյութիւն ըրած կ'ըլլաս. ուստի և քարկոծման արժանի ես ։ (Այս դիտողութիւնըն է՝ որ ցայսօր Քրիստոսի աստուածութիւնն ուրացողները կ'ընեն անպատկառ) ։ Յիսուս պատասխանի տուաւ. «Դուք այնչափ չարամիտ էք, որ օրինաց մէջ գրուածն ալ չէք հասկընար. — «Աստուած եկաց 'ի ժողովս աստուածոց, և 'ի միջի նոցա դատէր զնոսա» Սաղմ. ՁԱ. 1 ։ «Մինչև յե՞րբ դատիք անիրաւութեամբ, և ակն առնուք մեղաւորաց». Նոյն. 2 ։ "Ես ասացի, թէ աստուածք իցէք, կամ որդիք բարձրելոյ ամենեքեան„. Նոյն. 6 ։ Այս խօսքերն առ դատաւորս և առ իշխանս ժողովրդեան ըսուած են. — եթէ զանոնք՝ առ որս Աստուծոյ խօսքն ուղղուեցաւ, գիրքը՝ որ չը պիտի եղծանի, Աստուածներ կ'անուանէ, զիս՝ որ Աստուծոյ ծոցածինն, միածինն սրբածն ու Առաքեալն եմ, Որդի Աստուծոյ անուանելս՝ հայհոյութի՞ւն կը համարիք ։ Անոնք՝ որ Աստուածներ անուանեցան, ճշմարիտ Աստուծոյ գործերն չկատարեցին. ես՝ որ Որդի Աստուծոյ կ'անուանեմ ինքզինքս, իմ Հօրս Աստուծոյ գործերն կը գործեմ, և դուք կը տեսնէք զանոնք ։ Թէև խօսքերուս չէք հաւատար, սակայն գործերուս համար գէթ ինծ հաւատացէ՛ք. եթէ Աստուծոյ գործերն չը գործեմ՝ մի՛ ընդունիք զիս. իբրև Աստուծոյ Որդի ։ Պէտք է որ գիտնաք դուք, այո՛ անհրաժեշտ է ձեզ հաւատալ, թէ Հայրը իմ մէջս է և ես Հօրը մէջ„ ։

Հրէայք փոխանակ հաւատալու այս բացայայտ խօսքերուն՝ դարձեալ ուզեցին բռնել ըղ-

Յիսուս . բայց սա չուզեց , և նոցա ձեռքէն խա-լըսեցաւ ։

### Դ. գնալն Յիսուսի յայնկոյս Յորդանանու

Եւ գնաց միւսանգամ յայնկոյս Յորդանանու՝ ՚ի տեղին , ուր էր Յովհաննէս զառաջինն՝ և մկրտէր և անդ լինէր ։ Եւ եկին բազումք առ նա՝ և ասէին . թէ Յովհաննէս նշան ինչ ո՛չ արար ։ Բայց զամենայն , զոր ասաց Յովհաննէս վասն նորա , ճշմարիտ էր . և բազումք հաւատացին ՚ի նա անդ ։ Յովհ. Ժ. 40—42 .

Եւ գնաց նորէն Յորդանանու անդիի կողմը , այն տեղը՝ ուր առջի բերան Յովհաննէս կը բը-նակէր ու կը մկրտէր . և հոն կեցաւ ։ Հոն շա-տերը Յիսուսի քով եկան ու ըսին , թէ Յովհան-նէս թէպէտ հրաշք չը գործեց , բայց Քրիստոսի համար տուած վկայութիւնը ընդունելի է մեզ . և շատերն հաւատացին Յիսուսի աստուածու-թեանը ։

### Դ. Խրատ ուրացութեան անձին

Եւ երթային ընդ նմա ժողովուրդք բազումք . դարձաւ և ասէ ցնոսա ։ Եթէ ոք գայ առ իս՝ և ոչ ատիցէ զհայր իւր և զմայր և զկին և զորդիս և զեղբարս և զքորս, նա և զան-ձն իւր ևս , ո՛չ կարէ իմ աշակերտ լինել ։ Զի որ ո՛չ բառնայ զխաչն իւր՝ և գայ զհետ իմ , ո՛չ կարէ իմ աշակերտ լինել ։ Ղուկ. ԺԴ. 25-27 ։

Անոր ետևէն շատ ժողովուրդներ կ՚երթային . բայց Քրիստոսի միտուածը՝ այն կերպով իրեն ե-տևէն երթալ չէր . անոնք գուցէ հետաքրքրու-թեամբ , կամ զբօսնելու համար և կամ հրաշք տես-

նելու նպատակաւ կ՚երթային․ Քրիստոս իւր ետևէն երթալու կերպը կը բացատրէ, թէ ո՛վ որ իւր խաչը առնլով՝ իւր ետևէն չերթայ, իւր աշակերտը չկրնար ըլլալ։ Քրիստոսի հետևիլ՝ Քըրիստոսի աշակերտիլ կը նշանակէ։ Քրիստոս իւր խաչը, իւրՀօր կամքն ու ամեն անօրինութիւններն սիրով տարաւ և գլուխ հանեց․ ամէն մարդ ալ իւր խաչը, իւր պարտքը, հայրը, իւր որդւոց խնամքը, ամուսինը, իւր ընկերին հոգը, որդին, առ իւր ծնողս պարտաւորութիւնները, իւր կենաց հոգը, բարի և առաքինի քրիստոնէի պարտաւորութիւնները, ընկերական, ազգային և մարդկային սիրով տանելու է․ կենաց դժուարութիւններն ալ անտրտունջ կրելու է, որոյ օրինակ Քրիստոս է։ Ով որ զԱստուած իւր ազգականներէն, ծնողքէն և իւր անձէն անգամ շատ աւելի չը սիրէ՝ Քրիստոսի աշակերտ չը կըրնար ըլլալ։ Աստուծոյ համար՝ եթէ հարկ լինի, ամէն բան զոհելու է․ զի Աստուծմով միայն կարող եմք մեր սիրելի էակներն ու առարկաները ստանալ, անոնց սէրը վայելել․ և մինչև որ զԱստուած յամենայն սրտէ և յամենայն անձնէ չը սիրեմք՝ մեր սիրելիներուն, ծնողաց, որդւոց և այլն վրայ կատարեալ սէր չեմք կարող ունենալ։ կատարեալ սէրն՝ Աստուած է․ մինչև որ զԱստուած չունենամք՝ սէր չունիմք և ոչ մէկ բանի վրայ․ առանց Աստուծոյ եղած սէրն անկանոն է, որ զմեզ Աստուծմէ կը զատէ կը հեռացընէ։

Ո՞վ ոք 'ի [illegible] [illegible], և [illegible] [illegible] [illegible] [illegible] [illegible] 'ի [illegible]։

Զի գուցէ իբրեւ արկանիցէ հիմն՝ և ոչ կարիցէ կատարել, ամենեքին որ տեսանիցեն, սկսանիցին ծաղր առնել զնա, եւ ասել. Թէ այս այր սկսաւ շինել, և ո՛չ կարաց կատարել։ Կամ ո՞ր թագաւոր երթեալ տայցէ պատերազմ ընդ այլում թագաւորի. և ոչ նստեալ նախ խորհիցի, եթէ կարող իցէ տասն հազարաւ զդէմ առնել զայնորիկ՝ որ գայցէ 'ի վերայ նորա քսան հազարաւ։ Ապա թէ ո՛չ, մինչդեռ հեռագոյն իցէ, հրեշտակութեան առաքեա՛լ աղաչիցէ 'ի խաղաղութեան. Արդ՝ այսպէս ամենայն ոք 'ի ձէնջ որ ոչ հրաժարեսցէ յամենայն ընչից իւրոց, ոչ կարէ իմ աշակերտ լինել. Ղուկ. ԺԴ. 28—33։

*Քրիստոսի աշակերտ ըլլալու համար առաջուց խորհելու ենք. ինչպէս աշտարակ շինող մը նախ ծախքը կը հաշուէ, որ գուցէ սկսածը չը կըրնալով աւարտել՝ ծաղրու ծանակ ըլլայ ամէնուն։ Եւ ուրիշ թագաւորի դէմ պատերազմի գնացող թագաւոր մը իւր զօրութիւնը կը հաշուէ, և կը խորհի թէ իւր վրայ քսան հազարաւ եկողին դէմ տասն հազարաւ կրնա՞յ դնել. ապա թէ ոչ հեռուէն, դեսպանութեամբ հաշտութեան ճարը կը նայի։ Այսպէս եթէ մեք ալ ունինք արգելք մը, այսինքն, եթէ աշխարհի և ընչից սէրն՝ արգելք են մեզ Քրիստոսի աշակերտելու, պէտք է հաշուենք և խորհինք, այսպիսի բաները տկարութեան նշան են մեզ համար. ուստի զմեզ Աստուծոյ ճամբուն մէջ տկարացընող ինչ բան որ կայ՝ ծնողք, ինչք, աչք, ձեռք, ոտք և յլն. զամէնը զոհելու է. այսինքն, այն կերպով կարգադրելու է մեր գործը, որ արգելք չը լինին մեր Քրիստոսի աշակերտութեան.*

Բարւոք է աղ. ապա թէ աղն անհամեսցի, ի՞ւ համե-

մեսցէ՞ ։ Ո՛չ յերկիր՝ եւ ո՛չ յաղբ է՛ պիտանացեալ , այլ ընկենուն զնա արտաքս ․ որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ ։ Ղուկ․ ԺԴ․ 34—35 ։

*Խոնարհութիւնն ՚ի գործ դնելու է ․ խոնարհութիւնը աղի կը նմանի , որ եթէ համը կորսընցընէ՝ բանի մը պէտք չըլլար ․ մինչեւ անգամ գետնի հողին ու աղբին իսկ վնասակար է ։*

## Ե․ Առակք մոլորեալ ոչխարին , կորուսեալ դրամոյն եւ անառակ որդւոյն

Եւ էին մերձ առ նա ամենայն մաքսաւորք եւ մեղաւորք՝ լսել ՚ի նմանէ ։ Տրտնջէին փարիսեցիքն եւ դպիրք՝ եւ ասէին․ Ընդէ՞ր սա զմեղաւորս ընդունի՝ եւ ուտէ ընդ նոսա ։ Ասաց առ նոսա զառակս զայս ։ Ո՞վ ոք իցէ ՚ի ձէնջ մարդ՝ որոյ իցէ հարիւր ոչխար , եւ կորուսանիցէ մի ՚ի նոցանէ , ո՞չ թողուցու զիննսուն եւ զինն յանապատի , եւ երթայցէ զհետ կորուսելոյն՝ մինչեւ գտանիցէ զնա ։ Եւ իբրեւ գտանէ , դնէ զնա ՚ի վերայ ուսոց իւրոց խնդալով ։ Եւ երթայ ՚ի տուն ․ կոչէ զբարեկամս եւ զդրացիս , եւ ասէ ցնոսա ․ ուրա՛խ եղերուք ընդ իս , զի գտի զոչխարն իմ զկորուսեալ ։ Ասեմ ձեզ ․ զի այսպէս է ուրախութիւն յերկինս վասն միոյ մեղաւորի որ ապաշխարիցէ՝ քան վասն իննսուն եւ ինն արդարոց՝ որոց չիցէ պիտոյ ապաշխարութիւն ։ Ղուկ․ ԺԵ․ 1–7 ։

*Մաքսաւորք եւ մեղաւորք՝ Յիսուսի խօսքերէն մեծ մխիթարութիւն զգալով՝ չէին կրնար զատուիլ ․ միշտ կը փափաքէին Քրիստոսի խօսքերը մտիկ ընել ։ փարիսեցիք՝ հպարտ եւ վէս՝ Քրիստոսի այս մարդասիրութիւնը կը բամբասէին , զի մարդոց վրայ գութ չունէին ․ զանոնք արհամարհելն իրենց սովորոյթն էր , սէրը անոնց սիրտը չէր թափանցեր ․ ուստի եւ Քրիստոսի՝*

Նոյա հետ տեսակցութեան վրայ կը տրտնջէին ։ Յիսուս Նոյա այս մեծ սխալը ջնջելու և իր գործը հասկցընելու համար՝ սա հետևեալ երեք առակներն պատմեց ։ Երևակայեցէք՝ ըսաւ, մարդ մը՝ որ հարիւր ոչխարի տէր է. եթէ ասոնցմէ մին կորսուելու ըլլայ, իննսուն և ինն հատը թողլով՝ կորսուելոյն ետևէն չե՞րթար փնտռըտելու. և զանի գտածին պէս՝ ուսովն իր տունը միւսներուն քով բերելու համար՝ չշտապեր, որ ոչխարն իր ծանր քայլերովն ընթանայ, այլ ուսին վրայ բառնալով՝ վազն 'ի վազը տուն կուգայ, դրացիներն կը կոչէ, և կորսուեալ ոչխարին գտնուելուն վրայ ինքն ուրախանալէն զատ՝ կը հրաւիրէ զիւր դրացիներն ալ, որ իրեն ուրախակից լինին. ինչպէս ծնողք իրենց զաւակներէն միոյն ծանր հիւանդութենէ մը բժշկութիւնը տեսնելով՝ անոր և միւսներուն կենդանի և առողջ եղած ժամանակէն աւելի կը հրճուին ։ Որչափ որ չափազանց երևի հովուին ցնծութիւնը այդ կորսուելոյն դիւտին վրայ, գիտցէք, որ աւելի չափազանց է երկնից մէջ այն ուրախութիւնը՝ որ կ'ըլլայ ապաշխարող մեղաւորի մը համար ։

Աստուած՝ հովիւն է, չըկորսուեալ ոչխարք՝ հրեշտակներն են, որք չեն մեղանչեր կամ կորսուիր, և ապաշխարութեան կամ գտնուելու պէտք չունին ։

ասեմ ձեզ. ուրախութիւն եղիցի առաջի հրեշտակաց Աստուծոյ ՚ի վերայ միոյ մեղաւորի՝ որ ապաշխարիցէ ։ Ղուկ. ԺԵ. 8—10 .

*Նմանապէս կին մի՝ որ տասն դրամ ունի, և որոյ վրայ կը դողդողայ, եթէ դիպուածով անոնցմէ մին կորսնցընէ՝ ճրագ կը վառէ, տունը կ՚աւլէ վերէն ՚ի վար, փնտռտուքի կ՚ելնէ, և գտնուելուն պէս՝ բարեկամաց և դրացեաց հետ ուրախ կ՚ըլլայ ։ Այս չափազանց համարուած ուրախութիւնն ալ ոչինչ է՝ ապաշխարող մեղաւորի մը վրայ երկնից հրեշտակաց զգացած ցնծութեան հետ բաղդատմամբ . ասոր՝ կորուսեալ ոչխարին գիւտէն աւելի ուրախութիւն կը պատճառէ . զի կորսուած ոչխարը մայելով և ձայն հանելով՝ դիւրաւ կը գտնուի, եթէ գայլէն չէ յափշտակուած. իսկ կորուսեալ դրամը տեղ մը ինկած՝ անշարժ մնացած կ՚ըլլայ ։ Յամառ մեղաւորն իւր մեղաց մէջ շատ ժամանակ անդարձ և անապաշաւ կը մնայ, զանի գտնելը աւելի դժուարին է . ուստի գիւտին վրայ զգացուած ցնծութիւնն ալ աւելի մեծ և բուռն կը լինի ։*

Եւ ասէ . առն միոյ էին երկու որդիք ։ Ասէ կրտսերն ՚ի նոցանէ ցհայրն . հա՛յր, տո՛ւր ինձ բաժին, որ անկանի յընչիցդ . և նա բաժանեաց նոցա զկեանսն։ Եւ յետ ոչ բազում աւուրց՝ ժողովեալ զամենայն կրտսեր որդւոյն՝ գնաց յաշխարհ հեռի . և անդ վատնեաց զինչս իւր ; զի կեայր անառակութեամբ ։ Եւ իբրեւ սպառեաց զամենայն, եղեւ սով սաստիկ յաշխարհին յայնմիկ, և սկսաւ նուաղել ։ Եւ գնացեալ յարեցաւ ՚ի մի ոմն ՚ի քաղաքացւոց աշխարհին այնորիկ . և յղեաց զնա յագարակս իւր արածել խոզս ։ Եւ ցանկայր լնուլ զորովայն իւր յեղջիւրէն զոր խոզքն ուտէին, և ոչ ո՛ք

ւոյը։ Այս երկու որդւոյը մէկը՝ արդար մարդու, և միւսը՝ մեղաւորի օրինակ է։ Քիչ օրէն կրտսերը իւր բոլոր ունեցածը ժողվեց առաւ, և հեռու օտար երկիր գնաց։

Հայրն՝ Աստուած է. մեզի տուած ժառանգութիւնը՝ մեր հոգին, սիրտը, միտքը, խիղճը, առողջութիւնը, խորհելու և գործելու կարողութիւններն, ժամանակը. հարստութիւններն ևն. են, զորս 'ի փառս Աստուծոյ և մեր փրկութեան, բարւոքութեան և առաքինութեան համար գործածելու պարտաւոր ենք. Հեռաւոր աշխարհ երթալը՝ պարտաւորութիւնը մոռնալ և Աստուծմէ հեռանալ կը նշանակէ։ Հեռաւոր կլիմայի տակ՝ ուր հոգին չը շնչեր, սատանայի ներգործութեան ներքև կրտսերն՝ մեղաւորը բոլոր իւր ստացուածքը կը վատնէ, և շուայտութեամբ ու անառակութեամբ կ'սպառէ. ա՛լ Աստուծոյ համար խելք, ոյժ, սիրտ և հոգի չը մնար վրան։ Աստուծոյ շնորհաց սովը կը տիրէ հոն. խոզեր արածելու կ'ստիպուի։ Խոզարածութիւնը՝ չար մեղաց և ախտերու ծառայել կը նշանակէ. և ինչպէս եղջիւրը, այնպէս ալ չար ախտերն ու կիրքերը ո՛չ զոք իրենց գերի ըրածներէն կրնան յագեցնել։ Ա՛լ ո՛չ իւր կիրքերովը կարող է յագենալ, և ոչ այն զուարճութիւններով՝ որք զառաջինն զինքը յագեցնել կը թուէին. մեղաց ագարակը կամ դաշտը՝ փոր կշտացնող, հոգին յագեցնող սնունդի տեղ՝ շատ շատ եղջիւրի պէս պտուղներ կ'ընծայէ, որոնց փայտերուն ահագին քանակութենէն հազիւ կաթիլ մը հիւթ կարող կ'ըլլայ ծծել մարդ։ Սակայն վերջը այդ խոզերուն պաճար եղող եղջիւրն ալ կը զլացուի անա-

ռակէն, զայդ ալ չը գտնէր։ Ահա այդ երկրա Թշուառ վիճակին մէջ երանելի է այն մեղաւորն՝ որուն խիղճը գլուխը կուգայ. այո՛, երջանիկ է այն անառակը, որ այդ սաստիկ սովին և չքաւորութեան մէջ ինքն իրեն կուգայ, ինքզինք կը ժողվէ. այս ալ Աստուծոյ անհուն գթութիւնն է, որ բարձր ամպոց մէջէն ծագած լուսոյ ճառագայթի պէս կը Թափանցէ անոր խաւար ու մառախլապատ միտքը լուսաւորել. իւր հայրը, իւր ամենողորմ Աստուածը կը յիշէ. Նորա գթութեանց շուրջը քանի՛ քանի՛ իրեն պէս մարդկային էակներ կշտապինդ, հացալից և երջանիկ են. ոչ միայն որդիք՝ Հրէայք կամ Քրիստոնեայք, այլ և ծառայք՝ հեթանոսք և կռապաշտք անգամ իրմէն աւելի երջանիկ են, վասն զի Նորա գթութիւնը կը վայելեն։ Ո՛վ կ՚որոշէ անառակ որդւոյն երթալ և այն գթութեանց Հօր ոտքերն իյնալ, և իրեն՝ իբրև հօր, և իր տանը՝ աթոռոյն ու պատուոյն յայսինքն, երկնից դէմ ըրած մեղքերուն խոստովանիլ և Հա՛յր գոչել. և ըստ որում իբրև որդի՝ իւր որդիութեան ընթացից մէջ նախատեր էր զիւր հայրը և անպատուեր, ա՛լ չէր կարծեր՝ որ իբրև որդի իրաւունք ունենար հայրենի տան մէջ, որմէ ունեցած իւր անփակոն ժառանգութիւնն ալ շռայլեր վատներ էր. բայց կը յուսար, որ իբրև մի 'ի յետին ծառայից պիտի ընդունուէր իւր հօրմէն և իբրև մի 'ի վարձկանաց։ Եւ այս զղջական դիտաւորութեամբ հօրը տունը վազեց։ Բայց դու տե՛ս Հօր Աստուծոյ գթութիւնը, որ 'ի հեռուստ տեսանելով զիւր որդին՝ որ կը դառնայ, ինքը դիմաւորեց զանի՝ գթալով Նորա Թշուառ վիճակին

վրայ. եղաւ, վար իջաւ, առջեւն եղաւ ու պարա-նոցը փարեցաւ: Այսպէս Աստուած զղջացող մե-ղաւորին առջեւը կ'ելնէ, կը համբուրէ. կորուսած շնորհները նորէն կու տայ, իւր խորհրդական ճա-շին սեղանակից կ'ընէ՝ որ առհաւատչեայն է երկ-նից ուրախութեանց, և այս հիւանդ որդւոյն ա-պաքինութեանը վրայ՝ առողջէն աւելի ուրախ կ'ըլլայ: Նորա մերկացած շնորհաց պատմուճանը, նորա մաշեցուցած խաղաղութեան աւետարանի կօշիկներն և նորա կորուսած պատուոյ մատանին նորէն կը շնորհէ: զի քարոզապէս մեռեալն կեն-դանացաւ, զի յաւիտենապէս կորուսեալն գըտ-նուեցաւ:

Աստուած՝ զղջացեալ մեղաւորին վրայ այն-չափ կ'ուրախանայ, որ իւր հրեշտակները նորա ապաշաւորութեան կը յատկացնէ, և իւր երէց որդւոյն զարմանքն կամ արդարոց նախանձը — եթէ կարելի ըլլար արդարոց նախանձ ունենալ — կը շարժէ:

Վարդապետք ոմանք այս առակին մէջի ե-րէց որդւովը զփարիսեցիս կը հասկնան, որ ամ-բողջէն զատուած՝ ինքզինքնին արդար և սուրբ համարած էին. որք անտարբեր էին՝ ստորին կարգի մարդոց բարքը վարքը չտկելու համար հոգ տանելու մասին. և համարեա՛ թէ ժողո-վրդեան մոլութեամբքն ու մոլորութեամբքն ա-ւելի կը փառաւորուէին, և նոցա յանցանքները մինչև իսկ չափազանցօրէն պատմելով՝ առիթ կ'ունենային ինքզինքնին չափազանց սուրբ և ար-դար հռչակելու, որ չէին և կեղծաւորութեամբ այնպէս լինել կը կեղծէին:

Քրիստոս Տէրն մեր երբ կը նկարագրէ՝ թէ

երէց որդւոյն ագարակէն դառնալով, և ծառա-յից միջոցաւ՝ իւր կրտսեր և անառակութենէ դարձող եղբօրն համար հօրը տանը մէջ տեղի ունեցած ուրախութեանց, երգոց և պարուց ձայնը լսելով նախանձէն ու բարկութենէն տուն մտնել չուզեց և հօրը գանգատներ ըրաւ, ապաշխարող մեղաւորին՝ Աստուծոյ առջև իրենց-մէ աւելի հաճելի, իրենցմէ աւելի սիրելի լինե-լը կ'իմացնէ, թէև փարիսեցիք միշտ ժողովուր-դեան առջև՝ Աստուծոյ պատուիրանաց պահող և Աստուծոյ ծառայող կը թուէին.



# ԳԼՈՒԽ Ժ.

ԱՌԱԿ ԱՆԻՐԱՒ ՏՆՏԵՍԻՆ. — ԱՄՈՒՍՆՈՒԹԵԱՆ ՕՐԷՆՔ ԱՆ-ԼՈՒԾԱՆԵԼԻ. — ԱՌԱԿ ԱՂՔԱՏԻՆ ՂԱԶԱՐՈՍԻ ԵՒ ԱՆՈՂՈՐՄ ՄԵԾԱՏԱՆՆ



## Ա. Առակ անիրաւ տնտեսին

Եւ ասէր առ աշակերտսն. այր մի էր մեծատուն, որոյ էր տնտես. և եղև ընդ նմանէ ամբաստանութիւն առաջի իւր վատնելոյ ընչից նորա: Կոչեաց, և ասէ ցնա. զի՞նչ է այս զոր լսեմ զքէն, տո՛ւր զհամար տնտեսութեան քո. զի ոչ ևս կարես լինել տնտես: Ասէ ընդ միտս իւր տնտեսն. զինչ գործեցից, զի տէր իմ հանէ զտնտեսութիւնս. գործել ոչ կարեմ, մուրանալ ամաչեմ: Գիտեմ զինչ արարից. զի յոր-ժամ ի բաց լինիցիմ ի տնտեսութենէ՝ ընկալցին զիս ի

տունս իւրեանց ։ Եւ կոչեցեալ առ ինքն զմի մի ի պարտապանացն տեառն իւրոյ , ասէ ցառաջինն . Քանի՞ ինչ պարտիս տեառն իմում ։ Եւ նա ասէ . Հարիւր մար ձիթոյ . ասէ ցնա ։ Առ զգիր քո , և նի՛ստ գրեա՛ վաղվաղակի յիսուն ։ Ապա ասէ ցմիւսն . Դու քանի՞ ինչ պարտիս , և նա ասէ . Հարիւր քոռ ցորենոյ , և ասէ ցնա . Առ զգիր քո՝ և նի՛ստ գրեա՛ ութսուն ։ Եւ գովեաց տէրն զտնտեսն անիրաւութեան , զի իմաստութեամբ արար . զի որդիք աշխարհիս այսորիկ իմաստնագոյն են քան զորդիս լուսոյ յազգս իւրեանց ։ Ղուկ. ԺԶ. 1—8 ։

*Ի ներկայութեան փարիսեցւոց՝ հետևեալ առակն ըսաւ իւր աշակերտներուն ։ Մեծատուն մարդ մը կար՝ որ տնտես մ'ունէր . որուն համար ամբաստանեցին՝ թէ իւր տիրոջը ստացուածքը կը վատնէ ։ Տէրն իմանալով կանչեց տնտեսն ու ըսաւ . աս ի՞նչ բան է՝ որ կը լսեմ վրայօքդ . տնտեսութեանդ հաշիւը տո՛ւր , ա՛լ այսուհետև չես կրնար իմ տնտեսս ըլլալ ։ Տըն-տեսն յայնժամ մտածեց . ի՞նչ ընեմ ըսաւ , տէրս զիս պաշտօնէս կը վռնտէ . գործելու անկարող եմ , և մուրալու կ'ամչնամ ։ Եւ որոշեց իւր ընելիքը ։ Ինձ բարեկամներ ճարեմ , ըսաւ , որ երբ տէրս զիս արտաքսէ՝ իրենց տունն ընդունին ։ Այսպէս տնտեսն իւր երկրաւոր ապագայն մտածելով տիրոջը պարտք ունեցողներն մէկ մէկ կանչեց , և անոնց պարտքերուն կէսը կամ կէսին մօտ գումար մը խարդախութեամբ բաշխեց . հարիւր մար ձիթոյ պարտք ունեցողէն յիսունի , հարիւր քոռ ցորենոյ պարտականէն ութսունի նոր մուրհակներ առնելով , և առաջին մուրհակներն իրենց դարձնելով ։ Քրիստոս տէրն մեր զայդ տնտեսը անիրաւ կոչելով իսկ՝ գովեց զա-*

նէ՝ իւր գործը չինել գիտնալուն, կամ՝ ճար-
տարամտութեանն ու խորագիտութեանն համար։

Այս առակին մէջ յիշուած ակերն ու ամանները՝ երկուքն ալ 'ի միասին երկրաւոր բարեաց և ընչից սիրահար, երկրաւոր բաներու վրայ միայն մտածողներ էին. ասոնք որդիք աշխարհի էին. ասոնցմէ մին իւր ընչից չը վատնուելուն համար՝ անիրաւ տնտեսը փռնտեց, և միւսը՝ վերջը խելքն չը մնալու համար՝ իւր առջի գողութեանց վրայ նոր անիրաւութիւններ բարդելով՝ իրեն բարեկամներ ճարեց. ասոնք իրենց տեսակներուն մէջ (յազգս իւրեանց) լուսոյ որդիներէն՝ երկնից արքայութեան բուն պաշտօնեաներէն աւելի ճարտարմտութիւն ցոյց տուին։

Եւ ես ձեզ ասեմ. արարէ՛ք ձեզ բարեկամս 'ի մամոնայէ անիրաւութեան. զի յորժամ պակասեսցէ այն՝ ընկալցին զձեզ 'ի յարկսն յաւիտենականս։ Որ 'ի փոքուն հաւատարիմ է, և 'ի բազմին հաւատարիմ է. և որ 'ի փոքուն անիրաւ է, և 'ի բազմին անիրաւ է։ Իսկ արդ՝ եթէ յանիրաւ մամոնային չէք հաւատարիմք՝ զճշմարիտն ո՞ տացէ ձեզ։ Ղուկ. ԺԶ. 9-12.

Ինչք, ստացուածք, հարստութիւնք շատ անգամ անիրաւութեամբ ձեռք կը բերուին. անոր համար ընչից կուռքն ու շահապետն, զմամոնայն, անիրաւ կ'անուանէ Քրիստոս. այս ճոխութիւններն՝ եթէ մեր քրտանց պտուղն իսկ լինին, դարձեալ օտար բաներ են մեզի, դերեզմանէն անդին մերը չեն. մեր ճշմարիտ ստացուածքը՝ Քրիստոս ինքն և Նորա Աւետարանն է. Նոյն իսկ մեր արդար վաստակն եղող ինչքը՝ այնպիսի բաներու ծառայեցնելու ենք, որ ոչ թէ անիրաւ տնտեսին խորհած երկրաւոր տաղաւարն,

արհամարհեսցէ . ո՛չ կարէք Աստուծոյ ծառայել և մամոնայի ։ Ղուկ. ԺԶ. 13 ։

Դուք ամէն նոխութենէ աւելի զԱստուած պիտի սիրէք . ձեր հոգւոյն և մարմնին վրայ Աստուծմէ զատ տիրող չը պիտի լինի . վասն զի չէք կրնար երկու տէրերու միանգամայն ծառայել . չէք կրնար հաւասար հաւատարմութեամբ՝ Աստուծոյ և մամոնայի ծառայութիւն ընել . մէկը միւսին զոհելու էք ։

Իբրև լսէին զայս ամենայն փարիսեցիքն՝ քանզի արծաթասէրք էին , և այպանէին զնա ։ Եւ ասէ ցնոսա . դուք էք որ արդարացուցանէք զանձինս առաջի մարդկան , բայց Աստուած գիտէ զսիրտս ձեր . զի որ առաջի մարդկան բարձր է , պիղծ է առաջի Աստուծոյ ։ Օրէնքն և մարգարէք մինչև ցՅովհաննէս , յայնմ հետէ արքայութիւն Աստուծոյ աւետարանի , և ամենայն ոք ի նա բռնադատի ։ Դիւրին է երկնից և երկրի անցանել , քան յօրինացն միոյ նշանախեցի անկանել ։ Ղուկ. ԺԶ. 14—17 ։

Փարիսեցիք՝ որ արծաթասէր էին , այս խօսքերը լսելով կ'անդոսնէին զՔրիստոս . և Յիսուս յանդիմանեց նոցա սրտին չարութիւնն ու ըսաւ . Դուք ինքզինքնիդ կ'արդարացընէք . բայց Աստուած ձեր սիրտն ու երիկամունքը կը քննէ ու կը տեսնէ . ձեր՝ մեղաւոր և պիղծ համարած մարդոցմէ շատերն՝ ձեզ նման մեղաւոր չեն , Աստուծոյ առջև բարձր են , և իրենց արժանի համարումն ունին ։

Քրիստոս այս առթիւ կ'իմացնէ նաև , որ բոլոր աստուածային յայտնութեան ամբողջութիւնը օրէնքն ու մարգարէութիւններն յերկուս կը բաժնուին . առաջինը՝ մինչև Յովհաննէս , և երկրորդ-

դր՝ Յովհաննէսէն յետոյ իրենց սկսեալ եւ հիմնեալ. ահա այս ժամանակէն 'ի վեր ամէն մարդ Աստուծոյ աւետարանեալ արքայութիւնը ձեռք ձգել կը բաղձայ' բաց 'ի փարիսեցւոց, որ հին օրինաց ոգւոյն այլ հակառակողներ էին, այն օրէնքին' որոյ մէկ նշանախեցն անգամ չը պիտի կորսուի ։

## Բ. Ամուսնութեան օրէնք անլուծանելի

Եւ մատուցեալ առ նա փարիսեցիքն փորձէին զնա եւ ասէին, եթէ արժա՞ն իցէ առն արձակել զկին իւր ըստ ամենայն պատճառս ։ Պատասխանի ետ նոցա եւ ասէ, չիցէ՞ ընթերցեալ ձեր' թէ որ հաստատեացն 'ի սկզբանէ' արու եւ էգ արար զնոսա, եւ ասէ . վասն այսորիկ թողցէ այր զհայր եւ զմայր' եւ երթիցէ զհետ կնոջ իւրոյ, եւ եղիցին երկոքեան 'ի մարմին մի ։ Ապա ուրեմն ոչ են երկու' այլ մի մարմին . զոր' զոր Աստուած զուգեաց' մարդ մի' մեկնեսցէ ։ Ասեն ցնա. Իսկ Մովսէս ընդէ՞ր պատուիրեաց տալ թուղթ մեկնելոյ' եւ արձակել ։ Ասէ ցնոսա . Մովսէս վասն խստասրտութեան ձերոյ հրամայեաց ձեզ արձակել զկանայս ձեր . այլ 'ի սկզբանէ ոչ եղեւ այնպէս ։ Բայց ասեմ ձեզ, զի ամենայն որ արձակեսցէ զկին իւր' եւ ոչ վասն պոռնկութեան, եւ առնիցէ այլ' շնայ, եւ որ զարձակեալն առնիցէ' շնայ։ Մատթ. ԺԹ. 3—9 ։ Ղուկ. ԺԶ. 18 ։

Երկրորդ օրինաց գրքին մէջ գրուած է . "Եթէ առնուցու ոք կին եւ մտանիցէ առ նա, եւ եղիցի' եթէ ոչ գտանիցէ շնորհս առաջի նորա, զի եգիտ 'ի նմա իրս անարգութեան, գրեսցէ նմա գիրս ապահարզանի, եւ տացէ 'ի ձեռս նորա, եւ արձակեսցէ զնա 'ի տանէ իւրմէ" . Բ. Օր. ԻԴ. 1 .

Յիսուս՝ սկզբնական, այսինքն՝ Ադամայ Աստուծմէ ընդունած օրէնքը — մէկ այր և մէկ կին — կը հաստատէ, և Մովսէսի ըրած թոյլտուութիւնը՝ որ վասն խստասրտութեան Իսրայէլի, կը վերցնէ. միայն շնութեան պատճառաւ արձակելու հրաման կուտայ՝ սա՛ պայմանաւ, որ արձակուած կինը վերստին չամուսնանայ։ Առանց բնական պոռնկութեան ո՛վ որ իր կինը արձակէ, իր կնոջ շնալուն պատճառ կ՚ըլլայ, ըսած էր արդէն Քրիստոս։

Քրիստոսի այն վերջին խօսքը «Ո՛վ որ արձակէ զկին իւր», օրինակ մը կարելի է համարիլ փարիսեցւոց համար ալ. վասն զի նոքա օրէնքը խօսքով կը պահէին և ոչ գործնապէս. սաստիկ գրեթէ օրէնքը իրենցմէ բաժնած էին, իրենք իրենց ուրիշ օրէնք էին շինած։ «Եւ առնէ այլ՝ շնայ». զԱստուած և նորա օրէնքը չպահողը՝ ըստ բանից Ս. Գրոց կը շնայ, այսինքն, կռապաշտութիւն կ՚ընէ. նմանապէս Քրիստոսի յերկնից բերած կամ կատարելագործած օրէնքը չընդունողըն ալ կը կռապաշտէ։

Եւ 'ի տան դարձեալ աշակերտքն զնոյն հարցին զնա։ Եւ ասէ ցնոսա, Եթէ այր արձակեսցէ զկին իւր, և արասցէ այլ՝ շնայ. և կին՝ եթէ ելցէ յառնէ իւրմէ, և եղիցէ առն այլում՝ շնայ. Մարկ. Ժ. 10—12։ Ասեն ցնա աշակերտքն իւր. Եթէ այդպէս ինչ իցէ ընդ այր և ընդ կին՝ լաւ է չամուսնանալ։ Եւ նա ասէ ցնոսա. Ոչ ամենեքեան բաւական են այդմ բանի, այլ որոց տուեալ է։ Զի են ներքինիք՝ որ յորովայնէ մօր իւրեանց ծնան այնպէս. և են ներքինիք՝ որ 'ի մարդկանէ եղեն ներքինիք. և են ներքինիք՝ որ զանձինս իւրեանց արարին ներքինիս վասն արքայութեան երկնից. որ

կարօղն է տանել՝ տարցէ ։ Մտթ. ԺԹ. 10—12 ։

*Երբոր աշակերտները հարցուցին՝ նոյն պատասխանը տուաւ անոնց ալ. ուստի առիթ տուաւ նոցա սա՛ առարկութիւնն ընելու. «Եթէ ո՛ և իցէ պատճառաւ զկին արձակելէն յետոյ ամուսնալու ազատ չէ մէկը՝ աւելի լաւ է, որ բնաւ չը կարգուի»: Յիսուս պատասխանեց. «Ամէնքը չեն կարող զայդ ընել. ներքինիներ կան՝ որ ներքինի ծնան 'ի մօրէ. ասոնք ամուսնութեան անկար են ։ Ներքինիներ կան՝ որ մարդոց ձեռօք ներքինացած են. ասոնք ալ առաջին կարգին կը վերաբերին ամուսնական պայմանի նկատմամբ։ Ներքինիներ ալ կան, որ Աստուծոյ արքայութեանն համար կամաւորապէս ներքինացուցին ինքզինքնին, այսինքն, կոյս պահեցին զմարմինս իւրեանց 'ի խառնակութենէ կանանց, և զհոգի և զսիրտըս իւրեանց՝ մեղքերէ ու մոլութիւններէ ։ Ո՛վ որ կրնայ՝ նա թո՛ղ յանձն առնու կրել այդ լուծը, որ ամենեցուն չէ տուեալ ։»*

## Գ. Առակ աղքատին Ղազարու եւ անողորմ մեծատանն

Այր ոմն էր մեծատուն, և ագանէր բեհեզս և ծիրանիս, և ուրախ լինէր հանապազ առատապէս ։ Եւ աղքատ ոմն անուն Ղազարոս անկեալ կայր առ դրան նորա վիրաւորեալ. Եւ ցանկայր յագենալ 'ի փշրանացն՝ որ անկանէին 'ի սեղանոյ մեծատանն. այլ և շունք ևս գային, և լզուին զվէրս նորա ։ Եւ եղև մեռանել աղքատին, և տանել հրեշտակաց զնա 'ի գոգն Աբրահամու. մեռաւ և մեծատունն՝ և թաղեցաւ ։ Եւ 'ի դժոխսն ամբարձ զաչս իւր մինչ 'ի տանջանս էր. ետես զԱբրահամ 'ի հեռաստանէ, և զՂազարոս 'ի գոգ նորա

կը զարդարուէր. և ինչպէս շատ անգամ կը տեսնեմք ու կը լսեմք՝ մեր ժամանակի շատ մը հարուստներուն պէս՝ ամէն օր ուրախութիւն և խնճոյք կը կատարէր, բնաւ միտքը չբերելով այնչափ աղքատ և տառապեալ անձինքն՝ որ պատառ մը հացի վրայ կը դողդողան, և գուցէ բազմաթիւ ընտանեաց համար. ամիսներով ապրուստ լինելու բաւական գումարներ՝ մէկ գիշերուան մէջ պարահանդէսներու, նուագահանդէսներու և այլոց մէջ կը մսխէր։ Անկարեկիր և անողորմ մեծատուն մ՚ է սա, նման անոնց, որ իրենց դուռը բաղխող կամ դրան առջև մերկ, անօթի և ցրտասարսուռ վիճակի մէջ դեգերող աղքատներն անհարութեամբ և սաստելով և դուռն ընդդէմ դոցելով վռնտել կուտան՝ այն անգութ, և կեղծաւորութեամբ և չողոքորթութեամբ իրենց համակրութիւնը վաստկող ծառայից միջոցաւ, որ իրենցմէ աւելի անողորմ են։ Անողորմ մեծատան խոհանոցը դեգերող շներն, կատուներն ու մկներն շատ աւելի յարգ և պատիւ ունին՝ քան զմարդկային էակը, որ աղքատութենէ զատ ուրիշ պակասութիւն չունենալով թերևս իրենցմէ շատ աւելի առաքինի, և արժանաւոր է մարդ անուան։ Քրիստոսի մէջ բերած աղքատին անունէն յայտնի է, որ անբասիր և աստուածահաճոյ վարք ունեցող մէկն է, վասն զի Ղազար, Եղիազար, Էլիազար՝ «Աստուած կ՚օգնէ» ըսել է։ Արդ այսպիսի աղքատը իւր թշուառ և չքաւոր վիճակին մէջ՝ հարուստէն շատ աւելի հարուստ եւ սրտով եւ հոգւով՝ ինքըն զԱստուած ունի. իսկ հարուստը՝ շատ աւելի աղքատ է դրան առջև դեգերող արժանաւոր

աղքատէն, վասն զի զԱստուած չունի ։

Ղազարոս մարմնոյն վրայ վէրքեր ունի, մարմինը ցաւագար է, բայց հոգւով առողջ է. մարմնով առողջ հարուստին հոգին վիրալից է, և խղճխայթեալ վէրքեր ունի։ Աղքատին վիշտը շուտով կը վերջանայ. մահը անոր ցաւոց վախճան կու տայ. հարուստին ալ ամբարհաւաճ ցնծութիւններն վաղանցիկ են, մահը վերջակէտ կը դնէ նորա ուրախութեանցն ։ Աղքատը մի միայն իւր մարմնոյն կողմանէ ցաւ կ՚զգայ, նորա հոգին ուրախ է, թէև նորա մարմինը փշրանաց կը կարօտի, շուներն նորա վէրքերն կը լիզուն՝ բժշկական օգնութենէ զուրկ մնացած լինելուն համար, բայց հոգին հրեշտակաց խօսակից է՝ առողջ և զուարթ. այլ հարուստը իւր հոգւոյն վէրքերն ու ամբուժելի խոցերն չզգար ։

Եկաւ ժամանակը, մեռաւ աղքատը, և մարմինը 'ի գերեզման դրուեցաւ, և հոգին իւր բարեկամաց, այսինքն, հրեշտակաց ձեռօք գընաց Աբրահամու արդարոյն՝ իւր հաւատոց նահապետին քով ։ Մեծատունն ալ մեռաւ և թաղուեցաւ. բայց մին՝ իւր ստանալիք յաւիտենական վարձուց յիշատակաւն անբացատրելի ցնծութեան մէջ, իսկ միւսը՝ իրեն սպասող յաւիտենական պատժոյն երկիւղովը կը տանջուի. մանաւանդ երբ զՂազար՝ այն իրեն առջև այս կենաց մէջ շնէն աւելի արհամարհեալ մարդը կը տեսնէ հանգուցեալ 'ի գոգն Աբրահամու. Մեծատունը՝ սերընդով միայն Աբրահամու զաւակ էր. բայց Ղազարոս՝ անոր հաւատոց ժառանգ և անոր գործերն ունեցող զաւակ մը և նորա արժանաւոր որդի. ուրեմն արժանի է Աբրահամէն գգուելու

և սիրուելու։

Ի զուր կաղաղակէ մեծատունը, թէ «Ողորմէ՛ ինձ՝ հա՛յր Աբրահամ. գոնէ ղրկէ՛ Ղազարոսը, որ այս պապակեալ լեզուս զովացընէ՝ այդկենդանի վտակներուն մէջ իր մատին ծայրիկը թաթխելով. ես ի՜նչ ճոխութեան մէջ էի, ոսկւով և արծաթով լի էր տունս, ամենահամ օշարակներով. պատուական գինիներով և սառուցեալ ջրերով կը փրփրէին կը սառէին գաւաթները. իսկ հիմայ կաթիլ մը ջուր անգամ տուող չկայ ինձ. այս ի՜նչ անտանելի թշուառութիւն է. Ղազարոս աղքատ էր, բայց անդին այնչափ թշուառ չէր՝ որչափ ես հիմայ եմ, նա գոնէ ջուր ունէր. բայց որչափ անոր թշուառութիւնը ծանր իսկ լինէր՝ վերջապէս ահա վախճանին եկաւ։ Ա՜հ, ես շատ թշուառ եմ. ո՜հ, կը տոկամ, մանաւանդ երբ կը մտածեմ, որ այս իմ անտանելի վիճակս յաւիտեան պիտի տևէ. ահռելի՛ ցաւ, ի՞նչպէս պիտի հանդուրժեմ, այս տանջանքս յաւիտենական է... ո՜հ, կարելի ըլլար նորէն աշխարհ երթալ և նորէն ապրիլ...։

Մեծատունը պարապ տեղը կը խօսէր. հայր Աբրահամ՝ իւր և Ղազարու մէջ տեղ անջրպետող մեծ վիհը կը ցուցնէ և կ՚իմացընէ, թէ «Անհընար է որ ասկից այդ կողմը և ադկից այս կողմը մարդ անցնի. չէ կարելի որ դու այդտեղ մխիթարութիւն գտնես Ղազարոսէն կամ ուրիշէն։ Դու քու բարիքդ անդին աշխարհը վայելեցիր. Ղազարոս ալ առանց Աստուծմէ զատուելու՝ Աստուծոյ որդւոյ փորձութեան յատկացեալ չարչարանքը կրեց. դու հոդ կը պապակիս, բայց սա հոս կը մխիթարուի»։ Մեծատու-

նը կը ղաղանջէ. «Հա՛յր, կ'ըսէ, կ'աղաչեմ ըզքեզ, որ եթէ ոչ զիս, գէթ Ղազարոսը դրկես անդիի աշխարհը, ուր հինգ եղբայր ունիմ ես, թո՛ղ երթայ, քարոզէ, վկայութիւն տայ, որ չ'ըլլայ թէ անոնք ալ ինձ պէս վերջը այս տեղ տանջուին»։ Աբրահամ պատասխանեց. «Մովսիսի և մարգարէից գիրքերը կը կարդան. կամ թող կարդան ու միտք ընեն անոնց վկայութեանն ու քարոզութեանը»։ Մեծատունը կ'ըսէ. «Չէ՛ հա՛յր Աբրահամ, եթէ մեռեալներէն մէկը երթայ անոնց քով՝ կ'ապաշխարեն»։ Իսկ Աբրահամ պատասխանեց. «Եթէ Մովսիսի ու մարգարէից չեն լսեր, եթէ մեռեալներէն մէկն ալ երթայ՝ անոր ալ չը պիտի լսեն ու հաւատան»։ Զի արդէն փարիսեցիք՝ թէև տեսած էին, թէ Քրիստոս մեռեալներ յարոյց, և ուրիշ հրաշքներ գործեց, կամակորութեամբ չէին հաւատացած։ Նոյնպէս և յետոյ՝ երբ Ղազարոս բարեկամն ալ կենդանացուց չորեքօրեայ մեռելութենէն, դարձեալ չը հաւատացին, և առաւել գրգռեցան Յիսուսի դէմ, և մինչև իսկ 'ի մահ դատապարտեցին զանի։

# ԳԼՈՒԽ ԼԱ.

ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆ ՂԱԶԱՐՈՒ. — ԳԱԼՈՒՍՏ ՓՐԿՉԻՆ Ի ԲԵԹԱՆԻԱ. — ՅԱՐՈՒԹԻՒՆ ՂԱԶԱՐՈՒ. — ԽՈՐՀՈՒՐԴ ՀՐԷԻՑՆ ԶՅԻՍՈՒՍԸ, ՎՃԻՌ ԿԱՅԻԱՓԱՅ, ԵՒ ԵՐԹ ՅԻՍՈՒՍԻ ՅԵՓՐԱՅԻՄ

## Ա. Հիւանդութիւն Ղազարու

Եւ էր ոմն հիւանդ Ղազարոս ՚ի Բեթանիա, ՚ի գեղջէ Մարեմայ, եւ Մարթայի քեռ նորա։ Այս այն Մարիամն էր որ օծ զՏէրն իւղով՝ եւ ջնջեաց զոտս նորա հերօք իւրովք. որոյ եղբայրն Ղազարոս հիւանդ էր։ Առաքեցին առ նա քորքն նորա՝ եւ ասեն. Տէ՛ր, ահաւասիկ զոր դուն սիրեիր՝ հիւանդացեալ է։ Իբրեւ լուաւ Յիսուս, ասէ. այն հիւանդութիւն չէ՛ ՚ի մահ, այլ վասն փառացն Աստուծոյ. զի փառաւոր լիցի որդի Աստուծոյ այնուիկ։ Եւ սիրէր Յիսուս զՄարթա եւ զքոյր նորա զՄարիամ, եւ զՂազարոս։ Իբրեւ լուաւ թէ հիւանդացեալ է, [illegible] կալաւ անդէն ուր էրն՝ աւուրս երկուս։ Ապա յետ այնորիկ ասէ ցնոսա, Եկա՛յք երթիցուք միւանգամ ՚ի Հրէաստան. Ասեն ցնա աշակերտքն. Ռա՛բբի, այժմ եւս խնդրէին զքեզ Հրեայքն քարկոծ առնել, եւ դարձեա՞լ երթաս անդրէն։ Պատասխանի ետ Յիսուս. ո՞չ երկոտասան ժամ է աւուր. եթէ ոք գնայ ՚ի տուընջեան՝ ո՛չ գայթագղի, զի զլոյս աշխարհիս այսորիկ տեսանէ։ Ապա թէ ոք գնայ գիշերի՝ գայթագղի, զի լոյս ոչ գոյ ընդ նմա։ Յովհ. ԺԱ. 1-10։

*Յիսուսի ժամանօք, բարեկամ և աշակերտն Ղազարոս ծանրապէս հիւանդ պառկած էր Երուսաղեմայ մօտ Բեթանիա ըսուած գիւղը, ուր*

կը բնակէին Նորա քոյրերն Մարթա ու Մարիամ։ Այս այն Մարիամն էր, որ (անկէ վերջը 'ի ԺԲ. գլուխ Յովհաննու) Քրիստոսի ոտքերն իւղով օծեց և մազերովը սրբեց՝ այն հացկերութի ատեն, զոր իրենք 'ի պատիւ Յիսուսի պատրաստեցին։ Զայս կինը ճանչցունելու համար այս տեղ կը յիշէ Յովհաննէս։ Մարթա եւ Մարիամ մարդ ղրկեցին Յիսուսի, իրենց եղբօրն ծանր հիւանդութիւնն իմացունելու եւ Նորա օգնութիւնն հայցելու համար. Յիսուս՝ իւր ամենագիտութեամբը գիտէր Ղազարու հիւանդութիւնն, ինչպէս նաեւ մեր բոլոր ցաւերն, բայց կուզէ, որ մենք ամեն բանի մէջ դէպ 'ի առ Նա դիմենք իւր գթութիւնը խնդրելու համար։ Այսպէս իմացուցին Յիսուսի, թէ իւր սիրականը Ղազարոս ծանր հիւանդ է։

Երբ Յիսուս լսեց՝ ըսաւ, թէ այդ հիւանդութիւնը տեւական մահու պատճառ չէ, եւ թէ հաւատացեալք չըպիտի մահանան. այլ այդ մահը Աստուծոյ Հօր եւ միանգամայն իւր փառացը մէկ նոր ապացոյցը պիտի լինի. Քրիստոս այդ մահուամբը պիտի փառաւորի։ Յիսուս շատ կըսիրէր Մարթան ալ, մեծահաւատ Մարիամն ալ, Ղազարոսն ալ. Երբ այս վերջնոյն հիւանդութիւնն իմացաւ, — թէ եւ ինքը գիտէր, թէ արդէն մեռած է նա, — դիտմամբ իւր եղած տեղը երկու օր կեցաւ, որպէս զի մեռած լինելն ստուգիւ հաստատուի, եւ ոչ ոք երկմտի հիւանդին մահուան ճշմարտութեանը վրայ։ Ապա Նորէն Հրէաստան երթալու կամքը յայտնեց, որ ատեն աշակերտք յիշեցուցին, թէ աղեւ Նոր Հրէայք զքեզ քարկոծել կուզէին՝ դառնալ հոն կեր-

թաս դ՞, Յիսուս հետեւեալ խօսքով՝— թէ օրը տասներկու ժամ է, ցերեկը գնացողը չը գայթակղիր՝ ըստ որում լոյս կը տեսնէ, թէ գիշերը գնացողը լոյս չըլլալուն համար կը գայթակղի կամ կը մոլորի, — հասկցնել ուզեց աշակերտաց, թէ ինքն իր ընելիքը գիտէ, և թէ ամէն բան իւր ժամանակն ունի։

Զայս էբրև ասաց, յետ այնորիկ ասէ՝ ցնոսա. Ղազարոս բարեկամ մեր ննջեաց, այլ երթամ զի զարթուցից զնա։ Ասեն ցնա աշակերտքն. Տէ՛ր՝ եթէ ննջեաց՝ ապա ապրի։ Այլ Յիսուս վասն մահուան նորա ասէր. նոցա այսպէս թուեցաւ՝ թէ վասն ննջելոյ քնոյն՚ասէ։ Յայնժամ ասէ ցնոսա Յիսուս յայտնապէս. Ղազարոս մեռաւ. եւ ես ուրախ եմ վասն ձեր ,՝ զի դուք հաւատասջիք ինձ, զի ես չէի անդ. Բայց արդ, եկայք երթիցուք առ նա։ Ասէ Թովմաս՝ անուանեալն Երկուորեակ՝ ցաշակերտակիցսն. Ո՛հ, եկա՛յք և մեք՝ զի ընդ նմա մեռցուք։ Յովհ. ԺԱ. 11—16։

Զայս ըսելէն վերջը անոնց յայտնեց, թէ Ղազարոս մեր բարեկամը ննջեց. ուրեմն երթամ ես՝ որ զանի արթնցընեմ։ Այն ատեն աշակերտք զարմացմամբ ըսին. տէ՛ր, եթէ ննջեց, ուրեմն պիտի ապրի.— վասն զի հիւանդին քնանալը առողջանալու նշան է —. բայց Յիսուսի խօսքը՝ որ Ղազարու (բնական) մահուան համար էր, աշակերտք քուն հասկցան։ Այն ատեն յայտնապէս զրուցեց Յիսուս, թէ Ղազարոս մեռաւ, և ես ուրախ եմ՝ որ հոն չէի, որպէս զի ինձ հաւատաք. արդ եկէ՛ք հոն երթանք։ Քրիստոս ՚ի Բեթանիա չգտնուելով իսկ՝ գիտէր Ղազարու մահը։ Երկուորեակը կամ երբայեցերէն Թովմաս իր արիութիւնը և սէրը կը ցուցընէ՝ երկնաւոր

*վարդապետին հետ կամ՝ անոր տեղ մեռնիլ յանձն առնելով. վասն զի Յիսուսի յԵրուսաղէմ երթալը՝ Հրէայներէն սպանուիլ կը նշանակէր . զայս գիտէր Թովմաս ։*

## Բ. Գալուստ փրկչին 'ի Բեթանիա ։

Եկն Յիսուս՝ եգիտ զնա չորեքօրեայ 'ի գերեզմանի ։ Եւ էր Բեթանիա մերձ յԵրուսաղէմ · իբրեւ ասպարիսօք հնգետասան ։ Բազումք 'ի Հրէից անտի եկեալ էին առ Մարթա և Մարիամ , զի մխիթարեսցեն զնոսա վասն եղբօրն ։ Յովհ. ԺԱ. 17—19 ։

*Եկաւ Յիսուս եւ Ղազարոսը չորս օրուան մեռած եւ գերեզմանի մէջ դրուած գտաւ . Բեթանիա Երուսաղեմէն 15 ասպարէս միջոցաւ հեռու էր . ( մէկ ասպարէզը երկու մղոնէն քիչ մը աւելի էր ) ։ Հրէայներէն շատերն զՄարթա եւ զՄարիամ մխիթարել եկած էին՝ նոցա եղբօր մահուան վրայ ։*

Մարթա իբրեւ լուաւ՝ թէ Յիսուս գայ , ընդ առաջ ելանէր նորա , բայց Մարիամ նստէր անդէն 'ի տան ։ Ասէ Մարթա ցՅիսուս · Տէ՛ր՝ եթէ աստ լեալ էիր, եղբայրն իմ ոչ էր մեռեալ ։ Այլ և արդ գիտեմ, եթէ զոր ինչ խնդրեսցես յԱստուծոյ՝ տացէ քեզ Աստուած ։ Ասէ ցնա Յիսուս · յարիցէ եղբայրն քո ։ Ասէ ցնա Մարթա · գիտեմ զի յարիցէ 'ի յարութեան՝ յաւուրն յետնում ։ Ասէ ցնա Յիսուս · ես իսկ եմ յարութիւն և կեանք · որ հաւատայ յիս , թէպէտ և մեռանի՝ կեցցէ ։ Եւ ամենայն որ կենդանի է՝ և հաւատայ յիս , մի՛ մեռցի 'ի յաւիտեան · հաւատա՞ս այդմ ։ Ասէ ցնա · այո՛ Տէ՛ր՝ ես հաւատացի՝ եթէ դու ես Քրիստոսն որդի Աստուծոյ , որ յաշխարհ գալոց էիր ։ Յովհ. ԺԱ. 20-27 ։

Մարթա Յիսուսի գալը լսելուն պէս՝ միայնակ դիմաւորել գնաց ; քանզի Մարիամ տունը նըստած՝ չէր լսած Քրիստոսի գալը ։ Մարթա ըսաւ Յիսուսի . տէ՛ր՝ եթէ հոս գտնուած ըլլայիր՝ եղբայրս չէր մեռներ . բայց գիտեմ, որ ինչ որ խընդրես Աստուծմէ՝ կուտայ քեզ ։ Յիսուս ըսաւ . եղբայրդ յարութիւն պիտի առնու ։ Մարթա կը պատասխանէ . գիտեմ, որ վերջին օրը 'ի յարութեան հասարակաց պիտի կենդանանայ ։ Յիսուս յաւելցուց . ես իսկ եմ յարութիւն և կեանք, ինձ հաւատացողը՝ եթէ մարմնաւորապէս իսկ մեռնի, հոգևորապէս կ'ապրի ։ Զի Մարթա մի միայն մարմնոյ յարութեանը հոգ կը տանէր ։ « Ով որ ինձ հաւատայ կ'ըսէր Քրիստոս, չը պիտի մեռնի 'ի յաւիտեան, այլ պիտի ապրի . դու Մարթա՝ կը հաւատա՞ս ասոր ». Այն ատեն Մարթա պատասխանեց . ես ահա հաւատացի, որ Աստուծոյ Որդին Քրիստոսը՝ որ յաշխարհ պիտի գար, դու ես Այն »։

## Գ. Յարութիւն Ղազարու

[illegible]

դէպեալ՝ ո՞չ էր մեռեալ եղբայրն իմ։ Յիսուս իբրև ետե-
ս զնա զի լայր, և որ ընդ նմա եկին Հրէայքն լային, խռովե-
ցաւ յոգի իւր իբրև զայրացեալ, և ասէ. ո՞ւր եդիք զնա.
ասեն ցնա. Տէ՛ր, ե՛կ և տե՛ս։ Եւ արտասուեաց Յիսուս։
Ասէին Հրէայքն. տեսէ՛ք, որպէս սիրէր զնա։ Կէսքն 'ի նոցա-
նէ ասէին. ո՞չ կարէր սա, որ եբաց զաչս կուրին, առնե՛լ
զի և սա մի՛ մեռցի. Յովհ. ԺԱ. 28—37։

Ու այս խօսքերէն յետոյ գնաց եւ լռելեայն՝ Հրէաներէն գաղտուկ, (վասնզի գիտէր, որ կը նախանձէին նորա Յիսուսի վրայ) իւր Մարիամ քոյրը կանչեց ու ըսաւ, թէ վարդապետը եկեր քեզ կուզէ։ Մարիամ լսելուն պէս Յիսուսի քով վազեց։ Դեռ Յիսուս գիւղը չէր մտած, այլ Մարթայի զինքը դիմաւորած տեղն էր։ Մխիթարելու համար տունն եկող Հրէայք, երբ Մարիամի յանկարծ ելնելն ու երթալը տեսան, ըստ որում Մարթայի խօսքը չէին լսած, կարծեցին թէ եղբօրը վրայ լալու համար գերեզման կ՚երթայ. Երբ Մարիամ Յիսուսի կեցած տեղն եկաւ, նորա ոտքն ինկաւ ու ըսաւ. Տէ՛ր, եթէ հոս պատահած ըլլայիր, եղբայրս չէր մեռներ։

Մարիամու եւ նորա հետ եկող Հրէից արտասուքը երբ նշմարեց Յիսուս, անոնց հեկեկանքէն եւ ողբերէն խռովեցաւ, զայրացաւ հոգւով, եւ մեռելոյն թաղուած տեղն հարցուց, զոր երբ ցուցին, Յիսուս մարդկաբար լացաւ իւր բարեկամին վրայ։

Ո՛վ աստուածային արտասուք կարեկցութեան, եթէ բարեկամիդ մարմնաւոր մահուան պատճառաւ թափեցան աչքերէդ, Յիսո՛ւս, արդեօք ո՛րչափ գութ եւ մեծ կարեկցութիւն ունիս մեր հոգեւոր մահուան վրայ, յորմէ զմեզ կենդանա-

ցունելու համար, ոչ միայն արտօսր, այլ եւ ա-
րիւնոտ թափեցիր....

Եւ ահա այն ատեն Հրէից մէջ զանազան խօս-
քեր կըլսուէին: Ոմանք կ'ըսէին, տեսէ՛ք, թէ
որչափ կըսիրէր զՂազար. ոմանք ալ կըսէին. կու-
րին աչքը բացողը չէ՞ր կրնար այնպիսի բան մը
ընել, որ այս մարդը չըմեռնէր:

Յիսուս դարձեալ զայրացեալ ընդ միտս իւր, գայ 'ի գե-
րեզմանն. և էր այր մի, և վէմ մի եդեալ 'ի վերայ նորա:
Եւ ասէ Յիսուս. 'ի բա՛ց արարէք զվէմդ. ասէ ցնա Մար-
թա՝ քոյր մեռելոյն. Տէ՛ր արդ հոտեալ իցէ, քանզի չոր-
եքօրեայ է: Ասէ ցնա Յիսուս, ո՞չ ասացի քեզ՝ եթէ հաւա-
տասցես, տեսցես զփառսն Աստուծոյ: Յովհ. ԺԱ. 38–40:

Այս մեղադրութեանց վրայ Յիսուս դար-
ձեալ մտօք զայրանալով գերեզման եկաւ, որ
քարայր մ'էր, և քարայրին բերանն ալ մեծ քար
մը դրուած էր: Յիսուս հրամայեց՝ որ քարը
մէկդի առնուն. բայց Մարթա՝ որ կ'երևէր թէ
Մարիամի չափ մեծ հաւատք չունէր, Տէ՛ր,
ըսաւ. ա՛լ հիմայ հոտած ըլլալու է, վասն զի
չորս օրուան է: Յիսուս առաջին խօսքը կրկնե-
լով պատասխանեց. ես քեզի չըսի՞, որ եթէ
հաւատաս՝ Աստուծոյ փառքը պիտի տեսնես:

Եւ իբրև 'ի վեր առին զվէմն, Յիսուս ամբարձ զաչս
իւր 'ի վեր, և ասէ. Հա՛յր գոհանամ զքէն, զի լուար ինձ:
Եւ ես գիտէի զի յամենայն ժամ լսես ինձ. այլ վասն ժողո-
վրդեանս որ շուրջ կան՝ ասեմ, զի հաւատասցեն՝ թէ դու
առաքեցեր զիս: Զայս իբրև ասաց, 'ի ձայն մեծ աղաղա-
կեաց և ասէ. Ղա՛զարէ՝ արի՛ ե՛կ արտաքս: Եւ ել մեռեալն
ոտիւք կապելովք, և ձեռօքն երիզապնդովք ընդ երեսօքն վար-

տեղեաւ՝ ո՛չ էր մեռեալ եղբայրն իմ։ Յիսուս իբրեւ եւտես զնա զի լայր, եւ որ ընդ նմա եկին Հրէայքն լային, խռովեցաւ յոգի իւր իբրեւ զայրացեալ, եւ ասէ. ո՞ւր եդէք զնա. ասեն ցնա. Տէ՛ր, ե՛կ եւ տե՛ս։ Եւ արտասուեաց Յիսուս։ Ասէին Հրէայքն. տեսէ՛ք, որպէս սիրէր զնա։ Կէսքն ՚ի նոցանէ ասէին. ո՞չ կարէր սա, որ եբաց զաչս կուրին, առնել՝ զի եւ սա մի՛ մեռցի. Յովհ. ԺԱ. 28—37։

*Եւ այս խօսքերէն յետոյ գնաց եւ լռելեայն՝ Հրէայներէն գաղտուկ, (վասնզի գիտէր, որ կը նախանձէին նորա Յիսուսի վրայ) իւր Մարիամ քոյրը կանչեց ու ըսաւ, թէ վարդապետը եկեր քեզ կուզէ։ Մարիամ լսելուն պէս Յիսուսի քով վազեց։ Դեռ Յիսուս գիւղը չէր մտած, այլ Մարթայի գիմաւորած տեղն էր։ Մխիթարելու համար տուն եկող Հրէայք, երբ Մարիամի յանկարծ ելնելն ու երթալը տեսան, բայց որում Մարթայի խօսքը չէին լսած, կարծեցին թէ եղբօրը վրայ լալու համար գերեզման կ'երթայ։ Երբ Մարիամ Յիսուսի կեցած տեղն եկաւ, նորա ոտքն ինկաւ ու ըսաւ. Տէ՛ր, եթէ հոս պատահած ըլլայիր, եղբայրս չէր մեռներ։*

*Մարիամու եւ նորա հետ եկող Հրէից արտասուքը երբ նշմարեց Յիսուս, անոնց հեծեծանքէն եւ ողբերէն խռովեցաւ, զայրացաւ հոգւով, եւ մեռելոյն թաղուած տեղն հարցուց, զոր երբ ցուցցին, Յիսուս մարդկաբար լացաւ իւր բարեկամին վրայ։*

*Ո՛վ աստուածային արտասուք կարեկցութեան, եթէ բարեկամիդ մարմնաւոր մահուան պատճառաւ թափեցան աչքերէդ, Յիսո՛ւս, արդեօք ո՛րչափ գութ եւ մեծ կարեկցութիւն ունիս մեր հոգեւոր մահուան վրայ, յորմէ զմեզ կենդանա-*

ցուցնելու համար , ոչ միայն արտօսր , այլ և արիւնդ թափեցիր . . . ։

Եւ ահա այն ատեն Հրէից մէջ զանազան խօսքեր կըլսուէին ։ Ոմանք կ՚ըսէին , տեսէ՛ք , թէ որչափ կըսիրէր զՂազար . ոմանք ալ կըսէին . կուրին աչքը բացողը չէ՞ր կրնար այնպիսի բան մը ընել , որ այս մարդը չըմեռնէր ։

Յիսուս դարձեալ զայրացեալ ընդ միտս իւր , գայ ՚ի գերեզմանն . և էր այր մի , և վէմ մի եդեալ ՚ի վերայ նորա ։ Եւ ասէ Յիսուս . ՚ի բա՛ց արարէք զվէմդ . ասէ ցնա Մարթա՝ քոյր մեռելոյն . Տէ՛ր արդ հոտեալ իցէ , զի չորեքօրեայ է ։ Ասէ ցնա Յիսուս , ո՞չ ասացի քեզ՝ եթէ հաւատասցես , տեսցես զփառսն Աստուծոյ ։ Յովհ. ԺԱ. 38–40 ։

Այս մեղադրութեանց վրայ Յիսուս դարձեալ մտօք զայրանալով գերեզման եկաւ , որ քարայր մ՚էր , և քարայրին բերանն ալ մեծ քար մը դրուած էր ։ Յիսուս հրամայեց՝ որ քարը մէկդի առնուն . բայց Մարթա՝ որ կ՚երևէր թէ Մարիամի չափ մեծ հաւատք չունէր , Տէ՛ր , ըսաւ , ա՛լ հիմայ հոտած ըլլալու է , վասն զի չորս օրուան է ։ Յիսուս առաջին խօսքը կրկնելով պատասխանեց . Ես քեզի չըսի՞ , որ եթէ հաւատաս՝ Աստուծոյ փառքը պիտի տեսնես ։

Եւ բարձին ՚ի վեր աստի զվէմն , Յիսուս ամբարձ զաչս իւր ՚ի վեր , և ասէ . Հա՛յր՝ գոհանամ զքէն , զի լուար ինձ ։ Եւ ես գիտէի զի յամենայն ժամ լսես ինձ . այլ վասն ժողովրդեանս որ շուրջ կան՝ ասեմ , զի հաւատասցեն՝ թէ դու առաքեցեր զիս ։ Զայս իբրև ասաց , ՚ի ձայն մեծ աղաղակեաց և ասէ . Ղա՛զարէ՝ արի՛ ե՛կ արտաքս ։ Եւ ել մեռեալն ոտիւք կապելովք , և ձեռօքն երիզապատօք ըն երեսօքն վար-

շամակապատօք: Եւ ասէ ցնոսա Յիսուս. լուծէ՛ք զդա՝ եւ թողէ՛ք երթալ: Բազումք ՚ի Հրէիցն՝ որ եկեալ էին առ Մարիամ, իբրեւ տեսին զոր արարն՝ հաւատացին ՚ի նա: Յովհ. ԺԱ. 41—45:

Երբ քարը վերցուցին, Յիսուս աչքը վեր վերցուց, և Թերևս ձայնը բարձրացնելով ըսաւ, ո՜վ Հայր, գոհանամ քենէ, ըստ որում՝ լսեցիր ինձ: Ես գիտէի, որ ամէն ատեն ինձ կը լսես, սակայն զիս շրջապատող ժողովրդեան համար կ՚ընեմ այս բանը, որպէս զի հաւատան, թէ դու զիս ղրկեցիր»: Զայս ըսելէն վերջը մեծ ձայնով աղաղակեց. «Ղազարէ՛» ե՛լ դուրս ե՛կ»: Եւ ահա մեռեալը կապած ոտքերով, երեսզգալինդ-ձեռքերով և վարշամակապատ երեսներով փաթաթուած՝ դուրս ելաւ. — Երկու հրաշք ՚ի մի նուագ, այսինքն, մեռելին կենդանութիւնը և ձեռքին ու ոտքը կապած գերեզմանէն դուրս ելնելը —:

Երանի՜ էր մեզ, եթէ և մեք մեր մեռելատիպ թմբրութեան խորութենէն, մեր մեղօք մեռելութեան անդնդէն քո կենդանարար ձայնըդ լսէինք՝ Յիսո՛ւս, և հնազանդելով աստուածային ձայնիդ՝ մեր մեղաց զմեզ յօդող կապերէն արձակուէինք՝ ՚ի կեանս ՚ի լոյս կենդանանալով:

Այն ատեն Յիսուս ըսաւ անոնց, քակեցէ՛ք կապերը, և թողէ՛ք՝ որ համարձակ քալէ ու երթայ: Մարեմանց քով եկող Հրէից շատերն այս հրաշքը տեսնելնուն պէս՝ հաւատացին Քրիստոսի:

## Դ. Խորհուրդ Հրէից զՅիսուսէ, վճիռ Կայիափայ, եւ երթ Յիսուսի յԵփրայիմ

Է

Եւ ոմանք 'ի նոցանէ գնացին առ փարիսեցիսն, պատմեցին նոցա՝ զոր արարն Յիսուս: Ժողովեցին քահանայապետքն եւ փարիսեցիքն ատեան, եւ ասեն. զի՞նչ արասցուք, զի այրս այս բազում նշանս առնէ: Եթէ թողումք զդա այսպէս, ամենեքին հաւատան 'ի դա, եւ գայցեն Հռոմայեցիք եւ բառնայցեն զտեղի մեր եւ զազգս: Մի ոմն 'ի նոցանէ անուն Կայիափա, որ քահանայապետ էր տարւոյն այնորիկ, ասէ ցնոսա. դուք ոչ ինչ գիտէք, եւ ոչ խորհիք իսկ, թէ լաւ է մեզ՝ զի այր մի մեռանիցի 'ի վերայ ժողովրդեանս, եւ մի՛ ամենայն ազգս կորիցէ: Զայս ո՛չ յանձնէ իւր ասաց. այլ զի քահանայապետ էր տարւոյն այնորիկ, մարգարէացաւ՝ եթէ մեռանելոց էր Յիսուս 'ի վերայ ազգին: Եւ ո՛չ 'ի վերայ ազգին միայն, այլ զի և զորդիսն Աստուծոյ ցրուեալսն ժողովեսցէ 'ի մի: Ապա յայնմ օրէ խորհուրդ արարին՝ զի սպանցեն զնա: Եւ Յիսուս այնուհետեւ ո՛չ եւս համարձակ շրջէր 'ի մէջ Հրէիցն. այլ գնաց անտի յերկիր մի՝ որ մերձ էր յանապատ, 'ի քաղաք մի՝ որում անուն էր Եփրայիմ. և անդ լինէր աշակերտօքն հանդերձ: Յովհ. ԺԱ. 46-54:

*Իսկ անոնց մէջէն չարամիտք ոմանք՝ փարիսեցւոց քով գնացին. եւ Յիսուսի ըրածը պատմեցին անոնց: Քահանայապետք եւ փարիսեցիք ժողով գումարեցին — Սանհետրիմ ըսուած ժողովին համար կ'ըսէ, որ քահանայապետին նախագահութեանը տակ եօթանասուն անձերէ կը բաղկանար 'ի քահանայից, 'ի փարիսեցւոց եւ 'ի սադուկեցւոց ևլն. — ու ըսին. ի՞նչ ընենք, այս մարդը շատ հրաշքներ կը գործէ. (այս է եղեր Յիսուսի յանցանքը). եթէ թողունք այսպէս՝ ա-*

մէնքն ալ անոր պիտի հաւատան . այն ատեն Հռովմայեցիք կուգան , մեր ազգը , մեր քաղաքը , մեր տաճարը կը կործանեն ։

Շատ մարդիկ երբեմն քաղաքականութիւնը գործիք կ'ընեն իրենց չար կամքը յառաջ տանելու համար . ասոնք ալ ժողովուրդը Քրիստոսի դէմ գրգռելու համար՝ Հռովմայեցւոց կողմէն վախ կը ցուցնէին ։ Բայց աւանիկ՝ յետ մատնելոյ Յիսուսի 'ի մահ՝ Հռովմայեցիք եկան , և կործանեցին ամէն բան . որով չարամիտ մարդոց քաղաքագիտութիւնը 'ի դերև ելաւ . Յիսուսի հաւատալը՝ Հռովմայեցւոց հետ վերաբերութիւն չունէր ։

Քահանայապետներէն մին՝ որ նոյն տարւոյն քահանայապետն էր , ժողովոյն մէջ ըսաւ . դուք բան չը գիտէք , խորհիլ ալ չունիք , աւելի լաւ է՝ որ ժողովրդեան համար մարդ մը մեռնի , քան թէ ամբողջ ազգը կորսուի ։ Ըստ աստուածային տնօրինութեան՝ թէև ինքը չար մտօք , բայց ոչ յանձնէ , այլ մարգարէաբար ըսաւ , որ մարդկային ազգին փրկութեանը համար պէտք էր որ Քրիստոս մեռնէր . եւ որովհետեւ ինքը քահանայապետ էր նոյն տարւոյն , վասն որոյ եւ Աստուած այս մարգարէութիւնը անոր ընել կուտար ։ Քրիստոս ոչ միայն 'ի փրկութիւն Հրէից , այլ Աստուծոյ ժողովրդեան կամ ցրուեալ որդւոց՝ 'ի մի ծոց կամ 'ի մի փարախ եկեղեցւոյ ժողովման եւ փրկութեան համար պիտի մեռանէր ։ Ահա այն օրէն ա՛լ մտքերնին դրին , որ սպաննեն զանի . եւ այս բանին համար խորհուրդ ըրին ։ Ա՛լ այնուհետեւ Յիսուս համարձակ չէր շրջեր Հրէից մէջ . անցաւ գնաց անապատին մօտ Եփրայիմ

ըսուած քաղաքը․ — Եփրեմի ցեղին մէկ քաղաքը․ Երէքովէն ոչ շատ հեռու — հոն կըկենար աշա-կերտաց հետ ։

# ԳԼՈՒԽ ԼԲ.

ՆԵՐԵԼ ԱՆԻՐԱՒՈՒԹԵԱՆՑ ԵՒ ԶՕՐՈՒԹԻՒՆ ՀԱՒԱՏՈՑ. — ՕՐԻՆԱԿ ԽԱՌԱՑԻՆ ՀՈՂԱԳՈՐԾԻ. — ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ՏԱՍՆ ԲՈՐՈՏԱՑ. — ԳՈՒՇԱԿԷ ՔՐԻՍՏՈՍ ԶԵՐԿՐՈՐԴ ԳԱԼՈՒՍՏՆ ԻՒՐ. — ԱՌԱԿ ԱՆԻՐԱՒ ԴԱՏԱՒՈՐԻՆ. — ԱՌԱԿ ՓԱՐԻՍԵՑՒՈՅՆ ԵՒ ՄԱՔՍԱՒՈՐԻՆ. — ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՄԱՆԿՏԻՈՅՆ. — ԴԺՈՒԱՐՈՒԹԻՒՆ ՄՏԱՆԵԼՈՅ ՅԵՐԿԻՆՍ. — ՎԱՐՁ ՀԵՏԵՒՈՂԱՑ ՓՐԿՉԻՆ. — ԱՌԱԿ ՄՇԱԿԱՑ ԱՅԳՒՈՅՆ

## Ա. Ներել անիրաւութեանց եւ զօրութիւն հաւատոց ։

Ասաց և առ աշակերտսն իւր . Ո՛չ է մարթ չգալ գայթակղութեանց . բայց վա՛յ այնմիկ է՝ յորոյ ձեռն գայցէ ։ Լաւ էր նմա՝ թէ վէմ երկանաքար կախէր զպարանոցէ նորա՝ և ընկենոյր ՚ի ծով, քան թէ գայթակղեցուցանէ զմի ոք ՚ի փոքրկանցս յայսցանէ ։ Զգո՛յշ կացէք անձանց . եթէ մեղիցէ եղբայր քո, սաստեա՛ նմա . և եթէ ապաշխարեսցէ, թող նմա ։ Եւ եթէ եօթն անգամ մեղիցէ քեզ, և եօթն անգամ դարձցի ՚ի քեզ և ասիցէ, ապաշխարեմ, թողցես նմա ։ Եւ ասեն առաքեալքն ցՏէր . յաւե՛լ մեզ հաւատս ։ Եւ ասէ Տէր . եթէ ունիցէք հաւատս քան զհատ մանանխոյ, և ասիցէք թթենւոյդ այդմիկ, խլեա՛ց և տնկեա՛ց ՚ի ծովդ, և հնազանդեսցի ձեզ ։ Ղուկ. ԺԷ. 1—6 ։

*Այսոց բացատրութիւնը գրքիս նախորդ գլը-*

խոց մէջ նշանակուած է։ Քրիստոս հաւատքի զօրութիւնը ցցնելու համար երբեմն լեռան, հիմայ ալ թթենեաց տեղափոխութեան կարելիութիւնը կամ հրաշից ճշմարտութիւնը կըքարոզէ։

## Բ. Օրինակ ծառային հողագործի

Իսկ ո՞վ ոք ՚ի ձէնջ, որ ունիցի ծառայ՝ հողագործ կամ հովիւ, որ եկելոյ նորա ՚ի վայրաց անտի՝ ասիցէ ցնա վաղվաղակի. Եկ անց, բազմեա՛ց։ Այլ ո՛չ ասիցէ ցնա. Եկ պատրաստեա՛ զինչ ընթրելոց իցեմ, եւ գօտի ածեալ պաշտեա՛ զիս՝ մինչեւ կերայց եւ արբից, եւ ապա կերիցես եւ արբիցես դու: Միթէ շնո՞րհս ինչ ունիցի ծառային այնմիկ, զի արար զամենայն հրամանս. Նոյնպէս եւ դուք՝ յորժամ առնիցէք զամենայն հրամայեալսն ձեզ, ասասջի՛ք թէ ծառայք անպիտանք եմք, զոր պարտէաքն առնել, արարաք. Ղուկ. ժէ. 7—10.

Այս առակս իմացունել կուզէ Քրիստոս, թէ իւրաքանչիւր ոք իւր անհրաժեշտ պարտաւորութիւններն կատարելու է, առանց զանոնք կատարած ըլլալուն վրայ հպարտանալու, եւ առանց սպասելու, որ այդու նկատմամբ երախտագէտ լինին իրեն. այլ ո՛վ որ իւր պարտքը կը կատարէ կը լրացունէ, ըսելու է. պարտքս ըրի եւ ոչ աւելի ինչ։

## Գ. Բժշկութիւն տասն բորոտաց

Եւ եղեւ մինչ երթայր նա յԵրուսաղէմ, եւ ինքն անցանէր ընդ մէջ Սամարիայ եւ Գալիլեացւոց։ Եւ մինչ երթեալ մտանէր ՚ի գեօղ ոմն, պատահեցին նմա տասն այր բորոտ՝ որք կային ՚ի հեռաստանէ։ Բարձին զձայն՝ եւ ասեն. Յի-

սո՛ւս վարդապետ, ողորմեա՛ց մեզ։ Եւ իբրեւ ետես զնոսա, ասէ ցնոսա. Երթա՛յք ցուցէ՛ք զանձինս քահանայիցն. եւ եղեւ իբրեւ երթային, սրբեցան։ Մի ոմն 'ի նոցանէ իբրեւ ետես՝ եթէ բժշկեցաւ, դարձաւ անդրէն՝ 'ի ձայն մեծ փառաւոր առնէր զԱստուած։ Անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց առ ոտս նորա, եւ գոհանայր զնմանէ. եւ ինքն էր Սամարացի։ Պատասխանի ետ Յիսուս եւ ասէ. Ո՞չ տասն սուրբ սրբեցան, իսկ ուր՝ իննանքն ո՞ւր են։ Չի ո՛չ գտան դառնալ տալ փառս Աստուծոյ, բայց միայն այլազգիս այս։ Եւ ասէ ցնա. Արի՛ գնա՛. զի հաւատք քո կեցուցին զքեզ։
Ղուկ. ԺԷ. 11—19։

*Երբոր դէպ յԵրուսաղէմ կ'երթար, և Սամարեայ ու Գալիլեացւոց երկրին մէջ տեղէն անցնելով գիւղ մը կը մտնէր, — անտարակոյս բորոտներու յատկացեալ բնակարանի մը քովէն կամ մօտէն անցած ատեն՝ — տասն հատ բորոտ հեռուն կեցան ու աղաղակեցին. Յիսո՛ւս վարդապետ, ողորմէ՛ մեզի. վասն զի օրէնք էր, որ բորոտներն մարդու չէին մերձենար։ Յիսուս զանոնք տեսնելուն պէս՝ ըսաւ. գնացէ՛ք ինքզինքնիդ քահանային ցոյց տուէ՛ք ըստ օրինաց։ Ասոնք ճամբան սրբուեցան 'ի բորոտութենէ. որոց ինը Հրէայ էին և տասներորդն Սամարացի։ Այս վերջինը միայն իւր երախտագիտութիւնը յայտնելու համար 'ի մեծ ձայն զԱստուած փառաւորելով Յիսուսի ոտքերն ինկաւ երեսի վըրայ, և իւր շնորհակալութիւնը կը ցուցընէր։ Հարցուց Յիսուս. սրբուողներն տասը հոգի չէի՞ն. արդ ո՞ւր է մնացեալ ինը հոգին. (զի ո՛չ ոք գտաւ 'ի նոցանէ). անոնցմէ բնաւ մէկը փառք չը տուաւ Աստուծոյ՝ բաց 'ի այս այլազգիէն. վասն զի ինն ալ հաւատք չունէին, այլ*

սա՛ միայն հաւատաց. անուրենն՝ ըսաւ Յիսուս, ե՛լ գնա, քու հաւատքդ քեզ փրկեց»:

Իբրև հարցաւ 'ի փարիսեցւոցն՝ թէ ե՞րբ գայցէ արքայութիւն Աստուծոյ, պատասխանի ետ նոցա և ասէ. ո՛չ գայ արքայութիւն Աստուծոյ խտրանօք: Եւ ոչ ասիցեն, թէ ահաւասիկ աստ է՝ կամ անդ. զի ահա արքայութիւն Աստուծոյ 'ի ներքս 'ի ձեզ է: Ղուկ. ԺԷ. 20—21:

Փարիսեցիք՝ որոց մտածածը երկրաւոր թագաւորական փառօք ճոխացեալ Մեսիայն էր, երբ Յիսուսի հարցուցին, թէ ե՞րբ պիտի գայ Աստուծոյ թագաւորութիւնը, պատասխանեց. «Աստուծոյ արքայութիւնը չգար խտրանօք, այսինքն, ախտարհմայութեամբ կամ աստղերը հարցնելով, քաղդէութեամբ. հապա 'ի ներքս 'ի ձեզ է արքայութիւնն Աստուծոյ. այսինքն, կամ Մեսիայն 'ի ձեզ, 'ի միջի ձերում է, կամ 'ի ներքս սրտից ձերոց, 'ի խիղճս մտաց ձերոց հաւատալի է, թէ ես եմ Մեսիայն և ինև արքայութիւնն Աստուծոյ. և կամ երբ դուք չարութիւնը մէկդի թողլով ինծի հաւատայք, յաւիտենական արքայութեան ճաշակն այժմէն ձեր սրտին մէջ կ'ունենաք, արքայութիւնն այս տեղ ձեր սրտովն կրնաք գտնալ ու ճանչել»:

Դ. Գուշակէ Քրիստոս զերկրորդ գալուստն իւր

Ասաց և առ աշակերտսն. եկեսցեն աւուրք ցանկանալոյ ձեզ մի յաւուրցն որդւոյ մարդոյ տեսանել, և ո՛չ տեսանիցէք: Եւ եթէ ասիցեն ձեզ՝ եթէ ահաւասիկ է՝ կամ անդ, մի՛ երթայցէք ընդ: Զի որպէս փայլակն փայլատակեալ 'ի ներքոյ երկնից՝ ընդ երկնիւք ծագիցէ, նոյնպէս և որդի մարդոյ

յաւուրն իւրում։ Բայց նախ պարտ է նմա բազում չարչա-րել՝ և խոտան լինել յազգէս յայսմանէ։ Ղուկ. ԺԷ. 22—25։

*Ըսաւ իւր աշակերտներուն. «Պիտի գան այնպիսի օրեր, յորս պիտի փափագիք, թէ Մարդոյ Որդւոյն օրերուս մէջ լինէիք, կամ՝ գէթ տասնեմէ մին տեսնէիք. սակայն ձեր այդ իղձն չը պիտի կա-տարուի։ Եթէ ըսեն ձեզ, թէ ահա եկած է, հոս է կամ հոն՝ չըլլայ որ խաբուիք. վասն զի ես յերկնից ծագած փայլակին պէս յանկարծ և արագ պիտի երևիմ նախ՝ երբ 'ի մեռելոց յառնեմ; և երկրորդ՝ երբ դատաստան դատելու գամ։ Սակայն զատ այդ բաներէն չեղած՝ Հրէից ազգէն շատ չարչարանք և անարգանք պիտի կրեմ։*

Եւ որպէս եղեւ յաւուրսն Նոյի, նոյնպէս եղիցի եւ յաւուրս Որդւոյ մարդոյ։ Ուտէին, ըմպէին, կանայս առնէին եւ արանց լինէին մինչեւ ցօրն՝ յորում եմուտ Նոյ 'ի տապանն, եւ եկն ջրհեղեղ եւ կորոյս զամենեսեան։ Նոյնպէս եւ որպէս յաւուրսն Ղովտայ եղեւ, ուտէին, ըմպէին, գնէին, վաճառէին, տնկէին, շինէին, եւ յորում աւուր ել Ղովտ 'ի Սոդոմայ՝ տեղաց հուր եւ ծծումբ յերկնից եւ կորոյս զամենեսեան. ըստ նմին օրինակի եղիցի եւ յաւուրն՝ յորում Որդի մարդոյ յայտնելոց է։ Ղուկ. ԺԷ. 26–30։ Մատթ. ԻԴ. 37–39։

*Ինչպէս որ Նոյի օրերուն պատահեցաւ, երբ Որդիք Աստուծոյ խառնակելով մարդկան որդւոց հետ՝ անառակեցան և ամբարշտեցան ընդդէմ Աստուծոյ. ինքզինքնին յանձնեցին կերուխումի և այլ մարմնոյ հաճոյից. նոյնպէս Ղովտայ օրերը, երբ Սոդոմ և Գոմոր իրենց մեղքերն յայն աստիճան ծանրացուցին, որ ուրանալով զԱստուած՝ կռապաշտեցան այլ և այլ մարմնոյ յան-*

կութեանք, որովք առաջինին մէջ ջրհեղեղաւ բաց ՚ի Նոյէն և Նորա Աստուածապաշտ ընտանիքէն, երկրորդին մէջ յերկնից հրով և ծծմբով բաց ՚ի Ղովտէն և Նորա աղջիկներէն, կորսուեցան ամէնքն ալ, նոյնպէս պիտի լինի և գալուստ Որդւոյ Մարդոյ յաւուրն՝ յորում մեծաւ փառօք պիտի յայտնուի"։

Յայնմ աւուր որ կայցէ ՚ի տանիս՝ և կարասի իւր ՚ի տան, մի՛ իջցէ առնուլ զայն. և որ յանդի իցէ, նոյնպէս մի՛ դարձցի յետս։ Յիշեցէք զկնոջն Ղովտայ. . . . . ։ Ասեմ ձեզ. յայնմ գիշերի՝ եթէ լինիցին երկոքա ՚ի մի մահիճս, մին առցի՝ և միւսն թողցի։ Եւ եթէ լինիցին երկոքա աղալ ՚ի միասին, մին առցի՝ և միւսն թողցի. և եթէ իցեն երկոքա յանդի, մին առցի՝ և միւսն թողցի։ Պատասխանի ետուն և ասեն ցնա. յո՞ Տէր։ Եւ նա ասէ ցնոսա. ուր մարմինն է, անդր և արծուիք ժողովեսցին։ Ղուկ. ԺԷ. 31—37։ Մտթ. ԻԴ. 16—41։

Այնպիսի յանկարծական պիտի լինի Քրիստոսի երկրորդ գալուստը, որ տանիքն եղողը չը պիտի հասնի տունէն կարասին անգամ վերցնել. արտը գտնուողն ալ իւր եղած տեղը պիտի մնայ։ Յիշեցէ՛ք Ղովտայ կինը՝ որ աղի արձան դարձաւ ՚ի լերին անդ յանդիման Սոդոմայ։

Գիշեր կ՚անուանէ Քրիստոս այն միջոցը՝ յորում տիւը պիտի լրանայ, և յաւիտենական գիշերը պիտի սկսի. յորում եթէ մէկ մահճի մէջ երկու հոգի գտնուին՝ մին ընդ առաջ պիտի վերանայ Քրիստոսի, և միւսը պիտի թողուի յաղէտս չարեաց՝ մինչև ՚ի չարագոյնն մատնուելով. նոյնպէս եթէ երկու հոգի մէկտեղ աղան կամ արտավարեն։ Յո՞ տէր, (ըստ Իգնատիոսի

մեկնիչին՝ գիտե՞րդ) ի՞նչպէս հարցուցին զարհուրե-
լով, որուն պատասխանեց Քրիստոս. ինչպէս ար-
ծիւներին հոտ առնելով ամենայն ուժգին արա-
գութեամբ յանկարծ մեռած մարմնոց վրայ կը
թափին ՚ի գիշատել, այսպէս վրէժխնդրութեան
օրը ուժգին, արագ և յանկարծական պիտի ըլլայ
մարդոց ժողովումն ՚ի դատաստան։

## Ե. Առակ անիրաւ դատաւորին

Ասաց և առակ մի նոցա՝ առ այն, թէ պարտ է յամենայն ժամ կալ նոցա յաղօթս և մի՛ ձանձրանալ. Ասէ. դատաւոր մի էր ՚ի քաղաքի ուրեմն, յԱստուծոյ ո՛չ երկնչէր՝ և ՚ի մարդկանէ ո՛չ ամաչէր։ Եւ այրի մի էր ՚ի նմին քաղաքի, գայր առ նա և ասէր. դա՛տ արա ինձ յոսոխէ իմմէ. Եւ ո՛չ կամէր ՚ի բազում ժամանակս, յետ այնորիկ ասէ ՚ի միտս իւրում, Եթէ և յԱստուծոյ ո՛չ երկնչիմ, և ՚ի մարդկանէ ո՛չ ամաչեմ, բայց վասն աշխատ առնելոյ զիս այրւոյն՝ արարից նմա դատ, զի մի՛ յաւէտ եկեալ ճանճրացուսցէ զիս։ Եւ ասէ Տէր. լուարո՛ւք զինչ դատաւորն անիրաւութեան ասէր։ Իսկ Աստուած ո՛չ առնիցէ վրէժխնդրութիւն ընտրելոց իւրոց, որ աղաղակեն առ նա ՚ի տուէ և ՚ի գիշերի. և երկայնամիտ լինիցի առ նոսա։ Ասեմ ձեզ. զի արասցէ վրէժխնդրութիւն նոցա վաղվաղակի. Բայց որդի մարդոյ եկեալ գտանիցէ՞ արդեօք հաւատս յերկրի. Ղուկ. ԺԸ. 1—8.

Թէ ամեն ատեն առ Աստուած աղօթելէն ձանձրանալու չէ՝ առակ մի պատմեց անոնց, որ հաւանական է՝ թէ սոյն իրողութեան մի պատմութիւն ըլլի. Ըսաւ. քաղաքի մը դատաւորը՝ ո՛չ Աստուծմէ վախ ունէր և ոչ մարդոցմէ ամօթ։ Նոյն քաղքին մէջ ղրկեալ այրի մ՚ալ կար, որ

յառաջ երթեւեկութեանը կը թախանձէր զա-
նի, որ իւր բռնաբարեալ իրաւունքը պաշտպա-
նէ։ Երկար ատեն նոյն դատաւորը հոգ չըրաւ.
բայց վերջապէս նորա թախանձանքէն ստիպեալ՝
ըսաւ. այս կինը զիս կը ձանձրացնէ. դէթ տորա
տուած նեղութիւններէն ազատելու համար ատե-
նեմ դատը, պաշտպանեմ իրաւունքը։ Եւ ան-
շուշտ ըսածին պէս ալ կատարեց։ Եթէ անիրաւ
դատաւորն կը պարտաւորի վերջապէս աղաչա-
նաց ունկն դնել և ճշմարտութիւնը բռնաբարու-
թենէ ազատել, հապա Աստուած ականջ կը
գոցէ՞ իւր հաւատարիմ ծառայից աղերսանացն,
կը համբերէ խօսքս՝ որ անիրաւներ թշուա-
ռելոցն իրաւունքը ոտնակոխ ընեն։ Ահա ուխտ
կը դնեմ ձեզ, թէ ճշմարտիւ պիտի լսէ նոցա
աղօթից, պիտի կարեկցի թշուառին արտասուա-
ցը. և զրկողին վրէժխնդիր պիտի ըլլայ։ Սակայն
Որդին մարդոյ 'ի միւսանգամ գալստեանն երկ-
րի վրայ պիտի գտնէ՞ արդեօք հաստատ սիրով
և գործովք յաջողեալս։

## Զ. Առակ մաքսաւորին եւ փարիսեցւոյն

Ասաց և առ ոմանս զանձացեալս յանձինս, թէ ար-
դարք իցեն՝ և խոտէին զբազումս, զառակս զայս։ Արք
երկու ելին 'ի տաճարն կալ յաղօթս, մին փարիսեցի՝ և միւ-
սն մաքսաւոր։ Փարիսեցին կայր միայնակ, և զայս առան-
ձինն աղօթս մատուցանէր. Աստուա՛ծ իմ, գոհանամ զքէն,
զի ո՛չ եմ իբրև զայլս 'ի մարդկանէ, յափշտակօղս՝ և զա-
նիրաւս՝ և զշնացօղս, կամ իբրև զայս մաքսաւոր։ Այլ պա-
հեմ երկիցս 'ի շաբաթու, և տամ տասանորդս յամենայն ստա-
ցուածոց իմոց։ Եւ մաքսաւորն կայր միայնակ, և ո՛չ

կամէր և ո՛չ զաչսն ընդ երկինս ամբառնալ. այլ կոծէր զկուրծս իւր՝ և ասէր ՚ի Աստուա՛ծ, քաւեա՛ զիս զմեղաւորս։ Ասեմ ձեզ. էջ սա արդարացեալ ՚ի տուն իւր քան զնա. զի ամենայն որ բարձրացուցանէ զանձն իւր, խոնարհեսցի. և որ խոնարհեցուցանէ զանձն, բարձրասցի։ Ղուկ. ԺԸ. 9—14.

Ինքզինքնին արդար անուանելով հպարտութեամբ պարծեցող և ուրիշներն անարգող մարդոց՝ հետևեալ առակն ուղղեց. «Երկու մարդ — մին փարիսեցի և միւսը մաքսաւոր — միասին տաճարը մտան աղօթել առ Աստուած։ փարիսեցին սկսաւ անձին գովութեան, և կրօնից իւր վերայ դրած պարտաւորութիւնները կատարած ըլլալուն համար պարծանօք և հպարտութեամբ կը խօսէր, և իրմէ քանի մը քայլ անդին կեցող մաքսաւորը՝ նորա արհեստէն կշռելով կը դատապարտէր ու կ'անարգէր. սակայն այս երկրորդը՝ ճանչնալով իւր մեղքերը, զորս իբրև մարդ գործած էր, չէր ուզեր՝ և ոչ իսկ աչքը վեր վերցընել. այլ գետինը նայելով կուրծքը կը ծեծէր ու կ'ըսէր, Աստուա՛ծ իմ, մեղացս թողութիւն շնորհէ՛»։ Կը վճռէ Քրիստոս. «Ճշմարտիւ կ'ըսեմ ձեզ, որ մաքսաւորն աւելի արդար դուրս ելաւ տաճարէն քան փարիսեցին. մին արդարացեալ գնաց իւր տունը քան զմիւսն, վասն զի ով որ իւր անձը բարձր դրից մէջ պահպանել ուզէ՝ պիտի խոնարհի, այլ ով որ խոնարհ և հեզ լինի աղաւնւոյ պէս՝ պիտի բարձրանայ»։

## Է. Օրհնութիւն մանկտւոյն

Եւ մատուցանէին առ նա մանկտի՝ զի ձեռն դիցէ նոցա.

եւ աշակերտքն սաստէին այնոցիկ՝ որ մատուցանէին։ Իբրև ետես Յիսուս, բարկացեալ սաստեաց նոցա և ասէ. Թո՛յլ տուք մանկտւոյդ գալ առ իս, և մի՛ արգելուք զդոսա. զի այդպիսեացդ է արքայութիւն Աստուծոյ։ Ամէն ասեմ ձեզ. որ ո՛չ ընդունիցի զարքայութիւն Աստուծոյ իբրև զմանուկ՝ ո՛չ մտցէ 'ի նա։ Եւ առեալ զնոսա 'ի գիրկս ձեռն եդ 'ի վերա՝ և օրհնեաց զնոսա։ Մրկ. Ժ. 13—16. Մտթ. ԺԹ. 13-15. Ղուկ. ԺԸ. 15—17։

*Ինչո՞ւ կ'արգիլուք՝ կ'ըսէ Քրիստոս իր աշակերտներուն, թո՛ղ տուէք, որ ինծի մերձենան այդ անմեղ մանկունք. վասն զի երկնից արքայութիւնը անոնցն է. զի ո՛վ որ այդ մանկանց պէս անմեղ, բարի, պարզամիտ և խոնարհ չէ, ո՛վ որ իր հանճարոյն և գիտութեանը վրայ կը պարծի, ո՛վ որ իր երկրաւոր մեծ աստիճանաւն կը գոռոզանայ, ո՛վ որ մարդոցմէ վայելած պատուոյն վրայ կ'ուռի կը հպարտանայ, նա երկնից թագաւորութեան մէջ մասն չունի, իմ օրհնութենէս զրկուած է։*

## Ը. Դժուարութիւն մտանելոյ յերկինս

Եւ ընդ ելանելն նորա անդէ 'ի ճանապարհ, ահաւասիկ ոմն մեծատուն ընթացեալ 'ի ծունր իջանէր, հարցանէր ցնա՝ և ասէր. Վարդապե՛տ բարի, զի՞նչ արարից, զի զկեանսն յաւիտենականս ժառանգեցից։ Եւ Յիսուս ասէ ցնա. զի՞ ասես զիս բարի. ոչ ոք բարի՝ բայց մի Աստուած։ Զպատուիրանս գիտես. մի՛ շնար, մի՛ սպանաներ, մի՛ գողանար, մի՛ սուտ վկայեր, պատուեա՛ զհայր քո և զմայր։ Նա պատասխանի ետ և ասէ ցնա. Վա՛րդապետ, զայդ ամենայն արարի 'ի մանկութենէ իմմէ, արդ՝ զի՞նչ ևս պակաս իցէ։ Եւ Յիսուս հայեցեալ 'ի նա սիրեաց զնա, և ասէ ցնա. մի

ինչ պակաս է 'ի ինէն. Եթէ կամիս կատարեալ լինել, ե՛րթ զոր ինչ ունիս վաճառեա՛ և տո՛ւր աղքատաց, և ունիցիս գանձս յերկինս, և ա՛ռ զխաչդ՝ և ե՛կ զհետ իմ։ Եւ նա խոժոռեալ ընդ բանն՝ գնաց տրտում. զի ունէր ինչս բազումս։ Մրկ. Ժ. 17—22։ Մտթ. ԺԹ. 16—22։ Ղուկ. ԺԸ. 18—23։

*Երբոր ճամբայ ելնելու վրայ էր՝ Հարուստ իշխան մը դիմաւորեց զանի, ծնկան վրայ եկած կը հարցնէր. բարի՛ վարդապետ, ի՞նչ ընեմ որ յաւիտենական կեանքը ժառանգեմ։ Յիսուս ըսաւ անոր. ի՞նչու լոկ բարի մարդու մը տե՞ղ կը դնես զիս. գիտցի՛ր, որ ես բուն բարին եմ՝ Աստուած, որմէ զատ բարի չըկայ։ Տասնաբանեայ պատուիրանքը գիտնալու ես. զանոնք պահէ՛, ու կ'ապրիս։ Երբ իշխանը առարկեց, թէ զայն ամէնը տղայութենէ 'ի վեր կատարած է, յաւելցուց Յիսուս. ահիմայ ուրեմն մէկ բան միայն ունիս կատարելիք. եթէ խիստ մեծ կատարելութիւն մի ձեռք բերելու համար՝ դիւցազնաբար առաքինանալ կ'ուզես՝ գնա՛, ունեցածներդ աղքատաց բաժնէ՛ դու որ քիչ շատ հոգւոյդ փրկութեան հոգ կը տանիս, գանձդ երկրի վրայէն յերկինս փոխադրէ՛, ա՛ռ աշխարհի փորձութեան խաչը ու ետևէս եկուր։ Նա այս խօսքը լսելուն պէս՝ տխրութեամբ ետ դարձաւ գնաց. զի իւր ընչից սէրը դեռ սրտէն չէր ելած. զի թերևս իւր ստացուածքն Աստուծոյ չափ կը սիրէր։*

Եւ հայեցեալ յայսկոյս յայնկոյս Յիսուս, ասէ ցաշակերտսն. զիա՞րդ դժուարին է որ զինչս ունին, մտանել յարքայութիւն Աստուծոյ. Եւ աշակերտքն զարմացեալ էին

'ի վերայ բանիցն նորա ։ Եւ Յիսուս դարձեալ պատասխանի ետ նոցա և ասէ ։ Որդեակք, ո՜րչափ դժուարին է յուսացելոց ի ինչս՝ մտանել յարքայութիւն Աստուծոյ ։ Դիւրին է մալխոյ ընդ ծակ ասղան անցանել՝ քան մեծատան յարքայութիւն Աստուծոյ մտանել։ Եւ նոքա առաւել ևս զարմանային՝ և ասէին ընդ միմեանս ։ Եւ ո՞ կարասցէ ապրել ։ Հայեցեալ ընդ նոսա Յիսուս՝ ասէ ։ Առ 'ի մարդկանէ այդ անհնարին է, այլ ո՛չ առ 'ի յԱստուծոյ ։ Մրկ. Ժ. 23—27 ։ Մատթ. ԺԹ. 23-26 ։ Ղուկ. ԺԸ. 24-27 ։

*Յիսուս բոլորտիքը նայելով տեսաւ, որ մեծատունը հեռացաւ, ըսաւ իւր աշակերտներուն. «Որչա՜փ դժուար է հարուստ մարդոց՝ երկնից թագաւորութիւնը մտնել. վասն զի նոքա իրենց յոյսը, իրենց փրկութեան ակնկալութիւնը՝ իրենց ստացուածոց վրայ դրած են և ո՛չ Աստուծոյ։ Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի. աւելի դիւրին է, որ մալուխն — ոմանք թարգմանիչք ուղտ կը թարգմանեն երբայեցերէն հօմըլ բառը՝ որ երկու նշանակութիւնն ալ միանգամայն ունի. և կ՚ըսեն, թէ Երուսաղէմ ծակ ասղան անուանք փոքրիկ և նեղ դուռ մ՚ունէր, ուստի դժուարաւ ուղտ մը կրնար ելումուտ ընել. սակայն այս վերջինը հաւանական չէ. — ասղան ծակէն անցնի, քան թէ մեծատունն երկնից թագաւորութիւնը մտնէ»։ Աշակերտք զարմացած իրարու կը հարցընէին, թէ ուրեմն ո՞վ պիտի կարենայ փրկութեան հասնիլ։ Պատասխանեց Յիսուս. «Երբ առանց օգնութեան Աստուծոյ՝ մարդոց կարողութիւնը կը գերազանցէ այդ բանը. սակայն եթէ աստուածային շնորհքն օժանդակէ մարդուս առ այդ ունեցած ըղձից, այն ատեն դժուարութիւնը կը վերնայ»։*

## Թ. վարժ հետեւողաց Փրկչին

Յայնժամ պատասխանի ետ Պետրոս և ասէ ցնա · ահաւասիկ՝ մեք թողաք զամենայն , և եկաք զհետ քո , արդ զի՞նչ լինիցի մեզ ։ Ասէ ցնոսա Յիսուս · ամէն ասեմ ձեզ · զի դուք որ եկիք զհետ իմ ; ՚ի միւսանգամ գալստեանն՝ յորժամ նստցի Որդի մարդոյ յաթոռ փառաց իւրոց , նստջիք և դուք յերկոտասան աթոռ՝ դատել զերկոտասան ազգն Իսրայէլի ։ Եւ ամենայն որ ոք եթող զտուն՝ կամ զեղբարս կամ զքորս կամ զհայր կամ զմայր՝ կամ զկին կամ զորդիս՝ կամ զագարակս վասն անուան իմոյ , հարիւրապատիկ առցէ՝ և զյաւիտենականն ժառանգեսցէ ։ Բազումք եղիցին առաջինք յետինք՝ և յետինք առաջինք ։ Մատթ. ԺԹ. 27–30 ։ Մարկ. Ժ. 28–31 ։ Ղուկ. ԺԸ. 28–30 ։

*Այն ատեն Պետրոս ըսաւ , ահա ինչպէս խըրատ տուիր հարուստ իշխանին , մեք ալ մեր ամէն ունեցածը թողինք քեզ հետեւելու համար . արդ փոխարէն ի՞նչ պիտի ըլլայ մեզի ։ Յիսուս պատասխանեց . Դուք՝ որ աղքատ , խոնարհ , հալածեալ և արհամարհեալ մարդիկ էք , ու իմ ետեւէս եկաք , դուք ճշմարիտ մեծութիւնը հանդերձեալ կենաց մէջ պիտի ունենաք . Ես ձեզի դատել պիտի տամ՝ այն ձեր կրած աշխատութեան գործը , և դուք պիտի վկայէք , թէ ձեր քրտունքը արգասաւո՞ր եղան թէ ապարդիւն մնացին . դուք պիտի վճռէք , որ Իսրայելի երկոտասան ցեղերուն ինչ որ պէտք էր ընել ըրի , և յանձնառութեանց մտիկ չըրին ։ Ով որ ամէն բան կը զոհէ և ինծի կը հետեւի , ոչ միայն հանդերձեալին մէջ այն զոհողութեանց հարիւրապատիկ փոխարէնը պիտի ընդունի յաւիտենական կենաց*

ժառանգութեան հետ մէկտեղ, այլ և երկրի վըրայ ալ օրինակի բարեկամներ, եղբայրներ և սըրտագին մտերիմներ պիտի ունենայ, որք ծնողքէ և ազգականներէ աւելի պիտի գթան իր վերայ և պիտի խնամեն զինքը: Ցետինք վասն առատ արդեանց իւրեանց՝ առաջ պիտի անցնին, և առաջինք՝ անպտղութեան կամ դոյզն արդիւնաւորութեան աղագաւ յետս պիտի մնան. Հեթանոսք քան զԻսրայէլ պիտի նախադասուին:

## Ժ. Առակ մշակաց այգւոյն

Քանզի նման է արքայութիւն երկնից առն տանուտեառն, որ ել ընդ առաւօտս 'ի վարձու առնուլ մշակս յայգի իւր. Եւ արկ վարձ մշակացն աւուրն դահեկան, և առաքեաց զնոսա յայգի իւր: Եւ ելեալ զերրորդ ժամու՝ ետես այլս զի կային դատարկ 'ի հրապարակի. Ասէ և ցնոսա. Երթա՛յք և դուք յայգի իմ, և որ ինչ արժան իցէ՝ տաց ձեզ: Գնացին և նոքա. և դարձեալ ելեալ զվեց ժամու և զինն ժամու՝ արար նոյնպէս: Եւ զմետասաներորդ ժամու ելեալ եգիտ այլս՝ զի կային դատարկ, ասէ և ցնոսա. ընդէ՞ր կայք աստ զօր ցերեկ դատարկ: Ասեն ցնա. զի ոչ ոք կալաւ զմեզ 'ի վարձու. ասէ ցնոսա. երթա՛յք և դուք յայգին, և որ ինչ արժան է՝ առնուցուք: Եւ իբրև երեկոյ եղեւ՝ ասէ տէր այգւոյն ցվերակացուն իւր. կոչեա՛ զմշակսն և տո՛ւր նոցա վարձս՝ սկսեալ 'ի յետնոցն մինչև ցառաջինսն: Իբրև եկին որք զմետասաներորդ ժամուն, առին մի մի դահեկան: Եկեալ և առաջինքն՝ համարէին թէ աւելի առնուցուն, և առին մի մի դահեկան և նոքա: Իբրև առին, տրտնջէին զտանուտեառնն՝ և ասէին, թէ դոքա յետինքդ մի ժամ գործեցին, և հաւասար արարեր զդոսա մեզ, որ կրեցաք զծանրութիւն աւուրն և զտօթ: Նա պատասխանի ետ

միում 'ի նոցանէ՝ և ասէ. Ընկե՛ր, ոչ զրկեմ զքեզ. ո՞չ դահեկանի միոջ սակ արկեր ընդ իս։ Ա՛ռ զքոյդ՝ և ե՛րթ, ես կամիմ յետնոցս տալ որպէս և քեզ. Եթէ չիցէ՞ ինձ իշխանութիւն յիմում առնել զինչ և կամիմ. կամ թէ ակն քո չար է, զի ես առատ եմ. Այսպէս եղիցին յետինք առաջինք՝ և առաջինք յետինք. զի բազումք են կոչեցեալ, և սակաւք են ընտրեալ։ Մտթ. Ի 1–16։

*Այս առակաւ կ'իմացնէ Քրիստոս, թէ ոմանք կատարելութեան ետեւէն պիտի երթան 'ի մանուկ հասակէ, ոմանք յերիտասարդութեան, և ոմանք 'ի ծերութեան։ Վերջը գնացողներուն յապաղման յանցանքը՝ իրենց չէ, այլ թէ երբոր կանչուեցան՝ այն ատեն գնացին. սակայն սիրով ընկալան հաւատքը՝ որ իրենց քարոզուեցաւ, և մեծ յոյս դրին Աստուծոյ ողորմութեան վրայ. Մանաւանդ թէ վերջին մէկ ժամ գործողներն՝ բոլոր օրը աշխատողներուն չափ գործ, պտուղ ցոյց տուին. ուստի անիրաւութիւն չըրաւ տանուտէրը, երբ անոնց ալ հաւասար վարձք վճարեց՝ նախանձոտ մշակին պատասխանելով, թէ դու ինձ հետ արդէն սակարկութիւն ըրիր, ա՛ռ քու վարձքդ և գնա՛. ես իմ ստացուածոցս վրայ ունեցած բացարձակ իշխանութեամբս ինչպէս ուզեմ՝ այնպէս կը տնօրինեմ. դու ինչո՞ւ կ'գչարիս իմ առատաձեռնութեանս վրայ։*

*Տանուտէրն՝ Աստուած, այգին՝ Քրիստոսի եկեղեցին, մշակները՝ մարդիկ, որոց կոչման զանազան ժամանակներն ալ՝ այն զանազան միջոցներն են, յորս Աստուած մարդկային ազգին հետ խօսեցաւ օրինօք։ Շատ մշակներ, գործաւորներ, աշխատողներ հրաւիրուեցան այս եկեղեցին և պիտի հրաւիրուին տակաւին. սակայն այն կո-*

չուած շատերէն քիչերը միայն ընդունեցին Քրիստոսի եկեղեցին և նորա աշակերտութիւնը, որք միայն կանխեն քան զանոնք, որ յառաջագոյն Թէև կոչուած, սակայն ոչ այնքան արդիւնք ցուցին՝ որչափ յետոյ կոչուածները ։



## ԳԼՈՒԽ ԼԳ.

ՈՒՂԵՒՈՐԵԼ ՅԻՍՈՒՍԻ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ. — ՅԱՌԱՋԱԳՈՅՆ ՊԱՏՄԷ ԱՇԱԿԵՐՏԱՑՆ ԶՉԱՐՉԱՐԱՆՍ ԻՒՐ ԵՒ ԶՄԱՀ. — ԽՆԴԻՐ ՈՐԴԻՈՑՆ ԶԵԲԵԴԵԱՅ. — ԽՐԱՏ ԽՈՆԱՐՀՈՒԹԵԱՆ. — ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԿՈՒՐԻՆ Ի ՄՈՒՏՍՆ ՅԵՐԻՔՈՎ. — ԶԱՔԷՈՍ ՄԱՔՍԱՒՈՐ. — ԱՌԱԿ ՏԱՍՆ ՄՆԱՍԻՆ

### Ա. Ուղեւորել Յիսուսի յԵրուսաղէմ

Եւ էին 'ի ճանապարհի (Յիսուս և աշակերտքն իւր) մինչ դեռ ելանէին յԵրուսաղէմ, և երթայր Յիսուս առաջի նոցա, և զարմացեալ էին որ զհետն երթային և երկնչէին ։ Մարկ. Ժ. 32 ։

*Յիսուս իւր աշակերտաց հետ դէպ յԵրուսաղէմ կ'ելնէր. բայց ետեւնուն գնացողները կը զարմանային, որ Յիսուս ամենէն առաջ կ'երթար, և վախ կ'ուգար վրայնին, քանզի նա իւր թշնամեաց կը մօտենար.*

### Բ. Յառաջագոյն պատմէ աշակերտացն զչարչարանս իւր եւ զմահ

Եւ առեալ միւսանգամ զերկոտասանսն առանձինն, սկսաւ

ասել նոցա . զինչ անցք անցանելոց էին ընդ նմա : Թէ ահաւասիկ ելանեմք յԵրուսաղէմ, և Որդի մարդոյ մատնեսցի քահանայապետիցն և դպրաց, և դատեսցեն զնա ի մահ, և մատնեսցեն զնա հեթանոսաց : Եւ կատակեսցեն զնովաւ, և հարկանիցեն զնա, և թքանիցեն ի նա, և սպանցեն, և յերեք աւուր յարիցէ : Մարկ. Ժ. 32—34 : Մատթ. Թ. 17-19: Ղուկ. ԺԸ. 31—33 :

*Յիսուս իր տասներկու աշակերտները մէկդի առնելով, իր գլխէն անցնելիքները սկսաւ պատմել անոնց . թէ ահաւասիկ Երուսաղէմ կելնենք, ուր պիտի կատարուին մարգարէից ձեռօք Որդւոյ մարդոյ համար բոլոր գրուածները, թէ քահանայապետից ու դպրաց պիտի մատնուի, և ապա հեթանոսաց ձեռքը, որ պիտի ծաղրեն զանի, նախատեն, ծեծեն, թքնեն, խաչը հանեն ու սպաննեն, ու երեք օրէն յարութիւն պիտի առնու :*

## Գ. Խնդիր որդւոցն Զեբեթեայ .

Յայնժամ մատեան առ նա մայր որդւոցն Զեբեթեայ որդւովքն իւրովք հանդերձ . երկիր պագանէր և խնդրէր ինչ ի նմանէ : Եւ նա ասէ ցնա . զինչ կամիս, ասէ ցնա . ասա՛ զի նստցին սոքա երկու որդիքս իմ, մի ընդ աջմէ քումմէ՝ և մի ընդ ահեկէ յարքայութեան քում : Պատասխանի ետ Յիսուս և ասէ . ոչ գիտէք զինչ խնդրէք . կարէ՞ք ըմպել զբաժակն՝ զոր ես ըմպելոց եմ, կամ զմկրտութիւնն զոր ես մկրտելոց եմ մկրտիլ . ասեն ցնա . կարող եմք : Ասէ ցնոսա Յիսուս . զբաժակն իմ ըմպիցէք, և զմկրտութիւնն զոր ես մկրտելոց եմ՝ մկրտիջիք, բայց նստուցանել ընդ աջմէ և ընդ ահեկէ իմմէ՝ ո՛չ է իմ տալ, այլ որոց պատրաստեալ է ի Հօրէ իմմէ : Մատթ. Ի 20—23 . Մարկ. Ժ. 35—40 .

*Այն ատեն երբ Քրիստոսի յարութիւնն ու*

փառքը լսեց Զեբեթեայ որդւոց մայրը , տեսանց ինչ ըլլալը իմացած չլինելու , իւր զաւկներով մի-ատեղ Յիսուսի մօտեցաւ , երկրպագութիւն կը-նէր , ու Յիսուսէ բան մը կըխնդրէր : Յիսուս հարցուց . « ինչ կուզես » , կինն ըսաւ . կըխնդ-րեմ որ երկու որդիքս քու արքայութեանդ մէջ — զոր երկրաւոր կ՚ըմբռնէին — աջ ու ձախ կող-մերդ նստին առաջին բարձերու կամ աթոռնե-րու վրայ : Յիսուս պատասխանեց . « Խնդրածնիդ դուք ալ չէք գիտեր . կրնա՞ք խմել այն դառն չարչարանաց բաժակը՝ զոր ես պիտի խմեմ , կամ մկրտուիլ այն արեան մկրտութեամբն , որով ես պիտի մկրտուիմ » : Ըսին , թէ կրնանք : Իրենց սիրոյն եւ եռանդեան բռնութենէն ըսին այս խօսքը , ու չէ թէ ամբարտաւանութեամբ : Եւ յիրաւի , Յակոբոս Հերովդէսի հրամանաւն գլ-խատեցաւ , եւ Յովհաննէս Հռովմայ դռներէն մէկուն քով ձիթով եռացեալ կաթսայի մէջ նե-տեցին Յիսուսի համար , եւ Պաթմոս աքսորեցին: Յիսուս տէրն մեր իբրեւ կանխագէտ պատաս-խանեց . « Գիտեմ , թէ իմ բաժակս պիտի խը-մէք եւ իմ մկրտութեամբս պիտի մկրտուիք . այլ այլ իմ աջ ու ձախ կողմս նստեցունել , ոչ թէ ձեր այդ խնդրոյն կամ իմ ազգականներս ըլլա-նուդ համար պիտի տամ , այլ անոնց պիտի տամ իմ Հայրս՝ որոնք որ արժանի են ընդունելու » :

## Դ. Խրատ խոնարհութեան

Ես լսեալ դասանցն , Երկնային 'ի վերայ երկրացն եղեւ այց : Յիսուս հոգւոց ընտրեալ առ ինքն՝ և ասէ . փրկեա՝ զի եղիցին աղէտք տէրէն նոցա , և մեծամեծքն եղիցին նոցա:

Ո՛չ այնպէս էցէ և 'ի ձերում մէջ․ այլ որ կամիցի 'ի ձէնջ մեծ լինել՝ եղիցի ձեր պաշտօնեայ։ Եւ որ կամիցի 'ի ձէնջ առաջին լինել՝ եղիցի ձեր ծառայ։ Որպէս Որդի մարդոյ ոչ եկն պաշտօն առնուլ՝ այլ պաշտել, և տալ զանձն իւր փրկանս փոխանակ բազմաց։ Մատթ․ Ի․ 24—28։ Մարկ․ Ժ․ 41—45։

*Միւս տասանց բարկանալուն վրայ Յիսուս այս խօսքերն ըսաւ անոնց՝ որոց սիրտը ոչ նուազ փառասիրութեամբ կը տոչորէր․ «Երկնից արքայութեան մէջ եղած իշխանութիւնը՝ երկրի իշխանաց իշխանութեան պէս տիրապետաբար վարուել չէ, այլ խոնարհութեամբ, հեզութեամբ, ծառայական պաշտօնէութեամբ և անձնուիրաբար աշխատութեամբ․ դուք մէկզմէկէ առաջին, մէկզմէկէ բարձր ըլլալ մի՛ մտածէք բնաւ, իմ արքայութեանս մէջ անանկ բան չը կայ․ առաջին ըլլալ ուզողը՝ ձեր ամենուն ծառան պիտի ըլլայ․ ես իսկ Որդի մարդոյ՝ ոչ եկի ծառայութիւն առնուլ, այլ ծառայել, և ինքզինքս փրկանք տալ փոխանակ բազմաց․ թէև փոխանակ ամենեցուն, այլ ոչ ամենեքին պիտի վայելեն»։*

*Քրիստոս իւր այս խօսքերովը՝ եկեղեցւոյ դասակարգութեան կամ նուիրապետութեան որպիսութիւնը իմացուց․ ըսել ուզեց, թէ եկեղեցւոյ կարգադրութեան կանոնը՝ աշխարհի թագաւորական կարգադրութեանց չը նմանիր․ եկեղեցւոյ պաշտօնեայք պէտք է որ խոնարհ լինին, և երբէք մեծամտութիւն չունենան։*

## Ն․ Բժշկութիւն կուրին 'ի մուտն յԵրիքով

Եւ եղեւ 'ի մերձենալն նորա յԵրիքով, կոյր մի նստէր առ

ճանապարհաւ մուրայր։ Իբրեւ լուաւ զանցանել ժողովրդեանն, հարցանէր՝ թէ զի՞նչ իցէ այն։ Եւ պատմեցին նմա, թէ Յիսուս Նազովրեցի անցանէ։ Աղաղակեաց եւ ասէ. Յիսուս որդի՛ Դաւթի, ողորմեա՛ց ինձ։ Եւ որ առաջին երթային՝ սաստէին նմա զի լռեսցէ. եւ նա եւս առաւել աղաղակէր. որդի՛ Դաւթի, ողորմեա՛ց ինձ։ Զարեալ ապա Յիսուս, եւ հրամայեաց ածել զնա առ ինքն. եւ իբրեւ մերձ եղեւ առ նա, եհարց զնա եւ ասէ. Զի՞նչ կամիս դու՝ զի արարից քեզ, եւ նա ասէ. Տէ՛ր՝ զի բացցին աչք իմ՝ եւ տեսից։ Եւ Յիսուս ասէ ցնա. հայեա՛ց, հաւատք քո կեցուցին զքեզ։ Եւ առ ժամայն ետես, երթայր զհետ նորա՝ եւ փառաւոր առնէր զԱստուած. եւ ամենայն ժողովուրդն տեսեալ, տային օրհնութիւն Աստուծոյ։ Ղուկ. ԺԸ. 35—43։

*Երիքով Յորդանանու արեւմտեան կողմը մեծ աւան մ'էր, զոր Յեսուայ առաջնորդութեամբ իսրայելացիք հիմնայատակ ըրին, տապանակն պտըտցնելով եւ ձայներով։ Յեսու զանի նորէն շինել յանդգնողն անիծեց։ Յեսուէն 500 տարի վերջը Աքաաբ թագաւորին օրով նորէն շինուեցաւ, եւ Յեսուայ մարգարէութիւնը՝ շինողին վըրայ կէտ առ կէտ կատարուեցաւ։ Այս աւանին մէջ կար նաեւ մարգարէից դպրոց մը։ Այս քաղաքին երբեմն Արմաւենեաց քաղաք ալ կ'ըսուէր՝ շատ արմաւենիններ գտնուելուն համար հոն. Հոս Եղիսէ մարգարէն լեղի ջրերն հրաշիւք քաղցրացուց։*

*Այս տեղւոյն մօտէն Յիսուսի անցած ատենը, ժողովրդեան ահագին բազմութեան ըշնկոցէն կոյրըն զգալով հարցուց, թէ ի՞նչ բան է այն. ու երբոր պատմեցին, թէ Յիսուս Նազովրեցին (Նախատական յորջորջմամբ:) կ'անցնի, նա անհաղորդնոցա գաղափարին, միայն իւր կենդանի հաւատ-*

քովն տաքցած՝ ոչ նախատական, այլ բուն իր ցեղին անունովն աղաղակեց. «Յիսուս որդի Դաւթի, ողորմէ՛ ինձի»։ Որչափ կը սաստէին՝ որ լռէ, նա աւելի կ'աղաղակէր. իւր հաւատքը նախանձորդաց սաստէն չէր շիջանէր։ Կանգ առաւ Յիսուս, որ մեր 'ի խորոց սրտի հառաչանքըն և մեր ջերմ աղօթից ձայնը կը սիրէ լսել, ու հարցուց. «Ի՞նչ կ'ուզես որ ընեմ քեզ»։ Ոչ թէ անգէտ է Յիսուս մեր խնդրուածոց, այլ կը կամի՝ որ մեր բերնովս խոստովանիմք։ Լսեց կուրին խնդրուածոց, և լոյս շնորհեց նորա աչքերուն. զի նորա հաւատքն արժանի էին այս շնորհին. իւր հաւատքովն աչքը բացուեցաւ, Յիսուսի ետևէն կ'երթար և զԱստուած կը փառաւորէր։ Ժողովուրդն՝ որ զայս տեսաւ, սկսաւ և նա փառաւորել և օրհնել զԱստուած։

## Զ. Զաքէոս մաքսապետ

Եւ մտեալ շրջէր ընդ Երիքով։ Եւ ահա այր մի անուն կոչեցեալ Զաքէոս, և նա էր մաքսապետ, և ինքն մեծատուն։ Եւ խնդրէր տեսանել՝ թէ ո՞վ իցէ Յիսուս, և ո՛չ կարէր 'ի բազմութենէն, զի կարճ էր հասակաւ։ Եւ ընթացեալ յառաջ, ել 'ի ժանտաթզենին՝ զի տեսանիցէ զնա. զի ընդ այն կոյս անցանելոց էր։ Իբրև եկն 'ի տեղին հայեցաւ 'ի վեր Յիսուս՝ և ասէ ցնա. Զա՛քէ, փութա՛ էջ այտի, զի այսօր 'ի տան քում արժան է ինձ ագանել։ Փութացաւ և էջ՝ և ընկալաւ զնա ուրախութեամբ։ Իբրև տեսին ամենեքին, տրտնջէին և ասէին՝ թէ առ առն մեղաւորի եմուտ լուծանել։ Ղուկ. ԺԹ. 1—7։

Յիսուս Երիքով մտեր՝ ամենայն պարզութեամբ կը շրջէր. և ահա հարուստ մարդ մը՝

մաքսապետ կամ իշխան մաքսաւորաց, առաքա-կան հաւանականութեամբ, որոյ Յուստոս անունը Զաքէոս թարգմանուած՝ որ արդար ըսել է, կը բաղձայր տեսնել, թէ ո՞վ և ի՞նչպիսի մարդ է Յիսուս. արդէն նորա քանի մը վարդապետու-թեանց լուրն հեռուէն իր ականջն և մտաց քիչ մը հասեր էին. բայց մութիւնը թէև ստուար, այլ իր եռանդն ալ շատ լինելով, իր վրայ ըն-կերք ծաղրը կամ մեղադրանքն քանի տեղ չը դրաւ, ելաւ ժանտաթզենւոյն վրայ, զՅիսուս տեսնելու. — Հրէաստանի մէջ շատ կը գտնուի այս ծառը, որուն մոլաթզենի ալ կ՚ըսուի —։ Յիսուս երբ այս տեղն եկաւ՝ վեր նայեցաւ ու ըսաւ. "Զաքէ՛, շուտ ըրէ, իջի՛ր այդ ծառէդ. դուն՝ որ հեռուէն տեսնել կ՚ուզէիր՝ ահա այն քու տունդ պէտք է իջնէ այսօր"։ Մեծ ուրա-խութեամբ և անճապարանօք իջաւ ծառէն, և ընդունեց զՅիսուս։ Ասոր վրայ տեսնողներն ըս-կըսան տրտունջ ընել, թէ մեղաւոր մարդու տուն կ՚օթևանի։

Օտար տէրութեան մաքսն, անօրէն, և մաք-սաւորներն մեղաւոր կը համարէին Հրէայք։ Փա-րիսեցիք՝ միայն մեղաւորներէն կը խորշէին, այլ մեղքը կը սիրէին՝ կ՚ըսէ մեր Իգնատիոս հրաշա-լի վարդապետ մեկնիչն Ղուկասու աւետարանին

Սէն եկաց Զաքէոս՝ և ասէ ցՏէր. Տէ՛ր, ահա զկէս ընչից իմոց տաց աղքատաց. և եթէ զոք զրկեցի, հատուցից չորեք-կին։ Եւ ասէ ցնա Յիսուս. այսօր եղև փրկութիւն տանս այս-միկ. զանզի և սա որդի Աբրահամու է. զի եկն Որդի մարդոյ խնդրել և կեցուցանել զկորուսեալն։ Ղուկ. ԺԹ. 8-10։

Զաքէոս իւր առաջուց Քրիստոսի համար քիչ

չափ բամբասանքին եւ իր մեղաց չարութենէն թեթե-ւած խնճոյքին գալով, եւ հոգւոյն փրկութեան բաղձալով, եռանդագին գոչեց. « Տէ՛ր, որպէս զի փրկուիմ, իմ ստացուածոցս կէսն աղքատաց կուտամ, եւ որի՛ որ զրկանք ըրի, չորեքպատիկը կըհատուցանեմ »։ Յիսուս այս կենդանի ու եռանդագին հաւատքը տեսնելուն պէս, շնորհեց նորա բաղձացած փրկութիւնը, ըսելով. « Այսօր եղեւ փրկութիւն տանս այսմիկ, քանզի եւ սա, ինչպէս եւ բոլոր հեթանոսք, հաւատովք որդի Աբրահամու են եւ պիտի լինին. եւ նա՛ որ յաչս անմեղցուն որդի Աբրահամու չէ համարուած եւ կորուսեալ է, զայն փրկելու եկած է Որդին մարդոյ »։

## Է. Առակ տասն Մնասին

Եւ մինչդեռ նոքա զայն լսէին, յաւել առակ մի և ասէ, վասն մերձ լինելոյ նորա յԵրուսաղէմ, և համարելոյ նոցա եթէ առժամայն յայտնելոց է արքայութիւն Աստուծոյ։ Ասէ. այր ոմն ազնուական գնաց յաշխարհ հեռի՝ առնուլ իւր թագաւորութիւն, և դառնալ։ Եւ կոչեցեալ զծառայս իւր՝ ետ նոցա տասն մնաս, և ասէ ցնոսա, յարդիւնս արկէ՛ք զայդ՝ մինչև եկից։ Եւ քաղաքացիքն նորա ատէին զնա, առաքեցին հրեշտակս զհետ նորա և ասեն, թէ ո՛չ կամիմք թագաւորել դմա 'ի վերայ մեր։ Դուկ. ԺԹ. 11—14. Մտթ. ԻԵ. 14—15։

Ժողովրդեան կարծիքն էր այս, թէ քանի որ Երուսաղէմ մտանէր, անոր իսրայէլի վրայ թագաւորելու ժամանակն ալ կը մտանէր. ասոր համար առակ մ' ալ զուրցեց, — հաւանականաբար Զաքէոսի տան մէջ, — ըսաւ. « Ազնուական մարդ մը (Յիսուս Քրիստոս ինքն է) հեռու աշխարհ,

(երկինք՝ փառաց եւ խաղաղութեան բնագաւառն) գնաց, իւր թագաւորութիւնն առնելու, կամ եկեղեցւոյ վրայ թագաւորելու մինչեւ այն ատեն՝ երբ դառնայ յաշխարհ արդարութեամբ դատել զայն։ Եւ ահա կոչեց իւր ծառայներն, եւ ամեն մէկուն տասնական մնաս (հարիւր արծաթ դահեկանաց կշիռ) տուաւ աւանդ, եւ պատուիրեց ու ըսաւ. «Ի գործ դրէք զայդ մինչեւ իմ երկրորդ գալուստս»։ Եւ իւր քաղաքացիներն (հինն Իսրայէլ) կատէին զանի, եւ ետեւէն պատգամաւորներ ղրկեցին, երեսին ալ ըսին, թէ «Չեմք ուզեր, որ ասի թագաւորէ մեր վրայ». «Չիք մեր թագաւոր բաց 'ի կայսերէ» ըսին Պիղատոսի։

Եւ եղև դառնալ նմա՝ առեալ զթագաւորութիւնն, և հրամայեաց զծառայսն՝ որոց տուեալ էր զարծաթն, զի գիտասցէ թէ ո՞ զինչ շահեցաւ։ Եկն առաջինն և ասէ. Տէ՛ր, մնասն քո՛ տասն մնաս արար։ Եւ ասէ ցնա. Ողջ լե՛ր, ծառայ բարի, զի 'ի փոքու հաւատարիմ եղեր, լիջի՛ր իշխանութիւն ունել 'ի վերայ տասն քաղաքի։ Ղուկ. ԺԹ. 15—17։ Մտթ. ԻԵ. 16—21.

Ազնուականը՝ Քրիստոս երկրորդ անգամ կուգայ, և ծառաներն՝ որոց իւր արծաթը տուած էր, իւր առջև կը կոչէ, որպէս զի գիտնայ, թէ ո՞վ ինչ շահեցաւ. այսինքն, Քրիստոնեայներն՝ որոց քրիստոնէական հաւատքն աւանդ տուաւ, իւր ներկայութեան 'ի դատաստան կոչեց։ Առաջինը եկաւ ու ըսաւ. Տէ՛ր, քո մէկ մնասդ շահեցուցի և տասնապատկեցի. Տէրն ըսաւ անոր. ապրի՛ս, ո՛վ բարի և հաւատարիմ ծառայ. իմ քեզի տուած փրկութեան ճշմարտութիւններս հաւատարմութեամբ պահեցիր. այն աշխատու-

խիստ մէկն ես, չը դրածդ կը վերցնես, չը ցա-
նածդ կը քաղես։ Այն ատեն տէրը այդ ծա-
ռային բուն իսկ խոստովանութիւնն առնելով ը-
սաւ. «Դու անհաւատարիմ ծառայ մ՚ես. ըստ
որում զիս խիստ մէկը կը ճանչէիր, գիտէիր
միանգամայն՝ որ չը դրած տեղէս կը վերցընեմ
ու չը ցանած տեղէս կը քաղեմ, ինչո՞ւ համար
իմ արծաթս սեղանաւորներուն քով չը դրիր,
որ այս եկած ատենս հիմայ ես տոկոսեօք պա-
հանջէի. ինչո՞ւ դու երկնից համար, Աստուծոյդ
համար, Քրիստոսիդ համար, քո հոգւոյդ փըր-
կութեանը համար չը գործեցիր, և քրիստոնէա-
կան հաւատքը միայն անուամբ պահեցիր, միայն
մկրտելդ և քրիստոնէի արտաքին կերպարանքն
ունեցար, չաշխատեցար՝ որ հաւատքդ պտղա-
բեր ընես, գործով կատարես, ճշմարիտ և ար-
դիւնաւոր քրիստոնեայ լինիս»։ Ուստի հրաման
ըրաւ սպասաւորաց. «Առէ՛ք այդ մարդէն մնասն,
ու տարէ՛ք տասն մնաս ունեցողին տուէ՛ք. ու
երբ նորա արդէն տասն մնաս ունեցած լինելը
մէջ բերին, տէրը կրկնեց. «Ունեցողներուն, այ-
սինքն, արդիւնաւոր հաւատացելոց միայն պիտի
տրուի վարձք: իսկ անոնք՝ որ իրենց հաւատքն
անպտուղ և ստերջ թողին, անոնցմէ՝ աւանդ-
տրուած շնորհքը, լոյսը, հաւատքը, Քրիստոնէի
անունը ևլն. բոլորը մէկանց պիտի վերցուին առ-
նուին վերջին օրը, դրամագլուխը՝ շահ չունեցո-
ղէն պիտի առնուի»։

Բայց ողբալին են այնոնք, որ ոչ կամին զիս ճա- [illegible]

վմ ։ Ղուկ. ԺԹ. 27—28 ։

«Իսկ նոքա՝ որ ընաւ իմ թագաւորութիւնս չ'ընկալան, իմ բացարձակ թշնամիներս են. բերէ՛ք զանոնք, և կոտոր կոտոր ըրէ՛ք իմ առջևս»։ —Ինչպէս Հռովմայեցիք ոչ շատ տարիներ վերջը ըրին Հրէից —։ Ահա անոնց ակնկալած Քրիստոսի թագաւորութեան սկզբնաւորութեանն, և երկրորդ անգամ վրէժխնդրութեան 'և վարձատրութեան համար գալուստը՝ տէրն մեր այս առակաւ պատմեց ։

Եւ այս առակն աւարտելէն յետոյ՝ գնաց դէպ յառաջ յերուսաղէմ ելնելու. յերուսաղէմ և 'ի քաղաք թագաւորին Դաւթի, 'ի քաղաք քահանայապետաց և զոհից և 'ի քաղաք մարգարէից, հոն թագաւորութիւնը՝ քահանայապետութիւնը և մարգարէութիւնը՝ իւր այս երեքկին պաշտօնը իւր անձին վրայ կատարելու, 'ի գլուխ հանելու համար ։



# ԳԼՈՒԽ Բ.

ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԲԱՐՏԻՄԷԻ ԿՈՒՐԻՆ. — ՕԾԱՆԵԼ ՄԱՐԻԱՄՈՒ ՁՈՏՍՆ ՅԻՍՈՒՍԻ ԹԱՂՄԱՆ Ի ԲԵԹԱՆԻԱ. — ՅԱՂԹԱԿԱՆ ՄՈՒՏՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԵՐՈՒՍԱՂԷՄ. — Ի ԲԱՑ ՎԱՐԵԼ ԶՎԱՃԱՌԱԿԱՆՍԸՆ Ի ՏԱՃԱՐԷՆ. — ՏՐՏՈՒՆՋ ՓԱՐԻՍԵՑԻՈՑՆ. — ՀԵԹԱՆՈՍԱՑ ՕՄԱՆՑ ԽՆԴԻՐՆ ՏԵՍԱՆԵԼ ԶՅԻՍՈՒՍ



## Ա. Բժշկութիւն Բարտիմէի կուրին

Եւ ընդ ելանելն նորա յԵրիքովէ աշակերտացն՝ եւ բազում ժողովրդովք, որդի Տիմէի Բարտիմէոս կոյր նստէր մարացեալ յանցս ճանապարհի. Իբրեւ լուաւ՝ թէ Յիսուս Նազովրեցի է, սկսաւ աղաղակել եւ ասել. Որդի՛ Դաւթի, Յիսուս, ողորմեա՛ց ինձ։ Եւ սաստէին նմա բազումք՝ զի լռեսցէ. եւ նա առաւել եւս աղաղակէր. Որդի՛ Դաւթի, ողորմեա՛ց ինձ. Զտեղի առ Յիսուս՝ եւ հրամայեաց կոչել զնա. կոչեն զկոյրն՝ եւ ասեն ցնա. քաջալերեա՛ց արի՛, կոչէ զքեզ։ Եւ նորա ընկեցեալ զհանդերձ իւր, յարեաւ եւ եկն առ Յիսուս։ Պատասխանի ետ նմա Յիսուս եւ ասէ. զի՞նչ կամիս՝ թէ արարից քեզ, ասէ ցնա կոյրն. Ռա՛բբունի, զի տեսից։ Եւ Յիսուս ասէ ցնա, երթ՝ հաւատք քո կեցուցին զքեզ. եւ վաղվաղակի տեսանէր, եւ երթայր զհետ նորա 'ի ճանապարհին։ Մրկ. Ժ. 46—52.

*Ապաքինեալ այս կոյրերն երկու էին, որոց մին Յիսուս՝ Երիքով մտած ատենը. և միւսը՝ Տիմէոսի որդին — Բարտիմէոս՝ որդի Տիմէի կը նշանակէ — Երիքովէն ելած ատենը բժշկեց։*

Մակաբէոս ամենապատճառ՝ որ Յիսուսի երի-քով մնացած ատենը բժշկած կուրին վրայօք քանի չէր խօսած , երիքովէն ելած ատեն բժշկած Տի-մէի որդւի կուրին պատմութիւնն ալ առաջնոյն հետ կը միացնէ . Մատթ. ի. 29—34 .

Բարտիմէոսի բժշկութեան պատմութիւնն՝ առաջին կուրին պատմութեան հետ մի և նոյնն է՝ միայն մէկ տարբերութեամբ , որ Բարտիմէոս իւր վրայէն առած հագուստները թողուց , կ՚ըսէ Մարկոս , և անհամբերութեամբ Յիսուսի կոչման հե-տևեցաւ : Երբ Քրիստոս զմեզ կը կոչէ , երբ հաստատապէս կ՚որոշենք դիմել առ նա , մեր փութով առ նա երթալուն արգելքները ինչ որ ալ ըլլան՝ պէտք է թօթափել մեր անձէն . և ինչ-պէս առաջին կոյրը , նմանապէս և Բարտիմէոս իրենց աչաց լոյսը գտնելէն յետոյ՝ այլ ևս լուսոյ աղբերէն զատուիլ չուզեցին , և Քրիստոսի հե-տևէն գնացին . նոյնը և մեք ՚ի գործ միշտ դը-նելու ենք , որպէս զի հոգւոյ կուրութիւնն ըզ-մեզ չը պատէ , և խաւարը չը տիրէ :

Եւ էր մերձ զատիկն հրէից , և բազումք ելին յԵրուսա-ղէմ ՚ի գաւառէն առաջ յառաջագոյն քան զզատիկն զի սըր-բեսցեն զանձինս իւրեանց : Խնդրէին զՅիսուս , և ասէին ընդ միմեանս մինչ կային ՚ի տաճարին . զի՞նչ թուի ձեզ՞ ե-թէ ո՞չ գայցէ ՚ի տօն աստ : Պատուէր տուեալ էր քահանա-յապետիցն և փարիսեցւոց , զի թէ ոք գիտասցէ թէ ուր է , ցուցանիցէ նմանէ՝ զի կալցին զնա : Յովհ. ԺԱ. 55-56 .

Հրէից զատիկը մօտ էր . — Քրիստոսի համար այս վերջին զատիկը պիտի լինէր — . գաւառէն շատ մարդիկ զատկի տօնէն յառաջ՝ ըստ օրինաց ինքզինքնին վրան մեղաց քաւութեան զոհերով

*և պատարագներով սրբելու համար յերուսաղէմ ելան. Յիսուսը կը փնտռէին, և իրարու կը հարցընէին, թէ ձեզի ի՞նչպէս կը թուի, Յիսուս այս տօնին չի՞ գար։ Քահանայապետք և փարիսեցիք պատուէր տուած էին, որ եթէ մէկը Յիսուսի ո՛ւր ըլլալը գիտնայ՝ իմաց տայ իրենց, որ բռնեն։ Եթէ ժողովուրդը միահամուռ Քրիստոսի ետևէն կ'երթային և կը հաւատային անոր, պէտք էր որ քննէին, ու Աստուծոյ գործին չը հակառակելով իրենք ալ հաւատային. բայց այսպէս չըրին, հապա չարակամութեամբ և իշխանասիրութեամբ զՔրիստոս ՚ի մահ դատապարտեցին առանց արդար դատաստանի։*

## Բ. Օծանել Մարիամու զոտսն Յիսուսի յընթրիսն ՚ի Բեթանիա

Իսկ Յիսուս վեց աւուրբ յառաջ քան զզատիկն եկն ՚ի Բեթանիա, ուր էր Ղազարոս մեռեալն, զոր յարոյց ՚ի մեռելոց։ Եւ արարին անդ նմա ընթրիս. և ՚ի սպասու կայր Մարթա, և Ղազարոս մի էր ՚ի բազմելոց ընդ նմա։ Իսկ Մարեմայ առեալ լիտր մի իւղոյ նարդեան ազնուի մեծագնոյ, օծ զոտսն Յիսուսի, և հերովք իւրովք մաքրէր զոտս նորա, և տունն լի եղև ՚ի հոտոյ իւղոյն։ Ասէ մի ոմն յաշակերտաց նորա՝ Յուդա Իսկարիովտացի, որ մատնելոցն էր զնա. Ընդէ՞ր ոչ իւղդ այդ վաճառեցաւ երեք հարիւր դենարի, և տուաւ աղքատաց։ Զայս ասաց՝ ո՛չ եթէ զաղքատաց ինչ փոյթ էր նմա, այլ զի գող էր՝ և զարկղն ինքն ունէր, և որ ինչ անկանէր՝ նա կրէր։ Ասէ Յիսուս. Թո՛յլ տուր դմա, զի յօրն թաղմանն իմոյ պահեսցէ զայդ։ Զաղքատս յամենայն ժամ ընդ ձեզ ունիք, զիս ո՛չ հանապազ ընդ ձեզ ունիք։ Յովհ. ԺԲ. 1—8.

*Այս ընթրիքը՝ Մարթայի և Մարիամու տու-*

նըն եղաւ նախ քան զմիւս ընթրիքը, որ Քրիստոսի մահուանէն մէկ երկու օր յառաջ կատարուեցաւ։

Յիսուս վերստին Բեթանիա եկաւ՝ յարուցելոյն 'ի մեռելոց Ղազարու տունը. հոն իրեն ընթրիք մը տուին. շատեր կային բազմեալ Յիսուսի հետ, որոցմէ մէկն էր նաև Ղազար, և Մարթա կը ծառայէր։ Մարիամ նորա քոյրը՝ կերակրոյ ատեն շիշ մը նարդեան աղնիւ իւղ առնելով բոկըստա. Յիսուսի ոտքերն անով օծել և մազերովն մաքրել. տունը իւղոյն հոտէն լցուեցաւ։ Յուդա իսկարիովտացի՝ որ զանի պիտի մատնէր առ ագահութեանն, տեսնելով զայս՝ սկսաւ գանգատիլ, թէ “ինչո՞ւ համար 'ի զուր վատնուեցաւ այդ իւղը, երեք հարիւր դենար կ'արժէր այդ, ծախուէր և ստակը սնտուկը դար՝ աւելի աղէկ կ'ըլլար, որ աղքատաց կ'ուտայինք„. ոչ թէ աղքատաց նկատմամբ հոգ կ'ընէր, հապա շատ անգամ իրեն յանձնուած պաշտօնին մէջ —որովհետև ելումուտից արկղն իրեն յանձնուած էր՝— գողութիւն կ'ընէր։ Յիսուս պատասխան տուաւ. «Մի՛ նեղեր զայդ կինը. իմ պատանաց և թաղման օրս ընելիքը այսօր կը կատարէ առանց գիտնալու, թէ ինչ կ'ընէ։ Դուք միշտ աղքատաց կրնաք խնամ տանիլ, քանզի քովերնիդ են, սակայն ես պիտի երթամ աշխարհէ„.

Իբրեւ գիտաց ժողովուրդ բազում 'ի Հրէից թէ անդ է՝ եկին, ո՛չ միայն վասն Յիսուսի, այլ զի և զՂազարոս տեսցեն, զոր յարոյց 'ի մեռելոց։ Խորհուրդ արարին քահանայապետքն՝ զի և զՂազարոս սպանցեն։ Քանզի բազումք 'ի Հրէից երթային՝ և հաւատային 'ի Յիսուս։ Յովհ. ԺԲ. 9—11։

Յիսուսի և իւր առաքեալներուն կենդանի յաղթանակին Ղազարու հոն ըլլալը լսելուն պէս՝ շատ ժողովուրդք հոն դիմեցին տեսնելու համար։ Եւ ահա առաւել քահանայապետաց զայրոյթն ու ատելութիւնը երթալով կ'աճէր. ա՛լ վերջնական որոշումն ըրին՝ զՅիսուս և նորա յաղթանակը զՂազարոս սպաննել. կը յուսային, որ այնու կը խափանեն Քրիստոսի հաւատքը. մանաւանդ երբ կը նկատէին, որ շատ Հրէայք հոն կ'երթային և Յիսուսի կը հաւատային։

## Գ. Յաղթական մուտն Քրիստոսի յԵրուսաղէմ

Եւ 'ի վաղիւն անդր ժողովուրդ բազում որ եկեալ էր 'ի տօնն, իբրեւ լուան թէ գայ Յիսուս յԵրուսաղէմ, առին ոստս արմաւենեաց՝ և ելին ընդ առաջ նորա. աղաղակէին և ասէին. Ո՛վսաննա, օրհնեալ որ գայ յանուն Տեառն՝ Թագաւո՛րդ Իսրայէլի ։ Յովհ. ԺԲ. 12—13 ։

Զատկական տօնին առթիւ յԵրուսաղէմ գտնուող ժողովուրդը լսելով թէ Յիսուս քաղաք կը մտնէ, արմաւենեաց ոստեր 'ի ձեռին դիմաւորեցին զանի, կը պոռային ու կ'ըսէին. «Ովսաննա՛ (եբրայական լեզուաւ կը նշանակէ՝ կեցցէ՛ տէր, փրկեա՛ տէր, կեցցե՛ս, կեցցէ՛)։ Օրհնեալ ըլլաս դու՝ որ Տիրոջ անունովը կուգաս, դու՝ որ Թագաւոր ես Իսրայէլի»։

Եւ իբրեւ մերձ եղեն յԵրուսաղէմ, և եկին 'ի Բեթփագէ մերձ 'ի լեառն Ձիթենեաց, յայնժամ Յիսուս առաքեաց՝ երկուս յաշակերտացն իւրոց ։ Եւ ասէ ցնոսա. Երթայք 'ի գեւղդ՝ որ առաջի ձեր է. և անդէն գտանիցէք էշ կապեալ՝ և յաւանակ ընդ նմին, (յորոյ վերայ ոչ ոք 'ի մարդկանէ նստեալ՝ էր

Մարգարէ), լուծէ՛ք, ածէ՛ք ինձ։ Եւ եթէ ոք ասիցէ ինչ ձեզ, ասասջի՛ք, եթէ տեառն իւրեանց պիտոյ են. և վաղվաղակի առաքեսցէ զնոսա։ Մատթ. ԻԱ. 1—3։ Մրկ. ԺԱ. 1—3։ Ղուկ. ԺԹ 27-31։

Երբ մօտեցաւ Երուսաղէմի, երկան Բեթփագէի մօտ (Բեթփագէ՝ Եբրայեցերէն՝ տուն տհաս թզենեաց ըսել է, ուր թզենիք արև շատ անգամ չտեսնելուն համար չէին հասուննար թերևս), որ Բեթանիայ և Ձիթենեաց լերան խիստ մօտ՝ երկու լերանց մէջ տեղն էր, Յիսուս իւր աշակերտներէն երկուքն այս գեղը ղրկեց. «Գնացէք՝ ըսաւ, այդ ձեր առջևն եղած գիւղը»։ և իւր ամենագիտութեամբն ու ամենատեսութեամբը նշմարելով էշն ու անոր յաւանակը՝ որ քովը կապուած էր, և իւր ամենիշխանութիւնն յայտնելով «Քակեցէ՛ք, ըսաւ, այն էշն ու յաւանակը, և ինծի բերէ՛ք, և գիտողութիւն ընողին ըսէ՛ք, թէ իրենց տիրոջը պէտք են»։ և ըստ որում Քրիստոս ամէն բան գիտէ, գիտէ նաև այն անասնոց սեփականողին սիրտը, որ չուտով թոյլ պիտի տար տանելու.

Գնացին աշակերտքն, և արարին՝ որպէս հրամայեաց նոցա Յիսուս։ Մատթ. ԺԱ. 6։ Եւ մինչդեռ լուծանէին զյաւանակն, ասեն տեարքն նորա ցնոսա. զի՞ լուծանէք զյաւանակդ։ Եւ նոքա ասեն. տեառն իւրում պիտոյ է։ Ղուկ. ԺԹ. 33—34։ Եւ թոյլ ետուն նոցա։ Մրկ. ԺԱ. 6։ Եւ ածին զէշն և զյաւանակն, և արկին զհանդերձս իւրեանց, և նստաւ ՚ի վերայ նոցա։ Մատթ. ԻԱ. 7։

Գնացին աշակերտները, և Յիսուսի հրամայածին պէս ըրին. բերին էշն ու յաւանակը, վրանին հորձեր ձգեցին, և Քրիստոս նստաւ ա-

նոնց վրայ , Յիսուս Թագաւորին խաղաղութեան , որ ոչ այլոց, այլ իւր արիւնը և արտասուքը թափել կ'երթար ։ — Ձիու վրայ նստելը՝ պատերազմի , և իշու վրայ նստելը՝ խաղաղութեան նըշան էր ։ — Այս յաղթանակն ո՛րչափ տարբեր էր աշխարհակալաց յաղթանակէն՝ երբ քաղաք կը մտնէին . նոքա ժողովրդեան արեամբը շաղախեալ պատերազմներէ դարձ կ'ընեն . . . , շնորհաց և խաղաղութեան յաղթանակ ։

« Եւ նստաւ 'ի վերայ նոցա » . Թէ իշուն վըրայ՝ 'ի նշան հրէից , և թէ՛ յաւանակին վրայ 'ի նշան հեթանոսաց ։ Յաւանակին վրայ մարդ չէր նստած . ցարդ հեթանոսք չէին խառնուած Աստուծոյ ժողովրդեան մէջ , հիմայ անոնք ալ պիտի ընդունուին . մանաւանդ թէ էշէն վար իջաւ Քրիստոս , այսինքն , հրեայք մերժուեցան ։

Իշու վրայ նստելը՝ խաղաղութեան թագաւորն ըլլալը կը նշանակէր ։ Իսրայելացւոց մէջ ձիերը պատերազմի համար միայն կը գործածուէին , իսկ հանդէսներու համար՝ էշերը , մաւոն զի խիստ ընտիր , ճերմակ և ուրիշ գոյն ունեցող էշեր կը գտնուին ցարդ Արևելից մէջ ։

Բայց այս ամենայն եղեւ՝ զի լցցի բան մարգարէին՝ որ ասէ . Ասացէ՛ք դստեր Սիովնի , ահա թագաւոր քո գայ քեզ հեզ , և հեծեալ յէշ և յաւանակի իշոյ ։ Մատթ. ԻԱ. 4-5 ։ Եւ զայն ինչ ո՛չ գիտացին աշակերտքն նորա զառաջինն , այլ յորժամ փառաւորեցաւ Յիսուս , յայնժամ յիշեցին , եթէ այն էր՝ որ գրեալ էր վասն նորա , և զայն արարին նմա ։ Յովհ. ԺԲ. 16 ։

Եւ այս ամենը՝ մարգարէութեան կատարմանը համար կ'ըլլար . « Ասացէ՛ք դստեր Սիոնի ,

ահաւասիկ փրկիչ քո հասանէ քեզ, և ունի զվարձս իւր ընդ իւր, և գործ իւր առաջի երեսաց իւրոց. Եւ կոչեսցէ զնա ժողովուրդ սուրբ՝ փրկեալ 'ի Տեառնէ, և դու կոչեսցիս ' խնդրեալ քաղաք և ոչ լքեալ» . Եսայ. ԿԲ. 11. 12:

«Ուրախ լե՛ր յոյժ, դո՛ւստր Սիոնի, քարոզեա՛, դո՛ւստր Երուսաղեմի. ահա թագաւոր քո գայ առ քեզ՝ արդար և փրկիչ, նոյն հեզ և հեծեալ 'ի վերայ իշոյ և յաւանակի նորոյ» Զաք. Թ. 9:

Այն ատեն առջի բերան աշակերտները չհասկցան ասոր բաներուն ի՛նչ ըլլալը, այլ յետոյ յարութենէն յիշեցին Յիսուսին, թէ ի՛նչ որ մարգարէք գուշակեր էին՝ բան այնիմ ժողովուրդը կատարեց:

Եւ ժողովուրդն վկայէր՝ որ էր ընդ նմա, յորժամ զՂազարոս կոչեաց 'ի գերեզմանէն, և յարոյց զնա 'ի մեռելոց: Եւ վասն այնորիկ ընդ առաջ ելեալ նմա ժողովուրդն, զի լուան եթէ զայն նշանս արարեալ էր նորա: Յովհ. ԺԲ. 17—18:

Նորա հետ եկող ժողովուրդն ալ, որ էին անձամբ զՂազարը տեսած՝, և Քրիստոսի միայն կոչմամբն՝ նորա 'ի մեռելոց յարութեան մեծ սքանչելիքը փայլեցած կամ լսած ըլլալով՝ խուռն բազմութեամբ և մեծ հրճուանօք դիմաւորեց զՅիսուս:

Եւ բազում ժողովուրդք տարածեցին զհանդերձս իւրեանց 'ի ճանապարհին, և այլք հատանէին ոստս 'ի ծառոց՝ և տարածանէին 'ի ճանապարհին. Մատ. ԻԱ. 8: Մարկ. ԺԱ. 8: Եւ իբրև այն ինչ մերձ եղև 'ի զառ 'ի վայր լերինն Ձիթենեաց, սկսան ամենայն բազմութիւն աշակերտացն ուրախութեամբ օրհնել զԱստուած 'ի ձայն մեծ վասն ամենայն զօր-

ւոց զօրութեանցն՝ զոր տեսին: Եւ ասէին. Օրհնեալ որ գայ թա-
գաւորդ յանուն Տեառն. խաղաղութիւն յերկինս, և
փառք 'ի բարձունս: Ղուկ. ԺԹ. 37—38:

*Ժողովրդեան՝ իրենց հանդերձները տարածելը 'ի պատիւ Յիսուսի էր. այս սովորութիւնը շատ հին էր: Երբ Յիսուս Ձիթենեաց լերան ըստորոտը հասաւ՝ աշակերտք միահամուռ ուրախութեամբ սկսան օրհնել զԱստուած՝ Յիսուսի ըրած և իրենց տեսած բոլոր հրաշագործութեանցը համար. կ'աղաղակէին ու կ'ըսէին. «Դու Թագաւո՛ր խաղաղութեան, որ յանուն Տեառն եկար յերկիր, օրհնեա՛լ ըլլաս. հիմայ երկինք երկրի հետ հաշտուեցան. փա՛ռք անոր՝ որ ամենէն բարձրերը կը բնակի»:*

Եւ ոմանք 'ի Փարիսեցւոցն յամբոխէ անտի ասեն ցնա. Վարդապե՛տ, սաստեա՛ աշակերտացդ քոց: Պատասխանի ետ և ասէ. Ասեմ ձեզ՝ զի եթէ դոքա լռեսցեն, քարինքդ աղաղակեսցեն: Ղուկ. ԺԹ. 39—40:

*Փարիսեցիներէն ոմանք՝ որ Քրիստոսի հետքը չը կորուսանելու կամ պատահմամբ ամբոխին հետ կը գտնուէին, նախանձելով նորա ընդունած այս ժողովրդային համակրութեան վրայ՝ քովը մօտեցան և ըսին. «Ցանդիմանէ՛ սա աշակերտներդ»: Պատասխանեց Յիսուս. «Ճշմարտիւ կ'ըսեմ ձեզի, որ եթէ դոքա լռեն իսկ՝ քարերը պիտի աղաղակեն ձեր յամառութեանը դէմ, պիտի վըկայեն, թէ ես այն եմ՝ զոր դուք չուզեցիք ճանչել, և ուրիշ մը փնտռեցիք՝ որոյ թագաւորութիւնն երկրաւոր լինէր ձեր փառասիրութիւնն յագելու համար»:*

Եւ ժողովուրդքն՝ որ առաջին և՝ զկնի երթային, աղաղակէին և ասէին. Մտթ. ԻԱ. 9։ Օրհնեալ որ գայ յանուն Տեառն, օրհնեալ թագաւորութիւնդ եկեալ հօր մերոյ Դաւթի. Մրկ. ԺԱ. 10։

*Առջևէն ու ետևէն զՅիսուս շրջապատող ժողովուրդներն ալ կ'աղաղակէին ու կ'ըսէին. “Օրհնութիւն Դաւթի որդւոյն. օրհնեալ ըլլաս դու՝ որ ամենակալ և ամենողորմ Տիրոջ անուամբը կ'ուգաս. Թո՛ղ քու անուամբդ՝ փրկչիդ միջոցաւը փրկէ զմեզ. ահա մեր հօր Դաւթի թագաւորութիւնը սկսաւ, անկործանելի և աննուաճելի թագաւորութիւնը՝ խաղաղութեան թագաւորութիւնը„։*

*Այսպէս կ'երգէին ուրախութեամբ ծերք, տղայք և երիտասարդք. և յաղթութեան, խաղաղութեան և փառաց համանշանակ արմաւենեաց և ձիթենեաց ճիւղեր կտրելով ծառերէն՝ նորա ոտից ներքև կըսփռէին, և ձեռքերնին բռնելով առջևէն ու ետևէն կ'երթային։*

Եւ իբրև մերձեցաւ, տեսեալ զքաղաքն՝ ելաց 'ի վերայ նորա, և ասէ. Եթէ գիտէիր դու գոնէ յաւուրս յայսմիկ զխաղաղութիւնն քո, բայց այժմ ծածկեցաւ յաչաց քոց։ Զի եկեսցեն աւուրք 'ի վերայ քո, և պատեսցեն զքև թշնամիք քո պատնէշ. և պաշարեսցեն զքեզ, և նեղեսցեն զքեզ յամենայն կողմանց։ Եւ յատակեսցեն զքեզ, և զորդիս քո 'ի քեզ. և ո՛չ թողուցուն քար 'ի քարի վերայ յամենայնի 'ի քեզ. փոխանակ զի ո՛չ ծաներ զժամանակ այցելութեան քո։ Ղուկ. ԺԹ 41—44։

*Զառիվայրէն իջած ատեն՝ Երուսաղէմ քաղաքը առջևը կ'երևէր, Յիսուս տեսաւ քաղաքը, սոյն թշուառ քաղաքը, որ ինչպէս քանիցս պատ-*

նէն բղխած օրհնութեան գեղգեղանքը լսելով՝ բարկացան ու լսին Յիսուսի. «կը լսե՞ս ասոնց ըսածը, թէ զքեզ Դաւթի որդի կանչուանեն. պատասխանեց Յիսուս. «Դաւթի Սաղմոսաց մէջ գրածը չե՞ք կարդացած, որ կըսէ, թէ տղայոց եւ կաթ ուտող մանկիկներու բերնէն ընկալար ըղ կատարեալ օրհնութիւն. Սաղմ. Ը. 3:

Իսկ փարիսեցիքն ասէին ընդ միմեանս. տեսանէ՞ք, զի ոչինչ օգտէք. ահաւասիկ աշխարհս ամենայն զհետ նորա գնաց: Յովհ. ԺԲ. 19:

փարիսեցւոց ջանքերն օգուտ չէին ըներ. քանզի բոլոր աշխարհն անոր ետեւէն կերթար, եւ այս բանին համար առաւել կըղայրանային:

## Գ. Հեթանոսք ոմանք խնդրեն տեսանել զՅիսուս:

Էին արք ոմանք և հեթանոսք յելելոցն անդր, զի երկիրպագանիցեն ի տօնին: Նոքա մատեան առ Փիլիպպոս՝ որ ի Բեթսայիդա Գալիլեացւոց էր, աղաչէին զնա և ասէին. տէ՛ր, կամիմք զՅիսուս տեսանել: Գայ Փիլիպպոս և ասէ ցԱնդրէաս: Անդրէաս և Փիլիպպոս ասեն ցՅիսուս: Եւ Յիսուս պատասխանի ետ նոցա և ասէ. եհաս ժամ զի փառաւորեսցի Որդի մարդոյ: Ամէն ամէն ասեմ ձեզ, եթէ ոչ հատըն ցորենոյ անկեալ յերկիր մեռանիցի, ինքն միայն կայ. ապա եթէ մեռանիցի՝ բազում արդիւնս առնէ: Որ սիրէ զանձն իւր՝ կորուսանէ զնա. և որ ատեայ զանձն իւր յաշխարհի յայսմիկ, ի կեանսն յաւիտենականս պահեսցէ զնա: Եթէ ոք զիս պաշտիցէ, զհետ իմ եկեսցէ. և ուր եմ ես, անդ և պաշտօնեայն իմ եղիցի. եթէ ոք զիս պաշտիցէ, պատուեսցէ զնա Հայրն իմ: Յովհ. ԺԲ. 20—26.

Ըստ Մովսիսի Խորենացւոյ դեսպանք Աբգարու Հայոց արքային էին այս հեթանոսք, որ որպէս սովոր էին հեթանոսք, այն տօնին ուխտի եկած էին, եւ փիլիպպոսի կաղաչէին տեսնել զՅիսուս, եւ « իրենց Թագաւորին կողմանէ հրաւիրել զանի ». ուստի նախ փիլիպպոս՝ Անդրէասի, եւ ապա Անդրէաս ու փիլիպպոս Յիսուսի իմաց տուին։ Յիսուս հասկընալով նոցա միտքը եւ գիտնալով՝ որ ա՛լ այն ժամանակն անոնց խնդիրը կատարելու միջոցը չէր, ըսաւ. « Հիմայ մեռնելու ատենս մօտեցաւ, երբ 'ի մեռելոց յարութիւն առնեմ, այն ատեն բոլոր ազգերն պիտի դառնան 'ի լոյս աստուածգիտութեան »։

(Ըստ եկեղեցական աւանդութեան՝ Քրիստոսի Տեառն մերոյ անձեռագործ Դաստառակն՝ այդ Հայ պատգամաւորաց յանձնեցաւ 'ի դարձի նոցա 'ի Հայս)։ Եւ ահա ասոր համար Յիսուս հետեւեալ խօսքերուն մէջ կըպատուիրէ առաքելոց՝ մահու չափ ճգնել զհեթանոսս յիւր հաւատս դարձընելու համար։ Թէ՛ ինքն Յիսուս եւ թէ՛ իրեն աշակերտք ցորենի հատի պէս հողի մէջ պիտի թաղուին՝ բազմարդիւն, բազմապտուղ լինելու համար. նորա՝ որ կենաց հացն է, մահը բեղմնաւոր պիտի լինի, և միայնակ կեանքն իրեն չը վերապահելով պիտի մեռնի ցորենին պէս, որպէս զի ամենքն ալ ապրին։ «Որ սիրէ զանձն իւր առաւել քան զերկնից կեանս՝ զանի կը կորսնցնէ, և որ ատէ զանձն իւր՝ դնելով 'ի քարոզութիւն աւետարանին, յաւիտենական կենաց պիտի վերապահէ զայն. զիս պաշտողն իմ ետեւէս պիտի գայ, և ես ուր որ եմ՝ 'ի գերեզման և 'ի չարչարանս, իմ պաշտօնեայն ինձ հետ

պիտի լինի. և ո՛վ որ իմ չարչարանացս ու մահուանս բաժանորդ և նմանակից է՝ իմ 'ի Հօրէ ըստանալիք պատուոյս ալ բաժանորդ է և փառակից: Բայց այդ հոգեվարութիւնն, և այդ գաւաթին Աստուծոյ անձնուէր մահուան ժամը ի՞նչ դժուար է»:

Բայց այժմ անձն իմ խռովեալ է. և զի՞նչ ասացից, եթէ Հա՛յր, ապրեցո՛ զիս 'ի ժամէ աստի յայսմանէ. այլ վասն այնորիկ եկի 'ի ժամս յայս: Հա՛յր, փառաւորեա՛ զանուն քո: Եկն բարբառ յերկնից. և փառաւոր արարի, և դարձեալ փառաւոր արարից: Եւ ժողովուրդն որ կայր և լսէր՝ ասէին, որոտումն լինել: Կէսքն ասէին. հրեշտակ խօսեցաւ ընդ նմա: Պատասխանի ետ Յիսուս՝ և ասէ. ո՛չ վասն իմ ինչ եկն բարբառս այս, այլ վասն ձեր: Այժմիկ դատաստան է աշխարհիս այսորիկ. այժմիկ իշխան աշխարհիս այսորիկ ընկեսցի արտաքս: Եւ ես յորժամ բարձրացայց յերկրէ, զամենեսին ձգեցից առ իս. Զայս ասէր, նշանակելով՝ թէ որով մահու մեռանելոց էր: Յովհ. Ժ: 27—33:

Այժմ անձն իմ խռովեալ տագնապեալ է՝ չարչարանացս մերձենալուն համար. և զի՞նչ ասացից, այսինքն, միթէ զա՞յս ասացից, թէ Հա՛յր, զիս այս պահէն ազատէ՛. ո՛չ, ո՛չ, իրաւ է որ մահուան մօտենալուն համար սարսուռ կ'զգամ, բայց պէտք չէ որ այդպիսի բան ըսեմ. զի ես այդ չարչարանաց և կամաւոր մահուան համար եկայ յայս ժամ. բայց զայս միայն գոչեմ, թէ Հա՛յր, Որդիդ փառաւորէ՛: Իսկոյն երկնքէն բարբառ եկաւ, թէ փառաւորեցի սքանչելագործութեամբք և հրաշալի վարդապետութեամբք, և դարձեալ պիտի փառաւորեմ զքեզ յարութեամբ 'ի մեռելոց: Ժողովուրդը՝ ձայնը միայն կը լսէր. ահաւոր ձայն մը, բայց խօսքը չէր ի-

մացուէր. անոր համար ոմանք կ'ըսէին, թէ որոտում կ'ըլլայ. ոմանք ալ կ'ըսէին, թէ հրեշտակ մի խօսեցաւ Նորա հետ: Յիսուս պատասխանեց. «Այդ ձայնը՝ ոչ ինձ, այլ ձեզ համար եկաւ երկնքէն: Այս աշխարհիս դատաստանը, Աստուծոյ արդարութիւնը ամբողջապէս պիտի գործադրուի, և սատանայն հիմայ պիտի դատապարտուի: Երբ ես վերանամ երկրէն 'ի խաչ և յերկինս, բոլոր ազգերն ինձ պիտի մօտեցնեմ». ասով իւր մահը կը հասկըցնէր, որով սատանայն դուրս պիտի ձգուէր խայտառակուելով:

Պատասխանի ետ նմա ժողովուրդն. մեք լուաք յօրինացն՝ եթէ Քրիստոս յաւիտեան կայ, և դու զիա՞րդ ասես՝ թէ պարտ է բարձրանալ Որդւոյ մարդոյ. ո՞վ է այն Որդի մարդոյ: Յովհ. ԺԲ. 34:

Ժողովուրդն՝ այս բարձրանալը, այս խաչի մահն լսելով կը զարմանար. «Մեք՝ կ'ըսէր, Աստուածաշնչէն գիտեմք, թէ Քրիստոս յաւիտեան պիտի մնայ. «Աթոռ քո՝ Աստուա՛ծ, յաւիտեանս յաւիտենից». Սաղմ. ԽԴ. 7. և դու կ'ըսես, թէ Որդին մարդոյ պիտի բարձրանայ. ո՞վ է Որդին մարդոյ»:

Ասէ ցնոսա Յիսուս. փոքր մի ևս ժամանակ լոյս ընդ ձեզ է. գնացէ՛ք մինչ լոյսն ունիք, զի մի՛ խաւար զձեզ հասցէ. զի որ գնայ 'ի խաւարի, ո՛չ գիտէ յո՛ երթայ: Մինչ դեռ լոյսն ընդ ձեզ ունիք՝ հաւատացէք 'ի լոյսն, զի որդիք լուսոյ եղիջիք: Յովհ. ԺԲ. 35—36:

Յիսուս անուղղակի կ'իմացնէ, թէ իրենց այս խօսքը չը հասկընալն՝ իրենց հաւատոյ պակասութենէն է. «Լոյսն ձեր քով ունիք, և խաւա-

րին մէջ կը քալէք՝ կ'ըսէ. քիչ մը ժամանակ ալ դեռ ևս անհապիտի լսէք իմ վարդապետութիւններս՝ որ լոյս են. լուսով գնացէ՛ք, որ խաւարը մոլորութեան, կուրութեան և խստասրտութեան ձեզ չը բռնէ. զի խաւարին մէջ ձեր ոտից կոխած տեղը, ձեր գնացած ճամբան չէք կրնար գիտնալ. հաւատացէ՛ք լուսոյն, որ լուսոյ որդիք ըլլաք»։

Հայեցաւ շուրջ զամենեքումբք. և զի էր երեկոյացեալ ժամն, ել՚ի Բեթանիա երկոտասանիւքն հանդերձ։ Մրկ. ԺԱ. 11. Եւ թողեալ զնոսա՝ ել արտաքոյ քաղաքին՚ի Բեթանիա և անդ ագաւ։ Մտթ. ԻԱ. 17։

Յիսուս բոլորտիքը նայեցաւ ժողովրդեան վրայ. դեռ խօսելիք ունէր, բայց որովհետև գիշերը կը մօտենար, իւր տասներկու առաքեալները հետ առնելով նորէն Բեթանիա դարձաւ, ու հոն գիշերեց։„



# ԳԼՈՒԽ ԼԵ.

ԹԶԵՆԻՆ ԱՆՊՏՈՒՂ ՑԱՄԱՔԵԱԼ .—ԴԱՐՁԵԱԼ Ի ԲԱՑ ՎԱՐԷ ՔՐԻՍՏՈՍ ԶՎԱՃԱՌԱԿԱՆՍՆ Ի ՏԱՃԱՐԷՆ . — ՀԱՐՑՈՒՄՆ ՀՐԷԻՑ , ԵՒ ՊԱՏԱՍԽԱՆԻՆ ՅԻՍՈՒՍԻ ԱՅԼՈՎ ՀԱՐՑՄԱՄԲ . — ԱՌԱԿՔ ԵՐԿՈՒՑ ՈՐԴԻՈՑՆ ԵՒ ՉԱՐ ՄՇԱԿԱՑ ԱՅԳԻՈՑՆ . — ԱՌԱԿ ՀԱՐՍԱՆԵԱՑ ՈՐԴԻՈՑ ԹԱԳԱՒՈՐԻՆ

## Ա. Թզենին անպտուղ ցամաքեալ

Եւ 'ի վաղիւ անդր մինչդեռ ելանէին 'ի Բեթանիայ , քաղցեաւ ։ Եւ եւտես թզենի մի 'ի բացուստ տերեւալից . եւ եկն՝ թէ գտանիցէ ինչ 'ի նմա . եւ իբրեւ եկն 'ի նա՝ ոչինչ եգիտ , բայց միայն տերեւ . զի ո՛չեւ էր ժամանակ թզոյ ։ Պատասխանի ետ եւ ասէ ցնա . մի՛ եւս ոք յաւիտեան 'ի քէն պտուղ կերիցէ . Եւ լսէին աշակերտքն նորա ։ Մարկ. ԺԱ 12—14 ։

*Թէեւ թզոյ ատեն չէր՝ ինչպէս յիշուած է , սակայն պտղատու ծառերը տերեւոց բացուելու ատենները՝ պտղի նշանները կը ցուցնեն . ուստի այս ծառն յայտնի էր Յիսուսի՝ որ պտուղ չը պիտի տար , նաեւ իւր ժամանակին . վասն զի անոնց սկզբնաւորութիւնը չէր տեսնուեր ։ Ոմանք կ'ըսեն թէ Երուսաղէմի բոլորտիքը՝ տարին մէկ քանի անգամ պտուղ տուող թզենիք ալ կային , եւ այս թզենին անոնց կարգէն լինելով պտուղ տալու ատենին մի միայն տերեւով լեցուեր էր ։*

*Այս ծառն՝ Հրէից ժողովարանը կը նշանակէր , որ բնաւ 'ի հաւատս Քրիստոսի պտղաբերելու յոյս չէր տար ։*

## Բ. Դարձեալ 'ի քաց վարէ Քրիստոս զվաճառականսն 'ի տաճարէն

Գան յԵրուսաղէմ. և մտեալ 'ի տաճարն՝ սկսաւ հանել զվաճառականսն և զգնօղս՝ որ էին 'ի տաճարին. և զսեղանս հատավաճառացն շրջեաց, և զաթոռս աղաւնեվաճառացն կործանեաց։ Եւ ո՛չ թողոյր՝ եթէ ոք անօթ ինչ անցուցանիցէ ընդ տաճարն։ Եւ ուսուցանէր և ասէր ցնոսա. Գրեալ է. տուն իմ տուն աղօթից կոչեսցի ամենայն հեթանոսաց, և դուք արարէք զդա այր աւազակաց։ Մարկ. ԺԱ. 15—18։

*Արդէն այս արտաքսման բացատրութիւնը տրուած է Նախորդ գլխուն մէջ. այս անգամ, Քրիստոս չէր թողուր, նաև որ մէկը անօթ մը անցրնէ տաճարը՝ բան գնելու կամ վաճառելու համար. և կուսուցանէր, թէ հեթանոսք անգամ նոյն կոչուած են 'ի տաճար անդր Աստուծոյ՝ աղօթել և երկիրպագանել Տեառն և փրկչին Յիսուսի՝ մկրտելով յանուն Տեառն։*

Եւ Յիսուս աղաղակէր՝ և ասէր. որ հաւատայ յիս՝ ո՛չ հաւատայ յիս, այլ յայն՝ որ առաքեացն զիս։ Եւ որ տեսանէ զիս, զայն տեսանէ՝ որ առաքեացն զիս։ Ես լոյս յաշխարհ եկի, զի ամենայն որ հաւատայ յիս՝ 'ի խաւարի մի՛ մնասցէ։ Եւ եթէ ոք լուիցէ բանից իմոց, և ոչ պահեսցէ, ես ո՛չ դատիմ զնա. քանզի ո՛չ եկի՝ թէ դատեցայց զաշխարհ, այլ զի փրկեցից զաշխարհ։ Որ անարգէ զիս, և ո՛չ ընդունի զբանս իմ, գոյ՝ որ դատի զնա. բանն զոր ես խօսեցայ, նա դատի զնա յաւուրն յետնում։ Զի ես յանձնէ իմմէ ո՛չ խօսեցայ, այլ որ առաքեացն զիս Հայր, նա ետ ինձ պատուէր՝ զի՛նչ ասասցից՝ և զի՛նչ խօսեցայց։ Եւ գիտեմ՝ եթէ պատուէրն այն կեանք են յաւիտենականք. արդ՝ զոր ե-

ան՝ խօսիմ, որպէս ասաց ինձ հայրն՝ այնպէս խօսիմ։ Յովհ. ԺԲ. 44—50։

*Յիսուս դարձեալ կ'աղաղակէր ու կ'ըսէր. «Ինծի հաւատացողը՝ զիս ղրկողին ալ միանգամայն հաւատացած կ'ըլլայ, և զիս տեսնողը՝ զիս ղրկողն ալ տեսած կ'ըլլայ»։ Այսպէս իր և Հօր հաւասար աստուածութիւնը և անբաժանելիութիւնը կ'ուսուցանէր. «Ես՝ Աստուծոյ լոյսն եմ յաշխարհ եկած. ինծի հաւատացողը խաւարի մէջ չը պիտի մնայ. ո՛վ որ խօսքերս լսելէն յետոյ զանոնք չը պահէ, և ո՛վ որ զիս կ'անարգէ և իմ խօսքերս չընդունիր՝ ես չեմ դատեր հիմայ, կայ դատող մը. հիմայ ես ոչ 'ի դատել, այլ 'ի փրկել եկած եմ, հիմայ դատելուս ատենը չէ, հիմայ իրենց խիղճը կը դատէ զիրենք. բայց ունիմ սահմանեալ ժամանակ մը դատելու. և այն օրն ալ արդէն ես չը դատած, իմ խօսքս՝ զոր անոնց (իշխանաց) խօսեցայ ու անոնք չը հաւատացին, այո՛, այն խօսքերս պիտի դատեն զիրենք։ Ես ըստ մարդկութեան, ըստ մարդկային հաճոյից մտաց չեմ խօսիր. Հօրս Աստուծոյ պատուիրանաց համեմատ կը խօսիմ. ես գիտեմ, որ այն պատուէրը՝ պատճառ է կենաց յաւիտենականաց։ Ինչ որ կը խօսիմ, Աստուծոյ խօսքն է, Հօրս բառերն են»։*

Իսկ այնչափ նշանս արարեալ էր առաջի նոցա, և նոքա ոչ հաւատային ի նա։ Զի լցցի բանն Եսայեայ մարգարէի՝ զոր ասաց. Տէ՛ր, ո՛ հաւատաց ի լուր մեր, և բազուկ Տեառն ո՞ւմ յայտնեցաւ։ Վասն այնորիկ ո՛չ կարէին հաւատալ, զի միւսանգամ ասէ Եսայի։ Թէ կուրացոյց զաչս նոցա, և ապշեցոյց զսիրտս նոցա, զի մի՛ տեսցեն աչօք, և իմասցին

ցին սրտիւք, և դարձցին՝ և բժշկեցից զնոսա։ Զայս ասաց Եսայի՝ զի ետես զփառս նորա, և խօսեցաւ վասն նորա։ Յովհ. ԺԲ. 37—41։

Ու այնչափ խօսքերով, այնչափ հրաշքներով այդ խստապարանոց և սրտիւ անթլփատ ժողովուրդը հաւատքի չէր եկած։ Նոցա նկատմամբ Եսայեայ ըրած մարգարէութիւնները կը կատարուէին. «Տէ՛ր, մեր աւետեաց լրոյն ո՞վ հաւատաց. և Տիրոջը զօրութիւնքն որո՞ւն աչքը բացին»։ Զի չէին կրնար հաւատալ. աչքով կուրցած էին և սրտիւ ապուշ. աչօք չը պիտի տեսնէին, սրտիւք չը պիտի իմանային, չը պիտի դառնային առ Աստուած, և չը պիտի բըժշկուէին անկից։ Եսայի ասոնք գրուցեց, զի ինքն տեսաւ ՚ի տաճարին՝ Նորա աստուածութեան փառքը, հրեշտակաց «Սուրբ, Սուրբ, Սուրբ, Տէ՛ր զօրութեանց» գոչելն ու աղաղակելը. դիտէր, որ այդ ժողովուրդը խստապարանոց էր, պղծաշուրթն և քարասիրտ, որ ոչ երբէք պիտի դառնար իւր անօրէնութեան ճամբէն. զի ոչ թէ Աստուած, այլ ինքեանք ըստ անձնիշխանութեանն տուելոյ յԱստուծոյ՝ կուրացուցին զաչս իւրեանց. կամ իմա՛ այսպէս, Աստուած ոչ խափանեաց զկամաւորաբար և չխըստասրտութեամբ կուրացուցանելն Նոցա զաչս իւրեանց, քանզի և չէր իսկ պարտաւոր, զի և ոչ խնդրէին իսկ հրէայք լուսաւորիլ։

Բայց սակայն և յիշխանաց անտի բազումք հաւատացին ՚ի նա. այլ վասն փարիսեցւոցն ոչ յայտնէին, զի մի՛ ՚ի ժողովրդենէն ելանիցեն։ Քանզի սիրեցին զփառս մարդկան առաւել քան զփառսն Աստուծոյ։ Յովհ. ԺԲ. 42—43։

Ի վերայ այսր ամենայնի իշխաններէն ու գըլխաւորներէն ալ շատերը հաւատացին Քրիստոսի. բայց փարիսեցւոց վախէն յայտնի չէին ըներ, որ ժողովարանէն չարտաքսուին։ փարիսեցիք այնչափ թշնամի էին Քրիստոսի, որ անոր հաւատացողները կըհերքէին իրենց ժողովարանէն. Եւ իշխանք՝ որ մարդկային փառքն աւելի կըսիրէին քան զփառսն Աստուծոյ, անոնց համար չէին յայտներ իրենց հաւատքը։

Եւ 'ի տուէ 'ի տաճարին ուսուցանէր, եւ զգիշերս ելեալ ագանէր 'ի լերինն՝ որ կոչէր Ձիթենեաց. Եւ ամենայն ժողովուրդն կանխէր ընդ առաւօտս առ նա 'ի տաճարն լսել 'ի նմանէ. Ղուկ. ԻԱ. 37—38։ Եւ ուսուցանէր զօր հանապազ 'ի տաճարին. Իսկ քահանայապետքն եւ դպիրք եւ մեծամեծք ժողովրդեանն խնդրէին զնա կորուսանել, եւ ոչ գտանէին՝ թէ զի՞նչ արասցեն. Ղուկ. ԺԹ. 47—48։

Ցերեկները տաճարին մէջ կըքարոզէր, եւ գիշերները Ձիթենեաց լեռը կ'ելնէր հանգչելու օրուան աշխատութիւններէն. Ժողովուրդն ալ առաւօտները կանուխ տաճարը կը վազէր, Նորա կենարար վարդապետութիւնները լսելու։ Քահանայապետները, դպիրներն ու ժողովրդեան իշխանները՝ ըստ որում կընախանձէին Նորա ժողովրդային համակրութեան վրայ, կուզէին զանի կորսնցունել, բայց հնարք մը չէին կարող գըտնել։

Եւ [illegible] [illegible] առ նոքա [illegible]՝ [illegible] ըն-
[illegible]. [illegible] Պետրոս եւ ասէ ցնա.
[illegible]՛, [illegible] [illegible]՝ [illegible] [illegible], [illegible]։
Պատասխանի ետ Յիսուս եւ ասէ ցնոսա. Եթէ ունիցէք ըն-

հաւատս Աստուծոյ, ամէն ասեմ ձեզ, որ ոք ասիցէ լերինս այսմիկ՝ բարձի՛ր եւ անկի՛ր ՚ի ծով, եւ ոչ երկմտիցէ ՚ի սրտի իւրում, այլ հաւատայցէ, թէ զոր ասէն՝ լինի, եղիցի նմա՝ զոր ինչ եւ ասիցէ: Վասն այսորիկ ասեմ ձեզ. զամենայն ինչ՝ զոր ինչ աղօթս արարեալ խնդրիցէք, եւ հաւատայցէք թէ առնուցուք՝ եղիցի ձեզ: Եւ յորժամ աղօթս կայցէք՝ թողուցուք, եթէ ունիցիք ինչ զումեքէ. զի եւ Հայրն ձեր՝ որ յերկինս է, թողցէ ձեզ զյանցանս ձեր: Մարկ. ԺԱ. 20—25. Մատ. ԻԱ. 20—22.

*Առտուն երբ թզենւոյն քովէն կանցնէին՝ տեսան, որ թզենին արմատէն չորցեր է. Պետրոս յիշեց առջի օրուան դէպքը, եւ ըսաւ Յիսուսի. «Վարդապե՛տ, անիծած թզենիդ ահա ցամքեր է»: Պատասխան տուաւ Յիսուս ու ըսաւ անոնց. «Ճշմարտիւ կըսեմ ձեզի, եթէ հաւատաք Աստուծոյ, եւ այս լերանն ըսէք, թէ՛ ե՛լ ծովը ինկիր, եւ չթերահաւատիք բնաւ, եւ հաւատաք, որ ըսածնիդ պիտի ըլլայ. ըստ հաւատոց ձերոց խնդրածնիդ պիտի առնուք, միայն թէ խնդրուածնիդ ըլլայ ՚ի փառս Աստուծոյ, ՚ի փրկութիւն անձին եւ յօգուտ ընկերին: Երբ աղօթքի կ՚ելնէք՝ նախ սրտերնիդ ոխն, ատելութիւնն ու քէնը մէկդի թողուցէք, եւ ներեցէք ձեր եղբօր յանցանաց, եթէ կուզէք, որ ձեր երկնաւոր Հայրն ալ ձեր յանցանքը ներէ, ու ձեր աղօթից լսէ»:*

### Գ. Հարցումն Հրէից եւ պատասխանին Յիսուսի՝ այլով հարցմամբ

Եւ եկեալ նորա ՚ի տաճարն, մատեան առ նա՝ մինչդեռ ուսուցանէր, քահանայապետքն եւ ծերք ժողովրդեանն եւ ասեն. Որո՞վ իշխանութեամբ առնես զայդ, եւ ո՞վ ետ քեզ

զիշխանութիւնդ զայդ ։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա . հարցից և ես զձեզ բան մի , զոր թէ ասիցէք ինձ , և ես ձեզ ասացից՝ որո՛վ իշխանութեամբ առնեմ զայս ։ Մկրտութիւնն Յովհաննու ուստի՞ էր , յերկնի՞ց թէ 'ի մարդկանէ ։ Եւ նոքա խորհէին ընդ միտս և ասէին . եթէ ասեմք՝ յերկնից , ասէ ցմեզ . իսկ ընդէ՞ր ոչ հաւատացէք նմա . և եթէ ասեմք՝ 'ի մարդկանէ , երկնչեմք 'ի ժողովրդենէն . զի ամենեքին զՅովհաննէս իբրև զմարգարէ ունէին ։ Պատասխանի ետուն Յիսուսի և ասեն . ոչ գիտեմք ։ Ասէ ցնոսա և նա . և ոչ ես ասեմ ձեզ՝ որո՛վ իշխանութեամբ առնեմ զայս ։ Մատթ. ԻԱ. 23—27 ։ Մարկ. ԺԱ. 17—33 ։ Ղուկ. Ի. 1—8 .

*Երբ նորէն տաճարն եկաւ Յիսուս ու կը քարոզէր, քահանայապետք և ժողովրդեան ծերերը վրան թափեցան , և առ կատաղութեան՝ հարցուցին . «ի՞նչ իշխանութեամբ կ'ընես այդ բանը , այդ հեղինակութիւնն (Տաճարին մէջ քարոզելու և վաճառականներն արտաքսելու) ո՛վ տուաւ քեզ » ։ Պատասխանեց Յիսուս . «Ձեր հարցման պատասխան կուտամ, միայն թէ նախ դուք իմ սա՛ հարցմանս պատասխանեցէք . Յովհաննու մկրտութիւնն՝ ինչպէս նաև քարոզութիւնք , դուշակութիւնք և վկայութիւնք , յԱստուծո՞յ էր թէ մարդկային հնարք» ։ Նոքա մէկտեղ ժողուած՝ սկսան մռմռալ . Եթէ յերկնից է , ըսեմք, կ'ըսէ մեզի , թէ ինչո՞ւ ուրեմն չի հաւատացիք անոր . վասն զի Յովհաննէս վըկայեց , թէ նա է Քրիստոսն . իսկ եթէ ըսեմք՝ թէ մարդիկներէն էր և կամ մարդկային հնարք , ժողովրդէն կը վախնամք , ըստ որում ժողովուրդը զՅովհաննէս իբրև զմարգարէ ընդունած էր։ Ըսին Յիսուսի . չը գիտեմք . և նա պատասխա-*

*նեց. «Թերևս ես ալ ձեզի չեմ ըսեր, թէ ինչ իշխանութեամբ կ'ընեմ զայդ, փոխանակ որ դուք ձեր ճշմարտիւ գիտցածն բերնով չէք ուզեր խոստովանիլ»:*

## Դ. Առակք երկուց որդւոցն եւ չար մշակացն այգւոյն

Բայց զի՞նչ թուի ձեզ. Այր մի էին երկու որդիք. և մատուցեալ առ առաջինն՝ ասէ. որդեա՛կ, երթ այսօր գործեա՛ յայգւոջ: Նա պատասխանի ետ և ասէ. երթամ, Տէ՛ր. և ոչ չոգաւ: Մատուցեալ և առ միւսն և ասէ նոյնպէս, նա պատասխանի ետ և ասէ. ոչ կամիմ. բայց յետոյ զղջացաւ և չոգաւ յայգին: Արդ ո՞ յերկուցանց արար զկամս հօրն: Ասեն. յետինն: Ասէ ցնոսա Յիսուս. ամէն ասեմ ձեզ զի մաքսաւորք և պոռնիկք յառաջեսցեն քան զձեզ յարքայութիւն երկնից: Զի եկն Յովհաննէս ճանապարհաւ արդարութեան, և ոչ հաւատացէք նմա, և մաքսաւորք և պոռնիկք հաւատացին նմա. և դուք տեսէք, և ոչ զղջացարուք յետոյ հաւատալ նմա: Մատթ. ԻԱ. 28—32:

*Ինչպէս կ'երևի ձեզ. մարդ մը երկու որդի ունէր: Առաջնոյն ըսաւ. գնա՛, որդեա՛կ, այսօր այգին գործէ՛. խոստացաւ, բայց չգնաց: Երկրորդը չխոստացաւ, բայց յետոյ զղջաց ու գնաց: Ահա այսպէս ՛դպիրքն ու փարիսեցիք խոստացան կատարել զկամս Աստուծոյ, բայց չըկատարեցին. պոռնիկք և մաքսաւորք կամ մեղաւորք, յետ մոլորելոյ արդարութեան ճանապարհէն՝ զղջացին ապա և դարձան 'ի նոյն. ասոր համար նոքա քան զձեզ պիտի յառաջեն յարքայութեան երկնից: Յովհաննէս եկաւ, բանիւ և անձին օրինակաւ արդարութիւն քա-*

*բռնեց , դուք բառ առաջնոյն անապաշաւ մնացիք , ձեր մոլորութեան մէջ , և մաքաւորաց և պոռնկաց հաւատքն ու զիղջը տեսնելով իսկ՝ չի զղջացիք , սակայն նորա հաւատացին և ապրեցան ։*

Այլ առակ լուարու՛ք ։ Այր մի էր տանուտէր՝ որ տնկեաց այգի , և ցանկով պատեաց զնա , և փորեաց 'ի նմա հնձան , և շինեաց աշտարակ , և ետ զնա մշակաց , և գնաց 'ի տար աշխարհ ։ Իբրև մերձեցաւ ժամանակ պտղոյ , առաքեաց զծառայս իւր առ մշակսն՝ առնուլ զպտուղս նորա. և կալեալ մշակացն զծառայս նորա՝ զոմն տանջեցին , զոմն սպանին, զոմն քարկոծեցին ։ Մտթ. ԻԱ. 33—35 ։ Եւ առաքեաց առ մշակսն 'ի ժամանակի ծառայ մի , զի 'ի մշակացն առցէ 'ի պտղոյ այգւոյն ։ Եւ նոցա կալեալ՝ գան հարին զնա , եւ արձակեցին անպարգեւ ։ Դարձեալ առաքեաց առ նոսա այլ ծառայ , եւ զնա կառափնատեցին եւ արձակեցին անպարգեւ ։ Եւ դարձեալ այլ առաքեաց , եւ զնա սպանին . եւ զբազում այլս , զոմանս հարկանէին , եւ զոմանս սպանանէին ։ Մարկ . ԺԲ. 1—5. Ղուկ. Ի. 9—12.

*Մտիկ ըրէ՛ք . ձեզ ուրիշ առակ մի պատմեմ . տանուտէր մի՝ Աստուած այգի տնկեց , ցանգով պատեց , հնձան փորեց , աշտարակ շինեց , զանի մշակներու , այսինքն , Հնոյ ուխտին քահանայից յանձնեց Աստուած զեկեղեցին , և գնաց 'ի տար աշխարհ ։ ի ժամանակի պտղոյ՝ ծառայ խրկեց , այսինքն զմարգարէս բազմաթիւս , որպէս զի այգւոյն պտղէն առնեն ու բերեն . սակայն մշակները զոմանս ծեծեցին , զոմանս քարկոծեցին , զոմանս անարգեցին , և զոմանս սպաննեցին ։*

Ապա որդի մի էր նոր սիրելի. զնա առաքեաց առ նո-սա յետոյ և ասէ. թերևս ամաչեսցեն յորդւոյ աստի իմմէ: Իսկ մշակքն իբրև տեսին զնա՝ թէ գայ, ասեն ցմիմեանս. Սա է ժառանգն, եկա՛յք սպանցուք զսա, և մեր լիցի ժառան-գութիւնն: Եւ կալեալ զնա սպանին, և հանին արտաքոյ այգւոյն: Արդ զի՞նչ արասցէ տէր այգւոյն. Մարկ. ԺԲ. 6—9: Ասեն ցնա. զչարսն չարաչար կորուսցէ, և զայգին տացէ այլոց մշակաց, [որք տայցեն նմա զպտուղ ի ժամա-նակս իւրեանց. Մատթ. ԻԱ. 41: Ո՞չ ապաքէն գայցէ և կորուսա-նիցէ զմշակսն զայնոսիկ, և տացէ զայգին այլոց: Իբրև լու-ան՝ ասեն. քա՛ւ, մի՛ լիցի: Ղուկ. Ի. 16:

*Սիրելի որդի մ'ունէր՝ Աստուած զՅիսուս Քրիստոս, զանի խրկեց, զի թերեւս իւր ժա-ռանգէն ամչնան. բայց մշակներն հեռուէն տեսա-նելով նորա գալուստը՝ ըսին. «Սա ժառանգն է. եկէ՛ք սպաննենք զսի, որ մենք մեզէն տէր ըլ-լանք այգւոյն». և զնա արտաքոյ քան զերուսա-ղէմ հանելով՝ սպաննեցին. արդ՝ այգւոյն տէրն ի՞նչ պիտի ընէ: Պատասխան տուին. Չարա-գործները պիտի պատժէ, և այգին պիտի տայ հարկաւ այնպիսի մշակներու՝ որք ժամանակին պտուղներն յանձնեն տիրոջը: Ահա դուք ձեզէն դատաստան կը կտրէք: Աստուած իւր եկեղե-ցւոյն համար՝ նոր քահանայներ պիտի կարգէ՝ առաքեալս և վարդապետս, և անոնց պիտի յանձնէ իւր եկեղեցւոյն տնտեսութիւնը: Երբ քահանայապետք, դպիրք և փարիսեցիք զայս լսեցին, հասկըցան, որ իրենց նկատմամբ ըսաւ զայդ առակը. ուստի աճապարեցին նորա ամ-բաստանութիւնը ստել՝ ըսելով. «Քա՛ւ, մի՛ լի-ցի»:*

*Որդէն Եսայի (Գլ. Ե. 1—7) և Դաւիթ (Սաղ.*

ԾԺԲ. 22) Իսրայէլն այգւոյ նմանեցուցեր և նորա առաջնորդութիւնը բացատրած էին. նոյնը կը կրկնէ Յիսուս՝ ամենէն աւելի պարզ օրինակաւ, և զմարգարէս և ապա զՈրդին Աստուծոյ սպաննելու հաստատ դիտաւորութիւննին՝ անգամ մ'ալ նոցա աչաց առջև նկարելով։

Ասէ ցնոսա Յիսուս. չիցէ՞ երբէք ընթերցեալ ձեր ՚ի գիրս. զվէմն զոր անարգեցին շինողքն, նա եղև գլուխ անկեան։ ՚Ի Տեառնէ եղև այս, և է սքանչելի յաչս մեր։ Վասն այսորիկ ասեմ ձեզ, զի բարձցի ՚ի ձէնջ արքայութիւն Աստուծոյ, և տացի ազգի՝ որ առնիցէ զպտուղս նորա։ Եւ որ անկցի ՚ի վերայ վիմին այնորիկ՝ փշրեսցի, և յոյր վերայ անկցի՝ հոսեսցէ զնա։ Մատթ. ԻԱ. 42—43։ Մարկ. ԺԲ. 10—11. Ղուկ. Ի. 17—18։

Մեսիայն վէմ էր, յորոյ վերայ ճշմարտութիւնն և եկեղեցի շինեալ էր, յորոյ վերայ էր Հին և Նոր կտակարանն. շինողքն՝ դպիրք և քահանայք և փարիսեցիք էին, որ այս վիմին վրայ պիտի շինէին իրենց բարոյական և կրօնական շէնքը կամ եկեղեցին. բայց սոքա այս վիմին՝ որ գուշակեալըն և յայտնի ապացուցեալըն էր ՚ի մարգարէից, թերևս անշքութիւնը տեսնելով՝ իրենց շէնքին հիմն չըրին և անարգեցին. Բայց այս իրենց անարգած վէմը՝ շէնքին բոլոր ամրութիւնը բռնող անկեան գլուխը դրուեցաւ այն կերպով, որ առանց անոր վրայ շէնք շինելու շուրջը պտըտել ուղողներուն համար անցնելու ճամբայ չկայ. և եթէ պնդեն անցնիլ՝ պիտի ընդհարին անոր կամ ոտքով, կամ մարմնով և կամ գլխով, և կտոր կտոր պիտի ըլլան։ Եւ ո՛վ որ Քրիստոսէ զատ ուրիշ վէմ փնտռէ իւր շէնքը կառուցանելու,

ո՛վ որ իւր առաքելութիւնը՝ Քրիստոսի արդարութեանն, և իւր մեղքը՝ Քրիստոսի հաւատքին նախանձախնդիր համարի, ո՛վ որ [Քրիստոսի վարդապետութեանն ու եկեղեցիին զատուի և անապաշխար մնայ՝ այս վէճին անոր վրայ պիտի իյնայ. և եթէ իյնայ՝ պիտի ճմլէ իւր ներքև մնացողը: Ասի այսպէս Աստուած որոշեց: Ուստի՝ կ'ըսէ, Քրիստոս, Աստուծոյ արքայութիւնն՝ որ 'ի սկզբանն ձեզ խոստացուած էր դրոշմք սրբովք, մինչդեռ դուք մերժեցիք ընդունիլ զԱռաքեալն Աստուծոյ այնպէս՝ ինչպէս որ արժանին էր, պիտի առնուի ձեզմէ, ու այնպիսի ազգի մը պիտի տրուի, որ ժամանակին պտուղ տայ. և այդ ազգը՝ 'ի հեթանոսութենէ պիտի կոչուի:

Իբրեւ լուան քահանայապետքն և դպիրք և փարիսեցիք զառակս նորա՝ ծանեան, եթէ զնոցանէ ասէ: Եւ խնդրէին զնա ունել, երկեան 'ի ժողովրդոցն. քանզի իբրեւ զմարգարէ ունէին զնա: Մատթ. ԻԱ. 45—46.

Երբ քահանայապետները, դպիրները և փարիսեցիք հասկցան՝ որ զայն առակն իրենց նկատմամբ ըսաւ, շատ բարկացան, մինչև իսկ նոյն պահուն ուզեցին զինքը բռնել. սակայն ժողովրդէն վախցան. վասն զի ժողովուրդը զինքը իբրև զմարգարէ ընդունած էր:

## Ե. Առակ հարսանեաց որդւոյ Թագաւորին

Դարձեալ պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա առակօք: Նմանեցաւ արքայութիւն երկնից առն թագաւորի, որ արար հարսանիս որդւոյ իւրում. և առաքեաց զծառայս իւր-

կոչել զհրաւիրեալսն ի հարսանիսն, եւ ոչ կամէին գալ։
Դարձեալ առաքեաց այլ ծառայս եւ ասէ. ասացէք հրաւի-
րելոցն. ահաւասիկ զճաշ իմ պատրաստեցի. զուարակք իմ եւ
զուարակք զենեալ են, եւ ամենայն ինչ պատրաստ է, եկա՛յք
ի հարսանիս։ Եւ նոքա յանփոյթ առնելով՝ գնացին՝ ոմն յագարակ
իւր, եւ ոմն ի վաճառ իւր. եւ այլք կալեալ զծառայս նորա,
թշնամանեցին եւ սպանին։ Իսկ թագաւորն իբրեւ լուաւ՝ բար-
կացաւ, եւ առաքեաց զզօրս իւր եւ սատակեաց զսպանողսն
զայնոսիկ, եւ զքաղաքն նոցա այրեաց։ Յայնժամ ասէ ցծա-
ռայսն իւր. հարսանիքն պատրաստ են, եւ հրաւիրեալքն չէին
արժանի. արդ երթա՛յք յանցս ճանապարհաց, եւ զոր միանգամ
գտանիցէք՝ կոչեցէ՛ք ի հարսանիսն։ Եւ ելեալ ծառայքն ի
ճանապարհս՝ ժողովեցին զամենեսեան, զոր եւ գտին՝ զչարս
եւ զբարիս, եւ լցաւ հարսանիքն բազմականօք։ Եւ մտեալ
թագաւորն հայել զբազմականօքն՝ ետես անդ այր մի, որ ոչ էր
զգեցեալ հանդերձ հարսանեաց. եւ ասէ ցնա. ընկե՛ր, զիա՞րդ
մտեր այսր, եւ ոչ ունէիր հանդերձ հարսանեաց. եւ նա պա-
պանձեցաւ։ Յայնժամ ասէ թագաւորն ցպաշտօնեայսն. կապե-
ցէ՛ք զոտս դորա եւ զձեռս, եւ հանէ՛ք զդա ի խաւարն
արտաքին. անդ եղիցի լալ եւ կրճել ատամանց։ Զի բազումք
են կոչեցեալք, եւ սակաւք են ընտրեալք։ Մատթ. ԻԲ. 1-14։

Դարձեալ առակ մը խօսեցաւ Յիսուս, որոյ մէջ յիշուած Թագաւորն՝ Աստուած է, Հարսանիքը՝ Աւետարանն, փեսայն՝ Քրիստոս, Հարսըն՝ Ս. Եկեղեցի, եւ հրաւիրեալքն են Հրէայք։ Հարսանեաց հրաւէրը չընդունելով՝ իրենց անձնական զբաղմանց պարապողներն են անկրօնները, որք կամ Աստուծոյ գոյութիւնը եւ կամ Յիսուսի Քրիստոսի փրկութեան մեծ գործը կ՚ուրանան, եւ կամ իրենց հոգւոյն փրկութեան համար հոգ չեն ըներ ու անտարբեր են։ Ծառաները կամ հրաւիրակներն, այսինքն, Քրիստոսի

դալանէնէն յառաջ եկող մարգարէներն անարգելով ծեծողներն ու սպաննողները՝ փարիսեցիք և իշխաններն են ։

Եւ որովհետև Թագաւորին հրաւէրը չընդունիլը՝ բացարձակապէս ապստամբութիւն է նորա դէմ, ուստի Թագաւորն իւր զօրքերը՝ ղրկեց, կոտորեց զանոնք, և նոցա քաղաքն այրեց ։ Այս կը նշանակէ այն կոտորածը, որ եղաւ Տիտոսի ատեն Հռովմայեցւոց ձեռօք, որոնք բիւրաւոր մարդիկ թրէ անցնելէն և հազարաւոր մարդիկ ալ գերի վարելէն զատ՝ նոցա քաղաքն ու տաճարը այրեցին, կործանեցին ու հիմնայատակ ըրին, և մնացորդն ալ ցրուեցին աստ ու անդին. և այս՝ անշուշտ աստուածային հրամանաւ ։

Ճամբայներն կամ դուրսը մնացողներն՝ ըստ Հրէից՝ հեթանոսներն հրաւիրեց Աստուած ՚ի հարսանիս Որդւոյ իւրոյ, և ոչ միայն հեթանոսներն, այլ և մաքսաւոր ու մեղաւոր համարուածներն ու կռապաշտներն, չարերն ու բարիներն. — վասն զի Քրիստոսի եկեղեցւոյն մէջ չարեր ալ կը գտնուին —։ Հրէայք չ'եկան, բայց հարսնետունը դարձեալ լցաւ բազմականօք, որոնք առհասարակ հարսանեաց հանդերձ հագած էին. Թագաւորը ներս մտաւ հրաւիրեալները աչքէ անցունելու համար. տեսաւ որ հրաւիրեալներէն մէկը հարսանեաց հանդերձ չէր հագած. — Արևելեան Թագաւորաց պալատները մտնողները՝ պարտաւոր էին պալատէն տրուած հանդերձ մի հագնելու, որ «խիլայ» կ'ըսուէր. ո՛վ որ այդ հանդերձը չը հագած՝ Թագաւորին ներկայանալու յանդգնէր, մահու արժանի կը դատուէր —. Թագաւորն անոր մօտեցաւ և ըսաւ.

«Ընկե՛ր, ի՞նչպէս համարձակեցար մտնել իմ հարսնիքս՝ առանց իմ պալատական հանդերձս հագած. ըլլալու»: Նա պապանձեցաւ. վասն զի չէր կարող ըսել, թէ «Աղքատ ըլլալովս չը կրցի հանդերձ գնել», քանի որ այդ հանդերձը ձրի կը տրուէր արքունեաց մէջ, չէր կարող ըսել, թէ «Չէի գիտեր որ այն հանդերձն հագնելու անշուշտ պարտաւոր էի», մինչդեռ թագաւորին ծառայքն զգացուցած էին իրեն, թէ առանց այդ հագուստն ունենալու՝ թագաւորին ներկայանալ յանդգնողն մահուամբ կը պատժուի և արտաքին խաւարը կը նետուի. ուստի լռեց: Հրամայեց թագաւորն, որ զայդ անարժան մարդը հանեն անմիջապէս ՚ի խաւարն արտաքին՝ ՚ի լալ և ՚ի կրճել ատամանց:

Այն հանդերձը՝ Պօղոս առաքելոյն յիշած հագուստն է, արդարութեան զրահ, խաղաղութեան աւետարանին հողաթափ, ևն. զորոնք չունեցողն՝ Գառին Աստուծոյ հացկերութին, Աստուծոյ սեղանոյն արժանի չէ: Թէև յայս սեղան բազումք են կոչուած, սակայն սակաւք արժանի պիտի լինին սեղանակից լինել ընդ Քրիստոսի:



եղբայր իւր, և յարուսցէ զաւակ եղբօր իւրում։ Էին առ մեզ եղբարք եօթն. առաջինն արար կին, և մեռաւ. և զի ոչ ունէր զաւակ՝ եթող զկինն եղբօր իւրում։ Նոյնպէս և երկրորդն և երրորդն մինչև յեօթներորդն. յետ ամենեցուն մեռաւ և կինն։ Արդ 'ի յարութեան ո՞յր յեօթանցն եղիցի նա կին, զի ամենեքին կալան զնա կին։ Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ. մոլորեա՛լ էք, ո՛չ գիտէք զգիրս, և ո՛չ զզօրութիւն Աստուծոյ. զի 'ի յարութեան ո՛չ կանայս առնեն, և ո՛չ արանց լինին, այլ են իբրև զհրեշտակս յերկինս. Մատթ. իբ. 23—30։ Որդիք աշխարհիս այսորիկ կանայս առնեն և արանց լինին. իսկ որ արժանի լինիցին այնմ աշխարհի հասանել և յարութեանն՝ որ 'ի մեռելոց, ո՛չ կանայս առնեն և ո՛չ արանց լինին. քանզի և ո՛չ մեռանել ևս կարեն, զի հաւասար հրեշտակաց են և որդիք Աստուծոյ. քանզի յարութեան որդիք են։ Այլ զի յառնեն մեռեալք, և Մովսէս ցուցանէ 'ի մորենւոջն, որպէս ասէ զՏէրն Աստուծոյ Աբրահամու և զԱստուծոյ Իսահակայ և զԱստուծոյ Յակոբայ. և Աստուած չէ մեռելոց, այլ կենդանեաց. զի ամենեքին նմա կենդանի են։ Պատասխանի ետուն նմա ոմանք 'ի դպրացն և ասեն. վարդապե՛տ, բարւոք ասացեր։ Եւ ոչ ևս ոք իշխէր հարցանել և ոչինչ։ Ղուկ. ի. 34-40։ Իբրև լուան ժողովուրդքն՝ զարմանային ընդ վարդապետութիւն նորա։ Մատթ. իբ. 33։ Մրկ. ժբ. 18—17։

*Ճշմարիտ էր, թէ Մովսէս այս կանոնը տուած էր Իսրայելացւոց* (Բ. Օրին. իե. 5—10). *սակայն անոր համար միայն, որ Իսրայելի բոլոր ցեղերն իրարմէ զատ և որոշ մնային մինչև գալուստն Քրիստոսի, որ որոշ մնացած Դաւթի ցեղէն ծնաւ։*

*Սադուկեցիք այս դժուար հարցմամբ՝ մեռելոց յարութեան չը հաւատալնին արդարացընել կը քաղձային. մարմին կորած մարմինն՛ը,*

որ հողեայ երանաւէտ և սրբասահման կամար-ներուն տակ՝ իրենց երկրաւոր կրիցն ու ցանկու-թեանց ճարակ կը խնդրէին. Սակայն Քրիստոս պապանձեցոյց զանոնք, իմացընելով, թէ հոն հրեշտակային սրբութիւն միայն կը թագաւորէ:

Բ. Ո՞ր պատուիրան է մեծ

Իսկ փարիսեցիքն իբրեւ լուան՝ եթէ պապանձեցոյց զՍադուկեցիսն, ժողովեցան ՚ի միասին. և եհարց մի ոմն ՚ի նոցանէ զնա փորձելով և ասէ. Վարդապետ, ո՞ր պատուիրան է մեծ յօրէնսն: Եւ Յիսուս ասէ ցնա. Սիրեսցես զՏէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ և յամենայն անձնէ քումմէ և յամենայն մտաց քոց: Այս է մեծ և առաջին պատուիրան: Եւ երկրորդն՝ նման սմին. Սիրեսցես զընկեր քո իբրեւ զանձն քո: Յայս երկուս պատուիրանս ամենայն օրէնք և մարգարէք կախեալ կան. Մատթ. ԻԲ. 34—40: Մեծ քան զսոսա այլ պատուիրան ո՛չ գոյ. Մրկ. ԺԲ 31:

Եթէ իբրև ծառայ ՚ի հնումն զԱստուած սի-րել պարտաւոր էինք, ո՞րչափ ևս առաւել այ-ժըմ իբրև որդի շնորհօքն Քրիստոսի կը պար-տաւորիմք սիրել փոխադարձ սիրոյն անսահման. որով սիրեց զմեզ: Եթէ հին օրինօք պարտաւոր էինք սիրել մեր ընկերը, ո՞րչա՜փ ևս առաւել Նոր օրինօք, ուր եղբայրդ ալ քեզ նման որդե-գիր է Աստուծոյ: Ուստի եթէ եղբայրդ քու ան-ձիդ պէս սիրես, ո՛չ անոր դէմ սուտ կը վկայես, ո՛չ անոր կնոջն ու դստերն և ստացուածոց կը ցանկանաս, և ո՛չ անոր վերաբերեալ բաները կը գողնաս. Ուրեմն այս սէրն է մեծ և առաջին պատուիրան, որմէ կախեալ են ամենայն օրէնք և պատուիրանք, զի լրումն օրինաց սէր է, զի

Նի՛ստ ընդ աջմէ իմմէ, մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց։ Իսկ եթէ Դաւիթ զնա Տէր կոչէ, զիա՞րդ որդի նորա իցէ։ Եւ ո՛չ ոք կարէր տալ նմա պատասխանի բան մի, և ոչ իշխէր ոք յայնմ օրէ հարցանել զնա և ոչ ինչ։ Մատթ. ԻԲ. 41—46 ։ Մարկ. ԺԲ. 35—37 ։ Ղուկ. Ի. 41—44 ։

*Ու դարձեալ Յիսուս զինքը շրջապատող փարիսեցւոց հարցուց. «Ի՞նչպէս կ՚երևի ձեզ. Քրիստոս որո՞ւ որդի է»։ Ու երբ պատասխանեցին, թէ Դաւթի որդին է, յաւելցուց Յիսուս. «Հապա եթէ իւր որդին է՝ ինչո՞ւ զանի իւր տէրը կ՚անուանէ, ու կ՚ըսէ. Տէրն իմ Տիրոջս ըսաւ. աջ կողմս նստէ՛, մինչև որ թշնամիներդ ոտիցդ տակ դնեմ։ Արդ եթէ Դաւիթ զանի իւր տէրն ըլլալ կը խոստովանի, ի՞նչպէս ուրեմն Քրիստոս նորա որդին կրնայ ըլլալ»։ Ճշմարիտ էր, թէ Քրիստոս ըստ մարմնոյ՝ Դաւթի որդին էր. սակայն Քրիստոս ըստ Աստուածութեանն՝ Հօր Աստուծոյ Որդի ըլլալը կ՚ուզէ նոցա իմացընել։ Այս խօսքին վրայ ոչ ոք բերանը բացաւ՝ ո՛չ այն առեն, և ո՛չ յետոյ. քանզի չէին համարձակեր։*

## Դ. Յանդիմանութիւն դպրաց եւ փարիսեցւոց կեղծաւորաց

Յայնժամ խօսեցաւ Յիսուս ընդ ժողովրդեանն և ընդ աշակերտսն իւր, և ասէ. յաթոռն Մովսիսի նստան դպիրք և փարիսեցիք. զամենայն ինչ զոր ասիցեն ձեզ, արասջի՛ք և պահեսջի՛ք, բայց ըստ գործոց նոցա մի՛ առնէք. զի ասեն և ոչ առնեն։ Կապեն բեռինս ծանունս և դժուարակիրս, և դնեն ի վերայ ուսոց մարդկան, և ինքեանք մատամբ իւրեանց ո՛չ կամին շարժել զնոսա։ Եւ զամենայն գործս իւրեանց առնեն ի ցոյց մարդկան։ Մատթ. ԻԳ. 1—4 ։

Մովսէսի աթոռը դպիրք և փարիսեցիք նըստան. դպիրք, փարիսեցիք և քահանայք՝ Մովսէսի օրինաց իշխանութիւնն ու վարդապետութիւնն իրենց ձեռքն առած են. (երբ անոնց խօսքերն՝ Աստուծոյ հրամանին հակառակ չեն), անոնց ըսածներն կատարեցէ՛ք. բայց անոնց գործոց նման գործեր մի՛ գործէք. Նոքա կը քարոզեն, բայց իրենց քարոզութիւնը գործով չեն կատարեր: Ծանր ու դժուարակիր՝ աւելորդպաշտամանց և ծէսերու բեռներ կը դնեն մարդոց ուսերու վրայ, բայց իրենք իրենց մատովն անգամ չեն ուզեր զանոնք շարժել. իրենք ո՛չ կը կատարեն, և ո՛չ ամենափոքր օգնութիւն մի կ'ընեն մարդոց. իրենց ամեն բարեպաշտական գործերն՝ աղօթք, ողորմութիւն են. մի միայն մարդոց երեւցնելու համար և ո՛չ սրտանց կը կատարեն:

Լայնեն զգրապանակս իւրեանց, և երկայնեն զծոպս հանդերձից իւրեանց. սիրեն զնախագահս յընթրիս, և զնախաթոռս ի ժողովուրդս, և զողջոյնս ի հրապարակս, և կոչել ի մարդկանէ՝ Ռաբբի՛ Ռաբբի՛: Բայց դուք մի՛ զոք կոչէք վարդապետ, զի մի է ձեր վարդապետ, և ամենեքին դուք եղբարք էք. Եւ հայր մի՛ կոչէք ձեզ յերկրի, զի ձեր մի է հայր՝ որ յերկինսն է. Եւ մի՛ կոչեցիք վարդապետք, զի վարդապետ ձեր Քրիստոս է: Եւ մեծն ի ձէնջ եղիցի ձեր սպասաւոր: Որ բարձրացուցանէ զանձն՝ խոնարհեսցի, և որ խոնարհեցուցանէ զանձն՝ բարձրասցի: Մտթ. ԻԳ. 5—12, Մրկ. ԺԲ. 38--39. Ղուկ Ի. 46.

Իւրաքանչիւր Հրէի ճակտին և կամ թևերուն վրայ՝ հին կտակարանէն խօսքեր պարունակող, ագաղաթեայ և կամ կաշեայ՝ նեղ ու երկար ե-

րիզներ կային սովորական, որ գրապանակ կ՚ը-
սուէին: Դպիրք և փարիսեցիք մարդոց առջև
աւելի աստուածապաշտ երևնալու համար՝ ի-
րենց գրապանակները կը լայնցընէին, և փառա-
ւոր ու պատկառելի երևելու համար՝ իրենց
հանդերձից քղանցքը կ՚երկընցընէին: Ընթրեաց
մէջ՝ առաջին բարձերն, և ժողովրդանոցներու
մէջ առաջին աթոռները գրաւել կը սիրեն, և
ամբարտաւանութեամբ կը փափաքէին, որ հրա-
պարակաց մէջ ամեն մարդ իրենց բարև կե-
նայ, և զիրենք՝ “վարդապե՛տս, վարդապե՛տ
իմ” անուանէ: Բայց դուք չըլլայ որ անուանէք
մէկը, կամ թողուք որ անուանեն զձեզ՝ վերին
և բարձր աստիճանի և պատուոյ իշխանութեամբ
ուսուցիչ և վարդապետ, և հայր ամենախնամ.
այս անուններն՝ Աստուծոյ Հօրն երկնաւորի, և
Քրիստոսի մեծ վարդապետին ձերոյ և ուսուց-
չին յատուկ է. այսպիսի հպարտ ոգի մի՛ ունե-
նաք. ձեր մէջէն արդեամբք և վարդապետու-
թեամբ և ուսմամբ մեծ եղողն անդամ՝ ամե-
նուդ սպասաւորն համարուելու չափ խոնարհու-
թիւն պիտի ունենայ: Ա՛վ որ իւր անձն ամբար-
տաւանութեամբ կը բարձրացընէ, հպարտու-
թեամբ սնքացեալ փուողն անշուշտ պիտի խո-
նարհի. հեզութեամբ խոնարհողը պիտի փառա-
ւորի և բարձրանայ:

Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի փա-
կէք զարքայութիւն երկնից առաջի մարդկան. դուք ո՛չ մը-
տանէք, և որոց մտանենն՝ չտայք թոյլ մտանել: Մատթ. ԻԳ.
13. Ղուկ. ԺԱ. 52.

Վա՜յ ձեզի՝ կեղծաւո՛ր դպիրներ ու փարի-

սեցիներ. դուք Աստուծոյ արքայութիւնը դա-շակող մարգարէութիւնները չարաչար կը մեկ-նէք. դուք չէք մաներ հոն, և մտնողներուն ալ արգելք կը լինիք։

Վա՛յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի շր-ջիք ընդ ծով և ընդ ցամաք առնել եկամուտ մի. և յորժամ լինիցի, առնէք զնա որդի գեհենի կրկին եւս քան զձեզ. Մատթ. ԻԳ. 14.

Վա՜յ ձեզի՝ կեղծաւոր դպիրներ ու փարիսե-ցիներ. դուք ծովերն ու ցամաքները կը պտը-տիք, ժուռ կուգաք՝ նորընծայ մը պատրաստե-լու կամ 'ի հեթանոսութենէ մէկը դարձնելու համար. և նորա զգայութենը, միտքն ու հոգին չը լուսաւորած, փառաց և ստակի և սնափա-ռութեան համար ձեզի աշակերտելնէդ յետոյ՝ զանի ձեզմէ երկու անգամ աւելի դժոխոց որ-դի կամ արժանի կ'ընէք. (որչա՛փ ճիշդ է Տեա-ռըն մերոյ այս խօսքը թէ՛ հին և թէ՛ նոր փա-րիսեցւոց համար). քանզի այդ եկամուտներն՝ առաջուց իրենց չունեցած կեղծաւորութիւնն ալ կ'առանան իրենց կեղծաւորագոյն ուսուցիչ-ներէն, որով աւելի մեղաւորագոյն կ'ըլլան։

Վա՛յ ձեզ առաջնորդք կոյրք, զի ասէք՝ որ երդնու 'ի տաճարն՝ չէ՛ ինչ, բայց որ երդնու յոսկին որ 'ի տաճարին է՝ պարտական է։ Մորո՛սք և կոյրք, զի՞նչ մեծ է, ոսկի՞ն եթէ տաճարն, որ սրբէ զոսկին։ Եւ որ երդնու 'ի սեղանն՝ չէ ինչ, բայց որ երդնու 'ի պատարագն՝ որ 'ի վերայ նորա է, պարտական է։ Յիմա՛րք և կո՛յրք, զի՞նչ մեծ է, պատարա՞գն եթէ սեղանն, որ սրբէ զպատարագն։ Իսկ արդ որ երդնուն 'ի սեղանն՝ երդնու 'ի նա և յամենայն՝ որ 'ի վերայ նորա է,

և որ երդուանայ ՚ի տաճարն՝ երդնու ՚ի նա և ՚ի բնակիչն նորա, և որ երդուանայ յերկինս՝ երդնու յաթոռն Աստուծոյ, և յայն՝ որ նստին ՚ի վերայ նորա։ Մտթ. ԻԳ. 15—21։

*Վա՜յ ձեզի՝ կոյր առաջնորդներ. վասն զի կ՚ըսէք. տաճարին վրայ երդնուլը բան մը չէ, բայց տաճարին մէջ եղած ոսկւոյն վրայ երդնուլը՝ ճշմարիտ արժանաւոր երդում մ՚է, այսինքն, այս երդումը կատարելու և պահելու է։ Անխելքնե՛ր և կոյրե՛ր, տաճարը չէ՞ ոսկւոյն սուրբ համարուելուն պատճառը. բայց ձեր շահը տաճարէն չէ, այլ ոսկիէն. ոսկին սուրբ համարելու էք, որպէս զի շատկէկ բերեն ձեզի. ի՛նչ սխալ վարդապետութիւններ շահու համար։ Այսպէս նաև պատարագը (հին գոհը) սեղանէն մեծ կը համարիք. և որպէս զի միշտ պարարտ եզներ, ոչխարներ, թռչուններ ևն. ունենաք, պատարագի երդումն՝ երդում, իսկ սեղանին վրայ եղած երդումը ոչինչ կը համարիք։ Գիտցէ՛ք. ո՛վ որ սեղանին կամ տաճարին վրայ երդում ընէ, թէ՛ Աստուծոյ աթոռոյն և թէ՛ նորա վերայ նստողին անուամբն երդումն ըրած կը համարուի։*

Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. որք ուտեն զտունս այրեաց. պատճառանօք երկարեն զաղօթս, նոքա զի առաւել դատաստան ընդունիցին։ Ղուկ. Ի. 47։

*(Հայկական հին ձեռագրաց և Յունական բնտիր բնագրաց մէջ չկայ այս տունը. միայն Լատինականն յաւելցուցած է)։*

Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի տասանորդէք զանանուխ և զսամիթ և զչաման, և թողէք զծանր ծանր օրինացն՝ զդատաստան և զողորմութիւն և զհա-

հաւատս․ զայս արժան էր առնել՝ եւ զայն չթողուլ ։ Առաջնորդք կոյրք, որ զմժղուկն քամէք՝ եւ զուղտս կլանէք ։ Մատթ. ԻԳ. 22—23 ։ Ղուկ. ԺԱ. 42 ։

Վա՜յ ձեզի՝ կեղծաւո՛ր դպիրներ ու փարիսեցիներ. դուք՝ որ օրինաց հրամայած ամենէն մանր բաներու տասանորդներն անգամ տալու պէտք է՝ կ'ըսէք, և մինչև իսկ օրինաց մէջ չը յիշուած անանուխին (նանէ), սամիթին (անիսոն) և չամանին (քիմէօն) տասանորդը վճարել կը վճռէք՝ օրէնքը մեկնաբանելով, ո՛վ կոյր առաջնորդներ. որ ինքզինքնիդ լուսաւոր, և ձեզնէ զատ ուրիշներն կոյր կը կարծէք ըստ առածին, մէկ կողմանէ ուղտերն կը կլլէք և միւս կողմանէ մժղուկները կը քամէք, դուք չնչին բաներու վրայ խիղճ ընել կը ձևացընէք, և ընդհակառակն Աստուծոյ կարևոր և ծանրագոյն օրէնքներն, այսինքն, արդարութիւնը՝ արդար դատաստանը առանց խղճի կը թողուք, հաւատաքը կ'արհամարհէք, և անգութ ու անողորմ էք. եթէ այս մեծամեծ բաներուն մէջ անխղճօրէն չընթանայիք՝ այդ տասանորդաց նկատմամբ յանդիմանութեան արժանի չէիք ըլլար ։

Վա՜յ ձեզ դպիրք եւ փարիսեցիք կեղծաւորք. զի սրբէք զարտաքին զբաժակին եւ զսկուտեղին, եւ 'ի ներքոյ լի են յափշտակութեամբ եւ անիրաւութեամբ ։ Փարիսեցի՛ կոյր, սրբեա՛ նախ զներքին բաժակին եւ զսկուտեղին, զի եղիցի եւ արտաքինն նորա սուրբ ։ Մատթ. ԻԳ. 14—15 ։ Ղուկ. ԺԱ. 39—40 ։

Վա՜յ ձեզի՝ կեղծաւո՛ր դպիրներ ու փարիսեցիներ. դուք ներքին մաքրութեան օրէնքներն գիտնալով հանդերձ՝ ձեր սիրտն յափշտակու-

*թեան և անխառնութեան զգացմամբք, և ձեր միտքն չարութեամբք լեցուցած՝ դուրսէն միայն մաքուր, սուրբ և արդար կ'երևցընէք ինքզինքնիդ, բաժակի և սկուտեղի մը դուրսի կողմը մաքուր և ներսի կողմը անմաքուր ըլլալուն պէս։ Կո՛յր փարիսեցի, նախ ներսդ մաքրէ՛, նախ սիրտդ սրբէ՛, և ապա դուրսդ մաքուր կ'ըլլայ. գործքերդ բարի կ'ըլլան անշուշտ, երբ բարեսիրտ ես։*

Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի նման էք գերեզմանաց բռելոց, որ արտաքոյ երևին գեղեցիկ՝ և ի ներքոյ լի են ոսկերօք մեռելոց և ամենայն պղծութեամբ։ Նոյնպէս և դուք արտաքոյ երևիք մարդկան արդարք, և ի ներքոյ լի էք կեղծաւորութեամբ և անօրէնութեամբ։ Մատ. ԻԳ. 26—27։ Ղուկ. ԺԱ. 44։

*Վա՜յ ձեզի՝ կեղծաւո՛ր դպիրներ ու փարիսեցիներ. դուք այո՛, կը նմանիք այն ճերմկցած գերեզմաններուն, զորս (դուք Հրէայքդ) տօներու ժամանակ դուրսերէն Երուսաղէմ տաճարին եկող բազմութիւնն զգուշացնելու և յանդէտս քսուելով պղծուելէ պահպանելու համար, ամեն տարի կը բռէք. անոնք դրսէն գեղեցիկ, դուք ալ դրսէն արդար կ'երևիք, բայց ներսէն՝ ինչպէս որ անոնք պիղծ բաներով և մեռելոց ոսկորներով լեցուն են, դուք ալ նոյնպէս կեղծաւորութեամբ և անօրէնութեամբ լի էք։*

Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի շինէք զշիրիմս մարգարէից՝ և զարդարէք զգերեզմանս արդարոց։ Եւ ասէք՝ եթէ էաք յաւուրս հարցն մերոց, ո՛չ հաղորդէաք արեան մարգարէիցն։ Ապա ուրեմն վկայէք զանձանց՝ եթէ որ-

դիք եք այնոցիկ՝ որ կոտորեցին զմարգարէսն ։ Եւ դուք լցէ՛ք զչափ հարցն ձերոց ։ Օձք, ծնունդք իժից, զիա՞րդ փախնիցիք 'ի դատաստանէ գեհենին ։ Վասն այդորիկ ահաւասիկ ես առաքեմ առ ձեզ մարգարէս և իմաստունս և դպիրս, և 'ի նոցանէ սպանանիցէք և 'ի խաչ հանիցէք, և 'ի նոցանէ տանջիցէք 'ի ժողովուրդս ձեր, և հալածիցէք 'ի քաղաքէ 'ի քաղաք ։ Որպէս զի եկեսցէ 'ի վերայ ձեր ամենայն արեան արդար հեղեալ յերկրի, յարենէն Աբելի արդարոյ մինչև ցարեանն Զաքարիայ որդւոյ Բարաքեայ՝ զոր սպանէք ընդ մէջ տաճարին և սեղանոյ ։ Ամէն ասեմ ձեզ. եկեսցէ այն ամենայն 'ի վերայ ազգիս այսորիկ ։ Մատթ. ԻԳ. 29—36։ Ղուկ. ԺԱ. 47—51 ։

*Վա՜յ ձեզի՝ կեղծաւո՛ր դպիրներ ու փարիսեցիներ. դուք արդարոց և մարգարէից գերեզմաններն կը զարդարէք ժողովրդեան առջև մարգարէից սիրող, արդարներն յարգող և նոցա յիշատակը պատուող երևնալով, ձեր անձանց պատիւ չորթելու համար. և կ'ըսէք եթէ մեր հարց օրերն ըլլայինք՝ այդ սրբոց արիւնը թափողներուն չէինք հաղորդակցեր. բայց դուք ձեր գործերովը կը վկայէք, կը յայտնէք, թէ զմարգարէները ջարդող մարդոց զաւակներն էք։ Դուք ձեր ժամանակակից մարգարէներն ու արդարները կը չարչարէք, կը հալածէք, կը նեղէք. վասն զի նոքա ձեր անօրէնութիւնները ձեր երեսին կուտան. իսկ մեռնելնէն ետև կը մեծարէք, զի ա՛լ զձեզ ժողովրդեան առջև չեն կշտամբեր։ Սակայն դուք հիմայ լցուցէք ձեր հայրերուն չափը, նոցա պակաս թողածներն դուք կատարեցէ՛ք՝ զիս և իմ առաքեալներս սպաննելով։ Ո՛վ օձեր և խորամանկ մարդիկ, ծնունդք իժից. ի՞նչպէս պիտի փախչիք Աստուծոյ բարկութենէն*

ըրէ՛ք ուզածնիդ. ահա ես պիտի ղրկեմ ձեզի մարգարէներ, իմաստուններ և դպիրներ (իւր աշակերտներին ակնարկելով). և դուք ձեր հարց անօրէնութեանց թերին լրացնելու համար՝ անոնցմէ պիտի սպաննէք, խաչը պիտի հանէք, ձեր ժողովարաններուն մէջ պիտի գանակոծէք ու պիտի տանջէք, և քաղքէ քաղաք պիտի հալածէք. այնպէս որ ձեր վրայ պիտի գայ, ձեզի դէմ պիտի բողոքէ բոլոր արդարոց արիւնը՝ արդար Աբէլի արիւնէն սկսած մինչև Բարաքէի (Զաքարիա մարգարէի հայրն՝ որ երկանուն կը թուի՝ Յովիդա և Բարաքէ) որդւոյն Զաքարիայի արիւնը, զոր տաճարին և սեղանին մէջ տեղն սպաննեցիք. Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, թէ այդ ամէն ոճիրք պիտի ծանրանան այս ազգին վրայ, և դուք պատասխանատու էք այդ ամեն չարեաց, այն ամեն սպանութեանց՝ որք ձեր հայրերուն ձեռամբ 'ի հնումն կատարուեցան. և այն ամենամեծ ոճրին՝ որ ձեր ձեռամբ տեղի պիտի ունենայ, և որուն քով ձեր հարց ըրածներն աննըշան բաներ են (Որդւոյն Աստուծոյ սպանումն):

Երուսաղէմ, Երուսաղէմ, որ կոտորեցեր զմարգարէսն՝ եւ քարկոծ առնէիր զառաքեալսն առ քեզ. քանի՞ցս անգամ կամեցայ ժողովել զմանկունս քո՝ զոր օրինակ ժողովէ հաւ զձագս իւր ընդ թեւօք, եւ ո՛չ կամեցարուք: Ահա թողեալ լիցի ձեզ տունդ ձեր աւերակ: Բայց ասեմ ձեզ՝ թէ ո՛չ եւս տեսանիցէք զիս յայսմ հետէ, մինչեւ ասիցէք, օրհնեալ եկեալ յանուն Տեառն: Մատթ. ԻԳ. 37—39:

Եւ այս խօսքերը լմնցունելուն պէս՝ Յիսուսի սիրտն ելաւ, և Երուսաղէմի մեծամեծաց անհաւատութեանն ու խստասրտութեանն վրայ

կսկծագին այսպէս խօսեցաւ. «Ո՛վ Երուսաղէմ Երուսաղէմ, ո՛վ բնակիչք Երուսաղէմի, որ ձեզի ղրկուած մարգարէներն ու Աստուծոյ պատգամաւորները կը ջարդէիք ու կը քարկոծէիք, քանի՞ քանի անգամ ձեր վրայ գթալով՝ իմ հովանաւոր թեւոցս պաշտպանութեան ներքեւ պատսպարել ուզեցի զձեզ, ինչպէս հաւ մի իւր ձագերն իւր թեւոց ներքեւ կը ժողվէ. ո՞րչափ սիրեցի զձեզ, ո՞րչափ խրատեցի ու վարդապետեցի. բայց դուք չուզեցիք խրատուիլ պաշտպանուիլ: Ահա ձեր տունը, ձեր պարծենցած տաճարը, ձեր հռչակաւոր քաղաքն յաւերակ պիտի դառնայ. Եւ ճշմարտիւ գիտցէ՛ք, թէ ա՛լ չը պիտի տեսնէք զիս: Ա՛չ, չը պիտի տեսնէք զիս. զի ես լոյս էի, և ձեր սիրտը խաւարի մէջ մնաց, զի դուք չը հաւատացիք յիս. ձեր սիրտերը կոյր էին, և միշտ կոյր մնացին, և տակաւին շատ ժամանակ ալ պիտի մնան, մինչև այն ատեն՝ որ հաւատաք, թէ ես եմ Մեսիայն՝ փրկիչն ձեր եւ ամենեցուն, և ըսէք՝ թէ օրհնեա՛լ ըլլայ անուամբ տեառն եկող Քրիստոսը»:

Ե. Լումայք այրւոյն աղքատի

Կայր Յիսուս ընդդէմ գանձանակին, տեսանէր թէ զիարդ ժողովուրդն արկանէր պղինձ ՚ի գանձանակն. և բազում մեծատունք արկին բազում ինչ: Եկն այրի մի՝ և արկ երկուս լումայս, որ է նաքարակիտ մի: Եւ կոչեցեալ զաշակերտսն, ասէ ցնոսա. ամէն ասեմ ձեզ՝ զի այրին այն աղքատ աւելի արկ քան զամենեսեան՝ որ արկին ՚ի գանձանակն: Քանզի ամենեքին յաւելորդաց իւրեանց արկին. այլ նա ՚ի չքաւորութենէ իւրմէ՝ զամենայն ինչ զոր ունէր

[illegible] : Մարկ. ԺԲ. 41—44 : Ղուկ. ԻԱ. 1—4 :

*Քրիստոս տաճարին մէջ՝ իւր եկեղեցւոյն աղքատիկ այլ ընտրեալ անդամներն քաջալերեց․ աղքատ այրիին ձգած լումային՝ որ բոլոր իւր ունեցածն էր, և զոր սրտանց կը նուիրէր, նախամեծար համարելով հարուստներուն ձգած շատ և առատ ընծաներէն՝ զորս իրենց գոյից աւելորդէն կուտային, և զոր տալով՝ բան մը չէր պակսեր իրենցմէ ։*

*Աղքատին լումայն քանի՜ քանի՛ եկեղեցիներ, դպրոցներ, մարդասիրական և հոգեւորական հաստատութիւններ կանգնած և բարի գործեր ըրած է այս երկրի վրայ․ և լումային փոխարէն ի՜նչ մեծ վարձատրութիւնք իրեն կ՚սպասեն երկնից մէջ․ զի այն լումայն նուիրելով՝ իրեն մէկ պէտքը զոհեց ։ Երբ Աստուած գաւաթ մի ցուրտ ջրոյն վարձքը չը մոռնար՝ անտարակոյս պիտի փոխարինէ այդ քանակութեամբ փոքր բայց սիրով անհուն զոհողութեան ։*



# ԳԼՈՒԽ ԼԵ.

ԳՈՒՇԱԿԷ ՔՐԻՍՏՈՍ ԶԿՈՐԾԱՆՈՒՄՆ ՏԱՃԱՐԻՆ ԵՒ ԶԱՒԵՐ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ, ԵՒՍ ԵՒ ԶԿԱՏԱՐԱԾ ԱՇԽԱՐՀԻՍ. — ՕՐԻՆԱԿ ՀԱՒԱՏԱՐԻՄ ԵՒ ՉԱՐ ԾԱՌԱՅԻՑՆ.— ԱՌԱԿ ՏԱՍՆ ԿՈՒՍԱՆԱՑ.— ՆԿԱՐԱԳԻՐ ԴԱՏԱՍՏԱՆԻՆ ՎԵՐՋՆՈՅ ԵՒ ՎԱՐՁՔ ԱՐԴԱՐՈՑ ԵՒ ՊԱՏՈՒՀԱՍ ՄԵՂԱՒՈՐԱՑ։

## Ա. Գուշակէ Քրիստոս զկործանումն տաճարին եւ զաւեր Երուսաղէմի, եւս եւ զկատարած աշխարհիս

Եւ ելեալ արտաքս Յիսուս 'ի տաճարէն գնայր. և մատեան աշակերտքն ցուցանել նմա զշինուածս տաճարին. Մատթ. ԻԴ. 1։ Եւ յելանելն նորա 'ի տաճարէ անտի, ասէ ցնա մի յաշակերտացն նորա. Վա՛րդապետ, տե՛ս որպիսի՞ են քարինքս, և որպիսի՞ շինուածք։ Մարկ. ԺԳ. 1։ Եւ յասել ոմանց զտաճարէն, թէ գեղեցիկ վիմօք և աշտարակօք զարդարեալ է։ Ղուկ. ԻԱ. 1։

*Յիսուսի աշակերտներն այս ըրին՝ անկից թերեւս գաղտնի խորհուրդ մը իմանալու ակընկալութեամբ. կամ ըստ որում իրենք անձամբ տաճարին աւերման սպառնալիքն Քրիստոսէ լսեցին. զայս ըսելով՝ թերեւս յայտնել կ'ուզէին, թէ այն գեղեցկաշէն տաճարին կործանման վրայ շատ կը ցաւին. որով 'ի գութ շարժել կը բաղձային զՅիսուս, որպէս զի այդ աղէտքն խափանելու համար իւր ամենակարող զօրութեամբն։*

Եւ նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. տեսանէ՞ք

զայդ ամենայն. ամէն ասեմ ձեզ, ո՛չ մնասցէ այդր քար ՛ի քարի վերայ՝ որ ոչ քակտեսցի։ Մատթ. ԻԴ. 2։ Մարկ. ԺԳ. 2։ Ղուկ. ԻԱ. 6։

*Յիսուս պատասխանն տուաւ ու ըսաւ անոնց. «Այդ գեղեցիկ տաճարին համա՞ր կ'ըսէք. բայց տակայն այդ սքանչելի շինուածքն պիտի կործանեն Հռովմայեցիք, այնպէս որ քար քարի վըրայ չը պիտի մնայ»։*

Եւ մինչ նստէր ՛ի լերինն Ձիթենեաց՝ մատեան առ նա աշակերտքն առանձինն և ասեն. ասա՛ մեզ. ե՞րբ լինիցի այդ. և կամ զի՞նչ նշան իցէ քոյոյ գալստեանն և կատարածի աշխարհիս. Մատթ. ԻԴ. 3։ Եւ մինչ նստէր նա ՛ի լերինն Ձիթենեաց յանդիման տաճարին՝ հարցանէին զնա առանձինն Պետրոս և Յակոբոս և Յովհաննէս և Անդրէաս. ասա՛ մեզ, ե՞րբ լինիցի այդ, և զի՞նչ նշան է՝ յորժամ կատարելոց իցէ այդ ամենայն։ Մարկ. ԺԳ. 3—4։ Ղուկ. ԻԱ. 7։

*Երբ Յիսուս Ձիթենեաց լերան վրայ տաճարին դիմացը նստած էր՝ աշակերտներն առանձին քովը եկան ու հարցուցին. «Քո երկրորդ գալստեանդ և աշխարհի վախճանին համար ի՞նչ նշան և ի՞նչ դէպք պիտի պատահին. կամ «քար քարի վրայ չը պիտի մնայ» ըսելովդ ըրած մարգարէութիւնդ, ո՛վ Տէր, ի՞նչ տեսակ նշան մ'է քո երկրորդ գալստեանդ. և կամ՝ տաճարին կործանման և դատաստանին մէջ տեղը ո՞րչափ ժամանակ պիտի անցնի»։*

Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. զգոյշ լերո՛ւք, գուցէ ոք զձեզ խաբիցէ. Զի բազումք եկեսցեն յանուն իմ, և ասիցեն՝ թէ ես եմ Քրիստոսն, և զբազումս մոլորեցուցանիցեն. Մատթ. ԻԴ. 4—5։ Մարկ. ԺԳ. 5—6։ Եւ

մերձեցաւ ժամանակ, մի՛ երթայցէք զհետ նոցա : Ղուկ. ԻԱ. 8 :

Քրիստոս նոցա ամեն հարցմանց չը պատասխաներ, այլ պէտք եղածներն միայն խօսեցաւ : Նախ քան զամենայն զգուշակեց, թէ սուտ քրիստոսներ պիտի գան, և շատերն պիտի մոլորեցընեն. ինչպէս երեւցան Սիմոն մոգ, Եղիմաս, Ապողոնիոս Տիանացի՝ սուտ մարգարէներ. արդ դուք զգուշացէ՛ք՝ կ՚ըսէ, չըլլայ որ խաբուիք : Այս ժամանակը մօտեցաւ, մի՛ հետևիք նոցա մոլորութեանցը :

10 Լսելոց էք պատերազմունս և զհամբաւս պատերազմաց, զգոյշ լերո՛ւք, մի՛ խռովիցիք. զի պարտ է լինել այնմ ամենայնի, այլ չեւ է կատարած : Յարիցէ ազգ յազգի վերայ, և թագաւորութիւն ՚ի թագաւորութեան. և եղիցին սովք և սրածութիւնք ՚ի տեղիս տեղիս. Մատթ. ԻԴ. 6—7 : Եղիցին ահաւորութիւնք և նշանք մեծամեծք յերկնից. Ղուկ. ԻԱ. 9-11: Այլ այն ամենայն սկիզբն է երկանց : Մարկ. ԺԳ. 7-8 :

Յիսուս՝ Հռովմայեցւոց ձեռամբ Երուսաղէմայ կործանումը կը նկարագրէ, և կը պատուիրէ աշակերտացն և հաւատացելոց իւրոց՝ չը խռովիլ բնաւ և չը զարհուրիլ. «Ասոնք ամենքը պիտի կատարուին՝ կ՚ըսէ, բայց դեռ աշխարհի վերջը չէ», թէև այս երկու դէպքերն իրարու նմանութիւն ունին :

Ինչպէս որ Ներոն Հռովմայեցւոց կայսեր ժամանակը ահագին պատերազմներ եղան, Գաղղիա եւ Սպանիա եւ այլ երկիրներ՝ Ներոնի վրայ զէնք առին, եւ բազմաթիւ Ասորք եւ Գերմանացի զօրք՝ նորա դէմ պատերազմելու գնացին :

Այսպէս ազգ ազգի և թագաւորութիւն թա-

գաւորութեան վրայ պիտի ըլլան, կըսէ Քրիստոս, շատ տեղ սով, շատ տեղ ժանտամահ, շատ տեղ գետնաշարժութիւնք պիտի պատահին. սակայն ասոնք չեն աշխարհի կատարածին նշանները, այլ սկզբնաւորութիւն են եւ նշան, թէ ընդ հուպ պիտի հասնին աղէտք։ Ոչ միայն երկրի վրայ ասոնք պիտի պատահին, այլ եւ երկնից մէջ ալ արհաւրալից երեւոյթներ եւ նշաններ տեղի պիտի ունենան 'ի սաստկումն մարդկան երկրի.

Բայց յառաջ քան զայս ամենայն, արկցեն զձեռս իւրեանց 'ի ձեզ և հալածեսցեն, և մատնեսցեն 'ի ժողովուրդս և 'ի բանտս, և տանիցին առաջի դատաւորաց և թագաւորաց վասն անուան իմոյ. Եւ լինիցի ձեզ այն 'ի վկայութիւն. Ղուկ. ԻԱ. 12-13։ Եւ զձեզ իսկ մատնեսցեն յատեանս, և 'ի ժողովուրդս տանջիցիք, և առաջի դատաւորաց և թագաւորաց կայցէք վասն իմ 'ի վկայութիւն նոցա, և ամենայն հեթանոսաց. Բայց նախ պարտ է աւետարանին քարոզել։ Մարկ. ԺԳ. 9-10։

Քրիստոս ոչ միայն իւր առաքելոց եւ աշակերտաց՝ նախ քան զկործանումն Երուսաղեմի կրելիք չարչարանքը կանխարկէ, այլ եւ ցկատարած աշխարհի բոլոր յինքն հաւատացելոց նեղութիւններն ու վշտերն, որք հրոյ եւ բոցի պէս պիտի մաքրեն զանոնք, եւ ոսկւոյ պէս 'ի բովս պիտի փորձեն։ Կրակը՝ ոսկին եւ արծաթը կըմաքրէ, իսկ յարդը կայրէ, նոյնպէս մի եւ նոյն տանջանքները զամբարիշտս կայրեն ու կըտապալեն, եւ զարդարս կըփորձեն՝ նման այն դաւաղանին, որ յարդը կըծեծէ, եւ ցորեանը կըզատէ։ Ձեր կրած տանջանքը՝ կըսէ Յիսուս, վկայութիւն պիտի ըլլին, թէ ճշմարիտ են ձեր հաւատքը. ձեր կրած չարչարանքն՝ զձեզ չարչարողներուն

զօրաւոր վկայութիւններ պիտի լինին Քրիստոսի ճշմարտութեան եւ աշխարհի մարդոց չարութեան համար. մինչդեռ իմ աշակերտներս Աստուծոյ նկատմամբ վկայութիւն պիտի տան մարդոց առջեւ՝ իրենց կրած տառապանօք: Այնպէս պէտք է որ նախ Աստուծոյ արքայութեան աւետարանը քարոզուի ընդ ամենայն ծագս երկրի:

Այլ յորժամ տանիցին զձեզ մատնել, մի՛ յառաջագոյն հոգայցէք, եւ մի՛ զմտաւ ածիցէք՝ թէ զի՞նչ խօսիցէք. այլ որ ինչ տացի ձեզ ի ժամուն յայնմիկ՝ զայն խօսեցէք. զի ո՛չ դուք էք որ խօսիցէքն՝ այլ Հոգին սուրբ. Մարկ. ԺԳ. 11: Արդ՝ դի՛ք ի սիրտս ձեր՝ մի՛ յառաջագոյն կրթել տալ պատասխանի: Զի ես տաց ձեզ բերան եւ իմաստութիւն, որում ո՛չ կարիցեն կալ հակառակ՝ կամ տալ պատասխանի ամենայն հակառակորդքն ձեր: Ղուկ. ԻԱ. 14—15:

*Երբ զձեզ ատեաններն հանեն՝ առաջուց կըրթութեան պէտք չունիք պատասխան տալու համար, եւ բնաւ իսկ հոգ մի՛ ընէք, զի սուրբ Հոգին՝ զոր ես պիտի ղրկեմ առ ձեզ. կսորվեցնէ ձեզ, թէ ինչ պէտք է խօսիլ ճշմարիտ հաւատոյ պաշտպանութեանն համար. վասնզի ճշմարտութիւնն փաստաբանութեան կարօտ չէ. ձեր ըրած խօսքերուն եւ տուած պատասխաններուն առջեւ որքան ալ պարզ են եւ դիւրին. ձեր հակառակորդներն ափ ՚ի բերան պիտի մնան:*

Մատնեսջիք եւ ի ծնողաց եւ յեղբարց եւ յազգականաց եւ ի բարեկամաց, եւ սպանանիցեն ի ձէնջ: Ղուկ. ԻԱ. 16: Մատնեսցէ եղբայր զեղբայր ի մահ՝ եւ հայր զորդի. եւ յարիցեն որդիք ի վերայ հարց, եւ սպանանիցեն զնոսա: Մրկ. ԺԳ. 12:

*Այնպիսի ժամանակ մը պիտի գայ, որ ա-*

տեն Քրիստոսի եւ նորա կենսաւէտ վարդապետութեանց եւ փրկարար կրօնից հակառակելու համար, եղբայրն զիւր եղբայրը, հայրն իւր որդին, ազգականք եւ բարեկամք՝ մէկզմէկ մահուատենից պիտի մատնեն, մէկզմէկ պիտի սպաննեն, եւ աշխարհ ատելութեան ասպարէզ պիտի դառնայ :

Յայնժամ մատնեսցեն զձեզ 'ի նեղութիւնս, և սպանանիցեն զձեզ. և եղիջիք ատեցեալ յամենայն ազգաց վասն անուան իմոյ : Եւ յայնժամ գայթակղեսցին բազումք, և զմիմեանս մատնեսցեն և ատեսցեն զմիմեանս : Եւ բազում սուտ մարգարէք յարիցեն, և զբազումս մոլորեցուսցեն : Եւ վասն բազմանալոյ անօրէնութեան, ցամաքեսցի սէր բազմաց : Բայց որ համբերեսցէ իսպառ, նա կեցցէ : Մատթ. ԻԴ. 9—13 : Մարկ. ԺԳ. 13 : Եւ մազ մի 'ի գլխոյ ձերմէ ո՛չ կորիցէ. և համբերութեամբ ձերով ստասջիք զոգիս ձեր : Ղուկ. ԻԱ. 18—19 :

Ատելութիւն, մատնութիւն եւ սպանումն՝ ասոնք պիտի լինին իմ հաւատացելոցս բաժինները, զորս ամեն ազգաց մէջ պիտի կրեն. Զայս տեսնելով շատեր 'ի հաւատոց պիտի բաժնուին, եւ ոչ միայն այսչափ, այլ եւ իրենք ալ պիտի սկսին հեթանոսաց եւ հակառակորդաց պէս վարուիլ աշակերտացս հետ, եւ մատնել իրենց եղբայրներն 'ի Քրիստոս : Եւ որպէս զի առաւել ծանրանայ աշխարհի դատապարտութեան վճիռն՝ շատ սուտ մարգարէներ ալ պիտի ելնեն, ու շատերը պիտի մոլորցունեն. անօրէնութիւնք պիտի շատնան, եւ շատերուն սէրը պիտի ցամքի, կամ առ յաճախութեան հալածանացն ինձ համար, շատերը պիտի տկարանան չարչարանաց

դիմադրաւել ։ Սակայն մի՛ վախնաք, ձեր գըլխէն մազ մ' անգամ չըպիտի կորսուի, եւ ով որ մինչեւ վերջը համբերութեամբ տանի այս ամեն փորձութեանց՝ նա յաւիտեան կենօք պիտի ապրի ։

Եւ քարոզեսցի աւետարանս արքայութեան ընդ ամենայն տիեզերս՝ ՚ի վկայութիւն ամենայն հեթանոսաց, և ապա եկեսցէ կատարած ։ Մատ. ԻԴ. 14 ։

Աստուծոյ թագաւորութեան աւետման բոլոր երկրի վրայ ՚ի վկայութիւն ամենայն հեթանոսաց քարոզուելէն վերջը պիտի գայ անմիջապէս վախճան Երուսաղեմի, եւ ապա վախճան աշխարհի ։

Այլ յորժամ տեսանիցէք շուրջ պատեալ զօրօք զԵրուսաղէմ, յայնժամ գիտասջիք՝ թէ մերձ է աւեր նորա ։ Ղուկ. ԻԱ. 20 ։ Արդ՝ յորժամ տեսանիցէք զպղծութիւն աւերածոյն, որ ասացեալ է ՚ի ձեռն Դանիէլի մարգարէի. զի կայցէ ՚ի տեղւոջն սրբութեան. որ ընթեռնուն՝ ՚ի միտ առցէ ։ Յայնժամ որ ՚ի Հրէաստանի իցեն՝ փախիցեն ՚ի լերինս, և որ ՚ի տանիս կայցէ, մի՛ իջցէ առնուլ ինչ ՚ի տանէ իւրմէ. և որ յանդի իցէ, մի՛ դարձցի յետս առնուլ զհանդերձս իւր ։ Մատ. ԻԴ. 15—18 ։ Մար. ԺԳ. 14—17 ։ Յայնժամ որ ՚ի Հրէաստանի իցեն, փախիցեն ՚ի լերինս, և որ ՚ի մէջ նորա իցեն՝ խուսափեսցեն, և որ ՚ի գաւառս իցեն՝ մի՛ մտցեն ՚ի նա, զի աւուրք վրէժխնդրութեան են այնոքիկ՝ առ ՚ի կատարելոյ ամենայն գրելոց ։ Ղուկ. ԻԱ. 21—22 ։

Ինչպէս որ Դանիէլ մարգարէ գրած էր կանխաւ ( Դլ. Թ. 27.) այնպէս ալ պիտի կատարուէր. Նորա գուշակութեանն համեմատ՝ Հրէից օրինաց առջեւ պիղծ համարուած բաներն՝ սրբութեան վայրին աւերածին մէջ պիտի տեսնուէին, ինչպէս

որ եղաւ ալ ։ Հռովմայեցւոց արծուէնշան դրօշակներն՝ որք շահապետք եւ պահապանք համարուած էին հռովմէական պետութեան, եւ ցկործանումն տաճարին Երուսաղեմի՝ առանձնաշնորհութեամբ իւիք քաղաքը չէին մտցըներ այդ դրօշակներն, — ( Հռովմայ կայսերաց պատկերներն նկարուած էին դրօշակներու վրայ, եւ ինչպէս ուրիշ պատկերներ, նոյնպէս և այս նըկարներն կը պաշտէին Հռովմայեցիք) . — տաճարին կործանմանէն յետոյ աւերակաց և դիակոյտներու վրայ ծածանեցան, և Երուսաղէմ պաշարման վիճակի մէջ դրուեցաւ ։

«Յայնժամ որ 'ի Հրէաստանի իցեն (Քրիստոնեայք)՝ փախիցեն 'ի լերինս, ինչպէս որ եղաւ ալ ։ Երուսաղէմի առաջին անգամ Կեստիոսէ պաշարուելէն և առանց պատճառի պաշարումը վերցուելէն անմիջապէս յետոյ՝ քրիստոնեայք այս գուշակութիւնը մտքերնին բերին, և Պելլա քաղաքն ու լեռնակողմերն փախչելով ազատեցան, ինչպէս Ղովտ իւր ընտանեօք երբեմն Սոդոմէն ։ Այնչափ յանկարծական եղաւ այս տագնապն, որ ժամանակ չունեցան տուն իջնելու, հագուստ առնելու, ևլն. ևլն. հապա փախչելու ջանացին.

Տաճարին կործանմանէն ժամանակ մը ետքը՝ ուրացողն Յուլիանոս կայսր ուզեց տաճարն վերըստին շինել, բայց չը կրցաւ. ժողվեց բոլոր Հըրէայքը, շատ օգնութիւն ըրաւ անոնց, շատ գանձեր վատնեց. բայց ամեն անգամուն՝ հիմերէն բոցեր ելան, և անկարելի եղաւ շինել. բոլոր գործաւորք քանիցս փորձեր ըրին, այնչափ անգամ բոցակէզ եղան ։

Ս. Յովհան Ոսկեբերան՝ ընդդէմ Հրէից գը֊

րած մէկ ճամբին մէջ կ'ըսէ. «Շինեաց Քրիստոս զեկեղեցի իւր.՚ի վերայ վիմի, և ոչ ոք զօրեաց յաղթել զնա. յաղթեաց պատճարն, և ոչ ոք կարաց կանգնել զնա։ Զոր կանգնէն Աստուած՝ ոչ ոք կործանել կարող է. զոր Աստուած կործանէ՝ ոչ ոք զօրեսցէ կանգնել։

Բայց վա՛յ իցէ յղեաց և սնուցանողաց յաւուրսն յայնոսիկ. զի եղիցի տագնապ մեծ ՚ի վերայ երկրի, և բարկութիւն ժողովրդեանն այնմիկ։ Եւ անկցին ՚ի սուր սուսերի, և գերեսցին յամենայն հեթանոսս. և Երուսաղէմ եղիցի կոխան յազգաց՝ մինչև կատարեսցին ժամանակք հեթանոսաց։ Ղուկ. ԻԱ. 23--24 ։ Մատթ. ԻԴ. 19 ։ Մարկ. ԺԳ. 17 ։

Ցղիներուն և ստնտու կանանց փախչիլը դըժուար պիտի ըլլի։ Մեծ տագնապ պիտի տիրէ երկրի վրայ. Խորայել պիտի զայրանայ յոյժ, և ընտանեկան պատերազմ պիտի բացուի. ասկից պատեհ առնելով հեթանոսք՝ վրան պիտի յարձակին, և սրերի պիտի վարեն իրենց երկիրները. յԵրուսաղէմ՝ պիտի խուժին լեցուին այդ ազգերն, մինչև որ անօրէնութեանն չափ լցցի», կամ ըստ ոմանց «մինչև հասցէ վախճան ժամանակաց ամենայն երկրի կամ ազգաց»։

Տիտոս Վեսպասիանոսի, զԵրուսաղէմ պաշարած օրն՝ Հրէից զատիկ էր, և շատ կողմերէ բազմաթիւ Հրէայք հոն ժողովուած էին ըստ Ցովսեպոսի։ Տիտոս յանկարծ պաշարեց զԵրուսաղէմ, և բնակիչք ժամանակ չունեցան փախչելու. տաճարն ալ հրոյ ճարակ եղաւ, թէև Տիտոս ՚ի զուր զանի կրակէն ազատել կը ջանայր։

Երուսաղէմ՝ քանի որ Աստուծոյ հաւատարիմ էր, եկեղեցին կը նշանակէր, ինչպէս որ

մարգարէից գրածներէն յայտնի է. Երուսաղէմ յայնժամ երկնային փառք կը նշանակէր. իսկ հիմայ այս կործանման միջոցին դժոխոց նկարագիրըն է՝ իւր անցեալ անհաւատարիմ և ապաշնորհ վիճակին համար ։ Նորա տեղ փոխանակեց հիմայ Նոր Սիօն և Նոր Երուսաղէմ՝ քրիստոնէից եկեղեցին ։

Յաղօթս կացէք՝ զի մի՛ լինիցի փախուստն ձեր ձմերանի, և մի՛ 'ի շաբաթու ։ Զի եղիցի յայնժամ նեղութիւն մեծ, որպիսի ո՛չ եղև 'ի սկզբանէ արարածոց աշխարհի մինչև ցայժմ, և ո՛չ այլ լիցի ։ Եւ եթէ ո՛չ կարճեին աւուրքն այնոքիկ, ո՛չ ապրէր ամենայն մարմին. բայց վասն ընտրելոցն կարճեսցին աւուրքն այնոքիկ. Մատթ. ԻԴ. 20—22 ։ Մարկ. ԺԳ. 18—20 ։

Աղօթք ըրէ՛ք, որ ո՛չ ձմեռն ըլլայ ձեր փախուստը և ո՛չ շաբաթ օրը. քանզի Հրէաստանի մէջ աշխարհի սկիզբէն նմանը չը տեսնուած նեղութիւն մի պիտի տիրէ. բայց ընտրեալներն կամ քրիստոնեայք ազատ պիտի մնան այդ չարիքներէն՝ փախչելով լեռներն 'ի կոյս ։

Երուսաղէմ երկու անգամ պաշարուեցաւ Հըռովմայեցիներէն ։ Առաջին պաշարման ատեն քրիստոնեայք քաղաքին մէջն էին. Աստուծոյ ողորմութեամբն՝ առանց պատճառի այս առաջին պաշարումը վերուցին Հռովմայեցիք. ահա այն ատեն քաղաքը դտնուող քրիստոնեայք Քրիստոսի այս կանխատասութիւնն յիշելով՝ փախան. և շատ բազմութիւն էր քրիստոնէից. „վասն ընտրելոցն կարճեսցին աւուրքն այնոքիկ„ ։

Յայնժամ թէ ոք ասիցէ ձեզ՝ ահաւասիկ աստ է Քրիստոս

ուրն կամ անդր , մի՛ հաւատայցէք ։ Զի յարիցեն սուտ քրիս-
տոսք եւ սուտ մարգարէք , եւ տացեն նշանս մեծամեծս եւ
արուեստս , մինչեւ մոլորեցուցանել՝ թէ հնար իցէ եւ
զընտրեալսն։ Ահա յառաջագոյն ասացի ձեզ ։ Արդ եթէ ա-
սիցեն ձեզ . ահաւասիկ յանապատի է , մի՛ ելանիցէք , եւ թէ
ահա յշտեմարանս է , մի՛ հաւատայցէք ։ Մատթ. ԻԴ. 23-26։
Մարկ. ԺԳ. 21—23 ։

*Բայց դուք չըլլայ որ սուտ մարգարէից խօս-
քին հաւատաք . մինչեւ անգամ հրաշքներ ալ
պիտի ընեն , ու այս տեղ՝ այն տեղ թէ՛ անա-
պատի , թէ՛ շտեմարաններու եւ թէ՛ ծածուկ
խորշերու ու թագուն տեղերու մէջ ձեզ քրիս-
տոսներ պիտի ցուցընեն , մինչեւ իսկ ընտրեալնե-
րըն ալ մոլորեցընելու փորձեր պիտի ընեն . սա-
կայն դուք մի՛ հաւատաք , զգոյշ կեցէ՛ք եւ յի-
շեցէ՛ք , որ ահա առաջուց ամեն բան իմաց տը-
ւի ձեզ ։*

Զի որպէս փայլակն՝ որ ելանէ յարեւելից՝ եւ երեւի մին-
չեւ յարեւմուտս , այնպէս եղիցի գալուստ որդւոյ մարդոյ ։
Մատթ. ԻԴ 27 ։

*Վասն զի Ճշմարիտ Քրիստոսին երկրորդ գա-
լուստը՝ խիստ փառաւոր եւ ահաւոր , արեւելքէն
ծագող եւ արեւմուտք մտնող փայլակի պէս պիտի
ըլլի ։*

Եւ եղիցին նշանք յարեգական եւ ՚ի լուսին եւ յաստեղս ։
Եւ յերկրի տագնապ հեթանոսաց՝ յահեղ բարբառոյ ծովու ծա-
ւալ եւ խռովութեան ։ Ցելանելոյ ոգւոց մարդկան յերկիւղէ
եւ ՚ի կարծեաց եկելոց ՚ի վերայ տիեզերաց ։ Ղուկ. ԻԱ.
25—26 .

*Արեգական , լուսնոյ եւ աստեղաց վրայ նշ-*

նշաններ պիտի երևին, և հեթանոսաց աշխարհի մէջ պիտի խուճապին սոսկալի աղաղակներ լսելով, նման այն ձայներուն՝ որ կը լսուին ծովին զարհուրելի ալէկոծութեան և մեծ խռովութեան ժամանակներն, առ երկիւղի որոտերէն ելած հառաչանքներ, և տիեզերաց վրայ եկած այս թշուառութեանց նկատմամբ կանխաւ եղած գուշակութեանց կատարման սարսափէն իրար խառնուած՝ պիտի ահաբեկեն երկրի բոլոր ազգերն։

Վաղվաղակի յետ նեղութեան աւուրցն այնոցիկ արեգակն խաւարեսցի, և լուսին ո՛չ տացէ զլոյս իւր, և աստեղք անկցին յերկնից, և զօրութիւնք երկնից շարժեսցին։ Եւ ապա երեւեսցի նշան Որդւոյ մարդոյ յերկինս, և յայնժամ կոծեսցին ամենայն ազգք երկրի. և տեսցեն զՈրդի մարդոյ եկեալ ի վերայ ամպոց երկնից զօրութեամբ և փառօք բազմօք։ Եւ առաքեսցէ զհրեշտակս իւր փողով մեծաւ, և ժողովեսցեն զընտրեալս նորա ի չորից հողմոց՝ ի ծագաց երկնից մինչև ի ծագս նոցա։ Մատթ. ԻԴ. 29—31. Մարկ. ԺԳ. 24—27. Ղուկ. ԻԱ. 27.

Այն տագնապին ու նեղութիւններուն անցնելէն յետոյ, արեգակն և լուսինն պիտի խաւարին, աստղերն՝ երկնից մէջ զօրաց գունդերու պէս պիտի շարժին, կամ պիտի աներևութանան, և կամ՝ իրարու պիտի զարնուին՝ իբրու թէ կը զահավիժին, և երկնից զօրութիւններն պիտի խռովին. ասոնք նշաններ են, թէ աշխարհի վախճանըն հասած է։ Անոնցմէ զատ՝ աստուածորդւոյն խաչն պիտի երևի ի երկնից վրայ պայծառ և լուսաւոր, ազգերն պիտի կոծին, և զՈրդին Մարդոյ զօրութեամբ և փառօք ամպերու վրայ ե-

*և չիմացնէր որդւյն ձեզ այն օրը՝ որպէս զի միշտ պատրաստ գտնուիք ։*

Զգո՛յշ լերուք անձանց, գուցէ ծանրանայցեն սիրտք ձեր շուայտութեամբ և արբեցութեամբ և հոգովք աշխարհականօք, և յանկարծակի հասանիցէ ՚ի վերայ ձեր օրն այն ։ Զի եկեսցէ որպէս որոգայթ հասանիցէ ՚ի վերայ ամենեցուն, որ բնակեալ են ընդ ամենայն երեսս երկրի ․ Ղուկ․ ԻԱ․ 34—35 ։ Այլ որպէս աւուրքն Նոյի, այնպէս եղիցի գալուստն Որդւոյ մարդոյ ․ Մատթ․ ԻԴ․ 37 ։ Զգոյշ եղերո՛ւք, հսկեցէ՛ք և կացէ՛ք յաղօթս, զի ո՛չ գիտէք ե՛րբ ժամանակն իցէ ։ Մարկ․ ԺԳ․ 33 ։ Մատթ․ ԻԴ․ 42 ։

*Եւ որպէս զի պատրաստ գտնուիք՝ Հայր Աստուած ալ չիմացըներ ձեզի նոյն օրը ։ Սակայն պէտք է գիտնաք, որ նոյն աւուր մօտենալուն վերոյիշեալ նշաններէն զատ ուրիշ նշան մ'ալ, այն ատենի մարդոց անհոգութեան, զեղխութեան և չարութեան մէջ յամառիլ մնալն պիտի ըլլայ ․ ինչպէս Ջրհեղեղին մօտ և մինչև Նոյի տապանը մտնելու ատեն մարդիկ անզեղջ և անհոգ մնացին, և ահա յանկարծ Ջրհեղեղն եկաւ, այնպէս ահա յանկարծահաս պիտի ըլլայ իմ երկրորդ գալուստս ։ Միշտ արթուն կեցէ՛ք, և աղօթք ըրէ՛ք, քանի որ այնպէս յեղակարծ պիտի ըլլայ այն ։*

## Բ. Օրինակ հաւատարիմ եւ չար ծառայից

Որպէս այր մի գնացեալ ՚ի տար աշխարհ՝ թողուցեալ զտուն իւր, և տուեալ ծառայից իւրոց իշխանութիւն, և իւրաքանչիւր զգործս իւր, և դռնապանին պատուէր տայցէ, զի արթուն լինիցի ։ Արդ՝ արթո՛ւն կացէք, զի ո՛չ

գիտէ՞ք ե՞րբ տէր տանն գայցէ՝ յերեկորեա՞յ՝ եթէ ՚ի մէջ գի-շերի՝ եթէ ՚ի հաւախօսի՝ եթէ ընդ առաւօտս : Գուցէ ե-կեալ յանկարծակի՝ գտանիցէ զձեզ ՚ի քուն : Բայց զոր ձեզ ասեմ, ամենեցուն ասեմ, արթո՛ւն կացէք : Մարկ. ԺԳ. 34—37 :

*Ինչպէս որ տանուտէր մը հեռու երկիր եր-թալու ատեն, տունը և տանը վերաբերեալ բո-լոր գործառնութիւններն իւրաքանչիւր ծառայի կը յանձնէ, և արթուն կենալու համար դռնա-պանին պատուէր կու տայ ու կը մեկնի, նոյնպէս և դուք արթուն կեցէ՛ք. վասն զի չը գիտէք, թէ տանուտէրն ե՞րբ կը դառնայ՝ երեկոյի՞ն, կէ՞ս գիշերուն, արշալուսի՞ն թէ առաւուն. չըլ-լայ որ յանկարծ գայ և ձեզ քնոյ մէջ գտնէ։ Այս պատուէրն ո՛չ միայն ձեզ կու տամ, այլ և բոլոր յիս հաւատացելոց՝ թէ՛ այժմ և թէ՛ յապայս :*

Զայն գիտասջի՛ք, եթէ գիտէր տանուտէրն՝ յորում պահու գող գայ, հսկէր՝ և ո՛չ տայր ական հատանել զտուն իւրոյ : Վասն այսորիկ և դուք եղերո՛ւք պատրաստք, զի յորում ժամու ո՛չ ակն ունիցիք՝ գայ Որդի մարդոյ : Մատթ. ԻԴ. 43—44 :

*Արթուն և պատրաստ կեցէ՛ք, զի նոյն օրը գողի պէս առանց խմաց տալու պիտի գայ. ե-թէ տանուտէրը գողին գալը գիտնար՝ արթուն կը մնար, և չէր թողուր, որ իր տանը ներքևէն ճամբայ բանար :*

Արթո՛ւն կացէք այսուհետեւ, յամենայն ժամ աղօթս ա-րարէ՛ք, զի արժանի լինիջիք զերծանել յայսմ յամենայնէ որ լինելոց է, և կալ առաջի Որդւոյ մարդոյ : Ղուկ. ԻԱ. 36 :

*Այսուհետեւ միշտ արթուն կեցէ՛ք եւ աղօթք ըրէ՛ք. որպէս զի արժանի լինիք երկրի վրայ գալիք բոլոր աղէտներէն զերծ մնալ, եւ նախատուրաց Որդւոյ առջեւ կանգնիլ ։*

Իսկ ո՞ ոք իցէ հաւատարիմ ծառայ եւ իմաստուն, զոր կացուսցէ տէր իւր ՚ի վերայ ծառայից իւրոց, տալ նոցա կերակուր ՚ի ժամու ։ Երանի՜ է ծառային այնմիկ՝ զոր եկեալ տէրն գտանիցէ արարեալ այնպէս ։ Ամէն ասեմ ձեզ, զի ՚ի վերայ ամենայն ընչից իւրոց կացուսցէ զնա ։ Ապա թէ ասիցէ ծառայն չար ՚ի սրտի իւրում, տէր իմ յամէ գալ, եւ սկսանիցի հարկանել զծառայակիցսն իւր, ուտիցէ եւ ըմպիցէ ընդ արբեցողս. եկեսցէ տէր ծառային այնորիկ, յաւուր յորում ո՛չ ակն ունիցի, եւ ՚ի ժամու յորում ոչ գիտիցէ ։ Եւ կտրեսցէ զնա ընդ մէջ, եւ զբաժին նորա ընդ կեղծաւորս դիցէ. անդ եղիցի լալ եւ կրճել ատամանց ։ Մատթ. ԻԴ. 45—51 ։ Ղուկ. ԺԲ. 42—46 ։

*Երանի՜ այն հաւատարիմ ծառային, որ տէրոջը հրամանին համեմատ՝ ժամանակին ծառայից կերակուր տալու պաշտօնը ճշդիւ կը կատարէ. այնպիսի ծառայն ամենէն բարձր պատուոյ և պաշտօնի կը հասնի ։ Ընդհակառակն վա՜յ այն ծառային, որ «Տէրս կ՚ուշանայ» ըսելով, սկսի ծեծել ծառայակիցներն, և արբեցողաց հետ ուտէ խմէ. և ահա յանակընկալ պահու տէրը կուգայ, զանի միւս ծառայակիցներէն կը զատէ, և կեղծաւորաց պատիժն ու պատուհասին բաժանորդ կ՚ընէ. հոն լալ և կրճել ատամանց միայն կը մնայ անոր ։*

## Գ․ Առակ տասն կուսանաց

Յայնժամ նմանեսցի արքայութիւն երկնից տասն կուսանաց, որոց առեալ զլապտերս իւրեանց ելին ընդ առաջ փեսայի և հարսին։ Հինգն ’ի նոցանէ յիմարք էին՝ և հինգն իմաստունք։ Յիմարքն առին զլապտերսն, և ձէթ ընդ իւրեանս ո՛չ բարձին։ Իսկ իմաստունքն առին ձէթ ամանովք ընդ լապտերս իւրեանց։ Եւ ’ի յամել փեսային, նիրհեցին ամենեքեան և ’ի քուն մտին։ Եւ ’ի մէջ գիշերի եղև բարբառ, ահա՛ փեսայ գայ, ելէ՛ք ընդ առաջ նորա։ Յայնժամ յարեան ամենայն կուսանքն, և յարդարեցին զլապտերս իւրեանց։ Ասեն յիմարքն ցիմաստունսն, տո՛ւք մեզ ’ի ձիթոյ ձերմէ, զի ահա շիջանին լապտերք մեր։ Պատասխանի ետուն իմաստունքն, և ասեն. գուցէ ո՛չ իցէ մեզ և ձեզ բաւական, այլ երթա՛յք ’ի վաճառականս, և գնեցէ՛ք ձեզ։ Իբրև նոքա գնացին գնել՝ եկն փեսայն, և պատրաստքն մտին ընդ նմա ’ի հարսանիսն, և փակեցաւ դուռնն։ Յետոյ գան և այլ կուսանքն՝ և ասեն. Տէ՛ր, Տէ՛ր, բա՛ց մեզ։ Նա պատասխանի ետ և ասէ. ամէն ասեմ ձեզ՝ թէ ո՛չ գիտեմ զձեզ։ Արթո՛ւն կացէք զի ո՛չ գիտէք զօր և ո՛չ զժամն. Մատթ. ԻԵ. 1—13։

*Յիսուս վերջին աւուր և երկնից արքայութեան յանակնկալս հասնիլն նմանեցուց՝ լապտերներով փեսային ու հարսին դիմաւորել պատրաստուող տասն կուսանաց, որոց հինգը իմաստուն և հինգը յիմար էին. կուսանք են ամենայն քրիստոնեայք, և լապտեր՝ լոյս հաւատոյ կը նշանակէ. Յիմարներն ձէթ չը հոգացին. իսկ իմաստունք ձէթ ունէին։ Իւղ կամ ձէթ՝ սէրն կամ գործք բարեաց ըսել է։ Երբ փեսայն ուշացաւ՝ ամենքն ալ քուն ինկան։ Կէս գիշերուան ձայն ելաւ, թէ փեսայն կուգայ. դիմաւորե-*

ցէ՛ք», արթնցան. իմաստունները կարողացան իրենց լապտերները վառել, իսկ յիմարք չը կըրնալով, իմաստուններէն փոխ ուզեցին. փեսային ուշանալը. աշխարհի կատարածէն յառաջ անցողս ժամանակն է, կուսանաց քունը, քրիստոնէից ժամանակաւոր մահը, և արթննալը՝ յարութիւն մեռելոց կը նշանակէ, որ անոնց անհընար է նորա կազմել պատրաստել, լապտերը՝ եթէ արդէն պատրաստուած չը լինի։

Իմաստունք պատասխանեցին, թէ անմեր ձէթը հազիւ մեզի եր բաւէ, կինար վաճառականներէն երթալ գնել»։ Անոնց չըլլար, փեսային հասալ, ՚ի պատրաստ գտնուողները հարսանեաց տունը մտան. և դուռը գոցուեցաւ։ Հարսանեաց տունը. երկնից արքայութիւնն է, որուն դուռը պիտի գոցուի. ձէթ կամ սէր ու գործք չունեցող լապտերաւորներուն, այսինքն, միայն հաւատք ունենալով՝ գործք չունեցողներուն դէմ։ Յետոյ եկող յիմար կուսանք՝ որ վաճառականներէն ձէթ գնելու գնացած էին, դարձան, դուռը զարկին, և «Մեզի ալ բա՛ց՝ Տէ՛ր» ըսին. անոնց փեսային մերժողական և վճռողական պատասխանեց, թէ «զձեզ չեմ ճանչեր»։

Ուրեմն արթուն մնացէք, ըսաւ Քրիստոս, վասն զի չէք գիտեր, թէ ե՞րբ է սահմանեալ օրն ու ժամը»։

## Դ. Նկարագիր դատաստանին վերջնոյ եւ վարձք արդարոց եւ պատուհաս մեղաւորաց

Այլ յորժամ եկեսցէ Որդի մարդոյ փառօք իւրովք՝ և ամենայն հրեշտակք ընդ նմա, յայնժամ նստցի յաթոռ փա-

իւր փառաց աթոռն պիտի նստի , բոլոր ազգք և ժողովուրդք անոր առջև պիտի ժողովին , և ոչխարները այծերէն զատելով իր աջ ու ձախ կողմը կայնեցընող Հովուի պէս՝ դառնալով իւր աջ ու ձախ կողմը պիտի ըսէ Թագաւորն երկնից Աստուած , և ձախակողմեանց պիտի ըսէ . անիծեա՛լք , օրՀնեա՛լք Հօր իմոյ , աշխարհի սկիզբէն ձեզի Համար պատրաստուած արքայութիւնն ժառանգեցէք . վասն զի իմ եղբայրներուս՝ աղքատներուն Հաց , ջուր , Հագուստ տուիք՝ երբ կարօտ էին , այցելութիւն ըրիք անոնց՝ երբ Հիւանդ կամ բանտարկեալ էին , Հիւրընկալեցիք զանոնք՝ երբ օտար կամ պանդուխտ էին , և աՀա այս բաներն ինձ եղած կը Համարիմ ,, : Իսկ ձախակողմեանց պիտի ըսէ . “Երթա՛յք յինէն , անիծեալնե՛ր , յաւիտենական Հուրը , որ սատանայի և նորա Հրեշտակաց (չարաց և մեղաւորաց՝ Հետեւողացն իւրոց) Համար պատրաստուած է . վասն զի Թէև զիս չէք տեսած , բայց ձեր առջև խոնարՀ և փոքր Համարուած աղքատաց՝ ոչ ջուր տուիք և ոչ Հաց և ոչ Հագուստ . ո՛չ երբ բանտի մէջ կամ Հիւանդ էին . տեսնել գացիք , և ո՛չ երբ պանդուխտ կամ օտարական էին . Հիւրընկալեցիք զանոնք : Ասոնք յաւիտենական տանջանաց պիտի մտանեն . Իսկ արդարք յաւիտենական կեանքը պիտի ժառանգեն :

Մերձեցաւ տօն բաղարջակերացն՝ որ կոչի Պասեք . Ղուկ. ԻԲ. 1 : Եւ եղև իբրև կատարեաց Յիսուս զամենայն զբանս զայսոսիկ , ասէ ցաշակերտսն իւր . Գիտէք , զի յետ երկուց աւուրց զատիկ լինի . և Որդի մարդոյ մատնի ի խաչ ելանել : Մատթ. ԻԶ. 1—2 :

Պասքա կամ Պասեք ըսուած 'բաղարջակերաց տօնը մօտեցաւ։ — Պասեք կը նշանակէ՝ անցք, անցանելն տէրուն յեգիպտոս ընդ տունս Հրէից — Երբ Յիսուս վերջին խօսակցութիւնն աւարտեց՝ ըսաւ իւր աշակերտաց. գիտէ՞ք, որ երկու օրէն յետոյ Զատիկ է, (վասն զի. նոյն օրը չորեքշաբթի էր, և նոյն տարին զատիկը ուրբաթ օրուան կիյնար), և Որդին մարդոյ նոյն օրը պիտի մատնուի 'ի խաչ ելնելու։



# ԳԼՈՒԽ ԼԸ.

ԽՈՐՀՈՒՐԴ ՀՐԷԻՑՆ ԶՅԻՍՈՒՍԷ՝ ՍՊԱՆԱՆԵԼ ԶՆԱ.— ԸՆԹՐԻՔՆ Ի ՏԱՆ ՍԻՄՈՆԻ ԲՈՐՈՏԻ. ԵՒ ԶԱՅՐՈՅԹ ՅՈՒԴԱՅԻ ՄԱՏՆՉԻ. — ԼՈՒԱՑՈՒՄՆ ՈՏԻՑ ԱՌԱՔԵԼՈՑՆ Ի ՎԵՐՆԱՏԱՆ, ԵՒ ԽՈՐՀՈՒՐԴ ՍՈՒՐԲ ՀԱՂՈՐԴՈՒԹԵԱՆ.— ԽՐԱՏ ԽՈՆԱՐՀՈՒԹԵԱՆ ԵՒ ՊԱՏՈՒԻՐԱՆ ՆՈՐ. — ԴՈՒՇԱԿՈՒԹԻՒՆ ՈՒՐԱՑՈՒԹԵԱՆՆ ՊԵՏՐՈՍԻ ։

## Ա. Խորհուրդ Հրէից զՅիսուսէ՝ սպանանել զնա

Յայնժամ ժողովեցան քահանայապետքն և դպիրք և ծերք ժողովրդեանն 'ի սրահ քահանայապետին, որում անուն էր Կայիափա։ Եւ արարին խորհուրդ՝ զնենգութեամբ ունիցին զՅիսուս, և սպանցեն։ Բայց ասէին, թէ մի 'ի տօնի աստ՝ զի մի խռովութիւն լինիցի 'ի ժողովրդեանն։ Մատթ. ԻԶ. 3—5։

Քահանայապետներն ու ծերակուտի անդամները Կայիափա քահանայապետին սրահը ժողովեցան, և Քրիստոսի ժողովրդականութենէն

վախնալով՝ այն տօնի բազմութեան մէջ խռովութիւն չը ձգելու համար՝ զՅիսուս նենգութեամբ բռնելու և սպաննելու խորհուրդ ըրին : Քանզի քանի՛ քանի անգամ՝ զանի սպաննել ուզեցին ու չը կըցան, լեռնէն վար գլտորել ուզեցին և չը յաջողեցան, իրենց ծառայքն ղըրկեցին, բայց անոնք ձեռք չը կըցան դնել վրան: Յիսուս արդէն ըսած էր, թէ Որդին մարդոյ պիտի մատնուի այս զատկի տօնին. Յուդա՝ որ լսած էր այս խօսքերը, ահա հիմայ գտաւ պատեհը զՅիսուս մատնելու, և անշուշտ գնաց քահանայապետաց իմաց տուաւ. անոր իմաց տալուն վրայ ժողովեցան քահանայապետին սրահին մէջ, և խորհուրդ կազմեցին :

Բ· Ընթրիքն 'ի տան Սիմոնի բորոտի եւ գայլոյթ Յուդայի մատնչի

Իբրեւ եկն Յիսուս 'ի Բեթանիա 'ի տուն Սիմոնի բորոտի, մատեաւ առ նա կին մի՝ որ ունէր շիշ իւղոյ ծանրագնի, և հեղեաց 'ի գլուխ նորա 'ի բազմականին : Իբրեւ տեսին աշակերտքն՝ բարկացան և ասեն . ընդէ՞ր է կորուստ այդ իւղոյդ : Զի մարթ էր վաճառել զդա մեծագնի՝ և տալ աղքատաց : Գիտաց Յիսուս և ասէ ցնոսա . զի՞ աշխատ առնէք զկինդ, գործ մի բարի գործեաց դա յիս : Յամենայն ժամ զաղքատս ընդ ձեզ ունիք, բայց զիս ո՛չ յամենայն ժամ ընդ ձեզ ունիք : Արկանել դորա զիւղդ 'ի մարմին իմ, առ 'ի թաղելոյ զիս նշանակեաց : Մատթ. ԻԶ. 6—12 : Դա՝ զոր ունէրն արար . յառաջագոյն կանխեաց զմարմին իմ 'ի նշան թաղմանս : Ամէն ասեմ ձեզ . ուր և քարոզեսցի աւետարանս այս ընդ ամենայն աշխարհ, և զոր արար դա՝ խօսեսցի 'ի յիշատակի դորին : Մարկ. ԺԴ. 8—9 :

Սիմոն բորոտ իւր տանը մէջ 'ի Բեթանիա ճաշ մի տուաւ 'ի պատիւ Յիսուսի ։ Այս Սիմոնը կամ՝ բորոտութենէ 'ի վաղուց բժշկուած էր Յիսուսի ձեռօք, և կամ՝ բորոտ՝ մականունն էր. վասն զի օրէն չէր բորոտի մօտենալ։ Սեղանին վրայ կերակրոյ ատեն կին մը եկաւ, ձեռքը ունեցած շիշ մ՚ազնիւ և ծանրագին իւղը Յիսուսի գլխէն 'ի վար լեցուց 'ի ներկայութեան սեղանակցաց նորա և աշակերտացն ։ Աշակերտները բարկացան կամ՝ նախանձեցան այդ եղելութեան վերայ. — Մէկ Յուդա մատնիչը միայն էր, որ չարամտութեամբ և կծծութեամբ այս գիտողութիւնը կ՚ընէր, բայց աշակերտներէն ալ ոմանք՝ թերևս չը գիտնալով Յուդայի միտքը, անշուշտ նորա թելադրութեամբը, ձայնակցեցան անոր — յագահութենէն և ո՛չ յաղքատասիրութենէ շարժեալ կ՚ըսէր. «երեք հարիւր դենար արժող այդազնիւ իւղն մեղք չէ՞ր՝ որ այդպէս վատնեցաւ. պէտք էր ծախել և աղքատաց բաժնել ։

Յուդա՝ որ արկղապետ էր և կը բաղձար, որ այդ 300 դենարը կամ՝ դահեկանն իւր ձեռքին անցնի, իւր ագահութեանն գեղեցիկ և բարեպաշտական գոյն մի կուտար ։

Յովհաննու պատմութենէն կ՚երևի, որ բարեպաշտներու գանձանակին տուած ողորմութիւններէն կը գողնար Յուդա ։ Յովհաննէս՝ ականատես Յուդայի գործոց՝ զանի գող կ՚անուանէ ։

Յիսուս տեսնելով կամ՝ զգալով աշակերտաց և մանաւանդ մատնչին նախանձն ու զայրոյթն՝ ըսաւ անոնց. «թողէ՛ք, ինչո՞ւ կը նեղացրէք զայդ կինը. դա բարի գործ մի կատարեց. դուք

Մովսիսի բանին պէս միշտ աղքատներ ունիք և պիտի ունենաք ձեր հետ, կարող էք միշտ ողորմութեան գործեր ընել՝ երբ ուզէք, և պարտական իսկ էք. սակայն իմ ձեզնէ մարմնով բաժնուելու ժամանակս խիստ մօտ է. դա իմ մարմնոյս պատիւ մ՚ընել ուզեց. զիս յառաջագոյն խնկելու եկաւ, և իմ պատանքս և իմ մահըս ու թաղումս նշանակեց. իւր մեծ հաւատոց և իւր եռանդագին սիրոյն՝ որ առ իս, նշան մ՚էր և ապացոյց սորա ըրածը. — Ինչպէս յայտնի է՝ անոյշ խնկերով և իւղերով կ՚օծէին և կը խնկէին մեռեալը ՚ի նախնումն: — վասն այդորիկ ուր որ աշխարհի վրայ քարոզուի իմ աւետարանս, դորա ըրածն ալ պիտի խօսուի, և յիշատակը չը պիտի մոռացուի իսպառ»:

Արդ եմուտ սատանայ ՚ի Յուդա ՚ի կոչեցեալն Իսկարիովտացի, որ էր ՚ի թուոյ երկոտասանիցն. չոգաւ, ետ բանս ընդ քահանայապետսն եւ ընդ դպիրս եւ ընդ իշխանս ժողովրդեանն, զի մատնեսցէ զնա նոցա. Ղուկ. ԻԲ. 3-4: Եւ ասէ. Զի՞նչ կամիք տալ ինձ, եւ ես մատնեցից զնա ձեզ: Եւ նոքա կշռեցին նմա երեսուն արծաթի. եւ յայնմհետէ խնդրէր պարապ, զի մատնեսցէ զնա նոցա: Մատթ. ԻԶ. 15-16: Նոքա իբրեւ լուան՝ խնդացին, եւ խոստացան տալ նմա արծաթ. եւ խնդրէր, թէ զիարդ պարապով մատնեսցէ զնա. Մարկ. ԺԴ. 11: Եւ խնդացին, եւ խոստացան տալ նմա արծաթ. եւ յանձն առ, եւ խնդրէր պարապ մատնել զնա նոցա ծածուկ յամբոխէ: Ղուկ. ԻԲ. 5—6:

Սատանայն՝ Յիսուսի երկոտասան ընտրեալ առաքելոց մին՝ Յուդա Իսկարիովտացին գտաւ իրեն գործի, նորա ագահութիւնն իւր ընելիք գործոյն միջոց ընտրեց. նա գնաց քահանայա-

*պետներուն , նոցա հետ՝ իբր մատնութեան գին՝
երեսուն արծաթի սակարկութիւն ըրաւ ։ Նորա
ուրախացան , սիրով ընկալան զայդ սակագինը .
այնուհետեւ Յուդա պատեհ առիթ կը փնտռէր
զՅիսուս՝ իւր տէրը մատնելու , ժողովուրդէն
ծածուկ կամ հեռու՝ զի ժողովրդեան Յիսուսի վը-
րայ ունեցած համակրութենէն շատ կը վախէր ։*

### Գ. Լուացումն ոտից աշակերտաց 'ի վերնատան եւ խորհուրդ Ս. Հաղորդութեան

Եւ յառաջնում աւուր բաղարջակերացն մատեան աշակերտքն
առ Յիսուս , եւ ասեն . ո՞ւր կամիս , զի պատրաստեսցուք
քեզ ուտել զպասեքն ։ Եւ նա ասէ ցնոսա . երթա՛յք 'ի քա-
ղաքն առ այս ոմն, եւ ասացէ՛ք ցնա վարդապետն ասէ, ժա-
մանակ իմ մերձեալ է , առ քեզ առնեմ զպասեքս աշակերտօք-
հանդերձ ։ Եւ արարին աշակերտքն՝ որպէս հրամայեաց նոցա
Յիսուս , եւ պատրաստեցին զպասեքն Մատթ. ԻԶ. 17-19 ։
Եւ յառաջնում աւուր բաղարջակերացն, յորժամ զպասեքն զե-
նուին , ասեն ցնա աշակերտքն. ո՞ւր կամիս՝ երթիցուք պատ-
րաստեսցուք , զի կերիցես զպասեքն ։ Եւ առաքէ երկուս
յաշակերտաց անտի , եւ ասէ ցնոսա . երթա՛յք 'ի քաղաք . եւ
ելցէ ձեզ առաջի 'ի քաղաքն , պատահեսցէ ձեզ այր մի՝ որ
սափոր ջրոյ յուսոյ ունիցի , երթա՛յք զհետ նորա . եւ յո՛ւր
տուն մտանիցէ՝ ասասջի՛ք ցտանուտէրն . վարդապետն ասէ՝
ո՞ւր են իջեւանքն , ուր աշակերտօքս ուտիցեմ զպասեքն . եւ
նա ցուցցէ ձեզ վերնատուն մի մեծ զարդարեալ , անդ պատ-
րաստեսջիք մեզ ։ Եւ գնացին պատրաստել աշակերտքն նորա .
եկին 'ի քաղաքն , եւ գտին՝ որպէս ասաց նոցա , եւ պատ-
րաստեցին զպասեքն . Մարկ. ԺԴ. 12—16 ։ Եկն օր բա-
ղարջակերացն՝ յորում օրէն էր զենուլ զՊասեքն ։ Ղուկ. ԻԲ.
7—13 ։

*Հրէից Նիսան կամ առաջին ամսոյն չորեք-*

տասներորդ օրը՝ առաջին օր Բաղարջակերաց․ և հնգետասաներորդ օրն ալ՝ առաջին օր Զատկի կամ Փասեքի և կամ Պասեքի կ՚ըսուին ։ Զատիկ կամ Պասեք՝ զատկական գառին և տօնին միանգամայն կը զրուցուի ։

Չորեքտասաներորդ աւուր երեկոյին — երկու երեկոյից մէջ տեղն, ըստ որում Հրեայք երկու երեկոյ կը համարէին՝ մէկը յետմիջօրէն մինչև արեւու մուտը, միւսը արեւու մտանելէն մինչև գիշերուան երրորդ ժամը — , քահանայից ձեռօք զատիկական գառը կը զենուին, և այս կը պատրաստէին կ՚եփէին, և լեղի եղեգով կամ բաղարջով կը ճաշէին ։

Քրիստոս՝ չորեքտասաներորդ աւուր, այսինքն զատկի տօնին նախընթաց երեկոյին՝ Պասեքը պատրաստել տուաւ ։

Գիտնալ արժան է, որ բաղարջակերաց տօնը եօթն օր կը տեւէ, և առաջին օրն՝ օր բաղարջակերաց միայն կ՚ըսուի՝ առջի երեկոյէն բաղարջ ու գառն ուտելնուն համար, իսկ երկրորդ աւուր, այսինքն ամսոյն 15 ին՝ առաջին օր տօնի բաղարջակերաց կ՚ըսուի․ ըստ որում այս օրը սուրբ կը պահէին․ ուստի Քրիստոս Հաղորդութեան խորհուրդը բաղարջով կատարեց ։

Ի սկսանել չորեքտասաներորդի աւուր ամսոյն առաջնոյ՝ յերեկօրեայ բաղարջ ուտիցէք․ (Հրեայք օրերն առջի իրիկունէ համրելով՝ մինչև 24 ժամ՝ հետեւեալ աւուր երեկոյն օր մը կը սեպեն)․ յաւուրն հնգետասաներորդի նորին ամսոյ՝ տօն բաղարջակերաց տեառն ։ Զեօթն օր բաղարջ կերիջիք, և օրն առաջին անուանեալ սուրբ եղիցի ձեզ․ զամենայն գործ սպասաւո-

րութեան մի՛ առնիցէք»․ Ղևտ. ԻԳ. 6։

«Իբր քաղաքը մտնէք՝ կ'ըսէ Քրիստոս, ձեզ մարդ մի պիտի պատահի»․ սա իր ամենագիտութեան նշանն է։ Կը կարծուի, որ այդ մարդը՝ Քրիստոսի աշակերտներէն մին եղած լինի․ և քիչ շատ տեղեակ՝ թէ Յիսուսի ժամանակն հասած է։

«Արդ Յիսուս երեքշաբաթերորդ օրը պատրաստել տուաւ զատկական ընթրիքը, և այն օրը՝ որ հինգշաբթի էր, ուրբաթ լուսնալու գիշերը՝ իրիկուընէ սկսեալ՝ այն զարդարեալ ու մեծ վերնատան մէջ ընթրիքը կատարեց։

Բեթլեհէմի անշուք քարայրին մէջ ծնած էր Քրիստոս․ բայց այս փրկութեան խորհուրդը՝ զարդարեալ վերնայարկի մէջ կատարեց 'ի յանդիմանութիւն և 'ի կշտամբութիւն թերևս այժմու նորաղանդեաց։

Եւ ընդ երեկոյս եկն անդ երկոտասանիւքն հանդերձ. Մարկ. ԺԴ. 17։ Յառաջ քան զտօնն զատկին գիտէր Յիսուս, թէ հասեալ է ժամ նորա, զի փոխեսցի յաշխարհէս առ Հայր, սիրեաց զիւրսն, որ յաշխարհի աստ էին, ի սպառ սիրեաց զնոսա։ Յովհ. ԺԳ. 1։

Երբ երեկոյ եղաւ՝ երկոտասան առաքելոց հետ վերնատունն եկաւ․ և քանի որ կը յիշէր, թէ խիստ կը մօտենար 'ի չարչարանս և 'ի մահ՝ այնքան սէրը կ'աւելնար նոցա վրայ, որ իւր մեկնելէն ետքն ալ դեռ երկրի ամեն նեղութեանց պիտի մատնուէին վասն անուան իւրոյ, և շատերն իրենց կեանքը պիտի դնէին 'ի քարոզութիւն աւետարանին։

Եւ իբրեւ երեկոյ եղեւ՝ էր բազմեալ ընդ երկոտասան աշակերտսն. Մատթ. ԻԶ. 20. Եւ իբրեւ ժամ եղեւ՝ բազմեցաւ, եւ երկոտասան առաքեալքն ընդ նմա. Եւ ասէ ցնոսա. ցանկութեամբ ցանկացայ զայս Պասեք ուտել ընդ ձեզ մինչչեւ չարչարեալ իցեմ. Քանզի ասեմ ձեզ, թէ ոչ եւս կերայց ի սմանէ, մինչեւ լցցի յարքայութեան Աստուծոյ. Եւ ընկալեալ բաժակ՝ գոհացաւ եւ ասէ. առէք զայդ եւ բաժանեցէք ի ձեզ. Ասեմ ձեզ, թէ ոչ այսուհետեւ ըմպից ի բերոյ որթոյ՝ մինչեւ եկեսցէ արքայութիւն Աստուծոյ. Ղուկ. ԻԲ. 14—18.

*Այն բաժակը՝ զոր օրհնեց, և տուաւ աշակերտացը՝ որ իրենց մէջ բաժնեն, չէր Հաղորդութեան բաժակը՝ զոր ապա ընթրեաց երկրորդ մասին մէջ պիտի բաշխէր նոցա. այլ Հրէից այսօրեայ սովորութիւնն էր՝ զոր և Քրիստոս կատարեց. ընտանեաց մէջէն երիցագոյնը բաժակ մի ձեռքը կ'առնուր, շատ մը օրհնութիւններ կը կարդար, նախ ինքը կը խմէր, և յետոյ կուտար իւր ընտանեաց իւրաքանչիւրին՝ որ խմէ: Գառը կերած ժամանակնին ալ՝ հետևեալ գոհաբանական սաղմոսները կ'երգէին. գլուխ ՃԺԳ. ՃԺԴ. ՃԺԵ. ՃԺԶ. ՃԺԷ. ՃԺԸ.*

*Վերը ըսինք՝* ընթրեաց երկրորդ մասին մէջ. *այո՛, վասն զի թէև այս ընթրիքը մէկ էր, բայց երկու մասերու կը բաժնուէր, որոնք երկու ընթրիք կը կոչուէին: Առաջին անգամ՝ միայն հրով խորովեալ զատկական գառը կը բերէին բաղարջով և վայրենի եղեգամբ, որ* օրինական ընթրիք *կ'անուանէր. այս գառէն բան մը չը պիտի մնար առտուան, ոսկրներն անգամ կ'այրէին.*

*Այս ընթրիքը աւարտելէն յետոյ — ժամանակ կ'անցնէր — ուրիշ կերակուրներ կը բերէին*

ըստ հաճոյից՝ բաց 'ի խմորուն հացէ, և տրախութիւն կ'ընէին. ընդհանրապէս այս երկրորդները կամ՝ ընթրիքը՝ մեծահաց կ'ըլլար։ Արդ Յիսուս Քրիստոս՝ առաջին Օրինական ընթրեաց մէջ հին դառը զոհեց (Մովսիսական Զատկը), երկրորդ ընթրեաց մէջ (այն գիշեր) ինքզինքը Հաղորդութեան Ս. Խորհրդոյն մէջ պատարագեց անարիւն զենմամբ, և հետևեալ օրն՝ ուրբաթու ցերեկին՝ իր պատուական կեանքը զոհեց խաչին վրայ զենմամբ։

Ծանօթութիւն մ'ալ պէտք կ'ըլլայ հոս տալ, թէ ըստ Մովսիսական օրինաց Հրէայք զատկական դառը խորովելու ատեն՝ խաչաձև, այսինքըն, երկայնքէն և լայնքէն երկու շամփուրներով կը շամփրէին; և անճապարանօք կ'ուտէին՝ իբրև իրենց նախնեաց գերութենէն շուտով խալսելուն նշան. միատեղ ուտողներն ալ՝ իրենց պահաս և քամնէն աւելի անձինք պէտք չըլլային։

«Ոչ ևս կերայց 'ի սմանէ, ոչ ևս արբից 'ի բերոյ որթոյ. ոչ թէ զատկին կամ գինւոյ համար կ'ըսէ Քրիստոս, ըստ որում յետ յարութեանն ալ աշակերտաց հետ կերաւ ու խմեց, այլ նոյա ներգործութեանն և զօրութեանն համար կ'ըսէ. այսինքն, "Այսուհետև երկինքը, իմ արքայութեանս մէջ ձեզի հետ կամ դուք ինձի հետ նորանութիւն պիտի վայելենք։

Եւ 'ի լինել ընթրեացն՝ սատանայի իսկ արկեալ էր 'ի սիրտ, զի մատնեսցէ զնա Յուդայ Սիմովնի Իսկարիովտացւոյ. Գիտաց Յիսուս, զի զամենայն ինչ ետ Հայր 'ի ձեռս նորա, և թէ յԱստուծոյ ել և առ Աստուած երթայ, յառնէ յընթրեաց անտի և դնէ զհանդերձսն, և առեալ ղենջակ մի ած-

ածաց. եւ ապա առեալ ջուր՝ արկ 'ի կոնս, եւ սկսաւ լուանալ զոտս աշակերտացն, եւ սրբէր զղենջակաւն՝ զոր ածեալն էր. Գայ առ Սիմովն Պետրոս. եւ նա ասէ ցնա. Տէ՛ր, դո՞ւ զիմ զոտս լուանաս։ Պատասխանի ետ նմա Յիսուս եւ ասէ. զոր ինչ ես գործեմ՝ դու այժմ ոչ գիտես, բայց ապա գիտասցես։ Ասէ ցնա Պետրոս. ոչ լուասցես զոտս իմ յաւիտեան։ Պատասխանի ետ նմա Յիսուս. եթէ ոչ լուացից զքեզ՝ ոչ ունիս ընդ իս մասն։ Ասէ ցնա Սիմովն Պետրոս. Տէ՛ր, մի՛ միայն զոտս իմ, այլ եւ զձեռս եւ զգլուխ։ Ասէ ցնա Յիսուս. լուացելոյն չէ ինչ պիտոյ, բայց զի զոտսն լուանայցէ. քանզի ամենեւին սուրբ է, եւ դուք սուրբ էք, այլ ոչ ամենեքին։ Զի գիտէր զայն՝ որ մատնելոցն էր զնա. վասն այնորիկ ասաց, թէ ոչ ամենեքին սուրբ էք։ Եւ յորժամ լուաց զոտս նոցա, առ զհանդերձս իւր, եւ դարձեալ բազմեցաւ, եւ ասէ ցնոսա. գիտէ՞ք զի՛նչ արարի ձեզ։ Դուք կոչէք զիս Վարդապետ եւ Տէր, եւ բարւոք ասէք, քանզի եմ իսկ. իսկ արդ եթէ ես լուացի զոտս ձեր՝ Տէրս եւ Վարդապետս, եւ դուք պարտիք զմիմեանց ոտս լուանալ. զի օրինակ մի ետու ձեզ, զի որպէս ես ձեզ արարի՝ եւ դուք առնիջիք։ Յովհ. ԺԳ. 2—15։

*Յիսուս այս լուացման արարողութիւնն 'ի նշան խոնարհութեան կատարեց վերնատան մէջ՝ ընթրիքէն յետոյ. որպէս զի ուսանին աշակերտք, թէ նոյն իսկ թշնամւոյն և ատելւոյն առջև խոնարհելու է հաւատացեալն Քրիստոսի։*

*Երբ կարգը Պետրոսին կուգայ լուացման, կ'ըսէ Պետրոս. «Տէ՛ր, չը պիտի թողում բնաւ, որ դու իմ ոտքս լուաս». «Այո՛, կ'ըսէ Քրիստոս. եթէ չը լուամ՝ դու ինձ հետ մասն և կցորդութիւն չես ունենար»։ «Ուրեմն, կը պատասխանէ Քրիստոսի, ձեռքս ու գլուխս ալ միասին լուա՛»։ «Ո՛չ, կ'ըսէ Յիսուս. լուացելոյն չէ*

ինչ պիտոյ՝ զձեռնն և զգլուխ լուանալ կրկին. դուք շնորհօք խմոփք, բայց 'ի Յուդայէ (ոչ ամենեքին) սրբուած էք. եթէ մէկը բաղնիքէն ելնէ՝ մարմինն ամբողջ լուալէն յետոյ, միայն ոտքը կը լուայ»։

Երբ երկոտասանից ոտքերը լուաց լմնցուց՝ լաթերն նորէն հագաւ, ու եկաւ սեղան նստաւ, ու ըսաւ անոնց. «Գիտէ՞ք, հասկըցա՞ք, թէ ի՞նչ ըրի ձեզի։ Դուք զիս տէր և ուսուցիչ կ'անուանէք ստուգիւ. եթէ այսպէս ձեր ոտքերը լուալով՝ խոնարհութեան օրինակ տուի ձեզի, դուք ալ պարտաւոր էք հետևիլ ինձ և միմեանց ոտքերն լուանալ»։

Յուդայի ոտքերն ալ լուաց, որ պիտի աշխատէին մինչև 'ի գաւիթ քահանայապետին։

## Դ. Երատ. խոնարհութեան եւ պատուիրան նոր

Ամէն ամէն ասեմ ձեզ՝ ոչ է ծառայ մեծ քան զտէր իւր. և ոչ առաքեալ մեծ քան զայն՝ որ առաքեացն զնա։ Եթէ զայս գիտէք՝ երանելի էք, եթէ առնիցէք զայս. Ոչ վասըն ամենեցուն ձեր ասեմ, զի ես գիտեմ՝ զորս ընտրեցի. այլ զի լցցի գիրն, թէ որ ուտէր ընդ իս հաց՝ արար ինձ խաբէութիւն. Յայսմհետէ ասեմ ձեզ մինչչև եղեալ. զի յորժամ լինիցի՝ հաւատասջիք, թէ ես եմ. Ամէն ամէն ասեմ ձեզ. որ ընդունի՝ զոր ոք ես առաքեցից, զիս ընդունի. և որ զիս ընդունի, ընդունի զայն՝ որ առաքեացն զիս։ Յովհ. ԺԳ. 16—20.

«Ճշմարիտ կ'ըսեմ՝ ձեզի, ծառայն իւր տիրոջմէն, առաքեալ մը զինքը ղրկողէն մեծ չը կրնար ըլլալ: զայս եթէ գիտնաք՝ երանելի էք, եթէ այսպէս 'ի գործ դնէք՝ աւելի երանելի

կ'ըլլաք։ Այս երանութիւնը ամենուդ չեմ տար. վասն զի ես իմ ընտրածներս կը ճանչեմ. բայց սա՛ ալ իմացէք՝ սաղմոսին այն պարբերութիւնը, թէ «Ինծի հետ հաց ուտողը, կամ սեղանակիցս գիս նենգեց»։ Դեռ չը կատարուած՝ ահա ամեն բան մի բառ միջէ կ'ազդարարեմ ձեզ, որպէս զի կատարուած ատենը տեսնէք ու հաւատաք, թէ ես եմ Որ Էն՝ ամենագէտ և ամենակարող, Որդի Աստուծոյ և Աստուած ճշմարիտ։ Ճշմարտիւ կ'ըսեմ ձեզի. ով որ իմ խըրկածս կ'ընդունի, զիս ընդունած կը համարուի. և ով որ զիս ընդունի, զիս խրկողն ընդունած կ'ըլլայ»։

Զայս իբրև ասաց Յիսուս՝ խռովեցաւ յոգի իւր. վկայեաց և ասէ. ամէն ամէն ասեմ ձեզ, զի մի ոմն 'ի ձէնջ մատնելոց է զիս. Յովհ. ԺԳ. 21։ Որդի մարդոյ երթայ՝ որպէս և գրեալ է վասն նորա. բայց վա՛յ մարդոյն այնմիկ՝ յորոյ ձեռն Որդի մարդոյ մատնեսցի. լաւ էր նմա, թէ չէր ծնեալ մարդն այն. Մատթ. ԻԶ. 24։ Հայէին ընդ միմեանս աշակերտքն տարակուսեալք, թէ զումմէ՞ ասիցէ։ Յովհ. ԺԳ. 22։ Եւ նոքա սկսան խնդրել ընդ միմեանս, թէ ո՞վ է 'ի նոցանէ՝ որ զայն գործելոց իցէ. Ղուկ. ԻԲ. 23։ Եւ նոքա սկսան տրտմել և ասել մի ըստ միոջէ. Միթէ ե՞ս իցեմ, և միւսն՝ միթէ ե՞ս իցեմ։ Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. մի յերկոտասանից այդի, որ մխեաց ընդ իս 'ի սկաւառակդ. Մարկ. ԺԴ. 19—20։ Պատասխանի ետ Յուդա՝ որ մատնելոցն էր զնա, և ասէ. միթէ ե՞ս իցեմ, վարդապետ։ Ասէ ցնա. դու ասացեր։ Մատթ. ԻԶ. 25։

Այս խօսքերն ըսելէն յետոյ, Յիսուս խռովեցաւ Յուդայի ընելիք ապերախտ գործոյն և նորա անզեղջ յամառութեան վրայ, ու ըսաւ. ամէն

մէջէն մէկը զիս պիտի մատնէ․ Իրաւ է որ Որդին մարդոյ ըստ նախասահմանութեանն Աստուծոյ և ըստ գրոց մարգարէից պիտի սպաննուէր․ սակայն վա՜յ այն մարդուն, որ ինքզինքն այս ըսպանութեան միջոց և գործի կը ներկայացնէ թշնամւոյն ձեռքը․ աւելի աղէկ էր, որ այն մարդը յաշխարհ եկած չըլլար»։ «Որպէս և գըրեալ է»․ Աստուծոյ նախասահմանութեան մէջ ամէն չար ու բարի գործքեր ու խորհուրդներ յայտնի են․ սակայն Աստուծոյ կանուխ գիտութիւնը՝ մեղաւորին մեղքը չը թեթեւցներ․ զի մեղաւորն՝ իւր անձնիշխանութեամբն և ազատ կամօքը կը գործէ զայն։ Աստուած տուած է անոր 'ի բնէ՝ չարն ու բարին ճանաչելու և ընտրելու գիտակցութիւնը․ Աշակերտք՝ բաց 'ի Յուդայէ․ տարակուսանաց մէջ ինկած՝ իրարու երես կը նայէին․ իրը թէ հասկնալ կ'ուզէին, թէ որո՞ւ համար կ'ըսէ արդեօք։ Երբ տեսան, թէ և ոչ ոք տեղեկութիւն ունի՝ սկսան մի ըստ միոջէ Յիսուսի հարցնել․ «Միթէ ե՞ս իցեմ»․ այս հարցումը՝ նոցա անմեղութեան զարմանքը կը յայտնէր։ Թէև իւրաքանչիւր 'ի նոցանէ իր անձին վրայ տարակոյս չունէր, սակայն նոյն իսկ Քրիստոսի բերնէն կ'ուզէին «Ոչ» պատասխանն առնուլ։ Յիսուս նոցա տարակոյսն փարատելու համար պատասխանեց․ «Ձեր տասներկուքէն մէկը՝ որ ձեռքը ինձի հետ այդ պնակն երկնցուց»։ Չը հասկցան առաքեալք․ վասն զի հարկաւ մէկ քանին միանգամայն նոյն պահուն իրենց ձեռքը սկաւառակին մէջ մխած էին։ Անմիջապէս Յուդա՝ միւս աշակերտաց օրինակին հետեւելու նըպատակաւ փութայ հարցնել․ «Միթէ ե՞ս ի-

ցեմ, վարդապե՛տ։ Այս հարցման ձևն, իւր չարութեան պատրուակն էր. Առանց յապաղման Յիսուս պատասխանեց. «Դու ասացեր»։ Այս երբայական ոճ մ՚է, որ «Դու ինքնդ» կը նշանակէ. բայց տակաւին չիմացան աշակերտք, թէ ո՞վ է մատնիչը։

Յուդա մի միայն իւր դատապարտութիւնն ընդունելու համար գոգցես ներկայ էր այս սեղանին։ Յիսուս ի՜նչ համարձակութեամբ որ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորութիւնն նըշաւակեր էր, նոյնին համարձակութեամբ Յուդայի մատնութիւնը կը ծանուցանէ՝ թերևս զինքը ՚ի զեղջ բերելու.

Եւ մինչդեռ ուտէին նոքա՝ առ Յիսուս հաց, օրհնեաց և եբեկ և ետ աշակերտացն, և ասէ. Առէ՛ք կերա՛յք, այս է մարմին իմ։ Եւ առեալ բաժակ՝ գոհացաւ, ետ նոցա և ասէ. Արբէ՛ք ՚ի դմանէ ամենեքին. զի այդ է արիւն իմ նորոյ ուխտի, որ ՚ի վերայ բազմաց հեղու ՚ի թողութիւն մեղաց. Մատթ. ԻԶ 26—28. Մարկ. ԺԴ. 22—24. Եւ առեալ հաց՝ գոհացաւ, եբեկ և ետ նոցա և ասէ. այս է մարմին իմ՝ որ վասն բազմաց տուեալ, զայս արասջիք առ իմոյ յիշատակի. Նոյնպէս և զբաժակն յետ ընթրեացն առ և ասէ. այս բաժակ է նոր ուխտ իմով արեամբ վասն ձեր հեղեալ. Ղուկ. ԻԲ. 19—20.

Յիսուս իւր սքանչելի սիրոյն յիշատակը, և միանգամայն ինքզինքը կուտայ այս ահաւոր խորհրդոյն մէջ, որպէս զի նորա չարչարանքն ու մահը յիշենք, և զինքը ընդ տեսակաւ հացի և գինւոյ ճաշակենք։ Թերևս մսոյ և արեան համով, տեսքով և հոտով՝ հացն ու գինին ՚ի մարմին և յարիւն փոխարկելու ըլլար, մարդկային

քիմքը պիտի քննէին. ինչպէս կ՚ընէ Ռակե-բերան. ուստի ուզեց, որ ինքզինքը ծածկէ այս խորհրդոյն մէջ հաւատով և հոգեղէն եզանակաւ զայն հացն ու գինին 'ի ճշմարիտ մարմին և յարիւն իւր փոխարկելով. այս մարմնոյ և արեան փոխարկութիւնն՝ ոչ զգայութեանց և ոչ երևակայութեան, այլ մտաց և հոգւոյ և նոյն հաւատովք ըմբռնելի է. ուստի անտարակոյս 'ի վեր քան զմիտս հրաշք մ'է։

«Նոր ուխտ»։ Ի հնումն՝ հին ուխտ, 'ի ըստուերական օրէնս հեղմամբ արեան անբանից. 'ի նորումն՝ նոր ուխտ, 'ի շնորհական օրէնս հեղմամբ արեան Յիսուսի Քրիստոսի, ուխտ ընդ Աստուած և ընդ մարդիկ։

Թէպէտ և վասն ամենեցուն մեռաւ Քրիստոս, բայց ոչ ամենեքին վայելեցին յարդիւնս մահու նորա. անոր համար Քրիստոսի արիւնն հեղու վասն թողութեան մեղաց բազմաց։

«Ըմպեցէք»։ Հացը կտրելովն՝ իւր մարմնոյն չարչարանքը կ'իմացնէ. այսպէս օրինակն հին զատին տեղ ճշմարիտ Գառն Աստուծոյ՝ որ մեր մեղացը համար կը զենուի, իւր մարմինն ու արիւնը կուտայ՝ այսու խորհրդով. Հաղորդութեամբ զՔրիստոսի մարմինն ու արիւնը հաւատով կը ճաշակեմք և կը խմենք, և ոչ ուրիշ բան։

«Զայս արարէք»։ Ասով հրաման կուտայ քահանայապետութեան՝ առաքելոյն իւրոց և աշակերտաց.

Եւ էր մի ոմն յաշակերտացն բազմեալ առ Յիսուսիւ, զոր սիրէրն Յիսուս. ակնարկէ նմա Սիմոն Պետրոս հարցանել՝ ո՞վ իցէ՝ վասն որոյ ասէր։ Եւ նա անկեալ զլանջօքն Յիսուսի՝

ասէ ցնա . Տէ՛ր, ո՞վ է ։ Պատասխանի ետ Յիսուս եւ ասէ . Այն է՝ որում ես թաթախեցից զպատառն եւ տաց . եւ թաթախեալ զպատառն՝ տայ Յուդայի Իսկարիովտացւոյ . եւ յետ պատառոյն՝ ապա եմուտ ՚ի նա սատանայ ։ Եւ ասէ ցնա Յիսուս , Զոր գործելոց ես՝ արա՛ վաղվաղակի ։ Եւ զայս ոչ ոք իմացաւ ՚ի բազմականացն անդ , թէ առ ինչ ասաց ցնա . զի ոմանք համարէին , թէ զի զքսակն ունէր Յուդա՝ ասաց նմա Յիսուս , Գնեա՛ ինչ որ պիտոյ իցէ մեզ ՚ի տօնի , եւ կամ զի աղքատաց ինչ տացէ ։ Իսկ նորա առեալ զպատառն՝ ել արտաքս վաղվաղակի , եւ էր գիշեր ։ Յովհ. ԺԳ. 23—30 ։

*Յովհաննէս՝ զոր սիրէրն Յիսուս, իւր վարդապետին քով նստած էր. Սիմոն Պետրոս աչք կ'ընէ անոր՝ իբր հարցնելու համար, թէ Քրիստոսի ըսած մատնիչն ո՛վ է։ Յովհաննէս ալ Յիսուսի պարանոցն ինկած հարցուց, թէ որո՞ւ համար կ'ըսէ. Յիսուս պատասխանեց. «թրջած պատառը որուն որ տամ՝ նա է. և զայն թաթխելով Յուդային տուաւ, և յաւելցուց. «Գնա՛, ինչ որ պիտի ընես՝ շուտով կատարէ՛»։ Աշակերտք դեռ չիմացան, թէ ինչ մտօք տուաւ պատառը. կը կարծէին, թէ Յուդա արկղապետ ըլլալուն համար՝ տօնին կարևոր բան մը գնելու և կամ աղքատաց ողորմութիւն տալու համար կը խրկէ զանի Քրիստոս։*

*Յուդա պատառն առնելէն յետոյ՝ աւելի կապուեցաւ կամ՝ միացաւ սատանայի հետ, և աւելի յամառեցաւ իւր չարութեանը մէջ՝ չը մտածելով բնաւ, թէ Յիսուսի քանիցս իւր ընկերին նկատմամբ ըրած ակնարկութիւնը՝ զինքը յապաշխարութիւն կոչելու համար էր միայն։ Ու շուտով դուրս ելաւ՝ կասկածելով, թէ գուցէ ժամանակ անցնի։*

Եւ իբրեւ ել՝ ասէ Յիսուս. այժմ փառաւորեցաւ Որդի մարդոյ, եւ Աստուած փառաւորեցաւ ՚ի նմա։ Զի եթէ Աստուած փառաւորեցաւ ՚ի նմա, եւ Աստուած փառաւորեսցէ զնա յանձն իւր, եւ վաղվաղակի փառաւորեսցէ զնա։ Յովհ. ԺԳ. 31—32 ։

*Երբ Յուդա մեկնեցաւ՝ ըսաւ Յիսուս. «Ահա այժմ փառաւորեցաւ Որդին մարդոյ, և Աստուած փառաւորեցաւ իւր Որդւոյն մահու չափ հնազանդութեամբն և պատարագաւ անձին. ուստի և պիտի փառաւորէ զանի յարութեամբ ՚ի մեռելոց։»*

Եւ եղեւ հակառակութիւն ՚ի մէջ նոցա, թէ ո՞ ՚ի նոցանէ համարեսցի մեծ։ Եւ նա ասէ ցնոսա. Թագաւորք ազգաց տիրեն նոցա, եւ որ իշխեն նոցա՝ բարերարք կոչին. այլ դուք ոչ այնպէս. այլ որ մեծն է ՚ի ձէնջ՝ եղիցի իբրեւ զկրտսերն, եւ առաջնորդն իբրեւ զպաշտօնեայն։ Ո՞վ է մեծ՝ բազմականն եթէ պաշտօնեայն. ո՞չ ապաքէն բազմականն. Բայց ես եմ ՚ի մէջ ձերում իբրեւ զպաշտօնեայ։ Եւ դուք էք՝ որ ցանկ կայք ընդ իս ՚ի փորձութիւնս իմ, եւ ես ուխտեմ ձեզ՝ որպէս եւ Հայր իմ ուխտեաց ինձ արքայութիւն, զի ուտիցէք եւ ըմպիցէք ՚ի սեղան իմ յարքայութեանն իմում, եւ նստջիջիք յերկոտասան աթոռս՝ դատել զերկոտասան ազգ Իսրայելի։ Ղուկ. ԻԲ. 24—30 ։

*Քրիստոսի աշակերտաց մէջ հակառակութիւն ծագեցաւ, թէ արդեօք մեծն ո՛վ է իրենց մէջէն. Յիսուս պատասխանեց. «Եղած են թագաւորներ, որ շատ ազգերու տիրած և ինքզինքնին եւերգետէս (բարերար) կոչած են, և մինչև ցարդ առհասարակ. սակայն ձեզի համար չէ այսպէս. Ահա ես՝ որ ձեր տէրն ու վարդապետն եմ, խոնարհ եմ քան զամենեքն զձեզ.*

ուրեմն եկեղեցւոյ առաջնորդք պէտք է խոնարհութեամբ վարին՝ և ո՛չ տիրապետութեամբ, սիրով՝ և ո՛չ բռնութեամբ, խաղաղութեամբ՝ և ո՛չ բանութեամբ ։ Եւ ահա նոցա այս փառաւորութեան դէմ ոտնալուայի խորհուրդը կատարեց անմիջապէս՝ 'ի յորդոր և 'ի կիրառ խոնարհութեան ։

«Դուք էիք՝ կ'ըսէ, որ ինձի հետ կենակցեցաք 'ի միշտս և 'ի հալածանս իմ 'ի Հրէից . ուրեմն իմ երկնաւոր Հօրս ինձ խոստացած արքայութիւնը կը խոստանամ ձեզի, որպէս զի միշտ 'ի բերկրութիւն և յերանութիւն վայելէք, և այն գերազանց փառքը՝ զոր պիտի ունենաք երկնից արքայութեան մէջ՝ բազմելով յերկոտասան աթոռ դատաւորական» ։

Ն. Գուշակութիւն ուրացութեանն Պետրոսի

Եւ ասէ Տէր . Սիմոն, Սիմոն, ահա սատանայ խնդրեաց զձեզ խարբալել իբրեւ զցորեան ։ Այլ ես աղաչեցի վասն քո՝ զի մի՛ պակասեսցէ հաւատք քո . և դու երբեմն դարձցիս՝ և հաստատեսցես զեղբարս քո ։ Ղուկ. ԻԲ. 31—32 ։

Սիմոն, սատանայն ջանաց, որ քեզ մեծ փորձութեան մէջ ձգէ, բայց ես իմ երկնաւոր Հօրըս աղաչեցի, որ հաւատքն արտէդ չըր վերնան . և դու զիս երիցս ուրանալէդ յետոյ՝ զղջաս, հաւատքդ վերստին նորոգես, և քու եղբայրներըդ հաստատես քարոզութեամբ Աւետարանին, բժշկելով այն գայթակղութենէն, զոր պիտի առ այս գիշեր քու եղբարցդ .

Որդեա՛կք իմ, սակաւ ինչ ժամանակ ընդ ձեզ եմ . խնդ-

դրեսջիք զիս ; և որպէս ասացի զՀրէայսն ; եթէ ուր ես եր-թամ, դուք ոչ կարէք գալ. և արդ ձեզ ասեմ ։ Պատուի-րան նոր տամ ձեզ, զի սիրեսջիք զմիմեանս, որպէս սիրեցի ես զձեզ, զի և դուք սիրեսջիք զմիմեանս ։ Յայսմ գիտասցեն ամենեքեան՝ եթէ իմ աշակերտք էք, եթէ սիրեսջիք զմիմեանս ։ Յովհ. ԺԳ. 33—35 ։

*Որդեա՛կք իմ, դեռ և քիչ ժամանակ ու-նիմ ձեզ հետ անցընելու երկրի վրայ․ ես ինչ-պէս որ Հրէից ըսի, նոյնը ձեզ ալ կը կրկնեմ, Թէ իմ գնացած տեղս առ այժմ չէք կարող գալ, իմ խմած բաժակս առ այժմ չէք կարող խմել, իմ կրելիք չարչարանքս առ այժմ չէք կարող տա-նիլ ։ Ահա ձեզ նոր պատուէր մը կուտամ․ այն է՝ միմեանց սիրել․ — ոչ Թէ սէրը, այլ Քրիստո-սի ուսուցած անսահման սէրը՝ նոր պատուիրան մ'էր, այսինքն սիրոյն եղանակը․ Ասով պիտի ճանչեն զձեզ, Թէ իմ աշակերտներս էք․ ես՝ որ առ սէր մարդկուԹեան յանձն առի զմահ խաչի, կը պատուիրեմ, որ իմ օրինակիս հետևիք յոր-նակ ամենայն աշխարհի ։*

Ասէ ցնա Սիմոն Պետրոս․ Տէ՛ր, յո՞ երթաս․ պատաս-խանի ետ Յիսուս, ուր ես երթամ, դու ո՛չ կարես այժմ գալ զկնի իմ, բայց ապա եկեսցես զկնի իմ ։ Ասէ ցնա Պետ-րոս․ Տէ՛ր, ընդէ՞ր ոչ կարեմ գալ այժմ զկնի քո․ զանձն իմ ի քէն եդից ՚ի վերայ քո ։ Պատասխանի ետ Յիսուս․ զա՞նձն քո դնես ՚ի վերայ իմ․ ամէն ամէն ասեմ քեզ․ չէ-էցէ հաւու խօսել, մինչ դու երիցս ուրասցիս զիս ։ Յովհ. ԺԳ. 36—38 ։

*Պետրոս ինքզինքին կ՚ապաւինէր, բայց ա-ռանց Աստուծոյ շնորհաց ; ոչ ոք կարող է չը գայթակղիլ և չը սահիլ․ Տէրը՝ որ գերինկամութեա*

քննէ, գիտէր կանխաւ Պետրոսի ուրացութիւնը. «Հիմայ, ըսաւ Յիսուս, չես կարող գալ իմ ետևէս, բայց յետոյ պիտի գաս մահուամբդ և նահատակութեամբդ»:

Եւ ասէ ցնոսա. յորժամ առաքեցի զձեզ առանց քսակի եւ մախաղի եւ կօշկաց, միթէ կարօտացարո՞ւք ինչ: Եւ նոքա ասեն. եւ ո՛չ ինչ. ապա ասէ. այլ այժմ որ ունիցի քսակ՝ բարձցէ, նոյնպէս եւ մախաղ. եւ որ ոչն ունիցի, վաճառեսցէ զհանդերձս իւր՝ եւ գնեսցէ իւր սուսեր: Բայց ասեմ ձեզ. զի այս եւս որ գրեալ է՝ պարտ է զի կատարեսցի յիս, ընդ անօրէնս համարեցաւ. զի որ վասն իմ իցէ՝ կատարեալ է: Եւ նոքա ասեն. Տէ՛ր, ահաւասիկ են աստ երկու սուսեր, եւ նա ասէ ցնոսա. բաւական են. Ղուկ. ԻԲ. 35—38.

Երբ առաջին անգամ զձեզ ղրկեցի՝ բանի մը չը կարօտացաք. բայց հիմայ տագնապը այնչափ մեծ է, որ պիտի շուարիք ու պիտի վախնաք. և այնչափ խեղճ ու անպաշտպան պիտի գտնէք ինքզինքնիդ իրարմէ բաժնուած ու անջատուած վիճակնուդ մէջ, որ ձեր փախստեան և թագըստեան մէջ արծաթի և սուսերի պէտք պիտի ըլլայ 'ի պաշտպանութիւն անձանց: (Իմ մասնաւոր կարծիքս սա՛ է, թէ Յիսուս փորձել կամեցաւ աշակերտաց համբերութիւնը, երբ զինքը բռնողները գային սուսերօք և բրօք, զոր գիտէր ինքը).

Աշակերտները պատասխան տուին. «Հոս երկու սուր ունինք». (Զատկի գառը մորթելու համար գործածուած դանակները): Աշակերտք չը հասկըցան Քրիստոսի խօսքը. ուստի նա պատասխանեց. «բաւական են» (ատոր վրայօք ձեր խօսածները, թէև դուք չը հասկըցաք իմ խօսքերս).

հաւատայ յիս, զգործսն զոր ես գործեմ՝ և նա գործեսցէ՝ և մեծամեծս քան զսոյն գործեսցէ. զի ես առ Հայր երթամ։ Եւ զոր ինչ խնդրեսջիք յանուն իմ, արարից զայն։ Զի փառաւորեսցի Հայր յՈրդի. Յովհ. ԺԴ. 1—14։

Չըլլայ որ սրտերնիդ խռովի. ամէն երկիւղէ և սրտի խռովութենէ վեր և մեծ ըլնի ձեր հաւատքը. մեծ և հաստատուն հաւատքով հաւատացէ՛ք Աստուծոյ Հօր և ինծի։ Իմ Հօրս տան մէջ շատ օթևաններ կան, եթէ չըլլային Հօրս տան մէջ օթևանք բազումք, կ՚ըսէի արդեօք, թէ կ՚երթամ և ձեզ տեղի կը պատրաստեմ. Ես եթէ մեկնումս խաչի կ՚երթամ առ Հայր ու ձեզի տեղ կը պատրաստեմ, նորէն կուգամ ու ըզձեզ իմ քովս կ՚առնում. վասն զի ես ուր որ ըլլամ՝ դուք ալ հոն ըլլալու էք, ու գնացած տեղըս ու ճամբան գիտնալու էք»։ Եւ երբ Թովմաս ըսաւ, թէ «Տէ՛ր, գնացած տեղդ չը գիտեմք, ուրեմն ի՞նչպէս ճամբան կրնանք գիտնալ»։ Յիսուս պատասխանեց. «Ես եմ ճանապարհ, ճշմարտութիւն և կեանք»։

Ինքն իսկ Քրիստոս է ճանապարհ երկնից, ճշմարտութիւն և կեանք. վասն զի յաւիտենական կենաց խօսքեր ունի, զմիտս լուսաւորելու համար, և մեղօք մեռեալներն յարոյց 'ի կենդանութիւն շնորհաց. նա ինքն է կեանք և առ Հայր երթալու միակ ճամբան. եթէ զՅիսուս գիտեմք՝ զՀայրն ալ գիտեմք։ Այն ատեն առաքեալք չը գիտէին, ապա հոգւով սորվեցան. այս տգիտութեամբ է ահա՝ որ Փիլիպպոս կ՚ըսէ. «Տէ՛ր, Հայրը ցո՛յց տուր մեզի, և բաւական է»։ Իսկ Քրիստոս՝ որ արդէն ուրիշ անգամ ըսած էր, թէ «Ես և Հայր իմ մի եմք. որ ընդունի

զիս՝ ընդունինք և բաւականէն ինծ. պատասխանեց Փիլիպպոսի. «Այսչափ ժամանակէ 'ի վեր ձեզ հետ եմ, ու զիս չը ճանչցա՞ր, Փիլիպպո՛ս, ընճառագայթ և գիտցողական Հօր՝ զիս տեսնողը Հայրս տեսած կ'ըլլայ. ինչպէ՞ս ուրեմն կ'ըսես դու, Թէ Հայրը ցո՛յց տուր մեզի. չե՞ս հաւատար, Թէ ես 'ի Հայր, և Հայր յիս է. իմ բոլոր խօսքերս ու գործքերս՝ յիս բնակող Հայրս է, որ կը խօսի և կը գործէ: Կը հաւատայք ինծ, Թէ ես 'ի Հայր և Հայր յիս է. եթէ ոչ խօսքերուս, գէթ գործերուս համար հաւատացէք. Եւ այս հաւատքը՝ զոր ես ձեզմէ կը պահանջեմ, Թէ անձնաւք կատարելապէս, իմ գործերուս պէս գործեր և աւելի ևս մեծամեծները պիտի գործէք: Ահա ես խաչիս առ Հայր կ'երթամ. և գիտցէ՛ք, որ իմ՝ անուամբս ինչ խնդրէք որ ընէք. պիտի կատարեմ, որպէս զի Հայրն Որդւով փառաւորի:

Եթէ սիրէք զիս՝ զպատուիրանս իմ պահեսջիք: Եւ ես խնդրեցից 'ի Հօրէ, և այլ Մխիթարիչ տացէ ձեզ. զի ընդ ձեզ բնակեսցէ 'ի յաւիտեան: Զհոգին ճշմարտութեան, զոր աշխարհս ոչ կարէ ընդունել. զի ոչ տեսանէ զնա, և ոչ ճանաչէ զնա. բայց դուք ճանաչէք զնա, զի առ ձեզ բնակեսցէ՝ և ընդ ձեզ եղիցի: Յովհ. ԺԴ. 15—17:

Թէ որ զիս կը սիրէք՝ իմ պատուէրներս պահեցէ՛ք. և ես պիտի աղաչեմ՝ Հօրս, որ ուրիշ մխիթարիչ մը պիտի տայ ձեզի, Հոգին ճշմարտութեան՝ որ յաւիտեան ձեր հետ պիտի բնակի, զոր աշխարհս չը կրնար ընդունիլ. վասն զի չը տեսներ զանի և չը ճանչեր. (Յիսուս երկրորդ գալով պիտի մխիթարէր, իսկ Հոգին սուրբ պի-

ան մխիթարիչը զատուածային յաւերժականութեամբ բնակե-լով և գործելով անոնց հետ. ձեզի ծանօթ պի-տի ըլլայ՝ աշխարհիս անծանօթ այն մխիթարու-թեան հոգին, ու ձեր մէջ պիտի բնակի, և ձեզ-նէ անբաժանելի պիտի մնայ։

Ո՛չ թողից զձեզ որբս. գամ առ ձեզ։ Փոքր մի ևս՝ և աշխարհս ո՛չ ևս տեսանէ զիս, բայց դուք տեսանիցէք զիս. զի ես կենդանի եմ, և դուք կենդանի լինելոց էք։ Յայնմ աւուր ծանիջիք դուք, զի ես ՚ի Հայր իմում և դուք յիս՝ և ես ՚ի ձեզ։ Որ ունի զպատուիրանս իմ՝ և պահէ զնոսա, նա է որ սիրէ զիս. և որ սիրէն զիս՝ սիրեսցի ՚ի Հօրէ իմմէ. և ես սիրեցից զնա, և երևեցուցից նմա զիս։ Յովհ. ԺԴ. 18—21։

Ես ձեզ որբ չը պիտի թողում, թէ՛ Հոգին Աստուծոյ և թէ՛ ես պիտի գամ առ ձեզ. անհա քիչ ժամանակէն ետքը ա՛լ աշխարհս չը տեսներ զիս, բայց դուք (յետ յարութեանս) պիտի տեսնէք զիս, որ ես կենդանին եմ յաւիտենից, և ինձմով դուք ալ կենդանի պիտի ըլլաք։ Անհա այն ատեն՝ երբ դուք արժանաք Հոգւով իմ խօսքերս և աւետարանս քարոզելու, այն ատեն պիտի գիտնաք (հիմայ խելքերնիդ չը հասնիր), որ ես Հօրս մէջ, դուք իմ մէջ և ես ձեր մէջն եմ. ինձ հնազանդելով ո՛վ որ իմ պատուէրներս պահէ եւ կատարէ, զիս սիրողն անիկա է. որ զիս սիրելուն համար, իմ Հօրմէս ալ պիտի սիրուի. ես ալ յատուկ սիրով մը պիտի սիրեմ զայնպիսին. և առանձնաշնորհութեամբ իւրք. ինքզինքս պիտի երեւցունեմ անոր (յետ յարութեանս եւ համբարձմանս)։

Ասէ ցնա Յուդա ո՛չ Իսկարիովտացին. Տէ՛ր, զի՞ եղեւ՝ զի մեզ յայտնելոց ես զքեզ՝ եւ ո՛չ աշխարհի։ Պատասխանի ետ Յիսուս եւ ասէ ցնա. Եթէ ոք սիրէ զիս՝ զբանն իմ պահեսցէ եւ Հայր իմ սիրեսցէ զնա, եւ առ նա եկեսցուք՝ եւ օթեվանս առ նմա արասցուք. եւ որ ոչն սիրէ զիս՝ զբանս իմ ո՛չ պահէ, եւ բանն իմ զոր լսէք՝ ո՛չ է իմ, այլ Հօրն՝ որ առաքեացն զիս։ Յովհ. ԺԴ. 22—24։

*Յուդա Ալփեայ՝ քեռորդի կամ մօրաքեռորդի սուրբ Աստուածածնին՝ ըսաւ անոր. « Ինչո՞ւ միայն մեզի պիտի յայտնես զքեզ, եւ աշխարհի ո՛չ ». պատասխան տուաւ Քրիստոս. « Ով որ զիս սիրէ՝ իմ խօսքս պիտի պահէ, որոյ համար անչուշտ Հայրս ալ պիտի սիրէ զանի, եւ այնպիսւոյն մէջ պիտի բնակիմ ես եւ իմ Հայրս »։*

*Յուդայի հարցման գեղեցիկ եւ ճահաւոր պատասխանն էր այս, ոչ միայն երեւիլ անձամբ, այլ եւ տաճար եւ բնակարան ընտրել կըխոստանայ Հօր եւ ինքեան, զճշմարիտ սիրողն Քրիստոսի եւ զպատուիրանապահն։ « Զիս չսիրողը՝ իմ խօսքս չըկրնար բռնել. եւ գիտէ՞ք, որ այն խօսքը, զոր ինձմէ կըլսէք, իմ մարդկութեանս խօսքը չէ, այլ Հօր Աստուծոյ՝ որ զիս ղրկեց »։*

Զայս խօսեցայ ընդ ձեզ՝ մինչ առ ձեզ եմ։ Իսկ մխիթարիչն Հոգին սուրբ, զոր առաքեսցէ Հայր յանուն իմ, նա ուսուսցէ ձեզ զամենայն, եւ յիշեցուսցէ զամենայն՝ զինչ ասացի ձեզ։ Յովհ. ԺԴ. 25—26։

*Այս խօսքերը, քանի որ այս տեղ եմ, խօսեցայ հիմայ ձեզի. իսկ իմ անուամբս Հօրս ղըրկելիք մխիթարիչն Ս. Հոգին, բոլոր իմ խօսքերս ձեզի պիտի սորվեցնէ և ձեր միտքը պիտի բերէ. որով կատարելապէս պիտի սորվիք ամէն բան։*

Խաղաղութիւն թողում ձեզ, զխաղաղութիւն իմ տամ ձեզ. ո՛չ որպէս աշխարհս տայ՝ տամ ես ձեզ. մի՛ խռովեսցին սիրտք ձեր, և մի՛ զանգիտեսցեն։ Յովհ. ԺԴ 27.

Ես ձեզի խաղաղութիւն կը թողում. իմ խաղաղութիւնս կու տամ ձեզի. աշխարհի տուած խաղաղութեան պէս չէ իմ տուածս. տանջանաց, չարչարանաց և աշխարհի խուճապալից տագնապներուն մէջ ալ, իմ տուած խաղաղութիւնս ձեր հոգին անվրդով եւ անսասան պիտի պահէ. երկնայի՛ն խաղաղութիւն. մի՛ դողցէ ձեր սըրտերն երկրաւոր վտանգներէն խռովին եւ ահաբեկին։

Լուայք, զի ասացի ես ձեզ՝ թէ երթամ, և գամ առ ձեզ. եթէ սիրէիք զիս՝ ապա ուրախ լինէիք դուք՝ թէ ես առ Հայր երթամ, զի Հայր իմ մեծ է քան զիս։ Եւ այժմ ասացի ձեզ մինչչև եղեալ, զի յորժամ լինիցի՝ հաւատասջիք։ Ո՛չ ևս այլ շատ խօսեցայց ընդ ձեզ. գայ իշխան աշխարհիս այսորիկ. և յիս ինչ ո՛չ գտանէ։ Այլ զի ծանիցէ աշխարհ, եթէ սիրեմ զՀայր, և որպէս պատուիրեաց ինձ Հայր՝ այնպէս առնեմ. ա՛ռն արի՛ք, գնասցո՛ւք աստի։ Յովհ. ԺԴ. 28—31։

Լսեցիք, որ ես ըսի ձեզի, թէ կերթամ մահուամբ, և դարձեալ կու գամ առ ձեզ. թէ որ կատարելապէս զիս սիրած ըլլայիք, կ'ուրախանայիք. վասն զի ես իմ Հօրս քով կ'երթամ. (մինչդեռ հիմայ տրտում էք)։

Յիսուս մարդկութեամբն փոքր էր անշուշտ Հօրմէն. այլ երբեք Աստուած՝ հաւասար է անոր։

«Հիմայ դեռ այդ բաները չեղած՝ կանխաւ ըսի ձեզի, որ անոնք ըլլալէն ետքը անկասկած հաւատաք։ Ա՛լ շատ չը պիտի խօսիմ ձեր հետ. ահա սատանայն իւր արբանեկացը հետ կու գայ,

և թէպէտ յիս (յանցանս) ինչ ոչ գտանէ, այլ որպէս զի ճանչէ մարդկութիւնն (աշխարհս,) թէ Հայրս կը սիրեմ, կամաւոր մտօք և հնազանդութեամբ ինքզինքս չարչարանաց և մահուան կը մատնեմ. հապա ելէ՛ք աստից երթանք. (Կ'երևի թէ վերնատունէն կ'ելնեն հիմայ)։

Ես եմ որթն ճշմարիտ, և Հայր իմ մշակ է։ Զամենայն ուռ որ յիս է՝ և ո՛չ բերէ պտուղ՝ հատանէ զնա. և զամենայն որ բերէ պտուղ՝ սրբէ զնա, զի առաւել ևս պտուղ բերիցէ։ Դուք այժմ սուրբ էք վասն բանին զոր խօսեցայ ընդ ձեզ։ Կացէ՛ք յիս, և ես 'ի ձեզ. որպէս ուռն ո՛չ կարէ պտուղ բերել յանձնէ իւրմէ, եթէ ոչ իցէ հաստատեալ յորթն, նոյնպէս և դուք՝ եթէ ո՛չ յիս հաստատեալ իցէք։ Ես եմ որթ՝ և դուք ուռ. որ հաստատեալ է յիս՝ և ես 'ի նմա, նա բերէ պտուղ յոյժ. զի առանց իմ ոչի՛նչ կարէք առնել։ Եթէ ոք ո՛չ է հաստատեալ յիս, ելեալ արտաքս իբրև զուռն՝ և ցամաքեսցի, և ժողովեն զնա և 'ի հուր արկանեն՝ և այրի։ Եթէ կայցէք յիս՝ և բանք իմ 'ի ձեզ կայցեն, որ ինչ կամիցիք խնդրեսջի՛ք՝ և լիցի ձեզ։ Յայսմ փառաւորեցաւ Հայր իմ, զի պտուղ յոյժ բերիցէք, և եղիջի՛ք իմ աշակերտք։ Յովհ. ԺԵ. 1—8։

Յիսուս առաւօտուն իւր աշակերտներէն պահանջած հնազանդութեան վրայ դարձնելով խօսքը, — եթէ իրենք անբաժանելի մնալով՝ Քրիստոսի սնանելու և ապրելու ըլլան, այս միճակին մէջ Հօր Աստուծոյ շնորհաց պիտի արժանաւորին — որթի օրինակաւը կ'իմացնէ զայս անոնց։

Քրիստոս ինքն է ճշմարիտ որթը, Հայր Աստուած մշակ է. Քրիստոսի հետ միացած մէն մի աշակերտ ուռ է. ո՛վ որ ո՛չ միայն անուամբ, այլ հոգւով և սրտով Քրիստոսի միացած է, որ-

թին վրայ հաստատուած պտղաբեր ուռ մ՚է. Հայր Աստուած կը սրբէ, կը մաքրէ, կը դարմանէ զայդ ուռը, որ աւելի պտղաբեր ըլլայ 'ի հաւատս և 'ի գործս հաւատոց. ո՛վ որ միայն անուամբ Քրիստոսի աշակերտ, կամ ընդարձակօրէն առնմամբ՝ քրիստոնեայ է, անպտուղ ուռ մ՚է, զոր Հայրն Աստուած կը կտրէ և կը բաժնէ որթէն. Ծնայեցէք, ջանացէք, որ ինձմէ չը բաժնուիք. Դուք իմ վրաս և ես ձեր հետ. ինչպէս որ որթին վրայ չը հաստատուած ուռը պըտուղ չի կրնար բերել, այսպէս և դուք մինչև որ իմ վրաս հաստատուն հաւատք չունենաք, պտղաբեր չէք լինիր, առանց ինձի բան չէք կարող ընել. իմ վրաս չը հաստատուած բարունակը, քրիստոնեայն կը չորնայ, և կրակը նետուելու ուռի նման կ՚ըլլայ. թէ որ իմ վրաս հաստատուած մնաք, և իմ խօսքերս ձեր սրտէն ու մտքէն չը հանէք, ինչ որ խնդրէք, պիտի կատարուին: Իմ երկնաւոր Հայրս ալ այն ատեն կը փառաւորուի, երբ դուք շատ հոգևոր պտուղներ կուտաք, իմ ճշմարիտ աշակերտներս ըլլալով:

Որպէս սիրեաց զիս Հայր, և ես սիրեցի զձեզ. հաստատուն կացէք 'ի սէր իմ. Եթէ զպատուիրանս իմ պահիցէք, կացջիք 'ի սէր իմ. որպէս ես զպատուիրանս Հօր իմոյ պահեցի, և կամ 'ի սէր նորա. Յովհ. ԺԵ 9—10.

Հայրս զիս ինչ սիրով որ սիրեց՝ ես ալ ըզձեզ նոյն սիրով սիրեցի. ուրեմն իմ սիրոյս մէջ հաստատուն մնացէ՛ք. իմ սիրոյս մէջ հաստատ մընալն, իմ պատուիրաններս պահելովդ է՛. ինչպէս որ ես իմ Հօրս սիրոյն մէջ հաստատուն եմ, զի նո-

րս ամեն պատուէրները պահեցի։

Զայս խօսեցայ ընդ ձեզ, զի ուրախութիւնն իմ 'ի ձեզ կացցէ, և ձեր ուրախութիւն լցեալ եղիցի։ Յովհ. ժե. 11։

Այս բաները խօսեցայ, որ իմ պատուիրանապահ լինելուս վրայ զգացած անհուն և երկնաւոր ուրախութիւնս ձեր սրտից մէջ ալ մնացունէ. երբ այս ուրախութիւնն ունենաք, այն ատեն կատարեալ է և կ'ըլլայ ձեր ուրախութիւնը։ Այս հոգևոր և յաւիտենական ուրախութենէն դուրս ամեն ուրախութիւն՝ անկատար է, լցեալ և կատարեալ չէ։

Այս է պատուէր իմ, զի սիրեսջիք զմիմեանս, որպէս և ես զձեզ սիրեցի։ Մեծ ևս քան զայս սէր ոչ ո՛ք ունի, եթէ զանձն իւր դիցէ 'ի վերայ բարեկամաց իւրոց։ Դուք բարեկամք էք իմ, եթէ առնիցէք՝ զոր ես պատուիրեմ ձեզ։ Ո՛չ ևս կոչեմ զձեզ ծառայս, զի ծառայն ո՛չ գիտէ զինչ գործէ տէրն նորա. այլ զձեզ կոչեցի բարեկամս. զի զամենայն, զոր լուայ 'ի Հօրէ իմմէ, ծանուցի ձեզ։ Ո՛չ եթէ դուք ընտրեցէք զիս, այլ ես ընտրեցի զձեզ, և եդի զձեզ. զի դուք երթայցէք, և պտղաբերք լինիցէք, և պտուղն ձեր կացցէ. և զոր ինչ խնդրիցէք 'ի Հօրէ իմմէ յանուն իմ, տացէ ձեզ։ Յովհ. ժե. 12—16։

Այս է իմ պատուէրս, որ զիրար սիրէք այն սիրով՝ որով ես զձեզ սիրեցի. իմ զձեզ սիրած սէրը շատ մեծ է. ես այդ սիրով ձեզի համար՝ որ իմ բարեկամներս էք, մահը յանձն առի. բարեկամի համար մեռնելէն աւելի մեծ սէր չկըրնար լինել. դուք ալ այս տեսակ սիրով զիրար սիրեցէ՛ք։ Եթէ իմ պատուէրներս կատարէք՝ իմ բարեկամներս կ'ըլլաք։ Զձեզ ծառայ չեմ կո-

չէր, այլ բարեկամ՝ կ'անուանեմ. Իմ սիրոս, իմ կամքս ձեզի յայտնեցի, ծառայն տիրոջը գործերուն տեղեակ չէ. Ես իմ Հօրմէս լսածներս՝ իբրև հաւատարիմ բարեկամներու՝ ծանուցի ձեզ։ Ոչ դուք զիս, այլ ես զձեզ ընտրեցի բարեկամ, աշակերտ, սիրելի ըն. և զձեզ այդ գործոց մէջ հաստատեցի, որ օր քան զօր աւելի պտղաբեր ըլլաք, և ձեր պտուղը միշտ յայտնի մնայ. և այն աստիճան սուրբ, ընտիր, և իմ սիրելիներս ըլլաք. որ ինչ որ իմ անուամբս Հօրմէս խնդրէք՝ տայ ձեզի։

Զայս պատուիրեմ, զի սիրեսջիք զմիմեանս։ Եթէ աշխարհ զձեզ ատեայ, գիտասջիք՝ զի նախ զիս ատեաց։ Եթէ յաշխարհէ աստի էիք՝ աշխարհ զիւրն սիրէր արդեօք. բայց զի չէք յաշխարհէ, այլ ես ընտրեցի զձեզ յաշխարհէ, վասն այնորիկ ատեայ զձեզ աշխարհ։ Յովհ. ԺԵ. 17—19.

Բայց կ'ըսեմ, և դարձեալ պատուիրելով կը կրկնեմ, որ զիրար սիրէք. զիրար սիրէք սերտ սիրով այն ատենն իսկ, երբ զձեզ աշխարհ կ'ատէ գիտութեամբ կամ առ նախանձու. այն ատեն միտքերնիդ բերէք, որ զձեզ ատող աշխարհը՝ նախ զիս ատեց, և դարձեալ չը դադրեցայ ես զմարդիկ ջանհոռ սիրով սիրելէ։ Թէ որ աշխարհի զձեզ ատելը տեսնէք՝ մի՛ զարմանաք. դուք այս աշխարհին չէք վերաբերիր. Թէ որ ես զձեզ աշխարհէ զատած չըլլայի, աշխարհ պիտի սիրէր զձեզ. վասն զի ձեր խորհուրդներն ու սկզբունքները հակառակ են աշխարհի սկըզբանց, անոր համար աշխարհ զձեզ կ'ատէ։

Յիշեցէ՛ք զբանն զոր ասացի ձեզ, թէ ո՛չ է ծառայ մեծ

մացընէի . այսկայն հիմայ զիս ղրկողին քովը կեր-թամ ես , ու ձեր մէջէն բնաւ մէկը չհարցըներ թէ ո՞ւր կերթաս ։

Այլ զի զայս խօսեցայ ընդ ձեզ , տրտմութիւն ելից ըզ սիրտս ձեր ։ Այլ ես զճշմարիտն ասեմ ձեզ . լաւ է ձեզ ե-թէ ես երթամ . զի եթէ ես ոչ երթայց , մխիթարիչն ոչ եկեսցէ առ ձեզ . ապա եթէ երթամ , առաքեցից զնա առ ձեզ ։ Եւ նա եկեալ յանդիմանեսցէ զաշխարհ վասն մեղաց՝ և վասն ար-դարութեան՝ և վասն դատաստանի ։ Վասն մեղաց՝ զի ոչ հա-ւատան յիս . վասն արդարութեան՝ զի առ Հայր իմ երթամ , և ոչ ևս տեսանէք զիս . վասն դատաստանի՝ զի իշխան աշխարհիս այսորիկ դատապարտեալ է ։ Յովհ. ԺԶ. 6—11 .

Եւ այնչափ տրտմեցան առաքեալք Յիսուսի այս խօսքերէն , որ չէին հարցըներ , թէ ո՞ւր կերթաս ։ “ Իմ այս խօսքերը ձեզի խօսելուս վը-րայ՝ ձեր սիրտը , գիտեմ տրտմութեամբ լեցուե-ցաւ . բայց ես ճշմարիտը կըսեմ ձեզի . աղէկ է որ ես երթամ , վասն զի եթէ ես չերթամ՝ մը-խիթարիչը չգար ձեզի . ապա թէ ես երթամ , զանի ձեզ կըղրկեմ ։ Եւ Հոգին սուրբ պիտի գայ զաշխարհ յանդիմանելու , մեղաց . արդարութեան եւ դատաստանի համար . վասն մեղաց 'ի Հրէից գործելոց , զի չըհաւատացին Քրիստոսի , եւ վասն արդարութեան Քրիստոսի , որ իր մահուամբը լի-ուլի հատուցումն ընելով վասն մեղաց մարդկան , պիտի երթայ Որդւոյ իրաւամբք 'ի ժառանգու-թիւն Հօր իւրոյ , եւ պիտի ցուցնէ իւր դատաս-տանական իշխանութիւնը , որով արդէն դատա-պարտուած է այս աշխարհի բռնակալը . կամ ուրիշ Հոգւով Առաքեալք պիտի համոզեն զաշխարհ , թէ մեղաւոր է ( վասն մեղաց ) . աշխարհէն ան-

Հաւատամութիւնն պէտք յանդիմանուի Ս. Հոգւոյն եւ նորա զինուորացն առջեւ ։ վասն արդարութեան, վասն զի Քրիստոս յերկինս կերթայ, նորէն դառնալու իբրեւ դատաւոր կենդանեաց եւ մեռելոց ։ վասն դատաստանի, վասն զի սատանայն արդէն դատապարտուած է, և ով որ ալ այնուհետև անոր հետևի՝ Աստուծոյ դատաստանէն չը պիտի պրծի ։

Եւս բազում ինչ ունիմ ասել ձեզ, այլ ոչ կարէք հանդուրժել այժմիկ ։ յորժամ եկեսցէ նա՝ Հոգին ճշմարտութեան, առաջնորդեսցէ ձեզ ամենայն ճշմարտութեամբ. զի ոչ եթէ յանձնէ ինչ խօսեսցի, այլ զոր լուիցէ՝ խօսեսցի, և զգալոցն պատմեսցէ ձեզ ։ Նա զիս փառաւորեսցէ, զի յիմմէ անտի առնուցու և պատմեսցէ ձեզ ։ Զամենայն ինչ զոր ունի Հայր, իմ է. վասն այնորիկ ասացի ձեզ, թէ յիմմէ անտի առնուցու և պատմեսցէ ձեզ ։ Յովհ. ԺԶ 12—15 ։

Դեռ ուրիշ շատ խօսքեր ալ ունիմ՝ ձեզի խօսելու, բայց հիմայ չէք կարող տանիլ հանդուրժել ։

Յիսուս ժամանակին կարճութեան պատճառաւ՝ շատ վսեմ և շատ ամփոփ խօսեցաւ ։ Այս աստուածային և գերազանց խօսքերն անտարակոյս մութ մնացին առաքելոց՝ մեծաւ մասամբ. և որովհետև հոգւով չէին արիացած, ուստի միւս ընելիքները թողուց Հոգւոյն Սրբոյ, որ պիտի գար, և Քրիստոսի յայտնած ճշմարտութեանց պիտի առաջնորդէր ամենայն ճշմարտութեամբ և Քրիստոսի ըսածներուն ճշդութեամբը. զի ոչ Որդին և ոչ Ս. Հոգին, յանձանց տարբեր խօսքեր չունէին ըսելիք. այլ ինչպէս Որդին, նոյնպէս և Հոգին, 'ի Հօրէ Աստուծոյ լսածներն և առած-

Ամէն ամէն ասեմ ձեզ, զի զոր ինչ խնդրիցէք 'ի Հօրէ իմմէ յանուն իմ, տացէ ձեզ. Մինչեւ ցայժմ ոչինչ խնդրեցէք յանուն իմ. խնդրեցէք եւ առնուջիք, զի ուրախութիւն ձեր լցեալ իցէ։ Զայս առակօք խօսեցայ ընդ ձեզ. եկեսցէ ժամանակ, յորժամ ոչ եւս առակօք խօսեցայց ընդ ձեզ, այլ յայտնապէս զՀօրէ պատմեցից ձեզ։ Յայնմ աւուր խնդրեսջիք յանուն իմ. եւ ոչ ասեմ ձեզ, եթէ ես աղաչեցից զՀայր վասն ձեր. զի ինքն իսկ Հայր սիրէ զձեզ. զի դուք զիս սիրեցէք, եւ հաւատացէք, եթէ ես յԱստուծոյ ելի։ Ելի 'ի Հօրէ եւ եկի յաշխարհ, դարձեալ թողում զաշխարհ եւ երթամ առ Հայր։ Յովհ. ԺԶ. 23—28։

*Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, իմ անունովս ինչ որ խնդրէք իմ Հօրմէս՝ պիտի տրուի ձեզի. մինչեւ հիմայ դեռ բնաւ բան մը չը խնդրեցիք իմ անունովս. խնդրեցէ՛ք ու պիտի ընդունիք. որպէս զի ձեր ուրախութիւնն կատարեալ լինի, տեսնելով, որ յանուն իմ եղած խնդիրքը կը կատարուի։ Հիմայ ես ձեզ այս խօսքերը մերայիչեալ առակներով խօսեցայ. ժամանակ պիտի գայ, որ ալ առակներով չը պիտի խօսիմ, այլ յայտնապէս Հօրս վրայօք պիտի պատմեմ ձեզի ես և Ս. Հոգին. և դուք այն ատենն ծանօթ պիտի ըլլաք իմ Հօրս, որ առանց իմ պաղատանացս իսկ, իմ անունովս ըրած բոլոր ձեր խնդիրքը պիտի կատարէ. Հայրն ինքն կը սիրէ զձեզ, վասն զի զիս սիրեցիք դուք, և հաւատացիք թէ ես Աստուծմէ ելայ. Հօրմէն ելայ, աշխարհ եկայ, դարձեալ կը թողում զաշխարհ և Հօրս քով կ'երթամ։*

Ասեն ցնա աշակերտքն. ահա արդ յայտնապէս խօսիս,

և առակ և ո՛չ մի ինչ ասես. այժմիկ գիտեմք, եթէ գիտես զամենայն, և ոչինչ պիտոյ է՛ եթէ ոք հարցանիցէ զքեզ. յայսմիկ հաւատամք, եթէ յԱստուծոյ ելեր։ Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ. այժմ հաւատա՞յք. ահա եկեսցէ ժամ, և եկեալ իսկ է, զի ցրուեսջիք յիւրաքանչիւր տեղիս, և զիս միայն թողուցուք. և չեմ միայն, զի Հայր ընդ իս է։ Յովհ. ԺԶ. 27—32 ։

*Ըսին աշակերտները. «Ահա յայտնապէս կը խօսիս, և առակ չես ըսեր. հիմայ գիտեմք, թէ ամեն բան գիտես, և պէտք չէ որ մէկը իբր տարակուսելով կամ՝ երկմտելով իմն հարցը-նէ քեզի. ասով կը հաւատամք, թէ Աստուծմէ ելար։*

*Պատասխան տուաւ Յիսուս ու ըսաւ. «Հի-մայ կը հաւատա՞ք. եթէ կը կարծէք, որ հիմայ հաստատութեամբ կը հաւատաք, կը խաբուիք. վասն զի մօտ ատենս պիտի ցրուիք. իւրաքան-չիւրդ իւր տեղը ցիրուցան՝ զիս մինակ պիտի թո-ղուք. բայց ես մինակ չեմ, Հայրս հետս է»։*

Զայս խօսեցայ ընդ ձեզ, զի ընդ իս խաղաղութիւն ու-նիցիք. յաշխարհի աստ նեղութիւն ունիցիք, այլ քաջալերե-ցարո՛ւք, զի ես յաղթեցի աշխարհի։ Յովհ. ԺԶ. 33 ։

*Այս բանը խօսեցայ ձեզի, որ ինձմով խաղա-ղութիւն ունենաք. աշխարհիս մէջ նեղութիւն պիտի չունենաք. բայց սի՛րտ առէք քաջալերուե-ցէ՛ք. վասն զի ես աշխարհին յաղթեցի. աշ-խարհն ձեզի չը կրնար սանանել վնասել, աշխար-հի տուած նեղութիւնն առժամանակեայ է։*

րիստոսի՝ որ անմեղութիւն էր գլխովին, յաճախ լեռներուն վրայ և անապատ տեղերը քաշուելով՝ գիշերներն 'ի բուն ըրած աղօթքները.

Քրիստոս իբրև գերագոյն քահանայապետ՝ մէկ կողմանէ զԱստուած 'ի մարդիկ փառաւորելու, միւս կողմանէ զմարդկութիւնն աստուածութեան հետ հաշտեցնելու սահմանեալ իւր քահանայապետական պաշտօնը կը կատարէր՝ աղօթիւք և մահուամբ:

Այս աղօթից մէջ երեք գլխաւոր կէտ կամ նպատակ կը նկատեմք: Նախ՝ Աստուծոյ փառքը. ժամն հասած է, որ Որդին փառաւորուի, որպէս զի Հայրն իսկ փառաւորուի: Որդւոյն փառքն այս է, Հայրն իրեն տուած է ամեն իշխանութիւն ամեն մարմնոյ վրայ, որ իւր այս իշխանութիւնը գործածելով՝ յաւիտենական կեանք տայ ամեն անոնց, զորս Հայրն իրեն տուած է. և այս յաւիտենական կեանքը, Հայրն և Որդին ճանչնալուն մէջ է:

Յիսուսի Քրիստոսի բոլոր խօսքերը, գործերը, ապրելու եղանակը, վարքը և բարքը՝ Աստուծոյ փառքն, այսինքն Աստուծոյ կարողութիւնը, իմաստութիւնը և անհուն գթութիւնը յայտնելու նպատակ ունէին:

Հիմայ Յիսուս՝ որ ինքզինքը արդէն 'ի խաչ ելած կը համարի, և իւր գործքը լմնցուցած, մարգարէութիւնները կատարուած և եկեղեցին կազմած տեսնելով, իւր 'ի յաւիտենից և ընդմիշտ իւր Հօր քով վայելած փառքովն փառաւորուելուն ժամանակը հասած կ'զգայ, կ'իմացնէ իւր սիրելեաց, թէ իրեն նման իրենց գործքը կատարելէն ետքը, իրաւունք կ'ստանան Աստու-

ծոյ փառքը վայելել երբեւ վարձք իրենց աշխատութեանց ։

Ցաւիտենական երջանկութիւնն և կեանքը՝ զԱստուած Հայր և զՈրդին ճանչելու մէջ են. ճանչել ըստ գրոց՝ զգալ, սիրել, ստանալ ըսել է. ճանչել զԱստուած՝ իրմով սնանիլ, և նորա կենաց կցորդ լինել կը նշանակէ. այս ծանօթութիւնն ոչ միայն յաւիտենական կենաց ճանապարհ, այլ նոյն իսկ յաւիտենական կեանքն է, և իւր հաւատացած տիրոջ նման, յաւիտենէն յաւիտենից կենդանի է։ Երկրորդ նպատակն՝ իւր աշակերտներն էին. ասոնք թէև իրենք չեղած, աշխարհէն էին, և թէպէտ աշխարհ և որ 'ի նմա՝ Աստուծոյ են, բայց յատուկ ընտրութեամբ՝ Քրիստոսի եղան. Քրիստոսի վարդապետութիւններն ու հրահանգները՝ նոցա սրտից դռները բացին, և հիմայ կը ճանչեն Աստուծոյ Որդին. Աստուծոյ սէրը և Աստուծոյ խօսքը պահեցին։ Հիմայ Քրիստոս անոնց համար կ'աղաչէ, և ոչ աշխարհի սիրոյն յարող մարդոց, (որոց համար ալ միշտ աղաչած է և կ'աղաչէ, և պիտի աղաչէ դարձեալ զանոնք ալ ազատելու. բայց անոնք զիրենք Քրիստոսի աղօթից կարօտ չեն համարիր, ու Քրիստոսի խնդրանաց չեն բաղձար, ուստի և հիմայ նոցա համար չաղաչեր). կ'աղաչէ աշակերտացն համար, որ Հայրը պահպանէ զանոնք, չարէն պահէ և սրբացնէ աստուածային շնորհօք, շնորհք՝ որոց ամեն Քրիստոսի վերաբերողները պէտք ունին։

Ամեն ծանօթութիւն զՀօրէն՝ Որդւով տըրուած է մեզի. և ոչ ոք կրնայ երթալ առ Որդին, բայց միայն շնորհօք Հօրն. և ինչո՞վ յայտ-

նի կ՚ըլլայ, թէ Հայրն ու Որդին ձգած է մէկը. —Քրիստոսի խօսքը պահելով։

Քրիստոսի առաքեալներն զՔրիստոս կը փառաւորեն, զՔրիստոս փառաւորելով՝ զՀայրն կը փառաւորեն. վասն զի ինչ որ Որդւոյն են՝ Հօրըն են միանգամայն, և ինչ որ Հօրն են՝ Որդւոյն ալ են միանգամայն. այս խօսքերով Քրիստոսի աստուածութիւնը կ՚ապացուցուի։

«Ո՛վ սուրբ Հայր, կ՚աւելցնէ, քու անուամբդ պահպանէ՛ զանոնք այն կոչման մէջ, ուր կոչուեցան, և նոցա մէջ երկպառակութիւն չը մտնէ. ինչպէս մեք՝ Հայր, Որդի և Հոգի՝ մի և անբաժանելի ենք, այնպէս և նոքա՝ մի և անբաժանելի թո՛ղ լինին։ Ես աշխարհիս մէջ եղած ատենս՝ քու անուանդ կոչման մէջ պահեցի զանոնք, և կորստեան որդի Յուդայէն զատ՝ բնաւ մէկը չը կորսուեցաւ նոցա մէջէն, և այդ՝ ըստ գրոց. բայց հիմայ ես քեզի կուգամ, այս վերջին խօսքերը կը խօսիմ, այս աղօթքը կ՚ընեմ, որ լման սոքա, և այս երկնաւոր ու հոգևոր ուրախութիւնս իրենց հոգւոյն մէջ ունենան։ Ես տուի անոնց քու խօսքդ՝ որ ճշմարտութիւնն է, և ճըշմարտութիւնն ատող աշխարհը ատեց զանոնք. զի իրենք այս աշխարհէս չեն, ինչպէս ես իրենց գլուխն ու առաջնորդը, չեմ այս աշխարհէն։ Այս աշխարհէս, ուր նոցա մեծամեծ վտանգներ և նեղութիւններ կան, չեմ աղաչեր զանոնք վերցընելու, այլ կ՚աղաչեմ՝ որ չարէն պահես զանոնք, որպէս զի չընկճին։ Ինձ նման սոքա ալ աշխարհի մոլութենէն ու ստութենէն չեն. կ՚աղաչեմ, սրբէ՛ զասոնք քու ճշմարտութեամբդ, որ անմասն լինին 'ի սուտ, քու խօսքդ՝ ճշմարտու-

թիւնը միայն թո՛ղ գիտնան։ Ինչպէս որ դու զիս յաշխարհ ղրկեցիր՝ ես ալ զանոնք յաշխարհ ղըրկեցի. և ես անոնց համար սրբելով կը նուիրեմ կը զոհեմ իմ անձս՝ որ անոնք ալ ճշմարտութեամբ սրբուած ըլլին, աշխարհի ստութեանց մէջ արեգակներու պէս փայլին ճշմարտութեամբ»։

Քրիստոսի աղօթից երրորդ նպատակն՝ ամէն տեղւոյ և ամէն ժամանակի հաւատացեալք են, զորս 'ի յաւիտենից կը ճանչէ. և զքեզ իսկ, ո՛ ընթերցող, զքեզ իսկ այն հաւատացելոց կարգը կարող ես դնել. քեզ համար ալ աղօթեց Քրիստոս տասնևութն դար յառաջ, և միշտ կ՚աղօթէ, կը միջնորդէ և կը բարեխօսէ. ինչ որ առաքելոց համար խնդրեց, նոյնը ձեզի և մեզի և առաքելոց խօսքերովն՝ ամէն իրեն հաւատացողաց համար ալ աղօթեց. կամեցաւ, որ մէկ ընտանիք կազմածի պէս՝ մի և անբաժանելի ըլլինք աստուածութեան և միմեանց հետ, և Աստուծոյ յաւիտենական փառաց մէջ ընդունուինք. և այս սերտ միութիւնն յայտարարութիւն մի ըլլի՝ Քրիստոսի ճշմարիտ առաքեալն ըլլալուն. Աստուած մեր մէջն ըլլայ և մենք Աստուծոյ մէջ. մեր կատարելութիւնն՝ մեր միութիւնն ըլլայ. ո՛ւր որ է Քրիստոս՝ հոն ըլլինք և մեք՝ նորա առաքինութեան, սրբութեան և կատարելութեան մէջ, և նորա հետ յերկնային փառքն՝ յարքայութեանն Հօր աչօք տեսնեմք Քրիստոսի փառքը. Քրիստոսի՝ սիրելոյն Հօր 'ի յաւիտենից։ «Արդար ես դու՝ ո՛վ Հայր, բայց աշխարհ զքեզ չը ճանչեց. ես միայն ճանչցայ զքեզ և անոնց ճանչցուցի. անոնք ալ ճանչցան՝ որ դու ղրկեցիր զիս. մինչև հիմայ ճանչցուցի անունդ,

և տակաւին այսուհետև ալ պիտի ճանչցնեմ. զի այն սէրը՝ որով զիս սիրեցիր, նոցա մէջն ըլլայ, և ես՝ քո սէրդ, քո իմաստութիւնդ, քո լոյսդ՝ նոցա մէջն ըլլամ»:

Յիսուսի Քրիստոսի այս սքանչելի աղօթքէն սա՝ իմաստից համառօտութիւնը կը քաղեմք, թէ Աստուծոյ փառաց համար եղած են ամեն բան, և Աստուծոյ փառաց համար Քրիստոս կատարեց իւր գործերը. զԱստուած ճանչելն է կեանք յաւիտենական, և յաւիտենական կենաց շնորհները՝ Աստուծոյ պարգևն են: Աստուած՝ տուաւ իւր Որդին. Աստուած իւր Որդւոյն կուտայ զանոնք՝ զորս կ'ուզէ փրկել, և անոնց հաւատք կուտայ՝ որ փրկուին. Այս հաւատքով անոնք Աստուծոյ են և մարդկային ազգը երկու կարգ մարդիկներէ կը բաղկանայ, աշխարհ անուանեալներէն, և անոնցմէ՝ որ Աստուծոյ ըլլալով աշխարհէ չեն: Այս երկրորդ կարգիններուն յատկութիւններն են ասոնք. ինչպէս որ սիրուեցան՝ այնպէս կը սիրեն զիրար, զԱստուած, և մի են՝ ինչպէս Հայր, Որդի և Հոգի. սրբուած են և նուիրագործուած, մաքրուած և ընտրուած ու զատուած. այս գործն արդիւնաւորող միջոցը՝ ճշմարտութիւնն է:

Այս յաւէտ սքանչելի աղօթից վրայ մեր խօսածը՝ գրեթէ ոչինչ է. Հոգին ճշմարտութեան թո՛ղ բարեհաճի օգնել ամենուս, որպէս զի խորը թափանցենք. սակայն եթէ լաւ 'ի միտ առնոյր աշխարհ և ըստ այնմ գործադրէր՝ ինչ գերերջանիկ և նախանձելի դրից մէջ պիտի գըտնուէինք հիմայ.

## Գ․ Գուշակէ աշակերտաց զտագնապ նոցին եւ զփախուստ

Եւ ելեալ գնաց ըստ սովորութեանն 'ի լեառն Ձիթենեաց, գնացին զհետ նորա և աշակերտքն ։ Ղուկ․ ԻԲ. 39 ։ Եօրհնեցին, և ելին 'ի լեառն Ձիթենեաց ։ Յայնժամ ասէ ցնոսա Յիսուս ․ ամենեքին դուք գայթակղելոց էք յինէն յայսմ գիշերի ․ զի գրեալ է, թէ հարից զհովիւն, և ցրուեսցին ոչխարք հօտին ։ Եւ յետ յառնելոյ իմոյ յառաջեցից քան զձեզ 'ի Գալիլեա ․ Պատասխանի ետ Պետրոս և ասէ ցնա ․ Թէպէտ և ամենեքին գայթակղեսցին 'ի քեն, այլ ես ո՛չ գայթակղեցայց ․ Ասէ ցնա Յիսուս ․ ամէն ասեմ քեզ, զի յայսմ գիշերի՝ մինչչև հաւու խօսեալ իցէ, երիցս ուրասցիս զիս ։ Ասէ ցնա Պետրոս ․ Թէև մեռանել հասանիցէ ընդ քեզ, զքեզ ոչ ուրացայց ։ Նոյնպէս և ամենայն աշակերտքն ասէին ։ Մատթ․ ԻԶ. 30—35 ։ Մարկ․ ԺԴ․ 26—31 ։

Իւ հոն հաւանականաբար պասեքի յատկացեալ սաղմոսներն երգելէն յետոյ՝ ըստ սովորութեան՝ աշակերտաց հետ Ձիթենեաց լեռը գընաց ։ Յիսուս 'ի ճանապարհին ըսաւ անոնց ․ "Դուք ամենքդ ալ իմ գլուխս եկած բաները տեսնելով՝ ձեր հաւատքն ու վստահութիւնը պիտի կորսնցընէք, որով Զաքարիայ մարգարէութիւնը պիտի կատարուի, թէ հովիւը պիտի զարնեմ, ու ոչխարները՝ զորս նա անձամբ կը պահպանէր, պիտի ցրուին ։ "Զարթի՛ր սուր 'ի վերայ հովուի իմոյ և 'ի վերայ առն ընկերի նորա, ասէ Տէր ամենակալ ․ հարից զհովիւն, և ցրուեսցին ոչխարքն հօտին ․ ԺԳ․ 7 " ։ Սակայն յետ յարութեանս՝ ձեզմէ յառաջ ձեր սիրելի երկիրը Գալիլիա պիտի երթամ (ժամադիր կ'ըլլայ)։ Յանձ-

Նապաստանն Պետրոս ամենէն աւելի ջերմեռան-
դութեամբ փութաց ըսելու. «Տէ՛ր, եթէ ամեն-
քըն ալ 'ի քէն գայթակղին, սակայն ես չը պի-
տի գայթակղիմ»։ Յիսուս արգահատաբար և
ցաւակցաբար պատասխանեց. «Դու, որ այդչափ
կը պնդես՝ մի՛ վստահիր անձիդ վրայ. այս գի-
շեր՝ դեռ հաւը չը խօսած, երեք անգամ զիս
պիտի ուրանաս»։ Պետրոս ըսաւ. «Եթէ քեզ հետ
մեռնիլս ալ անհրաժեշտ պէտք ըլլի, չը պիտի
ուրանամ զքեզ»։ Այսպէս կրկնեցին միւս աշա-
կերտներն ալ։ Յիսուս եռանդագին խօսքերը
խօսողներուն ներքին մարդիկը կը տեսնէր, և
գիտէր ըլլալիքը։

Յայնժամ գայ Յիսուս ընդ նոսա 'ի գեղն մի, որում ա-
նուն էր Գեթսեմանի։ Մատթ. ԻԶ. 36. Մարկ. ԺԴ. 32։
Զայս իբրեւ ասաց՝ ել աշակերտօքն հանդերձ յայնկոյս ձորոյն
Կեդրոնի, ուր էր պարտէզ, յոր եմուտ ինքն և աշակերտք
իւր։ Յովհ. ԺԸ. 1։

Վերջապէս հասանք մեր Փրկչին երկրաւոր ապարէզին վախճանին. ահա հասանք այն հանդիսաւոր վայրկեանին, ուր երկնաւոր Հայրը վայ-տակուտին վրայ պիտի հանէ իւր սիրելի Որդին՝ նոր Իսահակը, որ մեղաւորաց համար խաչին վրայ պիտի բարձրանայ, ինչպէս պղնձի օձն անապատին մէջ, ուր սուրբն և արդարն վասն մեղաց մերոց պիտի վիրաւորուի, ու չարերուն՝ քով պիտի դրուի, ուր Գառն Աստուծոյ պատարագ քաւութեան պիտի մատուցուի վասն մեղաց աշխարհի.

Տիրոջ այս երկարատեւ չարչարանաց և սուկալի մահուան հանդիսարան եղան գլխաւորա-

պէս չորս տեղեր, Գեթսեմանի, ապարանք Կայիափայ, ապարանք Պիղատոսի և Գողգոթա։

Յիսուս Կեդրոնին հեղեղատէն՝ որ Ջիթենեաց լերին և Երուսաղեմի մէջտեղէն կը վազէ, անցնելով՝ պարտէզ մը մտաւ իւր աշակերտներովը։ Այս տեղը Գեթսեմանի՝ ձիթահանք կ'ըսուէր, վասն զի ձիթապտուղ ճմլելու և ձէթ հանելու տեղ էր։ Ահա այս տեղ Յիսուս միայնակ մնաց ըստ Եսայեայ 'ի հնձանին. "Հնձան հարի միայն, և 'ի հեթանոսաց ոչ ոք էր ընդ իս", Կգ. 3։



# ԳԼՈՒԽ Խ.

ԱՂՕԹՔ ԵՒ ՏԱԳՆԱՊ ՅԻՍՈՒՍԻ Ի ՊԱՐՏԻԶԻՆ. — ԳԱԼՈՒՍՏ ՅՈՒԴԱՅԻ ՀԱՆԴԵՐՁ ԱՄԲՈԽԻՒ, — ԹՈՅԼ ՏԱԼ ՅԻՍՈՒՍԻ ՀՐԷԻՑ ԿԱՊԵԼ ԶԱՆՁՆ. — ՏԱՆԻՆ ԶՅԻՍՈՒՍ ԱՌ ԱՆՆԱ. — ԱՊԱ ԱՌ ԿԱՅԻԱՓԱ. — ՈՒՐԱՑՈՒԹԻՒՆ ԵՐԻՑՍ ՊԵՏՐՈՍԻ ԵՒ ԶՂՋՈՒՄՆ.

## Ա. Աղօթք եւ տագնապ Յիսուսի 'ի պարտիզին

Գիտէր և Յուդա՝ որ մատնելոց էր, զտեղին. զի բազում անգամ ժողովեալ էր անդր Յիսուս աշակերտօքն հանդերձ. Յովհ. ԺԸ 2։

Գեթսեմանի պարտէզը շատ անգամ քաշուած էր Յիսուս իւր աշակերտաց հետ, և զոր Յուդա շատ լաւ գիտէր։

Եւ ասէ ցաշակերտսն. Նստարո՛ք աստ, մինչև ես յաղօթս կացից. Մարկ. ԺԴ. 32։ Եւ ասէ ցնոսա. Նեղեալ

այդր, մինչև երթայց կացից յաղօթս. Մատթ. ԻԶ. 36։ Իբրև եհաս 'ի տեղւոջն՝ ասէ ցնոսա. յաղօթս կացէ՛ք չմտանել 'ի փորձութիւն. Ղուկ. ԻԲ: 40։ Եւ առեալ ընդ իւր զՊետրոս և զերկուս որդիսն Զեբեդեայ՝ սկսաւ տրտմել և հոգալ։ Յայնժամ ասէ ցնոսա. տրտում է ոգի իմ մինչև 'ի մահ. կացէ՛ք աստ և սթափեցէք ընդ իս։ Եւ մատուցեալ յառաջ սակաւիկ մի՝ անկեալ 'ի վերայ երեսաց իւրոց, եկա՛ց յաղօթս, և ասէ. Հա՛յր իմ, եթէ հնար է, անցցէ բաժակս այս յինէն. բայց ոչ որպէս ես կամիմ, այլ որպէս դու։ Գայ առ աշակերտսն, և գտանէ զնոսա 'ի քուն, և ասէ ցՊետրոս. Այսպէս ո՞չ կարացէք մի ժամ արթուն կալ ընդ իս։ Արթուն կացէ՛ք և աղօթս արարէ՛ք, զի մի՛ անկանիցէք 'ի փորձութիւն. հոգիս յօժար է, բայց մարմինս տկար։ Դարձեալ երկրորդ անգամ չոգաւ, եկաց յաղօթս և ասէ. Հա՛յր իմ, եթէ հնար իցէ անցանել յինէն բաժակիս այսմիկ. ապա թէ ոչ արբից զսա, եղիցի կամք քո։ Եւ եկեալ միւսանգամ եգիտ զնոսա 'ի քուն, զի էին աչք նոցա ծանրացեալք։ Եթող զնոսա և գնաց, եկաց յաղօթս երրորդ անգամ, և դարձեալ զնոյն բան ասաց. Մատթ. ԻԶ. 37—44։ Եւ ոչ գիտէին, թէ զի՞նչ պատասխանի տայցեն նմա. Մարկ. ԺԴ. 33—40։ Եւ երևեցաւ նմա հրեշտակ յերկնից և զօրացուցանէր զնա, և էր 'ի տագնապի, և մտադիւրութեամբ ևս կայր յաղօթս. Ղուկ. ԻԲ. 41—43։

*Նոյն ատեն յոգնութենէն հանգչեցընելու միտօք անշուշտ, հրամայեց աշակերտաց նստիլ այն տեղ դալարի վրայ, և աղօթել՝ փորձութեան մէջ չիյնալու համար. և ինքը զՊետրոս և Զեբեդեայ երկու որդիքը հետն առած՝ որք իւր մասնաւոր վկայքն էին, խորին տխրութեան և հոգերու մէջ ինկաւ. մօտալուտ չարչարանաց արհաւի՛րքը, որ Յիսուսի անընկճելի անձը տխրեցուցին. անշուշտ իբրև կատարեալ մարդ՝ մահու*

ծանրութիւնն զգաց, և ամենուն ցոյց տուաւ՝ որ կատարեալ և անթերի մարդ էր. «Հոգիս՝ ըսաւ, տրտում է մինչև 'ի մահ, կեցէ՛ք հոս և հսկեցէ՛ք ինծի հետ»։ Այն ատեն քարընկէց տեղի չափ յառաջ գնաց, և երեսին վրայ գետինն իյնալով՝ աղօթքի սկսեց, և աղաչեց Հօրն, որ եթէ հնար է, այն տագնապալից և սոսկալի ժամըն անցնի. միանգամայն միշտ հլու հպատակ և կամակատար լինելով Հօր կամաց՝ ըսաւ. «Հա՛յր իմ, ամեն բան՝ հնարաւոր է քեզի, եթէ կը կամիս՝ այս բաժակն անցո՛ւր ինձմէ. մարդկային տկարութեանս խիստ ծանր կուգայ այս բաժակը քամել. բայց ոչ իմ, այլ քու կամքդ թո՛ղ լինի». ասով մարդկային կամաց՝ աստուածայնոյն հպատակութիւնն ու միութիւնը կը ցուցնէր։

Նոյն միջոցին երեք աշակերտաց քով գալով, և զանոնք 'ի քուն գտնելով. (անշուշտ իրենց տրտմութենէն) ըսաւ Պետրոսին մեղմ յանդիմանութեամբ. «Պետրո՛ս, կը քնանա՞ք. չը կրցի՞ք ժամ մ'արթուն կենալ. արթուն կեցէ՛ք և աղօթք ըրէ՛ք, որ փորձութեան մէջ չիյնաք»։ Ասով ցուցընել ուզեց Քրիստոս, թէ իր հեծեծանաց մէջ անգամ չը մոռնար աշակերտները.

«Հոգիս յօժար է, բայց մարմինս տկար», ասի ըստ Հայ թարգմանութեան է. իսկ ըստ Յունական թարգմանութեան՝ «Հոգի կամ հոգին յօժար է, բայց մարմինն տկար». իբր թէ «Դուք հոգւով յօժար էք դիմանալ, տոկալ չարչարանաց և ինձմէ չը զատուիլ՝ ինչպէս որ խոստացայք, բայց մարմնով տկար էք». կամ ըստ Շնորհալւոյն՝ «Փըրկել զաշխարհ հոգիս յօժար, բայց է բնութիւն մարմնոյս տկար». Քրիստոսի անձին վրայ առնե-

լով այս խօսքը ։

Դարձեալ երկրորդ անգամ գնաց, և աղօթքի կեցաւ Յիսուս, և ըսաւ գրեթէ մի և նոյն խօսքը — Մարդկային տկարութեան յայտարարութեամբ՝ Աստուծոյ կամաց հպատակութիւն — ։ Նորէն կուգայ և 'ի քուն կը գտնէ զանոնք, որք աչքերնին քնէն ծանրացած՝ չը գիտէին, թէ ի՞նչ պատասխան տան ։ Նորէն երրորդ անգամ Յիսուս զատուեցաւ, և աղօթքի կայնելով՝ մի և նոյն բանն ըսաւ, միշտ տկարութեամբ մարդկութեան՝ զինքն Աստուծոյ կամացն ապաստան առնելով. որով կիմացուց մեզ, թէ ամեն տագնապի և նեղութեան մէջ Աստուծոյ կամացն ապաւինել պարտաւոր եմք, և թէ մեր վիշտերն ո՛րչափ մեծ լինին, Աստուծոյ օգնութիւնն կը հասնի մեզ. ինչպէս հասաւ իւր Որդւոյն, զօրացուցիչ հրեշտակը ղրկելով յօրինակ մարդոց. ըստ որում ինքն անկարօտ է օգնութեան ։

Եւ հոսէին 'ի նմանէ քրտունք իբրեւ շիթք արեան՝ որոյն ոլոռն, հեղեղաւ յերկիր ։ Ղուկ. ԻԲ. 44 ։

Բայց տե՛ս թէ ի՞նչ տագնապներու մէջ է Քրիստոս. ոլոռն ոլոռն քրտինք իբր արեան կաթիլներ հողին վրայ կը թափէին. և ի՞նչ աննըկարագրելի բան, ողջակէզն ճլլալ տիեզերաց մեղաց քաւութեան ։ Մարդկային մեղաց լեռնակարկառ բեռան տակ կը հեծէ Քրիստոս, և ի՞նչ արիւն քրտինք կը թափէ. ի՞նչ դառն բաժակ. ո՛րչափ ծանր է մեղքը. ո՛վ որ հասկընալ կ՚ուզէ, թո՛ղ Գեթսեմանի երթայ, և սոսկմամբ նըկատէ՝ մեղաց դէմ մենամարտող աստուածային ըմբշին քրտունքը ։

Յայնժամ գայ առ աշակերտսն եւ ասէ ցնոսա. Ննջեցէ՛ք այսուհետեւ եւ հանգերո՛ւք, զի ահա հասեալ է ժամ, եւ Որդի մարդոյ մատնի 'ի ձեռս մեղաւորաց. արի՛ք երթիցուք աստի, զի ահաւասիկ եհաս՝ որ մատնելոցն է զիս. Մատթ. ԻԶ. 45—46. Մարկ. ԺԴ. 41—42։ Եւ յարուցեալ յաղօթիցն, եկն առ աշակերտսն, եգիտ զնոսա 'ի քուն 'ի տրտմութենէն. եւ ասէ ցնոսա. զի՞ ննջէք, արի՛ք կացէ՛ք յաղօթս, զի մի՛ մտանիցէք 'ի փորձութիւն։ Ղուկ. ԻԲ. 45—46։

*Աղօթքէն ելաւ, աշակերտներուն քով եկաւ ու ըսաւ. «Ա՛լ այսուհետեւ քնացէ՛ք ու հանգչեցէ՛ք, ա՛լ վախճանն հասած է, եկաւ ժամանակը. Որդին մարդոյ ահա մեղաւորաց ձեռքը կը մատնուի։ Ելէ՛ք երթանք ասկից. ահա զիս մատնողը մօտեցաւ»։*

*Այս խօսքերով Յիսուս կը յայտնէր, թէ միայնակ կ'ուզէր չարչարուիլ, եւ աշակերտներն 'ի հանգիստ կը հրաւիրէր, եթէ կարելի էր նոցա հանգըստանալ, նոցա թուլութիւնն եւ իրենց խոստման արժէքը հասկցնելով ընդ հեգն՝ իբր 'ի յանդիմանութիւն թուլութեան նոցա։*

## Բ. Գալուստ Յուդայի հանդերձ ամբոխիւ

Եւ մինչդեռ նա զայն խօսէր, ահա Յուդա՝ մի յերկոտասանիցն եկն, եւ ընդ նմա ամբոխ բազում սրովք եւ բրօք 'ի քահանայապետիցն եւ 'ի ծերոց ժողովրդեանն։ Եւ որ մատնելոցն էր զնա, ետ նոցա նշան եւ ասէ. ընդ որում ես համբուրեցից, նա է, զնա ունիջիք։ Եւ վաղվաղակի մատուցեալ առ Յիսուս՝ ասէ. Ողջ լե՛ր, վարդապե՛տ. եւ համբուրեաց զնա։ Եւ Յիսուս ասէ ցնա. ընկե՛ր, վասն որո՞յ եկիր։ Յայնժամ մատուցեալ արկին ձեռս 'ի Յիսուս եւ կալան զնա. Մատթ. ԻԶ. 47—50։ Եւ մինչդեռ նա զայն խօսէր, գայ Յուդա Սկարիովտացի՝ մի յերկոտասանից անտի, եւ

ընդ նմա ամբոխ սուսերօք և բրօք . 'ի քահանայապետից և 'ի դպրաց և 'ի ծերոց ։ Տուեալ էր նշան մատնչին և ասէր . զոր ես համբուրեցից, նա է , կալջի՛ք զնա և տարջի՛ք զգուշութեամբ . Մարկ. ԺԴ. 43—46 ։ Ասէ ցնա Յիսուս. Յուդա՛ , համբուրելո՞վ մատնես զՈրդի՛ մարդոյ . Ղուկ. ԻԲ. 47—48 ։ Եւ Յուդայի առեալ ընդ իւր զգունդն, և 'ի քահանայապետից և 'ի Փարիսեցւոց սպասաւորս, գայ անդր ջահիւք և լապտերօք և զինուք ։ Յովհ. ԺԸ. 3 ։

Եւ ահա այս խօսքերուն վրայ Յուդա իսկարիովտացի, տասներկուքներէն մին , քահանայապետներէն , ծերերէն ու դպիրներէն վաստկուած ամբոխի մը հետ , որ ջահեր , լապտերներ սուրեր ու բիրեր ունէին , զինուորական գունդ մ'ալ հետն առած , հասաւ այն տեղ ։ զՅիսուս ամբոխին ճանչցնելու համար , համբոյրը կանխաւ մատնութեան նշան դրած էր թշնամին , թէ ախ ո՛րն որ համբուրեմ , նա է Յիսուսը , զանի բռնեցէ՛ք , ու մեծ զգուշութեամբ և առանց աղմկի տարէ՛ք ։ Արդէն խաւարին որդիք , դպիրք և քահանայապետք , գիշերային խաւարէն օգուտ կը քաղէին զՅիսուս բռնելու , և կ'աշխատէին զգուշութեամբ տանիլ , վախնալով՝ որ չըլլայ թէ ժողովուրդն խռնայ , գրգռուի , և աղմուկ հանելով՝ ձեռքերնուն խալըսէ զՅիսուս , որով անկարող լինին իրենց ոճիրն 'ի գործ դնելու ։ Սպասաւորք՝ որք զՅիսուս բռնեցին , թերևս չէին ճանաչեր զանի , զի մեծաւ մասամբ հռովմայեցիք էին , թէ՛ զօրականք և թէ՛ քահանայապետաց սպասաւորք ։

Այն ատեն Յուդա մօտեցաւ Յիսուսի , և իւր մատնութիւնը աշակերտներէն և թերևս իւր խելքովն Յիսուսէն իսկ ծածկելու միտքով, աւա՛ղ_

*դասպն՛ա, վարդապետ՛ա. ձայնելով առաքելոյն ողջունիւ համբուրեց զՅիսուս. Եւ Յիսուս նշանակելով նորա չարութիւնն, պատասխանեց. "Ընկե՛ր. (և ոչ եղբայր կամ բարեկամ), համբուրելո՞վ կը մատնես զՈրդին մարդոյ. սիրոյ նշանը՝ նենգութեան նշան և մահուան առիթ ընելով". Թերևս զանի յապաշխարութիւն ածել կ'ուզէր այս խօսքով։*

Իսկ Յիսուս իբրև ետես զայն ամենայն եկեալ ՚ի վերայ նորա, ել և ասէ ցնոսա. զո՞ խնդրէք։ Պատասխանի ետուն նմա. Յիսուս Նազովրեցի։ Ասէ ցնոսա Յիսուս. Ես եմ։ Կայր ընդ նոսա և Յուդա՝ որ մատնէրն զնա։ Իբրև ասաց թէ ես եմ, յետս յետս չոգան և անկան գետին։ Դարձեալ եհարց զնոսա. զո՞ խնդրէք։ Եւ նոքա ասեն. Յիսուս Նազովրեցի։ Պատասխանի ետ նոցա Յիսուս. ասացի ձեզ՝ թէ ես եմ. արդ եթէ զիս խնդրէք, թո՛յլ տուք դոցա երթալ։ Զի լցցի բանն՝ զոր ասաց, թէ զոր ետուրն ցիս՝ ո՛չ կորուսի ՚ի նոցանէ և ոչ զոք. Յովհ. ԺԸ. 4—9. Իբրև տեսին՝ որ զնովաւն էին, որ ինչ եղեւն, ասեն ցնա. Տէ՛ր, հարցո՞ւք զնոսա սրով. Ղուկ. ԻԲ. 49։ Իսկ Սիմովն Պետրոս, քանզի ունէր սուր, ձգեաց զնա և եհար զքահանայապետին ծառայ, և ՚ի բաց հատ զունկն նորա զաջոյ, և էր անուն ծառային Մաղքոս։ Ասէ Յիսուս ցՊետրոս. ա՛րկ զսուրդ անդրէն ՚ի պատեան իւր. զբաժակն՝ զոր ետ ինձ Հայր, ո՞չ ըմպիցեմ զնա. Յովհ. ԺԸ. 10—11։ Յայնժամ ասէ ցնա Յիսուս. դարձո՛ զսուր քո ՚ի տեղի իւր. զի ամենեքեան՝ որ առնուն սուր, սրով անկանիցին։ Թէ համարիցիս՝ թէ ո՞չ կարեմ աղաչել զՀայր իմ, և հասուցանիցէ ինձ այժմ այսր աւելի քան զերկոտասան գունդս հրեշտակաց. այլ զիա՞րդ լնուցուն գիրք, թէ այսպէս պարտ է լինել. Մատթ. ԻԶ. 51—54. Մարկ. ԺԴ. 47։

*Երբ տեսաւ Յիսուս, թէ այդ բոլոր գործակա-*

նաց գունդն ու ամբոխը իր վերայ ելած եկած էին, առջենին ելաւ աներկիւղութեամբ ըսաւ. «Ո՞վ կ'ուզէք». Երբ ըսին, Թէ «Յիսուս Նազովրեցին կ'ուզենք», պատասխանեց. «Ես եմ»: Յուդա ալ այն տեղ էր: Յիսուսի այն աչաւոր խօսքին զօրութենէն և համարձակ պատասխանէն՝ ամբոխն ետ ետ գնաց, և տապաստ գետինըն ինկաւ:

Դարձեալ հարցուց անոնց. «Զո՞վ կը խնդրէք». նորա պատասխանեցին. «Նազովրեցի Յիսուսը կ'ուզենք»: Ըսաւ Յիսուս. «Ըսի ձեզի՝ Թէ ես եմ. արդ Թէ որ զիս կը փնտռէք, թո՛ղ տուէք ատոնց (աշակերտաց) որ երթան». որպէս զի իր ըսած խօսքը կատարուի, թէ Հօրն իրեն յանձնածներէն բնաւ մէկը չը պիտի կորսընցնէ:

Այն ատեն Յիսուսի շուրջն եղողները այս եղածները տեսնելնուն պէս՝ ըսին անոր. «Տէ՛ր, սրով զարնե՞նք զատոնք»: Սիմոն Պետրոս՝ որ սուր ունէր, հանեց աճապարանօք, ու զարկաւ՝ քահանայապետին Մաղքոս անուն ծառային աջ ականջը կտրեց ձգեց, առանց Քրիստոսի պատասխանին սպասելու: Պատասխան տուաւ Յիսուս և ըսաւ. «Սուրդ՝ տեղը դի՛ր. Հօրս ինծի տուած բաժակը չը պիտի՞ խմեմ. սուր առնողները սրով պիտի իյնան. սրով պաշտպանութեան պէտք չունիմ ես. կը կարծես Թէ չե՞մ կարող Հօրս աղաչել, որ հիմայ հոս տասներկու գունդէ աւելի հրեշտակներ հասցընէ զիս պահպանելու համար. սակայն պէտք է որ գրուածները ճշդիւ կատարուին». Ո՛չ Յիսուս և ո՛չ իր հետեւողներն առաքեալք, զՔրիստոնէութիւն պաշտպանելու և տարածելու համար զէնք չը գործածեցին, և

ո՛չ խսկ 'ի պաշտպանութիւն անձին ։ Անմիջապէս մօտեցաւ Մաղքոսի ականջին, և իւր ամենակար զօրութիւնն անգամ մ'ալ ցուցնելով բժշկեց զայն։

Գ. Թոյլ տայ Յիսուս Հրէից կապել զինքն

Ասէ ապա ցեկեալսն 'ի վերայ նորա ցքահանայապետսն և ցզօրագլուխս տաճարին և ցծերս . Իբրեւ 'ի վերայ աւազակի ելէք սուսերօք և բրօք . հանապազ ընդ ձեզ էի 'ի տաճարին , և ոչ ձգեցէք ձեռս յիս . այլ այս է ձեր ժամ և իշխանութիւն խաւարի . Ղուկ. ԻԲ. 52—53. Յայնժամ ասաց Յիսուս ցամբոխսն . Իբրեւ 'ի վերայ աւազակի ելէք սուսերօք և բրօք ունել զիս . հանապազ առ ձեզ 'ի տաճարին նստէի և ուսուցանէի , և ոչ կալայք զիս . այլ այս ամենայն եղեւ , զի լցցին գիրք մարգարէիցն ։ Մատթ. ԻԶ. 55—56 ։ Մարկ. ԺԴ. 48—49 .

Այն ատեն Յիսուս՝ իւր վերայ եկող ամբոխին մէջ խառնուած քահանայապետաց, տաճարին իշխանաց և ծերերուն դառնալով ըսաւ. «Աւազակի վրայ ելածի պէս կուգաք զիս բռնելու սրերով և բիրերով. ես միշտ ձեզի հետ տաճարին մէջ էի, կը նստէի, կը սորվեցընէի ու վրաս ձեռք չը դրիք, զի չէիք կրնար յանցանք մը գտնել յիս և օրինաւորապէս զիս դատապարտել. այլ ձեր իշխանութիւնն ու զօրութիւնը խաւարին մէջն է. դուք ժողովրդէն և ազգէն վախնալնուդ համար լուսէն փախաք, և գիշերը նենգութիւնը և մատնութիւնն միջոց ընտրեցիք զիս բռնելու համար. այս է ձեր խաւարային անժամանակեայ իշխանութիւնը ։ Սակայն այս բաները, մարգարէից գրուածոց կատարմանն համար եղան ։ Տաճարին մէջ և ուրիշ տեղեր չը կրցան

բռնել զՅիսուս, քանզի ինքն չը կամեցաւ, զի «Չև էր հասեալ ժամ նորա», իսկ այժմ կամովին կը յանձնէ զանձն.

Իսկ զօրքն և հազարապետն և սպասաւորք Հրէիցն կալան զՅիսուս և կապեցին : Յովհ. ԺԸ. 12 : Յայնժամ աշակերտքն ամենեքին թողին և փախեան : Մատթ. ԻԶ. 56 :

Իսկ զօրաց գունդը, հազարապետն ու Հրէից սպասաւորները բռնեցին և անիրաւաբար կապեցին զՅիսուս. զի այնչափ բազմութեան մէջ անկարելի էր՝ որ փախչէր : Ահա այն ատեն այն պանծացող աշակերտներն ամենքն ալ թողին ըզՅիսուս և փախան :

Եւ այր երիտասարդ զհետ երթայր նորա՝ արկեալ զմերկ կտաւ մի 'ի մերկոյ. ունէին զնա երիտասարդքն : Եւ նորա թողեալ զկտաւն՝ փախեաւ մերկ 'ի նոցանէ : Մարկ. ԺԴ. 51—52 .

Քրիստոսի աշակերտներէն մին կը կարծուի այն երիտասարդը, որ գիշերանց քնէն արթըննալով, Յիսուսի ետևէն գնացեր էր անապարանոց, և չը հագուած լինելով՝ միայն 'ի մերկուց կտաւ մ'առած էր վրայն : Աւանդութեամբ կ'ըսուի, թէ Մարկոսն էր այն : Երբ երիտասարդք զանի ալ բռնեցին, կտաւն անոնց ձեռքը թողուց և փախաւ :

Դ. Տանին զՅիսուս առ Աննա եւ ապա առ Կայիափա

Եւ ածին զնա նախ առ Աննա՝ որ էր աներ Կայիափայի. որ քահանայապետն էր տարւոյն այնորիկ : Յովհ. ԺԸ. 13 .

*Ու զՅիսուս անշուշտ առանց աղմկի առ ահի ժողովրդեան՝ Նախ Աննա քահանայապետին տարին, որ աներն էր բուն այն տարւոյն քահանայապետին Կայիափայի. և կ'երևի թէ երկուքն ալ մի և նոյն տան մէջ կամ իրարու մօտ տներու մէջ կը բնակէին: Անոնց տունը՝ քաղքին դռներուն մօտ ըլլալու էր.*

*Աննա քահանայապետ կ'ըսուէր, վասն զի շատ տարի քահանայապետութիւն ըրած էր:*

Եւ երթային զհետ Յիսուսի Սիմոն Պետրոս՝ և միւս աշակերտն: Եւ աշակերտն այն՝ զի ծանօթ էր քահանայապետին՝ եմուտ ընդ Յիսուսի 'ի գաւիթ քահանայապետին: Եւ Պետրոս կայր առ դրանն արտաքոյ. ել միւս աշակերտն՝ որ էր ծանօթ քահանայապետին, և ասաց դռնապանին, և եմոյծ 'ի ներքս զՊետրոս: . . . . . . . . . Կային անդ ծառայքն և սպասաւորքն խարոյկ արկեալ, զի ցուրտ էր և ջեռնուին. կայր ընդ նոսա և Պետրոս՝ և ջեռնոյր: Եւ քահանայապետըն (Աննա) եհարց զՅիսուս վասն աշակերտացն՝ և վասն վարդապետութեան նորա: Պատասխանի ետ նմա Յիսուս. Ես յայտնապէս խօսեցայ աշխարհի: ես յամենայն ժամ ուսուցի 'ի ժողովրդեանն, և 'ի տաճարի անդ՝ ուր ամենայն հըրեայք ժողովեալ էին, և 'ի ծածուկ ինչ ո՛չ խօսեցայ: Զի՞ հարցանես զիս. հա՛րց լսողացն՝ որ լուան, թէ զի՛նչ խօսեցայ ընդ նոսա. ահաւասիկ նոքա գիտեն զինչ ասացի ես: Յովհ. ԺԸ. 15—21: Եւ Պետրոս զհետ նորա երթայր հեռագոյն մինչև 'ի սրահ քահանայապետին. և մտեալ 'ի ներքս նստէր ընդ սպասաւորսն տեսանել զկատարածն: Մատթ. ԻԶ. 58: Մարկ. ԺԴ. 54: Ղուկ. ԻԲ. 54:

*Յիսուսի ետևէն հեռուէն կ'երթային Սիմոն Պետրոս և միւս աշակերտն՝ որ Յովհաննէս կը թուի. (որչա՛փ վտանգաւոր է Քրիստոսէ հեռանալ): Այս քահանայապետին ծանօթ ըլլալով՝*

Յիսուսի հետ կրցաւ մտնել քահանայապետին գաւիթը. Պետրոս դուրսը դրան քով կեցած էր. քահանայապետին ծանօթ աշակերտը (Յովհաննէս) դռնապանին զրուցեց ու Պետրոսն ալ ներս առաւ. Հոն էին քահանայապետին ծառաներն ու սպասաւորները, կրակ վառած կը տաքնային, վասն զի ցուրտ էր։ Պետրոս գործին վերջը կը դիտէր ու կը տաքնար։

Աննա քահանայապետն սկսաւ հարցուփորձ ընել Յիսուսի՝ թէ՛ իր աշակերտաց և թէ՛ վարդապետութեան մասին. աշակերտաց համար ըրած հարցմամբն՝ կայսեր դէմ ապստամբութեան վերաբերեալ խօսք մ՚առնել կ՚ուզէր նորա բերնէն. իսկ վարդապետութեան նկատմամբ ըրած հարցմամբը, Մովսէսի օրինաց դէմ բառ մը կամ խօսք մը բերնէն գողնալ կը ջանար, որ ամբաստանութեան յօդուածներ շինէ։ Յիսուս պատասխանեց. «Ես յայտնապէս խօսեցայ աշխարհի մէջ. ես ժողովրդեան, ժողովրդանոցներու և տաճարին մէջ ամեն ժամանակ քարոզեցի՝ բոլոր Հրէից ազգին առջև. ես բնաւ պահելու և ծածկելու բան մը չը խօսեցայ. ինձ ինչո՞ւ կը հարցընես, լսողներուն հարցո՛ւր՝ թէ ես ինչ խօսեցայ. բոլոր ըսածներս գիտեն անոնք»։

Իբրև նա զայն ասաց, մի ոմն 'ի սպասաւորացն որ անդ կայր, ած ապտակ Յիսուսի և ասէ. այդպէ՞ս պատասխանի տաս քահանայապետին։ Նա Յիսուս ասէ ցնա. Եթէ չար խօսեցայ, վկայեա՛ վասն չարին. ապա եթէ բարւոք՝ ընդէ՞ր հարկանես զիս։ Յովհ. ԺԸ 22-23։

Այս խօսքն ըսած ատեն, հոն կեցող սպասաւորներէն մէկը Յիսուսի ապտակ մը զարկաւ ու

Բայց ասեմ ձեզ, յայսմ հետէ տեսանիցէք զՈրդի մարդոյ նստեալ ընդ աջմէ զօրութեան՝ և եկեալ ընդ ամպս երկնից։ Յայնժամ քահանայապետն պատառեաց զհանդերձս իւր, և ասէ. հայհոյեաց, զի՞ ևս պէտս են մեզ վկայք, ահա արդ լուարուք զհայհոյութիւն նորա. զի՞նչ հաճոյ է ձեզ։ Նոքա պատասխանի ետուն և ասեն. մահապարտ է։ Մատթ. ԻԶ. 57—66։ Զի բազումք սուտ վկայութիւն վկայէին զնմանէ, և նման միմեանց ո՛չ էին վկայութիւնք։ Այլ յարուցեալ վկայէին սուտ զնմանէ, և ասէին՝ թէ մեք լուաք 'ի դմանէ՝ զի ասէր. ես քակեցից զտաճարդ զայդ ձեռագործ, և զերիս աւուրս շինեցից այլ անձեռագործ։ Սակայն և այնպէս չէր նման վկայութիւնն նոցա։ Մարկ. ԺԴ. 53. 55–64։

Աննա կապեց զՅիսուս՝ Կայիափա քահանայապետին ղրկելու։ Այս մի և նոյն անձն էր՝ որ խրատ տուաւ ժողովրդեան, թէ լաւ է որ ժողովրդեան համար մարդ մը զոհուի։

Ապա անոնք ալ բռնեցին զՅիսուս և բերին Կայիափա քահանայապետին քով, ուր դպիրքն և ծերակոյտը ժողովուած էին այն գիշեր։

Աննա և Կայիափա և ամենայն Սանհեդրին սրբաժողով (չարաժողով) ատեանը՝ Յիսուսի վրայօք սուտ վկայութիւն կը փնտռէին, որ սպաննեն զանի, և չէին կրնար գտնել. վասն զի շատերը սուտ վկայութիւններ կը վկայէին, բայց վկայութիւնք իրարու չէին համաձայնիր. Վերջը երկու սուտ վկայներ եկան ու ըսին, թէ «Մենք լսեցինք այդ մարդէն՝ որ կ՚ըսէր, թէ այդ ձեռագործ տաճարը կրնամ քակել, և երեք օրուան մէջ ուրիշ տաճար մի անոր տեղ շինել անձեռագործ»։ Այս վերջին վկայութիւնն ալ սուտ էր. վասն զի Յիսուս ըսած էր. «Եթէ քակէք այդ տաճարը, ես երեք աւուր մէջ կը շինեմ», (իւր մարմնոյն մեռելութիւնն ու յարութիւնը իմացը-

նելով ) ։

Յիսուս չէր պատասխաներ ։ Այն ատեն քահանայապետն ոտքի ելաւ, ու մէջ տեղը գալով ըսաւ. «Պատասխան չե՞ս տար, չե՞ս լսեր, թէ ատոնք քեզի համար ի՞նչ կը վկայեն»։ Յիսուսի լռութիւնն աւելի կը զայրացնէր զիրենք ։

Քահանայապետք՝ որ առանց դատաստանի արդէն սոսկալի անիրաւութեամբ զՅիսուս դատապարտեր էին, չէին կրնար ամբաստանութեան ձեւագիրը կամ վճռագիրը չընել հիմայ. վասն զի ըստ օրինաց մէկն ամբաստանելու համար՝ գլխաւորապէս վկաներ կը փնտռուէին. ուստի որոշեցին իրեն դիմել, և իրենց ամբաստանութեան վճռագիրն չընել կարողանալու համար՝ իւր յանցանքն իրեն խոստովանել տալ ։

Եւ երբոր դարձեալ լուռ կեցեր էր Յիսուս և պատասխան չէր տար, քահանայապետը կենդանի Աստուծոյ անունովն երդմնցընելով զանի՝ ստիպեց, որ ըսէ իրենց, թէ միթէ ի՞նքն է օրհնեալ Աստուծոյ Որդին Քրիստոսը, ինչպէս շատերը կամ ամեն մարդ կ՚ըսեն ։ Յիսուս պատասխանեց. "Դու ըսիր. բայց կ՚ըսեմ ձեզի. այսուհետև պիտի տեսնէք զՈրդին մարդոյ, որ զօրութեան աջ կողմը նստած և երկնից ամպերուն վերայ եկած է" ։ Քրիստոս այս խօսքն ուրիշ անգամներ ալ ըսած էր. այս խօսքը ճշմարիտ էր. նա ճշմարտութիւնը կը խոստովանէր, և զայս յանցանք կ՚անուանէին քահանայապետք. այն խոնարհ Յիսուսը, օր մը հզօր Աստուծոյ աջ կողմը պիտի բազմէր, և օր մը զիրենք և զբոլոր մարդիկ պիտի դատէր ։

Այն ատեն՝ այդ արտաքին բարեպաշտու-

Բայց ասեմ ձեզ. յայսմ հետէ տեսանիցէք զՈրդի մարդոյ նստեալ ընդ աջմէ զօրութեանն՝ և եկեալ ընդ ամպս երկնից։ Յայնժամ քահանայապետն պատառեաց զհանդերձս իւր, և ասէ. հայհոյեաց, զի՞ եւս պիտոյ են մեզ վկայք, ահա արդ լուայք զհայհոյութիւն նորա. զի՛նչ հաճոյ է ձեզ. Նոքա պատասխանի ետուն և ասեն. մահապարտ է։ Մատթ. ԻԶ. 57—66։ Զի բազումք սուտ վկայութիւն վկայէին զնմանէ, և նման միմեանց ո՛չ էին վկայութիւնք։ Այլ յարուցեալ վկայէին սուտ զնմանէ, և ասէին՝ թէ մեք լուաք 'ի դմանէ՝ զի ասէր. ես քակեցից զտաճարս զայդ ձեռագործ, և զերիս աւուրս շինեցից այլ անձեռագործ։ Սակայն և այնպէս չէր նման վկայութիւնն նոցա։ Մարկ. ԺԴ. 53. 55–64։

*Աննա կապեց զՅիսուս՝ Կայիափա քահանայապետին ղրկելու։ Այս մի և նոյն անձն էր՝ որ խըրատ տուաւ ժողովրդեան, թէ լաւ է որ ժողովրդեան համար մարդ մը զոհուի։*

*Ապա անոնք ալ բռնեցին զՅիսուս և բերին Կայիափա քահանայապետին քով, ուր դպիրքն և ծերակոյտը ժողովուած էին այն գիշեր։*

*Աննա և Կայիափա և ամենայն Սանհեդրին սըրբաժողով (չարաժողով) ատեանը՝ Յիսուսի վըրայօք սուտ վկայութիւն կը փնտռէին, որ սպաննեն զանի, և չէին կրնար գտնել. վասն զի շատերը սուտ վկայութիւններ կը վկայէին, բայց վկայութիւնք իրարու չէին համաձայնիր. Ետքը երկու սուտ վկաներ եկան ու ըսին, թէ «Մենք լսեցինք այդ մարդէն՝ որ կ'ըսէր, թէ այդ ձեռագործ տաճարը կրնամ քակել, և երեք օրուան մէջ ուրիշ տաճար մը անոր տեղ շինել անձեռագործ»։ Այս փցուն վկայութիւնն ալ սուտ էր. վասն զի Յիսուս ըսած էր. «Եթէ քակէք այդ տաճարը, ես երեք աւուր մէջ կը շինեմ», (իւր մարմնոյն մեռելութիւնն ու յարութիւնը իմացը-*

նելով)։

Յիսուս չէր պատասխաներ։ Այն ատեն քահանայապետն ոտքի ելաւ, ու մէջ տեղը գալով ըսաւ. «Պատասխան չե՞ս տար, չե՞ս լսեր, թէ ատոնք քեզի համար ի՞նչ կը վկայեն»։ Յիսուսի լռութիւնն աւելի կը զայրացնէր զիրենք։

Քահանայապետք՝ որ առանց դատաստանի արդէն սոսկալի անիրաւութեամբ զՅիսուս դատապարտեր էին, չէին կրնար ամբաստանութեան ձևագիրը կամ վճռագիրը չինել հիմայ. վասն զի ըստ օրինաց մէկն ամբաստանելու համար՝ դիտաւորապէս վկաներ կը փնտռուէին. ուստի որոշեցին իրեն դիմել, և իրենց ամբաստանութեան վճռագիրն չինել կարողանալու համար՝ իր յանցանքն իրեն խոստովանել տալ։

Ու երբոր դարձեալ լուռ կեցեր էր Յիսուս և պատասխան չէր տար, քահանայապետը կենդանի Աստուծոյ անունովն երդմնցընելով զանի՝ ստիպեց, որ ըսէ իրենց, թէ միթէ ի՞նքն է օրհնեալ Աստուծոյ Որդին Քրիստոսը. ինչպէս շատերը կամ ամեն մարդ կ'ըսեն։ Յիսուս պատասխանեց. "Դու ըսիր. բայց կ'ըսեմ ձեզի. այսուհետև պիտի տեսնէք զՈրդին մարդոյ, որ զօրութեան աջ կողմը նստած և երկնից ամպերուն վրայ եկած է"։ Քրիստոս այս խօսքն ուրիշ անգամներ ալ ըսած էր. այս խօսքը ճշմարիտ էր. նա ճշմարտութիւնը կը խոստովանէր, և զայս յանցանք կ'անուանէին քահանայապետք. այն խոնարհ Յիսուսը, որ մը հզօր Աստուծոյ աջ կողմը պիտի բազմէր, և որ մը զիրենք և զբոլոր մարդիկ պիտի դատէր։

Այն ատեն՝ այդ արտաքին բարեպաշտու-

թեամբ միայն զարդարեալ քահանայապետն, իւր հանդերձները պատռեց, յօրինակ թէ հին քահանայապետութիւնը լմնցաւ՝ նորա պատմուճանին պատառմամբը, և նորը կ՚սկսի։ Այլապէս, թէ՝ «Հայհոյութիւն ըրաւ, ա՛լ ի՞նչ պէտք է մեզի վկայներ. ահա հիմայ լսեցինք դորա հայհոյութիւնը. ի՞նչ կը համրիք, ժողովականք»։ Անոնք ալ միաբար պատասխանեցին ու ըսին. «Մահապարտ է»։

Այսպէս Յիսուս Քրիստոս դատապարտութեան վճիռ ընդունեց այն չարաժողովէն, որոյ անդամներն արդէն դատապարտուած էին հանդիսապէս ՚ի Յիսուսէ Քրիստոսէ իրենց անօրէնութեանց և անիրաւութեանցը համար։ Եւ ի՞նչ էր Քրիստոսի յանցանքը. —ճշմարտութիւնն ըսելը, «Որդի Աստուծոյ եմ, Քրիստոսն եմ», և իրենց չարութիւնն ու անհաւատութիւնը յանդիմանելն, և ժողովրդեան դէմքը փառաւորելը։ Բայց ահա իրենց իշխանութեան վախճանը հասած է. այն քահանայապետն՝ որ երբեմն մարգարէացաւ, թէ «լաւ է՝ զի այր մի մեռցի ՚ի վերայ ժողովրդեան», նոյն ինքն նոր մարգարէութիւն մ՚ալ ըրաւ հիմայ, իւր քահանայապետական պատմուճանն պատռելով. վասն զի ա՛լ իւր քահանայապետութիւնը լմնցած է, և յաւիտենական քահանայապետին Յիսուսի Քրիստոսի նոր քահանայապետութիւնը կ՚սկսի, ստուերականին ճշմարիտը յաջորդելով։

## Ն. Ուրացութիւն սրբոյն Պետրոսի եւ զղջումն

Ան աղջիկն որ դռնապանն էր, զՊետրոս. [illegible]

դո՞ւ յաշակերտաց առնն այնորիկ իցես ․ և նա ասէ, ո՛չ եմ ։ ․ ․ ․ ․ ․ Եւ Սիմոն Պետրոս կայր անդ՝ և ջեռնոյր ․ ասեն ցնա, միթէ և դու՞ յաշակերտաց անտի նորա իցես ․ Նա ուրացաւ և ասէ՝ թէ ոչ եմ ։ Եւ ասէ մի ոմն ՚ի ծառայից քահանայապետին՝ ազգական այնորիկ, զորոյ զունկն եհատ Պետրոս ․ ո՞չ ես քեզ տեսի շնեղ ՚ի պարտիզի անդ ընդ նմա ։ Դարձեալ ուրացաւ Պետրոս ։ Եւ վաղվաղակի հաւ խօսեցաւ ։ Յովհ․ ԺԸ․ 17․ 25—27 ։ Իբրև լուցին կրակ ՚ի մէջ գաւթին, և նստան շուրջ, նստաւ և Պետրոս ՚ի մէջ նոցա ։ Ղուկ․ ԻԲ․ 55 ։ Եւ Պետրոս մնացեալ էր ՚ի խոնարհ ՚ի գաւթին, գայ աղախին մի քահանայապետին, և տեսանէ զնա՝ զի ջեռնոյր ․ հայեցաւ ընդ նա՝ և ասէ ․ Եւ դու ընդ Յիսուսի Նազովրեցւոյ էիր ։ Նա ուրացաւ և ասէ․ ոչ ճանաչեմ և ոչ գիտեմ՝ զինչ դուդ ասես ։ Եւ ելեալ ել յարտաքին գաւիթն, և հաւ խօսեցաւ ։ Դարձեալ տեսեալ զնա աղախինն, և սկսաւ ասել ցայնոսիկ որ շուրջն կային, թէ և սա ՚ի նոցանէ է ։ Եւ նա դարձեալ ուրացաւ ։ Եւ յետ սակաւ միոյ՝ դարձեալ որ շուրջն կային, ասէին ցՊետրոս ․ արդարև և դու ՚ի նոցանէ ես, քանզի Գալիլեացի ես, և խօսք քո նման են ։ Եւ նա սկսաւ նզովել ․ երդնուլ և ասել, թէ ո՛չ գիտեմ զայրն՝ զորմէ դուքդ ասէք ։ Եւ նոյն ժամայն կրկին հաւ խօսեցաւ ։ Եւ յիշեաց Պետրոս զբանն՝ զոր ասաց ցնա Յիսուս, թէ չե՛ւ իցէ հաւու երկիցս խօսեալ՝ զի դու երիցս ուրասցիս զիս ․ և սկսաւ լալ ։ Մարկ․ ԺԴ․ 66-72․ Ելեալ արտաքս՝ ելաց դառնապէս ։ Մատթ․ ԻԶ․ 69—75 ։

*Եւ Պետրոս վարը գաւիթը նստած սպասաւորներուն հետ երբ կը տաքնար՝ քահանայապետին դռնապան աղջիկը կամ աղախինը եկաւ, տեսաւ Պետրոսն՝ որ կը տաքնար, ըսաւ անոր ․ "Դու ալ Նազովրեցի Յիսուսի հետ էիր, միթէ դու ալ նորա աշակերտներէ՞ն ես ։ Պետրոս՝ որ անտարակոյս գէթ մասամբ լսած էր ծերակուտին դատավճիռը ․ և անկարող իւր վրայ եղած տպաւորութիւնները ծածկելու՝ սոսկմամբ ուրացաւ յայտնապէս ամենուն առջին ․ "Զանի չեմ ճան-*

չեր, չեմ գիտեր, կի՛ն դու, ըսածդ չեմ հասկը-նար»։ Երբ դուրսի գաւիթն ելաւ՝ հաւն ալ խօ-սեցաւ։

Երբ Պետրոս դռնէն դուրս ելաւ, ուրիշ ա-ղախին մ՚ալ տեսաւ զինքը, և հոն կեցողներուն ըսաւ. «Այս մարդն ալ Նազովրեցի Յիսուսին հետ էր»։ Ու քիչ մ՚ետքը երբ Պետրոս նորէն խա-րուկին քով եկաւ ու կը տաքնար, նորէն այն ա-ղախինն և ուրիշ մարդ մը տեսան զինքը և ըսին. «Դո՛ւ ալ այն մարդուն աշակերտներէն ես»։ Պետ-րոս այս անգամ երդմամբ ուրացաւ, թէ «Չեմ ճանչեր այն մարդը»։

Վրան ժամ մ՚անցնելէն ետքը՝ հոն կեցող-ներն եկան, ու Պետրոսին ըսին. «Արդարև դու ալ անոնցմէ ես. վասն զի խօսուածքէդ յայտնի է, որ դու Գալիլիացի ես»։ (Կ՚երևի որ Գալիլիա-ցւոց բարբառն Երուսաղէմացւոց բարբառէն տար-բեր էր)։ Ու Պետրոսի՝ սրով ականջը կտրած Մաղքոս ծառային ազգականներէն մին կրկնեց. «Չէ՞ որ պարտիզին (Գեթսեմանի) մէջ անոր հետ տեսայ զքեզ»։ Այն ատեն Պետրոս սկսաւ իւր անձին նզովք կարդալ, երդնուլ ու ըսել. «(Աս-տուած չընէ՛ կամ Աստուած զիս պատժէ՛) ես չը գիտեմ, ինչ կը խօսիք. այդ ձեր ըսած մարդն ես չեմ ճանչեր»։ Եւ այն ատեն հաւը դարձեալ խօսեցաւ։

Կ՚երևի որ Յիսուս ծերակուտի ատենէն դուրս հանած լինին՝ ծածուկ խորհրդակցելու համար։ Այս ժամուն՝ երբ Յիսուսի աչքերը Պե-տրոսի աչաց հանդիպեցան, դարձաւ տէր և հա-յեցաւ ՚ի Պետրոս։ Ի՞նչ գորովական հայեցո-ւածք էր այն, որ նորա աստուածային աչքերէն

*շնորհաց և լուսոյ ճառագայթ մի հատաւ գոգցես, և Պետրոսի աչքերէն թափանցելով՝ սիրտը, խիղճն ու միտքն արթնցուց. միտքը բերաւ Պետրոս Յիսուսի խօսքը, թէ «Դեռ հաւը չը խօսած՝ երեք անգամ — չը գիտեմ ըսելով — զիս պիտի ուրանաս». Յիսուսի հայեցուածքը, զղջման և ապաշխարութեան վտակներ բղխեցոյց Պետրոսի սրտէն ու աչքերէն. և Պետրոս դուրս ելաւ և լացաւ դառնապէս։*

Եւ արքն, որ պահէին զնա, այպն առնէին զնովաւ, և հարկանէին։ Ծածկէին զերեսս նորա և ապտակէին. և հարցանէին զնա և ասէին. Մարգարեաց, ո՞վ է որ եհարն զքեզ։ Եւ այլ բազում ինչ հայհոյութեամբ խօսէին ՚ի նա։ Ղուկ. ԻԲ. 63—65։ Եւ ոմանք սկսան թքանել ընդ երեսս նորա. յորձ զգլխով արկանել, կոփել և ասել, Մարգարեա՛ց մեզ Քրիստոս, ո՞վ է այն որ եհարն զքեզ. և սպասաւորքն ապտակս հարկանէին նմա։ Մարկ. ԺԴ. 65։ Մատթ. ԻԶ. 67-68։

*Այս միջոցին էր, որ զՅիսուս պահող մարդիկ կ՚այպանէին, կը նախատէին զնա, կը թքնէին նորա երեսը, կռուփ կը հանէին ու կը ծեծէին, աչքերը կը գոցէին, կը տանջէին, ապտակներ կը զարնէին. և այս դժնդակ չարչարանաց հետ իրենց գազանային ուրախութիւնն կատարելագործելու համար հարցումներ կ՚ընէին ու կ՚ըսէին. «Մարգարէացի՛ր կամ գուշակէ, ո՛վ Քրիստոս, ո՞վ է քեզի զարնողը». և ուրիշ շատ մի հայհոյութեան խօսքեր կ՚ընէին մինչև առաւօտ։*



(յերկնի՞ց էր՝ թէ ՚ի մարդկանէ), պատասխան չէք տար, եւ բնաւ միտք չունիք զիս արձակելու։ Իմ կամօքս եկած եմ՝ ես յայս չարչարանս. բայց զայս միայն կըսեմ, որ այսուհետեւ Որդին Աստուծոյ, Հօր Աստուծոյ աջ կողմը պիտի՛ նըստի»։ Ասոր վրայ ամենքն ալ ըսին. «Ըսել է որ դուն ես Աստուծոյ Որդին»։ Յիսուս պատասխանեց. «Դուք ինքնին կըսէք, թէ ես եմ»։ Ասոր առեն ամենքն ալ ըսին. «Ա՛լ ի՛նչ պէտք է մեզի ուրիշ վկայութիւն, ահա մեք ինքնին լըսեցինք դորա բերնէն»։

### Բ. Մատնի Պիղատոսի որպէս մահապարտ

Եւ յարուցեալ ամենայն բազմութիւնն նոցա, ածին զնա առ Պիղատոս. Ղուկ. ԻԳ. 1։ Կապեցին զնա, և ածին մատնեցին. և ետուն ՚ի ձեռս Պոնտացւոյ Պիղատոսի դատաւորի. Մատթ. ԻԷ. 2։ Մարկ. ԺԵ. 1։ Յովհ. ԺԸ. 28։

*Եւ բոլոր դոցա այդ բազմութիւնը ելան. Յիսուսը կապեցին եւ Պոնտացի Պիղատոսին ձեռքը մատնեցին, որ Հռովմայեցի էր, եւ այս թագաւորին կուսակալ եւ դատաւոր Յուդայի, Հըռովմայեցւոց տէրութեան կողմանէ։*

Յայնժամ տեսեալ Յուդայի՝ որ մատնեացն զնա, թէ դատապարտեցաւ, զղջացաւ. և դարձոյց զերեսուն արծաթին առ քահանայապետսն և ծերս ժողովրդեանն. Եւ ասէ. Մեղայ, զի մատնեցի զարիւնն արդար. և նոքա ասեն. Մեզ զի՞ է, դու գիտես։ Եւ ընկեց զարծաթն ՚ի տաճարին, և գնաց, և [illegible] խեղդեցաւ։ Իսկ քահանայապետքն առեալ զարծաթն, ասեն. Ոչ է արժան ընդունել զայդ ՚ի կորբանն, քանզի գին արեան է։ Խորհուրդ առեալ, գնեցին նովաւ զագարակ

կըն Բրտի 'ի գերեզման օտարաց : Վասն այնորիկ կոչեցաւ ագարակն այն , Ագարակ արեան՝ մինչեւ ցայսօր : Յայնժամ լըցաւ՝ որ ասացեալն 'ի ձեռն Երեմիայ մարգարէի . Եւ առին զերեսուն արծաթին զգին վաճառելոյն , զոր առին յորդւոցն Իսրայէլի : Եւ ետուն զնա յագարակն Բրտի . որպէս հըրամայեաց ինձ Տէր : Մատթ. ԻԷ. 3—10 :

Այն անտեր մատնիչ Յուդան , որ իրաց ելքը կընկատէր , եւ որ թերեւս կը յուսար , թէ կերպով մը կրնայ ազատիլ Յիսուս , իր ըրածին սոսկալի վախճանը տեսաւ . տեսաւ իր պարտաւորութիւնն ու դատապարտութիւնն ու զղջաց . սակայն ոչ խոնարհութեամբ եւ ապաշխարութեամբ . մեռեալ էր նորա զխղճն իր հաւատոյ պէս , յուսահատութեան զգացումն եւ յայտարարութիւն էր առաւել , յակամայից բռնադատեալ եւ ոչ կատարեալ սրտով : Այսու զղջմամբ Յուդա՝ մատնութեան գինն եղող արծաթը քահանայապետներուն եւ ժողովրդեան ծերերուն դարձուց . «մեղայ , ըսաւ , արդար արիւն մատնեցի », որով Յիսուսի արդարութիւնն ու անմեղութիւնն , նոյն իսկ մատնչին խոստովանութեամբ անգամ մը ծերակուտին առջեւ վկայուեցաւ : Քահանայապետք , դպիրք եւ ծերք պատասխանեցին . «Մեզի ի՞նչ պէտք , ի՞նչ հոգ , դու գիտես , դու նայէ » : Այսպէս կը խօսի աշխարհ կորուսեալ հոգիներու . չարերն իրենց հրապուրանօք մոլորեալ հոգիներուն հեծեծանաց ու հառաչանաց առջեւ անտարբեր են , եւ զգացած ցաւուցն անկարեկիր : Երանի՜ թէ Յիսուսի Քրիստոսի գթութեանն ու գորովոյն դիմէր Յուդա . Քրիստոս միայն նորա յուսահատ հոգւոյն , յոյս , եւ խռովեալ սրտին խաղաղութիւն տալու կարող

էր ։ «Որ գայ առ իս՝ ոչ հանից արտաքս» ։

Յուդա իր մեղաց ծանրութեան ներքեւ ճըն-շուեցաւ , ու դնաց խեղդեց ինքզինքը . կորաւ մարմնով եւ հոգւով ։

Քահանայապետք եւ ծերք , որ անտարակոյս տաճարին գանձանակէն վճարած էին Յուդայի , այդ կեղծաւոր մարդիկը՝ որ տաճարին ստակովն մատնութեան գին վճարելու խիղճ չէին ըրած , այդ ուղտերը կլլող և մժղուկները քամող չարա-գործները, խիղճ ըրին Յուդայի ձգած արծաթը գանձանակին մէջ ընդունելու , և այդ ստակով բրուտի մը ագարակ գնեցին, օտարաց գերեզման ընելու համար . և իրենց այս գործովն կատա-րուեցաւ Զաքարիայի մարգարէութիւնը . «վաճա-ռեալոյն գինը՝ երեսուն արծաթն առին , զոր Իս-րայելի որդւոցմէ ժողված էին , և անով բրուտ մը ագարակ գնեցին , ինչպէս որ Աստուած ինձ հը-րամայեց» . ԺԱ. 13 ։ Այս խօսքը՝ Երեմիայի մար-գարէութեան մէջ յիշուածի պէս զրուցուած է այս տեղ , բայց Զաքարիայինն է ։ Սովոր էին Հը-րէայք՝ փոքր մարգարէութիւններն մեծերուն ա-նունովն յիշել . ինչպէս կան սաղմոսներ՝ որ Դաւ-թին չեն , բայց ամէնը մէկանց Սաղմոսք Դաւթի կ՚ըսուին ։

Այդ ագարակին անունն՝ ագարակ արեան (Ակեղդամա) մնաց ։

Եւ նոքա ( Հրէայքն ) ո՛չ մտին յապարանսն (Պրետորիոն), զի մի՛ պղծեսցին , այլ զի ուտիցեն զզատիկն . Յովհ. ԺԸ. 28 ։

Յիսուսի՝ ընթրիքը կատարած գիշերուան հե-տեւեալ առաւօտուն , Հրէայք Պիղատոսի ապա-րանքը չէին ուզեր մտնել , որ չը պղծուին , ու

կիրայ․ Թէ յիշխանութեանն Հերովդի է, նա դարձուց զնա առ Հերովդէս․ քանզի և նա յԵրուսաղէմ էր յաւուրսն յայնոսիկ․ Ղուկ. ԻԳ. 2—7 ։ Ել առ նոսա Պիղատոս արտաքս և ասէ․ զի՞նչ չարախօսութիւն մատուցանէք զառնէն զայնմանէ ։ Պատասխանի ետուն և ասեն ցնա․ եթէ չէր չարագործ այրն այն, ապա ոչ մատնէաք զնա քեզ ։ Ասէ ցնոսա Պիղատոս․ առէ՛ք զնա դուք, և ըստ Օրինաց ձերոց դատեցարո՛ւք ։ Ասեն ցնա Հրեայքն․ մեզ ոչ է օրէն սպանանել զոք․ Զի լցցի բանն Յիսուսի, զոր ասաց նշանակէր, թէ որո՛վ մահուամբ մեռանելոց էր ։ Եմուտ միւսանգամ յապարանսն Պիղատոս, կոչեաց զՅիսուս և ասէ ցնա․ դո՞ւ ես Թագաւորն Հրէից ։ Պատասխանի ետ Յիսուս․ 'ի քէ՞ն ասես զայդ, եթէ այլք ասացին քեզ զինէն ։ Պատասխանի ետ Պիղատոս․ միթէ և ես Հրեա՞յ իցեմ․ ազգն քո և քահանայապետք մատնեցին զքեզ ինձ․ զի՞նչ գործ գործեցեր դու ։ Պատասխանի ետ Յիսուս․ իմ Թագաւորութիւն չէ յայսմ աշխարհէ․ եթէ յաշխարհէ աստի էր արքայութիւն իմ, պաշտօնեայքն իմ մարտնչէին արդեօք, զի մի՛ մատնեցայց Հրէից․ բայց արդ թագաւորութիւնն իմ չէ աստի ։ Ասէ ցնա Պիղատոս․ ապա թէ այդպէս իցէ՝ թագաւոր ո՞ք ես դու ։ Պատասխանի ետ Յիսուս․ դու ասես՝ թէ Թագաւոր իցեմ․ բայց ես յայդ իսկ ծնեալ եմ, և 'ի դոյն իսկ եկեալ եմ յաշխարհ, զի վկայեցից ճշմարտութեան․ ամենայն՝ որ 'ի ճշմարտութենէ է, լսէ բարբառոյ իմոյ ։ Ասէ ցնա Պիղատոս․ զի՞նչ է ճշմարտութիւն ։ Զայս իբրև ասաց՝ դարձեալ ել առ Հրեայսն և ասէ ցնոսա․ ես և ոչ մի ինչ պատճառս գտանեմ 'ի նմա ։ Յովհ. ԺԸ. 29—38 ։

*Յիսուս դատաւորին առջևն էր կեցած․ Նոյն զատկին չաբաթ օրուան նախընթաց ուրբաթը կամ պատրաստութեան օրն էր այն օրը․ Հրեայք նոյն չաբաթը սուրբ պահելու համար ամեն զգուշութիւն ձեռք առին, օրինական պղծութենէ սուրբ մնալով՝ խաղաղական գոհերը կամ զատիկըն ուտելու, ինչպէս որ վերը պատմեցինք։ փարիսեցւոց արժանի՜ կեղծաւորութիւն․ Նոյն սուրբ*

աւուր գիշերը, քանի մը ժամ յառաջ անիրաւ դատաստան կը կտրեն, արդարն 'ի մահ կը մատնեն՝ չեն խղճեր, ու հիմայ հեթանոսական ապարանք մի մտնելու խիղճ կ'ընեն։

Դուրս ելաւ Պիղատոս և ըսաւ. «Ի՞նչ չարիք գործած է այդ մարդը, յանցանքն ի՞նչ է»։ Հրէայք՝ որ Քրիստոսի համար «յանցանք մը գործած է» չէին կարող ըսել, դժուարութեամբ պատասխանեցին ու ըսին. «Թէ որ այդ մարդը չարագործ չը լինէր, քու ձեռքդ չէինք յանձներ զանի»։ Յանցանքը չը կրցին ըսել, վասն զի չունէր յանցանք։ Անշուշտ հասկցաւ Պիղատոս, թէ ի՞նչ դիտաւորութեամբ իրեն մատներ էին, ըսաւ. «Դուք առէ՛ք տարէ՛ք, և ձեր օրինաց համեմատ դատեցէք»։ Հրէայք պատասխանեցին. «Մեզի ներելի չէ, մենք իշխանութիւն չունինք մարդսպաննելու». վասն զի զՅիսուս իբրև չարագործ ներկայացուցած էին դատաւորին, և քաղաքական յանցանաց մասին կենաց և մահու իրաւունքը, երկրին կուսակալին 'կը վերաբերէին։ Հրէայք քարկոծելու միայն սովորութիւն ունէին և աւանդութիւն. բայց կ'երևի թէ այժմ իրենց անկախութիւնն վերցուած լինելով՝ միայն մահու արժանաւորութեան վկայութիւն կամ ամբաստանութեան գիր կուտային, գործադրութիւնը քաղաքական իշխանութեան թողլով, թէև երբեմն յանկարծական կատաղութեամբ իրենք ալ կը քարկոծէին, ինչպէս Ս. Ստեփաննոսը քարկոծեցին։ Բայց Քրիստոսի մահուան եղանակն արդէն որոշուած էր ձողաբարձ ողջնձի օծումն յանապատին և նոյն իսկ Յիսուսի խօսքովն։

Հրէից այս ամբաստանութեամբ Պիղատոս

մանկապարտ չը գտաւ զՅիսուս․ ինքը կռապաշտ Հռովմայեցի՝ կրօնական հայհոյութեանց համար, ինչպէս կը գրպարտէին Հրէայք, ոչ զոք կրնար պատժել։ Ատոր Հրէայք իրենց խօսքն ու աղաղակը սաստկացնելով սկսան չարախօսել․ դատաւորէն աւելի առաջ կ'անցնէին, և չէին ուզեր նաև, որ դատաւորը նորա դատաստանը տեսնէ՝ ըստ մարգարէութեանն Եսայեայ․ «Դատաստան նորա բարձաւ»․ ԾԴ․ Ու կ'ըսէին թէ «այդ մարդը մենք գտանք, որ կը մոլորեցնէր, կ'ապստամբեցնէր մեր ազգը․ կայսեր հարկ տալը կ'արգելուր; և իրեն համար «Քրիստոս թագաւոր ինքն է» կ'ըսէր»։ Հիմայ քաղաքական ոճիրներով ամբաստանեցին, և իրենց առջի դրած չարագործ մակդիրը բացատրեցին անամօթաբար․ այսպէս ահա կրօնից խնդիրը քաղաքականութեան դունով ներկեցին, Հռովմէական աշխարհակալութիւնը շողոքորթելով․

Պիղատոս նորէն ապարանքը մտաւ՝ Հրէից այս ամբաստանութեան վրայ առանձին զՅիսուս հարցաքննելու, և հարցուց․ «Դո՞ւ ես թագաւորն Հրէից»․ Յիսուս ալ փոխադարձ անոր հարցում մ'ըրաւ; «Այդ խօսքը դու քեզնէ՞ կ'ըսես, թէ ո՞չ ուրիշներն ըսին քեզ ինձ համար․ այսինքն, դու Հռովմայ կայսեր թագաւորութեա՞ն նման թագաւորութիւն մը կը հասկնաս, թէ ո՞չ այն հոգևոր ու երկնային թագաւորութիւնը զոր գուշակեալ 'ի մարգարէից»։ Բնականաբար այս խօսքին վրայ Պիղատոս պատասխանեց․ «Միթէ ես ալ Հրէայ եմ․ հարկաւ ես երկրաւոր թագաւորութեան նկատմամբ գաղափար ունիմ միայն․ զքեզ քո ազգդ ու քահանայապետներդ ինձ մատ-

Հերովդէս երբ տեսաւ զՅիսուս, ուրախ եղաւ. վասն զի շատ ժամանակէ 'ի վեր կը ցանկայր տեսնել. շատ անգամ անոր վրայօք լսեր էր և անոր հրաշքքրքրութեամբ կ'ուզէր՝ որ Յիսուս իր առջև հրաշք մ'ընէ, և աչքովը տեսնէ. շատ խօսքեր կը հարցնէր, որոց բնաւ չէր պատասխաներ Յիսուս: Իրենց որսը ձեռքէ չը փախցնելու համար հոն խռնող քահանայապետքն ու դպիրք աւելի խստիւ կը չարախօսէին Յիսուսի վրայօք: Այս արհամարհելով Հերովդէս ըզՅիսուս իր զօրականաց հետ մէկտեղ, վրան ըսպիտակ հանդերձներ ձգեց, և նորէն Պիղատոսի տանել տուաւ: Եւ Պիղատոս ու Հերովդէս, որ յառաջ թշնամի էին իրարու, բարեկամացան նոյն օրը Պիղատոս այսու մեծարեց զՀերովդէս՝ իր իշխանութենէն եղած մէկն իրեն ղրկելով. և նոյն օրը հաշտուեցան այս պատճառաւ: Թըշնամութեան պատճառը սա՛ էր, թէ Պիղատոս Հերովդեսի հպատակներէն շատերը ջարդեր, և նոյա արիւնն իրենց զոհերուն հետ խառներ էր. և յայսօր Պիղատոս Հերովդի հատուցում մի չէր ըրած: Այս վերջինն իբրև հատուցումն համարուեցաւ:

### Դ. Պիղատոս ճնարի արձակել զՅիսուս, եւ Յեսու Բարաբբա

Կոչեաց Պիղատոս զքահանայապետս և զիշխանս և զժողովուրդն, և ասէ ցնոսա. ածէք մատուցէք ինձ զայրս զայս իբրև զխոտորեցուցիչ ժողովրդեանն, և ահաւասիկ առաջի ձեր քննեցայ, և ոչ ինչ ուրուք գտի յառնս յայսմիկ, յորոյ դուքդ չարախօսէիք զդմանէ. այլ և ոչ Հերովդէս,

...եալն Քրիստոս ։ Ասեն ամենեքեան ․ խաչեսցի ։ Եւ նա ասէ ․ զի՞նչ չար արար ։ Եւ նոքա առաւել եւս աղաղակէին եւ ասէին ․ խաչեսցի ․ Մատթ․ ԻԷ․ 15—23 ․ Եւ նա երրորդ անգամ ասէ ․ զի՞նչ չար արար դա ․ ոչինչ գտանեմ մահու պատճառ ՚ի դմա ․ խրատեցից զդա եւ արձակեցից ։ Եւ նոքա ստիպէին մեծաձայն, եւ խնդրէին զնա ՚ի խաչ հանել․ եւ զօրանայր բարբառ նոցա եւ քահանայապետիցն ․ Ղուկ ԻԳ ․ 22—23 ․

*Պիղատոս կանչեց քահանայապետները, իշխանները և ժողովուրդը, ու յայտնեց անոնց, թէ անկարելի է դատապարտել զայն մարդը, որուն վրայ ո՛չ ինքն և ո՛չ Հերովդէս մահու արժանի յանցանք գտան․ «Դուք այս մարդն՝ բառ, իբրև ժողովրդեան ապստամբեցուցիչ և խռովարար ինծ բերիք, զոր ահաւասիկ ձեր առջեւ դատեցի, և բնաւ յանցանք մի չը գտայ վրան, ո՛չ ես, և ո՛չ Հերովդէս՝ որուն քով ղրկեցի․ մահուան արժանի գործ մը ըրած չէ դա․ ուստի խրատեմ, պատուհասեմ, և թող պիտի տամ»․ զանոնք գոհ ընելու համար միայն՝ խարազանի պատիժ պիտի տար Քրիստոսի ու արձկէր։ Սակայն ամեն զատկի տօներու՝ կուսակալը, Հրէից ժողովրդեան խնդրանօքն կապեալ մը՝ դատապարտեալ մը կ՚արձկէր․ Հրէայք այս սովորութիւնն ունէին ՚ի յիշատակ Եգիպտոսէ ելնելնուն։ Այն ժամանակ նշանաւոր Հրէայ դատապարտեալ մը կար բանտը Յեսու Բարաբբա անունով, որ քաղաքին խռովութեանն ատեն մարդ մի սպաննած էր։ Երբ ժողովուրդք ժողովեցան, Պիղատոս, իբր դժուար կացութենէն ազատելու միջոց սեպեց այս բանը, ու ինքնիրեն ըսաւ․ «Եթէ քահանայապետք և իշխանք զՅիսուս սպաննել կ՚ուզեն, անշուշտ ժողովուրդք ալ զԲարաբբայն*

Յիսուսի հետ բաղդատելով, Յիսուսի ազատու-
թիւնը պակաս խնդրենք. ինքն ալ ըստ խնդրա-
նաց ժողովրդեան զՅիսուս կ'արձակէր. վասն զի
գիտէր, թէ առ նախանձու մատնեցին։ Պիղա-
տոս ինքն ալ կը վախնար Հրէից մեծերէն. և ա-
պէս զի իր պաշտօնութեանցը համար կայսեր առ-
ջև չը բողոքեն, անոնց հետ առերես չէր ուզեր.
եթէ ժողովրդեան թախանձանքէն ստիպեալ զՅի-
Յիսուս արձակէր, ինքզինք Հրէից մեծերուն առ-
ջև կընար արդարացընել։

Պիղատոս այս խորհուրդը գործադրել խոր-
հած ատեն, իր կինն իրեն մարդ ղրկեց ու ը-
սաւ. «Դու այդ արդար մարդուն հետ բան չու-
նիս. այսօր երազիս մէջ շատ բաներ անցան գլ-
խէս անոր համար, մէկդի կեցիր դորա դատաս-
տանէն, քեզի վերաբերեալ բան չէ. կինն երա-
զին մէջ տագնապեր էր Քրիստոսի վրայօք։

Մինչդեռ մէկ կողմէն Պիղատոս կըջանար,
որ ժողովուրդը զՅիսուս խնդրէ արձակելու, միւս
կողմէն քահանայապետք և ծերք ժողովուրդը
հաւանեցուցին, որ այն նշանաւոր բանտարկեալ
աւազակին Բարաբբայի արձակումը խնդրեն, և
Յիսուսը կորսնցունեն. իրենց չարութեանց դէմ
Յիսուսի ըրած խօսքերուն վրէժը կըլուծէին։

Դատաւորն երբ հարցուց թէ. «Այս երկու
բանտարկեալներէն ո՞րն արձակեմ», պատասխան
ընկալաւ, թէ Բարաբբայն։ «Հապա ի՞նչ ընեմ
Քրիստոս ըսուած Յիսուսը», ըսին ամենքը. «Թող
խաչուի». «Ի՞նչ յանցանք գործեց». պատաս-
խան աղաղակ. «Թող խաչուի»։ Դարձեալ սկսաւ
խօսիլ. նորա նորէն կաղաղակէին. «Խաչը հանէ»։
Երեք անգամ հարցուց. «Ի՞նչ յանցանք գործեց.

մահուան յանցանք չգտայ դորա վերայ. դանեմ ու արձըկեմ». բայց անոնք մեծ ձայնով կաղաղակէին ու կըխնդրէին որ խաչը հանէ. եւ նոցա ու քահանայապետաց ձայներն երթալով կըզօրանային։

## Ե. Գանահարութիւն Փրկչին եւ չարչարանք

Յայնժամ առ Պիղատոս զՅիսուս և գան եհար։ Եւ զինուորացն արարեալ պսակ ի փշոց՝ եդին ի գլուխ նորա, և զգեցուցին նմա հանդերձ ծիրանի. և գային առ նա և ասէին. Ողջ ե՛ր, արքայ Հրէից. և հարկանէին նմա ապտակս. Յովհ. ԺԹ. 1—3։ Եւ զինուորքն տարան զնա ի ներքս ի գաւիթն՝ որ հրապարակն էր, և կոչեն միանգամայն զամենայն զօրագունդն, և զգեցուցանէին նմա քղամիդ կարմիր և ծիրանիս, և եդին ի գլուխ նորա պսակ արարեալ ի փշոց. Եւ սկսան ողջոյն տալ նմա և ասել. Ողջ ե՛ր արքայդ Հրէից։ Եւ ծեծէին զգլուխն եղեգամբ, և թքանէին ընդ երեսս, և ի ծունր իջեալ երկիրպագանէին նմա։ Մարկ. ԺԵ. 16—19։ Եւ հիւսեալ պսակ ի փշոց՝ եդին ի գլուխ նորա, և եղեգն յաջոյ ձեռին նորա, ի ծունր իջեալ առաջի նորա՝ խաղային և ասէին. Ողջ ե՛ր, թագաւո՛ր Հրէից։ Եւ թքեալ ի նա, առնուին զեղեգնն, և ծեծէին զգլուխ նորա։ Մատթ. ԻԷ. 27—31։

Այն ատեն Պիղատոս Յիսուսն առաւ ու ծեծեց։ Պիղատոսի զինուորներն առին զՅիսուս, ապարանքը տարին, բոլոր գունդն անոր վրայ ժողվեցին, հանդերձները հանեցին. վրան կարմիր քղամիդ ձգեցին, Նապգա ըսուած փշերով պսակ չինեցին ու գլուխն վրայ դրին. (մինչեւ ցարդ Հրէաստանի մէջ կան այդ փշերն, որ Արաբերէն Նապգա կըսուին, բաղեղի նման տերեւելայից եւ դիւրաթեք փուշ մ'է), կըկատա-

կէին ,՝ կողջունէին ու կ՚ըսէին . ողջոյն քեզ Թա-
Թաւոր Հրէից ։ Նորա երեսը Թքնելով , եղեգաւ մի
գլուխը կըծեծէին , ծաղրելով 'ի ծունր երկրպա-
գութիւն կընէին եւ ապտակներ կը զարնէին

Երուսաղեմի Հռովմէական գունդը , այս Թա-
գաւոր ամբաստանեալէն անշուշտ իրենց կայսեր
պատուոյն վրէժը կըհանէին , այն իրենց երկա-
Թապատ գաւազաններովը գանակոծելով գլխուն,
որոյ մարմնոյն վրայ բացուած վերքերէն արիւն
կըհոսէր , իսկ բերնէն ոչ տրտունջ կելնէր եւ ոչ
հառաչանք ։

## Զ. Մատնի 'ի ձեռս Հրէից

Եւ դարձեալ Պիղատոս արտաքս ել եւ ասէ ցնոսա . ահա՛ ածից զնա արտաքս առ ձեզ , զի գիտասջիք , թէ ես ոչ ի՛նչ 'ի նմա ոչ գտանեմ ։ Ել Յիսուս արտաքս , եւ ունէր պսակ 'ի փշոց եւ հանդերձ ծիրանի . եւ ասէ ցնոսա . ահա՛ այր ձեզ ։ Իբրեւ տեսին զնա քահանայապետքն եւ սպասաւորք , աղաղակեին բարձրն եւ ասեն . 'ի խա՛չ հան , 'ի խա՛չ հան զդա ։ Ասէ ցնոսա Պիղատոս . առէ՛ք զդա 'ի ձեզ , եւ ձեզէն հանէ՛ք 'ի խաչ . զի ես 'ի դմա մեղս ինչ ոչ գտանեմ ։ Պատասխանի ետուն նմա Հրեայքն . մեք օրէնս ունիմք , եւ ըստ օրինաց մերոց պարտ է մեռանել . զի զանձն իւր Որդի Աստուծոյ արար ։ Իբրեւ լուաւ զբանս զայս Պիղատոս , առաւել եւս երկեաւ ։ Եւ մտեալ դարձեալ անդրէն յապարանսն , եւ ասէ ցՅիսուս . Ուստի՞ ես դու . եւ Յիսուս ոչ ետ նմա պատասխանի ։ Ասէ ցնա Պիղատոս . ընդ իս ո՞չ խօսիս . ո՞չ գիտես , եթէ իշխանութիւն ունիմ հանել զքեզ 'ի խաչ , եւ իշխանութիւն ունիմ արձակել զքեզ ։ Պատասխանի ետ Յիսուս . ոչ ունէիր դու իշխանութիւն 'ի վերայ իմ եւ ոչ մի , եթէ ո՛չ էր տուեալ քեզ 'ի վերուստ . վասն այնորիկ որ մատնեացն զիս քեզ , նորա մեծ մեղք

արինալից Յիսուսի, 'ի գութ ածել կը յուսար զժողովուրդը։ Բայց երբ տեսան քահանայապետք եւ նոցա սպասաւորք աղաղակ բարձին եւ գոչեցին. «Խաչը հանէ՛, խաչը հանէ՛ ասիկայ»։ Պատասխանեց Պիղատոս. «Առէ՛ք ձեր քով, եւ դուք ձեզմէն խաչը հանեցէ՛ք, ես յանցանք մը չգտայ այդ մարդուն վրայ»։ Պատասխան Հրեայք ըսին. «Մենք օրէնք ունինք. պէտք է որ օրինաց հայհոյիչներին սպաննութին, (եթէ ոչ խաչիւ, գէթ քարկոծմամբ), վասն զի դա ինքզինքը Որդի Աստուծոյ կըկոչէ»։

Երբ այս բանը, այսինքն Աստուծոյ Որդի ըլլալը լսեց Պիղատոս, աւելի վախցաւ. վասն զի հեթանոս գոլով, մտքէն անցաւ, թէ դուցէ աստուածներէն մէկն եղած ըլլայ, մարդկային կերպարանքով, եւ ինքն ալ աստուածամարտ գըտնուի, ուստի նորէն ապարանք մտաւ, եւ հարցուց Յիսուսի. «Ուսկի՞ց ես դու»։ կը կասկածէր, որ ինչպէս կամ ուրիշ աստուածային ընտանիքէ մը եղած ըլլայ. բայց Յիսուս պատասխան չտուաւ։ Անոր վրայ Պիղատոս ըսաւ. «Ինծի պատասխան չե՞ս տար, չգիտե՞ս, թէ իշխանութիւն ունիմ զքեզ խաչը հանելու, եւ իշխանութիւն ունիմ արձակելու»։ Յիսուս պատասխանեց իրմէ շատ բարձր իշխանութեան մը գոյութիւնն հասկցրնելով. «Դու չէիր կրնար իշխանութիւն ունենալ վրաս, ըսաւ, եթէ վերէն տրուած չըլլար քեզի»։ Եւ միանգամայն յայտնեց, թէ իւր յանցանքն թեթեւ էր, զինքն իրեն մատնողին յանցանքէն։ Այնուհետեւ Պիղատոս որչափ որ կըջանար ազատել զՅիսուս, այնչափ Հրեայք կաղաղակէին ու կըսէին. «Եթէ զայդ

մարդն արձակես, կայսեր բարեկամ չես. ինք-
գինք թագաւոր կոչողն կայսեր հակառակ է»։
Այսպէս անկարող կրօնական ամբաստանութեամբ
'ի մահ մատնել, քաղաքական յանցանք եւ ապըս-
տամբութեան բարուրանք կըդնէին Յիսուսի վը-
րայ։

Անօգուտ եղան Պիղատոսի ջանքն զՅիսուս ա-
զատելու համար. ա՛լ այս խօսքերէն յետոյ վեր-
ջին ջանք մ'ալ ընել ուզեց. հապպաթթա կամ
Քարսյատակ ըսուած տեղը՝ բարձրաւանդակ բե-
մին վրայ նստաւ Պիղատոս, այն օրը՝ որ զատկին
ուրբաթն էր, և ժամը վեցը գնացեր էր. ան-
գամ մ'ալ փորձեց՝ զՅիսուս Հրէից յանձնելու,
«Ահա ձեր թագաւորն ձեզի» ըսելով։ Սակայն
անոնք դարձեալ աղաղակեցին ըսելով. «Վերցո՛ւր
այդ մարդը. վերցո՛ւր. զմեզ ազատէ՛ այդ մար-
դէն՝ (որոյ յանցանքը՝ միայն ճշմարտութիւնն խօ-
սիլն էր), և խաչը հանէ՛ այդ մարդը»։ Պիղա-
տոս պատասխանեց անոնց. «Ե՞ս ձեր թագաւորն
'ի խաչ հանեմ. պատասխանեցին քահանայա-
պետք. «Մեք կայսերէն զատ թագաւոր չու-
նինք»։

Պիղատոսի ճարն հատած՝ ջուր առաւ, ձեռ-
քը լուաց ժողովրդեան առջև և ըսաւ. «Ես այդ
արդարոյն արիւնէն անպարտ եմ, դուք մտածե-
ցէ՛ք»։

Եւ այն ժողովուրդն՝ որ յաղթանակաւ զՅի-
սուս Երուսաղէմ տարած և «Ովսաննա՛» աղաղա-
կեր էր, գուցէ նոյն ժողովուրդը կամ անոնց մէկ
մասը՝ գրգռեալ 'ի քահանայապետաց և 'ի դպը-
րաց «Այդ արդարոյն արիւնն մեր ու մեր որ-
դւոց վրայ թո՛ղ գայ» ըսին։ Իրենց ցանկութիւնն

կատարուեցաւ՝ ոչ շատ ատեն վերջը, երբ իրենց մայրաքաղաքը կործանեցաւ, ուր հարիւր հազարէն աւելի Հրէայք մի միայն խաչը հանուեցան. թո՛ղ այն անթիւ բազմութիւնը՝ որ Հռովմէական սրոյն ճարակ եղաւ ։

Եւ Պիղատոս ամբոխին, և մանաւանդ ամբոխը գրգռող քահանայապետաց և մեծամեծաց հաճոյ լինելու համար, Նորէն գանակոծեց զՅիսուս, և նոցա ձեռքն յանձնեց՝ որ խաչուի, և այն չարագործ ու մահապարտ Բարաբբայն արձըկեց ։

Զինուորներն զՅիսուս նորէն ծաղրելով՝ վերարկուն վրայէն հանեցին, և իւր նախկին հանդերձները հագցնելով՝ տարին զՅիսուս խաչը հանելու ։



## ԳԼՈՒԽ ԽԲ.

ԵԼՔ ՓՐԿՉԻՆ Ի ԳՈՂԳՈԹԱ, ԵՒ ԽԱՉԵԼՈՒԹԻՒՆ.—ԲԱԺԱՆՈՒՄՆ ՀԱՆԴԵՐՁԻՑ ՆՈՐԱ.—ՎԵՐՆԱԳԻՐ ԽԱՉԻՆ.— ՀԱՅՀՈՅՈՒԹԻՒՆՔ ԽԱՉԱՀԱՆՈՒԱԾՆ.—ԽԱՒԱՐԵԼ ԱՐԵԳԱԿԱՆ.— ԱՒԱՆԴՈՒՄՆ ՀՈԳՒՈՅՆ ՅԻՍՈՒՍԻ.— ՇԱՐԺՈՒՄՆ ԵՐԿՐԻ.— ԲԱՑՈՒՄՆ ՏԻԳԱԽՈՑ ԿՈՂԻՆ.— ԹԱՂՈՒՄՆ ՄԱՐՄՆՈՅ ՓՐԿՉԻՆ.— ԿՆՔԵԼ ՔԱՀԱՆԱՅԻՑ ԶԳԵՐԵԶՄԱՆՆ ԵՒ ԿԱՐԳԵԼ ԱՌ ՆՈՎԱՒ ՊԱՀԱՊԱՆՍ ։

### Ա. Ելք Փրկչին 'ի Գողգոթա եւ խաչելութիւն

Եւ ելեալ արտաքս՝ գտին այր մի Կիւրենացի՝ անուն Սիմովն. զնա կալան պահակ, զի բարձցէ զխաչն նորա. և եկեալ 'ի տեղին անուանեալ Գողգոթա՝ որ է տեղի կառափելեաց

լայ, ետուն նմա ըմպել գինի ընդ լեղւ խառնեալ. և իբրև ճաշակեաց՝ ոչ կամէր ըմպել. Մատթ. ԻԷ. 32—34։ Եւ անէին պահակ զՍիմոն Կիւրենացի, որ գայր այն անցանէր՝ եկեալ յագարակէ, զհայրն Աղեքսանդրի և Ռուփայ. զի բարձցէ զխաչափայտն նորա։ Եւ ածին զնա ՚ի Գողգոթա տեղի մի՝ որ թարգմանի տեղի կառափելոյ. և տային նմա գինի զմռսեալ և նա ոչ առ. և հանին զնա ՚ի խաչ... էր ժամ երրորդ. և հանին զնա ՚ի խաչ... Եւ ընդ նմա հանին ՚ի խաչ երկուս աւազակս՝ մի ընդ աջմէ, և մի ընդ ահեկէ նորա։ Եւ լցաւ գիրն որ ասէ, թէ ընդ անօրէնս համարեցաւ. Մարկ. ԺԵ. 21—28։ Եւ երթայր զհետ նորա բազմութիւն ժողովրդեանն, և կանանց՝ որ կոծէին և ողբային զնա։ Դարձաւ Յիսուս և ասէ ցնոսա. դստերք Երուսաղէմի, մի՛ լայք ՚ի վերայ իմ, այլ լացէ՛ք ՚ի վերայ անձանց և ՚ի վերայ որդւոց ձերոց։ Զի եկեսցեն աւուրք, յորս ասիցեն, թէ երանի՛ ամլոց և որովայնից՝ որ ոչ ծնան, և ստեանց՝ որ ոչ դիեցուցին։ Յայնժամ սկսանիցեն ասել լերանց՝ թէ անկերո՛ւք ՚ի վերայ մեր, և բլրոց՝ թէ ծածկեցէ՛ք զմեզ։ Զի եթէ ընդ փայտ դալար զայս առնեն, ընդ չոր զի՞նչ լինիցի։ . . . . . Եւ Յիսուս ասէ. Հա՛յր, թո՛ղ դոցա, զի ո՛չ գիտեն՝ զինչ գործեն։ Ղուկ. ԻԳ. 27—34։

*Յիսուս ելաւ ապարանքէն, ու խաչափայտը որ երկու փայտերէ շինուած էր, մին ուղղահայեաց և միւսն հորիզոնական դրիւք, ինքն շալկած էր ըստ սովորութեան մահապարտից, և կ'երթէր այն տեղն՝ որ Գողգոթա և եբրայեցերէն կալկոլէթ (տեղի կառափելոյ) կ'անուանէր։ Քաղաքէն դուրս էր Գողգոթա. փրկութեան անձնաւոր զոհը հոս պիտի զոհուէր, զոր նշանակած էր արդէն Աստուած Մովսէսի ձեռօք. "Նոխազ՝ արտաքոյ բանակին։*

*Ուրիշ երկու չարագործ մահապարտներ ալ բերին Յիսուսի հետ խաչը հանելու։*

Այս չարչարանաց գործին՝ խաչն, Հրէից ալ ծանօթ էր. «Եւ եթէ հասանիցին ումեք մեղք մահապարտութեան և մեռանիցի, կախեսջի՛ք զնա զփայտէ». Բ. Օրին. ԻԱ. 22. 23։ Հռովմայեցիք իրենց գերիները միայն և ամենամեծ ոճրագործները՝ որք Հռովմայ քաղաքացի չէին, խաչի մահուամբ կ'սպաննէին. իսկ քաղաքացւոց մահը գլխատմամբ կը գործադրուէր. խաչ՛ն հանուած ոճրագործն 'ի սեւս հասարակութեան կը թողուին։

Խաչի մահն՝ ամենէն դժնդակ մահն էր. վասն զի երբեմն խաչելեալն քանի մ'օր կը տանջուէր խաչին վրայ սոսկալի կերպիւ. և այս անշարժ վիճակին մէջ արիւնը բեւեռներու վէրքերէն փախելով՝ անհնարին ցաւերով և տանջանօք հոգին կ'աւանդէր։

Քրիստոսի տկարան մերոյ մարմինն առջի գիշեր ընդունած հարուածներէն վիրաւոր և արիւնաթաթախ՝ կը դողդողար, ծնկներն կթոցեալ կը հեծէին խաչին աշխարհին բեռան տակ, և անկարող էր խաչն մինչև 'ի Գողգոթա տանիլ. այն տեղէն անցնող Կիւրենացի Սիմոնը, որ ագարակէն կու գար, պահակ բռնեցին, ու խաչը անոր բեռցուցին՝ որ Յիսուսի ետևէն բերէ։ Այս Սիմոնը՝ Աղեքսանդրի և Ռուփայ հայրն էր, որոց համար կը կարծուի՝ թէ յաշակերտաց Քրիստոսի էին։ Եթէ Սիմոն նոյն ալ աշակերտ էր Քրիստոսի, անշուշտ երջանիկ պիտի համարէր զանձն՝ Քրիստոսի բեռան ըրած օգնութեան համար.

Եւ Յիսուսի ետևէն՝ արանց և կանանց խուռն բազմութիւն մը կ'երթար. կանայք՝ որ անկարող են զսպուիլ իրենց դիւրազգածութեանն

համար, Յիսուսի՝ այդ անմեղ զոհին վրայ կը կա-
ծէին և կ'ողբային։ Յիսուս՝ որ միշտ մարդկային
աղետից վրայ կը մտածէր և ո՛չ իւր անձին, այդ-
ամենագութ փրկիչը դարձաւ անոնց և ըսաւ.
“Ո՛վ դստերք Երուսաղեմի, իմ վրաս մի՛ լաք,
հապա ձեր անձերուն և ձեր զաւակաց վրայ լա-
ցէ՛ք, այն զաւակաց՝ որք կ'աղաղակէին, Թէ դո-
րա արիւնն մեր և մեր որդւոց վրայ թող գայ։
Գիտցէ՛ք, որ օրեր պիտի գան, երբ պիտի ըսեն.
երանի՜ ամուլներուն և զաւակ չը ծնող որովայն-
ներուն, և այն ստինքներուն՝ որ կաթ չը տուին.
վասն զի այնպիսիները զաւակ չունենալով՝ նոցա
կսկիծը չը պիտի տեսնեն։ Երուսաղեմի վրայ
այնպիսի սոսկալի օրեր պիտի գան, որ լեռնե-
րուն պիտի ըսեն, Թէ մեր վրայ ինկէ՛ք, և բլ-
լուրներուն պիտի ըսեն, Թէ զմեզ ձեր ներքեւ
ծածկեցէ՛ք. վասն զի եթէ հիւթալից և պտղա-
լից դալար փայտին (ծառին) գլխուն այս բանե-
րըն եկան, եթէ անպարտին և արդարոյն այս-
պէս ըրին. հապա չոր և անպտուղ ծառերուն,
մեղապարտներուն և ամբարիշտներուն ինչե՞ր չը
պիտի ընեն„։ Այս խօսքերով Երուսաղեմի կոր-
ծանումը վերջին անգամ մ'ալ կը գուշակէր։

Եւ երբ Գողգոթա հասան, լեղիով խառնած
թմրեցուցիչ զմուռսեալ գինի տուին ըստ սովորու-
թեան՝ որ խմէ, որպէս զի խաչի և չարչարանաց
ցաւերն սաստիկ չըզգալու համար թմրութիւն
գայ վրան. սակայն Յիսուս, ո՛չ իւր ցաւերն թե-
թեւցնել և ո՛չ իւր մտային կարողութիւնները տը-
կարացնել կամ թմրեցնել ուզելով, այդ՝ ըմպե-
լւոյն համն առնելուն պէս չուզեց խմել. նա այդ-
դեղին տեղ՝ մեր մեղաց համար չարչարանաց

բաժակը ցմրուր քամել որոշած էր ։

Սովորութիւն էր 'ի հնումն բարկ գինի խըմցունել մահապարտներուն, որպէս զի ցաւերուն ազդեցութիւնը նուազի ։ Լեղի կըխառնէին զմըռսեալ գինւոյն մէջ, որպէս զի աւելի բարկ լինի ։

Ժամն առաւօտեան երեքին կամ երեւէն ետքըն ու վեցէն յառաջ, (վեցերորդ ժամէն կամ կէս օրէն երեք ժամ յառաջ ։ Ոմանք կըսեն, թէ Յունարէն երեք ցցնող տառը, խիստ դիւրաւ վեց ալ կըկարդացուի ։ ասով հաստատել կըջանան, թէ Յովհաննու աւետարանին վեց ըսածը երեք կարդալու է), Յիսուսը խաչը հանեցին, գագաթին կամ տեղէ գագաթման կամ Հայր գլխատութեան ըսուած տեղը, նոյն ժամուն՝ յորում տաճարին մէջ առաւօտեան մշտնջենաւոր ողջակէզը կըզոհէին, որ դէպ եւ օրինակ էր Քրիստոսի ողջակիզութեանը ։ Քրիստոսի աջ ու ձախ կողմերն երկու աւազակներ ալ խաչեցին ։ որով Եսայեայ մարգարէութիւնն ալ կատարուեցաւ, թէ « Ընդ անօրէնս համարեցաւ » ։ ԾԳ. 12 ։

Ահա այս տեղն էր, որ Յիսուսի հանդերձները հանեցին վրայէն, եւ խաչին վրայ պառկեցունելով, ոտքերն ու ձեռքերը գամեցին բեւեռներով, եւ այս խաչը գետնի վրայ տնկեցին ։ Խաչին վրայ Յիսուսի մարմինը ձեռքերէն ու ոտքերէն մի միայն բեւեռներով բռնուած, եւ բոլոր մարմինը վար կախուած էր ։ Ի՜նչ սոսկալի եւ անհանդուրժելի ցաւ էր՝ որ կզգար մարմնոյն կախուելովը բեւեռներուն պատճառած պատառմունքէն ։ Բայց ահա նաեւ ինքն Քրիստոս այս չարչարանաց մէջ, ինքն գթութիւնն երկնային, իւր թշնամեաց եւ խաչահանուաց համար աղօթեց ։

*« Հա՛յր, ներէ ասոնց, վասն զի ըրածնին չեն գիտեր » ըսելով :*

## Բ. Բաժանումն Հանդերձից

Իսկ զինուորքն իբրեւ հանին ՚ի խաչ զՅիսուս, առին զհանդերձս նորա՝ եւ արարին չորս մասունս, իւրաքանչիւր զինուորի մասն, իսկ զպատմուճանն՝ [illegible] էր առանց կարանի՝ ՚ի վերուստ ծորանկիւլ ամենեւին : Ասեն ցմիմեանս. մի՛ պատառեսցուք զդա, այլ արկցուք վիճակս ՚ի վերայ դորա՝ ում եւ ելցէ, զի լցցի գիրն՝ որ ասէ. Բաժանեցին զհանդերձս իմ յիւրեանս, եւ ՚ի վերայ պատմուճանի իմոյ վիճակս արկին. զինուորքն զայս ինչ գործեցին : Յովհ. ԺԹ. 23—24: Ղուկ. ԻԳ. 34 : Մատթ. ԻԷ. 35.:

*Մահապարտին կողոպուտը՝ դահճի պաշտօն կատարող զինուորներուն կ՚իյնար : ԶՔրիստոս խաչին վրայ գամողները չորս զինուոր էին. ուստի Յիսուսի հագուստները չորսի բաժնեցին : Իսկ երբոր կարգը պատմուճանին եկաւ, զոր առանց պատռելու չէին կրնար բաժնել, վասն զի անկար և հիւսկէն էր, վիճակ ձգեցին, և որուն որ ելաւ վիճակը՝ նա առաւ պատմուճանը. կ՚ըսուի, թէ այս պատմուճանը Աստուածամօր չինածն է, և թէ յարդ Գերմանիոյ Տրեւիրի քաղաքը կը կենայ : Հեթանոս զինուորներն ալ մարգարէութիւն կատարեցին. «Բաժանեցին զհանդերձս իմ յիւրեանս, և ՚ի վերայ պատմուճանի իմոյ վիճակս արկանէին». Սաղմ. ԻԱ. 17—19.*

## Գ. Վերնագիր խաչին

Գրեաց եւ տախտակ մի Պիղատոս, եւ եդ ՚ի վերայ խաչին, եւ էր գրեալ. Յիսուս Նազովրեցի Թագաւոր Հրէից :

Զայն տախտակ ընթերցան բազումք 'ի Հրէից, զի մօտ էր 'ի քաղաք անդր տեղին՝ ուր խաչեցաւն Յիսուս. և էր գրեալ Եբրայեցերէն, Դաղմատերէն և Յունարէն։ Ասէին ցՊիղատոս քահանայապետքն Հրէից. Մի՛ գրեր թագաւոր Հրէից. այլ թէ նա ասաց՝ թագաւոր եմ Հրէից։ Պատասխանի ետ Պիղատոս. զոր ինչ գրեցի՝ գրեցի։ Յովհ. ԺԹ. 19—22։ Ղուկ. ԻԳ. 38։ Մարկ. ԺԵ. 27։ Մատթ. ԻԷ. 37։

*Սովորութիւն էր, որ մահապարտից յանցանքըն կարճ խօսքով տախտակի վրայ կը գրէին։ Պիղատոս Յիսուսի համար այս խօսքերը գրեց. «Այս է Յիսուս Նազովրեցի Թագաւոր Հրէից»։ Երեք լեզուաւ գրուած էր այս խօսքը Դաղմատերէն, այսինքն, Լատիներէն. զի արևելեան ազգըք ոմանք՝ մեր թարգմանչաց ատենը Դաղմատացի կ'անուանէին զԼատինացիս, թերևս Իտալիոյ սահմանակից Դաղմատիա գաւառին անուամբըն, Եբրայեցերէն և Յունարէն։*

*Քահանայապետք այս տախտակին վրայ ալ դիտողութիւն ըրին. «Մի՛ գրեր, ըսին, թէ այս է Հրէից Թագաւորը, այլ գրէ՝ թէ ինքն ըսաւ, որ Թագաւոր եմ Հրէից»։ Իսկ Պիղատոս գրածը չաւրեց ու պատասխանեց, թէ «Գրածս գրած է»։*

*Պիղատոս ճշմարիտը կը գրէր. նա էր քահանայապետը, մարգարէն և Թագաւորն յաւիտենական յաթոռն Դաւթի։*

*Յիշեալ վճռագիր տախտակին համար կ'ըսուի, թէ ցարդ 'ի Հռոմ կեցած է։*

## Դ. Հայհոյութիւնք խաչահանուացն

Եւ կայր ժողովուրդն հայեցեալ. Ղուկ. ԻԳ. 35. Եւ

որ՝ անցանէինն․ հայհոյէին զնա, շարժէին զգլուխս իւրեանց: Եւ ասէին․ Վա՜հ, որ քակէիր զտաճարն, և յերիս աւուրս շինէիր զնա․ ապրեցո՛ զքեզ․ եթէ Որդի ես Աստուծոյ, է՛ջ 'ի խաչէդ։ Նոյնպէս և քահանայապետքն յուղէին հանդերձ դպրաւքն և ծերովքն՝ և ասէին․ Զայլս ապրեցոյց՝ զինքն ո՛չ կարէ ապրեցուցանել․ եթէ Թագաւոր է Իսրայելի՝ իջցէ այժմ 'ի խաչէդ՝ և հաւատասցուք դմա։ Եթէ յուսացաւ յԱստուած, փրկեսցէ այժմ զդա՝ եթէ կամի զդա․ զի ասաց՝ եթէ Աստուծոյ որդի եմ։ Զնոյն և աւազակքն՝ որ խաչեալ էին ընդ նմա, նախատէին զնա․ Մատթ․ Իէ․ 39—44․ Մարկ․ ԺԵ․ 29—32։ Այպն առնէին զնա և զինուորքն ․ ․ ․ ․ ․ ․ և ասէին․ եթէ դու ես Թագաւորն Հրէից, փրկեա՛ զանձն քո․ Ղուկ․ ԻԳ․ 36․

*Եւ ժողովուրդը կայներ կը նայէր: Անցնողներէն ոմանք կը հայհոյէին, և իրենց գլուխն ծաղրական շարժմամբ երերցնելով կ՚ըսէին. «Վա՜հ, դու՝ որ տաճարը կը քակէիր, և երեք աւուր մէջ կը շինէիր․ եթէ Աստուծոյ Որդին ես՝ ապրեցո՛ ինքզինքդ, ու այդ խաչէն վար իջի՛ր.» «Ամենեքեան՝ որք տեսանէին զիս, արհամարհէին զինև, խօսէին շրթամբք և շարժէին զգլուխս իւրեանց: Շուրջ եղեն զինև զուարակք բազումք և ցուլք գէրք պաշարեցին զիս: Բացին 'ի վերայ իմ զբերանս իւրեանց՝ որպէս առիւծ, զի մինչէ և յափշտակէ»․ Սաղմ․ ԻԱ․ 8․ 13․ 14:*

*Սակայն չը գիտէին եղկելիքն, որ հին տաճարն իր մարմնոյն մահուամբ արդարև քակեր էր․ և զբոլոր մարդկային ազգը՝ Աստուծոյ փառաց Նոր և փառաւորագոյն տաճար շինած էր, զԱստուած ընդ մարդիկ իւր անպարտական արեան հեղմամբը հաշտեցնելով:*

*Նոյնպէս և քահանայապետք և դպիրք միաբան կը ծաղրէին զՅիսուս․ «Ուրիշներն ապրե-*

համբերութեան վրայ զայրացած ; և իւր քաշած ցաւերէն կատաղած բորբոքած, «Քրիստոսը դուն չե՞ս, ըսաւ, թէ՛ զքեզ և թէ՛ զմեզ փրկէ՛ միանգամայն»։ Սակայն միւս աւազակը խելաբերեցաւ իւր մեղանչելն մէկ վայրկենի մէջ զգաց, և զՔրիստոս՝ շնորհաց և փրկութեան աղբիւրն ճանչելով, բացաւ աչքերն և հոգին, և ընդունեց նորա արեան այն փրկարար ցօղն՝ որ այն տեղ կը կաթկթէր. և որով սրբուեցան իւր հին և նոր մեղքերը. Ճանչեց իւր յանցանքը, խոստովանեցաւ իւր մեղքը, և Քրիստոսէ գթութիւն խնդրեց. «Մենք՝ ըսաւ միւս ընկերին, մեր գործոց արժանի պատիժը կրեցինք, բայց սա մեղք և յանցանք չը գործեց։ Տէ՛ր, աղաղակեց, յիշէ՛ զիս, երբ արքայութեամբդ գաս»։ Եւ արժանի եղաւ այն երջանիկ խոստմունքն ընդունելու, թէ «Այսօր ինձ հետ պիտի լինիս արդարոց երանաւէտ կայանին՝ դրախտին մէջն»։

Եւ կային առ խաչին Յիսուսի մայրն նորա, և քոյր մօր նորա Մարիամ Կղէովպայ, և Մարիամ Մագդաղենացի։ Յիսուս իբրև ետես զմայրն և զաշակերտն՝ զոր սիրէր, զի կայր մօտ, ասէ ցմայրն. Կի՛ն, ահա՛ որդի քո։ Ապա ասէ ցաշակերտն. ահա՛ մայր քո։ Եւ յայնմ ժամանակէ առ աշակերտն զնա առ իւր. Յովհ. ԺԹ. 25—27.

Այսչափ կատաղի թշնամեաց խուռն մէջ բարեկամ եւ կսկծագող սրտեր ալ կային հոն 'ի Գողգոթա. Աստուածածին Մարիամ՝ հոն էր, Սիմէոնի մարգարէութիւնը կըկատարուէր. Նորա սըրտէն սուր կանցնէր. Հոն էր նաև Յովսէփ աստուածահօր եղբայր Կղէովպայ կին Մարիամ, որ ըստ Հրէից քոյր կըհամարուէր Աստուածածնի,

*ինչպէս եւ Մագթաղենացի Մարիամը, եւ հաւանականաբար ուրիշ կանայք ալ։*

*Յիսուսի սիրելի աշակերտը Յովհաննէս իսկ, մինչեւ հոն երթալու քաջութիւնն ունեցեր էր, իւր մայրն իր մահուանը վրայ անմխիթար չըլթողելու համար, զՅովհաննէս իւր տեղը որդեգիր ըրաւ սուրբ Աստուածածնի, եւ ամենասուրբ մօրըն դառնալով, ըսաւ, թէ « Ահա ես կը մեռնիմ, իմ տեղս այս է որդիդ »։ Այնուհետեւ Յովհաննէս զԱստուածածին իր քովն առաւ եւ կըխնամէր իբրեւ մայր. այս խօսքերէն յայտնի է, որ Աստուածահայրն Յովսէփ վախճանած էր այն ատեն։*

## Ծ. Խաւարիլ արեգական

Եւ իբրեւ վեց ժամ եղեւ՝ խաւար կալաւ զամենայն երկիր մինչեւ ցինն ժամ։ Եւ յիններորդ ժամուն աղաղակեաց Յիսուս 'ի ձայն մեծ, և ասէ. Էլի՛ Էլի՛ լա՛մա սաբաքթանի. որ թարգմանի. Աստուած իմ, Աստուած իմ, ընդէ՞ր թողեր զիս։ Եւ ոմանք 'ի նոցանէ որ շուրջն կային զինուորք՝ իբրեւ լուան, ասէին թէ զԵղիա կարդայ։ Մարկ. ԺԵ. 33—35։ Մատթ. ԺԷ. 45—48։ Խաւարեցաւ արեգակն։ Ղուկ. ԻԳ. 44.

*Այս ժամը վերջին ատենները, արեգակը իւր արարչին չարչարանաց չըհանդուրժելով գոգցես, իւր ճառագայթներն ամփոփեց, եւ բոլոր երկրի վրայ երեք ժամ խաւար տիրեց։ Քրիստոսի ծընած ատեն արտաքոյ կարգի լուսաւոր աստղ մը, պայծառութիւն մը երեւցաւ, մեռած ատենն արեգակն ալ խաւարեցաւ։ Արեգական այս խաւարումը եւ տեւողութիւնն արտաքոյ կարգի էին եւ գերբնական; վասն զի լուսնոյ լըման ժամանակն*

էր ։ Եւ եթէ խաւարումն բոլորական ալ ըլլար, 15 վայրկեան կարելի էր տեւել․ իսկ այս խաւարումը երեք ժամ տեւեց, եւ բոլոր երկրի տարածքին եղաւ․ տարօրինակ եւ հրաշալի՛ խաւարումն ։

Այս խաւարը, այն ժողովրդեան եւ իրենց ոճրագործ առաջնորդաց հոգեւոր վիճակին նկարագիրն էր ։ Անկարելի է մեզ այս միջոցին Փրկչին մերոյ կիրքը նկարագրել, երբ իւր անձնարին ցաւոց մէջ յանկարծ բարձր ձայնիւ հեծեծեաց Սաղմոսն արտասանելով․ « Աստուա՛ծ իմ, Աստուա՛ծ իմ, ընդէ՞ր թողեր զիս », ԻԱ․ 1․ այն մարգարէական Սաղմոսը, որոյ բոլոր պարունակութիւնն կըկատարուէր նոյն ժամուն իւր անձին վրայ։ ( Սաղմոսաց Եբրայական բնագրին մէջ ազաւթանի գըրուած է, եւ ոչ ցաւաքթա՛նի կամ սաբաքթանի։ Թերեւս Քաղդէերէն մի եւ նոյն նշանակութիւնն ունենան այդ երկու բառերն․ վասն զի այն ատենի Եբրայական լեզուն խառն էր )։ Գեթսեմանիէն սկսած մինչեւ այն վայրկեանը, քահանայապետն յաւիտենական Յիսուս Քրիստոս իւր անձին պատարագաւն փրկութեան մեծ գործը կըկատարէր․ « Քրիստոս գնեաց զմեզ յանիծից օրինացն, եղեալ վասն մեր անէծք․ զի գրեալ է․ Անիծեալ ամենայն, որ կախեալ կայցէ զփայտէ »․ Գաղա․ Գ․ 13։

Աստուծոյ յաւիտենական արդարութեան հատուցումն եղաւ Քրիստոսի մահը, փոխանակ մարդկային ազգին հոգեւոր մահուան․ Աստուծոյ վրէժխնդրութեան շանթերն իւր արեան մէջ շիջացանելով։ Սակայն այդ սաղմոսին «Է՛լի, Էլի» բառերն, Էլիա կամ Եղիա հասկըցան հոն գտնուող հռովմէացիք և թերեւս Հրէայք, որք կ՚ըսէին․

*Թէ « Եղիան կը կոչէ յօգնութիւն »։*

## Զ. Աւանդումն Հոգւոյն Յիսուսի

Յետ այսորիկ իբրև գիտաց Յիսուս, եթէ ահա ամենայն ինչ կատարեալ է, զի կատարեսցի գիրն, ասէ. Ծարաւի եմ։ Եւ անդ կայր աման լի քացախով. և նոքա սպունգ լցեալ քացախով ընդ եզովբ. շուրջ եդեալ զմշտկաւ զզոպայ մատուցին 'ի բերան նորա։ Իբրև առ Յիսուս զքացախն հանդերձ ըմպելովն՝ ասէ. ամենայն ինչ կատարեալ է։ Եւ խոնարհեցուցեալ զգլուխն՝ աւանդեաց զոգին։ Յովհ. ԺԹ. 28—30 Եւ վաղվաղակի ընթացեալ մի ոմն 'ի նոցանէ, առ սպունգ լի քացախով, հարեալ յեղեգան՝ ետ ըմպել նմա։ Եւ կէսքն ասէին. թո՛ղ տեսցուք եթէ գա՞յ Եղիա փրկել զդա։ Եւ Յիսուս դարձեալ աղաղակեաց 'ի ձայն մեծ՝ և արձակեաց զոգին։ Մատթ. ԻԷ. 48—50։ Եւ ասէ. թո՛յլ տուք, տեսցուք եթէ գա՞յ Եղիա իջուցանել զդա։ Մարկ. ԺԵ. 36։

*Ասկէց ետքը Յիսուս երբոր տեսաւ՝ որ ամենայն բան կատարուած է, ալ չարչարանքէն սիրտը բորբոքած՝ ծարաւի լինելը իմացուց. և մամահապարտաց սովորական քացախով սպունգ մի լեցնելով՝ զոպայի մշտիկի (մշտիկ զոպայի՝ զոպայէ կազմուած սրսկելու գործիք մ'է) վրայ փաթթած և եղեգի վրայ անցուցած՝ անոր բերնին մօտեցուցին. հոն մարգարէութիւնը կատարուեցաւ. «Ետուն 'ի կերակուր իմ լեղի, և 'ի ծարաւ իմ արբուցին ինձ քացախ». Սաղմ. ԿԸ. 22։ Յիսուս երբ լեղիով խառնուած քացախին համ տեսաւ, աղաղակեց. «Ամենայն ինչ կատարեալ է», այս՛. ինչ որ Մեսիայի համար 'ի մարգարէից գրուած էր, ինչ որ Աստուծոյ անսահման ողորմութիւնը փառաւորելու համար պէտք էր, ինչ*

որ մարդկային մեղաց քաւութեան համար կարեւոր էր, ամեն բան կատարուեցաւ. Եւ ապա իր վերջին ուժը ժողվելով՝ մեծ ձայնով աղաղակեց ու ըսաւ. «Հայր, հոգիս ձեռքդ կաւանդեմ»։ Եւ գլուխը ծռելով, իր ամենամաքուր հոգին աւանդեց. Նորին Ադամ հնոյն եւ նորա սերնդոց մեղաց համար մեռաւ. որովհետեւ Աստուած «Մատնեաց զնա առ մեղս մեր, վիրաւորեցաւ վասն մեղաց մերոց, եւ պատժեցաւ վասն անօրէնութեանց մերոց... եւ մեք նորա վիրօքն բժշկեցաք»։ Եսայ. ԾԳ. 5—6։ Հոն կեցողներէն ոմանք կըսէին, թէ «Քանի որ զԵղիա յօգնութիւն կոչեց, տեսնենք, թէ պիտի գայ տար խաչէն վար առնելու համար ազատելու»։

## Ի. Շարժումն երկրի

Եւ ահա վարագոյր տաճարին ճեղաւ յերկուս՝ ՚ի վերուստ մինչեւ ՚ի վայր, եւ երկիր շարժեցաւ, եւ վէմք պատառեցան, եւ գերեզմանք բացան, եւ բազում մարմինք ննջեցելոց սրբոց յարեան. եւ ելեալ ՚ի գերեզմանաց յետ յարութեան նորա՝ մտին ՚ի սուրբ քաղաքն, եւ երեւեցան բազմաց. Իսկ հարիւրապետն եւ որ ընդ նմա պահէին զՅիսուս, իբրեւ տեսին զշարժումն եւ զեղեալսն, երկեան յոյժ եւ ասեն. արդարեւ Աստուծոյ Որդի էր սա. Մատթ. ԻԷ. 51—54։ Եւ տեսեալ հարիւրապետին՝ որ կայր անդ, եթէ աղաղակեաց եւ եհան զոգին, ասէ. արդարեւ այրս այս Որդի Աստուծոյ էր։ Մարկ. ԺԵ. 39։ Եւ տեսեալ հարիւրապետին՝ որ ինչ եղեն, փառաւոր արար զԱստուած եւ ասէ. արդարեւ այրս այս արդար է։ Եւ ամենայն ժողովուրդն՝ որ եկեալ էին, եւ տեսանէին զեղեալսն զայն եւ զգործ, բախէին զկուրծս եւ դառնային։ Կային եւ ամենայն ծանօթքն նորա ՚ի հեռաստանէ եւ կանայք՝ որ եկեալ էին զհետ նորա ՚ի Գալիլեէ, տեսանէին

ղոյն ։ Ղուկ. ԻԳ. 47—49 ։ Էին անդ կանայք բազումք, կային 'ի հեռաստանէ և հայէին, որք եկին զհետ Յիսուսի 'ի Գալիլեէ պաշտել զնա, յորս էր Մարիամ Մագդաղենացի, և Մարիամ Յակոբայ և Յովսեփայ մայր, և մայր որդւոցն Զեբեդեայ ։ Մատթ. ԻԷ. 55—56 ։ Որք յորժամ էրն 'ի Գալիլեա՝ երթային զհետ նորա և պաշտէին զնա, և այլ բազում կանայք՝ որ ընդ նմա ելեալ էին յԵրուսաղէմ։ Մարկ. ԺԵ. 41.

*Ինչպէս որ Յիսուսի Բեթղեհեմին այրին մէջ խոնարհ ծննդեանն ատեն երկնային սքանչելիք երեւցան, եւ հրեշտակք վկայեցին Նորա ծննդեան փառացն համար, այսպէս եւ Նորա մահուան ատեն, հրաշքներ կատարուեցան. այսպէս զի կուրացեալքն հոգւով իմանան, թէ լոկ մարդ չէր խաչեալն Յիսուսն, եւ հասկընան Նորա ամենամեծ գործն զոր կատարեր էր։ Ահա սրբութիւն սրբութեանցն Հրէից ժողովրդեան արգելող վարագոյրն, վերուստ 'ի վայր պատռեցաւ, որով կիմացուի, թէ որդիք Նորոյ ուխտի համարձակութիւն ունին Քրիստոսով Յիսուսով երկինքը՝ բուն սրբութիւն սրբութեանցը մտնելու, ուր զառաջինն միայն քահանայապետն Յիսուս, ոչ արեամբ ցլուց եւ նոխազաց, այլ 'ի ձեռն անգին եւ անպարտական արեան իւրոյ. և թէ հին օրէնքը դադրեցաւ, եւ տաճարն զգաց ընդ անարգաբար մեռանել Տեառն իւրոյ։*

*Ապա երկիր շարժեցաւ 'ի հիմանց, Աստուածորդւոյն արեամբ նորոգուած լինելը, Աստուծոյ դատաստանը եւ սատանային անկումը նշանակելու համար. և որպէս զի համոզուին, թէ Քրիստոսի հաւատքն ամենակարծր սրտերու վերայ անգամ ազդեցութիւն պիտի ընէ, քարերն*

ճեղքուեցան, եւ Աստուծոյ խոստմանց հաւատ-
քովը, նախնեաց արդարներէն շատերն Քրիստոսի յարութենէն ետքը գերեզմաններէն ելան, ու քաղաքը մտնելով շատերուն երեւցան. (Թէպէտ այս բանը երրորդ օրն եղաւ, բայց աւետարանիչը հետզհետէ կը շարէ այս դէպքերն). որով գիտցանք. թէ Քրիստոսի արիւնը, հին ուխտի հաւատացեալներն ալ փրկեց:

Այս սքանչելիքն, եւ Քրիստոսի՝ աղաղակելով հոգին աւանդելը տեսնելով հարիւրապետը որ Հռովմայեցի հեթանոս էր, փառաւորեց զԱստուած, այսինքն հաւատաց Աստուծոյ եւ Նորա Որդւոյն, եւ խոստովանեցաւ, թէ արդարեւ այս մարդը արդար էր, եւ Նորա հետ եղող պահապաններն ալ, երբ շարժումը տեսան, զարհուրելով հաւատացին ու ըսին, թէ արդարեւ Որդի Աստուծոյ է: Այս եղած սքանչելիքն ու գործը բոլոր հոն գտնուող ժողովրդեան վրայ այնչափ մեծ տպաւորութիւն ըրին, որ կուրծքերնին ծեծելով կը տխրէին, եւ անշուշտ "ինչ՚. եղաւ այս բանն այսպէս" ըսելով կըլային:

Յիսուսի ծանօթներն ալ հոն տեղ էին, և հեռուէն իրաց ելքը կը դիտէին: Ասոնց մէջ շատ կանայք ալ կային՝ որ Գալիլեէն եկած էին Յիսուսի ետեւէն՝ իրեն ծառայելու համար: Ասոնց մէջ էր Մարիամ Մագդաղենացի, և կրտսեր Յակովբայ և Յովսեփայ մայրն Մարիամ, և Զեբեդեայ որդւոց մայրն Սաղոմէ: Ասոնք Գալիլիայի մէջ Քրիստոսի հետ կը պտըտէին. և իրենց ստացուածքէն ծառայութիւն կ'ընէին Յիսուսի. ասոնցմէ զատ Երուսաղէմէ եկած կիներ ալ կային:

## Ը. Բացումն տիգախոց կողին

Իսկ Հրէայքն՝ քանզի ուրբաթ էր, զի մի՛ անդէն ՚ի խաչին ագանիցին մարմինք մինչև շաբաթն, զի էր օր մեծ շաբաթուն այնորիկ, աղաչեցին զՊիղատոս, զի խորտակեսցեն զբարձս նոցա, և բարձցեն։ Եկին զինուորքն, և զառաջնոյն խորտակեցին զբարձս. նոյնպէս և զմիւսոյն՝ որ ընդ նմա ՚ի խաչ ելեալ էր։ Բայց եկեալ եկին առ Յիսուս, և տեսին՝ զի այն ննջեցեալ էր. ոչ խորտակեցին զբարձս նորա. այլ մի ոմն ՚ի զինուորացն տիգաւ խոցեաց զկողս նորա, և ել վաղվաղակի արիւն և ջուր։ Եւ որ ետեսն՝ վկայեաց, և ճշմարիտ է վկայութիւն նորա. և նա գիտէ՝ թէ ճշմարիտ ասէ, զի և դուք հաւատասջիք։ Այս եղև, զի լցցի գիրն, եթէ ոսկր նորա մի՛ փշրեսցի։ Եւ դարձեալ միւս գիր ասէ, եթէ հայեսցին ՚ի նա՝ յոր խոցեցինն։ Յովհ. ԺԹ. 31—37։

*Իսկ Հրէայք՝ թէ օրինաց տրամադրութեան համեմատ, որ մեռելոց մարմինը կախաղանի վըրայ գիշերն անթաղ թողուլն կարգելուր (Բ. Օրին. ԻԱ. 23), և թէ՛ վաղուեան մեծ շաբաթուն համար՝ որ զատկի ութօրէից մէջ պատահելովը ամեն շաբաթներէ մեծ էր, հրաման խընդրեցին Պիղատոսէն, որ խաչելոց մահը փութացընելու և զանոնք թաղել կարողանալու համար նոցա բարձերն խորտակեն. եկան զինուորներն, և երկու աւազակաց՝ որոց հոգիններն դեռ վըրանին էին, բարձերն խորտակեցին. իսկ Յիսուսի գալով տեսան, որ նոր մեռած է, ուստի նորա բարձերն չխորտակեցին։ Բայց զինուորներէն մէկը՝ որ ըստ աւանդութեան եկեղեցւոյ Ղունկիանոս հարիւրապետը կը համարուի, տիգով նորա կողը խոցեց, եւ — նոր հրաշալիք —*

արիւն և ջուր հանեց կողէն՝ որ ըստ Շարականին Ներսիսի Շնորհալի Հայրապետին մերոյ (քարոզի ՚ի սքանչելեացն՝ Աստուած մարմնով վասն իմ խաչեալ, մեռով բնութեամբս մեռանի, Աստուած անմահ խոցոտեալ. կենդանարար կողին աղբերք եկեղեցւոյ իւր հաստատէ. ջրովն մաքրէ, արիւնն ըմպէ, զՄիրդ ի ընդ Հօր փառաւորէ), Հաղորդութեան և մկրտութեան խորհուրդներին կընշանակէ, որովք Քրիստոսի եկեղեցին հաստատուած է։ Այս պատմութիւնն գրող աւետարանիչն Յովհաննէս՝ ականատես եղած է այս հրաշալի գործերուն, և կըհաստատէ, թէ ճշմարիտ է իւր վկայութիւնը, որ դուք ալ հաւատաք։ Այս բանն ալ մարգարէութեան կատարման համար եղաւ. զատկական գառին՝ որ ըզՔրիստոս գառն Աստուծոյ կընշանակէր, ոսկորներն չպիտի փշրուէին (Ելք. ԺԲ.), և թէ յետ խոցելոյ զՔրիստոս՝ իրենց խոցածին պիտի նայէին (Զաք. ԺԲ. 10)։

## Թ. Թաղումն մարմնոյ Փրկչին

Եւ իբրեւ երեկոյ եղեւ՝ եկն այր մի մեծատուն յԱրիմաթեայ, որում անուն էր Յովսէփ, որ և աշակերտեալ էր Յիսուսի։ Սա մատուցեալ առ Պիղատոս, խնդրեաց զմարմինն Յիսուսի. յայնժամ Պիղատոս հրամայեաց տալ զմարմինն։ Եւ առեալ զմարմինն Յովսէփ, պատեաց սուրբ կտաւով, և եդ ՚ի նոր գերեզմանի՝ զոր փորեաց ՚ի վէմ, և թաւալեցուցեալ վէմ մեծ ի դուրս գերեզմանին, և գնաց։ Անդ էր Մարիամ Մագդաղենացի և միւս Մարիամ, նստէին հանդէպ գերեզմանին։ Մատթ. ԻԷ. 57—61։ Եւ իբրեւ երեկոյ եղեւ, քանզի ուրբաթ էր՝ որ ՚ի շաբաթն մտանէր, եկեալ Յովսէփ

դը, Հրէից մեծերուն խորհրդոյ և գործոց չէր միաբանած, և աշակերտ ալ եղած էր Յիսուսի ՚ի ծածուկ՝ Հրէայներէն վախուն։ Այս Յովսէփ Արեմաթացին ինքն անձամբ համարձակելով եկաւ, Պիղատոսէն Յիսուսի մարմինը խնդրեց։ Երբ լսեց Պիղատոս, և հարիւրապետէն ալ ըստուգեց, թէ այնչափ շուտ մեռաւ, շատ զարմացաւ. տուր վրայ Յիսուսի մարմինը Յովսեփին շնորհեց։ Այո՛, Քրիստոս վաղ մեռաւ չարչարանաց սաստկութենէն. զի յառաջ քան զխաչ ելն իսկ՝ արիւնաներկ միրօք պատառուած էր նորա մարմինը։ Յովսէփ մաքուր կտաւներ գնեց, և անտարակոյս իր ազգականներուն մէկտեղ եկաւ խաչէն վար իջեցուց Յիսուսի մարմինը։

Նոյն ատեն Նիկոդեմոս, որ գիշերանց եկած էր առջի անգամ Յիսուսի քով, հալուէի հետ խառն զմուռս բերաւ հարիւր լիտրի չափ։ Առին Յիսուսի մարմինը, զոր ըստ օրինաց Հրէից զմըռսեցին խնկօք և պատեցին կտաւովք։ Գողգոթայի մօտ պարտէզ մը կար, որ Յովսեփայ սեփական էր. այն պարտիզին մէջ նոր գերեզման մ՚ալ կար վիմափոր (քարայր փորուած). և ինչպէս ըսինք՝ մեծ շաբաթամուտը խիստ մօտ էր. Այդ գերեզմանը խիստ մօտ ըլլալուն և ուրիշ տեղ տանելու ալ ժամանա՛կ չը գտնուելուն համար, հոն դրին Յիսուսի մարմինը, ու գերեզմանին դրան բերանը մեծ քար մը գլտորցնելով գոցեցին, — որ ետքը Քրիստոսի յարութեան անխարդախ ըլլալուն ապացոյցներէն մին պիտի ըլլար — ու գնացին։

Այն օրն ուրբաթ երեկոյ էր՝ որ շաբաթ պիտի լուսնար. բարեպաշտ կանայք՝ Մագթաղենա-

ցի Մարիամ, և Ցովսեայ ու Ցակոբայ մայրն Մարիամ՝ որ Քրիստոսէ չէին բաժնուիր. գերեզմանի դիմաց նստած՝ տեսան գերեզմանը, և դիտեցին, թէ ի՞նչպէս դրուեցաւ տիրոջ մարմինը, որպէս զի վերջը գան և օծեն։ Ասոր անոնք ալ գնացին, և ըստ պատուիրանի տեառն՝ շաբաթ օր հանդարտ մնացին։

## Ժ. Կնքել քահանայից զգերեզման եւ կարգել առ նովաւ պահապանս

Եւ ՚ի վաղիւն անդր՝ որ է յետ ուրբաթուն, ժողովեցան քահանայապետքն և Փարիսեցիքն առ Պիղատոս, և ասեն. Տէ՛ր, յիշեցաք զի մոլորեցուցիչն այն ասէր, մինչ կենդանին էր. Յետ երից աւուրց յառնեմ. Արդ՝ հրամայեա՛ զգուշանալ գերեզմանին մինչև յերիր աւուրն. գուցէ եկեալ աշակերտքն գիշերի գողանայցեն զնա, և ասիցեն ժողովրդեանն, թէ յարեաւ ՚ի մեռելոց. և լինիցի յետին մոլորութիւնն չար քան զառաջինն։ Ասէ ցնոսա Պիղատոս. ունիք զզօրականս, երթա՛յք զգուշացարո՛ւք որպէս և գիտէք։ Եւ նոքա երթեալ զգուշացան գերեզմանին, և կնքեցին զվէմն հանդերձ զօրականօք։ Մատթ. Իէ. 62—66։

Ուրբաթուն հետևեալ օրը՝ քահանայապետք փարիսեցիք Պիղատոսի քով ժողվեցան և ըսին. «Մտքերնիս կուգայ որ այդ մոլորեցուցիչը կենդանի եղած ատեն կ'ըսէր, թէ երեք օրէն յարութիւն կ'առնեմ. (Քրիստոս երեք օրէն չէր ըսած, այլ երեք աւուր մէջ կամ երեք օրը չի լըմընցած). արդ հրաման տուր, որ զօրքը երեք օր զգուշութեամբ պահպանեն գերեզմանը. չըլլայ որ աշակերտները գիշերանց գան գողնան մարմինը, և ժողովրդեան ըսեն, թէ յարեաւ ՚ի

մեռնելոյ . այն ատեն եղքի փոխարութիւնը՝ պա-
ցինէն չար հերոյ . վասն զի այն անժխտելի կ'րա-
րայ Քրիստոսի աստուածութիւնը ։ Մենք՝ որ ա-
մեն բան գիտեմք ; և մեր հաւատոց մէջ հաս-
տատուն եմք , ինչ որ այ ըսեն կամ ընեն՝ չեն
կրնար զմեզ խաբել և համոզել . սակայն հաւա-
րակութիւնը դիւրախաբ է . շուտով կը մոլորի և
կը հաւատայ միայն սակից. կը կասկածիմք »:
Յիմարները չէին մտածեր , թէ մեռեալ մարմինը
գողնալով՝ ինչ փառաւորած կ'ըլլային . մեռեալն
ի՞նչ կրնար ընել իրենց . Այն ատեն Պիղատոս
ըսաւ . «Ձեզի յատուկ զօրականներ ունիք , ա-
ռէ՛ք զանոնք , և գնացէ՛ք պահպանեցէ՛ք գե-
րեզմանը՝ ինչպէս որ գիտէք կամ կ'ուզէք »: Ա-
նոնք ալ գնացին , գերեզմանին քով պահապան-
ներ դրին առ 'ի զգուշութիւն , և վէմը կնքե-
ցին՝ Յիսուսի մարմնոյն ներսը ըլլալը ստուգելէն
յետոյ ։ Խնդալ պէտք է որ իր պահուն քուն
մտնող զինուորը 'ի մահ կը դատապարտուէր . Ը-
ռոմէական օրէնք ։

Այս կնքելու գործողութիւնն շաբաթամուտի
ատեն կատարեցին քահանայապետք և դպիրք ,
որոնք ամենէն աւելի նախանձախնդիր էին շա-
բաթը չեղծանելու մասին ։



բարձեալ 'ի դրաց գերեզմանին։ Ապա ընթանայ և գայ առ Սիմոն Պետրոս և առ միւս աշակերտն՝ զոր սիրէր Յիսուս, և ասէ ցնոսա. Բարձին զտէր 'ի գերեզմանէ անտի, և ոչ գիտեմ, ո՛ւր եդին զնա։ Յովհ. Ի. 1—2.

*Եւ երբ որ շաբաթն անցաւ, այն երեկոյին՝ որ միաշաբաթ պիտի լուսնար, Մարիամ Մագթաղենացի, Մարիամ՝ Յակոբայ և Յովսեայ մայրը Սաղոմէ, Քուզա հազարապետին կինն Յովհաննա և ուրիշ կանայք գնացին անոյշ խնկեր պատրաստեցին, որ գերեզմանը գան և Յիսուսի մարմինը օծեն. վասն զի չը գիտէին, թէ գերեզմանը կնքուած է։*

*Եւ միաշաբաթ օրը առաւօտէն շատ յառաջ գերեզման գալու ճամբայ ելան, և արևագալին հասան հոն. (գիտնալու է, որ այն կողմերն արշալոյսը խիստ կարճատև է). և ճամբան իրարու կ'ըսէին. ո՞վ պիտի գլորէ մէկդի առնէ գերեզմանին դրան քարը՝ որ շատ մեծ էր։ Բայց խեղճուկ կանայք չը գիտէին, որ արդէն Քրիստոս յարուցեալ էր 'ի մեռելոց ըստ կանխասացութեան իւրում՝ և ըստ մարգարէութեան Յովնանու, և մահու խայթոցը բթացուցեր, ու մահուան յաղթեր էր. և դժոխոց դռները հզօրապէս խորտակած կոտրտած ըլլալուն նշան և ապացոյց՝ ապականահաս դերձ. և փայլակնատեսիլ հրեշտակը այն ահագին քարը գերեզմանին դրանէն 'ի բաց թաւալեցուցած էր, կոտրելով խզելով որբունի և քահանայապետական կնիքները. ու վրան նստեր էր. և պահապանք նորա ահէն դողահարած, մեռելանման ինկած էին անզգայ։ Այնպէս բարապանքն դժոխոց սոսկացեալ դողացին, երբ ինքնազօր քաջութեամբ Աստուածոր-*

դլին սպաննեց զմահը ։

Մարիամ Մագթաղենացի տեսաւ՝ որ քարն թաւալած էր, և ներս չը մտած և հրեշտակը չը տեսած կարծեց, որ տիրոջ մարմինը գերեզմանէն վերուցեր են. այս լուրը վազեց տարաւ Պետրոսի և Յովհաննու ։

Եւ մտեալ 'ի ներքս 'ի գերեզմանն՝ տեսին երիտասարդ մի, զի նստէր ընդ աջմէ կողմանէ՝ զգեցեալ պատմուճան սպիտակ. և զարհուրեցան ։ Եւ նա ասէ ցնոսա. մի՛ զարհուրիք. զՅիսուս խնդրէք զՆազովրեցի զխաչելեալն, յարեաւ, չէ աստ. ահաւասիկ տեղին՝ ուր եդին զնա ։ Այլ երթա՛յք, ասացէ՛ք ցաշակերտս նորա և ցՊետրոս, եթէ ահա յառաջագոյն երթայ քան զձեզ 'ի Գալիլեա. անդ տեսանիցէք զնա՝ որպէս ասաց ձեզ. Մարկ. ԺԶ. 5—7 ։ Եւ մտեալ 'ի ներքս՝ ոչ գտին զմարմին Տեառն Յիսուսի ։ Եւ եղև ընդ հիանալն նոցա վասն այնորիկ, և ահա արք երկու հասին առ նոսա 'ի հանդերձս լուսաւորս ։ Եւ իբրև զահի հարան և խոնարհեցուցին զերեսս 'ի գետին, ասեն ցնոսա. զի՞ խնդրէք զկենդանին ընդ մեռեալս. չէ աստ, այլ յարեաւ ։ Յիշեցէ՛ք՝ որպէս խօսեցաւ ընդ ձեզ, մինչ էրն 'ի Գալիլեա, և ասէր. Թէ պարտ է Որդւոյ մարդոյ մատնել 'ի ձեռս մարդկան մեղաւորաց և 'ի խաչելանել և յերրորդ աւուր յառնել ։ Եւ յիշեցին զբանսն նորա. Ղուկ. ԻԴ. 3—8 ։ Եւ իբրև լուան՝ ելին և փախեան 'ի գերեզմանէն, քանզի զահի հարեալ էին. և ոչ ումեք ինչ ասացին, զի երկնչէին ։ Մարկ. ԺԶ. 8.

Բայց միւս կանայք քարայրը մտան, ու առաջին անգամ միայն հրեշտակ մը տեսան, որ սպիտակազգեստ երիտասարդի մը նման կերպարանք ունէր, ու վախցին. այն ատեն հրեշտակն բսաւ անոնց. «Մի՛ վախնաք, գիտեմ որ խաչելեալ Նազովրեցի Յիսուսը կը փնտռէք, յարութիւն

## Բ. Պետրոս եւ Յովհաննէս ընթանան 'ի գերեզմանն

Եւ Պետրոս եւ միւս աշակերտն, եւ գային 'ի գերեզմանն, ընթանային երկոքեան 'ի միասին. եւ միւս աշակերտն յառաջեաց ընթացաւ վաղագոյն քան զՊետրոս, եւ եկն նախ 'ի գերեզմանն. եւ խոնարհեալ տեսանէ, զի կային անդ կտաւքն, բայց 'ի ներքս ոչ եմուտ։ Եկն եւ Սիմովն Պետրոս՝ որ գայր զհետ նորա, եւ եմուտ 'ի գերեզմանն, եւ տեսանէ զկտաւսն՝ զի կային անդ. եւ զվարշամակն՝ որ էր 'ի գլուխ նորա, ոչ ընդ այլ կտաւսն կայր, այլ ուրոյն ծալեալ 'ի մի կողմն։ Յայնժամ եմուտ եւ միւս աշակերտն՝ որ եկեալ էր յառաջագոյն 'ի գերեզմանն, ետես եւ հաւատաց. զի չեւ եւս գիտէին զգիրսն, թէ պարտ է նմա 'ի մեռելոց յառնել։ Չոգան դարձեալ առ միմեանս աշակերտքն։ Յովհ. Ի 3—10։

*Ասոնք գնացին, եւ ահա Պետրոս եւ Յովհաննէս գերեզման եկան Մագթաղենացւոյն խօսքին վրայ, ինչպէս կ'երեւի. Յովհաննէս վազեց, Պետրոսէն յառաջ գերեզման հասաւ, ու ծռելով տեսաւ, որ կտաւները հոն են, բայց ներս չմտաւ անշուշտ վախէն. Իսկ Պետրոս եկաւ՝ որ աւելի աներկիւղ էր, գերեզման մտաւ, ու տեսաւ կտաւները, որ հոն կեցած էին, ու գլխոյն վրայէ թաշկինակն ալ առանձին մէկ կողմ ծալլուած դրուած էր. որով կը յայտնուէր թէ գողցուած չէ մարմինը. վասն զի եթէ գողցուէր, կտաւներն ալ հետ պիտի առնուէին։ Ապա Յովհաննէս ալ ներս մտաւ, տեսաւ այս բաները, եւ հաւատաց Մագթաղենացւոյն խօսքին. «Թէ վերարձին զտէր 'ի գերեզմանէ», վասն զի տակաւին Ս. Գրոց իմաստից կատարեալ հմտութիւն չունէին, թէ պէտք է որ Քրիստոս 'ի մեռելոց յարութիւն*

սան, որ կեցեր էր, բայց չճանչցեց ։ Յիսուս հարցուց. «Ինչո՞ւ կուլաս, կին դու, զո՞վ կը փնտռես»: բայց Մարիամ կարծելով, թէ իրեն հետ խօսողն պարտիզպանն է այն պարտիզին՝ ուր գերեզմանն էր, ըսաւ անոր. «Տէ՛ր, եթէ դու վերուցիր Յիսուսի մարմինը, ըսէ ինծի, որ ես առնում տանիմ»: Այն ատեն Յիսուս գորովանօք և ծանօթ ձայնիւ մը նորա անունը կոչեց «Մարիամ»: ասոր վրայ Մագթաղենացին Յիսուսի սովորական անունը Եբրայեցերէն արտասանեց «Ռաբունի՛», որ վարդապետ կը նշանակէ ։

Յիսուս երբ տեսաւ, թէ Մարիամ իրեն փարելու կուգայ հրաժարական ողջոյն տալու համար, և ասով շատ ժամանակ պիտի անցնէր, ըսաւ անոր. «Հիմայ մի՛ մօտենար ինծի, վասն զի դեռ ես Հօրս քով չեմ ելած, մինչդեռ ատենը չէ. ուրիշ անգամ ալ պիտի երևամ ձեզի, հիմայ հրաժեշտի ողջոյն տալու մի՛ փութար. պիտի ելնեմ ես Հօրս և Աստուծոյս (Հայր՝ ըստ Աստուածութեան նորա, և Աստուած ըստ Մարմնոյ) քով, այն Հօրս և Աստուծոյս քով՝ որ հիմայ ձեր իսկ Հա՛յրն ու Աստուածն է իմ շնորհօք. գնա՛, այսպէս ըսէ իմ աշակերտներուս, որք ա՛լ այսուհետև իմ եղբայրներս եղան»:

Եւ եկեալ վաղվաղակի 'ի գերեզմանէ անտի ահիւ և խնդութեամբ մեծաւ՝ ընթացան պատմել աշակերտացն։ Եւ ահա պատահեաց նոցա Յիսուս՝ և ասէ. Ո՛ղջ էք. և նոքա մատուցեալ կալան զոտս նորա՝ և երկիր պագին նմա։ Յայնժամ ասէ ցնոսա Յիսուս. Մի՛ երկնչիք, երթա՛յք ասացէ՛ք եղբարցն իմոց՝ զի երթիցեն 'ի Գալիլեա, և անդ տեսցեն զիս։ Մատթ.

ԻԸ. 8—10.

*Ուստի գերեզմանէն ելան․ երբ երկիւղիւ և մեծ խնդութեամբ կը վազէին աշակերտաց պատմելու՝ ճամբան Յիսուս պատահեցաւ անոնց և ողջոյն տուաւ․ Նոքա ալ քովը գնացին, ոտքերը բռնեցին և երկրպագութիւն ըրին Յիսուսի։ Յիսուս «Մի վախնաք, ըսաւ, գնացէք իմ եղբայրներուս ըսէք՝ որ Գալիլիա երթան, հոն պիտի տեսնեն զիս»։*

*Կանայք մեծ խնդութեամբ վազեցին աշակերտաց պատմելու։*

### Դ. Հնարք քահանայապետից ՚ի խափանել զհամբաւ յարութեանն Յիսուսի

Իբրեւ նոքա գնացին, ահա ոմանք ՚ի զօրականացն եկեալ ՚ի քաղաքն՝ և պատմեցին քահանայապետիցն զամենայն որ ինչ եղեւն։ Եւ նոքա ժողովեալ հանդերձ ծերովքն խորհուրդ արարեալ, արծաթ յոյժ ետուն զօրականացն, և ասեն. ասասջի՛ք եթէ աշակերտքն նորա եկեալ գիշեր գողացան զնա՝ մինչ մեք ՚ի քուն էաք։ Եւ եթէ լուր լիցի այդ առ դատաւորն, մեք հաւանեցուսցուք զնա՝ և զձեզ անհոգս արասցուք. Եւ նոցա առեալ զարծաթն, արարին որպէս ուսանն. և ել համբաւս այս ՚ի Հրէից մինչև ցայսօր։ Մատթ. ԻԸ. 11—15.

*Մինչ անոնք գնացին՝ և ահա պահապան զօրքերէն ոմանք քաղաք հասան, և բոլոր եղածները պատմեցին քահանայապետաց։ Քահանայապետք իրար անցած՝ ծերոց հետ մէկտեղ ժողով կազմեցին, զօրականներուն բազում արծաթով կաշառեցին, և պատուիրեցին, որ ըսեն, թէ իրենց քուն եղած ատենն՝ աշակերտները եկան գողցան։*

*Օգոստինոս կ՚ըսէ, թէ ի՞նչ կ՚արժէր և ի՞նչ*

բանի կը ծառայէր նոցա այդ վկայութիւնը. եթէ քուն՝ էին՝ ինչպէս տեսան գողցուիլը. իսկ եթէ բան մը չը տեսան՝ ոչինչ է դոցա վկայութիւնը։

Իսկ եթէ այդ բանը կուսակալին ականջը հասնի — ըստ որում պահպանութեան ատեն քը-նացող զինուորին պատիժն մահ էր, — մեք կը հաճեցնենք զանի, առջիք կ'առնենք. և դուք անհոգ կ'ըլլաք»։ Անոնք ալ կաշառքն առին և սորվածնուն պէս ըրին. և հրէայք այս գողու-թեան լուրը տարածեցին մինչև այսօր։

Յարուցեալ Յիսուս առաւօտուն առաջին միաշաբաթուն՝ երե-ւեցաւ Մարիամու Մագդաղենացւոյ, յորմէ հանեալ էր զեւթն դեւն. Եւ նա երթեալ պատմեաց այնոցիկ՝ որ ընդ նմայն էին, մինչդեռ սգային և լային։ Նոքա իբրև լուան թէ կենդանի է և երևեցաւ նմա, ո՛չ հաւատացին։ Յետոյ երևեցաւ այլով կերպարանաւ՝ որք երթային յանդաստան։ Մարկ. ԺԶ 9—12. Եւ դարձեալ պատմեցին զայս ամենայն մետասանիցն, և այլոցն ամենեցուն. Եւ էին Մարիամ Մագդաղենացի և Յովհաննա և Մարիամ Յակոբեայ, և այլք ընդ նոսա՝ որ պատմեցին զայս առաքելոցն. Եւ երևեցան առաջի նոցա շաղփաղփանք բան-քըն նոցա՝ և չհաւատային նոցա. Ղուկ. ԻԴ. 9—11.

Այսպէս Յիսուս այս միաշաբաթի առաւօ-տուն յարութիւն առած՝ նախ երևցաւ Մարիամ Մագդաղենացւոյն, յորմէ եօթն դևեր հանած էր. Մարիամ ալ իր հետ եղողներուն պատմեց այն ատեն՝ որ կ'ողբային և կուլային։ Նոքա երբ լսեցին՝ թէ կենդանի է, ու իրեն երևցաւ՝ չը հաւատացին. և դարձան մետասան աշակերտաց պատմեցին։ Այս խօսքերն աւելորդաբանութիւն-ներ երևցան մետասանից, և չէին հաւատար։ Յետոյ Յիսուս ուրիշ կերպարանքով՝ անդաստան

ԻԸ. 8—10։

Շուտով գերեզմանէն ելան. Եւ երկիւղիւ և մեծ խնդութեամբ կը վազէին աշակերտաց պատմելու՝ ճամբան Յիսուս պատահեցաւ անոնց և ողջոյն տուաւ. Նոքա ալ քովը գնացին, ոտքերը բռնեցին և երկրպագութիւն ըրին Յիսուսի։ Յիսուս «Մի վախնաք, ըսաւ, գնացէք իմ եղբայրներուս ըսէք՝ որ Գալիլիա երթան, հոն պիտի տեսնեն զիս»։

Կանայք մեծ խնդութեամբ վազեցին աշակերտաց պատմելու։

## Դ. Հնարք քահանայապետից 'ի խափանել զհամբաւ յարութեանն Յիսուսի

Իբրեւ նոքա գնացին, ահա ոմանք 'ի զօրականացն եկեալ 'ի քաղաքն՝ և պատմեցին քահանայապետիցն զամենայն որ ինչ եղեւ։ Եւ նոքա ժողովեալ հանդերձ ծերովքն խորհուրդ արարեալ, արծաթ յոյժ ետուն զօրականացն, և ասեն. ասասջի՛ք՝ եթէ աշակերտքն նորա եկեալ գիշեր գողացան զնա՝ մինչ մեք 'ի քուն էաք։ Եւ եթէ լուր լինի այդ առ դատաւորն, մեք հաւանեցուցանեմք զնա՝ և զձեզ անհոգս արասցուք։ Եւ նոցա առեալ զարծաթն, արարին որպէս ուսանն. և ել համբաւս այս 'ի Հրէից մինչեւ ցայսօր։ Մատթ. ԻԸ. 11—15։

Մինչ անոնք գնացին՝ և ահա պահապան զօրքերէն ոմանք քաղաք հասան, և բոլոր եղածները պատմեցին քահանայապետաց։ Քահանայապետք իրար անցած՝ ծերոց հետ մէկտեղ ժողով կազմեցին, զօրականներուն բազում արծաթով կաշառեցին, և պատուիրեցին, որ ըսեն, թէ իրենց քուն եղած ատենն՝ աշակերտներն եկան գողցան։

Օգոստինոս կ'ըսէ, թէ ի՞նչ կ'արժէր և ի՞նչ

բանի կը ծառայէր նոցա առ վկայութիւնը. Եթէ քուն էին՝ ինչպէս տեսան գողցուիլը. իսկ եթէ բան մը չը տեսան՝ ոչինչ է դոցա վկայութիւնը։

Իսկ եթէ այդ բանը կուսակալին ականջը հասնի — ըստ որում պահպանութեան ատեն քընացող զինուորին պատիժն մահ էր, — մեք կը հանեցնենք զանի, առջիւը կ'առնենք. և դուք անհոգ կ'ըլլաք»։ Անոնք ալ կաշառքն առին և սորվածնուն պէս ըրին. և հրէայք այս գողու-թեան լուրը տարածեցին մինչև այսօր։

Յարուցեալ Յիսուս առաւօտուն առաջնոյ միաշաբաթուն՝ երեւեցաւ Մարիամու Մագդաղենացւոյ, յորմէ հանեալ էր զեւթն դեւսն. Եւ նա երթեալ պատմեաց այնոցիկ՝ որ ընդ նմայն էին, մինչդեռ սգային եւ լային։ Նոքա իբրեւ լուան թէ կենդանի է եւ երեւեցաւ նմա, ոչ հաւատացին։ Յետոյ երկուց այլով կերպարանաւ՝ որք երթային յագարակն։ Մարկ. ԺԶ 9—12. Եւ դարձեալ պատմեցին զայս ամենայն միոտասանիցն. եւ այլոցն ամենեցուն. Եւ էին Մարիամ Մագդաղենացի եւ Յովհաննա եւ Մարիամ Յակոբեայ, եւ այլք ընդ նոսա՝ որ պատմեցին զայս առաքելոցն։ Եւ երեւեցան առաջի նոցա շփոթութիւն բանքն նոցա՝ եւ չհաւատային նոցա. Ղուկ. ԻԴ. 9—11.

Այսպէս Յիսուս այս միաշաբաթի առաւօտուն յարութիւն առած՝ նախ երևցաւ Մարիամ Մագդաղենացւոյն, յորմէ եօթն դևեր հանած էր. Մարիամ ալ իւր հետ եղողներուն պատմեց այն ատեն՝ որ կըսգային և կուլային։ Նոքա երբ լսեցին՝ թէ կենդանի է, ու իրեն երևցաւ՝ չը հաւատացին. և դարձեալ մետասան աշակերտաց պատմեցին։ Այս խօսքերն աւելորդաբանութիւններ երևցան մետասանից, և չէին հաւատար։ Յետոյ Յիսուս ուրիշ կերպարանքով՝ անդաստան

գնացողներուն երեւցաւ։

## Ե. Երեւել տեառն երկուց աշակերտաց որ երթային յԷմմաւուս.

Եւ ահա երկուք 'ի նոցանէ երթային 'ի նմին աւուր 'ի գիւղ մի՝ որ հեռի էր յԵրուսաղէմէ հարիւր և վաթսուն ասպարիսաւ, և էր անուն նորա Էմմաւուս. և նոքա խօսէին ընդ միմեանս վասն ամենայն անցիցն անցելոց։ Եւ եղև ընդ խօսելն նոցա և ընդ վիճելն՝ և ինքն Յիսուս մերձեցաւ, և երթայր ընդ նոսա. և նոցա աչք կալեալ էին առ 'ի չճանաչելոյ զնա։ Եւ ասէ ցնոսա. զի՞նչ են բանքդ՝ վասն որոյ վիճէք ընդ միմեանս, մինչդեռ գնայք, և տրտմեալ էք։ Պատասխանի ետ մի ոմն 'ի նոցանէ՝ որում անուն էր Կղէովպաս, և ասէ ցնա. դու միայն կաս յԵրուսաղէմ, որ ոչ գիտացեր՝ զի՛նչ գործեցաւ 'ի նմա յաւուրս յայսոսիկ։ Եւ ասէ ցնոսա. զի՞նչ։ Եւ նոքա ասեն. զՅիսուսէ Նազովրեցւոյ, որ եղև այր մարգարէ՝ հզօր արդեամբք և բանիւք առաջի Աստուծոյ, և ամենայն ժողովրդեանն։ Ո՞րպէս մատնեցին զնա քահանայապետքն՝ և իշխանքն մեր 'ի դատաստան մահու՝ և հանին զնա 'ի խաչ։ Մեք ակն ունէաք՝ թէ նա է որ փրկելոցն էր զԻսրայէլ, այլև հանդերձ այսու ամենայնիւ, այս երրորդ օր է՝ յորմէ հետէ այն գործեցաւ։ Այլև կանայք ոմանք 'ի մէնջ զարմացուցին զմեզ. որք կանխեալ ընդ առաւօտս չոգան 'ի գերեզմանն։ Եւ ո՛չ գտին զմարմին նորա. եկին և ասեն, թէ և տեսիլ ևս հրեշտակաց տեսին, որք ասէին զնմանէ՝ թէ կենդանի է. Եւ գնացին ոմանք 'ի մէնջ 'ի գերեզմանն, և գտին նոյնպէս՝ որպէս կանայքն ասացին. բայց զնա ոչ տեսին։ Եւ նա ասէ ցնոսա. ո՛վ անմիտք և հեղգամիտք 'ի հաւատալ ամենայնի՝ զոր խօսեցան մարգարէքն, ո՞չ զայս պարտ էր չարչարել Քրիստոսի և մտանել 'ի փառս իւր։ Եւ սկսեալ 'ի Մովսիսէ և յամենայն մարգարէից՝ մեկնէր նոցա՝ որ ինչ յամենայն գիրս գրեալ է զնմանէ։ Իբրև մերձեցան 'ի գիւղն՝ յոր երթային, և նա պատճառէր հեռա-

գոյն ևս առնէր երթալ։ Եւ բռնադատեցին զնա՝ և ասեն. Առ մեզ ագի՛ր, զի ընդ երեկս է՝ և տարաժամեալ է օրն, և եմուտ ագանել անդ ընդ նոսա։ Եւ եղև ՚ի բազմելն նորա ընդ նոսա, առեալ զհացն՝ օրհնեաց, եբեկ և ետ նոցա։ Եւ նոցա բացան աչք՝ և ծանեան զնա. և նա եղև ՚ի նոցանէ աներևոյթ. Եւ ասեն ցմիմեանս. ո՞չ ինչ և սիրտ մեր ճմլէին ՚ի մեզ՝ մինչ խօսէրն ընդ մեզ զճանապարհայն. և ո՞րպէս բանայր մեզ զգիրս։ Եւ յարուցեալ նոյնժամայն՝ դարձան յԵրուսաղէմ, և գտին ժողովեալ զմետասանսն՝ և զոր ընդ նոսայն էին. և ասէին՝ թէ արդարև յարեաւ Տէր՝ և երևեցաւ Սիմովնի։ Եւ նոքա պատմէին զոյն որ զճանապարհայնն, և թէ զիա՞րդ եր ծանօթ նոցա ՚ի բեկանել հացին։ Ղուկ. ԻԴ. 13—35։ Նոքա չոգան պատմեցին այլոց, և ո՛չ նոքա հաւատացին։ Մարկ. ԺԶ. 13։

*Եւ երբոր աշակերտներէն երկուքը նոյն օրը՝ Երուսաղեմէն վաթսուն ասպարիզի չափ հեռու (հարիւր ասնըորդ է) Էմմաուս անունով գիւղը՝ այս եղածներուն վրայ խօսելով կ՚երթային ու կը վիճաբանէին, ահա Յիսուս ինքն մօտեցաւ ու անոնց հետ կը քալէր. սակայն նոցա աչքերն բռնուած էին և զանի չէին ճանչեր։ Յիսուս նոցա խօսակցութեան և վիճաբանութեան նիւթը և տրտմութեան պատճառն հարցուց։ Անոնցմէ մին՝ որ Կղէոփաս կ՚ըսուէր, և կը թուի՝ թէ աստուածահօր՝ Յովսեփայ եղբայրն էր, պատասխանեց. «Դու միայն մնացեր ես Երուսաղեմի մէջ՝ այս օրերս պատահած բաներուն անծանօթ մարդ» և երբ Յիսուս հետաքրքրութեամբ կը հարցնէր՝ թէ ինչ եղաւ, ըսին. «Չը գիտե՞ս դու Յիսուս Նազովրեցին, որ Աստուծոյ և ժողովրդեան առջև բանիւք, արդեամբք և գործովք հզօր մարգարէ էր. ի՞նչպէս մեր քահանայապետներն ու իշխանները զանի մահու դատապարտութեան*

մատնեցին և խաչը հանեցին. մենք կը յուսայինք, որ նա էր՝ որ Իսրայէլ պիտի փրկէր. և ահա այսօր երեք օր է՝ որ այդ գործը գործեցին։ Բայց այս առաւօտ կանուխ գերեզմանը գնացող կանայք ոմանք մեզ զարմանք պատճառեցին պատմելով, թէ Յիսուսի մարմինը չը գըտան, և թէ հրեշտակներ տեսեր են, որ նորա համար ըսեր են՝ թէ կենդանի է։ Մեզմէ ալ մէկ քանիներ գերեզման գնացին, և կանանց ըսածին պէս գերեզմանը թափուր գտան, բայց ըզ Յիսուս չը տեսան»։ Յիսուս պատասխանեց. «Ո՜վ ո՜րչափ անմիտ և թուլասիրտ էք մարգարէից խօսածներուն հաւատալու մէջ. ո՞չ ապաքէն պէտք էր՝ որ Քրիստոս նոյն չարչարանքներն կրէ, և իւր փառաց մէջ մտնէ, ըստ մարգարէից»։ Եւ Մովսիսի գրքէն սկսելով՝ բոլոր մարգարէութիւններէն բացատրութիւններ կ՚ընէր. և ինչ որ Աստուածաշնչի մէջ գրուած էր Քրիստոսի վրայօք՝ կը մեկնէր անոնց։

Երբ իրենց գնալիք գիւղին մօտեցան՝ Յիսուս աւելի հեռու տեղ մ՚երթալու պատրուակաւ անոնցմէ զատուիլ կը ձևացնէր, ստիպեցին ու ըսին. «Այս գիշեր մեր քովս իջի՛ր, վասն զի օրն իրիկուն եղած է»։ Յիսուս մտաւ անոնց քով կենալու. ու երբ անոնց հետ սեղան նստաւ՝ հացն առաւ, օրհնեց, կոտրեց ու անոնց բաժնեց, այսինքն Ս. Հաղորդութեան խորհուրդը կատարեց ըստ Աւետարանի։ Այն ատեն աշակերտաց աչքը բացուեցան ու ճանչցին զանի։ Եւ Յիսուս ինչպէս կնքուած գերեզմանէն. այնպէս և այն տեղէն իւր փառաւորեալ մարմնովն դուրս ելաւ և աներևոյթ եղաւ։ Այն ատեն իրարու ըսին.

«Ո՞չ ապաքէն դուն ճամբան մեզի հետ խօսած եւ գիրքերը մեկնած ատեն՝ մեր սիրտերն կը բորբոքէին 'ի մեզ»։

Եւ նոյն ժամուն Երուսաղէմ դարձան, եւ մետասան առաքեալներն ու բոլոր եղբայրներն մէկտեղ գտան, ու ըսին. Թէ «Արդարեւ Տէրը յարութիւն առաւ, եւ Սիմոնին երեւցաւ, (բայց թէ ի՛նչպէս, չէ գրուած)։ Եւ սկսան պատմել, թէ ի՛նչպէս Յիսուս ճամբան ընկերացաւ իրենց, եւ թէ ի՞նչպէս հացը բեկանելու ատեն ինքզինքը ճանչցուց»։

«Յարեաւ յաւուր երրորդի ըստ գրոց, եւ թէ՝ երեւեցաւ Կեփայի, եւ ապա մետասանիցն. ապա երեւեցաւ աւելի եւս քան զհինգ հարիւր եղբարց միանգամայն, յորոց բազումք կան մինչեւ ցայժմ եւ ոմանք ննջեցին. ապա երեւեցաւ Յակոբայ. ապա առաքելոցն ամենեցուն. յետոյ քան զամենեսին իբրեւ անարգի միոջ երեւեցաւ եւ ինձ»։ Ա. Կորնթ. ԺԵ. 4—8։

Մանաւոր յիշատակութիւն չեն ըրած աւետարանիչք. ո՛չ առանձինն Պետրոսի, եւ ո՛չ այս Պօղոսի յիշած հինգ հարիւրէն աւելի եղբարց Քրիստոսի յետ յարութեան երեւելուն։ Ոմանք կը կարծեն, թէ ժամադրութիւն ըրած Գալիլեայ լերան վրայ՝ մետասանից հետ այս բազմութեան ալ երեւցաւ, որք նացա հետ ժողովուած ըլլէին։ Բայց ինչպէս Յովհաննու վերջին խօսքերէն յայտնի է, թէ Քրիստոսի ամեն ըրածներն ու խօսածներն Աւետարանիչք գրի չառին, շատ հաւանական է, որ շատ անգամ տեսնուած ըլլայ Յիսուս յարուցեալ 'ի մեռելոց՝ բազմաթիւ հաւատացելոց, որք յիշուած չեն յաւետարանս։ Գը-

կան մը կըտեսնեն, կրկնեց Յիսուս. շօշափեցէք զիս եւ տեսէք. ոգին՝ մարմին ու ոսկոր չունի, կըտեսնէ՞ք թէ ես ունիմ»: Եւ ձեռքերը, կողքը եւ ոտքերը ցոյց տուաւ անոնց։ Աշակերտները ուրախացան, երբ տէրը իրենց աչօքը տեսան։ Եւ երբ տակաւին իրենց խնդութենէն հաւատալնին չէր գար, եւ զարմանաց մէջ էին, Յիսուս ալ աչօք տեսիլ ըլլալուն վրայ զիրենք կատարելապէս համոզելու համար, կերակուր խնդրեց. անոնք ալ խորոված ձկան կտոր մը եւ մեղրախորիսխ տուին։ Կերաւ Յիսուս կերակուրն նոցա առջեւ, եւ մնացորդն իրենց դարձուց։

Դարձեալ Յիսուս ըսաւ անոնց. «Ողջոյն ընդ ձեզ. ինչպէս որ Հայրս զիս ղրկեց, ես ալ նոյնպէս զձեզ կըղրկեմ յառաքելութիւն»։ Այս ըսելէն յետոյ փչեց անոնց եւ ըսաւ. «Առէք Ս. Հոգին», այս փչումը Պէնտէկոստէի օրը զՀոգին սուրբ իւր աշակերտաց ղրկելուն նշանակ էր։

Ապա Պետրոսի 'ի դէմս առաքելոց խոստացած կապելոյ եւ արձակելոյ, այսինքն, մարդոց մեղաց թողութիւն տալու եւ թողութեան անարժան համարուելու իշխանութիւնը, կամ փականքը՝ որ իշխանութիւն կընշանակէր, բոլոր աշակերտաց հաւասարապէս շնորհեց. որոնց որ մեղքերն թողուք՝ թողուած ըլլայ անոնց, եւ որոնց որ մեղքերն չթողուք, կամ կապէք եւ կամ անարժան համարիք մեղաց թողութիւն գտնելու, հօրմէս եւ ինձմէ անարժան համարուի։

դոց դռներով ներսը նստած էին , և Թովմաս ալ նոցա հետն էր , եկաւ Յիսուս , այն դոց դռնե-րէն իւր փառաւորեալ մարմնովն ներս մտաւ , մէջ տեղը կանգնեցաւ , ողջոյն տուաւ ամենուն և Թովմասին դառնալով ըսաւ . «բե՛ր մատներդ հոս , նայէ՛ իմ ձեռքերս . բե՛ր ձեռքդ , և իմ կողս խօթէ՛ , և մի՛ ըլլար անհաւատ , այլ հաւա-տացեալ» ։ Թովմաս պատասխան տուաւ , և 'ի խորոց հոգւոյ իւր կենդանի համոզումը խոստո-վանեցաւ ըսելով . «Դու ես իմ Տէրս և իմ Աս-տուածս» ։ Եւ Յիսուս պատասխանեց . «Դու տե-սար և հաւատացիր . այս շնորհն ամենուն՝ տը-րուած չէ , այս տեսնել ու դիտնալ է . հաւատ-քը՝ չը տեսնուած բաներուն ճշմարտութեանը վը-րայ կատարեալ համոզումն է . (անտարակոյս ա-ռաքելոց՝ աչօք տեսնել պէտք՝ էր , որպէս զի վը-կայեն Յիսուսի յարութեանն իբրև ականատեսք)։ Երանի՛ անոնց , որ զիս չը տեսած պիտի հաւա-տան ինձ» ։

Այս տեղ Յովհաննէս կ'իմացնէ մեզ , թէ Յի-սուս շատ հրաշքներ ալ ըրած է իւր աշակերտաց առջև , զորս իւր աւետարանին մէջ չէ գրած ։ Այնչափ միայն դրուած է , որ բաւական՝ է հա-ւատալու , թէ Յիսուս է խոստացեալ Մեսիայն՝ Քրիստոսն Որդին Աստուծոյ , որուն եթէ կատա-րեալպէս հաւատամք՝ անտարակոյս յաւիտենա-կան կեանքը պիտի ընդունիմք նորա անուամբն և զօրութեամբ ։



# ԳԼՈՒԽ ԻԱ.

ՅԱՅՏՆԵԼ ՅԻՍՈՒՍԻ ԶԱՆՁՆ ԻՒՐ ԱՇԱԿԵՐՏԱՑՆ ԱՌ ԾՈՎԱԿԻՆ ՏԻԲԵՐԻԱՅ ԵՒ ԵՐԿՐՈՐԴ ՀՐԱՇԱԼԻ ՈՐՍ ՁԿԱՆՑ. — ՀԱՐՑՈՒՄՆ ՍԻՐՈՅՆ ԱՌ ՊԵՏՐՈՍ. — ԱՌԱՔՈՒՄՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ Ի ՔԱՐՈԶՈՒԹԻՒՆ ԸՆԴ ԱՄԵՆԱՅՆ ՏԻԵԶԵՐՍ. — ՀԱՄԲԱՐՁՈՒՄՆ ՓՐԿՉԻՆ ՅԵՐԿԻՆՍ

## Ա. Յայտնել Յիսուսի զանձն իւր աշակերտացն առ ծովակին Տիբերեայ եւ երկրորդ հրաշալի որս ձկանց

Յետ այսորիկ դարձեալ յայտնեաց զանձն իւր Յիսուս աշակերտացն իւրոց առ ծովեզերբն Տիբերեայ. և յայտնեաց այսպէս: Էին 'ի միասին Սիմոն Պետրոս, և Թովմաս անուանեալն երկուորեակ, և Նաթանայէլ՝ որ 'ի Կանայ Գալիլեացւոց, և որդիքն Զեբեդեայ, և այլք յաշակերտաց անտի երկու: Ասէ ցնոսա Սիմոն Պետրոս. երթամ՝ ձուկն որսալ: Ասեն ցնա. գամք և մեք ընդ քեզ: Գնացին և մտին 'ի նաւ, և յայնմ գիշերի կալան և ոչինչ: Իբրև այգ եղև՝ կայր Յիսուս յեզր ծովուն, բայց ո՛չ ծանեան աշակերտքն թէ Յիսուս իցէ: Ասէ ցնոսա Յիսուս. մա՛նկունք, միթէ ունի՞ք ինչ ուտելոյ: Պատասխանի ետուն և ասեն ցնա, ո՛չ: Ասէ ցնոսա. արկէ՛ք յաջակողմն նաւին զուռկանդ, և գտանիցէք: Արկին, և ո՛չ կարէին յետս 'ի բազմութենէ անտի ձկանցն: Ասէ աշակերտն այն, զոր սիրէրն Յիսուս՝ ցՊետրոս. Տէր է այն: Սիմոն Պետրոս իբրև լուաւ՝ թէ Տէր է, արկանէ զիւրև զըմփածանելին՝ քանզի մերկ էր, և ընկէց զինքն 'ի ծովն: Եւ այլ աշակերտքն նաւաւն եկին, քանզի ոչ էին հեռի 'ի ցամաքէն. այլ իբրև երկերիւր կանգնաւ, քարշէին զգործին հանդերձ ձկամբն: Իբրև ելին 'ի ցամաք, տեսանեն կրակետղ կայծականց, և ձուկն մի 'ի վերայ, և հաց: Ասէ ցնոսա Յիսուս. բերէք 'ի ձկանց այտի՝ զոր դուք կալարուք այժմ

մէջ ։ Ելանէ Սիմոն Պետրոս , և ձգեաց զուռկանն ՚ի ցամաք՝ լի
մեծամեծ ձկամբք, հարիւր յիսուն և երեք ։ Եւ այնչափ լինել
նոցա , և ոչ պատառեցաւ ուռկանն ։ Ասէ ցնոսա Յիսուս ․ Ե-
կա՛յք ճաշեցէ՛ք ։ Եւ ոչ՛ք յաշակերտացն իշխէր հարցանել՝ թէ
դու ո՞վ ես. զի գիտէին թէ Տէր է ։ Գայ Յիսուս՝ և առ-
նու զհացն՝ և տայ նոցա , նոյնպէս և զձուկն ։ Զայս երրորդ
անգամ երեւեցաւ Յիսուս աշակերտացն յարուցեալ՚ի մեռելոց ։
Յովհ. ԻԱ. 1—14 .

Ասկէ ետքը Յիսուս նորէն յայտնուեցաւ իր աշակերտաց՝ Տիբերիայ ծովուն եզերքը , որք այնչափ անգամ արդէն հանդիսատես եղած էին նորա հրաշագործութեանցն ։ Սիմոն Պետրոս , երկուորեակ անուանեալն Թովմաս , Գալիլեացւոց Կանա քաղաքէն Նաթանայէլ (հաւանականաբար Բարթողիմէոս) , Զեբեդեայ որդիքն և ուրիշ երկու աշակերտք մէկտեղ էին ։ Երբ Պետրոսի հետ միացան ձուկ որսալու՝ մտան նաւը , և այն գիշեր բան չը կրցին որսալ ։ Առաւօտուն կանուխ Յիսուս ծովեզերքը կայներ էր , սակայն աշակերտք չը կրցին ճանչել , թէ Յիսուսն է ։ Յիսուս խօսքն աշակերտաց ուղղելով հարցուց ․ "Տղա՛ք , ուտելու բան մ'ունի՞ք" ․ անոնք ալ չիտակը խոստովանելով "Չունինք" ըսին ։ Այն ատեն հրամայեց Յիսուս ․ "Ուռկաննիդ նաւուն աջ կողմը ձգեցէ՛ք , և որս (ձուկն) պիտի գտնէք" ։ Երբ ուռկանը ձգեցին , այնչափ լեցուեցաւ , որ ձըկանց բազմութենէն չէին կարող ետ առնել ուռկանը ․ Այս հրաշքէն վրայ Յովհաննէս սիրելին Յիսուսի՝ ճանչցաւ զՅիսուս , և Պետրոսի ըսաւ , թէ անի Տէրն է ։ Պետրոս մերկ ըլլալով , երբ լսեց՝ թէ տէրն է , հագուստը վրան առնելով՝ ծովը նետուեցաւ , Յիսուսի քով գալու աճապա-

րեց, մինչդեռ միւս աշակերտք ևս նաւով կը մօտենային ցամաքին, որ երկու հարիւր կանգնոյ չափ հազիւ հեռու էր, և մեծ դժուարութեամբ՝ ձկներով լեցուն ուռկանը կը քաշէին։

Ցամաքը ելնելուն պէս՝ տեսան, որ վառուած կրակ կայ պատրաստ, և խորովելու վրայ՝ ձուկն, և հաց. զոր տէրն իւր կողմանէ կը շնորհէր աշակերտաց՝ յապացոյց իւր մշտնջենաւոր հոգածութեանն վասն կարևորաց սիրելեաց իւրոց։

Հրամայեց Յիսուս, որ նոր բռնած ձկներէն բերեն. ուստի Պետրոս նորէն նաւը մտնելով իւր ընկերակցաց հետ, այն՝ հարիւր՝ յիսուն և երեք մեծամեծ ձկներով լեցուն գործին ցամաք կը քաշէր. և որչափ այս հրաշալի որսին վրայ, այնչափ և աւելի գործիքին չը պատռելուն վրայ կը զարմանային.

Յիսուս նախաճաշիկի հրաւիրեց, և աշակերտք ամենայն երկիւղածութեամբ բազմելով՝ չէին համարձակէր իրեն ո՞վ ըլլալը հարցնելու. վասն զի ա՛լ ամենքն ալ լաւ մը գիտէին, թէ Յիսուսն էր. ապա Յիսուս ալ եկաւ քովերնին, և հացն ու ձուկը բաժնեց անոնց։

Թէպէտ, ըստ աւետարանչաց, Յիսուս՝ Մագթաղենացւոյն, խուղաբեր կանանց, Էմմաւուսի աշակերտաց, առաջին և երկրորդ միաշաբաթներուն իւր աշակերտաց արդէն հինգ կամ վեց անգամ երևցած էր, և այս վեցերորդ կամ եօթներորդ անգամն էր գրեթէ, որ Յիսուս կերևէր յարուցեալ 'ի մեռելոց. բայց մէկտեղ ժողովուած աշակերտաց ամենուն մէկանց այս երրորդ անգամն էր որ կերևէր. Յովհաննէս աւետարանիչ "Երրորդ անգամ երևցաւ" ըսելովն

*զայս կիմացունէ ։*

## Բ․ Հարցումն սիրոյն առ Պետրոս

Եւ իբրեւ ճաշեցին, ասէ ցՍիմոն Պետրոս Յիսուս. Սի՛մոն Յովնանու սիրե՞ս զիս առաւել քան զսոսա, ասէ ցնա. այո, Տէր, և դու ինքնի՛ն գի՛տես զի սիրեմ զքեզ. ասէ ցնա, արածեա՛ զգառինս իմ ։ Դարձեալ ասէ ցնա. Սի՛մոն Յովնանու սիրե՞ս զիս, ասէ ցնա. այո՛ Տէ՛ր և դու ինքնին գիտես զի սիրեմ զքեզ. ասէ ցնա, արածեա՛ զխաշինս իմ. Ասէ ցնա երրորդ անգամ. Սի՛մոն Յովնանու, սիրե՞ս զիս. տրտմեցաւ Պետրոս, զի ասաց ցնա երրորդ՝ թէ սիրես զիս. և ասէ ցնա. Տէ՛ր՝ դու զամենայն գիտես. և դու իսկ զամենայն ճանաչես, և եթէ սիրեմ զքեզ. ասէ ցնա Յիսուս. արածեա՛ զխաշինս իմ ։ Ամէն ասեմ քեզ, զի մինչ մանուկն էիր, անձամբ անձին գօտի ածէիր, և երթայիր՝ յո՛ր և կամէիր, և յորժամ ծերասցիս՝ ձգեսցես 'ի վեր զձեռս քո, և այլ ածցէ քեզ գօտի, և տարցի՝ ուր ոչ կամիցիս ։ Զայս ասաց նշանակելով, թէ որո՞վ մահու փառաւոր առնիցէ զԱստուած ։ Եւ զայս իբրև ասաց՝ ասէ ցնա. Ե՛կ զկնի իմ ։ Յովհ. ԻԱ. 15—19.

*Ճաշը կամ նախաճաշը լմննալու ատեն, Յիսուս Պետրոսին ուղղեց խօսքը. եւ այս անգամ վէմ կամ Պետրոս չանուանելով. ըսաւ. «Սիմոն մը որդի Յովնանու, զիս ասոնցմէ աւելի, այսինքն, այդ միւս աշակերտներուն զիս սիրելէն աւելի կը սիրե՞ս»։ Աստուածորդւոյն այս հարցումն անշուշտ Պետրոսի սիրտը յուղեց. Պետրոս ուրիշ անգամ յայտնած էր եռանդեամբ. «Թէ եւ ամենքին գայթակղին քեզմէ, սակայն ես չըպիտի գայթակղիմ, թէ եւ մեռնիլ ալ պէտք լինի, բայց զքեզ չըպիտի ուրանամ. սակայն քանի մը ժամէն յետոյ իր խոստման հակառակն ըրած էր։*

*Քրիստոս երեք անգամ այս հարցումը «Սի֊*

րե՞ս զիս» կրկնեց, երեք անգամ ալ Պետրոս «Կը սիրեմ» պատասխանեց. սակայն երրորդին իր ուրացութիւնն յիշելով տրտմեցաւ. փանզի գիտէր, թէ Յիսուս իր սրտին խորը կը կարդայ, և իրմէ աւելի գիտէ Քրիստոս իր անձնուիրութեան եւ սիրոյն աստիճանը, անոր համար պատասխանեց. «Տէ՛ր, դու ամենայն գիտես եւ ճանաչես, թէ զքեզ ո՛րչափ կը սիրեմ». այո՛, գիտէր Յիսուս Նորա ուրացութիւնն եւ զղջումը եւ դառնապէս լացը եւ իր յարութեան նկատմամբ զգացած ուրախութիւնը. ուստի պէտք էր բժշկել զանի իր առաջին ուրացութենէն. Եւ ահա այս երեք հարցմամբ Նորա ուրացութեան մեղքը բժշկեց, և երեք անգամ իր (և ոչ Պետրոսի) ոչխարները, գառինքն եւ հօտը (եկեղեցին) հովուելու պաշտօնը շնորհելով անոր, զՊետրոս Նորէն հաստատեց առաքելական պաշտօնին մէջ, հաւասար միւս աշակերտակցաց։ «Ճշմարիտ կ'ըսեմ քեզի՝ ըսաւ, դու՝ որ երիտասարդութեան ատենդ ազատ էիր ուզած տեղդ երթալու և ինքնիրենդ գօտիդ կապելու, այս առաքելութեանդ մէջ դու քեզի համար ապրելէ պիտի դադրիս,. և անձին ազատութիւնդ պիտի կորսնցընես. ծերութեանդ ատեն. կամ երբոր ծերանաս, ձեռքերդ վեր պիտի բարձրացնես, այսինքն պիտի խաչուիս». «Նշանակելով, թէ որո՞վ մահու փառաւոր արասցէ զԱստուած», այսինքն խաչի մահուամբ. «Եւ այլք ածցեն քեզ գօտի». մէջքէդ չուան պիտի անցընեն կապեն. «Եւ տարցին՝ ուր ոչն կամիցիս». պիտի քաշքշեն ու չարչարելու պիտի տանին զքեզ, և դու խաչի մահուամբ պիտի փառաւորես զԱստուած.

ու չարչարանացս պիտի հետեւիս, բայց ամենքդ մի օրինակ մահ չը պիտի ունենաք. ես կը կամիմ, որ մինչեւ (Երուսաղէմ կործանելու, եւ իմ արիւնս իրենց եւ իրենց որդւոց վրայ բերող ազգէն վրէժխնդրութիւն ընելու համար) եկած օրըս ապրի Յովհաննէս. (Յովհաննէս Երուսաղէմի կործանմանէն 30 տարւոյ չափ յետոյ վախճանեցաւ. իսկ Պետրոս նոյն սոսկալի կործանմանէն յառաջ մարտիրոսացած էր արդէն).

Յիսուսի «կացցէ դա՝ մինչեւ եկից» խօսքը՝ աշակերտք չը հասկնալով՝ կարծեցին, թէ Յովհաննէս չը պիտի մեռնի։

## Դ. Առաքումն աշակերտաց 'ի քարոզութիւն ընդ ամենայն տիեզերս

Իսկ մետասան աշակերտքն գնացին 'ի Գալիլեա 'ի լեառնն՝ ուր ժամադիր եղեւ նոցա Յիսուս ։ Իբրեւ տեսին զնա՝ երկիրպագին նմա, եւ ոմանք յերկմտեցան ։ Եւ մատուցեալ Յիսուս՝ խօսեցաւ ընդ նոսա եւ ասէ . Տուաւ ինձ ամենայն իշխանութիւն յերկինս եւ յերկրի . որպէս առաքեաց զիս Հայր՝ եւ ես առաքեմ զձեզ ։ Գնացէ՛ք այսուհետեւ, աշակերտեցէ՛ք զամենայն հեթանոսս, մկրտեցէ՛ք զնոսա յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ ։ Ուսուցէ՛ք նոցա պահել զամենայն՝ որ ինչ պատուիրեցի ձեզ, եւ ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս մինչեւ 'ի կատարած աշխարհի ։ Մատթ. ԻԸ. 16—20.

Մետասան աշակերտները՝ Գալիլիա Յիսուսի ժամադիր եղած լեռը գնացին. ուր նորէն Յիսուս երեւցաւ անոնց. որուն անմիջապէս երկրպագութիւն ըրին, անտարակոյս Թովմայի պէս Իրենց տէրն ու Աստուածը դաւանելով զնա. Ըստ

ոմանց կը կարծուի, թէ այս տեղ երևցաւ Յիսուս մետասանից հետ եկող բազմութեան՝ որ հինգ հարիւրի չափ անձինք պիտի ըլլային յեղբարց, ինչպէս Պօղոս կը գրէ առ Կորնթացիս ։

Ոմանք իսկ՝ որք յերկուացան, միւս աշակերտակցաց հետ երկրպագին Յիսուսի. կամ թէ թերևս Թովմայի երկբայութիւնն է, զոր Մատթէոս մէկանց կը յիշէ ։

Այն ատեն Յիսուս մօտեցաւ անոնց և ըսաւ. «Թէև ըստ աստուածութեանս ունէի զամենայն, բայց ըստ մարդկութեանս իսկ՝ ամենայն իշխանութիւն ինձ յանձնուեցաւ, թէ՛ երկնից մէջ և թէ՛ երկրի վրայ ։ Ինչպէս որ Հայրս զիս ղրկեց 'ի փրկել և 'ի լուսաւորել զձեզ՝ ես ալ զձեզ կը ղրկեմ յառաքելութիւն. ա՛լ այսուհետև գնացէ՛ք, ու բոլոր հեթանոսաց ճշմարիտ հաւատքը սորվեցընելնիդ յետոյ, մկրտեցէ՛ք զանոնք Հօր, Որդւոյ և սուրբ Հոգւոյն անուամբը» ։ Առաջ Երրորդութեան խորհուրդը յայտնապէս զրուցեց, և մկրտութեան ձևն սորվեցուց ։

Առաքեալք պիտի մկրտէին իրենց աշակերտեալներն Հօր անուամբն, որ զմարդիկ այնչափ սիրեց, որ իւր միածին Որդին տուաւ 'ի փրկութիւն ազգի մարդկան. Որդւոյն անուամբն, որ իւր արիւնը թափեց 'ի փրկութիւն ազգի մարդկան. Հոգւոյն սրբոյ անուամբն, որոյ զօրութեամբն ու շնորհօքն՝ նոր արարած պիտի ըլլային. և այս ուսած հաւատովք և ընդունած սրբարար մկրտութեամբ՝ նոր կեանք պիտի ունենային, այսինքն վերստին պիտի ծնանէին ամենայն հեթանոսք և Հրէայք հաւատացեալք ։

Զանոնք մկրտելէն զատ նաև հրամայեց ըսաւ, որ սորվեցնեն անոնց՝ բոլոր իրեն տուած պատուէրները. զի պատուիրանապահութիւնը՝ հաւատոց գործնական մասն է։

Այս հրամաններուն հետ ըսաւ. «Ահաւասիկ ես ընդ ձեզ եմ ամեն օր մինչև աշխարհին վերջը. այսինքն առաքելոց հետ՝ իրենց բոլոր կենաց մէջ, և նոցա յաջորդաց և աշակերտաց հետ՝ մինչև աշխարհիս վերջը. իր օգնութեամբն և շնորհօքը, նոցա ձեռամբ նշաններ և հրաշքներ ընելով, և նոցա առաքելական գործոց յաջողութիւն պարգևելով։

Յետոյ մինչդեռ բազմեալ էին մետասանեքն, երևեցաւ նոցա, և նշաւակեաց զանհաւատութիւն նոցա, և զխստասրտութիւն. զի որ երևեցաւ նոցա յարուցեալ 'ի մեռելոց և նոքա ո՛չ հաւատացին։ Եւ ասէ ցնոսա. երթա՛յք յաշխարհ ամենայն, և քարոզեցէ՛ք զաւետարանն ամենայն արարածոց։ Որ հաւատայ և մկրտեսցի՝ կեցցէ, և որ ո՛չն հաւատայ դատապարտեսցի։ Նշանք այսոքիկ՝ որ հաւատասցեն, երթիցեն ընդ հետ այնոցիկ։ Յանուն իմ դևս հանցեն, լեզուս խօսեսցին, 'ի ձեռս իւրեանց օձս բարձցեն, և եթէ մահացու ինչ դեղ արբցեն, նոցա ինչ ո՛չ վնասեսցէ. 'ի վերայ հիւանդաց ձեռս դիցեն և բժշկեսցին։ Մարկ. ԺԶ. 14—18։

Յետոյ երբ մետասան աշակերտք տեղ մը ժողովուած ու նստած էին՝ նորէն երևցաւ, նոցա անհաւատութիւնն ու խստասրտութիւնն յանդիմանեց, թէ ինչո՞ւ արդեօք իր յարութեան վըրայ կը կասկածին ու չեն հաւատար։ Ու ըսաւ անոնց. «Գնացէ՛ք բոլոր աշխարհ, և աւետարանը բոլոր մարդկան քարոզեցէք։ Հաւատացողներըն ու մկրտուողները պիտի փրկուին, և ձեր

քարոզութիւնները ձեզմէ լսելէն յետոյ չը հաւա-տացողները պիտի դատապարտուին ։ Հաւատա-ցողներուն հետ պիտի երթան կամ անոնց ետեւէն պիտի հասնին ամենուրեք՝ հրաշք գործելու այս զօրութիւնները . դեւեր պիտի հանեն , ձեռքեր-նուն վրայ առանց վնասելու օձեր պիտի վերցը-նեն , և մահացուցիչ դեղեր կամ թոյներ խմած ատեննին անվնաս պիտի մնան , զանազան լեզու-ներ պիտի խօսին , և հիւանդաց վրայ ձեռք դը-նելով պիտի բժշկեն զանոնք ։

Եւ ասէ ցնոսա . այս բանք են՝ զոր խօսեցայ ընդ ձեզ, մինչդեռ ընդ ձեզ էի , թէ պարտ է լնուլ ամենայն գրելոցն յօրէնսն Մովսէսի և 'ի Մարգարէս և 'ի Սաղմոսս վասն իմ ։ Յայնժամ եբաց զմիտս նոցա իմանալ զգիրս ։ Եւ ասէ ցնոսա , թէ այսպէս պարտ էր չարչարել Քրիստոսի , և յառնել 'ի մեռելոց յաւուր երրորդի . և քարոզել յանուն նորա ապաշխարութիւն և թողութիւն մեղաց յամենայն ազգս՝ սկսեալ յԵրուսաղեմէ ։ Եւ դուք էք վկայք այսոցիկ ։ Եւ ահա ես առաքեմ զաւետիսն Հօր իմոյ 'ի ձեզ . և դուք նստարո՛ւք 'ի քաղաքի յԵրուսաղէմ , մինչև զգենուցուք զօրութիւն 'ի բարձանց ։ Ղուկ. ԻԴ. 44-49 ։

Ըսաւ անոնց . «Ձեզի հետ եղած ատենս՝ շատ անգամ խօսեցայ ձեզի , թէ ինչ որ սուրբ Գրոց մէջ ինծի նկատմամբ գրուած են՝ պիտի կատա-րուին ։ Ես պիտի չարչարուէի , մեռնէի , և թա-ղուելէս յետոյ երրորդ օրը յարութիւն պիտի առ-նէի . ահա կատարուեցան ։ Ուստի ինծի հաւա-տացողներն՝ Երուսաղեմէն սկսելով՝ Քրիստոսի անուամբն բոլոր ազգերուն պիտի քարոզեն ա-պաշխարութիւն և մեղաց թողութիւն . և Քրիս-տոսի ամեն անօրինութեանց և յարութեանն պի-

տի վկայեն„ ։

Եւ պատուիրեց առաքելոց, որ Երուսաղէմ նստին, մնան, մինչև որ երկնքէն զօրութիւն զգենուն, մինչև որ ընդունին այն զօրութեան, մխիթարութեան և յիշեցուցիչ Հոգին Աստուծոյ, որ 'ի Հօրէ Աստուծոյ ելանէ ։

## Դ. Համբարձումն փրկչին յերկինս.

Եւ ինքն Տէր Յիսուս յետ խօսելոյն ընդ նոսա՝ համբարձաւ յերկինս, և նստաւ ընդ աջմէ Հօր ։ Մարկ. ԺԶ. 19. Եհան զնոսա մինչև 'ի Բեթանիա, և ամբարձեալ զձեռս իւր՝ օրհնեաց զնոսա ։ Եւ եղև յօրհնելն նորա զնոսա, մեկնեցաւ 'ի նոցանէ, և վերանայր յերկինս ։ Ղուկ. ԻԴ. 50—51.

Յիսուս իւր վերջին խօսքերն ըսելէն յետոյ՝ զանոնք մինչև Բեթանիա՝ Ձիթենեաց լերան արևելեան կողմն վրայ հանեց, ու հոն ձեռքերը վերցուց, օրհնեց իւր աշակերտները վերջին անգամ. և ապա մարմնովն՝ զոր 'ի մէնջն առած էր, պատուեց օդը, պատուեց մթնոլորտը, և հրեշտակաց ուղեկցութեամբ համբարձաւ յերկինքս, նստաւ իւր Հօր Աստուծոյ աջակողմը. ուրկէց միւսանգամ պիտի գայ դատել զազգս մարդկան՝ զկենդանիս և զմեռեալս ։ Առաքեալք՝ որ արդէն զարմացած էին Յիսուսի յարութեան վրայ, այս անգամ բոլորովին յապուշ կրթեցան, և ակնկառոյց կը նայէին դէպ 'ի Քրիստոս՝ որ կը մեկնէր կը բաժնուէր իրենց մէջէն, մինչ զի հրեշտակաց քաջալերութեան կարօտացան իրենց այդ ապշութեան վիճակին մէջ՝ որպէս զի սթափին իրենց թմբրութենէն ։

Եւ նոցա երկիրպագեալ նմա՝ դարձան յԵրուսաղէմ ուրախութեամբ մեծաւ ։ Եւ էին հանապազ՚ի տաճարին, գովէին և օրհնէին զԱստուած ։ Ղուկ. ԻԴ. 52—53 ։ Եւ նոքա ելեալ քարոզեցին ընդ ամենայն երկիր՝ Տեառն գործակցութեամբ . և զբանն հաստատէին ամենայն նշանօք՝ որ երթայր զհետ նոցա ։ Մարկ. ԺԶ. 20 ։

*Զայս տեսնելնուն պէս՝ ինկան գետինը, երկրպագութիւն ըրին Յիսուսի. և յետոյ դարձան Յերուսաղէմ մեծ ուրախութեամբ լցուած ։ Այս ուրախութեան պատճառն այն էր, որ Քրիստոսի՝ իր անձին համար բոլոր նախագուշակութիւններն կը կատարուէին, և թէ իրենք այնպիսի տիրոջ մ'աշակերտներն ու առաքեալներն էին, որ ոչ միայն երկրի, այլ և երկնից կը տիրէր, և ընդհանուր բնութիւնը կը հնազանդէր նորա ոտից ներքև ։*

*Զիթենեաց լեռնէն դարձած առեննին՝ իրենց վրայ նոր զօրութիւն մը զգեցած կը տեսնէին. այդ զօրութեամբն ու համարձակութեամբ բոլոր աշխարհ սկսան քարոզել Քրիստոսի Ս. Աւետարանը և նորա կենսաւէտ վարդապետութիւններն ։ Եւ Աստուած իրենց հետն էր, կ'օգնէր անոնց քայլերուն, կը զօրացնէր զանոնք 'ի պաշտօնն՝ յոր հաստատեց, և իր Որդւոյն անունովը հրաշքներ գործելու իշխանութիւնը՝ զոր Յիսուս տուաւ, գործերով կ'երաշխաւորէր ։*

Բայց է և այլ ինչ բազում զոր արար Յիսուս, զոր եթէ գրեալ էր մի ըստ միոջէ, կարծեմ թէ և ո՛չ աշխարհս բաւական էր տանել զգիրսն՝ որ թէ գրեալ էին ։ Յովհ. ԻԱ. 25 ։

*Ուրիշ շատ բաներ ալ ըրաւ Յիսուս. սակայն չը նշանակուեցան Աւետարանին մէջ. վասն զի ե-*

«թէ նշանակուէին, կարծեմ թէ աշխարհի մարդիկ չէին կարող տանել զանոնք։ Այնչափ ինչ միայն գրուեցաւ, որ Քրիստոսի Յիսուսի կատարեալ Աստուածութիւնն ու կատարեալ մարդկութիւնը կ՚ապացուցէ, և նորա կենարար վարդապետութիւններն աշխարհի ծանուցանելով՝ յաւիտենական կենաց կ՚առաջնորդէ իբրև կանոն կենաց քրիստոնէից և յաւիտենական փրկութեան փափագողաց։



Այսպէս Տէրն մեր համբառնալով յերկինս, մարդկային ազգին առջև հինն Ադամայ մեղաց պատճառաւ փակուած դռները բացուեցան. հրեշտակք և հրեշտակապետք՝ այս դռներուն բացուիլը կ՚իմացընեն՝ երգելով առ բարապանս դրանց երկնից. «Համբարձէ՛ք, իշխանք, զդրունս ձեր ՚ի վեր, համբարձցին դրունք յաւիտենից». Նոր Ադամ՝ մարմնացեալ Աստուածորդին կը մտանէ յաղթանակաւ. «Տէր զօրութեանց նա ինքն է թագաւոր փառաց». նա չը նմանիր աշխարհակալաց յաղթանակին. նորա արիւն թափելէ, ազգերն ու ժողովուրդները կողոպտելէ, քաղաքները աւերակ ընելէ, կապուտակ դաշտերն արեամբ ներկելէ, մնացած սերտն արեամբ և աչերն արտասուօք լեցընելէ, որբևայրիներուն հեծեծանքն և յուսահատ կոծերն ու ողբերն աւերակաց վրայ խաղաղ հնչեցընելէ, ծաղկածին դաշտերը դերեզման դարձընելէ, ծառաշատ պարտէզներն ամայացընելէ, ծաղիկն ՚ի կոկոնի՝ երիտասարդն ՚ի ծաղիկ հասակին թառամեցնե-

լէ, մանկիկն 'ի գիրկ մօրն խողխողելէ կուգան կը մտնեն իրենց հայրենեաց մայրաքաղաքը Նոցա անգթութեանց և բարբարոսական ոճիրներու շատութեան չափովն՝ յաղթանակնին մեծ, և իրենց ժողովրդեան զգացած ցնծութիւնը շատ կ'ըլլայ. արտասուօք և արեամբ բուսած կամ թրջած դափնեայ կամ ոսկի պսակներով կը պըսակուին:

Քրիստոս արտասուքը սրբելէ, հոգւոյ և մարմնոյ վրայ բռնակալներուն պատճառաւ տըխրած, յուսահատած և վատթարացած ժողովուրդները մխիթարելէ, այրեացուեր տանց և աւերակաց մէջ հոգևորապէս և մարմնաւորապէս անօթի, ծարաւ և ցրտէն դողացող աւերակ սրտերըն սփոփելէ, կենաց ծանրութեան տակ ճընշուող, արտասուաց մէջ իւր սև հացն թաթաւող և աւուր պարէնի կարօտ թշուառները կենաց բանիւն ու հացիւն յագեցնելէ, մեղաց խորշակ, հոգեպէս տօթ և երաշտութիւն տիրող անապատներու մէջ մնացած անապատացեալ հոգիներու՝ կազդուրիչ և զովացուցիչ կենաց ջուրն, իւր որովայնէն բղխած կենդանութեան և հանգստեան ականակիտ վտակներ և հովասուն ու ծաղկազարդ մարգագետիններ պարգևելէ, երկիրը՝ սիրտերն ու հոգիները շէնցնելէ, կոյր մըտքերն ու աչքերը լուսաւորելէ, մարմնաւոր և հոգևոր անդամալոյծները ջղապինդ զօրացնելէ, մարմնոյ և հոգւոյ հիւանդութիւններն՝ ախտաժէտներն ապաքինելէ, մարդկային ընկերութենէ դուրս ձգուած բորոտները՝ մարմնապէս, իսկ մարդոց աչքին արհամարհ երևցած մաքսաւորներն ու մեղաւորները հոգեպէս բժշկելէ, մար

դոց ամէն կարգի և ամէն աստիճանի և մասնաւորապէս հոգւով աղքատներուն՝ փրկութեան մեծ աւետիսը պարգևել, մարդկային ազգին երկրաւոր բարւոք կենաց առաքինութեան կանոնները քարոզելով՝ իւր անձին վրայ գործով և կենդանի օրինակաւ իրացընել, խաղաղասութիւնը, կեղծաւորութիւնը, սուտ բարեպաշտութիւնը, կրօնամոլութիւնը, անհաւատութիւնը, անաստուածութիւնը, զրկանքն և բռնութիւնը նշաւակել, յանդիմանել և կշտամբել, իրաւունքն և արդարութիւնը պանծացընելու, երկիրը երկնից․ մարդն Աստուծոյ՝ իւր Հօրը հետ հաշտեցնելու, սատանան՝ մեր հոգիներու երդուեալ յաւիտենական թշնամին խորտակելու և և նորա գլուխն ջախջախելու մեծ գործը՝ խաչին վրայ իւր փրկագործ հեծելութեամբն, և իւր սիրոյ սեղանին վրայ անձին ողջակիզութեամբ և ահաւոր պատարագաւն գլուխ հանել, անհաւատութիւնը, անսիրելութիւնը, յուսահատութիւնը, մեղքը և մահը սպաննելով՝ գերեզման դնել յետոյ՝ դժոխքն աւարելով և հզօրեղապէս այդ գերեզմանէն՝ մահու արհաւիրքն կոխոտելով լուսափայլ յարութիւն առնել, գերեզմանը՝ յուսոյ օրրան, աշխարհն՝ սիրոյ ասպարէզ և մարդկային ծխայոյզ միտքն ու հոգին՝ հաւատոյ հանգրուան կացուցանել, և մահը յաւիտենական կենաց փոխել յետոյ՝ անկեալ մարդկութիւնն իւր անձին վրայ Աստուծոյ աջ կողմը՝ կատարելութեան, սիրոյ, եւ անհունին ակը բարձրացոյց․ և ՚ի նշան ամենամեծ յաղթութեանն՝ բոլոր իւր փառքը՝ իւր խաչը և բոլոր իւր յաղթանակը՝ իւր ձեռաց և ոտից բևեռներուն, կողա-

խոց տիգին և գլխոյն փշեայ պսակին վէրքերը պահելով․ սիրոյ և գթութեա՜ն վէրքեր

Քրիստոնեա՛յ, արդեօք և դու նման Քրիստոսի կրցա՞ր անպարտակիր վէրքեր և խոցեր ունենալ սիրոյ ասպարիզին մէջ՝ զոր տէրը բացաւ քեզ․ արդեօք օգնեցա՞ր քո և ընկերացդ հոգւոյ փրկութեան և մտաց լուսաւորութեան․ արդեօք աշխատեցա՞ր մեղաց բարձման, անիրաւութեանց ջնջուելուն, տգիտութեան խաւարին փարատելուն, թշուառները մխիթարելու և տառապելոց արտասուքը սրբելու։ Եթէ զոհեցիր ժամանակդ, ինչքդ, մտաւոր և մարմնաւոր կարողութիւնդ և կեանքդ՝ առաքինութեան, լուսոյ, սիրոյ, հաւատոյ և յուսոյ թագաւորութեան անկեղծութեամբ և անձնուիրութեամբ՝ առանց երկրաւոր շահասիրութեան՝ դու Քրիստոսի զինուոր ես՝ դու Քրիստոսի պէս վերամարտիկ յաղթական մ՚ես․ քո թափած քրտունքդ, քո հոսած արիւնդ, քո ստացած վէրքերդ՝ քո փառքդ են փառաց թագաւորին մէջ։

Ուրախ լե՛ր յաւիտեանս,
Մո՛ւտ յուրախութիւն Տեառն քո։

--- ❧ ---

# ՅԱՆԿ

